ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Ե

## ՀԱՅ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆ
ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
2012

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)
Ա 205

Հրապարակության պատրաստեց
Պ. Հ. Հովհաննիսյանը

Աղոնց Ն. Գ.
Ա 205 Երկեր: Հինգ հատորով / Ն. Աղոնց; Գալուստ Կիւլպէնկեան հիմնարկ.- Եր.: ԵՊՀ հրատ., 2012. Հ. Ե.- Հայ-բյուզանդական ուսումնասիրություններ / Խմբ.՝ Պ. Հ. Հովհաննիսյան: Թարգմ.՝ Ա. Շահումյան, Օ. Վարդազարյան, Վ. Պողոսյան.- 664 էջ + 2 ներդիր. (Հայկական մատենաշար):

*Նիկողայոս Աղոնցի երկերի հինգերորդ հատորն ընդգրկում է ականավոր հայագետի բյուզանդագիտական ուսումնասիրությունները, որոնց մեծ մասը նախապես լույս է տեսել ֆրանսալեզու գիտական պարբերականներում և զետեղվել 1965 թ. Լիսաբոնում ֆրանսերենով հրատարակված «Հայ-բյուզանդական նոթեր» ("Études Arméno-Byzantines") ժողովածուում:*

*Հասցեագրվում է հայագետներին, բյուզանդագետներին և ընթերցող հանրությանը:*

ՀՏԴ 941 (479.25)
ԳՄԴ 63.3 (2Հ)

ISBN 978-5-8084-1534-8





FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

Հովհաննիսյան Պ. Հ.
Մաղոյան Ա. Գ.
Սիմոնյան Ա. Հ.
Ստեփանյան Պ. Գ.

*Հատորը հրատարակության պատրաստեց*

Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ

*Թարգմանիչներ*

Ա. Ք. Շահումյան
Օ. Ս. Վարդազարյան
Վ. Ա. Պողոսյան

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ՀԱՎԵԼՎԱԾ*

# ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑԻ ԲՅՈՒԶԱՆԴԱԳԻՏԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ

Համաշխարհային գիտական հանրությանը Նիկողայոս Ադոնցն առավելապես հայտնի է իբրև բյուզանդագետ: Եվ դա իրոք այդպես է, քանի որ, զբաղվելով հայրենի պատմությամբ, Ն. Ադոնցը գրեթե միշտ աչքի առաջ է ունեցել նրա բյուզանդական աղերսները: Ավելի ստույգ ասած, նա անընդհատ փնտրում էր միաժամանակ և՛ «Բյուզանդիան՝ Հայաստանում», և՛ «Հայաստանը՝ Բյուզանդիայում», քաջ գիտակցելով, թե որքան միահյուսված էին դրանց ճակատագրերը: Եվ նույնիսկ այնտեղ, որտեղ նման աղերսներ գտնելը, թվում է, անհնարին էր, նա ևս մեկ անգամ ապացուցում էր բյուզանդական իրողությունների իմացության անհրաժեշտությունն ու շահեկանությունը, վերականգնելով, օրինակ, բյուզանդական բերդամրոցների անվանումների և տեղադրության հիման վրա Ուրարտուի պատմական քարտեզի որոշ տարրեր[1]:

Բյուզանդագիտական հոյակապ պատրաստվածությունը Ն. Ադոնցի զուտ անձնական նվիրվածության հետևանքը չէր: Նրան վիճակվել է մուտք գործել պատմական ուսումնասիրությունների ոլորտն այն ժամանակ, երբ աներևակայելի արագությամբ ձևավորում և սկսում է պտղաբերել ռուսական բյուզանդագիտությունը, որի օրրանը հենց Ն. Ադոնցի alma mater՝ Ս. Պետերբուրգի համալսարանն էր: Այստեղ եռանդով գործում էր Վ. Գ. Վասիլևսկին, որը կարդացել է բյուզանդագիտական առաջին համալսարանական դասընթացները, սկսել այս մասնագիտության վերաբերյալ աշխատություններ հրատարակել իր ղեկավարած «Ժողովրդական կրթության նախարարության հանդեսում», Ս. Պետերբուրգի համալսարանի «Տեղեկագրում», ապա, 1894 թ. հիմնում է «Византийский Временник» տարեգիրքը, որը կարճ ժամանակամիջոցում ձեռք բերեց համաեվրոպական հեղինակություն: Վ. Գ. Վասիլևսկին իր շուրջը հավաքեց բյուզանդագետների մի հիասքանչ համաստեղություն (Վ. Է. Ռեգել, Պ. Վ. Բեզոբրազով, Վ. Ն. Բենեշևիչ, Ա. Ա. Վասիլև, Ֆ. Ի. Ուսպենսկի, Յու. Ա. Կուլակովսկի, Բ. Ա. Պանչենկո, Ն. Պ. Կոնդակով և բազում այլք), որն ստանալու էր «Պետերբուրգյան դպրոց» անվանումը: Ճակատագրի բերումով ցրվելով աշխարհով մեկ, նրանք իրենց հետ ամենուրեք տանելու են դպրոցին հատուկ հետազոտա-

[1] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Դ, Երևան, 2009, էջ 63, 65 և այլուր:

կան ներշնչանքը և, միաժամանակ, գիտական ճշգրտությունն ու նրբությունը: Վ. Գ. Վասիլևսկին շատ կարևորում էր նաև բյուզանդագիտության կապերը հարակից ոլորտների, հատկապես՝ արևելագիտության հետ: Պետերբուրգյան արևելագիտությունը շարժվում էր ընդառաջ. բարոն Վ. Ռ. Ռոզենը և նրա աշակերտներ՝ Ա. Ա. Վասիլևը, Ն. Մառը և ուրիշները շրջանառության մեջ են դնում արևելյան (արաբական, հայկական, վրացական ևն) աղբյուրները, որոնք անմիջապես գրավում են բյուզանդագետների ուշադրությունը[1]:

Ահա այս հագեցած և բեղմնավոր մթնոլորտում են ձևավորվում երիտասարդ Ադոնցի գիտական հետաքրքրությունները և հետազոտական հմտությունն ու ճաշակը: 1899 թ. օգոստոսին, համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետի արևելյան լեզուների բաժանմունքն ավարտելուց հետո, նա մեկնում է Մյունխեն: Այստեղ նա ևս բարեբախտություն է ունենում շփվելու այնպիսի մի անձնավորության հետ, ինչպիսին էր Կարլ Կրումբախերը՝ Մյունխենի համալսարանի հռչակավոր բյուզանդագիտական սեմինարի ղեկավարն ու եվրոպական առաջին բյուզանդագիտական հանդեսների հիմնադիրը («Byzantinische Zeitschrift», Լայպցիգ, 1892-ից ի վեր և «Byzantinische Archiv», Լայպցիգ, 1898-ից): Այդ ժամանակ արդեն լույս են տեսել Կ. Կրումբախերի՝ մինչ օրս անփոխարինելի մնացող բյուզանդական գրականության ստվարածավալ պատմությունը[2], ինչպես նաև “Kasia” գրքույկը[3], որի ազդեցությամբ Ն. Ադոնցը հեղինակում է իր անդրանիկ բյուզանդագիտական հոդվածը՝ «Կասիա միանձնուհին և հայերը»[4]:

1900 թ. հոկտեմբերին Ն. Ադոնցը տեղափոխվում է Փարիզ, որտեղ ունկնդրում է ևս մի «անմահի»՝ Սորբոնի համալսարանի բյուզանդագիտության ամբիոնի վարիչ, պրոֆեսոր Շառլ Դիլի «Բյուզանդիայի պատմություն» դասընթացը: Երիտասարդ պատմաբանի վրա մեծ տպավորություն է թողնում այդ օրերին լույս տեսած Շ. Դիլի «Հուստինիանոսը և բյուզանդական քաղաքակրթությունը» կոթողային մենագրությունը[5]: 1901-1902 թթ. Ն. Ադոնցը շարունակում է իր ճանապարհորդությունը՝ այցելելով Լոնդոն և Վիեննա, ծանոթանալով ժամանակի հռչակավոր գիտնականների, որոնց

[1] Տե՛ս Г. Л. Курбатов, История Византии (историография), Ленинград, 1975, с. 106-122, И. П. Медведев, Некоторые размышления о судьбах русского византиноведения. — “Исторические записки”, 3 (121), М., 2000, с. 30-37:

[2] Geschichte der byzantinischen Literatur von Justinian bis zum Ende des oströmischen Reiches (առաջին հրատարակություն՝ 1891 թ., երկրորդը, շատ ավելի ընդլայնվածը՝ 1897-ին, Ալբերտ Էրհարդի և Հայնրիխ Գելցերի համահեղինակությամբ):

[3] K. Krumbacher, Kasia, Sitzungberichte der Bayerischen Akad. D. Wiss., Philos.-philol. und histor. Kl., 1897, ss. 305-370:

[4] Տե՛ս «Հանդես ամսօրյա», 1901, № 5-6, էջ 129-132:

[5] Ch. Diehl, Justinien et la civilisation byzantine au 6. siecle, Paris, 1901.



թվում էր նաև քրիստոնեության պատմության այնպիսի մի գիտակ, ինչպիսին էր Ֆրեդերիկ Կ. Կոնիբերը, որը շատ էր կարևորում առարկային վերաբերող հայկական աղբյուրները: Հետզհետե ավելի վճռական է դառնում Ն. Ադոնցի շրջադարձը դեպի բյուզանդագիտություն, ատաղձներ են կուտակվում ապագա մագիստրոսական թեզի համար: Ն. Մառին ուղղված նամակներից[1] պարզվում է, որ թեզի համար նա, երիտասարդությանը հատուկ խիզախությամբ, ընտրել էր «Հայաստանի պատմությունը և հայերի ճակատագիրը Բյուզանդիայում» անծայրածիր թեման՝ ցանկանալով քննության նյութ դարձնել VII-VIII դարերի իրողությունները: Ժամանակի ընթացքում թեման, բնականաբար, մասնավորվեց՝ թեզի խորագիրը սահմանափակվեց VI դարով, այսինքն՝ Հուստինիանոս I-ի օրերով:

1908 թ. Ս. Պետերբուրգում լույս է տեսնում ըստ էության բյուզանդագիտական «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» մենագրությունը[2], որը 1909 թ. ապրիլի 5-ին որպես մագիստրոսական թեզ ներկայացվում է հրապարակային պաշտպանության:

Հայտնի է, որ Ն. Մառը խրախուսում էր հատկապես իր այն սաներին, որոնք զբաղվում էին աղբյուրագիտական, բնագրագիտական, լայն առումով՝ բանասիրական խնդիրներով: Հանգամանք, որ շեշտում է ինքը՝ Ն. Ադոնցը 1909 թ. սկզբներին Գր. Խալաթյանցին ուղղված իր նամակում. «Ձեզ հայտնի է, որ Մառը այսպիսի հարցերով պարապելը վաղաժամ է համարում և գովեստներ նրանից սպասել չի կարելի»[3]: Սակայն սույն աշխատանքը կատարված էր գիտական այնպիսի հմտությամբ, այնպիսի ոգևորությամբ և մտքի թարմությամբ, որ Մառը հիացական կարծիք է հայտնում իր սանի թեզի վերաբերյալ[4]: Իսկ նշանավոր բյուզանդագետ Ա. Ա. Վասիլևը Ադոնցի մենագրությանը նվիրված իր գրախոսականում գիտական հանրությանը շնորհավորում է բյուզանդագիտությունը հարստացնող նոր աշխատության տպագրության առթիվ[5]:

[1] «Նիկողայոս Ադոնցի նամակները Կարապետ Եզյանին և Նիկողայոս Մառին», հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հակոբյանը, «Լրաբեր», ԳԱ հասարակ. գիտ., 1975, № 11, էջ 92-111:

[2] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана. Политическое состояние на основе нахарарского строя, СПб., 1908.

[3] Տե՛ս Պ. Հովհաննիսյան, Նիկողայոս Ադոնցի անտիպ նամակներից, «Բանբեր Երևանի համալսարանի», 1988, № 3, էջ 100:

[4] Տե՛ս Н. Я. Марр, Выступление на защите диссертации Н. Адонца „Армения в эпоху Юстиниана“ (текст выступления и материалы к нему, 1908 г.). - Архив Н. Я. Марра, А-996, հմմտ. В. А. Миханкова, Николай Яковлевич Марр, М.-Л., 1949, с. 165:

[5] А. А. Васильев, “Журнал Министерства народного просвещения”, 1910, февраль, с. 412-418.

* * *

Որպես բյուզանդագետ Ն. Ադոնցն իրեն լիովին դրսևորեց 1920-1930-ական թվականներին՝ նախ Փարիզում բնակվելու (1921-1931 թթ.)[1], ապա՝ Բրյուսելի Ազատ համալսարանում դասավանդելու շրջանում (1931-1940 թթ.)։ Այն ժամանակ, երբ Ն. Ադոնցը տեղափոխվեց Բրյուսել, Բելգիայում արդեն վաղուց գործում էր բյուզանդագիտական մի պատկառելի դպրոց։ 1837 թվականից սկսած այստեղ ճիզվիտ Ցան վան Բոլանդի հետևորդների՝ բոլանդիստների հոգածությամբ լույս է տեսնում ստվարահատոր սրբախոսական մատենաշարը՝ «Acta Sanctorum», իսկ 1882 թ. հետո դրան զուգակցեց նույն առարկային նվիրված «Analecta Bollandiana» գիտական հանդեսը։ Ն. Ադոնցի ժամանակակիցներ էին երկու հռչակավոր բոլանդիստ հայրեր՝ գիտական սրբախոսության հիմնադիր Իպոլիտ Դելեեն, և Պաուլ Պետերսը, որը հատուկ ուշադրությամբ ուսումնասիրում էր արևելյան, այդ թվում նաև հայկական նյութը։

XX դարի սկզբներին Բրյուսելում կազմակերպվեց նաև «Բյուզանդագետների բելգիական ընկերությունը», որը 1924 թվականից սկսյալ հրատարակում է «Byzantion» պարբերականը։ Բրյուսելի Ազատ համալսարանում համբավավոր բյուզանդագետ Անրի Գրեգուարի ջանքերով 1930-1931 թթ. հիմնադրվեց Արևելյան և սլավոնական բանասիրության ու պատմության ինստիտուտը, որն առավելապես զբաղվում էր բյուզանդագիտությամբ։ Ա. Գրեգուարի նախաձեռնությամբ ու շնորհիվ է, որ 1931 թ. նոյեմբերին ինստիտուտում ստեղծվեց հայագիտության ամբիոն, որի վարիչ հրավիրվեց Ն. Ադոնցը։ Բելգիացի հայտնի հայագետ Ժերար Գարիտը վկայում է, որ Ն. Ադոնցն իր բյուզանդագիտական ու արևելագիտական կրթության և հատկապես հայկական աղբյուրների հիանալի իմացության շնորհիվ մեծապես օգտակար եղավ Անրի Գրեգուարին ու նրա գործընկերներին. «Ադոնցի հաստատվելը Բրյուսելում նշանավորվեց հայ-բյուզանդական հարաբերություններին նվիրված բազմաթիվ ծանրակշիռ ուսումնասիրությունների պատրաստմամբ և հրատարակմամբ»[2]։

[1] Այդ ժամանակամիջոցում Ն. Ադոնցը մի շարք հոդվածներ է հրապարակում եվրոպական տարբեր գիտական հանդեսներում. «Revue de l'Orient Chrétien», Paris, 1924, t. 24, 1925-1926, t. 25, 1927-1928, t. 26. «Armeniaca», Leipzig, 1927, fasc. II. «Revue des Études Arméniennes», Paris, 1927, t. VII, 1928, t. VIII. «Byzantinische Zeitschrift», Leipzig, 1929-1930, № 29-30. «Revue des Études indo-européennes», Paris, 1938, t. 1. «Mémoires publiés par de l'Académie royale de Belgique», Bruxelles, 1938 և այլն։

[2] Տե՛ս G. Garitte, Préface, տե՛ս N. Adontz, Études Armeno-Byzantines, Lisbonne, 1965, p. 4, հմմտ. "Новый взгляд на историю Армении", сборник статей, посвященный творчеству Николая Адонца, под ред. Ю. Костаняна, СПб., 2009, с. 111-112։



Պատմաբանը իսկույն ևեթ սկսեց աշխատակցել ինչպես «Byzantion» հանդեսին, այնպես էլ «Annuaire de l'Institut de philologie et d'histoire Orientales et Slaves» տարեգրքին։ Նշված հանդեսներում լույս տեսան նրա բյուզանդագիտական 20-ից ավելի հիանալի ուսումնասիրությունները Հայաստանի և Բյուզանդիայի առանձին անվանի գործիչների ու ընտանիքների մասին, ինչպես, օրինակ՝ Մավրիկիոս, Կոստանդին V, Լևոն V Հայկազն, Վասիլ I, Հովհաննես Չմշկիկ կայսրերին, կայսրուհի Թեոդորային, կեսար Վարդ Մամիկոնյանին, Բուլղարիայի թագավոր Սամուել Հային, Հայոց թագավորներ Աշոտ II Երկաթին և Աշոտ III Ողորմածին, Կիլիկիայի իշխանապետ Ռուբեն I-ին, Տայքի կյուրոպաղատ Դավթին, նշանավոր զորավարներ Նիկեփորոսին և Փիլարտոսին, հայ-բյուզանդական Տարոնացի, Թոռնիկ, Մխիթար, Դալասենոս, Թեոդորոկան ընտանիքներին, հայազգի գիտնականներին (Լևոն Իմաստասեր, Բագրատ աստղաբաշխ և ուրիշներ), բյուզանդացի բանաստեղծուհի Կասիա Միանձնուհուն, «Դիգենիս Ակրիտաս» դյուցազնավեպին և հարակից խնդիրներին նվիրված հոդվածները։

Ն. Ադոնցի դերը բյուզանդագիտության ընդհանուր պատմության մեջ տակավին կարոտ է ուսումնասիրության։ Առայժմ մենք չենք հավակնում ոչ միայն լուծել, այլև նույնիսկ շոշափել նման խնդիր։ Կան, սակայն, անուրանալի փաստեր, որոնց վրա պետք է հրավիրենք ընթերցողի ուշադրությունը։ Նախ, Ն. Ադոնցն առաջին հայ բյուզանդագետն էր։ Մինչ նրա ասպարեզ գալը հայ պատմագիտությունը միայն հպանցիկ աղերսներ է ունեցել բյուզանդագիտության հետ։ Առանձին հարցեր քննարկման նյութ են դարձել հայ ժողովրդի ընդհանուր պատմությանը նվիրված ուսումնասիրություններում (Մ. Չամչյան, Ստ. Պալասանյան են)[1], սակայն չկար մեկը, որ հետաքրքրությունների ծիրով հանդերձ ունենար պատշաճ մասնագիտական պատրաստվածություն և ճանաչված լիներ միջազգային գիտական հանրության կողմից։

Երկրորդն այն է, որ Ն. Ադոնցն ամենայն հնարավորն էր անում, որպեսզի ընտելացնի ժամանակակից բյուզանդագետներին այն հանգամանքին, որ Բյուզանդիային վերաբերող հայկական աղբյուրները ոչ պակաս արժանի են ուշադրության, քան «դասական» եվրոպական կամ արևելյան լեզուներով գրվածները, իսկ երբեմն նույնիսկ նախընտրելի են։ Շեշտելով Ն. Ադոնցի գիտությանը բերած այս նորությունը, Ժ. Գարիտը գրում է. «Անհնար է ձեռնամուխ լինել Եգիպտոսի, Ասորիքի, Հայաստանի կամ Վրաստանի միջնադարյան պատմության ուսումնասիրությանն առանց հիմնվելու

[1] Կ. Տեր-Սահակյանի «Հայ կայսերք Բիզանդիոնի» երկասիրությունը (Վենետիկ, 1905), չնայած խորագրին, գիտական ուսումնասիրություն չէ։

բյուզանդական աղբյուրների վրա: Նմանապես անհնար է շարադրել Բյուզանդիայի պատմությունն առանց հաշվի առնելու ղպտիական, ասորական, հայկական և վրացական աղբյուրները...Ն. Ադոնցը լայնորեն օգտագործում էր հայկական պատմիչներից, որոնց երկասիրությունների բնագրերը բյուզանդագետներից միայն քչերն էին ի վիճակի կարդալ: Armenica non legentur [«Հայերենը չեն կարդալու»] միայն խթանում էր նրա նախանձախնդրությունը»[1]:

Վերջապես, Ն. Ադոնցը անձնվեր պայքարում էր բյուզանդահայերի նկատմամբ այն ծայրահեղ բացասական վերաբերմունքի դեմ, որը հատուկ էր իր ժամանակի որոշ եվրոպական, և հատկապես՝ հույն բյուզանդագետների համար: Բյուզանդիան դիտելով որպես զուտ հունական կայսրություն, այդ պատմաբանները հակված էին անտեսել երկրի կյանքում մյուս ժողովուրդների խաղացած այնքան զգալի դերը: Ադոնցն ապացուցում էր հակառակը. «Բյուզանդիան, - գրում է նա, - ոչ Հռոմեական կայսրություն մը պիտի ըլլա, ոչ Հունական կայսրություն մը: Ան պիտի ձևացնե լայն կազմակերպություն մը համաշխարհային բնույթով, զանազան ցեղերու և լեզուներու պատկանող ժողովուրդների համագործակցության վրա հիմնված, առանց ազգային նախապաշարման»[2]: «Դիգենիս Ակրիտաս» դյուցազներգությանը նվիրված հետազոտությունում նա հստակորեն բանաձևում է իր «հավատամքը». «Չնայած այն փաստին, որ Բյուզանդիայի պաշտոնական լեզուն հունարենն է, այն ամենևին էլ հույների կայսրությունը չէր»: Ուստի պետք է հրաժարվել ազգային նախապաշարումներից և մեծամտությունից, և ի վերջո ընդունել, որ «Բյուզանդիան իր վեհությամբ պարտական է իր կազմի մեջ ներգրավված ժողովուրդների արդյունավոր համագործակցությանը: Կայսրությանը դրանցից յուրաքանչյուրի մատուցած ավանդը և ծառայությունները որոշելը կնպաստի վերջինիս բնույթի և նրա քաղաքակրթությունն ավելի լավ հասկանալու խնդրին»[3]: Այլ առիթով նա դարձյալ շեշտում է. «Բյուզանդականությունը, ինչ որ զանազանվում էր իր նախորդ քաղաքակրթությունից, պարտական է այլևայլ ազգերի միահամուռ գործակցության միևնույն պետական օղակում: Որոշել այս կամ այն ազգային տարրի բերած նպաստը՝ նշանակում է լուսաբանել, հասկանալ բյուզանդականությունը»[4]: Հույն պատմաբանները,- գրում է Ադոնցը,- շարունակ մի տեսակ նախապաշարմունքի զոհ են դարձել. նրանք կարծում են, որ Բյուզանդիան հույների կողմից կառուցած շենք էր, իսկ հայերն այնտեղ թափանցել ու

[1] G. Garitte, p. 5-6.
[2] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Բ, Երևան, 2006, էջ 48:
[3] Նույնը, էջ 157-158:
[4] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ա, Երևան, 2006, էջ 438:



հաստատվել են «որպես արկածախնդիրներ, որպես բախտի չփացած զավակներ, որպես թափառական ասպետներ, որոնք իրենց փառքն էին փնտրում մեծ ճանապարհներին: Ավելի սխալ բան հնարել հնարավոր չէ: Եթե հույները կայսրության անհերքելի տերերն էին լեզվի և քաղաքակրթության միջոցով, ապա հայերը իրենց ստեղծարար մտքի և իրենց ազգին հատուկ ռազմական հանճարի շնորհիվ գտնվում էին այն ազգերի շարքում, որոնք ամենամեծ նպաստն էին մատուցել այն պահպանելու գործում»[1]: Հետևաբար, «հայերը Բյուզանդիային նույնքան հարազատ էին, որքան և հույները: Կայսրությանը մատուցած իրենց ծառայություններով և նվիրվածությամբ, ինչպես նաև իրենց փայլուն գործունեությամբ ու անօրինակ քաջությամբ, նրանք հանդես են գալիս իբրև Բյուզանդիայի պես բարդ կառույցի իսկական կերտողներ»[2]: Իրոք, հայերին առաջնակարգ դեր է բաժին ընկել. Բյուզանդիայի պատմության ամենաակնառու հերոսները կամ ծնունդով, կամ ծագումով հայեր էին: Հայերի խաղացած դերի մասին առավել վճռորոշ և ճշմարիտ վկայությունը տրամադրում են ոչ թե ազգայնամոլ կամ պատմության կեղծարար ուսումնասիրողներն իրենց նեղմիտ մոտեցումներով, այլ ինքը՝ Բյուզանդիայի պատմությունը[3]: Բյուզանդական սկզբնաղբյուրների բարեխիղճ և անկողմնակալ ընթերցումը ցույց է տալիս, որ «Հուստինիանոսի օրից և նրա քաղաքականության հետևանքով կայսրության դռները լայն բացվեցին հայության առաջ, առավելապես տիրող դասի, ազնվականության: Իրար ետևից քաշվեցին արևմուտք մանավանդ Արշակունի և Կամսարական տան ներկայացուցիչները:

Արտավան և Հովհաննես Արշակունիք, Ներսեհ, Հրահատ և Իսահակ Կամսարական երեք եղբայրներ, Գլակ, Արտավազդ, Վարազ, մի ուրիշ Հովհաննես, այլև Արշակ, Արտաշիր, Քանարանգես - ահա հայ ասպետության այն շարանը, որ իրենց այրուձիով բյուզանդական զորքի զարդն էին կազմում Հուստինիանոսի օրով: Եվ հռչակավոր Ներսեսը, որ Հուստինիանոսի պետության իսկական սյունն էր:

Հայ անունն արդեն դուրս էր եկել իր նեղ ձորերից ու կիրճերից և թնդում էր մեծ պետության ծավալուն տարածության մեջ:

Հայությունը մի գետ է, որի ջրերը ոռոգում են ոչ միայն իր հարազատ հողն ու անդաստանը, այլև թավալում են հուժկու ալիքներ դեպի ընդհանուր քաղաքակրթության օվկիանոսը:

[1] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ե, Երևան, 2012, էջ 83, 173-174 (այսուհետև՝ աստ):
[2] Նույնը, էջ 83:
[3] Նույնը, էջ 173:

Արտավան, Ներսես և նրանց շուրջը գործող հայ իշխանների պարսը, առաջին մեծ ալիքներ էին, որ զարկեցին բյուզանդական արքունիքի պատերին:

Հայաստանի լեռների այդ վայրի ծաղիկները պատվավոր տեղ գրավեցին բյուզանդական շքեղության մեջ»[1]:

Իսկ արդեն VII դարից սկսած «մենք տեսնում ենք հայերի պայքարը կայսերական գայիսոնի համար: Համարյա յուրաքանչյուր կայսր ունեցել է իր հայ մրցակիցը: Մենք այստեղ թվում ենք միայն վկայված փաստեր. 635 թ. Վահան զորավարը կայսր հռչակվեց Հերակլի փոխարեն, 644 թ. Վալենտինոս Արշակունին ապստամբեց Կոստանդ II-ի դեմ, 668 թ. Մեզեզիոս (հայ. Մժեժ) զորավարը կայսր հռչակվեց Կոստանդին IV-ի փոխարեն, Փիլիպպիկոս Վարդանը թագավորել է 711-713 թթ., Արտավազդ կյուրոպաղատը՝ 742 թ., Ալեքսիոս Մուզելե զորավարը՝ 790 թ., 803 թ. կայսր է հռչակվել Վարդան մոնոստրատեգոսը, 808 թ. Արշավիր քվեստորը, 813-820 թթ. գահը զբաղեցրել է Լևոն Հայկազնը, Թովմա Ապստամբը՝ 821-822 թթ., Մամիկոնյան իշխանուհի Թեոդորան կայսրուհի էր 842-857 թթ., Վարդասն ամենակարող էր 856-866 թթ., վերջապես Վասիլը թագավորել է 867-886 թվականներին»[2]: Իսկ ինչպես հայտնի է, և ինչպես միահամուռ ընդունում են բոլորը, Բյուզանդական կայսրությունն իր զինվորական ու մշակութային մեծության գագաթնակետը բարձրացավ Վասիլի հիմնադրած Մակեդոնական փառավոր հարստության օրոք՝ հարստություն, որն «իրապես հայկական էր»[3]:

Դեռևս Ադոնցից առաջ ֆրանսիացի նշանավոր պատմաբան Ալֆրեդ Ռամբոն (1842-1905) Բյուզանդիայի պատմությանը նվիրված իր հայտնի ուսումնասիրությունում[4] շեշտել էր հայերի այդ դերը՝ գրելով, թե IX-X դարերի ընթացքում հայերն արդեն տեր էին դարձել կայսրությանը և ամեն տեղ հայեր միայն կտեսնվեին: Առանց հայազնի Վասիլին խլամությունը Եվրոպայի վրայով պիտի անցներ, քարուքանդ անելով ամեն ինչ: Վասիլ մեծագործ կայսրի հետ ասպարեզ բարձրացան նաև այնպիսի հզոր հայ ընտանիքները, ինչպիսիք էին Լեկապենոսներ, Գուրգուասներ, Չմշկիկներ, Փոկասներ, Սկլերոսներ, որոնք «իրենց հերոսական ժեսթով [իմա՝ սխրանքներով – Պ. Հ.] ստեղծեցին մեծ դյուցազներգությունը, հավիտենական փառքը Բյուզանդիոնի»[1]: Ա. Ռամբոյին երկրորդում է Հ. Գելցերը. «Հայոց ազգի քաջ և խելացի որդիները Արևելահռոմեական պետության (այսինքն՝ Բյուզանդիայի – Պ. Հ.) թե՛ բարձր զինվորական շրջաններում և թե՛ կայսերական դիվանում արժանացել էին ամենաազդեցիկ և ղեկավարող պաշտոնների և վարում էին ամենաարժանավոր եղանակով»[2]: Ամենաերևելի բյուզանդագետներից մեկը՝ Շառլ Դիլըստիպված էր խոստովանել. «Հայ ազնվականությունը հաճույքով էր ծառայության մտնում կայսերական բանակ, և այդ արկածախնդիրներից ոմանց հաջողվեց հասնել փայլուն դիրքերի: Բյուզանդիան Հայաստանին է պարտական բազում լավագույն զորավարների, արտակարգ կառավարիչների, մինչև անգամ շատ կայսրերի համար. նրանցից էին՝ Հերակլեոսը VII դարում, Լևոն Հայկազնը IX դարում, Ռոմանոս Լակապենոսը և Հովհաննես Չմշկիկը X դարում: Չպետք է մոռանալ նաև հայազգի հրաշալի զինվորներին: X դ. հայկական գնդերը կայսրության լավագույն զորամիավորումներից էին»[3]:

Այնուհանդերձ, Ն. Ադոնցի նպատակը չի եղել միայն բյուզանդական այս կամ այն գործչի հայկական ծագման հարցի քննարկումն ու պարզաբանումը: Ականավոր պատմաբանը խորհում էր պատմական կատեգորիաներով՝ երբեք տուրք չտալով ազգայնամոլական կոնյունկտուրային: Նրան հետաքրքրել է շատ ավելի կարևոր մի պատմական երևույթ՝ հայ ժողովրդական լայն զանգվածների և մասնավորապես նախարարական ընտանիքների արտագաղթի առաջին (V-VII դդ.) և երկրորդ (VII-X դդ.) փուլերը, երբ, ինչպես գրում է Կ. Ն. Յուզբաշյանը, «լքելով հայրենիքը, հայ ազատանին ապաստան է գտնում բյուզանդական գահի շուրջը և փոխելով դավանանքը, դառնում բյուզանդական վերնախավի կարևոր բաղկացուցիչ տարրը: Այսպիսով, նա (Ադոնցը – Պ. Հ.) կարողանում է երևան հանել պատմական մի երևույթ, որը հավասար չափով կարևոր է Հայաստանի ու Բյուզանդիայի արտաքին հարաբերությունները և ներքին կյանքը ուսումնասիրելու համար»[4]:

Հայ-բյուզանդական հարաբերություններում շրջադարձը սկսվեց այն պահից, երբ կայսրությունը XI դարի կեսերից սկսեց վարել շեշտված հայահալած քաղաքականություն: Նախ սկսեցին հալածել բոլոր այլադավաններին և առաջին հերթին՝ հայերին: Դիպուկ է նկատել Ն. Ադոնցը, որ «հանդուրժողականությունը քրիստոնեական մեծ կայսրության առաքինություն-

[1] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ա, էջ 216-217:
[2] Նույն, էջ 173:
[3] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Բ, էջ 149: «Մակեդոնական հարստության հայկական ծագման մասին չի կարելի կասկածել», - անվարան պնդում է գերմանացի պատմաբան Հայնրիխ Գելցերը (տե՛ս Հ. Գելցեր, Համառոտություն բյուզանդական կայսրերի պատմության, Վաղարշապատ, 1901, էջ 215):
[4] A. Rambaud, L'Empire grec au X siècle. Constantin Porphyrogénète, Paris, 1870.



[1] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Բ, էջ 49-50:
[2] Հ. Գելցեր, նշվ. աշխ., էջ 215:
[3] Շ. Դիլ, Բյուզանդիայի պատմության հիմնախնդիրները, Երևան, 2005, էջ 134:
[4] Կ. Ն. Յուզբաշյան, Նիկողայոս Ադոնցի գիտական ժառանգությունը, տե՛ս «Պատմաբանասիրական հանդես», 1962, № 4, էջ 124:

ներից չէր»: Հայերի նկատմամբ գործադրվող դավանական ու ազգային բռնությունները ընդունել էին այնպիսի ձևեր, որոնք «ամենևին պատիվ չէին բերում խելամիտ քաղաքականությանը: Հեռու լինելով իր նպատակին հասնելուց՝ այն, ընդհակառակը, հրահրել է վճռական հակազդեցություն: Իր իրավունքները, իր և իր ժողովրդի գոյությունը պաշտպանելու համար՝ Հայոց եկեղեցին զինվել է»: Հետևանքները ողբերգական եղան հենց Բյուզանդիայի համար: Հայերի դեմ կայսրության հռչակած պայքարը «իր իսկ համար ունեցել է կործանարար հետևանքներ: Այն հայերին խռովելու էր և վանելու կայսրությունից, դրդելու նրանց կենտրոնանալ Տարոնում անկախության դրոշը պարզելու գաղափարի վրա: Ուստի կայսրությունը միայն ցամաքեցրել է դարեր շարունակ իր զինվորական փառքն ապահովող աղբյուրը»[1]: Մյուս կողմից՝ Բյուզանդիան անհեռատեսորեն ջանք չի խնայել կործանելու հայկական պետականության բոլոր նշանավոր կենտրոնները (Տարոն, Տայք, Վասպուրական), մասնավորապես Բագրատունիներինը՝ Անիում և Կարսում: Հայերի դեմ Բյուզանդիայի վարած անմիտ քաղաքականությունը հատկապես «ավելի շեշտակի է դառնում Դիոգենեսի թագավորության ընթացքում, իսկ խաչակրաց արշավանքների ժամանակաշրջանում ավարտվել է լիակատար խզումով»[2]: Արդյունքը եղավ այն, որ հայերի հոսքը դեպի Կոստանդնուպոլիս նվազեց և ապա ընդհանրապես դադարեց: Եվ «Բյուզանդիոնը այլևս չտեսավ ժայթքիլն այն աղբյուրին, որմէ իր մեջ հոսած էին այնքան կենսական ուժեր և զոր ինքն իսկ ցամաքեցուցած էր»: Կայսրության ծոցի մեջ հայ-հույն համերաշխության խզումը,- եզրակացնում է պատմաբանը,- «կնշանակե այն թվականը, երբ Բյուզանդիոն սկսավ սահիլ դեպի անկում»[3]: Ն. Ադոնցն առաջինը չէր, որ եկել էր նման պատասխանատու եզրակացության: Ինքը՝ Շ. Դիլն էր, որ ավելի վաղ ստիպված էր խոստովանել. Հայաստանի բյուզանդական նվաճումը, «անշուշտ, մեծ հաջողություն էր, որը նպաստեց կայսրության թե՛ տարածքի, թե՛ հեղինակության բարձրացմանը, սակայն այդ հաջողությունը թերևս ավելի երևութական էր, քան իրական, քանզի Հայաստանի բռնակցումով վերացավ մի միջանկյալ պետություն, որ խանգարում էր արաբական և բյուզանդական աշխարհների անմիջական շփմանը»[4]: Ճիշտ է նկատել Հր. Մ. Բարթիկյանը, որ խոսքն այստեղ պետք է վերաբերեր ոչ այնքան արաբական աշխարհին, որքան թուրքական. «Բյուզանդական դիվանագիտության կատարյալ ֆիասկոն երևաց XI դարի սկզբին, երբ նա չնկատեց, թե ինչ է կատարվում

[1] Անտ, էջ 237-238:
[2] Նույնը, էջ 514:
[3] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Բ, էջ 51:
[4] Շ. Դիլ, նշվ. աշխ., էջ 135:



Կասպից ծովից արևելք, չնկատեց վերահաս թուրքական վտանգը: Վերացնելով հայոց պետականությունը և լուծարելով հայկական բանակը, նա փաստորեն թուրքերի առաջ լայն բացեց Հայաստանի, ապա և բյուզանդական կայսրության դռները»[1]:

Ճիշտ է նաև այն, որ հայերի նկատմամբ հույների անզուսպ ատելության պատճառը միայն երկու ժողովուրդների դավանական տարբերությունը չէր, այլ կայսրության քաղաքական կյանքում գերիշխանության հասնելու համար մղվող անզիջում պայքարը: Ատելության պատճառը, եզրափակում է Ն. Ադոնցը,- իրավամբ «հույների հետ հայոց հաղթանակող մրցակցությունն էր ռազմական և տնտեսական կյանքում»: Վերոնշվածների լույսի ներքո պատահական չպետք է համարել հայերին վերաբերող IX դարի բյուզանդական բանաստեղծուհի Կասիա Միանձնուհու պարսավագրի ատելությամբ լի հետևյալ տողերը՝

Հայոց զարհուրելի ազգը
պատիր է և չարաբարո վերին աստիճանի.
այլև խելացնոր, փոփոխամիտ և նախանձոտ,
խիստ փքված և լի նենգությամբ[2]:

Ն. Ադոնցը համոզված է, որ Կասիա Միանձնուհու սույն տողերը անհատական տեսակետ չէ, այլ մի «ընդհանուր հայացք, որ ունեն բյուզանդական հույները հայոց վերաբերմամբ. ներշնչված այն չարախնդրությամբ և նախանձով, որով նրքա նայում էին հայերի փայլուն հաջողության հասարակական և քաղաքական կյանքի ամեն ասպարեզներում»[3]:

Կասիա Միանձնուհին միակը չէր: Հայերի նկատմամբ նման վերաբերմունք են որդեգրել նաև բյուզանդական այլ մատենագիրներ, անգամ նոր ժամանակների հույն և եվրոպացի որոշ ուսումնասիրողներ: Այդ կապակցությամբ է, որ Ն. Ադոնցը մատնանշում է հույն բյուզանդագետ Կ. Սաթասի միտումնավոր տեսակետը Բյուզանդիայի կյանքում հայերի խաղացած դերի մասին: «Արաբների դեմ վարած իր պատերազմների ժամանակ Հերակլիոս կայսրը փոփոխություններ մտցրեց ակրիտասների (սահմանապահ – Պ. Հ.) գնդի մեջ, բայց այստեղ, դժբախտաբար, սողոսկեցին բազմաթիվ վարձկան ուրացողներ: Մակեդոնական հարստությանը պատկանող կայսրերը սահմանների պահպանությունը վստահեցին հայերին, որոնք, սակայն, իրենց նկատմամբ ցուցաբերած վստահությունը չարդարացրեցին:

[1] Հ. Բարթիկյան, Շառլ Դիլ, տե՛ս Շ. Դիլ, նշվ. աշխ., էջ XXIV-XXV:
[2] Անտ, էջ 45:
[3] Անտ, էջ 47:

Այդ վարձկանները Բյուզանդիայի նկատմամբ չհատուցված հին քեն ունեին, որ հաճախ վտանգավոր կերպով բոցավառվում էր և մենք բազմիցս տեսնում ենք նրանց դաշնակցած հակառակորդներին (նկատի ունի արաբներին – Պ. Հ.), որոնց դեմ վարձկանները պետք է, որ հակադրեին անառիկ մի պատնեշ»[1]:

Վճռականորեն մերժելով «Դիգենիս Ակրիտաս» դյուցազներգության հրատարակիչներ Կ. Սաթասի և Է. Լեգրանի նման մտայնության դրսևորումները՝ Ն. Ադոնցը նշում է, թե ոչինչ չի արդարացնում այդպիսի անհարիր կարծիքը. «սա անարդարացի և թյուր կարծիք է, ուր զուտ անձնական զգացմունքները գերակշռում են ողջախոհության վրա»[2]: Պատճառը այն է, որ Կ. Սաթասը և Է. Լեգրանը, ինչպես նաև այլ ուսումնասիրողներ մի տեսակ նախապաշարմունքի զոհ են դարձել, որի հետևանքով ճշմարտությունը կեղծվել է, իսկ պատմական հետազոտության համար անհրաժեշտ անկողմնապահությունը տեղի է տվել հելլենական հայրենասիրության պաքսին[3]:

Անշուշտ, Ն. Ադոնցի բյուզանդագիտական հետազոտությունները քարմ հոսանք էին, որ դրական լիցք հաղորդեցին կատարվելիք ուսումնասիրություններին: Բայց հանուն արդարության պետք է նաև նշել, որ ուսումնասիրողները նրա երկերում գտնում են մի շարք անճշտություններ. ոչ արդարացված ստուգաբանություններ, ոչ ճշգրիտ մեջբերումներ և հղումներ, կամ երբեմն անհրաժեշտ հղումների բացակայություն, առանձին շտապողական եզրակացություններ և այլն[4]: Պետք է նաև հաշվի առնել, որ Ն. Ադոնցի ուսումնասիրությունները իր դարի արգասիքներ են, իսկ գիտությունը շարունակ զարգանում է, և նոր գիտելիքի հետ բերում է նաև նոր տեսություններ:

Սակայն այս ամենը, ինչպես ճիշտ նկատել է Ժ. Գարիտը, բնավ չի նսեմացնում Ն. Ադոնցի գիտական ժառանգության նշանակությունը. «Ամբողջության մեջ Ադոնցի հայ-բյուզանդական ուսումնասիրությունները և նրա եզրակացությունները անուրանալի են և ընդունվել ու ըստ արժանվույն են գնահատվել Բյուզանդիայի ընդհանուր պատմությանը նվիրված ուսումնասիրությունների հեղինակների կողմից»[5]: Դեռևս 1933 թ. Ադոնցի վաստակի գնահատման խոսքում Ա. Գրեգուարը մատնանշել էր. «Այն պահից ի վեր,

[1] Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ե, էջ 98: «Վարձկան» եզրը օգտագործում է նաև Հ. Գելցերը (տես Հ. Գելցեր, նշվ. աշխ., էջ 134):

[2] Նույն տեղում:

[3] Նույնը, էջ 83:

[4] Տե՛ս «Corpus Scriptorum Christianorum Orientalium», vol. 132, Louvain, 1952, p. 393-394; «Le Muséon», t. 71, 1958, pp. 256-257, «Byzantinische Zeitschrift», t. 35, pp. 489-490; t. 37, 1937, pp. 219-220; t. 39, 1939, pp. 257-258 և այլն:

[5] G. Garitte, p. 4-5:



ինչ Ադոնցը մեզ հետ է, Բյուզանդիայի պատմությունը դիտարկվում է նոր լույսի ներքո: Լուծումների ակնհայտ պարզությամբ ու բերած նոր փաստերի առատությամբ նրա ուսումնասիրությունները հիացրել են մասնագետներին և ապացուցել հայագիտության անվերապահ կարևորությունը, որ, ի մեծ ափսոսանք, բյուզանդագետները աչքաթող էին արել»[1]: Ավելի ուշ, Ադոնցի հիշատակի առթիվ գրված երախտիքի խոսքում Գրեգուարը շեշտել է. «Առանց վարանելու, որ կարող է դիտվել որպես ազգայնական արմենոմանիա, աներևակայելի ստեղծագործական երևակայությամբ, հետևողականությամբ ու եռանդով … Ադոնցը Բյուզանդիայում, նույնիսկ բուլղարների մոտ փնտրում էր ու գտնում հայերի, … որոնց հայկական ծագման վերաբերյալ բյուզանդագետների բազմաթիվ սերունդներ հետևողականորեն աչք էին փակում, … հայեր, որոնց հանճարն է բազմաթիվ դեպքերում փրկել, ոտքի կանգնեցրել, ամրապնդել ու երիտասարդացրել մի կայսրություն, որն ինչպես Ադոնցն էր նախընտրում, որոշ դարաշրջաններում իրավացիորեն արժանի է կրելու Բյուզանդա-հայկական անունը: Իսկ մենք, ավա՜ղ, հանիրավի ննջաժպտացել ենք այդ լսելով»[2]:

* * *

Ն. Ադոնցի երկերի սույն հատորում զետեղված են «Գալուստ Կիւլպենկեան հիմնարկութեան» հայկական մատենաշարով 1965 թ. Լիսաբոնում լույս տեսած պատմաբանի բյուզանդագիտական ժառանգության ամփոփող ժողովածուի բոլոր 18 ուսումնասիրությունները[3], որոնք ֆրանսերենից

[1] Տե՛ս «Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales et Slaves», t. 3 (1933), Bruxelles, 1935, p. 630-631:

[2] Նույն տեղում, t. 7 (1939-1944), New York, 1944, p. 503:

[3] Բյուզանդագիտական նշանակություն ունեցող նյութեր կան նաև պատմաբանի չհրապարակված ձեռագրերում, որոնք գտնվում են նրա բնկրության քողոնում և, թեև սևագիր ու անավարտ, զգալի հետաքրքրություն են ներկայացնում: Տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, Պրոֆ. Նիկողայոս Ադոնցի թղթեր, 1) «Հուստինիանոսի ժամանակաշրջանի նշանավոր հայերը»՝ ա) Արտավազդ, բ) Արտավան Արշակունի, գ) 548 թ. դավադրությունը, դ) Ներսես և Իսահակ Կամսարականներ, ե) Վարազտիրոց, զ) Հայկական այրուձին Իտալիայում, է) Իսահակ Կամսարական ու նրա բանակը, ը) Գլակ Հայը, թ) Հովհաննես Արշակունի (ռուսերեն, ձեռագիր, անավարտ, 70 էջ), 2) «Հայոց վերջին Արշակունիների ճակատագիրը. Արշակունիները Բյուզանդիայում» (ռուսերեն, ձեռագիր, բազում էջեր թափված, անկանոն, խառնիխուռն տարբեր թղթածրարներում), 3) «Հայ-բյուզանդական հարաբերությունների պատմության ուսումնասիրության անհրաժեշտությունը. արդի հայագիտության և բյուզանդագիտության զարգացման հեռանկարները» (ռուսերեն, ձեռագիր, անավարտ, 10 էջ), 4) «Հայ-մակեդոնական հարստության պատմությունը» (հայերեն, ձեռագիր, խառնիխուռն թղթեր, նոթեր, նյութեր. կանոնավոր շարադրանքը միայն «Վասիլ Հայկազն» (էջ 28-53, 59-64), անավարտ, 80 էջ), 5) «Դիգենիս Ակրիտաս հայ-բյուզանդական էպոսը» (ռուսերեն, ձեռագիր, անավարտ, 46 էջ), 6) «Փիլարտոս և Գող Վասիլ» (ֆրանսերեն, ձեռագիր, անավարտ, նյութեր, 23 էջ), 7) «Բյուզանդիայի

թարգմանել է Ա. Բ. Շահումյանը: Հատորում տեղ են գտել նաև հայերենով լույս տեսած «Կասիա Միանձնուհին և հայերը»[1] և «Հայ գիտական դեմքեր Բյուզանդիայում»[2] երկասիրությունները: Հատորի նյութերից երկուսը՝ «Դավիթ Կյուրոպաղատ» և «Լիկանդոսի բանակաթեմը հայ-բյուզանդական հարաբերություններում», որ հանվել է Ն. Ադոնցի բեյրության թողոնից, ֆրանսերենից Վ. Ա. Պողոսյանի թարգմանությամբ նախապես լույս են տեսել գիտական մամուլում[3]: Հավելվածում անհրաժեշտ համարեցինք տեղադրել «Լազիկա և Բյուզանդիա» արխիվային չտպագրված նյութը[4] և Ա. Գրեգուարի և Ն. Ադոնցի համատեղ հեղինակությամբ լույս տեսած «Նիկեփորոս Ծռավիզ-Ծանրավիզ» հետաքրքրական հոդվածը, որի «իսկական հեղինակը», ինչպես հավաստում է Գրեգուարը[5], Ադոնցն է (ռուսերենից և ֆրանսերենից թարգմանեց Օ. Ս. Վարդազարյանը): Ա. Բ. Շահումյանի և Վ. Ա. Պողոսյանի թարգմանությունները բուն բնագրերի հետ համեմատել և անհրաժեշտ ճշգրտումներ է կատարել Օ. Ս. Վարդազարյանը: Նրան են պատկանում նաև հին հունարեն և լատիներեն մեջբերումների հայերեն թարգմանությունները, ինչպես նաև որոշ ծանոթագրությունները և ցանկերը:

Այսպիսով հատորում ընդգրկված է 24 միավոր, որից 22-ը Մայր Հայրենիքում լույս են տեսնում առաջին անգամ: Հոդվածների հերթականությունը թելադրված է քննարկվող պատմական հատվածների ժամանակակարգով: Ծանոթագրությունների համարները նշվում են ծանոթագրվող հատվածի կամ բառի կողքին՝ կլոր փակագծերի մեջ:

Ն. Ադոնցի երկերի սույն՝ հինգերորդ հատորի հրատարակությամբ ավարտվեցին մեծանուն պատմաբանի գիտական ժառանգության հիմնական մասի լույս ընծայման աշխատանքները: Իրականացավ հայագետների բազում սերունդների նվիրական երազանքը՝ Ն. Ադոնցի ամենակարևոր երկասիրությունները ի մի բերվեցին և հրատարակվեցին հայերեն լեզվով: Նման բարեբախտությունը հնարավոր դարձավ միայն Լիսաբոնի «Գալուստ Կիւլպենկեան հիմնարկութեան» հայկական բաժնի և նրա բազմարդյուն տնօրեն դոկտոր Զավեն Եկավյանի նախաձեռնության և անձնվեր օժանդակության, Երևանի պետական համալսարանի հրատարակչության տնօրեն Պերճ Ստեփանյանի հետևողական նախաձեռնությունության, Հրաչ Բարթիկյանի, Բաբկեն Հարությունյանի, Արշակ Մադոյանի, Դավիթ Գյուրջինյանի, Ռուբեն Ղազարյանի, Գևորգ Մադոյանի, գիտական աշխատողներ Քրիստինե Յախշյանի, Գայանե Այվազյանի և հատկապես փիլիսոփայական գիտությունների թեկնածու Օլգա Վարդազարյանի անշահախնդիր օգնության շնորհիվ:

---

հայազնի կայսր Լևոն V-ի ծագման մասին» (ֆրանսերեն, ձեռագիր, անավարտ, 20 էջ) և այլն: Հույս ունենանք, որ սրանք մի օր ևս կարժանանան պատշաճ հրատարակության:

[1] Տե՛ս «Հանդես ամսօրյա», 1901, № 5-6:

[2] Տե՛ս Ն. Ադոնց, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948:

[3] Տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 2002, № 3; «Էջմիածին», 2006, № 10-11:

[4] Տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, Պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, գզրոց Ժ, թղթածրար Ա-8:

[5] Նույն, էջ 533, ծան. 1:



Առանձնահատուկ երախտագիտությամբ ենք նշում Համազգայինի Բեյրութի գրական պահոցի աշխատակիցների, տեղի Հայագիտական բարձրագույն հիմնարկության տնօրեն Երվանդ Փամպուկյանի, աշխատակցուհի Արփի Էթիեմեզյանի, հանգուցյալ Հրաչ Տասնապետյանի՝ Ադոնցի թողոնի ձեռագիր նյութերին ծանոթանալու հնարավորություն ընձեռելու համար: Առանց այդ օժանդակության հինգհատորյակի հրատարակությունն իրականացնելու ուղղությամբ մեր գործադրած ջանքերը հաջողությամբ չէին պսակվի:

*ՊԵՏՐՈՍ Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

# ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅԻ ԿԱՅՍՐԵՐ ՄՈՐԻԿԻ ԵՎ ԿՈՍՏԱՆԴԻՆ V-Ի ՄԱՍԻՆ

## 1. ՄՈՐԻԿ ԿԱՅՍՐԸ[1]

Հայ պատմիչ Կիրակոս Գանձակեցին մի հետաքրքիր պատմություն է մեզ ավանդել Մորիկ կայսեր գահակալության մասին: «Եւ ապա թագաւորեաց Տիբեր,- պատմում է նա,- և յետ նորա Մորիկ: Զսա ասեն ի Հայոց, յՕշական գեղջէ, և այլք թէ ի Տարօնոյ, աղքատութեան աղագաւ երթեալ ի Կոստանդնուպօլիս, և անդ ի դիպուածէ իմեքէ բարեբախտիկ եղեալ՝ թագաւորեաց այսպիսի պատճառաւ: Եղև մեռանիլ Տիբերի կայսեր, և մեծամեծքն ընդ միմեանս հակառակեալ, ոչ հնազանդելով միմեանց. և էր մարտ անհնարին ի մէջ նոցա, որպէս թէ ո՛ յաղթիցէ՝ թագաւորեսցէ: Իսկ պատրիարքն ի մէջ անցեալ համոզեաց զնոսա արկանել վիճակս, և ում հասանիցէ՝ նմա ունել զթագաւորութիւնն, և այլոցն հնազանդել. և զայս (արարին) երդմամբ՝ և ամենեցուն մուրհակաւ, և էր վիճակն այսպիսի, ընդ լուսանալն բանալ զաւագ դուռն քաղաքին և զայր՝ որ պատահիցէ անդ, թէպէտ կարի յանարգաց իցէ, ածել ի պալատն արքունի, և իշխանացն նստել ամենեցուն, և յո՛յր գլուխ դիցէ զթագն, նմա ունել զթագաւորութիւնն: Հաւանեցան ամենեքեան և դադարեցին ի խռովութենէ. և իբրև եհաս ժամն ժամադրեալ, բացեալ զդուռն քաղաքին, տեսեալ զՄորիկ առ դուրսն՝ բարձեալ ցողուն ինչ առ ի վաճառել և լնուլ զպէտս իւր, և յափշտակեալ զօրացն՝ տարան ի բաղանիս և լուացեալ զնա՝ զգեցուցին նմա հանդերձ ազնիւս, և տարան զնա յարքունիսն: Եւ իբրև ասացին նմա վասն որոյ կոչեցաւն նա, պահանջեաց ի նոցանէ գիրս և երդմունս, զի մի՛ սպանցեն զնա մնացեալքն ի թագէն: Եւ նոքա երդուան նմա սաստիկ, զի անհոգ լիցի յայնմանէ. բազմեալ էին ամենեքեան սնոտի յուսով, և իւրաքանչիւր ոք անձին իւրում ասէր թէ լիցի:

---

[1] Մորիկի ծագման հարցը քննել է հայր Կ. Տեր-Սահակյանը իր՝ Բյուզանդիայի հայ կայսրերի մասին աշխատության մեջ [«Հայ կայսերք Բյուզանդիոնի», հատ. Ա-Բ, Վենետիկ, 1905], որը գրախոսել է Ա. Մերկը. «Byzantinische Zeitschrift», Bd. XIX, 1910, S. 549: Բյուզանդական և հայկական տեղեկությունները համաձայնեցնելու նպատակով Տեր-Սահակյանը միացել է հայր Ղ. Ալիշանի կարծիքին այն հարցում, որ Մորիկի հայրը հավանաբար բյուզանդացի էր, իսկ մայրը՝ հայուհի: Տե՛ս նաև **E. Stein**, Studien zur Geschichte des byzantinischen Reiches, Stuttgart, 1919, S. 85, n. 14:

Կայր աթոռն, և ի վերայ նորա թագն, և կօշիկքն՝ հուպ առ նմին: Անց Մօրիկ ի մէջ, և առեալ զթագն՝ սկսաւ շրջել ընդ բազմեալսն: Իբրև եկն առ առաջինն՝ ուրախացաւ նա, բայց տրտմեցաւ երկրորդն՝ իբրև եթող զնա, դարձեալ կալաւ զնա տրտմութիւն, և զընկերն նորա ուրախութիւն. և այսպէս ըստ կարգի, իբրև շրջեցաւ նա երկիցս և երիցս, տրտմեցոյց զնոսա և ուրախացոյց: Անց նստաւ ի վերայ աթոռոյն, և եդ զթագն ի գլուխն իւր, և տեսեալ ամենեցուն սխրացան: Բայց զի երդուեալ էին նմա, թէ յո՛յր գլուխ և դնիցես դու՝ մեք հնազանդիմք նմա, մատուցեալ պատրիարքն՝ ագոյց զկօշիկսն յոտս նորա. և երկիր եպագ նմա, նոյնպէս ամենեքեան երկրպագեցին և ասեն՝ կեցցէ՛ արքայ Մօրիկ: ...

Ասեն զնմանէ՝ թէ առաքեաց առ հայր իւր թողուլ զպանդխտութիւնն և գալ վայելել ի փառս նորա. և եթէ ոչ՝ խրատ առաքել նմա, որով կարասցէ վարել զթագաւորութիւնն. և երթեալ սպասաւորացն, գտին զնա՝ զի դարմանէր պարտէզ, և ասացին նմա զհրամանն արքունի. նա պատասխանի ետ և ասէ, թագաւորի հայր ես ո՛չ վայել եմ, և ինքն սկսաւ զմեծամեծ կաղամբսն՝ որ ի պարտիզի անդ, արմատախիլ առնել, կտրել զգլուխսն և ծածկել ընդ հողովն, և զմանունսն փայփայել և յօրինել. և արանցն տեսեալ զայն՝ համարեցան զնա բախած. և թողեալ ի բաց գնացին: Իսկ զոր ինչ արար նա, նոքա ոչ գիտացին. և գնացեալ առ թագաւորն՝ պատմեցին զամենայն, և զյիմարութիւնն՝ զոր գործեաց ի պարտիզին: Իսկ Մօրիկ իբրև լուաւ, ծիծաղեցաւ և ոչ ինչ յայտնեաց, և կալեալ զմեծամեծսն՝ զոր կարծէր, թէ սատան են թագաւորութեան նորա, եբարձ զամենեսեան՝ զի մի՛ դաւ ինչ լիցին թագաւորութեան նորա, և զփոքունսն ի տեղիս նոցա կարգեաց. և կոչեալ զարսն զայնոսիկ՝ զոր առաքեաց առ հայր իւր, ասէ ցնոսա. այս են խրատ հօր իմոյ՝ զոր արար ի պարտիզին, և դուք ոչ իմացայք: Կէսք ասեն զսա յԱրփսուս գեղջէ Կապպադովկացւոց, զոր յետոյ քաղաք շինեաց ի զօրավար Տիբերի:

Բայց Մօրիկ վասն խստութեան բարուցն ազգաւ և որդւովք ողորմատես մահուամբ կորնչի յիւրոց զօրաց. քանզի յարեան ի վերայ նորա զօրք իւր, որոց առաջնորդ էր Փոկաս, որ թարգմանի հուր, և սպան զնա, և ինքն թագաւորեաց ընդ նորա»[1] (1):

[1] Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1909, էջ 46-50:



* * *

Մորիկի մասին այս պատմության մեկ այլ տարբերակ ևս կա, որը վերջերս է հրատարակվել և որը մենք օգտակար ենք համարում այստեղ վերարտադրել:

«Յետ այսորիկ մեռաւ Մուրիկ արքայն Հոոմոց: Եւ նայ էր առեալ Զաքրան քուրն Գասրէին՝ արքային Պարսից: Եւ եղեւ սպանումն Մուրկայ այսպէս: Զի յորժամ թագաւորեաց Մուրիկ ի Կոստանտինուպոլիս, առաքեաց զմի ոմն աշխարհն իւր ի Հայք, ի քաղաքն Անի: Եւ նայ էր պարտիզպան: Եւ եկն այրն Հոոմայեցի և եգիտ զԴաւիթ զհայրն Մուրկայ: Եւ կոչել զնայ առ ինքն՝ ասէ ցնա. «կոչէ զքեզ որդին քո Մուրիկ, քանզի թագաւորեաց Հոոմոց»: Իբրեւ լուաւ Դաւիթ, հայր Մուրկայ, ծիծաղեցաւ և ասէ. «ո՛չ կարեմ գալ. լաւ համարիմ զսակավ պահէզս իմ քան զթագաւորութիւն Հոոմոց, քանզի ո՞վ տայր թագաւորել մարդոյ աւտարականին»:

Եւ բերեալ հաց եդ առաջի նորա և ինքն էմուտ ի պարտէզն իւր և սկսաւ զմեծամեծ բանջարս տակցի խլել. և առեալ զմանտարն տունկ արկանել ի տեղի մեծամեծացն: Եւ զայն տեսեալ այրն Հոոմայեցի ասէ. «զի՞նչ գործես զայդ»: Եւ նա ասէ. «այսպէս արժան է լինել»:

Եւ յորժամ դարձաւ այրն և եկն առ արքայն Մուրիկ, եւ ոչ եբե՛ր զհայրն նորայ: Եւ պատմեաց առաջի արքային զոր առնէր հայր նորա: Եւ ապայ ի միտս եկեալ արքայն (Մուրիկ) և ասէ, թե «զայն վասն մեծ(ամեծ)ացն իմոց խրատ ետ ինձ»: Եւ կալաւ զամենայն մեծքն Յունաց աշխարհին, զոմանս ի ծով ընկղմեց և զոմանս արգելեաց աքսորս, և փոքրգուն արանցն ետ պատիւ պատրկութեան և զօրավարութեան...»[1]:

* * *

Մորիկի գահակալության առասպելը պատմական ոչ մի հիմք չունի: Նրա գահ բարձրանալու հանգամանքները քաջ հայտնի են: Տիբերիոս կայսրը (2) մեռնելուց մի քանի օր առաջ նրան նշանակել է իր հաջորդը: Տիբերիոսը արու զավակ չուներ, միայն երկու դուստր, որոնցից մեկը՝ Կոստանդինան, կնության էր տրված Մորիկին: Նոր գահակալը կայսերական անձնազորի հրամանատարն էր, երբ Հուստինոս II նրան արևելք էր ուղարկել պարսիկների դեմ կռվող Հուստինիանոս զորավարին փոխարինելու: Հե-

[1] Շապուհ Բագրատունի, Պատմութիւն, Էջմիածին, 1921, էջ 3-4: Հաջորդում է Մորիկի սպանության շարադրանքը:

տևաբար այն պահին, երբ բարեհաճ ճակատագիրը նրան գահ է պարգևել, նա չէր կարող հասարակ բանջարավաճառ լինել: Բյուզանդացի մատենագիրները (3) կարծում են, որ նա ծագումով Փոքր Հայքի Արփսուս՝ այժմյան Յարփուզ, քաղաքից էր (4): Նրա մայրը՝ Յոհաննան, Աղելփիոս քաղաքի եպիսկոպոսի քույրն էր: Դոմետիանոսը՝ Մելիտենեի եպիսկոպոսը, նրա զարմիկն էր, եղբոր՝ Պետրոսի, որդին: Մորիկի հայրը՝ Պողոսը, կենդանի էր, երբ նա գահ բարձրացավ. նա նրան Արփսուսից բերել տվեց Կոստանդնուպոլիս: Նա միայն մի եղբայր ուներ Պետրոս անունով, որին կյուրոպաղատի կոչում էր տվել, և երեք քույր, որոնցից մեկը՝ Դամիանան, ունեցել է Աթենոգենես անունով մի որդի, որը դարձել է Արաբիայի Պետրա քաղաքի եպիսկոպոսը: Հայկական ավանդության միակ պատմական փաստը հետևյալն է. Մորիկն իր հոր ետևից մարդ էր ուղարկել: Երկրորդ տարբերակի հեղինակը սխալվում է նրա հորը Պողոսի փոխարեն Դավիթ անվանելով: Այնուամենայնիվ ավանդությունը պահպանել է մեկ այլ պատմական վերհուշ ևս: Մորիկի հայրենիքը համարվելու պատվի համար Օշական գյուղը մրցակցում է Արփսուս քաղաքի հետ: Սակայն Օշականից բացի ավանդության մեջ նշվում է մի երրորդ վայր ևս, որը նույնպես հավակնում է այդ պատվին. դա Տարոն գավառն է: Հայտնի է, որ համաձայն հայկական ավանդության Տարոնը համարվում էր Վասիլ I-ի հայրենիքը և ոչ թե Մորիկի, որը ծագումով Օշականից էր: Ուրեմն ավանդության մեջ ինչ-որ խառնաշփոթ է տեղի ունեցել: Մորիկին են վերագրում այն, ինչ վերաբերում էր Վասիլ I-ին: Մորիկի աղքատությունը կարծես թե նույնպես փոխ է առնված Վասիլի մասին առասպելից: Հարց է ծագում, թե մայրաքաղաքի դռների մոտ կանգնած բշվառ մարդը Ս. Դիոմեդեսի հայտնի առասպելում Ոսկե Դռան մոտ կանգնած Վասիլի կերպարի արտացոլքը չէ՞ արդյոք (5): Այսպիսով մենք ապացույց կունենանք, որ հայերը ծանոթ էին այդ առասպելին: Սակայն նրանք այն մոռացել էին և դրա բեկորները «բյուրեղացել» էին Մորիկի անվան շուրջ:

Մորիկի գահ բարձրանալու պատմությունն իր այլաձևումով պարտական է Վասիլի մասին առասպելի ազդեցությանը: Տիբերիոսը իշխանությունը Մորիկին է հանձնել մի մեծ հավաքի ժամանակ, ծերակույտի և արքունի ավագների ներկայությամբ: Հանդիսավոր ճառ արտասանելուց հետո կայսրը թագը դրել է Մորիկի գլխին (6): Այդ փաստը արտացոլվել է հայկական ավանդության մեջ. հավանաբար ներկաներից յուրաքանչյուրը հույս ուներ մեռնող կայսեր հաջորդը դառնալու, ինչպես որ ներկայացված է հայկական ավանդության մեջ: Սակայն տեսարանի վերջը փոփոխվել է, «վարակվելով» Վասիլի մասին եղած տեղեկություններից. նա հասարակ գյուղացու վիճակից բարձրացել հասել է մինչև կայսերական աստիճանը: Ըստ



ավանդության Տիբերիոսը չէ, որ թագը դրել է Մորիկի գլխին, այլ Մորիկն ինքն է իրեն թագադրել:

Մյուս հանգամանքը, որը պնդում է ավանդությունը, Մորիկի ծագման հարցն է: Հայ հեղինակները համառորեն կրկնում են, որ նա ծագումով Օշականից էր: Այդ գյուղը մինչ օրս էլ հայտնի է այդ անվան ներքո, տեղակայված է Էջմիածնի մոտ և այնտեղ է գտնվում հայ դպրության հիմնադիր Մեսրոպ Մաշտոցի գերեզմանը: Արդի պատմաբանները մերժել են Օշականի հավակնությունները՝ հօգուտ Արփսուսի: Նույնիսկ Ա. Սեն-Մարտենը, որը հատուկ ունակություն ուներ Բյուզանդիայի պատմության մեջ հայկական տարրերը ճանաչելու հարցում, միացել է նրանց, ովքեր բռնել են Արփսուսի կողմը: Եվագրիոսի հեղինակությունն այս վեճում նրան որոշիչ է թվացել[1]:

Սակայն հայկական վկայությունները պարունակում են այնպիսի մանրամասներ, որոնք չի կարելի մի կողմ նետել: Հարկավոր է միայն դրանք մեկնաբանել: Ասողիկը վկայում է, որ Մորիկը Օշականից էր և շատ էր սիրում իր հայրենի գյուղը և դա ծնունդ է տվել հետևյալ ասացվածքին. «Աստի յՕշական խունկ առաջի»[2]:

Երկրորդ ասացվածքը հիշատակված է Մորիկի պատմության երկրորդ տարբերակում: Շապուհ Բագրատունու շարադրանքը բազմաթիվ էջերի բացակայության պատճառով ամբողջական չէ: Հրատարակիչներն այն լրացրել են «Ոսկեփորիկ» կոչվող ժողովածուներից: Այլ տեղեկությունների շարքում այնտեղ վկայություններ կան Մորիկի ժամանակաշրջանում Հայաստանում հաստատված խաղաղության մասին, որը ծնունդ է տվել հետևյալ արտահայտությանը՝ «զինչ ի ժամանակին Մուրկեա, որ նստել է անհոգս»[3]:

Դա համապատասխանում է իրականությանը: Երկարատև պատերազմները, որոնց թատերաբեմն էր Հայաստանը, Մորիկի ժամանակ դադարեցին: 591 թ. բյուզանդական Հայաստանի սահմանները տեղափոխվեցին հյուսիսում Թեոդոսուպոլսից (Էրզրում) Սևանա լճի ափը և Մարտիրուպոլսից (Մուֆարկին) Վանա լճի ափը՝ հարավում: Այսպիսով հայկական գավառների մեծ մասն անցավ Բյուզանդիայի տիրապետության տակ: Այդ կապակցությամբ էր, որ Շիրակաշատ քաղաքի անունը Մորիկի պատվին փոխեցին դարձրեցին Մորիկապոլիս[4]: Շիրակաշատ-Մորիկապոլիսը գտնվում էր Անիի շրջանում. դա է պատճառը, որ Մորիկի պատվիրակները երկրորդ տարբերակում նրա հորը գտնելու համար Անի են գալիս և ո՛չ Օշական:

---

[1] C. Lebeau, X, p. 146, note 3.
[2] Ստեփանոս Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Բ, 6, Ս.Պետերբուրգ, 1885, էջ 141:
[3] Շապուհ Բագրատունի, էջ 5:
[4] Մովսէս Խորենացի, Աշխարհացոյց, Վենետիկ, 1881, էջ 34:

Չնայած եկեղեցական գործերում բյուզանդական կառավարության վարած կործանարար քաղաքականությանը, որը հայերի մեջ դժգոհություն էր առաջացնում, այնուամենայնիվ քրիստոնեական կայսրության տիրապետությունը նրանք ավելի հանդուրժելի էին համարում, քան պարսիկներինը: Հայոց մեջ Մորիկի վայելած ժողովրդականությունը կարող է բացատրվել առանց նրա հայկական ծագման վարկածին դիմելու, սակայն Օշականին վերաբերող ասացվածքը այդ դեպքում կմնա առեղծված:

Հետաքրքիր է, որ մի վկայությամբ Արփսուս քաղաքը կիսում է Օշականի հավակնությունները Մորիկի մտահոգության առարկան լինելու հարցում: Արփսուսը նույնպես կառուցապատվել ու զարդարվել էր հոյակապ շենքերով: 586 թ. երկրաշարժի ժամանակ այն ավերվել էր: Կայսրը հրամայել էր այն նորից կառուցել և առավել գեղեցիկ դարձնել, քան առաջ էր: Քաղաքը դարձյալ կործանվել էր, հիմնահատակ ավերվելով ուժգին երկրաշարժից[1]:

Այս պատմությունը պակաս առասպելական չէ, քան Օշականի պատմությունը: Մորիկի հայրենիք համարվող այս երկու վայրերի միջև անշուշտ ինչ-որ կապ կա: Ըստ էության, դրանց հավակնությունները կարող են համաձայնեցվել, եթե ենթադրենք, որ կայսեր ծնողները իսկապես Օշականից էին, բայց այն լքել էին Արփսուսում բնակություն հաստատելու համար: 536 թ. Հուստինիանոս I-ի ժամանակ հայկական գավառների վերափոխությունից հետո նկատվում է հայ ազգաբնակչության արտագաղթ դեպի կայսրության գավառները: Հնարավոր է, որ այդ ժամանակաշրջանում է Մորիկի ընտանիքը գաղթել Արփսուս:

Սակայն Եվագրիոսի որոշակի վկայությունը արգելում է տարբեր տեղեկությունների նման համաձայնեցմանը: Նա ասում է, որ Մորիկը, ինչպես և նրա անունը սկիզբ են առնում հին Հռոմից՝ ἕλκοντα μὲν τὸ γένος καὶ τοὔνομα ἐκ τῆς πρεσβυτέρας ʽΡώμης [«տոհմն ու անունը արտածելով ավագ Հռոմից»][2]:

Մենք չենք կարծում, որ այս վկայությանը չի կարելի առարկել: Իսկապես ինչու՞ պետք է ազնվական հռոմեական ընտանիքը թողներ այդ հռչակավոր քաղաքը և գնար ու հաստատվեր կայսրության այնպիսի հեռավոր անկյունում, ինչպիսին էր Արփսուսը, որը ոչ մի առավելություն չուներ և որը, ավելին, որպես զուտ ռազմական կետ մշտապես ենթակա էր պարսիկների հարձակմանը: Եվագրիոսը միակ հեղինակն է, որ հայտնում է այդ տեղեկությունը: Հարց է ծագում, թե դա պատմագրի անձնական բանասիրական ենթադրությունը չէ՞ արդյոք, որը հիմնված է Mauricius անվան հռոմեական ձևի վրա: Նա ընդգծում է, որ անունը հռոմեական է, մի բան, որ կարող է հաստատել մեր ենթադրությունը: Արդյոք պատմիչը որպես ելակետ չի՞ ընդունել Մորիկի անունը նրա հռոմեական ծագմանը հանգելու համար: Հայտնի հռոմեացի Փիլիպպիկոսը ամուսնացել էր Մորիկի քույրերից մեկի հետ (7): Այդ փաստը կարող էր խրախուսել պատմիչին կամայական հետևություններ անելու:

[1] Michel le Syrien, éd. J. A. Chabot, II, p. 359.
[2] Evagrius, Hist. Eccl., V, 19.



Ահա թե ինչու Օշականի հավակնություններն անտեսելու չեն: Հայերը Մորիկին լավ էին ճանաչում: Նա համբավ էր ձեռք բերել Հայաստանում պարսիկների դեմ վարած պատերազմներում: Հայերը օգնել էին Մորիկի հովանավորյալ [պարսից] Խոսրով II թագավորին ապստամբ Վահրամ Չուբինի դեմ, անկասկած Մորիկի հրամանով: Խոսրովի հաղթանակից հետո հայ զորավար Մուշեղը Կոստանդնուպոլիս է գնացել կայսերը ներկայանալու համար: Այդուհանդերձ Մորիկը հայերի բարեկամը չէր, և վերջիններս ատում էին նրան հայոց եկեղեցու և հայ ավատատերերի նկատմամբ նրա վարած քաղաքականության համար: Նրան է պատկանում հայ իշխաններին բարբարոսների դեմ պայքարում օգտագործելու նպատակով նրանց բռնությամբ Թրակիա տեղափոխելու գաղափարը: Նա իր դաշնակից Խոսրովին խորհուրդ էր տալիս նույն բանն անել ու ստիպել հայ իշխաններին գնալ և թշնամիների դեմ կռվել պարսից թագավորության ծայրամասերում (8): Ընդհանուր առմամբ Մորիկը հայերին վնասել է: Հայաստանում ոչ մեկի մտքով չէր անցնի հպարտանալ նրանով (9): Հետևաբար մենք չենք կարող կասկածել, որ հայկական ավանդության հեղինակները ազգային սնափառությունից դրդված նրան վերագրած լինեին հայկական ծագում: Հակառակը նա այնքան վատ համարում ուներ հայոց մեջ, որ ազգային նախապաշարվածությունը պետք է բերեր ավելի շուտ Մորիկի ազգության անտեսմանը, քան ընդունմանը: Եթե, անկախ այդ ամենից, հայերը շարունակում են պնդել նրա Օշականում ծնված լինելը, ապա մենք չենք կարող անտեսել հայ ավանդության արժեքը, ինչպես դա անում են ուսումնասիրողները:

Այն փաստը, որ Մորիկի ընտանիքը հայկական անուններ չի կրում, չի կարող պատճառ հանդիսանալ մեր թեզը հերքելու համար: Բյուզանդիայի հայերը հիմնականում չէին պահպանում իրենց ազգային անունները: Այն մարդիկ, ովքեր հայտնի էին իրենց հայկական անուններով, պատկանում էին ավատական ազնվականությանը: Այդ խավն ուներ միայն իրեն հատուկ անուններ: Ստորին խավի ներկայացուցիչները, ինչպես նաև հոգևորականները սովորաբար կրում էին քրիստոնեական անուններ, ըստ եկեղեցական

օրացույցի: Հայկական ավանդության մեջ Մորիկը ներկայացված է որպես այգեպանի որդի: Ուրեմն նրան չէին կապում ազնվականության հետ: Այնուամենայնիվ պետք է նշել, որ նրա քրոջ՝ Դամիանայի, որդու անունն էր Աթենոգենես, համեմատաբար հազվադեպ անուն, որը կրում էր նաև Գրիգոր Լուսավորչի թոռը:

Համենայն դեպս Մորիկի ծագման հարցը այդքան պարզ չէ, որքան սովորաբար կարծում են, և հայկական ավանդությունը նույն արժեքն ունի, ինչ որ Եվագրիոսի վկայությունը: Mauricius-ը կարող է հայկական Մևուկ (կամ Մևիկ) անվան թարգմանությունը լինել[1]:

## 2. ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ ԿՈՍՏԱՆԴԻՆ V-ի ՄԱՍԻՆ

«Իսկ յետ Լևոնի կայսեր թագաւորէ որդի նորա Կոստանդին. սա կոչեցաւ Կաւալինոս, այսինքն՝ Թրքաժողով. զի զօրն Տաճկաց բանակեալ էին առ ափն Ալիս գետոյն, հրամայեաց թրիք ժողովել և արկանել ի գետն. և նոցա տեսեալ՝ ահաբեկ եղեն, կարծեցեալք անթիւ լինել զօրացն, և փախեան ի նմանէ: Պատմի ի միում աւուր զկնի միմեանց հինգ առիւծ սպանանել սորա»[2]:

Ինչ վերաբերում է Կոստանդին V-ի անվանը հավելված վիրավորական մակդիրներին, ապա տեսնենք Ալֆրեդ Լոմբարդի «Հռոմեացիների կայսր Կոստանդին V» աշխատության մեջ[3] ժողոված վկայությունները: Κοπρώνυμος [«Թրիքանուն»] մակդիրը, որը բնականաբար վիրավորական է, փոխարինում է καβαλλῖνος մակդիրը (10): Վերջինն անպայմանորեն վիրավորական չէ իր բնույթով. մենք ենթադրում ենք, որ դա մտերմական մականուն է, որն այդ մեծ հեծյալը ստացել է իր զինվորների կողմից (որոնք նրան պաշտում էին): Κωνσταντῖνος-ի և Καβαλλῖνος-ի միջև ակնհայտ զուգահեռ կա: Պահպանվել է անվան գլխատառն ու վերջավորությունը և մտերմաբար, կատակի ձևով Κωνσταντῖνος-ը Καβαλλῖνος-ի է փոխվել ակնարկելով կայսեր սերը կամ, եթե կուզեք, նույնիսկ կիրքը ձիերի նկատմամբ: Սակայն շուտով նրա հակառակորդները՝ պատկերասերները, յուրացրել են այդ

¹ **Ղազար Փարպեցի**, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1904, էջ 127: Պաուլ Պետերսը հնարավոր է գտել ենթադրելու, որ Ստիլիանոս անունը, որ կրում էր Լևոն VI-ի հայտնի նախարարը, վերարտադրում է հայկական «Սյունի» անուն, որը հասկացվել է որպես «սյուն» բառից ածանցյալ («Հանդէս Ամսօրեայ», 1926-1927, էջ 727):

² **Կիրակոս Գանձակեցի**, էջ 67:

³ **A. Lombard**, Études d'histoire Byzandine: Constantin V, empereur des Romans (740-775), Paris, 1902, pp. 12-13.



մականունն ու այն մոտեցրել καβαλλῖνα-ին, որը նշանակում է «ձիու թրիք» (11): Պատկերասեր պարսավագիրների համար ձիերի նկատմամբ տածած նրա սերը դարձել է սեր աթարի, կեղտի նկատմամբ: Այդտեղից էլ Κοπρώνιμος-ը: Մենք այլևս չենք շարունակում, քանի որ այդ ամենը քաջ ծանոթ է:

Սակայն հայկական բնագիրը մեզ տեղեկացնում է, որ, եթե նույնիսկ ընդունենք, որ καβαλλῖνος-ը ունեցել է «թրիքավոր, թրիքով սնվող» իմաստը, այնուամենայնիվ պատկերամարտ հերոսի կողմնակիցները կարողացել են այն հաղթանակած βασιλεύς-ի [«թագավորի»] համար պատվարժան ձևով բացատրել: Այդ՝ մեզ համար նոր, բացատրության հեղինակն իր հնարանքի մեջ ոգեշնչվել է անտիկ վերհուշներով: Դա զարմանալի չէ. Մորիկի պատմության մեջ երևան են գալիս Հերոդոտոսից[1] ու Տիտոս Լիվիոսից (12) քաջ հայտնի թեմաները, այն է՝ համր հորդորը, որ տրվել էր մյուսներից ավելի բարձր գտնվող հասկերն ու ծաղիկները կտրելով (Պերիանդրոս և Թրասիբուլոս, Տարքվինիոս): Ճանաչեցինք նաև Դիոկղետիանոսին վերաբերող զրույցը (13), ըստ որի նա գերադասում էր կաղամբ մշակել, քան կայսրությունն իր ձեռքը վերցնել: Նմանապես և Կոստանդնի կողմից թրիքի քանակով հակառակորդի մոտ մեծաքանակ հեծելազորի պատրանք ստեղծելը հիշեցնում է «Անաբասիս»-ում[2] պարսից հեծելազորի թվաքանակի գնահատումը թրիքի քանակով: Ավելի կարևոր է հավանաբար առյուծներ սպանող Կոստանդնի մասին ավանդույթը: Այս հասարակ հանգամանքը բավական է պարոն Հ. Գրեգուարի էպիկական հերոս Կոստանդնի մասին վարկածը արդարացնելու համար[3]: Պարոն Էռնստ Շտեյնի մի հիանալի հայտնագործության շնորհիվ (14) ես ի վիճակի եմ լրացնելու մինչ այժմ զուգահեռը չունեցող այդ վկայությունը: Նեապոլի եպիսկոպոսների ժամանակագրության մեջ (15), որը գրվել է IX դարի վերջից առաջ՝ 872 թ. քիչ անց[4], հանդիպում ենք Կոստանդնի մասին ավանդության կարևոր մի հատվածի. հայ ժամանակագրի նախադասությունն այդ հատվածից անջատված մի բեկոր է: Ահա այդ արժեքավոր բնագիրը, որը մեկնաբանության կարիք չունի և որին Կոստանդին V-ի կենսագիր պարոն Ալֆրեդ Լոմբարդին ծանոթ չի եղել.

¹ **Herodoti**, Historiarum, lib. V, 92, 6.

² **Xenophon**, Anabasis, I, 6.

³ L'Age héroique de Byzance, տե՛ս «Mélanges Jorga», p. 383 sqq., Paris, 1933, «Revue des Etudes Greques», 1933, p. 32.

⁴ **B. Capasso**, Società Napolitana di Storia Latina, Monumenti Storici, Serie prima cronache, t. I, p. 196, Napoli, 1881 (Chronicon episcoporum Neapolitanae Ecclesiae).

Hunc aiunt Constantinum robustiorem fuisse virum, qui leonem, ferocissimam bestiam, pugnando occidit, et draconi se opposuit et ipsum interemit. Nam dum quadam aquae ductum sua magnitudine detineret, et multos fetore suo perimeret, nullumque alium consilium repperiret semet ipsum pro omnibus Constantinus periculo dedit statuens semet ipsum cum dracone conflicturus. Factoque sibi loricam falcatam, quam novaculis acutissimis ex omni parte munivit, atque ad locum ubi ille teterrimus draco quiescebat, devenit. Nihil conctatus relictos suos, ad eum solus introiit[1]...

Noluerunt eos recipere, quo audito universi ex diversis provinciis ad eum collecti sunt et una cum ipsis civitas obsessa est, et, ne in tam multitudinem famis adgresseret, corii solidos pro aureis nomismatis fecit a negociatoribus dari, et recipi promitens eos, dum in palatio introierat omnes colligere et aurei solidos ad corii solidos commutare. Constantes autem obsidentibus urbem, hii, qui intra civitatem erant, veniam impetrantes, cum gloria ab omnibus receptus est. Ingressus Constantinus palatio, promissum quod de solidis fecerat explevit.

[«Ասում էին, որ այս Կոստանդինը շատ հզոր այր էր. նա մենամարտում սպանեց առյուծին՝ վայրենագույն գազանին, և ընդդեմ վիշապի <մարտի> բռնվեց և ոչնչացրեց դրան: Քանզի այն այդքան մեծ էր, որ <իր մարմնով> զբաղեցնում էր մի ջրհոսի հունը, և շատերին զրկում էր բերք <ունենալու հնարավորությունից>: Այդ պարագային Կոստանդինն այլ ելք չգտավ, քան հանուն բոլորի ինքն իրեն վտանգի մատնել, և որոշեց կռվել վիշապի հետ: Պատրաստել <տվեց> մանգաղաձև զրահ, որի վրա ամենուր ամրացրեց շատ սուր ածելիներ և եկավ այնտեղ, որտեղ հանգստանում էր այդ գարշելի վիշապը: Անգամ մի պահ չսպասեց իր մյուս <ուղեկիցներին>, <այլ> միայնակ մոտեցավ դրան....

*Չցանկացան նրանց հետ ընդունել, ինչը* լսելով բոլորը տարբեր գավառներից հավաքվեցին նրա մոտ, և նրանք միասին պաշարեցին քաղաքը, և, որպեսզի այդքան բազմության մեջ սով չսկսվի, հրամայեց վաճառականներին ոսկեդրամի փոխարեն վճարել և վճարման ընդունել կաշվե դրամ, խոստանալով նրանց, որ, գրավելով պալատը, կհավաքի բոլորը և կփոխարինի կաշվե դրամը ոսկով: Քաղաքի պաշտպանները, որ քաղաքի ներսում էին, ներողություն հայցեցին պաշարողներից, <և Կոստանդինը> փառքով ընդունվեց բոլորի կողմից: Մտնելով պալատ, Կոստանտինը կատարեց դրամի վերաբերյալ իր խոստումը»]:

[1] Ժամանակագրության մեջ այստեղ մի թերթ պակասում է (Ն. Ա.):



Լ. Ա. Մուրատորին (16) վիշապի պատմության կապակցությամբ իրավացիորեն նշում է. Neminem Graecorum novi qui Draconis hujus ab impio Principe debellati meminerit [«Հույն <հեղինակներից> չեմ ճանաչում և ոչ մեկին, որ հիշատակեր ամբարիշտ իշխանի կողմից այս վիշապի պարտվելու մասին»]: Կարող ենք վստահ լինել, որ τραγούδια-ները ([վիպերգեր]) այդ հարցի վերաբերյալ ավելի պերճախոս էին, քան ժամանակագրությունները: Ինչ վերաբերում է կաշվե դրամի պատմությանը, ապա այն միգուցե պարունակում է ճշմարտության ինչ-որ տոկոս: Իսկ մյուս կողմից խոսքն անկասկած Արտավազդի ապստամբության (17) ժամանակ (743 թ.) Կոստանդնի կողմից Կոստանդնուպոլսի պաշարման մասին է: Այստեղ ժամանակագիրները[1] պատմում են մեզ Արտավազդի կողմից Կոստանդնուպոլսից քշված ծրիակերների զանգվածի մասին, որոնց հետ Կոստանդինը վարվել էր մարդասիրաբար, որը և դարձել է նրա վայելած երկարատև ժողովրդականության հիմնական պատճառներից մեկը: Ինչ ցավալի է, որ մեկ թերթի կորուստը զրկել է մեզ Կոստանդնի մասին այդ ավանդության այլ մանրամասներից, որոնք, սակայն, պարոն Է. Շտեյնի հայտնաբերած բնագրի շնորհիվ վերջապես բացահայտվեցին (18): Թերևս նեապոլյան այդ ձեռագրի վնասվելը պատահականություն չէ: Հնարավո՞ր է արդյոք, որ այդ վիպերգական թերթը կտրել-պոկել է որևէ ուղղափառ ընթերցող, որին վրդովել են պիղծ Կոպրոնիմոսին հասցեագրված նման խոսքերը:

## ԼՐԱՑՈՒՑԻՉ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆ

Էջ 28: *Mauricius անվան վերաբերյալ:* Արդյոք հնարավոր չէ՞, որ Mauricius-ը ուղղակի հայկական Մորիկ անունն է: Ըստ Փավստոս Բուզանդի վկայության, այդ անունն էր կրում Ներսես կաթողիկոսի (մh. 371 թ.) սարկավագներից մեկը (19): Ամեն դեպքում Շապուհ Բագրատունին կայսերը Մորիկ է կոչում: Նույն ձևին ենք հանդիպում նաև Կիրակոս Գանձակեցու երկում (20): Ճիշտ է, Ամմիանոս Մարկելլինոսը (21) հիշատակում է մի Mauricius, որը սպա էր հռոմեական բանակում, ևս մի Mauricianus հիշատակված է Digesta-ներում որպես իրավախորհրդատու (22): Ուստիև անվան ծագումը կարող է լինել հռոմեական:

Էջ 30: *Կաշվե դրամի մասին:* Հայ պատմիչ Ասողիկը (Գ, 16) վկայում է, որ արաբ ամիրա Իբն-Խոսրովը, որի մոտ էր փախել Վարդաս Սկլերոսը,

[1] Բնագիրը տե՛ս A. Lombard, op. cit, p. 28:

«հրամայեց փայլուն արծաթը խառնել պղնձի և արճճի հետ: Քանի որ վաճառականները հրաժարվում էին այդ դրամն ընդունել, նա իր անունը գրել տվեց խեցեղենի բեկորների և կաշվե կտորների վրա և (այդ բեկորները և կաշվե կտորները) տվեց ոմանց մթերք կամ հագուստ գնելու համար»: Մենք այս հետաքրքիր փաստը տրամադրում ենք Բյուզանդիայի ֆինանսական համակարգով զբաղվող պատմաբաններին:



## ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅԻ ԿԱՅՍՐ ԼԵՎՈՆ V-Ի ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

Նշանավոր բյուզանդագետ Ջ. Բ. Բյուրին, ինչպես կարելի է եզրակացնել նրա «History of the Eastern Roman empire» աշխատության մեջ[1] արված մի հղումից, երկմտում է Լևոն V կայսեր ծագման հարցում (1):

Ջ. Բ. Բյուրին նշում է. «Մի կողմից նա ծագումով ասուրացի էր, որը, հավանաբար, նշանակում է սիրիացի: Այս տեղեկությունը անորոշ է: Ասվում է, որ նրա ծնողները (մեկը կամ երկուսը), սպանել էին իրենց (?) ծնողներին, և այդ իսկ պատճառով փախել (2) Հայաստան»:

Ջ. Բյուրին վկայակոչում է երկու պատմիչների՝ Գենեսիոսին և Թեոփանեսի Շարունակողին: Նրա երկմտելու իսկական պատճառն իր սկզբնաղբյուրներն են: Այս երկու պատմիչները Լևոն V-ի մասին իրենց տեղեկությունները քաղել են Գեորգ Վանականի աշխատությունից: Այն ամենը, ինչ նրանք հաղորդում են, ոչ այլ ինչ է, եթե ոչ Գեորգի տեղեկությունների համառոտ շարադրանքը, թյուրըմբռնված և սխալ անդրադարձած: Ահա Գեորգ Վանականի երկասիրության խնդրո առարկային վերաբերող հատվածը, որը ես նպատակահարմար եմ գտնում մեջբերել ամբողջությամբ.

Τὸ μὲν οὖν προσεχῶς αὐτῷ ὑπηργμένον καὶ πολυγνώριμον, ἐκ γὰρ τῆς ᾿Αρμενίων ὡρμᾶτο γῆς, ὅθεν εἰπεῖν τὸ δύστροπον καὶ κακόηθες. τὸ δὲ πορρωτάτω καὶ παλαιὸν τυγχάνον, καθὰ τῶν πρεσβυτέρων ἐξιστοροZ ῦσι τινες, οἳ τὰ ἐκείνου καὶ τῶν ἐκείνου πατέρων ἐκ πολλοῦ παραδοθέντα ἴσασι, οὐδ᾿ ἐντεῦθεν καθαρῶς πόθεν ἐκπεφυκέναι, εἴπερ ἐκ τῆς ᾿Ασσυρίων φυλῆς κακίστην παραφυάδα ἐκδῦναι, ἐξ ὧν τὸ πατρῷον ἐπεφήμιζεν αἷμα. κατήχθη γὰρ ἐκ τῶν Σεναχηρεὶμ παίδων, ὃς δὴ τῶν ᾿Ασσυρίων ἦρξέ ποτε καὶ ὑπὸ τῶν φύντων καιρίαν τὴν πληγὴν ἐδέδεκτο· καὶ γὰρ οἵ γε φονίας δεξιὰς τῷ γεννήτορι ἐπανετείναντο, τῷ πατραλῴῳ λύτρῳ ἐμμολυνόμενοι, αὐτόχειρές τε τῆς σφαγῆς τοῦ τεκόντος γενόμενοι αὐτίκα πρὸς τοῖς χωρίοις τῶν ᾿Αρμενίων φυγάδες οἰχόμενοι ἀνασώζονταιζ τούτου δὲ τοῦ πατροφόνου σπόρου κατὰ τὴν ἡμετέραν γενεὰν πικρῶς τηρηθεὶς καὶ παραβλαστήσας ἀνδροφόνος καρπός, οὐκ οἶδ᾿ ὅθεν ῾Ρωμαίων τοῦτο κατακριθὲν τὸ δεινὸν ἐκεκλήρωτο[2], այսինքն՝ մտադիր է ասել հետևյալը. «Ինչ վերաբերում է նրա [իմա՝

---

[1] J. B. Bury, History of the Eastern empire from the Fall of Irene to the Ascension of Basil I, A.D. 802-867, London, 1912, p. 43.

[2] Georgus Monachus [Continuatus], p. 769.

Լևոնի] անմիջական ծագմանը, ապա այն քաջ հայտնի է. նա ծագում է հայերի երկրից, որտեղից, ինչպես ասում են, գալիս է նրա համառությունն ու վատ բնավորությունը: Ինչ վերաբերում է նրա ծագման ավելի հին և հեռավոր ակունքներին, ապա, եթե դատելու լինենք նրա և նրա նախնիների պատմությունը հին ավանդություններին գիտակ ծեր մարդկանց խոսքերից, ապա նա նույնիսկ այդտեղից էլ չէ (այսինքն՝ Հայաստանից)՝ որպեսզի քիչ թե շատ մաքուր արյան ծնունդը լինի. քանզի հորական կողմից նա սերում է ասուրական մի տոհմի շատ վատ շառավիղից: Նա ծագում է ասուրների վրա մի ժամանակ թագավորած Սենեքերիմից, որի որդիներն իրենց հորը մահացու հարված հասցրեցին: Նրանք իրենց հանցագործ ձեռքը բարձրացրին Սենեքերիմի վրա և նրա արյամբ արատավորված (հորը սպանել էին սեփական ձեռքերով) իսկույն ճողոպրեցին հայերի երկիրը և այնտեղ պատսպարվեցին: Հենց այդ հայրասպան սերմից, որն, ավաղ, պահպանվեց մինչ օրս, աճեց մարդասպան այդ պտուղը [իմա՝ Լևոնը] և, ես չգիտեմ ինչպես, այդ չարիքը վիճակվեց հռոմայեցիներին»:

Գեորգ Վանականի այս հատվածը Թեոփանեսի Շարունակողը հետևյալ կերպ է վերապատմում.

Πατρὶς μὲν οὖν τοῦ δηλωθέντος Λέοντος 'Αρμενία, γένος δὲ τὸ μὲν ἐξ 'Ασσυρίων, τὸ δὲ καὶ αὐτῶν 'Αρμενίων, οἳ καὶ τοὺς ἰδίους ἐξ ἀνοσίου γνώμης σφαγῇ μιαιφόνῳ παραδόντες γεννητόρας ὑπερορίας κατεδικάσθησαν, κἀκεῖσε δὴ τὸν πένητα βίον, ἅτε δὴ καὶ φυγάδες διαθλοῦντες τὸν εἰρημένον θῆρα ἀπέτεκον '

«Լևոնի հայրենիքը Հայաստանն է, բայց իր ծագումով նա մասամբ ասուրներից է սերվում, իսկ մասամբ էլ հենց հայերից, որոնք (sic!) հանցավոր պայմանավորվածությամբ անարգ մահով սպանելով իրենց ծնողներին, ստիպված եղան փախչել սահմանից այն կողմ և այնտեղ, որպես փախըստականներ, պայքարելով աղքատ կյանքի դեմ, ծնեցին հիշյալ գազանին»[1]:

Գենեսիոս պատմիչը կրկնում է նույն բանը.

'Ην δὲ τῷ γένει κατὰ συζυγίαν ἐξ 'Ασσυρίων καὶ 'Αρμενίων ἀναφυείς, τῶν ἰδίων γεννητόρων ἐπεξαναστάντων αὐτοὺς τε μιαιφονησαμένων καὶ πρὸς τοῖς τῶν 'Αρμενίων χωρίοις κατὰ φυγαδείαν ἐνσκηνωσάντων. Κἀκεῖσε τὸν ἀνήμερον θῆρα τεκεῖν.

«[Լևոնը] սերվում է ասուրների ու հայերի միությունից. սրանք ըմբոստացել էին իրենց սեփական ծնողների դեմ, իրենց պղծել էին նրանց սպանությամբ, փախչելով ապաստան գտել հայերի երկրում և ծնել մի վայրի գազան»[2]:

[1] Theoph. Cont., p. 6.
[2] Genesius, p. 28.



Գենեսիոսի շարադրանքը ածանցված է Թեոփանեսի Շարունակողից, իսկ վերջինս օգտվել է Գեորգ Վանականի երկասիրությունից: Սակայն Թեոփանեսի Շարունակողը լավ չի հասկացել իր սկզբնաղբյուրը՝ Գեորգ Վանականի աշխատությունը: Գեորգն իր շարադրանքում նկատի ունի Լևոնի հեռավոր նախնիներին, երկու եղբայրներին՝ ասուրացի արքայազուններին, որոնք իբր սպանել էին իրենց հորը և փախել Հայաստան: Թեոփանեսի Շարունակողը սխալվում է այդ միջադեպը Լևոնի ծնողների հետ կապելով, որոնք իբր հայրասպան էին և ստոր սպանությունը կատարելուց հետո ապաստան էին գտել Հայաստանում: Այդտեղից է գալիս այն տխած թյուրիմացությունը, ըստ որի Լևոնի ծնողները հենց իրենք հայերի երկրում ապաստան գտած ասուրներն են եղել: Իրականում խոսքը Սենեքերիմի որդիների մասին է, որոնցից մեկը համարվում էր Լևոն V կայսեր տոհմի նախնին:

Այս պատմությունը, որ բյուզանդացի ժամանակագիրը մեզ է հրամցընում ծեր մարդկանց խոսքերից, ընդամենը հայկական ավանդությունն է, որը հիմնված է Աստվածաշնչի շատ հայտնի մի հատվածի վրա. «Եւ եղեւ մինչդեռ երկիր պագանէր ի տան Նեսրաքայ աստուածոյ իւրում, Ադրամելէք եւ Սարասար որդիք նորա հարին զնա սրով, եւ ինքեանք զերծան յերկիրն Արարադայ: Եւ թագաւորեաց Ասորդան որդի նորա ընդ նորա»[1]:

Հովսեպոս Փլավիոսը կրկնում է այս պատմությունը, Արարատը փոխարինելով Հայաստանով.

Δολοφονηθεὶς ὑπὸ τῶν πρεσβυτέρων παίδων 'Αδραμελέχου καὶ Σαρασάρου τελευτᾷ τὸν βίον, ... καὶ οἱ μὲν φυγαδευθέντες ἐπὶ τῷ φόνῳ τοῦ πατρὸς ὑπὸ τῶν πολιτῶν εἰς τὴν 'Αρμενίαν ἀπῆραν[2] [«Սպանվելով ավագ զավակների՝ Ադրամելեքի և Սարասարի (3) դավադրանքի <հետևանքով>, <Սենեքերիմն> ավարտեց իր կյանքը. իսկ սրանք, <իրենց գործած> սպանության համար քաղաքացիների կողմից վտարված լինելով <Ասորեստանից>, հեռացան Հայաստան»]:

Երկու այլ աղբյուր, Աստվածաշնչից միանգամայն անկախ, հաստատում են ասուրական թագավորական տան այդ ողբերգությունը. դրանք են ազգային պատմիչ Բերոսոսը և սեպագիր արձանագրությունները:

Բերոսոսի ժամանակագրությունը կորել է: Այն օգտագործել են Ալեքսանդր Պոլիհիստորը (Բազմավեպ) և Աբիդենոսը, որոնց երկասիրությունները նույնպես կորել են: Բայց Եվսեբիոս Կեսարացին իր աշխատության մեջ հատվածներ է պահպանել այդ երկասիրությունից, քաղված Բազմավեպի և Աբիդենոսի երկերից: Դրանք, անկասկած, վերցված են Բերոսոսի

[1] Թագ. Դ, 27, հմմտ. Եսայի ԼԷ, 38; Մնացորդաց ԼԲ, 21:
[2] Josephi Flavii Antiquitates Judaicae, X, 21.

գործից: Մի հատվածում, որը վերագրվում է Պոլիհիստորին, Եվսեբիոսը մեզ տեղեկացնում է, որ Սենեքերիմ արքան սպանվել էր իր որդի Ադրումուլանի (4) կողմից: Մյուս տարբերակում, որի հեղինակն է Աբիդենոսը, գրված է մի փոքր անորոշությամբ.

«ըստ նմանէ և յետ նորա Ներգիղոս թագաւորեաց, որ յորդւոյն Ադրամելեայ վախճանէր և զնա նորին եղբայր Աքսերդիս՝ միահայր և ոչ համամայր, սպանանէր և հալածական զզաւրականն ի Բիւզանդացւոց քաղաքն արկանէր»[1]:

Հայերեն շարադրանքը և Մ. Ավգերյանի լատիներեն թարգմանությունն այն տպավորությունն են թողնում, որ Սենեքերիմին հաջորդած Ներգիղոսն էր, որ սպանվել էր իր որդի Ադրամելոսի կողմից, իսկ վերջինս՝ իր եղբայր Ակսերդիսի կողմից: Գերմաներեն թարգմանությունը նույնպես պարզ չէ. «auf ihn und nach ihm Nergilos, der von seinem Sohne Adramelos beseitigt wurde etc.»[2] [«*նրա վրա* և նրանից հետո Ներգիղոսը, որն ոչնչացվեց իր որդու կողմից և այլն»]:

Հայերեն շարադրանքը պետք է հասկանալ այն իմաստով, որ «նրանից (այսինքն՝ Սենեքերիմից) հետո թագավորեց Ներգիղոսը, որը (այսինքն՝ Սենեքերիմը և ոչ թե Ներգիղոսը) սպանվեց Ադրամելոսի կողմից: Բայց վերջինս (այսինքն՝ Ադրամելոսը) սպանվեց իր եղբոր՝ Ակսերդիսի, կողմից, որը հարազատ էր հոր և խորթ մոր կողմից, և որը քշեց բանակը բյուզանդացիների քաղաքը»:

Ակսերդիսը, անկասկած, Ասարխադդոնն է, ինչպես Ադրամելոսը՝ աստվածաշնչյան Ադրամելեքն է: Մենք ունենք բոլոր պատճառները Ներգիղոսին Սարասարի՝ Ադրամելեքի եղբոր, հետ նույնացնելու համար: Մեջբերված բնագրի սկզբի «ըստ նմանէ» արտահայտությունը կարծես թե ընդգծում է այն սերտ կապը, որ գոյություն ունի Սենեքերիմի և նրան հաջորդած Ներգիղոսի միջև. «յետ նորա» կապակցության կողքին այն չի կարող այլ իմաստ ունենալ, քան «նրանից սերված» կամ որդի: Սրանով Ներգիղոսի և Սարասարի նույնացումը հաստատվում է: Աբիդենոսի հատվածի միտումն այն է, որ Ադրամելոսը՝ հայրասպանը, գործել էր հօգուտ Ներգիղոսի, որը միայնակ ուզում էր տիրանալ արքայական գահին:

Նույն բնագիրը թույլ է տալիս մտածել, որ Ադրամելոսը սպանվել էր Ակսերդիս-Ասարխադդոնի կողմից, բռնազավթիչ Ներգիղոսը նույնպես քշվել է

[1] Եւսեբի Պամփիլեայ Կեսարացւոյ Ժամանակականք երկմասնեայ, աշխատասիրութեամբ Հ. Մկրտիչ վրդ. Մխիթարեան Աւգերեանց, մասն Ա, Ժամանակագրութիւն պատմական, Վենետիկ, 1818, էջ 53:

[2] Die Chronik des Eusebius, aus dem Armenischen übersetzt, von Dr. J. Karst, Leipzig, 1911, S. 18.



նրա կողմից: «Զօրական» բառը կարող է նշանակել կամ զորք, կամ զորավար: Վերջին իմաստը միգուցե գերադասելի է, եթե նկատի ունի Ներգիղոսին: Ըստ Աստվածաշնչի շարադրանքի, Հայաստան էին փախել երկու եղբայրները՝ Սենեքերիմի որդիները: Աբիդենոսն իր տարբերակում, որը սկիզբ է առնում Բերոսոսից, ճանաչում է միայն մեկ եղբորը, որը փախել էր Ասարխադդոնի վրեժխնդրությունից, մինչդեռ մյուսն իբր զոհվել էր Ասարխադդոնին դիմադրելիս:

Հոր սպանությունից հետո երեք եղբայրների միջև ծայր առած պայքարին մենք ծանոթ ենք նաև իսկական ասուրական սեպագիր տարեգրություններից: Հիշատակված երեք եղբայրներն են՝

Արդիբելիտը,

Աշուրմունիկը,

Աշուր-աքս-իդդինան:

Սենեքերիմը թագաժառանգ էր հայտարարել Արդիբելիտին: Սակայն իր թագավորության վերջում նա փոխել էր մտադրությունը և ցանկացել գահը թողնել Ասարխադդոնին: Այդ ժամանակ Արդիբելիտը և Աշուրմունիկը փորձել են իշխանությունն ուժով վերցնել: Ասարխադդոնի «Կոտրած պրիզման» մեզ տեղեկացնում է, որ նա կանչվել էր իր կառավարած երկրամասի մայրաքաղաքից թագավորական գահի հակառակորդներին դիմագրավելու համար: Ասարխադդոնը հաղթում է իր հակառակորդներին և հետապնդում նրանց մինչև Խանիրաբբատ երկիրը[1]:

Անշուշտ, Արդիբելիտը և Աշուրմունիկը նույն անձնավորություններն են, ինչ և Աստվածաշնչի Ադրամելեքն ու Սարասարը: Ադրամելեքը ինչ-որ ընդհանրություն ունի Արդիբելիտի հետ, իսկ ինչ վերաբերում է Սարասարին, ապա նրա ծագման հարցում վստահություն չկա: Ոմանց կարծիքով դա ասորական Ներգալ-շարուծուր անվան կրճատ ձևն է[2]: Այլք կարծում են, որ դա Աշուր-շարուծուր անվան կրճատումն է[3] կամ էլ Շարիտիրասսուր անվան աղավաղված ձևը[4]: Եվ վերջապես, կան այնպիսի ուսումնասիրողներ, որոնք ենթադրում են, թե Սարասար և Ադրամելեք անունները հնարված են ասուրական անունների նմանակությամբ, քանի որ աստվածաշնչյան ժամանակագիրները մոռացել էին ապստամբ իշխանների իսկական անունները[5]:

Բոլոր այդ ենթադրություններից հավանական կարելի է համարել միայն Ե. Թիլեի տեսությունը: Սարասար անունը հաջողությամբ կարող է համեմատվել Ներգալ-շարուծուր անվան երկրորդ մասի հետ, մինչդեռ

[1] **E. Schrader**, Keilinschriftliche Bibliothek, Bd. II, S.140.

[2] **E. Tiele**, Babylonisch – Assyrische Geschichte, Gotha, 1886, S. 325.

[3] **F. Hommel**, Geschichte Babyloniens und Assyriens, Berlin, 1885, S. 688.

[4] Altorientalische Forschungen, hrsg. H. Winckler, Bd.II, S. 58.

[5] **H.R.H. Hall**, Ancient History of the Near East from the earliest Times to the Battle of Salamis, London, 1913, p. 439.

առաջին մասը՝ Ներգալը, կնույնացվի Ներգիլոսի հետ, որը պահպանվել է, ինչպես տեսանք, Աբիդենոսի երկում: Այս անվան կապը Աշուրմունիկ անվան հետ անհասկանալի է մնում:

Աստվածաշնչում փախստական եղբայրներն ապաստան են գտնում Ուրարտուում: Ասուրական աղբյուրներում այն երկիրը, ուր փախչում է ապստամբներից մեկը, երբ մյուսը սպանվում է ճակատամարտում, կոչվում է Խանիրաբբատ: Ուրարտուն Հայաստանն է: Խանիրաբբատը դասական հեղինակների Մելիտենեն է, Փոքր Հայքի մի մասը: Տարօրինակ է, որ Աբիդենոսի երկում «Ուրարտուի» կամ «Խանիրաբբատի» փոխարեն մենք կարդում ենք «բյուզանդացիների քաղաքը»: Խոսքն, անկասկած, չի կարող լինել Աբիդենոսի ժամանակաշրջանի՝ Ք.ա. մոտ 150 թ., Բյուզանդիոնի մասին: Դա պետք է որ թյուր ընթերցում լինի, մեկ այլ անվան աղավաղում: Ըստ Ա. Գուտշմիդտի այստեղ խոսքը հայկական Bizana քաղաքի մասին է, որը հիշատակված է Պրոկոպիոսի «Կառուցումների մասին» երկում[1]: Սա անընդունելի ենթադրություն է[2]:

Ամեն դեպքում սուրբգրային պատմությունը վերարտադրում է պատմական մի փաստ, որը տեղի է ունեցել Ք.ա. 680 թվականին ասուրական թագավոր Սենեքերիմի ընտանիքում:

Հետևաբար հենց այդ պատմությունն է ծնունդ տվել հայկական մի առասպելի, ըստ որի փախստական արքայազուններն իբր բնակություն են հաստատել Հայաստանի հարավում: Հայաստանի թագավորն իբր ընդունել է նրանց, ապա և նրանց զիջել այդ շրջանները:

Հետագայում նրանց ժառանգները պետք է որ երկու հայկական իշխանություններ կազմավորած լինեին: Այդ առասպելն առաջին անգամ պատմել է Մովսես Խորենացին:

«...Քանզի ութսուն, աւելի կամ պակաս, ամօք յառաջ քան զթագաւորութիւնն Նաբուգոդոնոսորայ էր Սենեքերիմս կացեալ արքայ Ասորեստանի, որ զԵրուսաղէմ պաշարեաց առ Եզեկիայիւ Հրէից առաջնորդաւ, զոր սպանեալ որդւոց նորա Ադրամելէքայ և Սանասարայ՝ եկին փախստական առ մեզ:

Յորոց զմինն յարևմտից հարաւոյ աշխարհիս մերոյ, մերձ ի սահմանս նորին Ասորեստանի, բնակեցուցանէ Սկայորդին մեր քաջ նախնին, այս ինքն է զՍանասարն. և ի սմանէ աճումն և բազմասերութիւն լեալ՝ լցին զՍիմն ասացեալ լեառն: Իսկ պերճքն և գլխաւորքն ի նոցանէ յետոյ ուրեմն մտերմութիւն վաստակոց առ թագաւորսն մեր ցուցեալ՝ զբդեշխութիւն կողմանցն արժանաւորեցան առնուլ: Իսկ Ադրամելէքայ յարևելից հարաւոյ նորին կողմանն բնակեալ. ի սմանէ ասէ պատմագիրն լինել զԱրծրունիս և զԳնունիս: Արդ՝ յիշելոյն մեր զՍենեքերիմ այս էր պատճառն»[1]:

Այս առասպելի ազդեցությամբ պատմիչը հաղորդում է, որ Հայոց Վաղարշակ թագավորը «... զՇարաշան ի տանէ Սանասարայ հաստատէ բդեաշխ մեծ և կուսակալ յարևմտից հարաւոյ, յեզերս սահմանացն Ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ, զաւառս պարգևելով զԱրձն և որ շուրջ զնովաւ, և զլեառնն Տաւրոս, որ և Սիմ, և զԿղեսուրն ամենայն»[2]:

Աստվածաշնչյան պատմությունից բացի, Մովսես Խորենացին ծանոթ է եղել նաև Եվսեբիոս Կեսարացու մեկնաբանությանը: Այդ է պատճառը, որ նա առավելապես Սանասարի, այսինքն՝ Սարասարի մասին է խոսում, որն ըստ Աբիդենոսի, Ներգիլոս անվան ներքո միայնակ փախել էր Հայաստան: Բայց Սուրբ Գրքի հեղինակությունը չէր կարելի անտեսել: Այն Աբիդենոսի հետ համաձայնեցնելու համար հայ պատմիչը հայտնում է, որ Հայաստան էր փախել ոչ թե Աստվածաշնչի Ադրամելեքը, այլ Բազմավեպի և Աբիդենոսի Արգամոզանը: Մենք տեսանք, որ խոսքը նույն անձի՝ իր հորը՝ Սենեքերիմին, սպանողի մասին է:

Հայկական առասպելը հավաստում է, որ երկու փախստականներից՝ ասուրացի արքայազուններից, ծագում են երկու իշխանական տներ (5): Սարասարը կամ Սանասարը, ինչպես կարդացվում է հայերեն Աստվածաշնչի ընկալյալ բնագրում, պետք է որ լինի Մուշ և Բիթլիս քաղաքների միջև գտնվող Տավրոսի հայկական գավառի՝ Սասունի, լեռնականների նախնին: Սասունի հին ձևը Սանասունն է: Գեորգ Կիպրացու Σανασσουνῖται-ն (6) համապատասխանում է Թովմա Արծրունու «Սանասնայք»-ին: Այդ անունը կարծես թե ազդել է ասուրացի Սարասարի փոխակերպմանը Սանասարին՝ հայերեն ընկալյալ բնագրում:

Սասունի բնակիչները հնում հայտնի են եղել իրենց քաջությամբ ու խստահամբերությամբ: Նրանց բարբառը և որոշ ազգագրական առանձնահատկություններ գրավել են հին մարդկանց ուշադրությունը: Դեռևս X դարի մատենագիր Թովմա Արծրունին հետաքրքրությամբ է խոսում նրանց մասին: Նա գունեղ կերպով նկարագրում է երկիրն ու բնակիչների սովորույթները, որոնք նրան տարօրինակ են թվում, և փորձում է դա բացատրել նրանով, որ Սասունի բնակչությունը՝ Ասորեստանի ստորին խավի մարդիկ էին, որ Ասորեստանի թագավոր Սենեքերիմի որդիներ Ադրամելոսի և Սանասարի հետ միասին գաղթել էին Հայաստան և եղբայրներից մեկի անունով իրենց անվանել են «Սանասնայք»[3]:

---

[1] Procop., Aed., p. 254.

[2] Bizana-ի մասին (հայերեն՝ Վժան) տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, с. 144 и сл.:



[1] Մովսէս Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, Ա, գլ. իդ:

[2] Նոյնը, Բ, գլ. ը:

[3] Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Կոստանդնուպոլիս, 1852, էջ 135:

Տեղական առանձնահատկություններն այնպիսիք էին, որ արդարացնում են առասպելի ենթադրությունը սասունցիների օտար ծագման մասին: Չէ՞ որ ժամանակակից գիտնականները կարծում են, որ Սասունում և նրա հարևան գավառում՝ Խութում, մենք հանդիպում ենք նախահայկական քաղդեական բնակչության բեկորներին: Նույն պատճառով սասունցիները կարող էին համարվել մի ասուր արքայազնի հետնորդներ, մի ժամանակաշրջանում, երբ նրանց առանձնահատկությունները դեռ բավականին ցայտուն էին համապատասխան իմաստով առասպել ծնելու համար: Մյուս եղբորից՝ Արգամոզանից կամ Ադրամելեքից, ըստ առասպելի ծագում է Արծրունիների տոհմը:

Ավատական Հայաստանի մի քանի տասնյակ իշխանատների շարքում հատկապես աչքի էր ընկնում երեք ընտանիք: Բագրատունյաց և Մամիկոնյանների տների հետ միասին Արծրունյաց տունը դրանցից մեկն էր: Դարերի միջով է ձգվում այդ երեք ընտանիքների մրցակցությունը քաղաքական գերիշխանության համար: Արծրունյաց իշխանները կարող էին հպարտանալ Վանի շրջանում X դարի [սկզբին] իրենց ստեղծած պետությամբ, մինչդեռ Բագրատունիները նույն փառքին հասան Անիում՝ Ախուրյանի հովտում:

Արծրունյաց տունը ավատական Հայաստանի ամենահին հարստություններից մեկն էր: Մենք բոլոր պատճառները ունենք կարծելու, որ այն ծագում է հին Ծոփքի թագավորական տոհմից:

Ծոփքի (Սոֆենայի կամ Սոֆանենայի) թագավորությունը հիմնվել է Ք.ա. 189 թ. Զարիադրեսի՝ Զարեհի կողմից, այն ժամանակ, երբ Արտաշեսը Մեծ Հայքում ստեղծում էր մեկ այլ թագավորություն: Զարեհյանների տիրույթները, որոնք տարածվում էին մինչև Մելիտենե և ընդգրկում էին նաև Կորդուքը, հետագայում մտան Տիգրան Մեծի կայսրության մեջ:

Արծրունի իշխանների իրական կամ ենթադրյալ արյունակցական կապը Ծոփքի թագավորական տան հետ պետք է որ պատմական հիմք ծառայեր այն առասպելի համար, ըստ որի նրանք ծագում էին Սենեքերիմի որդի, ասուրացի ղծբախտ արքայազնից:

Բագրատունի իշխանները նույնպես հավակնում էին առասպելական, աստվածաշնչյան ծագման: Այդ ժամանակներում տոհմի համար Սուրբ Գրքի հերոսներից ծագելը պատվաբեր էր համարվում: Այսպիսով, Արծրունիները նույնպես հնարել էին ծագումնաբանական մի առասպել՝ օգտվելով ասուրացի իշխանների՝ Հայաստան փախչելու մասին Աստվածաշնչում առկա պատմությունից:

Աստվածաշնչյան ծագում ունենալը անհրաժեշտ պայման էր համարվում քաղաքական հավակնությունները հիմնավորելու և թագավորական գահի նկատմամբ նկրտումները իրականացնելու համար:

Ըստ ազգային ավանդության, սկզբում Բագրատունիներն էին հավակ-



նում Ծոփքի թագավորների ժառանգները համարվելու: Սեբեոսի բնագրում զետեղված Անանունի Պատմությունը մեզ տեղեկացնում է, որ Շամիրամի ժամանակներից և նրա նվաճումների հետևանքով Հայաստանն ընկավ Ասորեստանի գերիշխանության տակ և մնաց այդ վիճակում մինչև Սենեքերիմի թագավորությունը: Վերջինիս մահից հետո հայերն ապստամբեցին և Արամանյակի որդիներից մեկը՝ Զարեհը, անկախություն նվաճեց: Այդ Զարեհից են ծագում Բագրատունի իշխանները: Զարեհը դասական հեղինակների Զարիադրեսն է և Ծոփքի թագավորության հիմնադիրը: Մովսես Խորենացին մի կողմ է նետել Անանունի սույն վկայությունը՝ Բագրատունիներին ոմն Սմբատից սերելու համար: Այդ Սմբատը Նաբուգոդոնոսորի Պաղեստին կատարած արշավանքի ժամանակ գերեվարված մի հրեա էր:

Նույն պատմիչը հավանել է Արծրունիների տոհմի ծագմանը վերաբերող առասպելը և այն ներմուծել իր Պատմության մեջ: Դա նրա հորինածը չէ, այլ ժողովրդական մի ավանդություն: Իր կորիզում IX դարի իրադարձություններն արտացոլող «Սասունցի Դավիթ և Մհեր» դյուցազներգության հերոսները՝ Աբամելեքն ու Սանասարը, ծնվել են հայ մորից և մի հորից, որը ծագումով Միջագետքից էր:

Ամեն դեպքում Արծրունյաց առասպելը շրջանառության մեջ էր արդեն Մովսես Խորենացու և Գեորգ Վանականի ժամանակներից: Այդ բյուզանդական պատմիչը ստեղծագործում էր IX դարի առաջին կեսին: Այն, ինչ նա պատմում է Լևոն V-ի մասին, ճշգրիտ կերպով վերարտադրված Արծրունյաց առասպելն է:

Այսպիսով, ոչ մի կասկած չի մնում, որ Լևոն V կայսրը զտարյուն հայ էր, սերված Արծրունյաց հռչակավոր իշխանական տոհմից, որոնց անկասկած կեղծ տոհմածառը իբր թե սկիզբ էր առնում Սենեքերիմի որդուց:

Բյուզանդացի ժամանակագրի անորոշ արտահայտությունները պարզ են դառնում հայկական առասպելի լույսի ներքո: Լևոնը ἐξ ᾿Ασσυρίων καὶ ᾿Αρμενίων [«ասուրներից և հայերից»] է, նրա ծնողները փախել էին Հայաստան: Ժամանակագիրը ասում է, որ առասպելին ծանոթացել է բանավոր աղբյուրից: Դա նշանակում է, որ Արծրունիներն իրենց հետ Բյուզանդիա էին տարել իրենց ծագմանը վերաբերող ընտանեկան ավանդությունը:

Ե՞րբ և ինչպիսի՞ պայմաններում էին Արծրունիների ընտանիքի ներկայացուցիչները գաղթել Բյուզանդիա, մենք չգիտենք: Լևոնի հայրը, ինչպես նաև նրա որդիներից մեկը կրում էին զուտ ազգային անուններ. մեկի անունն էր Վարդաս, հայկական Վարդ, մյուսինը՝ Սմբատիոս, հայկական Սմբատ: Նրա կինը նույնպես հայուհի էր՝ ᾿Αρσαβήρ (հայերեն՝ Արշավիր) պատրիկի դուստրը: Լևոնն իր գործունեությունը սկսել էր որպես Վարդանի համհարզ, որը նույնպես հայ էր (7): Վարդանը, ինչպես նաև Արշավիրը (8), հայտնի են կայսերա-

կան զահին տիրանալու իրենց փորձով. մեկը 803, մյուսը՝ 808 թվականին:

Լևոն V-ը Վարդաս անունով մի քեռորդի ուներ: Նրա քեռորդին էր նաև Գրիգոր Պտերոտեսը, սկզբում Թովմայի (9) համախոհը, հետո, 820-821 թթ. ապստամբության ժամանակ, նրա հակառակորդը:

VIII դարի երկրորդ կեսը Հայաստանում նշանավորվում է արաբական տիրապետության դեմ համառ պայքարով, որն ընթանում էր բացահայտ և բազմաթիվ ապստամբությունների ձևով: Արծրունիների ընտանիքը ևս իր նպաստն էր բերել երկրի ընդհանուր ջանքերին՝ անտանելի լուծը թոթափելու գործում: Վահան Արծրունու երկու որդիները՝ Սահակ և Համազասպ եղբայրները, զոհվեցին ճակատամարտում: Նրանց երրորդ եղբայրը՝ Գագիկը, շարունակեց դիմադրությունն իր երեք որդիների՝ Համազասպի, Սահակի և Մերուժանի, օգնությամբ: Առաջին երկուսը զոհվեցին նահատակի մահով (10):

Արաբների դեմ ուղղված ապստամբությանը մասնակից իշխանները մասամբ ստիպված եղան լքել իրենց երկիրը և տեղափոխվել Բյուզանդիա՝ քաղաքական հետապնդումներից խույս տալու համար: Բազմաթիվ իշխաններ ծառայության անցան կայսեր մոտ (11): Դրանց թվում էր հայտնի Ταζάτης իշխանը (հայերեն՝ Տաճատ)՝ Արծրունիների ընտանիքից, ինչպես նաև Շապուհ և Համամ Ամատունիները, որոնք իրենց հետ բերել էին [տասն]երկու հազար մարդ:

Ոչինչ չի խանգարում ընդունելու, որ Լևոնի ծնողները կարող էին այդ տարագիրների շարքում լինել:

Ասենք նաև, որ պատմությանը հայտնի է Արծրունիների տոհմի մի ավելի հին ներկայացուցիչ Բյուզանդիայում: VII դարի պատմիչ Սեբեոսը հայտնում է, որ պարսից Խոսրով II Փարվեզ թագավորի ժամանակաշրջանից, երբ պարսիկները ներխուժեցին Կապադովկիա, այդ գավառի մայրաքաղաքի՝ Կեսարիայի, կառավարիչը հայ էր, Սահակ Արծրունի իշխանի որդի՝ Վասակը: Պարսիկները բռնեցին Վասակին ու սպանեցին: «... ամենայն զաւր Պարսից,- ավելացնում է հեղինակը,- ողբայր զնա վասն քաջութեան և արիութեան, և էր մանուկ ուժեղ և բարձրահասակ: Մանաւանդ զի սնեալ ևս էր ի մէջ նոցա, և վարժեալ ևս ի նոցանէն հրահանգաւ»[1]:

Այդ իշխանի սերունդները շարունակեցին, հավանաբար, ծառայել Բյուզանդիային: Սակայն, նկատի ունենալով Լևոնի ընտանիքում դեռ ընդունված զուտ հայկական անունները, ավելի հավանական է, որ նրա ծնողները ավելի ուշ էին լքել Հայաստանը: Ամեն դեպքում Լևոն V կայսրը ծագում է Արծրունիների հայկական իշխանական տնից: Դա անկասկած է:

[1] Սեբէոս եպիսկոպոս, Պատմութիւն ի Հերակլն, Ս. Պետերբուրգ, 1879, էջ 79:



## ԿԱՍԻԱ ՄԻԱՆՁՆՈՒՀԻՆ ԵՎ ՀԱՅԵՐԸ

Կասիա միանձնուհին ապրում էր IX դարում և միևն է այն սակավաթիվ կանանցից, որ սեր են ունեցել գրականության և պարապել: Նորա թողած աշխատությունները գլխավորապես հոգևոր բովանդակության են: Ունի նաև գրություններ աշխարհային բնավորությամբ, բացառապես էպիգրամներ-ծաղրագիրներ: Սոցանից մեկն ուղղված է հայոց դեմ, որը և կազմում է մեր հետաքրքրության առարկան: Առանձին բախտ է բանասերների համար, երբ հրատարակության ձեռնամուխ են լինում այնպիսի հմուտ գիտնականներ, որպիսին է Մյունխենի հռչակավոր բյուզանդագետը: Ընդարձակ առաջաբանում պրոֆ. Կ. Կրումբախերը (1) պարզում է ոչ միայն Կասիայի, այլ ընդհանրապես բյուզանդական շրջանում գրականության մեջ հայտնի կանանց կյանքն ու գործունեությունը: Այս գեղեցիկ նախաբանում մի բան մեզ տարօրինակ է թվում, և թո'ղ ների հարգո պրոֆեսորը, եթե հայտնենք մեր անհամաձայնությունն այս կետում նորա հետ: Կ. Կրումբախերը կատարյալ հավատ է ընծայում Կասիայի կյանքի վերաբերյալ առասպելական ավանդության: Հույն ժամանակագիրները պատմում են, որ Միքայել II կայսրի մահից հետո, նորա այրին՝ Եվփրոսինե, պետության ամեն կողմերից բերել է տալիս ամենագեղեցիկ աղջիկներ մայրաքաղաք, որպեսզի յուր որդին՝ Թեոփիլոս, ընտրի նոցանից իրեն ամուսին: Երբ ընտրված աղջիկները հավաքվում են արքունիքում Մարգարտյա կոչված սրահը, կայսրուհին մեկնում է յուր որդուն մի ոսկե խնձոր և պատվիրում ընծայել այն աղջկան, որ ամենից ավելի իրեն դուր գա: Այդ բախտավոր էակների թվում գտնվում էր, պատմագիրների ասելով, նաև մի հրաշագեղ աղջիկ՝ անունը Կասիա, ինքն ազնվական տոհմից: Թեոփիլոս զմայլած նորա բացառիկ գեղեցկությամբ, դառնում է կույսին այս խոսքերով. «արդարև, կնոջից է չարը ծագում» (ὡς ἄρα διὰ γυναικὸς ἐῤῥύε τὰ φαῦλα): Ամոթխած կինը վրա է բերում աներկյուղ. «սակայն կնոջից է բխում նաև բարին». (ἀλλὰ καὶ διὰ γυναικὸς πηγάζε τὰ κρείττονα) (2): Փեսայի սիրտը կոտրվում է այս հատու պատասխանից, որ կուսական պարկեշտության ընդդեմ բան է համարվում և ոսկե խնձորը տալիս է Թեոդորա Պափլագոնացուն: Գեղանի Կասիան բախտի այս չար խաղից հետո, վշտով մեկուսանում է աշխարհից, հիմնում է մենաստան և իրեն նվիրում աստվածապաշտության և գրականության:

Այս զրույցի պատմական ստուգությունը պր. Կրումբախեր կասկածելի չէ համարում: Բայց խելք կտրելո՞ւ բան է, որ բյուզանդական հզոր ինքնակալն ամուսնանալու համար դիմեր մի այնպիսի միջոցի, որ վայել է միայն «Հազար ու մի գիշեր»-ի մտացածին հերոսներին (3): Պարոն Կրումբախերը հիշում է այս առթիվ Թեոդոս II-ի կնոջ՝ Եվդոկիայի խնձորի պատմությունը (4), բայց այս դեռևս ոչինչ չի ապացուցանում, որովհետև տակավին մեծ խնդիր է, թե նույնիսկ Եվդոկիայի զրույցը որքան պատմական է: Ամենահին ժամանակագիրը, որ հաղորդում է մի Կասիայի ավանդությունը, Սիմեոն Մագիստրոսն է (5) X դարի վերջերում. սորանից են փոխ առնում մյուս պատմագիրները: Թեոփիլոս գահ բարձրացավ 830 թ., ուրեմն Կասիայի կյանքն անցել է IX դարի առաջին կիսում: Այսպիսի մի ընդարձակ ժամանակում, մարդու երևակայությունը պետք է շատ բան ստեղծեր բացատրելու համար, թե ինչի՞ց ստիպված մի շնորհալի կին հրաժարվում է աշխարհից և փակվում վանքում:

Կասիային վերագրած սուր պատասխանը, որի շնորհիվ զրկվում է գահից, արդեն ցույց է տալիս, որ այս հեքիաթը հերյուրված է որպիսի ժամանակ, երբ նորա գրական աշխատությունները և կծու ծաղրագիրները հռչակ էին ստացել: Տարակուսելի է նույնիսկ, որ Կասիան վանք մտած լինի երիտասարդ հասակում: Մի կին, որ մատաղ հասակում, դեռ կյանքի չարն ու բարին չճաշակած հեռանում է աշխարհից, չէր կարող այն փորձառությունն ունենալ, որ անհրաժեշտ է ծաղրագիրներ գրելու համար: Բավական չէ միմիայն տեսական ծանոթություն կշտամբելու այն մոլորությունները, որոնք նյութ են միանձնուհու պարսավական գրության: Նույնիսկ պր. Կրումբախեր խոստովանում է, որ Կասիայի ծաղրագիրները «[ակնհայտորեն] կենսական հարուստ փորձառության արդյունք են». (...ist offenbar die Frucht einer reichen Lebenserfahrung): Եթե նա 20 տարեկան կուսաստան է ապաստանել, ե՞րբ կարող էր ձեռք բերել կյանքի փորձառությունը:

Անշուշտ, նա ապրել է մենաստանի պատերից դուրս ավելի քան 20 տարի և կրել աշխարհային ցավեր և հոգսեր, ականատես եղել շատ մոլորության: Այս պատճառով, կարծում ենք, որ հիշած միջադեպը պատմական հիմք չունի և հնարված է ուշ ժամանակ մի հազվագյուտ և ընդունակ գրող-կնոջ հիշատակը զարդարելու համար:

Կասիայի մասին խոսելու առիթն իսկապես այն ծաղրագիրն է, որ ուղղված է մեզ՝ հայերիս: Ահա հունարեն բնագիրն ու հայերեն թարգմանությունը՝



[Տողեր] 33-42

Τῶν ᾽Αρμενίων τὸ δεινότατον γένος
ὕπουλόν ἐστι καὶ φαυλῶδες εἰς ἄγαν,
μανιῶδες τε καὶ τρεπτὸν καὶ βασκαῖνοι,
πεφυσιωμένον πάμπλειστα καὶ δόλον πλῆρες.
εἰπέ τις σοφὸς περὶ τούτων εἰκότως·
᾽Αρμένιοι φαῦλοι μὲν, κ᾽ἀν ἀδοξῶσι,
φαυλότεροι δὲ γίνονται δοξασθέντες
πλουτήσαντες δὲ φαυλότατοι καθόλου
ὑπερπλουτισθέντες δὲ καὶ τιμηθέντες
φαυλεπιφαυλότατοι δείκνυνται πᾶσι.

Հայոց զարհուրելի ազգը
պատիր է և չարաքարո վերին աստիճանի.
այլև խելացնոր, փոփոխամիտ և նախանձոտ,
խիստ փքված և լի նենգությամբ:
Շատ տեղն է ասել սոցա համար մի իմաստասեր, [թե]՝
«Հայերը չար են, քանի [դեռ] հռչակ չունին,
Ավելի չար են դառնում, երբ մեծության են հասնում,
հարստանալուս՝ հիմնովին չար,
իսկ երբ և՛ մեծ հարստություն, և՛ պատիվներ են ձեռք բերում,
չարերից ամենաչար են հանդիսանում:

Միանձնուհու կարծիքը հայոց մասին նպաստավորներից չէ, և լեզուն՝ խայթող: Որ հույներն ատում էին հայերին, ինչպես և մյուս մանր ազգություններին, փաստ է նույնքան ճշմարիտ, որքան և այն, որ սոքա ևս իրենց կողմից առանձին համակրություն չունեին դեպի հույները: Մինչ այժմ էլ արևելքում «լիրզեն» բառը, որպիսի անունով հույներն այժմ հայտնի են Փոքր Ասիայում, վիրավորական իմաստ ունի, համազոր, եթե ոչ ավելի ուժեղ, «ջհուտ» գաղափարին: Ատելության պատճառն իրավամբ հույների հետ հայոց հաղթանակող մրցությունն էր քաղաքական և տնտեսական կյանքում: Բայց պր. Կրումբախերը, առնելով այս պատմական իրողության, հակամետ է նաև կասկածելու հայոց բարքերի մաքրությունը՝ կշիռ տալով մի «գիտակ» ուղևորի վկայության:

Սակայն, ծաղրագրի նկատմամբ մեզ ավելի շահավետ և կարևոր կլինեն, որոշել նախ նորա գրական արժեքը: Կասիան յուր կարծիքը հիմնելու և հաստատելու համար, ինչպես տեսնում է ընթերցողը, մեջ է բերում մի ոմն

իմաստասերի խոսքերը: Փիլիսոփայի անունը մեզ չի տալիս. հրատարակիչը ևս չէ փորձել տնտղելու նորա անձնավորությունը: Այդ իմաստասերն ոչ այլ ոք է, եթե ոչ հույն Ժողովրդուսույցը (6), որից մի քանի ծաղրագիր է հասել մեզ. նոցա թվում և հետևյալը՝ նվիրված կապադովկացիներին:

Καππαδόκοι φαῦλοι μὲν ἀεὶ, ζώνην δὲ τυχόντες
φαυλότεροι, κέρδους δ᾽ εἵνεκα φαυλότατοι.
ἢν δ᾽ ἄρα δὶς καὶ τρὶς μεγάλης δράξωνται ἀπήνης
δή ῥα τότ᾽ εἰς ὥρας φαυλεπιφαυλότατοι.
μή, λίτομαι, βασιλεῦ, μὴ τετράκις, ὄφρα μὴ αὐτὸς
κόσμος ὀλισθήσῃ καππαδοκιζόμενος[1].

Կապադովկացիք միշտ չար են.
փառքի (7) հասնելիս՝ ավելի չար,
հարստության համար ամենից չար,
իսկ եթե երկու կամ երեք անգամ
ավելի մեծ աստիճանների են արժանանում,
[այն ժամանակ, անշուշտ, ընդմիշտ] չարերից ամենաչար:
Օ՜, աղերսում եմ, թագավոր՝ ո՛չ չորս անգամ.
ապա թե ոչ՝ ինքն աշխարհը կփչանա կապադովկիանալով.
[=կապադովկական մոլության ենթարկվելով]:

Հովհաննես Լյուդացին խոսելով Հուստինիանոս I-ի նշանավոր գործակիցներից մեկի, վատաբախտ Հովհաննես Կապադովկացու մասին, հիշում է այս ծաղրագիրը, առանց հեղինակի անվան հիշատակության[2]: Գիտե նաև Կոստանդին Ծիրանածին[3]: Կապադովկիացիներն ընդհանրապես շատ տխուր հռչակ ունեին հույների մոտ: Նույն Ժողովրդուսույց իմաստասերին է պատկանում և մի ուրիշ ծաղրագիր, նույնպես կապադովկիացիներին վերա՝

Καππαδόκην ποτ᾽ ἔχιδνα κακὴ δάκεν· ἀλλὰ καὶ αὐτὴ
κάτθανε, γευσαμένη αἵματος ἰοβόλου[4].

Կապադովկացուն մի անգամ մի վատ օձ խայթեց,
բայց ինքն [օձը] սատկեց ճաշակելով թունալից արյուն:

[1] Epigrammatum Anthologia Palatina, XI, 238, vol. II, 325.
[2] **Ioannes Lydus**, De magistratibus, ed. Bonn, p. 250.
[3] De thematibus, ed. Bonn, III, p. 21.
[4] Anthologia Palatina, XI, 237, vol. II, 325.



Հայտնի է նմանապես բյուզանդական սուր առածը.

τρία κάππα κάκιστα, Καππαδοκία, Κρήτη καὶ Κιλικία
Երեք կապպան (կեն) են ամենավատթար՝
Կապադովկիա, Կրետե և Կիլիկիա:

Այսպես, Ժողովրդուսույց իմաստասերի խոսքերը, որ ուղղված են կապադովկացիների դեմ, Կասիան ինչ-ինչ փոփոխությամբ վերագրում է հայերին: Պե՞տք է՝ ենթադրել այստեղ մի չարամտություն քարեպաշտ կույսի կողմից: Ավելի հավանական է կարծել, որ Կասիայի ժամանակ կապադովկացի ասելով, հասկանում էին հայերին գլխավորապես: Արիարաթեսների երկիրը, իբրև ազգագրական գաղափար, վաղուց չքացել էր իրականությունից: Կապադովկիա ավելի աշխարհագրական անուն էր, որ մեծ մասամբ գրավել էին հայերն իրենց առաջխաղացությամբ դեպի արևմուտք, մանավանդ Արշակունյաց անկումից հետո: Եթե ճիշտ է, որ հին ժամանակ Հայաստանի արևմտյան սահմանները Կապադովկիայի ազդեցության ներքո էին, անուրանալի է նաև, որ ավելի ուշ, Հուստինիանոս I-ի ժամանակից և նորանից առաջ, Կապադովկիայի մի մասը նույնիսկ պաշտոնապես Երրորդ Հայքի մեջ էր մտնում Կասիայի ժամանակ, այսինքն՝ IX դարում: Կասիան նկատի ունենալով հայոց զորությունն այս երկրներում, կարող էր թյուրիմացությամբ կարծել, որ Ժողովրդուսույց փիլիսոփան ևս կապադովկացի ասելով հայ է հասկանում: Այսպես եղել է, ինչպես մենք ենք ըմբռնում, թե հենց չար դիտավորությամբ միանձնուհին կամեցել է փաթթել հայոց վզին այն, ինչ որ ուրիշի հասցեին է ասած՝ սորանով հարկավ չի թեթևանում նորա ծանր կարծիքը հայոց մասին: Այս կարծիքը Կասիայի անհատական հայացքը չէ, որը, եթե հավատանք, որ 21 տարեկանից վանք է մտել, թերևս ոչ մի հայի չի տեսել օժտված այդ մոլորություններով: Այս մի ընդհանուր հայացք է, որ ունեին բյուզանդական հույները հայոց վերաբերմամբ. ներշնչված այն չարախնդրությամբ և նախանձով, որով նոքա նայում էին հայերի փայլուն հաջողության հասարակական և քաղաքական կյանքի ամեն ասպարեզներում: Սրամիտ ծաղրագիրը յուր նշանակությունը չէր ունենա, եթե նկատվեր միմիայն իբրև պտուղ այն տափակ և անուժ ատելության, որ սովորական երևույթ է միմյանց կից բնակություն ունեցող ազգությունների մեջ. և որը հետաքրքրություն կարող է ունենալ ո՛չ պատմական, այլ ավելի ախտաբանական [Pathologisches Interesse] տեսակետից, ինչպես ասում է Հ. Գելցերը, որն այդ կերպ է նայում ծաղրագրի վերա[1]:

[1] "Berliner Philologische Wochenschrift", 1899, S. 331.

## ՀԱՅ ԳԻՏԱԿԱՆ ԴԵՄՔԵՐ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅՈՒՄ

### I

Իններորդ դարը շատ նշանավոր շրջան է Բյուզանդիայի պատմության մեջ: Ոչ միայն քաղաքական, այլև մտավոր կյանքը նոր ոգի և նոր շունչ առավ: Դարավոր թմրությունից հետո վերջապես սթափվեց գիտական միտքը և հին, մոռացված գիտությունները երևան եկան, թափ տալով իրենցից անտարբերության փոշին:

Այս մեծ գործում ևս, ինչպես քաղաքական ասպարեզում, կարապետող ուժերը հայ արյուն ունեին: Նրանց ենք պարտական, նրանց նախաձեռնող ոգուն և մտավոր կարողության՝ գիտությանց հառնումը Բյուզանդիայում:

Կրթության հին ճրագները, որ տակավին առկայծում էին V դարում պետության զանազան կենտրոններում, հանգան գրեթե բոլորեքյան հաջորդ դարում՝ Հուստինիանոս I-ի օրով: Բացի Կոստանդնուպոլսի համալսարանից, որ հաստատված էր 425 թվին Թեոդոսիոս II-ի ժամանակ, կային բարձրագույն դպրոցներ նաև Աթենք, Ալեքսանդրիա, Անտիոք, Բերիթ (Բեյրութ), Եդեսիա և Կեսարիա[1] [քաղաքներում]:

Հուստինիանոսն իր կենտրոնաձիգ քաղաքականությամբ աղետաբեր եղավ գիտության համար: Նա փակեց Աթենքի համալսարանը 529 թվին, ավելի ճիշտ՝ արգելեց փիլիսոփայության և իրավագիտության դասավանդությունը: Վերացրեց իրավագիտության ուսուցումը բոլոր քաղաքներում, վերապահելով այդ միմիայն մայրաքաղաքին և մասամբ Բեյրութին:

Եթե չհաշվենք Եդեսիայի դպրոցը, որ փակվեց Զենոն կայսրի հրամանով 489 թվին, մյուսները մեծապես տուժեցին Հուստինիանոսի դարաշրջանում և անշքացան: Խղճալի պայմաններում քարշ տվին իրենց գոյությունը, մինչև որ կուլ գնացին խպառ արաբական հեղեղի մեջ: Մնաց միայն մայրաքաղաքի համալսարանը, որպես գիտության եզակի հնոց: Սակայն և նա շուտով կորցրեց իր փայլը և շնորհիվ մի քանի անգրագետ և անուսումնասեր գահակալների բոլորովին մոռացության տրվեց և բնաջինջ եղավ: Ուսումն ու գրագիտությունը, զրկվելով պետական հովանավորությունից և խնամքից, քաշվեցին վանքերը, տանելով իրենց հետ և գիտության վերջին բեկորները:

Այլևս խնդիր չկար հելլեն գիտությունների մասին և չէր էլ կարող լինել: Մենաստանի պատերը, բնական է, որ չէին կարող հյուրընկալել այն գիտական հանգումները, որոնք հեթանոս աշխարհայացքի ծնունդ էին: Քրիստոնյա գիտունին խորթ պիտի թվեին և խորշելի հեթանոս մտքի բնագիտական նվաճումները, տեսական կառուցումներն ու փիլիսոփայական հայտնությունները: Սուրբ Գիրքն իր սեփական պատասխաններն ուներ այն հարցերին, որոնք տոչորում էին հին մարդկությանը:

Թեոդոսյան համալսարանի ծրագրից կարելի է տեսնել, թե քրիստոնյա պետությունն ի՞նչ էր կարևոր համարում իրեն համար հին գիտություններից: Համալսարանն ուներ 31 պրոֆեսոր. 3 հոգի ավանդում էին լատին ճարտասանություն և 10 հոգի՝ լատին քերականություն, 5 հոգի՝ հունական ճարտասանություն և 10 հոգի՝ հունական քերականություն, 2 հոգի՝ իրավաբանական գիտություններ և մի հոգի՝ փիլիսոփայություն:

Գլխավոր առարկաներն են ուրեմն քերականություն և ճարտասանություն կամ հռետորական արվեստ, և մասամբ՝ օրենքների գիտություն: Հիշյալ համալսարանի բացման ժամանակ 425 թվին պետական լեզուն լատիներենն էր, իսկ հունարենը պետական եկեղեցու լեզուն էր: Երկուսն էլ պետք էր գիտենալ, ուստի և համալսարանական դասավանդության առարկա էին:

Սակայն, լատիներենը շուտով գործածությունից դուրս եկավ, և հունարենը գրավեց նաև պետական լեզվի պատիվը: Այն երկիրները, որոնք կազմում էին Բյուզանդական պետությունը, իսկապես լայնատարած կապեր չունեին լատինների և հույների հետ ո՛չ լեզվական և ո՛չ արենակցական: Սրանց իրավունքը պետության վրա գլխավորապես քաղաքակրթական էր և ո՛չ ցեղային: Եթե ի վերջո նախընտրությունը տրվեց հունարենին, պատճառը, անշուշտ, եկեղեցին էր: Քրիստոնեությունն ընտրել էր հույն լեզուն որպես իր քարոզչության գործիք:

Սելևկյան շրջանից սկսած հունարենը դարձել էր միջազգային հարաբերությանց և մանավանդ կիրթ քաղաքացիության լեզու Առաջավոր Արևելքում: Նա մտավ բնականորեն նաև եկեղեցի: Իսկ եկեղեցին պարտադրեց նրան պետության: Բյուզանդական պետականությունն արդեն իսկ հռովմեականի եկեղեցականացումն էր որոշ չափով և իմաստով: Բնակչության հոծ մեծամասնությունը չգիտեր հունարեն լեզուն: Հույները, որ հաստատված էին ծովեզերյա և մասամբ ներքին վաճառաշահ քաղաքներում, իրենք

[1] Սեբեոսը, էջ 121, խոսելով Քաղկեդոնի ժողովի մասին ասում է, որ ներկա էին նշանավոր առաջնորդ վարդապետներ՝ «արուեստաւոր քաղաքացն Եգիպտացւոց եւ Աղեքսանդրացւոց եւ Հռոմեացւոց եւ Կեսարացւոց եւ Աթենացւոց եւ Կիլիկեցւոց»:

Այստեղ արուեստաւոր բառը համապատասխանում է հույն τεχνικός [բառին], և նշանակում է «գիտական»: Այսպես է կոչում մեր պատմագիրը այն քաղաքները, ուր բարձրագույն դպրոցներ կային և հայտնի էին իրենց հռչակով:

և պետք ունեին սովորելու գրական հունարենը, որից բավականին հեռացել էր խոսուն բարբառը:

Այսպիսի պայմաններում հասկանալի է, թե ինչո՞ւ քերականությունն այնպիսի կարևոր տեղ է բռնում դասավանդության մեջ: Ընդունված ձեռնարկ էր Դիոնիսիոս Թրակացու Քերականությունը: Դիոնիսիոս ապրում էր երկրորդ դարում Քրիստոսից առաջ, բայց նրա երկը մեծ հռչակ և ժողովրդականություն ստացավ բյուզանդական շրջանում: Հույներին հետևեցին հայերը, ասորիները և թարգմանեցին իրենց լեզվով Թրակացու Քերականությունը (1): Քերականական գրականությունը շատ հարուստ է, որ նշան է թե մեծ պահանջ կար:

Հների մոտ, ինչպես և Դիոնիսիոսի, քերականություն չէր նշանակում միայն այն, ինչ որ այժմ հասկանում ենք այդ բառով, այլ ավելի ընդարձակ իմաստ ուներ: Նա ամփոփում էր իր մեջ նաև գրականությունն ու պատմությունը, այսինքն՝ մոտ էր արդի բանասիրությանը, կամ պատմաբանասիրական գիտությանը: Թեոդոսյան համալսարանի 31 պրոֆեսորներից 25-ը զբաղված էին քերականական դասերով:

Մյուս նշանավոր առարկան ճարտասանությունն էր, որից անբաժան էր տրամախոսությունը կամ դիալեկտիկան: Վերջինս ոչ այլ ինչ էր, եթե ոչ վիճաբանելու արվեստը՝ հարց ու պատասխանի ձևով: Կուռ լեզու, ճարտար խոսք, ներհուն գիր, ահա ինչ էր պետք մանավանդ քրիստոնեական եկեղեցուն: Սրանք գնահատելի զենքեր էին պաշտպանելու քրիստոնեական վարդապետությունն ընդդեմ հեթանոս իմաստասերների, որոնք գիտեին գործ ածել նույն զենքերը կատարյալ հմտությամբ: Ճարտասանական ու վիճաբանական արվեստը հարկավոր էր ոչ միայն հեթանոս աղանդավորների, այլև քրիստոնյա հերձվածների դեմ պայքարելիս: Ճարտասանության վերջին գործածությունը մուսուլման ուլեմաների դեմ էր, որոնց հետ ստեպ (հաճախակի) ընդհարվում էին եկեղեցու ջատագովները:

Բնորոշ է Բարսեղ Կեսարացու այն նշանավոր համեմատությունը, թե ինչպես որ քաղաքները բարձր պարիսպներ ունեին պաշտպանության համար, այնպես էլ կրոնն ունի պարիսպ և այդ պարիսպն է դիալեկտիկան, որը թույլ չէ տալիս թշնամիներին ավերում գործել և կամ հափշտակել այնպես դյուրությամբ կրոնական դավանանքը (2):

Դիալեկտիկայի կարողությունը ձեռք բերելու համար պետք էր դիմել Արիստոտելի երկերին: Պորփյուրի «Ներածութիւն»-ը, Արիստոտելի «Ստորոգութիւն»-ը, «Պերիարմենիաս»-ը (3) և մյուս երկասիրությունները դարձան ուսումնասիրության առարկաներ: Գրականության այս ճյուղը շատ զարգացավ և ոչ միայն հույն, այլև ասորի և հայ լեզուներով: Մերձավոր նպատակը կրոնական-եկեղեցական խնդիրների և վեճերի մեջ հմտություն



ձեռք բերելն էր: Կարելի է կրկնել, որ գիտությունը արդարև աստվածաբանության աղախինն էր և ծառայում էր նրա անմիջական շահերին:

Հնության իսկական նվաճումները ստույգ գիտությանց ասպարեզում օրվա պահանջ չէին համարվում, այնպիսի գանձեր էին, որ գնահատող չունեին, ապրանքներ, որ սպառող չունեին: Դրանք էին համարողություն (մաթեմատիկե), երկրաչափություն, աստեղաբաշխություն, որոնք երաժշտության հետ միասին կազմում էին մի միություն՝ **Tetraktus** կամ **quadrivium** կոչումով, այսինքն՝ «քառյակ», կամ, ինչպես Գրիգոր Մագիստրոսն է կոչում, **Քառիցն արուեստք**: Այս գիտությանց է նայում հայտնի փակագիրը Մովսես Խորենացու մոտ, «որպես զԱ առ Ք, զԹ առ Փ, զԵ առ Ե, զԵ առ Թ», այսինքն է՝ «Աստղաբաշխութիւն առ Քաղդեացիս, Թվականութիւն առ Փիւնիկեցիս, Երկրաչափութիւն առ Եգիպտացիս, Երաժշտութիւն առ Թրակացիս» (4):

Եկեղեցական իմաստությունը պետք չզգաց այս գիտությանց և սրանք մնացին ձեռագիրների մեջ, հեռու հանրային հարցասիրության շրջանից:

Հելլեն գիտության վիճակը քրիստոնեության միջավայրում նկարագրում է մի արաբ մատենագիր հետևյալ խոսքերով. «Հին հույների ժամանակ և բյուզանդական միապետության առաջին դարերում գիտությունը շարունակեց աճել և զարգանալ: Գիտնականները և փիլիսոփաները, որ մեծ հարգանք և ուշադրություն էին վայելում, պարապում էին բնագիտությամբ, մարդու մարմնի, մտքի և հոգու ուսումնասիրությամբ: Պարապում էին նաև քառյակ գիտություններով, այսինքն՝ ուսողությամբ (մաթեմատիկե), որ է թվերի գիտություն, երկրաչափությամբ, որ է ծավալի և ձևերի չափումը, աստղաբաշխությամբ կամ երկնային մարմինների գիտությամբ, և երաժշտությամբ, որ է հնչյուններ դաշնավորելու արվեստ: Գիտությունները պատիվ ունեին և համաշխարհային համարում: Նստած հաստատուն և փառահեղ պատվանդանի վրա, նրանք բարձրանում էին օրեցօր, երբ քրիստոնեական կրոնը երևան եկավ հույների մոտ: Օրհասական մի հարված էր գիտության շենքի համար: Նրա բարձունքը տապալվեց, և վարդապետությունները անհետացան: Ինչ որ պարզել էին հին հույները, չքացավ, և այն գյուտերը, որ արդյունք էին հների հանճարին, այլանդակվեցին»[1]:

Նույն միտքը հայտնում է նաև Գրիգոր Մագիստրոսն իր նամակներից մեկում հետևյալ համարձակ խոսքերով. «Եթէ ձկնորսացն եմ աշակերտ, սակայն ոչ եմք անտեղեակ Աթենացւոցն ստորոգութեանց եւ հելլենական հանճարոյ, սակայն **հաւատք մեր ծածկեցին զիմաստութիւն**» (5): Նրան քաջածանոթ են «Քառիցն արուեստք»:

---

[1] **Masoudi, Les Prairies d'Or, II, 320.**

Գիտության անմխիթար դրությունը տևեց դարեր, մինչև որ IX դարում վերածնվեց գիտական միտքը և գործունեությունը: Հին ծառը բողբոջեց անհատական ջանքերով և արժանացավ պետական հովանավորության: **Անդրանիկ գիտնականը և մեկենասը, երկուսն էլ հայ էին:**

## II

Հայկական շրջանը բյուզանդական պատմության մեջ սկսվում է ոչ թե Վասիլ [I] Մակեդոնացուց, այլ Լևոն V [Հայկազն] կայսրից, այսինքն՝ ոչ թե IX դարու վերջից, այլ սկզբից:

Լևոն Հայկազն կայսրի սպանությամբ հայ ազդեցությունը չտկարացավ: Միքայել Թլվատը այն անձը չէր, որ կարենար որևէ մեծագործությամբ մեղմացնել իր գործած ոճիրը: Ամեն նկատումով ցածր էր իր զոհից: Թեոփիլոսն ավելի կարող և գիտակից իշխան էր քան իր անկիրթ հայրը Միքայել Թլվատը, և ավելի զգաստ և շրջանկատ քան իր որդին՝ Միքայել Արբշիռը: Ամեն պարագային նրա հավակնությունները ավելի զորեղ էին քան իր կարողությունները: Թեոփիլոսի կինն էր Թեոդորա, Մամիկոնյան իշխանուհին: Սրա հորեղբայրը՝ Մանուել Մամիկոնյանը, Արմենիակյան թեմի ստրատեգոս էր տակավին Լևոն V-ի ժամանակ և պետության առաջին զինվորական դեմքն էր և մնաց մինչև իր կյանքի վերջը՝ Միքայել III-ի օրով: Թեոդորայի քույրերը իրենց ամուսիններով՝ Արշավիր պատրիկ և Կոստանդին Բաբուցիկ, և եղբայրները՝ Վարդ և Պետրոնաս ամենազործուն ուժերն էին Ամորյան հարստության ժամանակ:

Կարելի է ասել, որ Մամիկոնյան տան փայլուն շրջանն էր: Վարդ Մամիկոնյանն այնքան պերճացավ, որ օրինական ճանապարհով պիտի հաջորդեր վերջին Ամորացուն, իր քեռորդուն, և նոր հարստության հիմը պիտի ձգեր, եթե միայն քմահաճ բախտը այլապես չտնօրիներ և չխլեր նրանից կայսերական թագը մատուցանելու նրա ավելի երջանիկ ախոյանին և հայրենակցին, Վասիլ Մեծազործ Հային:

Ահա այս Վարդն էր, որ մեկենաս հանդիսացավ գիտությանց: Կիրթ և ուսումնասեր մարդ էր, սիրում էր գիտությունը և գիտնականների հասարակությունը: Նրա մեկենասությունը անհատական համակրության սահմանում չմնաց, այլ հասավ պետական բարձրության: Պետական հովանավորությունը սփռեց **գիտության վրա, բաց անելով առաջին համալսարանը Մագնավրա կոչված պալատում:** Վարդի թշնամիներն անգամ խոստովանում են նրա արժանիքը, նրա խոշոր և անգնահատելի ծառայությունը կրթության ասպարեզում: Այն գիտնականը, որ նորաբաց դպրոցի գլուխն անցավ, **Լևոն մեծ փիլիսոփան էր:** Նա և հայ էր, և, ինչպես կտեսնենք, նախարարական մեծ տոհմից: Վարդի մտերիմ բարեկամն էր, գուցե և գիտական հաստատության բուն հեղինակը: Նրան հավատաց Վարդը իր ձեռնարկի տեսչությունը: Ո՞վ էր Լևոնը:

Նշանավոր կյանքերը ներկայանում են ստեպ նույնիսկ մերձավոր սերնդի հիշողության մեջ, մանավանդ Բյուզանդիայում, վիպախառն գծերով: Լևոնի պատմությունը նույնպես զերծ չէ զրուցային պաճուճանքներից: Մեծ գիտնականը ապրում էր սկզբում գրեթե անհայտության մեջ կամ ծանոթ էր անձուկ շրջանում: Ուսումնասիրել էր բոլոր գիտությունները և հաջողել ձեռք բերել այնպիսի մի խոր հմտություն, որ անմատչելի էր ուրիշ որևէ մեկին: Փիլիսոփայությունը և իր քույր գիտությունները՝ թվաբանություն, աստեղաբաշխություն, երկրաչափություն և երաժշտություն հավասարապես ընտանի էին նրան: Բնական հարուստ ձիրքերը, տոկուն աշխատությունը և մենավոր կյանքը, ահա այն պայմանները, որոնց շնորհիվ դիզել էր իր մտավոր գանձերը և հասել գիտության ծայր կետին: Քաշվելով կյանքի ժխորից, ընտրել էր մի աղքատ տնակ, ուր ընդունում էր և ուսուցանում ամեն մարդու, որ գալիս էր նրա մոտ սովորելու ինչ որ ցանկանում էր: Բազմաթիվ աշակերտողներ ունեցավ: Նրանցից մեկը պատճառ եղավ, որ մեծավաստակ գիտնականը, այդ թաքուն գանձը, հայտնի դառնար պետական շրջանակներում և իր չքավոր հյուղից փոխադրվեր կայսերական պալատ:

Լևոնի աշակերտներից մեկը, որ սովորել էր երկրաչափություն, մտել էր մի ստրատեգոսի (զորավարի) մոտ գրագրի պաշտոնով: Երբ զորավարը պատերազմի գնաց արաբների դեմ, առավ իր հետ նաև գրագրին: Սա գերի ընկավ և տրվեց մի նշանավոր արաբի որպես սպասավոր:

Այդ ժամանակ ամիրապետը [ալ-] Մամունն էր: Նա հայտնի էր իր կրթասիրությամբ: Մասնավոր սեր ուներ հունական գիտությանց և մանավանդ երկրաչափության: Մի անգամ խոսակցության ընթացքին գերի սպասավորը իմացավ իր տիրոջից, որ ամիրապետը հետաքրքրվում է գիտական հարցերով: Առանց քաշվելու հայտնեց, որ ինքը գիտե երկրաչափություն և կուզենար ծանոթանալ ամիրապետի ուսուցիչ գիտնականներին: Արաբ իշխանը լուրը հասցրեց Մամունին: Սա, որ ծարավի էր գիտության, հրամայեց բերել տղային և հարցրեց, թե որքան ճիշտ է նրա ասածը: Խալիֆան չծածկեց իր թերահավատությունը, ասելով, որ երկնքի տակ ավելի կարող գիտուններ չկան, քան իր ուսուցիչները: Երիտասարդ ծառան ավելի ևս ցանկացավ անպատճառ ծանոթանալ այդ գովված գիտնականներին: Ամիրապետը հարգեց նրա խնդիրը և տեսակցությունը կայացավ: Արաբ գիտնականները գծեցին եռանկյունիներ և քառանկյունիներ, թվեցին Եվկլիդեսի կանոնները և սկսեցին գիտնականի լրջությամբ շարել անունները, թե այս բանը այսպես է կոչվում, այն այնպես: Բայց թե ինչո՞ւ է այդպես կոչվում, և

կամ ի՞նչ է իմաստը և պատճառը՝ չգիտեին: Լեզուներ էին, որ շարժվում էին, բայց էությունը չէին ըմբռնում:

Հռոմ գերին հասկացրեց, որ նրանց գիտությունը թերի և անկատար է, քանի որ պատճառաբանել չեն կարող: Հետո ինքը սկսեց տալ հարկավոր մեկնությունը և բացատրությունը: Ամենքը ապուշ կտրեցին և հիացումով հարցրին, թե ո՞րտեղ է ամբարել այդ գիտությունը և թե արդյոք իրեն նման գիտուններ շատ կա՞ն Բյուզանդիայում: Գերին պատասխանեց, որ ինքը շատ շատերի հետ համարվում է աշակերտների թվում և ոչ իսկական ուսուցիչների: Հետաքրքրվեցին իմանալ, ո՞վ է եղել իր ուսուցիչը: Ավելի ևս զարմացան, երբ լսեցին որ ուսուցիչը Լևոն անունով մեծ փիլիսոփան է, որ դեռ կենդանի է և ապրում է չքավորության մեջ, բազմության անհայտ և անծանոթ վիճակում:

Մամունը շատ հուզվեց և իսկույն ևեթ նամակ գրեց Լևոն փիլիսոփային հետևյալ բովանդակությամբ. «Պտղից ճանաչեցինք ծառը, աշակերտից՝ ուսուցիչը: Քանի որ փիլիսոփայական խորունկ գիտությամբ, առաքինի վարքովդ անծանոթ ես մնացել հայրենակիցներիդ, և այժմ չես քաղել գիտությանդ և իմաստությանդ պտուղները, այլև ոչ մի մեծարանքի չես արժանացել նրանց կողմից, լավ կլինի, որ բարեհաճես գալ մեզ մոտ և հաղորդակից անես մեզ քո վարդապետությանդ: Եթե հոժարես գալ, համակ սարակինոսաց ազգը կճկե իր վիզը ձեր առաջ և այնպիսի հարստությամբ, այնպիսի ճոխ նվերներով կպատվե ձեզ, որին ոչ մեկ մահկանացու չէ արժանացել»:

Մամունը նամակը տվավ հռոմ ծառային, սիրաշահեց ընծաներով և պատվիրեց տանել նամակն իր ուսուցչին: Խոստացավ նորից ընծաներ տալ և անգամ ազատ արձակել գերությունից, միայն թե ողոքե, համոզե փիլիսոփային թողնել հայրենի հողը:

Գերին եկավ կայսերական քաղաքը և գտավ իր ուսուցչին: Երբ տեսավ նրա պայծառ ու ջերմ երեսը, խանդաղատեց, սկսեց լալ և ողջագուրել, թանալ արտասուքով երեսը, վիզն ու կուրծքը: Ուսուցիչը չճանաչեց և մնաց ապշած օտարականի վարմունքից: Գերության մեջ քաշած տարիները փոխել էին նրա կերպարանքը: Երբ երիտասարդը հիշեցրեց իր անունը և թե ե՞րբ և ի՞նչ է սովորել, փիլիսոփան ճանաչեց: Նամակը հանձնեց նրան: Սակայն Լևոնը վախենալով, որ թշնամի վեհապետից ստացած նամակը կարող էր կասկածներ հարուցել անախորժ հետևանքներով, բարվոք համարեց հաղորդել եղելությունը մեծ լոգոթետեսին, որ էր Թեոկտիստոս ներքինին:

Այս առթիվ լոգոթետեսը ծանոթացավ Լևոնին և իր կողմից հայտնեց ամեն ինչ Թեոփիլոս կայսրին: Սա հետաքրքրվեց գործով, կանչեց իր մոտ



Լևոնին, թոշակ կապեց նրան, պատվիրելով դասախոսել Ս. Քառասուն Մանկանց եկեղեցում: Ահա այս կերպ մեծ փիլիսոփան դուրս եկավ անհայտությունից և հռչակ ստացավ մայրաքաղաքի մտավորական և պաշտոնական շրջաններում:

Պատմում են նաև, որ Մամունը տեսնելով, որ իր հրավերը ձախողեց և Լևոնին չթողին հեռանալ իր տեղից, նամակ գրեց նրան, ուր առաջադրեց մի քանի երկրաչափական, աստղագիտական և ուրիշ խրթին հարցեր, և խնդրեց ուղարկել նրանց լուծումը: Լևոնը բացատրեց ինչ որ պահանջվում էր, լուծեց դյուրությամբ խնդիրները և միևնույն ժամանակ մի քանի գուշակություններ արեց և բոլորը նամակով ուղարկեց ամիրապետին:

Նամակը մեծ հիացք պատճառեց ամիրապետին: Այնպիսի բարդ և խրթին խնդիրների լուծումը, որ տվել էր Լևոնը, մի նոր ապացույց էր նրա անզուգական գիտության:

Մամունը մի անգամ ևս փորձեց իր մոտ բերելու այդ նշանավոր գիտունին և նամակ գրեց ոչ նրան, այլ այս անգամ կայսրին:

«Կկամենայի ինքս գալ ձեզ մոտ,- գրում է խալիֆան,- բարեկամությունս վկայելու և միևնույն ժամանակ աշակերտելու ձեզ: Բայց Աստուծուց տրված իշխանությունս և բազմաթիվ հպատակներս չեն ներում հեռանալ, ուստի խնդրեմ դրկես ինձ մոտ կարճ ժամանակով այն մարդուն, որ այնպես հռչակված է՝ փիլիսոփայության և մյուս գիտությունների մեջ: Թող գա ապրե ինձ մոտ և որպես ուսուցիչ ավանդե իր գիտությունն ու հաղորդ անե ինձ իր առաքինության: Ինձ, որ այնպես սիրահար եմ թե մեկին, թե մյուսին, չի կարելի բնավ մերժել այն պատճառով, որ ես միևնույն լեզուն չունիմ ձեզ հետ և օտար եմ ձեր հավատին: Խնդիրները հարգվում են բարի և ազնիվ բարեկամների մեջ, մանավանդ՝ երբ խնդրողը այնպիսի ոք է, որպես ես: Պատրաստ եմ նաև ի տրիտուր նվիրաբերել քսան կենդինար ոսկի և դաշն և խաղաղություն կնքել ընդմիշտ և անքակտելի»:

«Այսպես բարձր է գնահատում Մամունը,- նկատում է պատմագիրը,- Լևոնի գալուստը և հասարակությունը»:

Թեոփիլոս կայսրը մերժեց ամիրապետի խնդիրը: Նա գտավ, որ խելոք բան չէ ընտանի բարիքը տալ թշնամուն, զիջանել օտարին այն գանձը, որով բյուզանդացիք միշտ փայլել են և զարմանքի ու հարգանքի նյութ եղել:

Կայսրը մեծ փառքի արժանացրեց Լևոնին, հրամայելով Հովհաննես պատրիարքին ձեռնադրել նրան մետրոպոլիտ Թեսաղոնիկեի (6): Պատրիարքը կատարեց կայսերական պատվերը, մտեն ճանաչելով Լևոնին որպես իր ազգականի:

Թեսաղոնիկե Լևոնը մեծ հռչակ ստացավ մի դեպքի առիթով: Տարիներ շարունակ անբերրիություն էր տիրում երկրում, սերմերը չորանում էին և

ոչինչ չէին տալիս: Ժողովուրդը թշվառության մեջ էր և տառապում էր սովից: Լևոնը ինչ-ինչ աստղագիտական դիտողությանց հետևելով, ճշտիվ որոշեց, թե երբ պետք է սերմանել, որպեսզի արդյունք տա: Գյուղացիք այդպես էլ վարվեցին: Առատ հունձք ունեցան և գոհունակությամբ փառաբանեցին իրենց գիտնական մետրոպոլիտի անունը:

Լևոնի համբավը այնքան մեծացավ, որ շատերի համար հանելուկ էր, թե ի՞նչպես մարդ կարող է հասնել այդպիսի կատարելության բոլոր գիտությունների մեջ: Լևոնն ինքը պատմել էր իր մտերիմներից մեկին, թե ի՞նչ կերպ էր ձեռք բերել իր գիտությունը: Քերականություն և քերթողություն սովորել էր Կոստանդնուպոլսում, ճարտասանություն, փիլիսոփայություն և թվաբանություն՝ Անդրոս կղզում: Այստեղ մի գիտուն մարդ կար, որի մոտ պարապեց Լևոնը, բայց չգտավ ինչ որ որոնում էր: Սկզբնական գիտելիքներ ձեռք բերեց միայն և հեռացավ: Շրջեց զանազան վայրեր, անցավ վանքից վանք, քրքրեց թափթփած ձեռագիրներ, քննեց, զննեց և ինչ որ հարկավոր համարեց, առավ հետը և բարձրացավ լեռների գագաթները և խորին առանձնության մեջ սկսեց ուշիուշով ուսումնասիրել իր հավաքած գրքերը: Այս եղանակով հասավ ծայր գիտության և վերադարձավ մայրաքաղաք և հետամուտ եղավ գիտության սերմերը ցանել ուսումնատենչ հոգիներում:

Այս էր Լևոնի զբաղմունքը մինչև եպիսկոպոսանալը: Երեք տարի միայն վարեց մետրոպոլիտություն և երբ գահընկեց եղավ, վերադարձավ վերստին գիտական և մանկավարժական գործին: Մագնավրա պալատի դպրոցի պետ նշանակվեց: Երեք աշակերտներից Թեոդորոսը ավանդում էր երկրաչափություն, Թեոդիգիոսը՝ աստղաբաշխություն և Կոմիտասը՝ քերականություն:

Նրանց հովանավորն էր Վարդն իր առատաձեռն օգնությամբ և գիտության սիրով: Հաճախ այցելում էր դպրոց, խրախուսում էր աշակերտներին, որով «թևեր տվեց գիտություններին»: Նրանք թևավորվեցին և առաջ սլացան:

Այս պատմության մեջ կան և՛ ստույգ, և՛ անվավեր կետեր: Կասկածելի է ամենից առաջ Լևոնի և Մամունի ծանոթության պարագան: Մի ուրիշ տեղեկությամբ միջնորդի դեր կատարողը Լևոնի աշակերտներից այն անձն էր, որ Ամորիայի պաշարման ժամանակ 838 թվին պաշարված բանակի մեջ էր: Կամենալով անցնել արաբների կողմը և այդպիսով փրկվել վերահաս կորուստից, նա, որ աստղաբաշխ էր, մի կերպ իմաց տվավ թշնամուն, որ եթե երկու օր ևս շարունակեն պաշարումը, քաղաքը կառնեն: Այդպես էլ եղավ: Ամորիան ընկավ, նշանավոր զինվորական դեմքերը մասամբ կոտորվեցին, մի մասն էլ գերի ընկան արաբների ձեռքը:

Լևոն փիլիսոփայի մատնիչ աշակերտը, փրկեց իր կյանքը անարգ գնով



և ապավինեց արաբներին: Նրանից էր, որ ամիրապետը իմացավ Լևոն գիտնականի գոյության մասին: Նամակ գրեց Թեոփիլոսին և գերիներից մեկի ձեռքով ղրկեց Կոստանդնուպոլիս և խնդրեց թույլ տալ մեծ փիլիսոփային գալ իր մոտ, խոստանալով մեծամեծ պատիվներ: Թեոփիլոսն այդ ժամանակ միայն իմացավ, որ իր պետության մեջ այդպիսի մի խոշոր գիտնական կա և փոխանակ ամիրապետին ուղարկելու, կարգադրեց, որ Մագնավրա պալատում դասախոսություններ կարդա աշակերտներին: Ամեն դյուրություն տվավ նրան: Լևոնը Թեսաղոնիկեի մետրոպոլիտ եղավ:

Նույնը կրկնում է բառացի մի ուրիշ պատմագիր ավելացնելով միայն, որ Լևոնը ձեռնադրություն ստացավ Մեթոդիոս պատրիարքից[1]:

Այս վերջին տեղեկությունը միանգամայն սխալ է: Լևոնը մետրոպոլիտական աթոռից ընկավ որպես պատկերամարտության առաջնորդներից մեկը 843 թվին, երբ պատկերապաշտությունը վերահաստատվեց: Եվ որովհետև միայն երեք տարի մնաց աթոռի վրա, հետևապես ընտրված պետք է լիներ 839-840 թվին: Մեթոդիոսը հաջորդեց Հովհաննես պատրիարքին, որ նույն պատճառով գահը թողեց 843 թվին, և մնաց չորս տարի, ուրեմն 843-847: Պարզ է, որ նա չէր կարող Լևոնի ձեռնադրության հեղինակը լինել:

Առաջին աղբյուրը ոչինչ չէ ասում, թե երբ գերի ընկավ Լևոնի աշակերտը, մինչդեռ երկրորդը գիտե, որ Ամորիայի պաշարումի ժամանակ էր, 838 թվին: Այս դեպքում գերին չէր կարող գործ ունենալ Մամունի հետ, որ մեռել էր 833 թվին և ոչ էլ թուղթ բերել Լևոնին: Անհավանական է, որ անցքը տեղի ունեցած լիներ Մամունի օրով, երբ Լևոնը տակավին երիտասարդ էր, ինչպես կտեսնենք, և անպատրաստ ապագա կոչման: Մամունի միջամտությունը Լևոնի կյանքի մեջ, նրա նամակագրությունը ոչ մի հավատ չեն ներշնչում և համարելու է հնարածո զրույց: Հիմք կամ առիթն այն է եղել, որ Մամունն իրոք սիրող էր գիտության և մեծ հովանավոր: Թերևս գիտական որևէ առաքելություն ունեցած լինի Բյուզանդիա: Արաբները հարգում էին հույն գիտությունը և աշխատում էին թարգմանությամբ յուրացնել: Մյուս կողմից, իրենց գիտության ծարավը, եթե ոչ պաշարը, կարող էր արձագանք տալ բյուզանդական մտավոր շրջաններում: Երկու հարևան պետությանց աղերսը կրթության ասպարեզում այս կամ այն չափով բնական է և գրեթե անվիճելի: Հավանական է, որ այս գետնի վրա բուսած լինի Լևոնի և Մամունի գրագրության զրույցը:

Վստահելի չէ թվում Լևոնի կենսագրության մեջ նաև այն տեղեկությունը, թե նա կարոտության մեջ էր ապրում և ստիպված էր իր կյանքը հայթաթել մասնավոր դասավանդությամբ, մինչև ծանոթացավ արքունիքին:

---

[1] Symeon, 640.

Վստահելի չէ այս պարագան, որովհետև Լևոնը հասարակ տանից չէր: Նա մեծատան զավակ էր: Բավական է ասել, որ Հովհաննես պատրիարքի եղբորորդին էր, ἐξάδελφος, ինչպես վկայում է իր կենսագիրը[1]: Իսկ Հովհաննեսը «եկվոր և կամ օտարական չէր, այլ բնիկ էր, կայսերական մայրաքաղաքի ծնունդ, և ոչ աննշան, այլ խիստ ազնվական տոհմից, որ կոչվում էր Մորոխարզամիոս»[2]:

Հովհաննեսը մի եղբայր ուներ անունն Արշավիր, որին Թեոփիլոս կայսրը պատրիկության պատիվը շնորհեց: Արդյո՞ք սրա որդին էր Լևոն փիլիսոփան, թե մի ուրիշ եղբոր զավակ էր:

Այստեղ պիտի կանգ առնենք Հովհաննես պատրիարքի կյանքի և գործունեության վրա: Այս կարևոր է ոչ միայն Լևոնի ընտանեկան միջավայրը պարզելու նկատումով, այլև այն պատճառով, որ Հովհաննես ինքը մի կարկառուն դեմք էր իր կրթությամբ և գիտական պատրաստությամբ:

## III

Հովհաննես երևան եկավ Լևոն V Հայի ժամանակ և խոշոր դեր ունեցավ նրա եկեղեցական քաղաքականության մեջ: Ցավ է, որ պատմագիրները պատկանում են հակառակ ուղղության, ուստի և անկողմնակալ չեն Հովհաննեսի և նման խորհողների վերաբերմամբ: Փառաբանել իրենց կողմնակիցներին և լուտանք թափել հակառակորդների գլխին՝ բնական բան էր համարվում: Այն լեզուն, որ գործ են ածում Հովհաննեսի դեմ, ինքնին վկայում է, որ արհամարհելի ախոյան չէ եղել:

Երբ Լևոնը գահ բարձրացավ 813 թվին և հետամուտ էր վերականգնել պատկերամարտությունը, որ խափանվել էր 787 թվի ժողովով, աչք ածեց շուրջը՝ քաջ տեսաբան գտնելու, ընտրությունն ընկավ մի երիտասարդ եկեղեցականի վրա: Այդ Հովհաննեսն էր, անբավ գիտության տեր, որի համար և կոչվում է Քերական:

Հաջորդ 814 թվին կայսրի պատվերով Հովհաննեսը ձեռնամուխ եղավ նախապատրաստական աշխատանքների: Պետք էր նյութեր հավաքել առաջիկա ժողովի համար: Կայսերական գրատունները նրա տրամադրության տակ էին: Գլխավոր աղբյուրը կազմում էին 753 թվի ժողովի արձանագրություններն ու գործերը, ուր ամբարված էին հին հայրերից քաղված բոլոր կարևոր վկայություններն ընդդեմ պատկերների: Աշխատանքը կատարվում էր պալատում, ուր հատուկ սենյակ էր հատկացված, և անպակաս

[1] Theoph. Cont., 185.
[2] Ibid., 154.



էր ճոխ սեղանը, ինչպես կծու ակնարկում են հակառակորդ գրիչները[1]: Ժողովը կայացավ: Նիկեփոր պատրիարքն ընկավ աթոռից: Հարկավոր էր նոր ընտրություն: Թեկնածուների մեջ էր նաև Հովհաննեսը, բայց չընտրվեց, որովհետև դեռ երիտասարդ էր[2]: Հովհաննեսի մերձավորն էր Թեոդոտիոս Կասսիտերաս, Մելիսենոսի տնից, որի հայրը Միքայել ստրատեգոս էր Անատոլիկյան թեմի և Կոպրոնիմոս կայսեր քենակալը: Մյուս գործակիցն էր մի երրորդ կարևոր դեմք, Կոստանդին Կասսիմատոս, կարգաթող քահանայի որդի, որ սկզբում ուսուցիչ էր քերականության և իրավաբանության, և վերջը հոգևոր կոչում ընդունեց Անտոն անունով:

Պատրիարք ընտրվեց նախ Թեոդոտիոս, նրա մահից հետո՝ Անտոնը, և հետո աթոռն անցավ Հովհաննեսին 832 թվին: Միքայել շարունակեց իր նախորդի հարգալիր վերաբերումը դեպի Հովհաննես, գնահատելով նրա դիրքը պատկերների խնդրում և նրա խորին գիտությունը: Նաև նշանակեց նրան դաստիարակ իր որդու Թեոփիլոսին: Հովհաննեսին ենք պարտական Թեոփիլոսի լավագույն հատկությունները, մանավանդ նրա սերը դեպի գիտությունն ու արվեստը: Թեոփիլոսը սիրեց իր ուսուցչին, կարգեց նրան սինկելլոս և հետո բարձրացրեց պատրիարքական աթոռ:

Հովհաննեսն անմասն չմնաց քաղաքական կյանքին: Երբ Թեոփիլոսը կամեցավ իր գահակալության առթիվ ընդունված դեսպանություն ուղարկել արաբական արքունիքը, հարմարագույն անձը դատեց այս առաքելության համար Հովհաննեսին: Կատարյալ հմտություն ուներ քաղաքական և պետական գործերի մեջ, ճարտարախոս էր և անհամեմատելի վիճաբան: Հայ լինելով, ծանոթ էր արևելյան բարքերին և նիստ ու կացին, թերևս, անտեղյակ չէր անգամ արաբական լեզվին: Դեսպանական պատասխանատու պաշտոնի համար ավելի հաջող ընտրություն չէր կարելի անել:

Մեր խնդրից դուրս է, թե ի՞նչպես կատարեց իր հանձնարարությունը, մանավանդ, որ ուրիշ տեղ խոսել ենք այս մասին[3]: Հիշենք միայն, որ Հովհաննեսը բերեց Բաղդադից տեղական արքունիքի հատակագիծը և կայսրը նույն ոճով շինել տվեց Բրիասի պալատը: Շենքը կառուցվեց համաձայն Հովհաննեսի բերած օրինակի, և հսկողությունը հանձնվեց Պատրիկ անունով ճարտարապետին: Շենքն այնքան հարազատ էր իր կաղապարին ձևով և զարդարանքներով, որ դժվար էր զանազանել: Թեոփիլոսը պատվեց ճարտարապետին պատրիկության աստիճանով[4]:

[1] Vita Nicephori, ed. Boor, 165.
[2] Scriptor incertus, 359.
[3] Ն. Ադոնց, Մամիկոնյան իշխանուհին բյուզանդական գահի վրա (տե՛ս «Հայրենիք», 1930) հոդվածում:
[4] Theop. Cont., 98.

Երկրորդ անգամ վիճակվեց Հովհաննեսին գնալ Բաղդատ: Այս անգամ խաղաղության դաշն կնքելու նպատակով էր և միևնույն ժամանակ գաղտնի հանձնարարություն ուներ բանակցել Մանուել Մամիկոնյան հռչակավոր զորավարի հետ, և համոզել վերադառնալ հայրենիք և կայսերական ծառայության[1]: Թեոփիլոս զոհ մնաց նրա հաջողակ դեսպանությունից և երբ մեռավ Անտոն պատրիարքը, Հովհաննեսն աթոռը ժառանգեց որպես միակ արժանավոր թեկնածու: Պատրիարքությունը վարեց 832-843 տարիները: Թեոփիլոսի մահից հետո նրա այրին, կայսրուհի Թեոդորան, անսալով Թեոկտիստոս լոգոթետեսի սադրանքին, վերականգնեց պատկերների պաշտամունքը: Պատրիարքը մնաց անսասան իր համոզումների մեջ և գերադասեց թողնել աթոռը: Նրան հեռացրին Կլիդիոն անունով մի վանք Վոսփորի ափին և մեռավ, հավանորեն, առաջ քան 860 թիվը:

Հովհաննեսի վրա ծանրանում է վտանունության արատը: Կրոնավորները, մանավանդ միջնադարյան, անզերազանցելի վարպետներ են հակառակորդներ վտաբանելու, ամեն գնով սևացնելու հոռի արվեստի մեջ: Վա՜յ նրան, ով որ չար բախտ կունենա նրանց լեզվի և գրչի տակ ընկնելու: Քրիստոնեական ներողամտության և կամ սոսկ արդարադատության սովորական պահանջը մոռացվում է: Հովհաննեսը պատկերամարտ բանակումն էր: Այս արդեն բավական է, որ հակախոհները զրախոսեն և ամեն տեսակ մեղքեր բարդեն մի եկեղեցականի վրա, որն արժանացել էր պատրիարքական մեծ կոչման:

Պատկերների խնդրում իսկապես մեծ տարբերություն չկար բարեկամ և թշնամի կոչված բանակների մեջ: Վեճը հարգելու, թե պաշտելու շուրջն է, և միջին հաշտարար կետ գտնելը դժվար չէր: Սակայն կրոնավորները գիտեն բորբոքել կրքերը և սերմանել ատելություն այնտեղ, ուր փոքր ինչ զգաստ վերաբերումը բավական է, որ սանձեր չարաբույն բերանները:

Հովհաննեսը, ինչպես հիշեցինք վերև, մեծատան զավակ էր, համբավավոր տոհմից: Պատանի օրերից սքեմ էր հագել և հետագայում վանահայր էր Ս. Սարգիս և Բակքոս վանքի, որ պալատական եկեղեցիների թվումն էր և հոգևորականությունը հաշվում էր կայսերական կղերի մեջ[2]:

Ընտանեկան պայմանները հնարավորություն էին տվել նրան ստանալ բազմակողմանի և խոր կրթություն: Հովհաննեսի սովորական մականունն էր **Grammatikos**, Քերական[3]: Նշանակում է, իր ժամանակվա գիտությանց ամբողջական շրջանն անցել էր, որովհետև քերական բառն ընդարձակ իմաստ

[1] **Genes**. 63; **Theoph. Cont.**, 119.
[2] **Genes.**, 83; **Theoph. Cont.**, 154.
[3] **Theoph. Cont.**, 32; **Georg.**, 766; **Symeon**, 635.



ունի, ինչպես վերև բացատրեցինք: Նրա կատաղի թշնամիները, որ կամովին կուրությամբ զլանում են նրա մեջ որևէ լավ հատկություն տեսնել, չեն վարանում խոստովանելու նրա բարձր կրթությունը և մտավոր գերազանցությունը:

Ընդգծում են նրա **logiotes**, մտացի պերճախոսությունը, որի համար սիրելի էր Միքայել Թլվատին[1]:

Ընդգծում են, որ նա հմուտ էր քաղաքականության, գիտեր, թե ի՞նչ է նշանակում քաղաքական բարեկարգություն, անվեհեր ընդդիմախոս էր, վարպետ՝ հակաճառության արվեստում:

Բարձր կարողություն ուներ իմաստասիրության և դիալեկտիկայի [բնագավառներում], ուստի և նրան էին հանձնում խելքի բերելու այն համառ կրոնավորներին, որոնք հակառակ էին տիրող եկեղեցական գծին[2]:

Այս այսպես լինելով հանդերձ, Հովհաննեսի թշնամի պատմագիրները, կրոնական, թե կուսակցական կրքերից կուրացած, անվանում են նրան ոչ թե Հովհաննես, այլ Հաննես: Այսպես էր կոչվում Մովսեսի հետ մրցող եգիպտական կախարդ քուրմերից մեկը (7): Ասել է, թե Հովհաննեսը սովորական մեկը չէր, այլ կախարդ էր: Անվանում են նաև Սիմոն, ակնարկելով այսանուն մոգին: Հավատացնում են, որ մանկությունից դև ուներ և խելագար էր: Փուք անունը որպես թե Հյուլիլաս էր կամ Հիզիլաս, որ նշանակում է եբրայեցերեն իբրև թե կարապետ կամ արբանյակ սատանայի[3]: Համբավված էր լեկանագուշակության՝ λεκανομαντεία, դեղագիտության՝ φαρμακεία և պղծագործության արվեստի մեջ[4] (8): Պատմում են դարձյալ, որ Հովհաննեսը մի եղբայր ուներ Արշավիր անունով: Սա պատրիկ էր և քաղաքից դուրս Վոսփորի ափին մի տուն ուներ Փոկասի վանքի մոտ: Հոյակապ շինություն էր, սյունազարդ գավթով, բաղանիքով և այն ամեն հարմարությամբ, որ վայել էր ազնվական մի ձեռակերտի: Հովհաննես պատրիարքը հաճախ այցելում էր այս տունը և օթևանում: Նա ուներ այստեղ նաև մի աշխատանոց ստորերկրյա հարկի մեջ, ուր իջնում էին առանձին սանդուղով և դռնով: Մի տեսակ թաքստոց էր, ուր Հովհաննեսը որպես անձնատուր էր լինում զեղխության, «պղծելով միանձնուհիներ և այլապես պարկեշտ աղջիկներ»: Այնտեղ պարապում էին նաև գուշակություններով, դիմելով զանազան հնարքների և կախարդական միջոցների, ինչպես լյարդազննություն, լեկանագուշակություն, դյութություն, հոգեխոսություն, այսինքն մեռածների ոգի-

[1] **Theoph. Cont.**, 154.
[2] Ibid., 96, 102.
[3] Scriptor incertus de Leone Bardae filio, 349; **Symeon**, 606.
[4] **Georg.**, 766; **Symeon**, 606.

ները կանչելով: Թեոփիլոս կայսրն իսկ մասնակցում էր այդ խորհրդավոր զբաղմունքներին շատերի թվում[1]:

Թեքևամտություն կլիներ որևէ արժեք տալ այս վայրախոսություններին: Երբ Հովհաննեսն ընկավ, և աթոռ բարձրացավ Մեթոդիոս եպիսկոպոսը, սրա դեմ ամբաստանություն եղավ, որ սիրային կապ է ունեցել մի կնոջ հետ: Կարծում են, որ ամբաստանողները Հովհաննեսի բանակիցն էին: Մեթոդիոսն արդարացավ, թույլ տալով անվայել վարմունք, այսինքն մերկացրեց իր ամոթանքը և ցույց տվավ, որ ինքը մարմնապես անընդունակ էր վերագրված մեղսագործության:

Արդ եթե Հովհաննեսն իրոք սիրային արատ ունենար, Մեթոդիոսի կողմնակիցները չէին խնայի և նույն նախատինքը կկարդային իրենց հակառակորդին: Սակայն այսպիսի բան չեղավ: Պարզ է, որ Հովհաննեսին վերագրված խայտառակությունները ստույգ չեն և շաղփաղփ բերանների ու թունոտ մտքերի հերյուրանք են:

Պատրիարքի վհուկությունն ապացուցանելու համար բերում են մի օրինակ: Մի անգամ մի բարբարոս ժողովուրդ հարձակվեց և ավերեց բյուզանդական հողերը երեք թագավորների կամ պետերի առաջնորդությամբ: Թեոփիլոս կայսրը լքված, չգիտեր ինչ աներ: Դիմադրելու ուժ չուներ: Հովհաննեսը քաջալերեց կայսրին և խոստացավ կատարյալ հաջողություն, եթե սա լսե հետևյալ խորհրդին:

Կրկեսի պղնձե արձաններից մեկի վրա ցցեց երեք գլուխ և հմայեց, որ դրանք երեք հրոսակների գլուխներ դառնան: Հետո ընտրեց երեք կորիճ և ուժեղ երիտասարդ մի-մի մուրճ ձեռքերին և պատվիրեց, որ գիշերով նշանակած ժամին մոտենան արձանին և այնպես ուժգին զարկեն, որ միանգամից երեք գլուխներն էլ թռցնեն: Այդպես էլ արին: Հովհաննեսն ինքը ևս գնաց այնտեղ ծպտված աշխարհիկ հագուստով, որ չճանաչեն նրան և սկսեց հմայել: Մուրճավորները խփեցին հուժկու թափով: Արձանի երկու գլուխն ընկան և փշրվեցին, իսկ երրորդը մնաց կախ արձանից՝ հարվածի թուլությունից:

Քիչ ժամանակ անց երեք հրոսակ թագավորները գժտվեցին, երկուսը կործանվեցին, իսկ երրորդը փախավ վիրավորված: Մնացածները վհատվեցին, թողին և հեռացան[2]:

Հովհաննես պատրիարքը զարգացած մարդ էր և որքան էլ ենթակա լիներ իր դարու նախապաշարումներին և սնոտի հավատալիքներին, դժվար է ենթադրել, որ այսպիսի խորհուրդներ տար Թեոփիլոսին: Ուշադրության

[1] **Theoph. Cont.**, 156-158.
[2] Ibid., 155-156; **Symeon**, 649-650.



արժանի է, որ նույնպիսի մի դեպք պատմվում է մի ուրիշ Հովհաննեսի վերաբերյալ, որ աստղաբաշխական գիտություն ուներ և ապրում էր Ռոմանոս Լեկապենոսի ժամանակ: Բուլղարաց թագավոր Սիմեոնը 927 թվին եկավ Բյուզանդիայի վրա և նեղ դրության մեջ ձգեց կայսրին: Այն ժամանակ Հովհաննես աստղաբաշխը ասաց նրան, թե այսինչ արձանը, որ նայում է արևմուտք, Սիմեոնի անդրին է. եթե նրա գլուխը կտրես, նույն ժամայն կմեռնի Սիմեոնը: Այդպես էլ արին, և Սիմեոնը մեռավ[1]: Երկու Հովհաննեսների կախարդության դեպքերը միմյանց հետ առնչություն ունեին: Թվում է, որ մեկը ձևված է մյուսի վրա: Որի՞ն է տալու առաջնությունը, պարզ է: Հովհաննես աստղաբաշխի օրինակը վերաբերում է որոշ ժամանակի և որոշ արշավանքի. և՛ զոհի անունը և՛ ազգությունը նմանապես պահված են: Մինչդեռ Հովհաննես պատրիարքի դեպքը միանգամայն դիմազուրկ է. «ոմն ազգ անհաւատ եւ եղջերիկ», երեք անանուն պետ, անհայտ է և արշավանքի ժամանակը: Այս անհավատ ազգը, հարկավ, բուլղարացիք են: Հավանական ենք համարում, որ պատրիարքի դեպքը ուրիշ բան չէ, եթե ոչ Հովհաննես աստղաբաշխի փորձի ընդօրինակումը, պատրիարքին վարկաբեկ անելու նպատակով:

Երևում է, որ արևելքից հին կրոնական հավատալիքների և նախապաշարմունքների տակավին կենդանի մնացած հետքերը սփռվել էին մինչև Բյուզանդիայի մայրաքաղաքը: Ուշագրավ է մի ուրիշ օրինակ նույն մտաշխարհից: Թեոդորոս Սանդաբարեն անձը, որ Փոտ պատրիարքի բարեկամն էր, երբ որ Փոտը կորցրեց աթոռը և շնորհազուրկ եղավ Վասիլ կայսրի աչքում, աշխատեց վերականգնել Փոտի և Վասիլի բարեկամությունը: Այս նպատակով խորհուրդ տվեց Փոտին, որ կայսեր սենեկապաններից մեկի մտերմությունը գրավե և նրա միջոցով սրսկել տա կայսրի անկողնու վրա այն ջուրը, որ ինքը հմայել է: Սրանով իսկույն ևեթ կայսրի սերը կվերադառնա դեպի Փոտը: Այնուհետև բավական է, որ Սանդաբարենը մի խոսք ասե կայսրին, և Փոտը նորից կստանա իր նախկին դիրքը[2]:

Արդ, այսպիսի մի սովորություն ցայժմ գոյություն ունի հայ ժողովրդի մեջ: Երբ մատաղ աղջիկ կամ տղա ուզում են սիրած էակի սերը շահիլ կամ, ինչպես ասում են, սիրտը գողանալ, միջնորդ բարեխոս կանանց ձեռքով աշխատում են ջուր սրսկել անկողնու վրա այն անձի, որի սերը պետք է գրավել: Թեոդորոս Սանդաբարենը, որ կոչվում է «Մանիքեցի և որդի Մանիքեցու», «հրաշագործ և կանխասաց», հավանորեն արևելցի է և թերևս հայ: Իրեն վերագրված հմայությունը ևս պետք է կարծել, որ արևելքից է մտել

[1] **Theoph. Cont.**, 41; **Symeon**, 740.
[2] **Symeon**, 693-694.

Բյուզանդիա, ինչպես և զույգ Հովհաննեսների՝ Քերականի և Աստղաբաշխի առաջարկած և սարքած կախարդանքը:

Հետաքրքրական է, որ Վասիլ կայսրի որդու Ալեքսանդրի մասին ևս պատմում են, որ վհուկները հավատացրել էին, որ վարազի պղնձե արձանը, որ կար կրկեսում, նրա պատկերն է, στοιχεῖον, հուռութ[1]: Այս նշանակում է, եթե արձանը կոտրվի, Ալեքսանդրը կմեռնի:

Στοιχεῖον բառը հուռութքի իմաստով գործածված կարելի է համեմատել հայերեն «թուղթ ու գիր անել» և «գիր կապել» դարձվածների հետ: Հունարեն բառը նշանակում է տառ, գիր: Այժմ էլ գյուղերում ընդունված է, որ գիր կապող պառավները որևէ խորհրդավոր և շատ անգամ անիմաստ բառեր գրում են, փաթաթում մի կտոր շորի մեջ և կարում, օրինակ, երեխաների մեջքին, որ չար աչքը խափանվի և այլն:

Հովհաննես Քերականին և պատրիարքին կախարդ համբավելու և նրան գերբնական զորություն վերագրելու պատճառը բացատրելու է նրանով, որ նա արևելցի էր, մոգերի և քավդեյաների աշխարհից, և գիտուն էր: Հովհաննեսը հայ էր, եղբոր անունն Արշավիր էր: Այս արդեն բավական է, որ նրա հայ ծագումը ամեն տարակուսանքից վեր համարվի: Հոր անունը նույնպես հայտնի է և հայկական է: Հովհաննեսը որդին էր Պանկրատիոս Սկիաստեսի[2]:

Պանկրատիոս հունարեն ձևն է հայերեն Բագրատ անվան: Ո՞վ է այս Բագրատը և ի՞նչ է նշանակում Սկիաստես մականունը: Կոստանդին VI կայսրը 792 թվին արշավանք գործեց բուլղարների դեմ: Նրա բարեկամն էին ի միջի այլոց Վարդ հայազն իշխանը, Արմենիակների բանակաթեմի ստրատեգոսը և ապագա կայսրի՝ Լևոն V Հայի հայրը և ոմն «Պանկրա(տիոս) սուտ մարգարե և աստղաբաշխ»: Պանկրատը կանխասացության շնորհ ուներ և գուշակել էր, որ կայսրը պիտի հաղթի բուլղարներին: Կոստանդինը վստահանալով իր բարեկամի այնքան քաջալերիչ գուշակության, հոգ չտարավ ճակատը հարդարելու որպես հարկն էր, և անխոհեմ ու անզգույշ հարձակումով պարտություն կրեց: Բուլղարները Կարգամ թագավորի առաջնորդությամբ մեծ ջարդ տվին կայսրին: Շատ շատերն ընկան և նրանց թվում Վարդ զորավարը և աստղաբաշխ Պանկրատը[3]:

Այս Պանկրատը Հովհաննես Քերականի հայր Պանկրատն էր, հայ Բագրատը: Լևոն V կայսրի և Հովհաննեսի մերձավորությունը, հետևապես, ոչ միայն գաղափարական համերաշխության արդյունք էր, այլ ընտանեկան

[1] **Theoph. Cont.**, 379.
[2] **Symeon**, 606, քաղած բյուզանդիացի Անանուն հեղինակի "De Leone Bardae" (Լևոն V-ի մասին) գործից, էջ 349:
[3] **Theophanes**, 725.



մտերմություն: Նրանց հայրերը, որ ընկան միևնույն ճակատամարտում, չէին կարող ծանոթ չլինել միմյանց, որպես զենքի ընկերներ և մանավանդ հայեր:

Հովհաննես 815 թվին համարվում էր երիտասարդ՝ հայրապետական աթոռը գրավելու համար: Եթե ընդունենք, որ այդ ժամանակ 25-30 տարեկան էր, որ մեծ հասակ չէ պատրիարքության համար, նա ծնված պետք է լինի 785-790 տարիները: Ասել է, թե հոր սպանության մի քանի տարեկան երեխա էր: Հովհաննեսի հոր Բագրատի փութ անունը՝ Սկիաստես, նույնպես մի թել է, որ տանում է մեզ դեպի աստղաբաշխ և սուտ-մարգարե Բագրատը: Σκιαστής (9) Ապոլլոնի մակդիրներից մեկն է, եթե միայն հունարեն բառ է, և գործ է ածված Ապոլլոնի փոխարեն, և նշանակում է գուշակ, գուշակության ձիրք ունեցող: Այս մտքով Սկիաստես կատարելապես նույնն է ինչ որ սուտ-մարգարե, ψευδοπροφήτης, որպես կոչում են աստղաբաշխ Բագրատին: Միևնույն անունը, միևնույն կամ հոմանիշ կոչումը: Բնական է կարծել, որ խոսքը միևնույն անձի մասին է:

Ուսումնական մարդիկ, մանավանդ արտաքին գիտության հետևողները, հաճախ էին կնքվում նման ծաղրական կոչումներով: Հովհաննես Քերականին նմանեցնում էին Տրոփոնիոսի, այն անձի, որ համարվում էր Դելփյան տաճարի հիմնադիրը, և որի անունը հոմանիշ է պատգամախոս բառին[1]: Սանդղաբարենը, անշուշտ, գիտնական դեմք էր, գուցե և այդ էր պատճառը նրա և Փոտի բարեկամության: Նա ևս «հրաշագործի և կանխատեսի»՝ τεράστιος καὶ προορατικός համբավ ուներ և համեմատվում էր Ապոլլոնի հետ[2]:

Ապոլլոնի արվեստը քրիստոնեի աչքում մի տեսակ կախարդություն էր, ուստի և գիտնականները, որոնց վերագրվում է այդ արվեստը, կախարդներ են: Նրանք գաղտնի կապ ունեն դևերի հետ: Հովհաննեսի հովանավորն էր Հյուլիլաս (թե Հյուզիլաս) դևը: Փոտ պատրիարքը իր անբավ գիտությունը առացել էր Լեբուփաս կոչված սատանայից[3]:

Ով որ որակվում է այսպիսի հատկություններով, կարելի է ասել, նա գիտուն անձ է, հմուտ մանավանդ արտաքին գիտության և ոչ միայն Սուրբ Գրքի: Արտաքին գիտությունները համարվում էին հեթանոսական ժառանգություն, սատանայի գեղմունք: Գուշակության և հմայության ձիրքերը նույնպես սատանայական են, որպես հեթանոս գիտությունների ծնունդ:

Բագրատը, որ սուտ-մարգարե է կոչվում, այն կարգի գիտնականներից

[1] **Theoph. Cont.**, 156.
[2] **Symeon**, 693; **Georg.**, 846.
[3] **Symeon**, 672-673.

էր, որ զբաղվում էին արտաքին և մասնավորապես բնական գիտությամբ: Ապացույց, որ նա աստղաբաշխ էր:

Եթե ճշմարիտ է մեր ենթադրությունը, որ այս Բագրատը ուրիշ չէր, եթե ոչ Բագրատ Սկիաստես կոչվածը և Հովհաննես Քերականի հայրը, ապա պարզ է, որ Հովհաննես և իր եղբայր Արշավիրը ոչ միայն ազնվական տոհմից էին, այլև ուսումնական ընտանիքից: Հորից ժառանգել էին սեր և ծարավ գիտության և նրա ստեղծած շրջապատից քաղել առաջին հոգևոր պտուղները:

Արշավիրը, ինչպես տեսանք, Վոսփորի ափին Փոկասի վանքի մոտ մի շքեղ ապարանք ուներ, ուր գտնվում էր և Հովհաննեսի աշխատանոցը[1]:

Ուրիշ տեղեկությամբ, Հովհաննեսը մի տուն ուներ քաղաքից դուրս, որ կոչվում էր Տրուլոս (**Troulos**) և ուր կատարվում էին սատանայական զոհաբերություններ և գուշակություններ[2]: Այսպիսի զբաղմունքներ տեղի էին ունենում նաև Արշավիրի տանը: Թվում է, որ խոսքը նույն տան մասին է, և Տրուլոս ուրիշ տուն չէ, եթե ոչ Արշավիրի ապարանքը Վոսփորի ափին (**Troulos**, երևի, **troullos** բառն է, որ նշանակում է գմբեթ): Թերևս, Արշավիրի տունը գմբեթավոր էր և արևելյան ոճով): Արշավիրի տան համար ասված է, որ հետագայում գնեց Արշավիրից Վասիլ Հայը, երբ պարակիմոմենոս էր, և մենաստան դարձրեց, ինչպես և Փոկասի վանքը հիմնովին նորոգեց[3]: Մինչդեռ Հովհաննեսի տունը՝ Տրուլոս մնաց անբնակ և անտեր որպես երբեմնյան սատանայական բույն[4]: Կարծես, տարբեր տներ են: Սակայն, պետք է նկատել, որ Կոստանդին Ծիրանածինը, թվելով մի առ մի Վասիլի շինությունները, հիշում է Փոկասի վերանորոգությունը, բայց ոչինչ չէ ասում Արշավիրի տան մասին[5]: Ուստի չի կարելի աներկբա համարել, որ Վասիլն իրոք վանք դարձրած լինի հռչակավոր ապարանքը:

Պատրիարքական աթոռից ընկնելուց հետո Հովհաննեսի կյանքը մութ է, ոչինչ հայտնի չէ: Գիտենք միայն, որ իր աքսորում՝ Կլիդիոն վանքում, ինչ-ինչ պատկերներ էր փչացրել, որի պատճառով Թեոդորա կայսրուհին հրամայել էր երկու հարյուր հարված տալ և քշել Փսիքա վանքը[6]: Մահից հետո ևս հանգիստ չգտավ դժբախտ եկեղեցականը: Պատմում են, որ Միքայել Արբշիռ կայսրը հանեց նրա մարմինը գերեզմանից Կոստանդին Կավալինոս [Կոպրոնիմոս] կայսրի աճյունի հետ և կրկեսում ձիարշավի ժամա-

[1] **Theoph. Cont.**, 156.
[2] **Georg.**, 799; **Symeon**, 635.
[3] **Theoph. Cont.**, 157.
[4] **Georg.**, 799; **Symeon**, 635.
[5] **Vita Basilii**, 340.
[6] **Theoph. Cont.**, 151.



նակ մերկացրեց քահանայական զգեստներից, ինչպես թաղել էին, անարգեց անշունչ դիակը՝ բարբարոսաբար խարազանելով և հետո կրակի ճարակ տվեց[1]:

Մեղավորը Միքայել կայսրը չէր: Նա, անշուշտ, բարոյականության տիպար չէր, բայց այն հիվանդոտ մոլեռանդությունը չուներ կրոնական խնդիրներում, որ ընդունակ լիներ այսպիսի մի քստմնելի գործի առանց կողմնակի սադրանքի: Նրա ետև թաքնված էին Հովհաննեսի ոխերիմները, որոնք զինվորագրվել էին պատկերներին, բայց մոռացել քրիստոնեական ոգին: Ի՞նչ պայծառ հայելի է նրանց հրեշավոր պատկերի համար այս մի հատիկ դեպքը: Սրանից հետո ի՞նչ արժեք կարող են ունենալ այն անմիտ և չարամիտ վայրաբանությունները Հովհաննեսի անվան շուրջը այդպիսի մի խայտառակ մթնոլորտում:

Միքայելը սպանվեց 867 թվին: Հետևապես, Հովհաննեսի մահը սրանից առաջ է: Չի կարելի ասել, որ նոր էր մեռած, երբ Միքայել հանեց նրա մարմինը: Միաժամանակ անարգվեց և Կոստանդին Կոպրոնիմոսի մարմինը, իսկ սա մեռած էր 775 թվին: Հավանական է թերևս կապել Հովհաննեսի մահը Արշավիրի տան վաճառման հետ: Հռչակավոր ապարանքի վաճառումը բացատրելու է թերևս նրանով, որ Հովհաննեսը մեռել էր: Նրա կենդանության դժվար թե վաճառվեր այն օթևանը, ուր գտնվում էր նրա աշխատանոցը: Տունը գնեց Վասիլը, երբ պարակիմոմենոս էր (սենեկապետ): Այդ պաշտոնին նա հասել էր Վարդի դեմ կատարված մահափորձի հետևանքով 858-859 թվերին: Հովհաննեսի մահը և տան վաճառումը դնելու է այդ թվից հետո և 867 թվից առաջ: Այժմ դառնանք նորեն Լևոն փիլիսոփային:

## IV

Լևոնը Հովհաննես Քերականի եղբորորդին էր և ուրեմն Բագրատ աստղաբաշխի թոռը: Հովհաննեսի եղբայրը պատրիկ Արշավիրն էր, նշանավոր ապարանքի տերը: Արդյոք Լևոնը սրա որդի՞ն էր, թե մի ուրիշ եղբոր, որի անունը չեն տալիս պատմագիրները:

Բագրատ անունը բացառապես Բագրատունյաց տոհմական սեփականությունն է: Աստղաբաշխը անտարակույս նույն տոհմիցն է: Արշավիր անունը հատուկ է Կամսարական տան: Եթե Բագրատի որդին կրում է Արշավիր անունը, այդ կարելի է բացատրել մայրական գծով, այսինքն՝ որ մայրը, ուրեմն Բագրատի կինը, Կամսարական տոհմից էր:

Վարդան մոնոստրատեգոսից հետո, որ փորձեց գրավել կայսերական

[1] **Georg.**, 834; **Symeon**, 681.

գահը 802 թվին, մի ուրիշ հայ Արշավիր անունով նույն քայլն արեց 808 թվին: Սա պատրիկ էր և պաշտոնով քվեստոր: Սրա դուստրը՝ Թեոդոսիա, կնության էր տրված Լևոն V Հային: Անհավանական չէ, որ Բագրատը ևս նման կապով խնամացած լիներ Արշավիրի տան հետ և այստեղ Արշավիր անունն անցած Բագրատի որդուն: Արշավիր քվեստորը կարող էր որդի և մոտ ազգական լինել Ներսեհ Կամսարականի, որ ընկավ 785 թվին, Բագրատ սպարապետի և Տաճատ Անձևացու հետ: Վերջինս Բուկելլարյան թեմի զորավար էր և Իրենե կայսրուհու դավերից խուսափելով ապաստանեց արաբների մոտ 782 թվին և հիշյալ երկու հայ իշխանների հետ ելավ կռվի ընդդեմ հոնաց և խազարաց և երեքն էլ մնացին պատերազմի դաշտում Դերբենտի մոտ 785 թվի ամառը:

Այս իշխանների՝ Ներսեհ Կամսարականի և Բագրատ սպարապետի որդիներն (և կամ մոտ ազգականներն) ենք համարում Արշավիր քվեստորին և Բագրատ աստղաբաշխին: Վերհիշենք, որ Բագրատը սպանվեց բուլղարական ճակատում Արշավիրի փեսայի՝ Լևոն V կայսրի հոր՝ Վարդ պատրիկի հետ: Վարդը Արծրունյաց տնից էր: Թվում է, թե այս երեք տները՝ Կամսարական, Բագրատունի և Արծրունի, մերձ էին խնամիական կապերով: Միայն այս կերպ կարելի է մեկնել, որ Բագրատի որդին կրում էր Արշավիրի անունը: Գուցե Բագրատի թոռը՝ Լևոն փիլիսոփան, իր անունը պարտական է Լևոն V կայսրին: Արդյոք Լևոնն Արշավիրի որդին էր, թե Հովհաննես Քերականը մի երկրորդ եղբայր ուներ, և սա էր հայրը Լևոն փիլիսոփայի՝ մնում է մութ:

Այս Արշավիրը շփոթելու չէ այն համանուն մեծ պատրիկի հետ, որ Թեոդորա կայսրուհու քրոջ՝ Կալոմարիայի ամուսինն էր, ուրեմն Մամիկոնյան փեսա: Թեոկտիստոս ներքինու սպանությանը, 856 թվին, Կալոմարիան ապրում էր պալատում իր քրոջ մոտ և գործակից էր իր եղբոր Վարդին՝ ընդդեմ Թեոկտիստոսի: Երևում է, որ այդ միջոցին Կալոմարիան արդեն կորցրել էր իր ամուսնուն և որպես այրի կին քաշվել էր արքունիք, քրոջ մոտ: Մինչդեռ Հովհաննեսի եղբայր Արշավիրը տակավին կենդանի էր, երբ Վասիլ պարակիմոմենոս էր: Իսկ այդ պաշտոնը նա ստացավ Թեոկտիստոսի սպանությունից և Վարդի մահափորձից հետո, մոտ 858-859 թվին: Ասել է, թե Կալոմարիայի ամուսին Արշավիրը ուրիշ անձ է, քան Հովհաննեսի եղբայր Արշավիրը: Հնարավոր է, որ առաջինը կապ ունենար Արշավիր քվեստորի հետ որպես որդի կամ թոռն, կամ մոտ ազգական: Նախարարական անուններն իրենց տոհմական իրավունքներն ունեին և պահում էին, ցորչափ որ հիշում էին իրենց ծագումը:

Եթե ընդունենք, որ Հովհաննեսը և Արշավիրը կարող էին Արշավիր քվեստորի աղջկա թոռները լինել, դուրս կգա, որ Լևոն V նրանց մորաքրոջ



ամուսինն էր: Այս դեպքում ևս հասկանալի կդառնա Հովհաննեսի և Լևոն V-ի բարեկամությունը, որպես արդյունք ոչ միայն կրոնական համերաշխության (պատկերների խնդրում), այլև ընտանեկան ծանոթության:

Հովհաննեսի մասին ասված է. «ծագում էր ոչ որևէ աննշան, այլ չափազանց ազնվական շառավիղից»[1]: Եթե արդարև Հովհաննեսն արենակից էր Արշավիր քվեստորին, ինչպես ենթադրեցինք, ապա հասկանալի է, որ Հովհաննեսի ծագումը որակվում է այսպիսի բառերով: Արշավիր քվեստորը հասարակ անձ չէր, գահի թեկնածու, ազդեցիկ ծերակուտական: Քվեստորի պաշտոնը պահանջում էր հույն և լատին լեզուների քաջ գիտություն և գրական շնորհք և իրավաբանական հմտություն:

Աստղաբաշխ Բագրատի, Քերական Հովհաննեսի և օրենսգետ քվեստոր Արշավիրի կիրթ և ուսումնական տանիցն էր Լևոն փիլիսոփան: Մեծատան զավակ բառի իսկական իմաստով: Եթե անգամ թողնենք մեր ենթադրությունները Արշավիր քվեստորի և նույնիսկ Բագրատի վերաբերյալ, բավական է հիշել Հովհաննեսի և Արշավիրի գրական շրջանը, նրանց Տրուլոս տունը, որ մտավորական մի ժամատեղի էր, որպեսզի կարելի լինի ասել, որ Լևոնը՝ նրանց եղբորորդին, սնվել և մեծացել էր վերին աստիճանի նպաստավոր պայմանների մեջ: Մանկությունից արդեն հնարավորություն ուներ հետաքրքրվելու և ապրելու մտավոր կյանքով: Աղքատության մասին ևս խոսք չի կարող լինել: Կենսագրի այն խոսքերը, թե Լևոնը կարոտության մեջ էր ապրում և իր կյանքը հայթայթում էր մասնավոր դասերով մի թշվառ տնակում և անհայտության մեջ կորած, ոչ մի կերպ չեն համապատասխանում իրականության: Տրուլոսի ապարանքի մթնոլորտը հեռու էր և՛ չքավորությունից, և՛ անհայտությունից: Այնտեղ էր մեծացած Լևոնը: Ոչ միայն նյութապես անկարոտ էր, այլ ընդհակառակն՝ շնորհիվ նյութական հնարավորությունների նա կարողացել էր շրջել կարևոր կենտրոնները, հասնել մինչև Անդրոս, քրքրել հին ձեռագրատուներ և հագուրդ տալ իր ուսումնական ծարավին: Քերականություն, քերթողություն և ճարտասանություն սովորել էր մայրաքաղաքում և ավելի հմուտ ուսուցիչ չէր կարող ունենալ քան իր հորեղբայրը, որ Քերական էր կոչվում, անշուշտ, իր հմտության համար: Այնուհետև շրջեց հեռավոր տեղեր, գիտության պակասը լրացնելու սեփական աշխատանքով և ուսումնասիրությամբ: Աղքատության և անհայտության պատկերը, որ տալիս է մեզ նրա կենսագիրը, լոկ վիպական զարդարանք է, զուրկ պատմական հիմքից:

Ընտանեկան բարենպաստ պայմաններն էին պատճառ, որ Լևոնը Թեսաղոնիկեի մետրոպոլիտ նշանակվեց, ինչպես երևում է, տակավին երի-

[1] Theoph. Cont., 254.

տասարդ հասակում: Եթե իր հորեղբայրը հարկավոր տարիքը չուներ պատրիարքության համար 815 թվին, ուրեմն պակաս էր քան 25-30 տարեկան, ապա նրա եղբորորդին՝ Լևոնը նույն 815 թվին մանուկ պետք է եղած լիներ և 840 թվին, երբ մետրոպոլիտ եղավ, հազիվ 30 տարեկան: Կենսագրի պատմությունը, որ Լևոնը հարաբերության մեջ էր Մամունի հետ, երբ մի աղքատ հյուղում դասեր էր տալիս, նույնպես մեղանչում է իսկության դեմ: Մամուն մեռավ 833 թվին: Լևոնը չէր կարող ծնված լինել առաջ քան 810 թվականը: Մամունի օրով, հետևապես, տակավին պատանի էր և չէր կարող ո՛չ դասատու լինել և ո՛չ էլ նրա հետ թղթակցել:

Լևոնի գիտական և մանկավարժական գործունեությունը սկսում է ամենայն հավանականությամբ մետրոպոլիտությունից հրաժարվելուց հետո՝ 843 թվին: Այդ ժամանակ Վարդը թեև Միքայել թագաժառանգի երեք խնամակալներից մեկն էր, բայց քաղաքական գործերում ազդեցիկ չէր: Թեոկտիստոս ներքինին լոգոթետեսի պաշտոնում գրավել էր Թեոդորա թագուհու վստահությունը և չեզոքացրել Վարդի ազդեցությունը պետական գործերում: Վարդը ստիպված սահմանափակել էր իր գործունեությունը նվիրվելով գլխավորապես կրթական աշխատանքի: Մեծ հոգ տարավ վերակենդանացնելու արտաքին կամ աշխարհիկ գիտությունները[1]: Այս նպատակով հիմնեց դպրոց նախ Ս. Քառասուն Մանկանց եկեղեցում և ապա Մագնավրա պալատում և ղեկավարությունը հանձնեց Լևոն փիլիսոփային:

Լևոնի հայտնությունը չէր կարող տեղի ունեցած լինել Թեոփիլոսի օրով, ինչպես հավաստացնում է նրա կենսագիրը: Նույնպես սխալ է, թե Թեոկտիստոսն էր նրա առաջին հովանավորը[2]: Կենսագիրը բարեկամ չէ Վարդին: Նա կողմնակից է Վասիլի և ներշնչված Կոստանդին Ծիրանածնի կողմից: Վարդի անունը նսեմացնելու մտահոգությամբ, Լևոնի պաշտպան է դուրս բերում Թեոկտիստոսին և նրան վերագրում [Ս.] Քառասուն Մանկանց եկեղեցու դասավանդության նախաձեռնությունը: Թեոկտիստոսը չէր կարող նեցուկ լինել Լևոնին Թեոփիլոսի կենդանության՝ ժամանակագրական տեսակետով: Չէր կարող նրան հովանավորել նաև Թեոփիլոսից հետո՝ եկեղեցական քաղաքականության հետևանքով: Լևոնը զրկվեց եպիսկոպոսական աթոռից որպես պատկերամարտ 843 թվին պատկերապաշտության հաղթանակով: Նոր քաղաքականության ոգին ինքը Թեոկտիստոսն էր: Ի՞նչպես կարելի է ընդունել, որ մոլեռանդ ներքինին խրախուսեր իր ընկած հակառակորդին թեկուզ մի ուրիշ ասպարեզում: Հովհաննես պատրիարքի օրինակը, որ ընկավ աթոռից նույն պայմաններում, հիմք չէ տալիս կարծե-

[1] **Theoph. Cont.**, 185.
[2] Ibid., 189.



լու, որ այլապես և ավելի ներողամտորեն պիտի վարվեին նրա եղբորորդու՝ Լևոնի հետ:

Լևոնի գիտական և մանկավարժական գործունեությունը 843 թվից հետո է և նրա մեկենասը Վարդն է: Եթե ճիշտ է, որ սկզբում Լևոնը դասախոսում էր Ս. Քառասուն Մանկանց եկեղեցում (ինչպես հավաստացնում է Թեոփանեսի Շարունակողը, մինչդեռ Գեորգ և Սիմեոն չեն հիշում), այս ևս վերագրելու է Վարդին:

Մագնավրայի համալսարանի բացումը նույն պատմագիրը դնում է 843 թվին[1]: Քանի որ այս թվից առաջ հնարավոր չենք համարում Լևոնի դասախոսությունները, ավելի հեշտ կլիներ այս թվից հաշվել Ս. Քառասուն Մանկանց եկեղեցու դպրոցի գործունեությունը, իսկ Մագնավրայի դասընթացքը դնել Վարդի խնամակալության տարիները՝ 856-866: Այս տասնամյակում Վարդը միահեծան տեր էր իշխանության և կառավարում էր երկիրը իր քեռորդու՝ Միքայելի անունով: Այս շրջանին է պատկանում Լևոնի և իր դպրոցի փայլուն և բեղմնավոր գործունեությունը: Նրա մերձավոր աշխատակիցներն էին Թեոդորոս, Թեոդեգիոս և Կոմիտաս, որոնք ստանձնել էին երկրաչափության, աստղաբաշխության և գրականության դասերը: Սրանք Լևոնի պատրաստած աշակերտներից էին, հավանորեն, Ս. Քառասուն Մանկանց դպրոցի շրջանավարտներից:

Դպրոցի տեսչությունը կենտրոնացած էր Լևոնի ձեռքին: Տարաբախտաբար նրա գրվածներից գրեթե ոչինչ չի հասել մեզ (10): Բայց թե ի՞նչ ուղղություն ուներ նորա ուսմունքը և ի՞նչ ոգի, այդ մասին շատ պայծառ գաղափար է տալիս մի երգիծաբանություն, որ ուղղված է նրա դեմ: Երգիծաբանական գրվածքի հեղինակը այլ ոք չէ, թե ոչ Լևոնի աշակերտներից մեկը, ոմն Կոստանդին: Սա, հիասթափված այն գիտությունից, որ ստացել էր, հրապարակ է գալիս իր ուսուցչի մահվանից հետո, մերկացնելու նրա գիտության հակաքրիստոնեական ոգին: Այս խնդրին է նվիրված իր գործը, որ կրում է հետևյալ վերնագիրը՝ «**Լևոն փիլիսոփայի դեմ, Կոստանդին աշակերտից**»: Գրված է հոմերոսյան չափով:

Ավելորդ չենք համարում բերել ամբողջական թարգմանությունը տող առ տող:

[1] **Theoph. Cont.**, 192.

## 1

Հազար ու մի բան գիտես, որչափ նախնի մարդիկ
Ավանդել են պերճախոս ճառերում արտաքին իմաստության մասին:
Բայց հոգիդ կորավ, երբ որ խմեցիր աղի ջուրը,
Ո՛վ թշվառական, ամբարշտության ծովում լողալիս:
Դու թողիր ամենապայծառ և գերափառ հավատը
Քրիստոնեության, լուսավոր ավազանից հետո, ո՛վ եղո՛կ:
Ուրանալով սարսափելի և վսեմ խորհուրդը,
Սուրբ Գրքի ամենազոր հրաշագործությունը,
Գլորվեցիր հելլեն (հեթանոս) ապականության հրեշավոր վիհը,
Եվ կուր [կերակուր] եղար հոգեկուլ գազանների, ո՛վ Լևոն:
Ով չի խղճա քեզ, չի ողբա անկումդ,
Ով է, որ չի արտասվի, տեսնելով, թե ի՞նչ օրի ես հասել:
Այլևս չես կարող հենել ոտքդ [sic] տկարացած ոտդ այն վեմին,
Ուր քայլելը հաստատուն է և անխափան:
Այժմ պաշտում ես, ո՛վ մոլոս [դիվահար], անթիվ աստվածներ,
Հրաժարվելով լուսացնցուղ Երրորդությունից:

## 2

**Լսեցեք, ծնունդք մարդկան, Քրիստոսի մեծանուն ժողովուրդ,**
**Դուք անգետ եք այս մարդու ուրացության.**
**Ձևն է նրա աստվածը, որի կինն է Հերա,**
**Ձևը, որ անչափ սիրահար է կուսական անկողինների,**
**Ձևը և մի ամբողջ ոհմակ երկնայինների,**
**Որպես թվում է հռչակավոր Մելեսածինը (= Հոմերոսը):**
**Արդ եկե՛ք, բոլորեքյանդ ազնիվ ընկերներ,**
**Այսպե՛ս ասենք նրան միաբերան.**
**Կորի՛ր, չարագլուխ, իջի՛ր Հադեսի խավար տունը,**
**Կորի՛ր հանդերձ իմաստությամբդ, թշվառությամբդ և ամբարշտությամբդ,**
**Գնա՛ չարաղետ Պիրիփլեգետոնի մոտ, լայնարձակ Տարտարոսը,**
**Ուր կարող ես տեսնել Քրիսիպպոսներ, Սոկրատեսներ,**
**Պրոկղներ, Պղատոններ, Արիստոտելներ, Եպիկուրոսներ,**
**Եվ քո բարեկամ՝ Եվկլիդեսներ և աստղաբաշխ Պտղոմեոսներ,**
**Այլ և իսկական իմաստության թագուհի՝**
**Հոմերոսյան մուսան, ինչպես և Հեսիոդոսներ և Արատոսներ:**



## 3

Արժանի ես, որ հավիտենական հուրը քեզ բոլորե
Այն զարմանալի խմբի հետ,
Որոնց մարգարե ես համարում, սիրում,
Եվ համախոհ ես նրանց զաղտնի խաբեության:
Այս ամենը, ե՛ս՝ Կոստանդինոս, քո Կալլիոպեի կաթով
Կուշտ սնված, գիտություն ամբարեցի.
Եվ սրտիդ զաղտնիքը ուսումնասիրելով
Հուսկ ուրեմն հասկացա սքողված չարիքը[1]:

Ապերախտ աշակերտի գրությունը բոլորովին հակառակ նպատակի է ծառայում, քան կարծում էր հեղինակը: Ավելի պերճախոս ապացույց չէր կարելի տրամադրել բնորոշելու Լևոնի և իր համալսարանի գիտական ոգին: Երգիծանք չէ, այլ լավագույն վկայականը Լևոնի ազատ և անկաշկանդ մտածության:

Նախ ուշադրության արժանի է դասախոսության ընդարձակ շրջանակը: Դասական գրականությունը խոշոր տեղ էր բռնում համալսարանի ծրագրում: Ոչ միայն Հոմերոս և Հեսիոդոս, ապա գրեթե բոլոր կարևոր փիլիսոփայական ուղղությունների հիմնադիրները՝ Սոկրատես, Պղատոն, Արիստոտել, Եպիկուրոս և Պրոկղ ուսումնասիրության նյութ էին: Առանձնապես շեշտված են Եվկլիդեսն ու Պտղոմեոսը, որպես **բարեկամ** Լևոնի: Ասել է, թե Լևոնի մասնագիտություննն էր երկրաչափությունն ու աստղաբաշխությունը:

Դասավանդությունը ներշնչված է եղել պարզամիտ ոգով, զերծ կրոնական մտքի որևէ կապանքից, կանխակալ կարծիքներից: Այսպիսի վերաբերումն կարող էր այն տպավորությունը գործել մանավանդ քրիստոնեական ոգով տոգորված մտքերի վրա, թե դասախոսը համակրում է հեթանոս կրոնական աշխարհայացքին: Մինչդեռ ճշմարտությունն այն է, որ բուն գիտական մերձեցում են *ցույց* տվել ուսումնասիրելի խնդիրների նկատմամբ:

Կոստանդինի մերկացումներն աշակերտական ոխի, վիրավորված ինքնասիրության ժայթքում չեն: Նրա տրտունջը անհատական, մասնակի երևույթ չէ, այլ հասարակական որոշ խավերի տրամադրության արտահայտություն: Հելլեն գիտությունները խորշելի էին նկատվում, ավելի ճիշտ երկյուղալի: Կարծում էին, որ նրանք խարխլում են քրիստոնեական հավատի հիմքը, գայթակղեցնում են ճշմարիտ հավատացյալներին: Հարկավ, չափազանցություն է այն մեղադրանքը, թե Լևոնը երկրպագում էր Ձևսին և

[1] Constantini, Leonis discipuli, versus in magistrum [Leonem], **Migne**, P. G., 107, col. LXI.

նրա երկնային փառակիցներին: Հավատին այն է, որ Լևոնի մեկնակետը քրիստոնեական դավանանքը չէ եղել:

Կոստանդինի գրությունը առաջին ակնարկից այն տպավորությունն է թողնում, կարծես երգիծանքը ուղղված է ոչ թե Լևոնի դեմ, այլ մի տեսակ հեգնություն է այն անձերի հասցեին, որոնք հռչակավոր գիտունի մասին վայրիվերո կարծիքներ ունեին: Սակայն նույն հեղինակից մնացել է մեզ մի երկրորդ գրություն նույն նյութի մասին, որից երևում է, որ խայթոցն ուղղված է իրոք Լևոնի դեմ:

Ինչպես երևում է, Կոստանդինի ամբաստանությունը ծանր է եկել գոնե որոշ շրջաններում: Դատապարտելի են համարել, որ աշակերտն այդպիսի ապերախտ գործ կատարե իր հոգևոր ծնողի վերաբերյալ: Այս տրտունջները ստիպել են Կոստանդինին հանդես գալ մի պատասխան-գրությամբ: Վերնագիրն է՝ **«Լևոն փիլիսոփայի պաշտպանությունը, որի համաձայն նա պաշտում է Քրիստոսին և անիծում հելլեն կամ հեթանոս աստվածներին»**:

Այս վերնագիրը վավերական չէ, քանի որ չէ համապատասխանում գրության բովանդակության: Լևոնը չէ, որ պաշտպանում է իրեն Կոստանդինի դեմ, ինչպես հասկացել է վերնագրի հեղինակը, անտարակույս, անուշադիր ընթերցումի հետևանքով: Նույն Կոստանդինն է, որ հիշելով իր դեմ եղած դժգոհությունները, նորից սկսում է խայթել իր ուսուցչին և ապացուցանել, որ ինքն արդար է և հիմնավոր իր ամբաստանության մեջ: Ահա ի՞նչ է գրում Կոստանդինը:

«Շատեր նախատում են ինձ չար լեզվով, այսպես ծաղրելով. ա՜յ քեզ գրություն, ի՜նչ պատվական վարձագին հատուցիր ուսմանդ համար. լավ դասագին տվիր նրան, որ երկրորդ հայրդ էր, ո՜վ քաջ, ստացած կրթությանդ փոխարեն արժան կանգնեցիր մշտնջենական, ասելով՝ ի՜նչ մորոս, ի՜նչ հայհոյիչ, ի՜նչ ուրացող է քրիստոնեական հավատի նա, Լևոնը: Ուրիշներն էլ մեղադրում են ինձ, թերևս անգետ լինելով իմ լուրջ և հաստատուն հիմքերիս: Համարձակվում են ասել, որ սուտ են խոսքերը, թշնամիներից թելադրված չարամտորեն, որոնցից ես որպես թե կաշառված ամբաստանել եմ իզուր տեղը իմ հանգուցյալ ուսուցչիս: Ես ականջ եմ դնում նման դատարկաբանությունների և որքան հնարավոր է, դիմանում եմ համբերությամբ»[1]:

Կոստանդինն անցնում է այնուհետև հարձակողականի: Բացատրում է հանգամանորեն իր վերաբերումը դեպի հելլեն գիտությունն ու հեթանոս աշխարհը: Հայտարարում է, որ «ճշմարտության միակ աղբյուրն է Աստուծո բանը, վկա է Քրիստոսը»: Նզովք է կարդում նրանց, որոնք ժխտում են այս

[1] Leonis apologiam, in qua Constantini calumnas a se dimovit, **Migne**, P. G., 107, col. 659-664.



ճշմարտությունը, որոնք չեն երկրպագում «Աստուծուն յերիս անձինս եւ մի բնութիւն»:

Ուշագրավ են մանավանդ հետևյալ խոսքերը, որով վերջացնում է գրությունը. «Ահա ինչու այժմյանից սիրում եմ ճարտասանությունը, ընտրեցի Փոտ եպիսկոպոսին ծերունի ուսուցիչ, որն ինձ սնեց աստվածային բխմանց կաթով»:

Հետաքրքրական է Լևոնի և Փոտի հակադրությունը: Լևոնը հելլեն գիտության ներկայացուցիչ է, Փոտը՝ քրիստոնեական: Սակայն, գիտենք, որ Փոտը, հռչակավոր Գրադարանի հեղինակը, մեծ սիրահար էր դասական գրականության: Հակադրության իմաստն այն է, որ Լևոն հելլեն քառյակ կոչված գիտությունների մասնագետ էր, մինչ Փոտը գերադասում էր պատմական գործերը: Սրանից հետևում է, որ թշնամանքի առարկան դասական գրականությունը չէր ընդհանուր առմամբ, այլ միմիայն բնական գիտությունները: Կարծում էին, որ այս գիտությունները համաձայն չեն Սուրբ Գրքի շատ կետերին: Հելլեն գրականությունը միշտ ուսումնասիրության նյութ է եղել այս կամ այն չափով բյուզանդական շրջանում ևս: Ինչ որ արհամարհված էր կամ անտեսված, այդ քառյակ կոչված գիտություններն էին: Եվ սրանց հարությունն է, որ տրտունջի տեղիք է տալիս եկեղեցական շրջաններում: Լևոնի նշանակությունը կենտրոնանում է հենց այս կետում:

Կոստանդինի ակնարկից երևում է, որ Լևոնն արդեն մեռած էր, երբ վատամարդ աշակերտը ելավ նրա դեմ: Լևոնի մահվան տարին հայտնի չէ: Գիտենք, որ կենդանի էր դեռ Վասիլի կայսրության առաջին տարիները: Թվում է թե այնուհետև երկար չէ ապրել: Վասիլի օրով մեծ երկրաշարժ տեղի ունեցավ մայրաքաղաքում, Ս. Պոլիևկտոսի տոնին, և տևեց 40 տիվ և գիշեր: Շատ եկեղեցիներ փլվեցին, ի թիվս որոց և Սիգմա կոչված Ս. Աստվածածնի եկեղեցին: Պատմում են, որ Լևոն փիլիսոփան ևս Սիգմա եկեղեցում էր երկրաշարժի ժամանակ: Նա անմիջապես նախազգուշացրեց աղոթողներին խորհուրդ տալով դուրս գալ եկեղեցուց: Նրանք չլսեցին, մնացին եկեղեցում և զոհ գնացին մեծ արկածին: Ինքը՝ Լևոնը, սակայն փրկվեց, ապաստանելով ուրիշ երկու անձի հետ եկեղեցու սյուներից մեկի տակ[1]:

Ս. Պոլիկտոսի հիշատակը տոնվում է հունվարի 9-ին: Երկրաշարժը տեղի ունեցավ Վասիլի երրորդ տարին, ուրեմն 870 թվին[2]: Հավանական է հակառակ իմաստով ըմբռնել այս պատմությունը, այսինքն՝ ենթադրել, որ Լևոնն ինքը կործանվել է երկրաշարժի ժամանակ մյուս հավատացյալների

[1] **Georg.**, 840; **Symeon**, 688.

[2] **Sym.**, 688. սրա ժամանակագրությունը վստահելի չէ, բայց այս դեպքում ճիշտ է թվում նշանակած տարին:

հետ Սիգմա տաճարում: Տարօրինակ է, որ Լևոնն ուրիշներին խրատում է ելնել եկեղեցուց, բայց ինքը մնում է եկեղեցում:

Լևոնին վերագրած խրատը և իր փրկությունը համարելու է հնարածո: Գիտնականի մեծ հռչակը չէ ներել, որ բնության գաղտնիքներին գիտակ անձը զոհ համարվի երկրաշարժի: Ուստի խեղաթյուրել են իսկական պատահարը, Լևոնին փրկություն տալով սյունի տակ, և աղոթողների կործանումը վերագրելով այն հանգամանքին, որ չեն անսացել Լևոնի կանխիչ խորհրդին: Զրույցի մեջ, կրկնում ենք, պահված ենք համարում Լևոնի մահվան պարագան Սիգմայի Ս. Աստվածածնի եկեղեցում երկրաշարժի ժամանակ 870 թվի հունվարի 9-ին:

Կոստանդինն իր գրության մեջ, որ երևացել է Լևոնի մահից հետո, վկայում է, որ ինքը այնուհետև ուսուցիչ է ընտրել Փոտին: Սա կարող էր դասերով զբաղվել, հարկավ, ոչ պատրիարքության ժամանակ, այլ երբ հրաժարված էր գահից: Արդ, Փոտը թողեց գահը 867 թվին և նորից գրավեց 879 թվին (11): Ուրեմն այս միջոցին, պետք է Կոստանդինը նրա մոտ ուսաներ, և այս միջոցին, ուրեմն, Լևոնը պետք է արդեն մեռած լիներ: Այս դիտողությունը ևս նպաստավոր է մեր ենթադրության, որ Լևոնը վախճանած էր 870 թվին:

## V

Լևոնը բյուզանդահայ էր, ծնված և մեծացած մայրաքաղաքի մթնոլորտում: Իր ձգտումներով, ուսումնատենչ ոգով, կարելի է ասել, տեղական պտուղ է: Սակայն մոռանալու չէ, որ նրա պապն էր Բագրատ աստղաբաշխը, որ իր գիտությունը պարտական չէր բյուզանդական մայրաքաղաքին, այլ իր հետ բերել էր իր հայրենիքից՝ Հայաստանից: Իրավունք ունենք ենթադրելու, որ նրա արյունը խոսում էր որոշ չափով և Լևոնի մեջ: Խոսքս միայն ժառանգականության մասին չէ, այլև ընտանեկան ավանդության:

Առանց նպատակ ունենալու հայ և բյուզանդական մտավոր հարաբերությունների խնդիրը շոշափելու՝ կուզեի միայն մի զուգահեռ գծել Լևոնի և մի ուրիշ հայ գիտնականի միջև, երկուսի հոգեկան սերտությունը երևան բերելու համար: Այդ գիտնականը Անանիա Շիրակացին է: Սա ապրել է յոթներորդ դարում և հայ դպրության մեջ նույն տեղն է գրավում, ինչ որ Լևոնը՝ բյուզանդական: Նա է ստույգ գիտությունների առաջին սերմնացանը հայ անցյալում: Բարեբախտաբար, նրա կյանքը ծանոթ է մեզ ավելի քան որևէ ուրիշ հին մատենագրի, և ծանոթ է շնորհիվ իր իսկ գրչի: Ահա ի՞նչ է պատմում Անանիան իր մասին:

Իր կրթությունը մի քանի շրջան ունի: Առաջին շրջանը որակում է հետևյալ կարճ և իմաստալից խոսքերով. «Բովանդակեցի զդպրութիւն մերոյ



ազգիս Հայաստանեայց եւ հմուտ եղեալ Աստվածաշունչ Գրոց»...

Ասել է, թե ուսումնասիրեց նախ հայրենի դպրությունը, իրենից առաջ հայտնի գրական գործերը, և Սուրբ Գրքի հմտություն ձեռք բերեց:

Սակայն սրանով չհագեցավ իր ուսումնական ծարավը: Ուզում էր ծանոթանալ համարողական արվեստին, «յոյժ կարօտեալ արուեստիս համարողական, խորհեցայ թէ ոչինչ համարի բան իմաստասիրութեան առանց թուոյ, կարծելով զսա մայր ամենայն իմաստից»:

Ճիշտ Լևոն փիլիսոփայի վիճակը, որ մայրաքաղաքում ճարտասանություն և քերականություն ուսանելուց հետո, երազում էր բնական գիտություններ ձեռք բերել: Ինչպես որ Լևոնը Կոստանդնուպոլսում մարդ չգտավ, որի մոտ սովորեր, նույնպես և Անանիան. «ի Հայս ոչ գտի,- ասում է նա,- մարդ գիտակ իմաստասիրութեան եւ ոչ գիրք արուեստից գտի յաշխարհիս»: Ի՞նչ աներ: Լևոնի պես սկսեց ճանապարհորդել, ուրիշ տեղ հայթայթելու գիտությունները:

Ճանապարհ ընկավ դեպի Հունաց աշխարհը, հասավ Թեոդոսուպոլիս: Այստեղ ծանոթացավ Եղիազարոս անունով մի մարդու, որ շատ հմուտ էր եկեղեցական գիտության: Սրանից իմացավ, որ Չորրորդ Հայքում մի նշանավոր գիտնական կար, համարող, այսինքն՝ մաթեմատիկոս, անունը Քրիստոսատուր: Անանիան գնաց Քրիստոսատուրի մոտ և պարապեց վեց ամիս, ոչ ավելի, որովհետև շուտով համոզվեց, որ Քրիստոսատուրը առանձին գիտություն չուներ, «ոչ ունէր զբովանդակ արուեստ, այլ աստի եւ անտի ծայրաքաղ»:

Անանիան վճռեց գնալ Կ. Պոլիս: Այստեղ պատահեց ծանոթների, որոնք տեղեկանալով նրա նպատակներին, ասացին, որ իզուր նեղություն է կրել և այսքան հեռավոր ճանապարհ եկել: Զարմացան, որ Անանիան չգիտեր, որ Տրապիզոն քաղաքում կար շատ նշանավոր գիտնական անձ՝ անունը Տյուքիկոս, որ քաջ գիտակ էր նաև հայերեն դպրության: Այնքան հռչակված էր, որ մայրաքաղաքից այնտեղ են գնում ուսումնածարավ պատանիներն իրենց կրթությունը կատարելագործելու համար:

Արդարև, Կոստանդնուպոլսի պատրիարքի պատվերով, ոմն Փիլագրոս սարկավագ մի խումբ տղաներ պիտի տաներ Տրապիզոն Տյուքիկոսի մոտ ուսանելու: Անանիան օգտվեց բարեհաջող դեպքից և միացավ խմբին, «նավակից եղավ»: Եկավ Տրապիզոն և ներկայացավ Տյուքիկոսին, որ Ս.Եվգինիա կույսի վկայարանում հաստատված, պարապում էր դասավանդությամբ:

Անանիան մնաց այնտեղ ութ տարի և մեծ հմտություն ձեռք բերեց իր ցանկացած գիտությունների մեջ: Բազմակողմանի կրթություն ստացավ, ծանոթանալով շատ և շատ գիտությանց, «որ չէին թարգմանեալ ի Հայս, զի

կայր անչափ գրեանք, գաղտնիք եւ յայտնիք, արտաքինք, արուեստականք եւ պատմագիրք, բժշկականք եւ ժամանակագիրք, զի չիք ինչ գիրք որ առ նմա ոչ գտանէր»:

Տյուքիկոսը գիտեր նաև հայերեն և ծանոթ էր հայ դպրության: Անանիան հիացումով է խոսում նրա հայերենի մասին: Այնքան քաջ հայագետ էր, որ հունարենից թարգմանելիս, չէր քաշքշում ուրիշ թարգմանիչների պես, այլ այնպես սահուն էր թարգմանում և արագ, կարծես թե չէ թարգմանում, այլ հայերեն գրած բան է կարդում («ոչ դեգերումն առնէր որպէս զայլ թարգմանիչսն, հայերէն ընթեռնոյր լեզու իբրեւ զհայերէն գրեալսն»):

Այս փայլուն գիտնականի մոտ Անանիան գտավ ինչ որ որոնում էր, շտեմարանեց անբավ գիտություն և դարձավ հայրենիք ուսանելու ուրիշներին: «Հզօր արուեստս այս բերի մեր աշխարհը,- ասում է Անանիան,- առանց որեւէ մէկի ձեռնտուութեան, եւ ոչ ոք շնորհակալութիւն անգամ չյայտնեց աշխատութեանց համար»: Տրտունջով արձանագրում է, որ շատերը եկան աշակերտելու, բայց դեռ ուսումը չավարտած, հեռացան ավանդելու ուրիշներին այն, ինչ որ իրենք տակավին լավ չէին յուրացրած: «Կեղծաւորք եւ սնափառք ցուցանել զկերպարանս գիտութեան եւ կոչել ի մարդկանէ ռաբբի: Եւ ասին ի վերայ իմ պարսաւանս որք յինքինն յերիւրեալք»:

Պարսավողները, անշուշտ, իր նախկին աշակերտներիցն էին, որոնք ստահոդ լուրեր էին տարածում իրենց ուսուցչի մասին: Արդյոք նույն կարգի հերյուրանք չէ՞ն, ինչ որ Լևոնի աշակերտ Կոստանդինը և իր նմանները էին տարածում: Անանիան շատ դառնացած է երևում այդ հերյուրանքի առթիվ և տրտունջը թափում է հայերի գլխին, ասելով՝ «ոչ սիրեն Հայքս իմաստ կամ գիտութիւն, այլ ծոյլք են եւ ձանձրացողք»: Եթե «իմաստ եւ գիտութեան» ներքո մեր հեղինակը հասկանում է բնագիտական ուսմունքները, թերևս, իրավունք ունի տրտնջալու, այլապես վշտացած սրտի չափազանցություն է, եթե ոչ բացարձակ ամբաստանություն, ուրանալ հայի հարցասիրությունը: Անանիայի մասնագիտությունն էր «Արուեստք քառիցն», ինչպես կոչում է Գրիգոր Մագիստրոսը, բաղկացած՝ թվաբանությունից, երաժշտականությունից, երկրաչափությունից և աստղաբաշխությունից:

Որքան էլ մոռացության տրվեին Անանիայի սիրած գիտությունները, բայց և այնպես չէին կարող անհետանալ բնավին: Սակավաթիվ հետևորդների միջոցով կպահվեր նրա ավանդը: Բագրատ աստղաբաշխը հավանորեն Անանիայի թանկագին ավանդի պահնորդներիցն է և իր գիտությանբ պարտական է ոչ մայրաքաղաքին, այլ տարել էր այնտեղ Հայաստանից:

Մագնավրայի դպրոցի ոգին, որ պատվաստել էր Լևոնը, չհանգավ նրա մահից հետո: Հայերը ևս անմասն չմնացին հետագա առաջադիմության: Հաջորդ X դարում գիտությունն ու համալսարանը լուսամիտ մեկենաս



ունեցան հանձին թագակալ գիտնականի՝ Կոստանդին Ծիրանածնի, որ Վասիլ Հայի թոռն էր: Նպատակ չունենք հետևելու գիտության զարգացման հետագա դարերում: Կցանկանայինք հիշել միայն մի ուրիշ հայ անուն, մի ականավոր մաթեմատիկոս, որ ապրում էր բյուզանդական քաղաքակրթության վերջալույսին: Գիտության արշալույսը և վերջնական խավարում՝ երկու շրջանում էլ առկայծում են հայ անուններ:

Փարիզի Ազգային Մատենադարանում կա մի հունարեն ձեռագիր՝ թիվ 2428, որ բովանդակում է մաթեմատիկական երկեր: Ի միջի այլոց կա երկու հոդված, աշխատություն մի հայ թվաբանի: Անունն է Նիկողայոս Արտավազդ Ռաբդաս (նոր արտասանությամբ՝ Ռավդաս): Առաջին հոդվածի, թուղթ 194, վերնագիրն է. «Կարճ և պարզ դաս համարողական գիտության, գրեց Կոստանդնուպոլսում Զմյուռնացի Նիկողայոս Արտավազդ, Ռաբդաս կոչեցյալ, թվաբան և երկրաչափ, ի խնդրո հույժ հարգելի պաշտոնյայի խնդրագրոց տեր Գեորգ Χατζύκη»:

Մյուս հոդվածի, թուղթ 225, վերնագիրն է. «Ամենասիրեցյալ բարեկամիս Կլազոմենցի Թեոդորոս Τζαβούχης-ին գրում է Նիկողայոս Արտավազդ Զմյուռնացին, Ռաբդասը, Բյուզանդիոնից (Կոստանդնուպոլսից)»:

Կրկնակի անուններից մեկը զուտ հայկական է՝ Արտավազդ, որից երևում է, որ արևելքից նոր է եկած և Զմյուռնիայում վերակոչված Նիկողայոս: Մականունը՝ Ռաբդաս: Արտավազդը գրել է իր գործը ոմն Գեորգի խնդրանքով, որ կոչվում է Χατζύκη: Դժվար չէ կռահել, որ Խաչիկ անունն է, փաղաքշականը Խաչատուր անվան, և ծանոթ X դարուց, երբ նույնիսկ կաթողիկոսներից մեկը կրում էր նույն անունը: Ոչ միայն Գեորգ Խաչիկը, այլև մյուս անձը՝ Թեոդորոսը հայ են: Τζαβούχης ոչ այլ ինչ է, եթե ոչ Չավուշ բառը: Թեոդորոսը այդպես է կոչվում, երևի, այն պատճառով, որ պալատական չավուշ է եղել: Գեորգ Խաչիկը նմանապես պալատական պաշտոնյա էր, որպես պետ այն դիվանի, ուր մտնում էին կայսեր անունով տված խնդրագիրները:

Այսպես մի հայ գիտնական գրում է իր աշխատություններն իր երկու հայրենակիցների առաջարկությամբ: Խրթին գրություններ չեն: Մի հոդվածում բացատրում է թվաբանական չորս գործողություններ՝ գումարում, հանում, բաժանում և բազմապատկում: Մյուսը վերաբերում է կոտորակների բաժանման և բազմապատկման կանոններին և թե ի՛նչպես պետք է հանել քառակուսի արմատ (12):

Ֆրանսիացի մի գիտնական մի փոքրիկ հետազոտություն է նվիրել Նիկողայոս Արտավազդ Ռաբդասին, ուր ծանրանում է գլխավորապես քառակուսի արմատ հանելու եղանակի վրա: Դուրս է գալիս, որ այն եղանակը, որ գերմանացի Գյունտեր գիտնականը վերագրում է նոր ժամանակվան մա-

թեմատիկոսներին՝ Օպպերմանին և Ալեքսեևին, իսկապես պատկանում է Արտավազդին[1]: Այս արդեն հայկական մի հին համեստ տուրք է մաթեմատիկական գիտության:

Արտավազդը ծանոթ է նաև իր մեկ երկրաչափական աշխատությամբ, որ գտնվում է Փարիզի մի ուրիշ հույն ձեռագրի մեջ, God. Suppl. Grec. 682: Ապրել է մեր գիտնականը XIV դարում, Անդրոնիկոս Պալեոլոգոս կայսեր ժամանակ: Նա կենդանի էր տակավին 1341 թվին, ինչպես երևում է իր մեկ հաշվից: Որոշելով Զատիկը Քրիստոսի 6849 տարին, երբ արևի 17-րդ շրջանն էր և լուսնի 9-րդ, Արտավազդը այդ տարին կոչում է ներկա: Հաշվից երևում է, որ խոսքը 1341 թվի մասին է, երբ Զատիկն ընկավ ապրիլի 8-ին: Հայտնի է, որ Անդրոնիկոս II Պալեոլոգոսի որդին՝ Միքայելը ամուսնացած էր Հայկական Կիլիկիայի թագավոր Հեթում II-ի քրոջ՝ Մարիամի հետ, որից ունեցավ մի որդի՝ Անդրոնիկոս III, որ գահ բարձրացավ 1328 թվին և կառավարեց մինչև 1341 թիվը:

Բնական հարց է ծագում, արդյոք Գեորգ Խաչիկը, Թեոդորոս Չաուշը և ինքն Արտավազդ Ռաբդասը այն անձերից չէի՞ն, որոնք ուղեկցել էին հայ արքայադստեր դեպի կայսերական մայրաքաղաքը: Մարիամի հետ էր և իր քույրը, որ պիտի հարսնանար արևմտյան մի իշխանազնի, բայց ճանապարհին մեռավ: Ռաբդաս մականունը, թվում է ինձ, որ այլ բան չէ, քան կրճատում «ռաբդոֆորոս» բառի, որ նշանակում է մանկլավիկ (բառացի՝ գավազանակիր): Հավանական է, որ Խաչիկի և Չավուշի նման, Արտավազդը ևս կայսերական պալատի պաշտոնյաներից էր: Հայ անունները, որ տակավին չեն կորցրել այս անձերը, նշան են, որ նոր են եկել արևելքից և հնարնավ չեն Բյուզանդիայում:

Այսպիսով, ստույգ գիտությանց այն ջահը, որ տեսնում ենք Անանիա Շիրակացու ձեռքին VII դարում, և որը Բագրատի միջոցով, թերևս, անցավ Լևոն փիլիսոփային և փայլեց Մագնավրա պալատում, տակավին առկայծում էր մի համեստ հայ շրջանում Բյուզանդիայի մայրաքաղաքի մեջ կայսրության կործանման նախօրեին:

[1] **P. Tannery**, Manuel Moschopoulos et Nicolas Rhabdas, «Bulletin des Sciences Mathématiqués», 2 serie, 8, 1884.



## «ԴԻԳԵՆԻՍ ԱԿՐԻՏԱՍ» ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԴՅՈՒՑԱԶՆԱՎԵՊԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԻՄՔԸ

Ավելի քան կես դար է անցել, ինչ երկու գիտնականներ՝ Կ. Սաթասն ու Է. Լեգրանը հայտնաբերել և հրատարակել են բյուզանդական միջնադարի շատ արժեքավոր մի հուշարձան՝ «Դիգենիս Ակրիտասի սխրանքները» հռչակավոր պոեմը (1):

Այդչափ ինքնատիպ ստեղծագործության ի հայտ գալը մեծ ոգևորություն առաջացրեց գիտնականների շրջանում, իսկ դա վկայում է այդ պոեմի կարևորության մասին: Բավական է միայն հիշել այն գնահատականը, որ տալիս է հայտնի բյուզանդագետ Կ. Կրումբախերը, համեմատելով [պոեմը] «միջնադարի սխոլաստիկ գրականության [մյուս ափից] մեր կողմը փչող թարմ զեփյուռի» հետ[1]:

Սույն հուշարձանի հրատարակությունն առիթ դարձավ մինչ այդ հայտնի մի քանի նույն ժանրին պատկանող և հատակտոր առասպելների վերանայմանը: Դա նպաստեց նաև պատմական դյուցազներգությանը վերաբերող նոր նյութերի հայտնաբերմանը: Եվ իսկապես, ի հայտ եկավ նույն դյուցազներգության երկրորդ տարբերակը, քիչ անց՝ երրորդը, հետո՝ չորրորդը[2] (2):

Հավաքված նյութերը վկայում են Բյուզանդական կայսրությունում գոյություն ունեցող պատմական դյուցազներգության մասին: Եվ միևնույն ժամանակ «Դիգենիս Ակրիտաս»-ը ներկայացավ այլ լույսի ներքո, քան այն ներկայացրել էին պոեմի հրատարակիչները (3):

Ի դեպ, առանց նոր տվյալների էլ լրջմիտ քննական ուսումնասիրությունը ցույց կտար, որ «Դիգենիս» պոեմը ամբողջական գործ չէ, այլ բաղկացած է բազմաթիվ հատվածներից: Այն անձնավորությունը, որը դրան տվել է ներկայիս գրական ձևը, նպատակ է ունեցել ձուլել տարբեր պատմություններ և դրանք դարձնել միատարր շարադրանք՝ ընտրված մի հերոսի շուրջ, այսպիսով նրան վերագրելով այն ամենը, ինչ ժողովրդական դյուցազներգության շրջանակներում վերաբերում է տարբեր գործող անձանց:

[1] Geschichte der Byzantinische Litteratur, S. 830.

[2] **Spiridon Lambros**, Collection de romans grecs en langue vulgaire, Paris 1880; **Em. Legrand**, Les exploits de Basile Digénis Akritas d'après le manuscrit de Grotta-Ferrata, Paris 1892; **A. Miliarakis**, **Βασίλειος Διγενῆς 'Ακρίτας, ἐποποιΐα βυζαντινή**, Athènes, 1881.

Չնայած իր գրական ճարտարությանը, Դիգենիսի ներկայիս շարադրանքի անանուն հեղինակը չի կարողացել մինչև վերջ հասցնել իր ջանքերը՝ օգտագործած աղբյուրների հակասական տվյալները համաձայնեցնելու գործում:

Ուշադիր ընթերցողն առանց դժվարության կնկատի, որ սիրված հերոս Անդրոնիկոս Դուկասին փառաբանող ժողովրդական ստեղծագործության գոհարները շարված են արհեստական հենքի վրա: Մինչդեռ ոչ մի պատճառ չկա Դիգենիսին Անդրոնիկոս Դուկասի անձի հետ նույնացնելու համար:

Դիգենիսի ի հայտ գալուց հետո ռուս գիտնական Գ. Դեստունիսը փորձեց ուրվագծել այն շարքերը կամ խմբերը, որոնցից անցյալում կազմված է եղել հերոսական պատմությունների ամբողջությունը[1]: Այդ խմբավորումների հետքերը նշմարվում են նույնիսկ Դիգենիսի տարբերակներում: Հարցի նման ընկալումը չէր խանգարի նաև մեր պոեմի հրատարակիչներին:

Սակայն, նրանք գերադասել են ընդունել պոեմի հեղինակի՝ միջնադարյան գիտնականի, տեսակետը, որը մշակել ու շարադրել է ժամանակի տարածված առասպելներն իր գիտական ճաշակի և պատմական իրազեկության համեմատ:

Այն պահից, երբ նրանք ընդունեցին պոեմի հիմնական միտումը՝ մի որոշակի հերոսի փառաբանումը, նրանց այլ բան չմնաց քան պատմության ասպարեզում անհրաժեշտ հետազոտություններ կատարել՝ նախապես ընդունված այդ միտումը հիմնավորելու համար:

Ծավալուն նախաբանում Կ. Սաթասն ու Է. Լեգրանը անդրադարձել են Բյուզանդիայի սոցիալ-քաղաքական շարժումների պատմությանը, փորձելով ուրվագծել հերոսական վեպի պատմական միջավայրն ու ծագման պայմանները: Նախաբանում նրանց առաջ քաշած գաղափարներն ու տեսությունները, նրանց պաշտպանած դրույթները հակասում են պատմական ճշմարտությանը: Ինչպես իրադարձությունների մեկնության ու երևույթների պատկերման մեջ, նույնպես և փաստերի հասարակ շարադրանքում, ամենուր զգացվում է անսովոր մի ազատություն:

Զուտ սեփական դատողությունները հեղինակներին թույլ չեն տվել պատկերացնելու և նշելու տարբեր էթնիկական գործոնների նշանակությունը իրենց փոխադարձ հարաբերություններով կայսրության կյանքում ընդհանրապես, իսկ պատկերամարտության ժամանակաշրջանում՝ մասնավորապես:

Նույնատիպ կամ նույն բնույթի փաստեր բացասական կամ դրական

[1] Г. С. Дестунис, Разыскания о греческих богатырских былинах средневекового периода, СПб., 1883.



գնահատականի են արժանանում նայած որ ազգության են վերաբերում: Նույն գործողությունները՝ քաղաքական սպանություններ, գահին տիրանալու ձգտում, քաղաքական դավաճանություն, արժանանում են հավանության կամ մերժվում են, պախարակվում կամ գովեստի են արժանանում նայած գործող անձինք հունակա՞ն ծագում ունեն, թե «բարբարոսներ» են:

Բնականորեն, այդ գիտնականները հաճախ, իրենց կամքից անկախ, ընկնում են թյուրիմացության մեջ, երբ գովաբանում և բարձրացնում են այն մարդկանց, որոնց նրանք հույն են համարում, մինչդեռ դրանք ծագումով հայ են (4):

Հայերը չեն վայելում Կ. Սաթասի ու Է. Լեգրանի համակրանքը: Մի տեսակ նախապաշարմունքի զոհ գնալով, նրանք կարծում են, որ Բյուզանդիան հույների կողմից կառուցված շենք էր, իսկ հայերն այնտեղ թափանցել ու հաստատվել են որպես օտար արկածախնդիրներ:

Ոչինչ չի արդարացնում նման անհարիր կարծիքը: Հայերը Բյուզանդիայի նույնքան հարազատ էին, որքան և հույները: Կայսրությանը մատուցած իրենց ծառայություններով և նվիրվածությամբ, ինչպես նաև իրենց փայլուն գործունեությամբ ու անօրինակ քաջությամբ, նրանք հանդես են գալիս իբրև Բյուզանդիայի պես բարդ կառույցի իսկական կերտողներ:

Չճշգրտված գաղափարները, դիտարկելու տարօրինակ կերպը խանգարել են հիշյալ գիտնականներին ընկալելու «Դիգենիսի» բնույթն ու ծագումը: Ճշմարտությունը կեղծվել է, ճշգրիտ հետազոտության համար անհրաժեշտ անկողմնապահությունը տեղի է տվել հելլենական հայրենասիրության պաթոսին:

## I

«Դիգենիս Ակրիտաս»-ը մի ստեղծագործություն է, որ ներառել է տարբեր զրույցներ, որոնց հիմնական սյուժեն՝ սիրած հերոսների երկածին լինելն է:

Ասորիքին սահմանամերձ ամիրաներից մեկը ասպատակում է բյուզանդական տարածքը և առևանգում հռչակավոր մի իշխանի՝ կայսրության սահմանապահ գնդի հրամանատարի, դստերը: Օրիորդն ուներ հինգ եղբայր, որոնք նրան փնտրելով գալիս են ամիրայի մոտ: Ամիրայի հարցին, թե «ովքեր են իրենք», եղբայրները պատասխանում են.

Մենք Արևելյան երկրից ենք ծագում,
և ազնվական ծնողքից սերում:
Մեր հայրն՝ Ահարոն Դուկասի հայտնի
տոհմից է սերում, Կիննամաղներից:
Մուսելոմը մեր մեծ հոր հայրն էր,

Կիր Մագաստրերից մեր մայրն է սերում
(Մագաստրյաններից, այդ հարուստներից):

'Ημεῖς, ἀμηρᾶ, λέγοντες τυγχάνομεν ἀρχῆθεν
'Εκ χώρας ἀνατολικῆς, ἐξ εὐγενῶν γονέων
'Ο πατὴρ ἡμῶν 'Ααρών, ἐκ τῶν Δουκῶν τὸ γένος
Κατάγεται τῶν θαυμαστῶν ἀπὸ τῶν Κινναμάδων·
Καὶ Μουσελὼμ ἐξάκουστος πατὴρ ὁ τοῦ πατρός μας,
ἡ δὲ μήτηρ ἡμῶν αὐτὴ ἀπὸ τῶν Κυρμαγάστρων
τὸ γένος ἐκκατάγεται τῶν πλουσίων ἐκείνων (տող 52):

Պոեմի մյուս տարբերակում՝ Գրոտտա-Ֆերրատայի [գրչագրում] (5), ասվում է. «Մենք Արևելքի [երկրից] ենք, ազնվատոհմիկ հռոմայեցիներից սերած, մեր հայրը ծագում է Կիննամաղների տոհմից, իսկ մեր մայրը Դուկիսսա է՝ Կոստանդնից սերած»:

'Ημεῖς ἐκ τὸ ἀνατολικόν, ἐξ εὐγενῶν 'Ρωμαίων,
ὁ πατὴρ μας κατάγεται ἀπὸ τῶν Κινναμάδων·
ἡ δὲ μήτηρ μας Δούκισσα, γένους τῶν Κωνσταντίνου
(I, 265 և հջ.):

Այդ ժամանակ ամիրան ևս խոստովանում է իր ծագումը և ասում, որ ինքը Խրիսոխերպոսի և Սպաթիայի որդին է, τοῦ Χρυσοχέρπου ὁ υἱός εἰμι καὶ τῆς Σπαθίας (տող 78): Հոր մահից հետո մայրը նրան հանձնել էր քեռիներին, որոնք նրան ստիպել էին մահմեդականություն ընդունել: «Իմ պապն է Ամբրոնը, իսկ հորեղբայրս՝ Կարոեսը»: 'Αμβὼν ἦτον ὁ πάππος μου, θεῖος μου ὁ Καρώης (տող 82):

Քանի որ նրան ստիպել էին մահմեդականություն ընդունել, ուրեմն հոր կողմից նա քրիստոնյա էր: Հետևաբար Կարոեսը նրա հորեղբայրն էր, մինչդեռ նրա մայրը՝ Սպաթիան, դուստրն էր Ամբրոն անունով մի մահմեդականի, որն էլ համապատասխանաբար ամիրայի մորական պապն էր:

Ամիրան ամուսնանում է առևանգված օրիորդի հետ և այդ ամուսնությունից ծնվում է մի տղա՝ պոեմի հերոս Դիգենիսը: Պոեմի մյուս տարբերակում ամիրայի ազգակցական կապերը նույն ձևով են մեկնաբանված, փոխված են միայն անունները. Խրիսոխերպոսի փոխարեն Խրիսոբերգոս է, իսկ Սպաթիան փոխվել դարձել է Պանթիա:

Ամիրայի մայրն իմանալով, որ որդին՝ հռոմայեցի զորավարի դստեր հետ ամուսնանալու համար որոշել է քրիստոնեություն ընդունել, կշտամբում



է նրան, հիշեցնելով իր և իր քեռու՝ Մուսուրի, սխրագործությունները, որ նրանք արշավանք էին ձեռնարկել, հասել մինչև Զմյուռնիա, ներխուժել ու ասպատակել Անկյուրա, Ակին, Տեվրիկե (և ոչ թե Աֆրիկ, ինչպես կարդում ենք հրատարակության մեջ), Տարանտան և Հեպտակոմիա քաղաքները, իրենց էին ենթարկել բոլոր այդ շրջանները և վերադարձել Ասորիք: Նրա քեռին հայրենիք էր վերադարձել առանց տեղի տալու հռոմեական գայթակղությանը: «Մուսուր քեռին, հռչակավոր տարսոնացին»՝ ὁ δὲ Μουσοῦρ ὁ θεῖοδ" σου, ἐκεῖνος ὁ Ταρσίτης (տող 201) պետք է որ լինի ամիրայի քեռին, քանի որ նրա հորեղբայրը Կարոեսն է:

Երկրորդ տարբերակում Մուսուրի փոխարեն տրված է Կարոեսի անունը. ὁ ἀδελφός μου, ὁ θεῖος σου, ὁ μουρσῆς ὁ Καρόης (II, 75): Հնարավոր է որ քեռու անունը թաքնված է μουρσῆς՝ Մուսուր անվան աղավաղված ձևի տակ: Պոեմի խմբագիրը կարծես թե խառնել է Մուսուր քեռուն Կարոես հորեղբոր հետ և այդ պատճառով ազուցել է երկու անունները. ὁ μουρσῆς (իմա՝ Μούσρης) ὁ Καρόης:

Չորրորդ գրքում պոեմի հեղինակն իր հերոսի սխրագործությունների պատմությունը սկսելուց առաջ կրկին վերադառնում է նրա տոհմաբանությանը: Մենք տեսնում ենք ծանոթ տողերը, որոնք վերաբերում են ամիրայի՝ Դիգենիսի հոր, ծագմանը: Ամբրոնը նրա պապն է, Կարոեսը՝ հորեղբայրը, իսկ ինքը դաստիարակվել է արաբների մոտ (տող 807): Խարսիանոն կատարած իր արշավանքի ժամանակ նա Դուկասների ընտանիքից առևանգում է մի օրիորդի: Նրանից նա ունենում է որդի, որին անվանում է Դիգենիս, այսինքն՝ երկու ցեղերից սերած՝ սարակինոս՝ հորից և հռոմայեցի՝ մորից: Տեղեկանում ենք, որ Դիգենիսի պապը Անդրոնիկոսն էր Կիննամոսների ընտանիքից՝ πάππος δ' αὐτοῦ 'Ανδρόνικος ἀπὸ τῶν Κινναμάδων (տող 834), և որ նրա տատը Դուկասների ընտանիքից մի զորավարի կին էր՝ μάμμην εἶχε στρατήγισσαν ἐκ γένος τῶν Δουκάδων (տող 839):

Սակայն այս տարբերակը կոպտորեն հակասում է այն ամենին, ինչ մինչ այդ ասվել էր հերոսի ծագման մասին: Գերի օրիորդի՝ Դիգենիսի ապագա մոր եղբայրներն անձամբ հայտնել էին ամիրային, որ նրանց հայրը Ահարոնն է, իսկ պապը՝ Մուսելոմը: Ուստի և Դիգենիսի պապը պետք է լինի Ահարոնը և ոչ Անդրոնիկոսը: Ճիշտ է, Անդրոնիկոսը նույնպես պատկանում էր Կիննամոսների ընտանիքին, սակայն նա Ահարոնը չէ: Իսկ Դիգենիսի տատը (իր մոր մայրը) սերած էր Կիր Մագաստրերի հարուստ ընտանիքից և ոչ թե Դուկասների:

Այսպիսով հեղինակի կողմից պոեմի հերոսի ծագման հարցում թույլ տված անհամապատասխանությունը ակնհայտ է: Ահարոնին Անդրոնիկոսով փոխարինելուց հետո նա կարծել է, որ լավ կլիներ նրա կնոջը դարձնել

Դուկասների ընտանիքի անդամ, մինչդեռ նա պատկանում էր Կիր Մագաստրերի ընտանիքին[1]: Այսպիսով Դուկասների ընտանիքի հետ կապված կլիներ ոչ միայն Դիգենիսի մայրը, այլև տատը:

Պոեմի մեկ այլ տարբերակում նույն Անդրոնիկոս անունը փոխարինվել է Անտակինոս անունով՝ τούτου πάππος 'Αντάκινος ἀπὸ τῶν Κινναμάδων (IV, տող 54): Այս տարբերակից իմանում ենք, որ ամիրայի որդու իսկական անունը Վասիլ է, իսկ Դիգենիս նրա մականունն է, որը նրան տրվել է երկածին լինելու պատճառով: Չմոռանանք նշել, որ Անտակինոս անունը կարծես թե Անտիոքոս (հայ. Անդոկ) անվան արևելյան (հայկական կամ պարսկական) ձևն է:

Պոեմի ծանոթությունները հերոս Դիգենիսի հայրական գծի վերաբերյալ պակաս խճճված չեն: Իններորդ գլխում, ուր նկարագրվում է Դիգենիսի մոր մահը, տրվում է նաև հերոսի կյանքի սեղմ շարադրանքը: Սարակինոսները հաճախ էին իրենց արշավանքներով սպառնում Բյուզանդական կայսրության անվտանգությանը, մինչև Դիգենիսը վերջ չտվեց դրանց: Խոսրովն էր առաջինը, որ ներխուժեց Բյուզանդիա և հռչակավոր Տարսոնացու, Խաքանի և Սարվարի աջակցությամբ հասավ մինչև մայրաքաղաք: Տարսոնացին մեկ անգամ ներկայանում է որպես ամիրայի հայր, այսինքն՝ Դիգենիսի պապ (տող 3077), իսկ մի այլ անգամ՝ որպես ամիրայի պապ, իր մոր՝ Սպաթիայի, հայր (տող 3066):

Կարևորն այն է, որ մենք վերջապես իմանում ենք ամիրայի՝ Դիգենիսի հոր, անունը: Նրա անունն էր Մուսուր, իսկ ավազանի անունն էր Հովհաննես (տող 3070 և հջ.):

Նույն գրքից մենք տեղեկանում ենք, որ Դիգենիսն ապրում էր հռչակավոր ու մեծ նվաճող Նիկեփոր II կայսեր (963-969) օրոք, որն ամեն օր Դիգենիսին մի ընծա էր ուղարկում (տող 3107): Դա տարօրինակ է, քանի որ հինգերորդ գրքում Դիգենիսին ժամանակակից կայսրը կոչվում է Ռոմանոս, ὁ παντευχὴς καὶ ἄριστος τροπαιοῦχος [«զինազեն և գերազանց հաղթանակող»]:

Ռոմանոսը Կապադովկիայում եղած ժամանակ, ուր նա պատրաստվում էր արշավել թշնամիների դեմ, իբր ցանկացել էր հանդիպել Դիգենիսին (տող 1476):

---

[1] Ազգանունը հասկանալ է տալիս, որ խոսքը այն ընտանիքի մասին էր, որին պատկանում էր Գաստրիա վանքը Կոստանդնուպոլսում: Այդ վանքը Թեոկտիստեի՝ Թեոդորայի, Վարդասի և Պետրոնասի մոր սեփականությունն էր: Նա թաղված էր այնտեղ, ինչպես նաև Թեոդորան իր դուստրերի հետ, Պետրոնասը և Վարդասի դուստրը (De çerim., 648): Ալեքսիոս Մուսելեն (Մուշեղը) Թեոդորայի փեսան էր, նրա դստեր՝ Մարիայի ամուսինը: Այս վանքի տեղում այժմ գտնվում է Ս.Գևորգ հայկական եկեղեցին՝ Սամաթիա թաղամասում:



Ավելի դժվարին վիճակի մեջ ես ընկնում, երբ պոեմի մեկ այլ տարբերակից իմանում ես, որ ոչ թե Ռոմանոսը, այլ Վասիլն էր այն երանելի և հաղթական կայսրը՝ ὁ εὐτυχὴς καὶ μέγας τροπαιοῦχος, որ եկել էր Դիգենիսի ավատը, երբ վերջինս պատրաստվում էր գնալ պարսիկների դեմ (IV, տող 971 և հջ.):

Ոչ մի զարմանալի բան չկա այդ ժամանակավրեպությունների մեջ. տարածքային թռիչքներն ու հակասական տվյալները ժողովրդական դյուցազներգությանը բնորոշ են: Ժողովրդական հիշողությունն ու ոգին սպունգի պես կլանում են նշանակալից կամ դարեր անց այդպիսին թվացող փաստերը և հաճախ դրանք տեղադրում իրական պատմությունից վերցված, և կամ իրենց երևակայության ծնունդ հանդիսացող որևէ հերոսական անվան շուրջ: Իրական պատմական կորիզը կորչում է ամենատարբեր հերյուրանքների կույտի ներքո:

Այնուամենայնիվ, նույնիսկ ժողովրդական երևակայությունը, որքան էլ այն ազատ լինի, ստիպված է գործել իր պատմական կյանքի շրջանակներում: Իրերի այն կողմը, որը մեզ կարող է մաքուր երևակայության արգասիք թվալ, իրականում արտացոլում է մի որոշակի պատմական միջավայր և հազվադեպ չեն այն դեպքերը, երբ աղավաղված փաստերը պահպանում են անցյալում իսկապես տեղի ունեցած իրադարձությունների բեկորներ:

Նման դեպքերում խնդիրն այն է, որ պետք է փորձել քանդել առասպելում կառուցված արհեստական շինությունը և իրական քարերը տեղադրել յուրաքանչյուրն իր տեղում:

Դժբախտաբար հրատարակիչներ Սաթասի ու Լեգրանի գործելակերպը այդպիսին չի եղել:

## II

Պոեմի իրենց վերլուծության մեջ աշխատասիրողների ելակետն այն համոզմունքն էր, թե Դիգենիս Ակրիտասը պատմական անձնավորություն է, որն ապրել և գործել է որոշակի մի ժամանակաշրջանում Եփրատի ափին և իրենից հետո արդարև փառավոր հիշատակ է թողել: Հեղինակների մյուս, ոչ պակաս կամայական, կանխակալ համոզվածությունն այն է, թե հերոսն իր ծագումով անպայման հույն է:

Այս երկու՝ որքան ճակատագրական, նույնքան կանխակալ գաղափարները դրդել են ջանասեր հրատարակիչներին վերանայել բյուզանդական ամբողջ պատմությունը սկսած Իսավրական հարստությունից մինչև Կոմնենոսներ՝ Դիգենիսի դերին հարմար հունական ծագում ունեցող մի անձնավորություն գտնելու համար: Ի վերջո նրանք կանգ առան Անդրոնիկոս Դուկասի կերպարի վրա: Պետք է ասել, որ պատմության ասպարեզը

կատարած այդ ներխուժումը անհրաժեշտ էր ոչ այնքան Անդրոնիկոսի ընտրության, որքան Դիգենիսի դերին իրենց հավակնությունները հիմնավորելու և արդարացնելու համար:

Հրատարակիչները պնդում են, որ պոեմի հեղինակը ճանաչել է հռչակավոր Վասիլ Դիգենիսին և իբր անձամբ հենց նրանից է լսել վեցերորդ և յոթերորդ գրքերում նկարագրված սխրագործությունները: Նրանք վկայակոչում են հետևյալ տողերը՝

'Ο ἔκτος λόγος, λέγω δή, καὶ ὁ ἕβδομος αὐτίκα
πεφύκασι τοῦ ποιητοῦ ἐκ στόματος λεχθέντες
Βασιλείου τοῦ Διγενοῦς τοῦ θαυμαστοῦ 'Ακρίτου (տող 1553):

[Ասքը վեցերորդը, ապա յոթերորդը
պոետինն են՝ լսած շրթներից
հրաշք հերոսի, Երկածին Վասիլի]:

«Այդ հայտարարությունն այնքան հստակ է ու որոշակի,- ասում են հրատարակիչները,- որ մեզ անիմաստ են թվում այլևայլ պնդումները: Բանաստեղծը ճանաչել է Դիգենիսին, նույնիսկ հնարավոր է, որ նա եղել է հերոսի մտերիմներից, մեկը նրանցից, ում հերոսը սիրել է պատմել իր արկածները»:

Ամենևին: Նախ՝ այդ հայտարարության ստույգությունը դեռ պետք է ապացուցվի: Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ դրանք հեղինակի խոսքերը չեն, այլ, ավելի հավանական է, մի նշում, որը գալիս է մեկ այլ աղբյուրից և հետևանք է հեղինակի իսկական հայտարարության սխալ մեկնաբանության:

Վեցերորդ գիրքը սկսվում է մի նախազգուշացումով, որ այդ գրքում Դիգենիսն ինքն է պատմելու իր սխրագործությունների մասին՝ ἐν ᾧπερ διηγήσατο τοῖς φίλοις τοῖς οἰκείους [«որում պատմել էր իր հարազատ ընկերներին»]: Նույն բանն է գրված նաև յոթերորդ գրքի սկզբում՝ "Εβδομος λόγος ὁ παρὼν πλείστας ἀνδραγαθίας ... ἃς ὁ αὐτὸς ἐξήγγειλε πρὸς τοὺς οἰκείους φίλους

[Ասքում յոթերորդ քաջ Ակրիտասի
բազում սխրանքի մասին է խոսվում,
սխրանք, որ պատմեց իր ընկերներին]:

Դա պարզապես նշանակում է, որ այս երկու գրքերում շարադրանքն ընթանում է առաջին դեմքից և որ դա հերոսի խոսքն է: Դա էպիկական գրականության հատկանիշ է, երբ հերոսներն իրենք իրենց մասին են



պատմում: Դրանից ամենևին չի հետևում, թե այդ գործող անձն իր պատմածի հեղինակն է, կամ էլ հեղինակն այն խոսքերի, որոնք հերոսին ասել է տալիս հեղինակը:

Որ վեցերորդ և յոթերորդ գրքերի պատմողը իրոք նույն հեղինակն է, պարզվում է հինգերորդ գրքի վերջում արած հայտարարությունից: Այնտեղ ասվում է՝ «ես հիմա գրելու եմ»՝ γράψω σοι, վեցերորդ գրքում՝ արաբների, իսկ յոթերորդում՝ ապելատների դեմ Դիգենիսի տարած հաղթանակի մասին: Հինգերորդ գիրքը վերջանում է հետևյալ ծանուցմամբ. Τέλος τοῦ πέμπτου λόγους [«Հինգերորդ խոսքի վերջը»]:

Հետևաբար մենք կարող ենք իրավացիորեն զարմանալ իմանալով այդ նույն գրքերի վերաբերյալ մի նոր հայտարարություն, հենց այն, որը մեր վեճի առարկան է և որը դրդել է հրատարակիչներին կարծելու, թե այդ երկու գրքերի բովանդակությունը բանաստեղծը շարադրել է Դիգենիսի խոսքերից:

Այդ հայտարարության անջատ դիրքը երկու այլ հայտարարությունների միջև, մեկը հինգերորդ գրքի վերջում, մյուսը՝ վեցերորդի սկզբում, այն ավելորդ է դարձնում: Հնարավոր է, որ դա երկրորդ ձեռքի գործ է, կատարված գրչի կողմից այլ, իսկական հայտարարությունների հիման վրա: Ինչ վերաբերում է դրա իմաստին, ապա եթե այն տարբերվում է վերը նշված հայտարարություններից, ապա սխալը պետք է վերագրվի հեղինակին: Ուստի մենք ոչ մի հիմք չունենք Դիգենիսին համարելու պատմական անձնավորություն:

Նույն գիտնականների թույլ տված մյուս սխալն այն է, որ նրանք Դիգենիսին ծագումով հույն են համարել:

Պոեմի հեղինակն իր աշխատանքի ընթացքում ջանացել է հերոսի ծագման վերաբերյալ տարբեր տվյալները համաձայնեցնել: Բայց և այնպես նրան չի հաջողվել հաղթահարել բոլոր դժվարությունները:

Կ. Սաթասն ու Է. Լեգրանը ձեռնամուխ լինելով պոեմի վերլուծությանը, դրա էկլեկտիկ բնույթը վերհանելու փոխարեն, հնարավոր համարեցին ընդունել բանաստեղծի հարակցման մեթոդը և այն տարել են մինչև վերջ: Այսպես, բանաստեղծը Դուկասներին նույնացրել է Կիննամոսների, իսկ վերջինս՝ Կրինիտեսների ընտանիքի հետ: Դիգենիսի մայրը Կրինիտեսների ընտանիքից սերող Մուսելոմի որդի Ահարոնի դուստրն է: Մենք արդեն նշել ենք, որ մեկ այլ հատվածում բանաստեղծը Ահարոնի փոխարեն Անդրոնիկոս Դուկասի անունն է հիշատակում:

Այս հակասությունը բացահայտում է հեղինակի օգտագործած առասպելների տարատեսակությունը: Հրատարակիչները կամեցել են խուսափել Անդրոնիկոս Դուկասին Ահարոնի հետ նույնացնելու վտանգից, նրան

դարձնելով Մուսելոմի որդի: Նրանց դիտավորությունը ոչ այլ ինչ էր, քան ապացուցելը մոր կողմից Դիգենիսի հունական ծագումը: Անկասկած նույն դիտավորությամբ է, որ նրանք Մուսելոմ անունն արտածում են Աբիսողոմ անունից և այն դիտում որպես աստվածաշնչական անվան աղավաղում:

Սակայն, որպեսզի մեր գիտնականների հայրենասիրական հաշվարկները հիմնազուրկ լինեն, բավական է հիշեցնել, որ Մուսելոմը, կամ դրա ճիշտ ձևը՝ Մուսելեն, ինչպես ցույց են տալիս հետազոտողները, զուտ հայկական Մուշեղ անունն է, որը հատկապես ընդունված էր Մամիկոնյանների նախարարական ընտանիքում:

Կիննամոսը նույնպես հայկական անուն է, թեև ունի պարթևական ծագում: Առաջին անգամ մենք այդ անվանը հանդիպում ենք Արշակունի մի թագավորի (6) կապակցությամբ, որը գահ էր բարձրացել Արտավան III-ից հետո[1]: Այն կարող է Բյուզանդիա փոխանցված լինել միայն հայերի միջոցով:

Իսկ ինչ վերաբերում է Կրինիտեսներին, ապա կարելի է միայն զարմանալ այն բանի վրա, որ Կ. Սաթասը և Է. Լեգրանը դիմելով Թեոփանեսի Շարունակողի վկայությանն այն մասին, որ Ալեքսիոս Մուսելեն սերում էր այդ ընտանիքից, լռությամբ են շրջանցում նույն հեղինակի որոշակի նշումը Մուսելեի և նրա ընտանիքի հայկական ծագման մասին. Ὁ δὲ ἀνὴρ τῆς τῶν Κρηνητῶν κατήγετο γενεᾶς, χώρας τῆς τῶν Ἀρμενίων, Ἀλέξιος τοὔνομα Μουσελὲ τὴν ἐπωνυμίαν[2] [«Այս այրը՝ Ալեքսիոս անունով, Մուզելե մականվամբ, սերում էր Կրինիտեսների տոհմից, Հայոց երկրից»]:

Պոեմում Մուսելեի ընտանիքը նույնացված է Դուկասների ընտանիքի հետ: Եթե դա ճիշտ է, ապա կարող ենք հարց տալ, թե Դուկասը Մամիկոնյանների տիտղոսի թարգմանությունը չէ՞ արդյոք, որն է *«սպարապետ»*, որտեղից էլ գալիս է *«սպարապետի տուն»* արտահայտությունը, քանի որ այդ պաշտոնը ժառանգական էր Մամիկոնյանների ընտանիքում:

Դիգենիսի տոհմաբանությունը հոր կողմից ևս ոչ մի հնարավորություն չի տալիս մեր գիտնականների կողմնապահությանն օժանդակելու համար:

Դիգենիսի հայրը Խրիսոխերպոսի կամ Խրիսոբերգոսի[3] որդին էր, նրա հորեղբայրն էր Կարոեսը: Սրանք միանգամայն պատմական անձինք են: Դժվար չէ ի դեմս դրանց տեսնել պավլիկյան աղանդի հռչակավոր ղեկավարներ Խրիսոխեյրոսին և Կարբեասին: Առաջինը երկրորդի փեսան էր և զարմիկը: Ամեն դեպքում պոեմում պահպանվել են նրանց ազգակցության

[1] Josephi Flavii Antiquitates Judaicae, 20, 3, 2.

[2] Theoph. Cont., p. 107.

[3] Տե՛ս Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Գ-ին (983-995), որի մականունն էր Խրիսոբերգոս (Cedren., p. 694):



հետքերը, չնայած այն բանին, որ նրանց եղբայրներ են դարձրել, հավանաբար նրանց դավանական համախոհության և համագործակցության ազդեցությամբ:

Պետք է ասել, որ VIII դարի վերջում Խրիսոխեյրոս անունը կրել է մեկ այլ անձնավորություն ևս: Նա հավանաբար Կարբեասի ավագ եղբայրն էր, կամ հայրը: Նույն ժամանակաշրջանում հիշատակվում է պատրիկ Ալեքսիոս Մուսելեն, որը պետք է որ Միքայել կայսեր ժամանակ ապրած և նույն անունը կրող հռչակավոր զորավարի հայրը լիներ:

790 թ. Արմենիակների բանակաթեմը ապստամբում է Իրենե կայսրուհու դեմ, վերջինիս կողմից օրինական ժառանգորդ և իր որդի Կոստանդին VI-ի իրավունքների նկատմամբ ոտնձգությունների պատճառով: Ալեքսիոս Մուսելե զորավարին ուղարկում են խռովությունը ճնշելու: Սակայն վերջինս անցնում է ապստամբների կողմը: Կայսրուհին ստիպված է լինում հրաժարվելու իր ծրագրերից: Իր ձեռքը վերցնելով իշխանությունը՝ Կոստանդինն ի հատուցումն Ալեքսիոսի ծառայությունների, նրան նշանակում է Արմենիակների բանակաթեմի զորավար (ստրատեգոս):

Կոստանդինը շուտով հաշտվում է մոր հետ և նրան վերադարձնում կայսրուհու տիտղոսը: Իրենեի նկատմամբ ատելությունը պահպանում է միայն Արմենիակների բանակաթեմը: Կայսեր նոր շրջապատին հաջողվում է համոզել նրան, որ Ալեքսիոսը հույս ուներ Արմենիակների բանակաթեմի օգնությամբ զավթել գահը: Կայսրը իսկույն ետ է կանչում զորավարին և պահում է իր մոտ: Կայսեր հրամանից դժգոհ, Արմենիակների բանակաթեմը պահանջում է զորավարին վերականգնել իր պաշտոնում: Կոստանդին VI-ը ստիպված է լինում նրանց դեմ զորք ուղարկել երկու զորավարների՝ Կոստանդին Արտասերի և Խրիսոխեյրոսի, գլխավորությամբ: Իր զորքերի պարտությունից հետո Կոստանդինն անձամբ, մի բանակի գլուխն անցած ճնշում է ապստամբությունը: Արմենիակների բանակաթեմի երկու պարագլուխները՝ Անդրոնիկոսն ու Թեոփիլոսը, մահվան են դատապարտվում:

Այս իրադարձությունները շարադրված են Կ. Սաթասի կողմից առանց ճշգրտության, սխալ և միտումնավոր լուսաբանությամբ: Սակայն հարցը այդ չէ: Նույն ճակատագրին արժանացած երկու անձնավորությունները՝ Մուսելեն և Խրիսոխեյրոսը, ազգակցական կապի մեջ են երկու այլ մարդկանց հետ, որոնք կրում են նույն անունները և պատկանում հաջորդ սերնդին: Կարբեասի հետ միասին նրանք մեր պոեմում նկարագրված Մուսելեի, Խրիսոխերպոսի և Կարոեսի նախատիպերն են:

**Վերը հիշատակված զորավարներ՝ Մուսելեն, Արտասերը, Անդրոնիկոսն ու Թեոփիլոսը, ինչպես նաև Խրիսոխեյրոսը և Կարբեասը բոլորը հայեր են կամ հայկական ծագում ունեն: Առաջինները հայ քաղկեդոնիկներ**

էին, նրանցից, որ անցել էին կայսերական եկեղեցու գիրկը, իսկ վերջին երկուսը՝ պավլիկյաններ:

## III

Պավլիկյանների հայրենիքը Հայաստանն էր: Նրանք հաստատվել էին Եփրատի հովտում՝ Կոլոնիա և Մելիտենե քաղաքների միջև գտնվող գետափնյա շրջանում, Փոքր Հայքի սարահարթում: Նրանց կենտրոնն էր Տեվրիկեն՝ այժմ Դիվրիգ:

Երբ կայսրությունը որոշեց վերջ տալ եկեղեցու համար չափազանց վտանգավոր կրոնական ազատամտության այդ կենտրոնին և դիմեց ուժի, անհաշտ աղանդավորները, իրենց դավանական համոզմունքները պաշտպանելու համար, համառ դիմադրություն ցույց տվեցին: Մնձուրի (այսօրվա Դերսիմ) անառիկ լեռներով պաշտպանված լինելով, նրանք հաճախ հարձակման էին անցնում և ասպատակելով թափանցում իրենց թշնամու երկրի խորքերը: 872 թ. Խրիսոխեյրոսը պավլիկյանների բանակի գլուխն անցած հասավ մինչև Նիկոմեդիա և պատրաստվում էր վտանգի ենթարկել անգամ մայրաքաղաքը: Մի շարք կայսրեր անձամբ են գլխավորել պավլիկյանների դեմ ուղղված արշավանքներն ու ռազմական գործողությունները և հազիվ թե նրանք կարող էին պարծենալ որևէ շոշափելի հաջողությամբ:

Խրիսոխեյրոսն այնքան հանդուգն էր, որ [Վասիլ I] կայսեր արած խաղաղության առաջարկին պատասխանում է, թե կայսրությունը թող բավարարվի Արևմուտքում ունեցած իր տիրույթներով, իսկ Արևելքը թողնի իրեն[1]:

Հաջորդ տարին կայսեր փեսա Քրիստոփորոսին հանձնարարվում է վրեժխնդիր լինել միապետին հասցված այդ վիրավորանքի համար: Քրիստոփորոսը արշավում է Խրիսոխեյրոսի դեմ, հարձակման անցնում և խորտակում պավլիկյանների զորությունը: Խրիսոխեյրոսն ընկնում է մարտի դաշտում, նրան գլխատում են, իսկ գլուխն ուղարկում կայսրին:

Երբ Բյուզանդիային հաջողվեց կասեցնել և ետ մղել դեպի արևմուտք ուղղված պավլիկյանների շարժումը, աղանդավորները քաշվեցին Հայաստան և Ծաղկոտն գավառում, Թոնդրակ կոչվող վայրում մի նոր կենտրոն հիմնեցին: Պավլիկյանների այդ հատվածը, ըստ նրանց հաստատման վայրի, հայտնի է «թոնդրակեցիներ» անունով: Հայկական աղբյուրներում պահպանվել է այդ ճյուղի հիմնադրի անունը՝ Սմբատ, որն ապրել է IX դարի վերջում, X դարի սկզբում: Սակայն պավլիկյան դավանանքի հին կենտրոնը միշտ էլ մնացել է Տեվրիկեի շրջանում, ծխալով մինչև վերջերս:

Նույն աղանդի մեկ այլ թև հաստատվել էր Մելիտենե քաղաքի մոտ՝

[1] Genesius, IV, 122 et sqq.



Արգաուս ամրոցում: Այս պավլիկյանները կրում էին Աստատ անունը և նրանց ղեկավարը Սերգիոս անունով մի հայազն էր:

Պավլիկյաններն իրենց քրիստոնյա էին անվանում և հակված էին հունական անուններ ընդունելու: Այս առթիվ Սաքսը և Լեգրանը կարծիք են հայտնում, որը զուրկ չէ ինքնատիպությունից: «Աղանդավորները բյուզանդացիներին արհամարհանքով անվանում էին *հռոմներ*,- ասում են նրանք,- իսկ իրենց վերապահում *քրիստոնյա* հորջորջումը: Նրանց ղեկավարներն իրենց քրիստոնեական անունները փոխարինում էին հունականներով. այսպես Հովսեփը՝ Էպաֆրոդիտոսով, Սերգիոսը՝ Տյուքիկոսով»:

Այդ դիտողությունը հեղինակներին հնարավորություն է տալիս եզրակացնելու, որ պավլիկյանների կրոնական ռեֆորմի միակ նպատակն էր «խզել կապը հռոմեական ավանդության հետ, որը Բյուզանդիան խնամքով պահպանում էր, և կայսրությունը կենդանացնել հելլենիզմով» (էջ LXXVIII):

Սա որքան անձնական, նույնքան կամայական եզրակացություն է, որը թելադրված է գիտությանը խորթ զգացմունքով: Հայերը ցայսօր սովորություն ունեն իրենց քրիստոնյա անվանելու («հայ քրիստոնյա»), ինչպես որ ռուս գյուղացիներն իրենց անվանում են крестьяне, այսինքն՝ քրիստոնյա:

Ինչ վերաբերում է հունական անուններին, որ կրում էին աղանդավորների ղեկավարները, ապա դրանք կապ չունեն հելլենականության, առավել ևս կայսրությունը հելլենիզմով վերակենդանացնելու ձգտման հետ:

Պավլիկյանները մեծ ակնածանք էին տածում Պողոս առաքյալի և նրա թղթերի հանդեպ: Այդ պատճառով նրանց ղեկավարները սիրում էին կրել առաքյալի գրվածքներում հիշատակված նրա գործակիցների անունները: Այսպես, աղանդավոր Կոստանդնի մականունն էր Սիլվանոս, Սիմեոնինը՝ Տիտոս, Գենեսիոսինը՝ Տիմոթեոս, Հովսեփինը՝ Էպաֆրոդիտոս, Սերգիոսինը՝ Տյուքիկոս: Բոլոր այս անուններին կարելի է հանդիպել Պողոս առաքյալի թղթերում: Նրանց հիմնած կրոնական համայնքները նմանապես կրում էին Պողոսի հիմնած համայնքների անունները: Այդ էր պատճառը, որ Փոքր Հայքում Կոլոնիայի մոտ գտնվող Կիբոսայի համայնքը կոչվում էր Մակեդոնիա, Մեծ Հայքում, Եփրատի ափին գտնվող մի գավառում՝ Մանանաղիում, հիմնածը՝ Աքայա, Արգաուսում հիմնածը՝ Լավոդիկեա և այլն:

Դրանից բխում է, որ Սաքսի ու Լեգրանի ենթադրությունը ոչ մի արժեք չունի:

Պետրոս Սիկիլացու հիշատակած պավլիկյան վեց առաջնորդներից երեքը անտարակույս հայեր էին: Վասիլ կայսեր կողմից աղանդավորների հետ բանակցելու ուղարկված Պետրոսը [Սիկիլացին] օգտվել է իր այցելությունից նրանց պատմությունը գրելու համար (7):

Երեք ղեկավարները՝ Վահանը, Գենեսիոսը և Սերգիոսը հայեր էին:

Դրա մասին է վկայում առաջինի անունը, իսկ մյուս երկուսի դեպքում պատմիչի որոշակի ցուցումը: Սակայն դա դեռ չի նշանակում, որ մնացած երեքի հայկական ծագումը բացառվում է:

Քաղկեդոնիկ հայերը այլևս չէին ընկալվում որպես հայ:

Մելիտենեի ու Տարսոնի ամիրաները հաճախ էին դաշնակցում պավլիկյանների հետ և նրանց հրահրում կայսրության դեմ պայքարի: Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Տարսոնի ամիրան էր Ալի-իբն-Յահյան, մականունը՝ Ալ-Արմանի, իսկ Մելիտենեինը՝ Օմար-իբն-Օբեյդալլահը, Ալ-Ակտա մականունով:

Ալ-Արմանի մականունը թույլ է տալիս եզրակացնելու, որ Տարսոնի ամիրան ուներ հայկական ծագում: Այդ է պատճառը, որ նա Հայաստանի Միաֆարկին քաղաքի շրջակայքում կալվածներ ուներ, ուր նա իր մահկանացուն կնքեց 863 թ.՝ իր տիրույթները կատարած այցելության ժամանակ: Այդ ժամանակաշրջանում եղել են դեպքեր, երբ հայ իշխանները քաղաքական հանգամանքների ճնշման ներքո մահմեդականություն էին ընդունում: Տարսոնից հետո Ալ-Արմանին նշանակվել էր Հայաստանի կառավարիչ և նա էր, որ Աշոտ Բագրատունի իշխանին հանձնել էր խալիֆայի հրամանը, որով վերջինս Աշոտին ճանաչում էր որպես Հայաստանի իշխանաց իշխան:

Մելիտենեի ամիրան էր Օմար-իբն-Օբեյդալլահը՝ Տարսոնի ամիրայի դաշնակիցը: Թեոփանես ժամանակագրի երկում և մեր պոեմում նրա անունը պահպանվել է Ամբրոն ձևով: Պավլիկյան Կարբեասը բյուզանդական հալածանքներից խույս տալու համար այդ ամիրայի մոտ էր ապաստանել: Նա նույնիսկ գնացել էր Բաղդադ, խալիֆային ներկայանալու, և մեծ պատիվների էր արժանացել:

Եվ Կարբեասը, և՛ Ամբրոնը զոհվել են բյուզանդական բանակի զորավար, Մամիկոնյանների իշխանական տան ներկայացուցիչ Պետրոնասի դեմ մարտնչելիս:

Կարբեասը իշխանությունը թողել է իր զարմիկ և փեսա Խրիսոխեյրոսին: Մեր պոեմի համաձայն Խրիխոխերպոսը (պատմական Խրիսոխեյրոսը) ամուսնացել էր Ամբրոնի դստեր՝ Սպաթիայի հետ, որը և լույս աշխարհ բերեց Դիգենիսի հորը: Նույն պոեմում Կարոեսը (պատմական Կարբեասը) համարվում է Դիգենիսի հորեղբայրը, այսինքն՝ ստացվում է, որ Կարոեսը Խրիխոխերպոսի եղբայրն է: Մենք տեսնում ենք, որ պոեմում Կարբեասին հաջորդած Խրիսոխեյրոսին շփոթել են Կարբեասից առաջ պավլիկյանների առաջնորդ և Կարբեասի մերձավոր ազգական Խրիսոխեյրոսի հետ:

Մի բան պետք է լավ հասկանալ, որ պոեմը իր գլխավոր հերոսներով թե՛ աշխարհագրական, և թե՛ ծագումնաբանական առումով սերտորեն կապվում է պավլիկյան միջավայրին: Դիգենիսի հայրը պավլիկյան ադանդա-



վորներից մեկի որդին է: Կայսրության տարածքը կատարած իր ներքական արշավանքներից մեկի ժամանակ նա գերեվարել էր բյուզանդական մի զորավարի դստերը և ամուսնացել նրա հետ: Ո՞վ էր այդ զորավարը:

## IV

Մենք տեսանք, որ պոեմի տեղեկությունները այդ հարցում հստակ չեն: Առանց որևէ բացատրություն տալու Կ. Սաթասը պարզապես ընդունել է այն, ինչ ցանկացել է: Դիգենիսի ապագա հայրը՝ զորավարը, նրա կարծիքով պետք է որ Անդրոնիկոս Դուկասը լինի, որը շուրջ 855 թ. Լևոն Արգիրոսի և Սուղալիսի հետ ուղարկվել էր պավլիկյանների դեմ: Հետագայում Անդրոնիկոսը շնորհազրկվել է, փախուստի դիմել և ապաստանել արաբների մոտ, ուր մահմեդականություն է ընդունել և այնտեղ մնացել մինչև կյանքի վերջը: Նրա որդի Կոստանդինը փախել էր արաբների մոտից և նրանց դեմ մղած մարտերում ցուցաբերած խիզախությամբ վերականգնել իր փառավոր անունը, բայց Լևոն VI Իմաստասերի մահվանը հաջորդած իրադրության պայմաններում նա զոհ գնաց գահին տիրանալու որքան փառասեր, նույնքան և անխոհեմ փորձին:

Կ. Սաթասը չափից դուրս մեծ և դրան ոչ արժանի նշանակություն է տալիս Պսելլոսի այն հատվածին, ուր նա, Կոստանդին X Դուկաս (1059-1067) կայսեր մասին խոսելիս, նշում է, թե Անդրոնիկոսը, Կոստանդինը և Պանթերիոսը պետք է որ «ոմանք տղամարդկանց, ոմանք կանանց գծով կայսերը ազգական լինեին»:

Սակայն որքան մեզ հայտնի է, Պանթերիոսը կայսրության նշանավոր անձանց շարքում դասված չէ: Պատմությունը տեղյակ չէ նրա՝ կայսեր ազգական լինելուց բացի, և ոչ մի արժանիքին[1]: Այդ ազգակցական կապն էր պատճառը, որ Ռոմանոս I Լեկապենոսը Պանթերիոսին նշանակեց Կուրկուասի պաշտոնին, երբ վերջինս ստիպված եղավ պաշտոնաթող լինել անբան պալատականների կողմից վարկաբեկվելուց հետո: Այդքան սովորական անունը չէր կարող պահպանվել սերունդների հիշողության, առավել ևս ժողովրդական դյուցազներգությունների մեջ:

Պանթերիոսի համբավն ընդգծելու համար, կամ, ավելի շուտ, այդպիսին հորինելու նպատակով, Սաթասը պատրաստ է կեղծել պատմությունը և թեթևամտորեն հավատալ, որ այն ամենը, ինչ պատմում են Կուրկուասի մասին, նրա բոլոր սխրագործությունները պետք է վերագրել Պանթերիոսին: Չնայած այն բանին, որ Պանթերիոսը որպես Լեկապենոսի ազգական ավելի մոտ էր Կոստանդին Ծիրանածնին, քան Կ. Սաթասին, այնուամենայնիվ

[1] Theoph. Cont., 429.

հույն գիտնականն իր ազգային պարտքն է համարում Պանթերիոսին պաշտպանել Կոստանդնից: Մատենագիր կայսեր բարեխղճությունը անազնիվ կերպով կասկածի է ենթարկված: Սաքասը նրան մեղադրում է հայկական ծագում ունեցողների նկատմամբ կողմնապահ, իսկ հույների նկատմամբ թշնամական լինելու մեջ: Կոստանդին Ծիրանածինը, ըստ Կ. Սաքասի, սխալվում է գովաբանելով Հովհաննես Կուրկուասին և, հակառակը, Ռոմանոս Լեկապենոսի տոհմը վատաբանելով:

Պետք չէ լուրջ ընդունել ազգայնամոլության նոպայի պահին հայտնած այդ կարծիքը: Կուրկուասի, «ինչպես և Կեսարի կնոջ», ազնիվ համարումը կասկածից վեր է: Կ. Սաքասը չի կարողացել թաքցնել, որ Մանուել պրոտոսպաթարը ութ գրքից բաղկացած մի մենագրություն է գրել, նվիրված Կուրկուասի՝ այդ քաջ զորավարի կյանքին և սխրագործություններին, որը քսաներկու տարի շարունակ սահմանների պահապանն է եղել և իր կյանքն է վտանգել կայսրության փառքի ու պատվի համար տարվող անվերջանալի պատերազմներում: Դժբախտաբար աշխատությունը չի պահպանվել և մենք անտեղյակ ենք Կուրկուասի գործունեության մանրամասներին, իսկ այն պատմիչները, որոնք ծանոթ են եղել այդ աշխատությանը, բավարարվում են մեզ խորհուրդ տալով կարդալ Մանուելի երկը: Սակայն դա չի կարող պատճառ հանդիսանալ Կուրկուասի՝ իր հայրենիքին մատուցած ծառայություններն անտեսելու համար:

Կ. Սաքասը ցանկանում է նաև օգուտ քաղել Կուրկուասի փայլուն քաջագործությունների վերաբերյալ նրա հայրենակից հայ պատմիչներին վերագրվող անտեղյակությունից:

Դա սխալ է: Պատմիչ Ստեփանոս Ասողիկը արձանագրել է Կուրկուասի սխրանքները և նրան համարում է ապագա կայսեր պապը:

Ի միջի այլոց Ռոմանոս Լեկապենոսը հույն չէր, ինչպես կարծում է Սաքասը, պաշտպանելով նրան Կոստանդին Ծիրանածնից: Նա հայ էր, ինչպես և Կոստանդին Ծիրանածինը և սերում էր այն հայ զինվորից, որը մի ճակատամարտում փրկել էր Վասիլ I կայսեր կյանքը: Այդ զինվորի անունն Թեոփիլակտոս Աբաստակտոս էր (Θεοφύλακτος ὁ 'Αβαστακ(τ)ος)[1], և նա նշանավոր էր դարձել իր որդու՝ Ռոմանոս Լեկապենոսի շնորհիվ: Ուստի և ազգայնամոլական տեսակետը կորցնում է իր ուժը, մի տեսակետ, որ հույն գիտնականը սիրում է առաջ քաշել ամեն հարմար առիթով, իր սեփական կարծիքը վերագրելով անցյալի մարդկանց, որոնք, անկասկած, զուրկ էին իր նեղ ազգայնամոլությունից:

Եթե անգամ ընդունենք, որ Կոստանդին Ծիրանածինը կողմնապահ է

[1] Georg. Mon., p. 841; Sym. Mag., p. 690.



եղել, ապա այդ կողմնապահությունը բոլորովին չի դիպչում հույներին, համենայն դեպս այն դեպքում, որը հուզում է Սաքասին: Կուրկուասը, Փոկասը, Լեկապենոսը բոլորն էլ հզոր հայ իշխաններ էին, հետևաբար, ինչպիսին էլ լինի Կոստանդնի կարծիքը նրանց մրցակցության մասին, այդ դեպքում անհաղորդ են մնում հույն ազգի շահերը, որ պաշտպանում է Սաքասը:

Կասկածից վեր է, որ ոչ մի պատճառ չկա Պանթերիոսի նման շարքային մի զորավարի համեմատելու առաջին մեծության պատմական աստղերի հետ, որոնք իրոք արժանի են հերոսական վեպերում տեղ գրավելու: Պանթերիոսը չի կարող Դիգենիս լինել:

Այնուամենայնիվ նրան այդպիսի բարձր հավակնություն ապահովելու համար Սաքասը մտադրվել է նույնացնել նրան ոմն Պորփյուրի հետ, որի անունը պահպանվել է ժողովրդական մի երգում: Նա կարծում է, որ այդ Պորփյուրը Անդրոնիկոսի որդին է, որի մասին հյուսվել է մեկ այլ ժողովրդական երգ և կարծում, որ երկուսն էլ տարբեր անունների ներքո նույն Պանթերիոսին են ներկայացնում:

Սակայն այդ երգերին իրազեկ մարդը կխոստովանի, որ դրանց միջև ոչ մի ընդհանուր բան չկա: Պորփյուրը մի հերոս է, որը ցանկանում է ամուսնանալ կայսեր դստեր հետ, մինչդեռ Անդրոնիկոսի որդին ծնվել է արաբների ճամբարում մի մորից, որին հղի վիճակում առևանգել էին: Հետագայում նա արշավում է իր հոր դեմ, և ճանաչվում նրա կողմից: Այս երկու երգերը համընկնում են միայն մի կետում: Դա հետևյալ նախադասությունն է. «Անդրոնիկոսի որդին չէր վախենում ո՛չ Պետրոս Փոկասից, ո՛չ Նիկեփորոսից, ո՛չ էլ Պետրոտրախիլոսից»: Նույնը կրկնում է Պորփյուրիսը. «ես չեմ վախենում ո՛չ Վարնասից (Վարդաս), ո՛չ Նիկեփորոսից, ո՛չ էլ Վարիտրախիլոսից». Οὐδὲ τὸν Βάρναν φοβοῦμαι οὐδὲ τὸν Νικήφορον οὐδὲ τὸν Βαρυτράχηλον.

Բոլոր այս անձինք հայկական ծագում ունեն. Նիկեփորոս II կայսրը, նրա զարմիկ Վարդաս Փոկասը. իսկ Վարիտրախելոս անվան ներքո նկատի ունեն, հավանաբար, Վարդաս Սկլերոսին, որին այդպես էին կոչում նրա մարմնի գիրության պատճառով: Անդրոնիկոսի որդին Կոստանդինն էր, հայտնի մի անձնավորություն, որը 913 թ. զոհ է գնացել իր քաղաքական հավակնություններին: Չի կարելի նրան համեմատել Պանթերիոսի հետ, ինչպես նաև չի կարելի Պանթերիոսին վերագրել Կոստանդնուպոլսի դեմ Պորփյուրի առասպելական արշավանքը, ինչպես դա անում է Սաքասը:

Ֆիրդուսու «Շահնամե» պարսկական էպոսի մեջ Խոսրով I Նուշիրվանի (531-579) թագավորության ժամանակ իբրև հռոմեական բանակի զորավար հիշատակված է մի հերոս, մի փահլևան Ֆարֆուրիոս անունով: Սաքասի համար այստեղ խոսքը ժողովրդական երգի հերոս Պորփյուրի մասին է,

որին նա առանց որևէ փաստարկման նույնացրել է պատմական Պանթերիոսի հետ:

Հարկավոր է խոստովանել, որ Դիգենիսին նույնացնելու համար հույն գիտնականի՝ որևէ նշանավոր հունական անուն գտնելու որոնումները, ոչ մի արդյունքի չեն հանգեցրել: Միակ անունը, որի վրա նա կանգ է առել, չափազանց աննշան է թվում Դիգենիսի պես էպիկական հերոսի փառքի նկատմամբ հավակնություն ունենալու համար:

V

Բյուզանդիայում, կայսերական պալատում, թե ռազմի դաշտում, գործունյա մարդիկ հիմնականում կամ հայեր էին, կամ հայկական ծագում ունեցողները: Դիգենիսը նախ և առաջ ակրիտաս էր, այսինքն՝ սահմանապահ: Արևելյան սահմանների պահպանությունը, ուր Դիգենիսը պետք է գործած և իր անունը հռչակած լիներ, վստահված էր հայ ավատատերերին: Հետևաբար, այդ միջավայրում պետք է փնտրել առասպելական Դիգենիսի պատմական նախատիպը: Սակայն ահա թե ինչ է մտածում Սաթասն ակրիտասների ծագման մասին. «Արաբների դեմ վարած իր պատերազմների ժամանակ Հերակլիոս կայսրը փոփոխություններ մտցրեց ակրիտասների գնդի մեջ, բայց այնտեղ, դժբախտաբար, սողոսկեցին բազմաթիվ *վարձկան ուրացողներ*: Հերակլիոսի հաջորդները, հիմնականում Մակեդոնական հարստությանը պատկանող կայսրերը, սահմանների պահպանությունը վստահեցին հայերին, որոնք, սակայն, իրենց նկատմամբ ցուցաբերած վստահությունը չարդարացրեցին: Այդ *վարձկանները* Բյուզանդիայի նկատմամբ չհաստատված *հին քեն* ունեին, որը հաճախ վտանգավոր կերպով բոցավառվում էր և մենք բազմիցս տեսնում ենք նրանց դաշնակցած հակառակորդներին, որոնց դեմ վարձկանները պետք է որ հակադրեին անառիկ մի պատնեշ»[1]:

Սա անարդարացի և թյուր կարծիք է, ուր զուտ անձնական զգացմունքները գերակշռում են ողջախոհության վրա: Անտեսել հայերի վճռական դերը Բյուզանդիայի պատմության մեջ և Հայաստանի դերը Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության հարաբերություններում, նշանակում է չճանաչել Բյուզանդիան: Դիգենիսն ամենից առաջ ակրիտաս է, կամ, ըստ հին արտահայտության, miles limitaneus: Ըստ Սաթասի milites limitanei՝ սահմանապահ գնդերը հայերից չէին կազմված: Հուստինիանոս I-ը իբր լուծարել էր հռոմեական այդ հին հաստատությունը, այդ նվիրված զինվոր-

[1] **E.Legrand, C.Sathas**, Les exploits de Digénis Akritas d'après le manuscrit unique de Trebizonde, Paris, 1875, p. CL.



ներից խլել ավատները և նրանց մայրաքաղաք տարել սխոլերի գունդը կազմավորելու համար:

Սակայն մենք գիտենք (և հենց Հուստինիանոսի պատմիչ Պրոկոպիոսից), որ սխոլերի գունդը կազմված էր երեք հազար ընտրյալ հայերից: Եթե նրանք նախկին ակրիտասներ էին, ապա պետք չէ բողոքել կամ էլ տխրել այն բանի համար, որ Հուստինիանոսը հեռացրել էր նախկին ակրիտասներին: Դրանք էլ էին հայեր: Ինչ վերաբերում է այն տեղեկությանը, թե Հերակլիոսն իբր փոխել էր ակրիտասների գնդի կառուցվածքը, և թույլ էր տվել այնտեղ սողոսկելու վարձկան ուրացողների, ապա դա միանգամայն անհիմն է, միանգամայն անիմաստ, եթե դա սոսկ ակնարկ չէ՝ Արմենիակների բանակաթեմի հիմնադրման վերաբերյալ: Բայց այդ դեպքում անհեթեթություն է նրանց վարձկան ուրացողներ որակելը, քանի որ Արմենիակների բանակաթեմ կոչվող զինվորական ստորաբաժանումը կազմված էր հայ զինվորներից և որը միշտ գտնվում էր հայ զորավարների հրամանատարության ներքո:

Սաթասը ցանկանում է մեզ համոզել, որ Դիգենիսն իր անձնական քաջության շնորհիվ վերականգնել է այդ կարծեցյալ ազգային հիմնարկությունը: Իբր նա իրեն է ենթարկել Եփրատից այն կողմ ապրող ապելատներին:

Իրականում Դիգենիսի հակառակորդները կայսրության թշնամիները չէին: Ակիլասը, Ֆիլոպապոսը, Կիննամոսը, Իոաննիկիոսը, Լեանդրոսը և այլք, որոնց դեմ պայքարում էր Դիգենիսը, նույն միջավայրին էին պատկանում, որից սերել էր ինքը՝ հերոսը: Այդ մարդիկ քաղաքականության մասին չէին էլ մտածում: Դրանք ապելատներ էին, այսինքն՝ արոտավայրեր հափշտակողներ կամ ձիագողեր՝ ἀπελάτης κυρίως λέγεται ὅστις θρέμματα ἀπὸ βοσκῆς ἢ βουκολίων ὑποσύρει, ἢ ἀπὸ τῶν ἀγελῶν ἵππους [«ապելատես՝ սովորաբար ասվում է մեկի մասին, ով անասուն է գողանում արոտավայրից կամ գոմից, և կամ ձիեր՝ երամակներից»][1]: Դրանք քաջ մարդիկ էին, որ տարված էին սխրանքներով ու արկածներով:

«Դիգենիս Ակրիտասը» որպես ժողովրդական դյուցազներգություն հենվում է պատմական մի հենքի վրա, որը հունական չէ, ինչպես մեծամտաբար կարծում է Սաթասը, այլ հայ-բյուզանդական: Չնայած այն փաստին, որ Բյուզանդիայի պաշտոնական լեզուն հունարենն էր, այն ամենևին էլ հույների կայսրություն չէր: Մեր պոեմի հերոսը, ինչպես իր ծնունդով, այնպես էլ գործունեության բնակատեղով պատկանում է հայկական միջավայրին: Նրա հայրը Կարռեսի եղբայր Խրիսոխերպոսն էր, մայրը՝ Մելիտենեի ամի-

[1] De cerim., II, 820.

րայի դուստր Սպաքիան: Խրիսոխերպոսը և Կարբեսը հայ պավլիկյանների հռչակավոր առաջնորդներն էին, իսկ Մելիտենեի ամիրան՝ Օմար-իբն-Օբեյդալլահը՝ Ալ-Ակտա մականունով, պատմական անձնավորություն է: Պավլիկյանների առաջնորդի ամուսնությունն ամիրայի դստեր հետ արտացոլում է այն փաստը, որ նա փախչելով բյուզանդացիներից ապաստանել է Մելիտենեում և հանձին ամիրայի դաշնակից գտել ընդդեմ բյուզանդացիների:

Մեր հերոսի հայրը նույնպես «դիգենիս» էր, քանի որ ծնվել էր քրիստոնյա հորից և մահմեդական մորից, ինչպես և նրա որդին՝ պոեմի հերոսը, որի հայրը մահմեդական էր, իսկ մայրը քրիստոնյա՝ բյուզանդացի իշխանի գերեվարված դուստրը: Այդ իշխանը, որի պապը հռչակավոր Մուսելեն էր, համապատասխանաբար պատկանում էր հայկական մի տոհմի՝ Մամիկոնյանների հռչակավոր ընտանիքին: Դիգենիս Ակրիտասը մայրական գծով Մամիկոնյանների քաջ տոհմի զարմից էր: Նրա հորական կողմի պապը հայ պավլիկյանների առաջնորդն էր, այսինքն՝ նույնպես հայ: Բացի դրանից, Դիգենիսի ավազանի անունը Վասիլ էր: Ինչու՞: Ո՞րն է այս ընտրության իմաստը:

Մահմեդականների հետ շփոթած պավլիկյանների դեմ կայսրության վարած պայքարի պատմական վերապրուկները Դիգենիսի առասպելի հենքն են կազմում: Հերոսի ծագումը դրա լավագույն ապացույցն է: Այսուհետ Դիգենիսի ավազանի անունը բացատրելու համար բնական է հիշել Մակեդոնացի կոչեցյալ Վասիլին: Վասիլն էր, որ հնազանդեցրեց պավլիկյաններին, սպանեց նրանց առաջնորդ Խրիսոխեյրոսին և ոչնչացրեց աղանդավորների վտանգավոր իշխանությունը: Պետք է որ նա մեծ հեղինակություն վայելող անուններից լիներ, եթե այն կարող էր տրվել պոեմի մի հերոսի, որն այդքան հարազատ էր աղանդավորներին[1]:

Մեզ հասած տեսքով պոեմն ունի որոշ հանգամանքներ, որոնք օտար են թվում բուն առասպելին:

Վասիլ-Դիգենիսը, հետևելով իր հոր օրինակին, սիրահարվում է սահմանապահ մի հռոմայեցի զորավարի դստերը և ամուսնանում նրա հետ: Վերջինիս անունն էր Եվդոկիա: Զորավարը՝ Եվդոկիայի հայրը, Դուկասն էր:

Հայտնի է, որ Կոստանդին X Դուկաս կայսրը (1059-1067) ամուսնացած էր Եվդոկիայի հետ, որը Կոստանդնի մահվանից հետո ամուսնացել էր Ռոմանոս IV Դիոգենեսի հետ, որը 1071 թ. Հայաստանի Մանազկերտ քաղաքի մոտակայքում գերեվարվել էր սելջուկներից: Կասկած չկա, որ պոեմում պատկերված են հենց նրանք, որպես Դիգենիսի աներ և կին:

[1] Հույն բանաստեղծը Դիգենիսին համեմատում է սուրբգրական Սամսոնի հետ: Հետաքրքիր է, որ Վասիլը ներկայացված է որպես ἀνδρίαν ἔχων οἷον ὁ πάλαι Σαμψών [«քաջ էր իբրև հնում՝ Սամսոնը»] (Theoph. Cont., V, 15, p. 234):



Կոստանդին Դապոնտեսի (1714-1784) [գրի առած] տարբերակում Անդրոնիկոսի կինն Աննան է, իսկ դուստրը Իրենեն: Եվ իսկապես Դուկասի դստեր անունն Իրենե էր և նա եղել է Ալեքսիոս I Կոմնենոսի (1081-1118) կինը և Աննա Կոմնենայի մայրը:

Սրանք լրացումներ են, որոնք պետք է վերագրել պոեմի հեղինակին՝ [Կոստանդին Դապոնտեսին], և ոչ նախնական առասպելին, որի հիման վրա մշակվել է ներկայիս պոեմը: Իրականում պոեմի հերոս Դիգենիսը ոչ մի կապ չէր կարող ունենալ ո՛չ Եվդոկիայի, ո՛չ Դիոգենեսի և ոչ էլ Կոստանդին Դուկասի հետ, քանի որ այս բոլոր անձինք ապրել են XI դարում, մինչդեռ մեր հերոսի ծնողներն ապրել են IX դարի վերջում, X դարի սկզբում:

Այս ժամանակավրիպությունը պատահական չէ: Այն բացահայտում է մի միտում, որը հատկապես գալիս է հույն բանաստեղծից, որին գայթակղում է Դիգենիսին Դիոգենեսի հետ նույնացնելու հնարավորությունը և որն այդ նպատակով Դիգենիսին տեղափոխել է XI դար:

Պոեմը հունական չէ այն աշխարհագրական միջավայրով, ուր ծնվել են հերոսները և ուր ծավալվում են նրանց սխրագործությունները: Նրանց գործունեության տարածքը Եփրատի հովիտն է, պավլիկյանների ազդեցության և տիրապետության սահմաններում: Այն տարածվում է Խարսիանոնից մինչև Սամոսատ, ընդգրկելով Տեվրիկե, Ակին, Դարանդա, Մելիտենե, Մայաֆարկին (հին Մարտիրուպոլիս) հայկական քաղաքները և նույնիսկ Եդեսիան: Երկրի այդ տարածքը հիմնականում հայերով էր բնակեցված և IX-XII դարերում գերազանցապես պատկանում էր հայ ավատատերերին: Հենց այդ միջավայրում է, որ ձևավորվել է Դիգենիս Ակրիտասի մասին ժողովրդական վեպը: Ավելի ուշ այն մշակել է մի անհայտ հույն բանաստեղծ և մեզ հասցրել իր ներկա տեսքով:

Առասպելի քողի տակ դժվար է կռահել [վեպի] նախնական ձևը: Բազմաթիվ դրվագներ, որոնց մենք հանդիպում ենք պոեմում, շատ հանգամանքներ, անկասկած, նախնական տարբերակում չեն եղել: Եփրատի ափերից առասպելը տեղափոխվել է կայսրության այլ շրջաններ, փոխելով երանգավորումը և փոփոխվելով ժամանակի ու տեղի պայմանների ազդեցության ներքո:

Կոստանդին Դապոնտեսը (հետագայում վանական կարգ է ընդունել Կեսարիոս անունով), իր տրամադրության ներքո է ունեցել Դիգենիսի մասին արձակ մի քերթված, ինչպես նա հայտնում է իր Βίβλος βασιλέων՝ «Թագավորությունների գիրք», աշխատության մեջ: Մենք այն գտնում ենք Սպիրիդոն Լամբրոսի՝ 1880 թ. հրատարակած *«Հունական սիրավեպերի ժողովածու»*-ի մեջ, որը [հետագայում] արտատպվել է՝ «Դիգենիս Ակրիտաս»-ի Գրոտտա-Ֆերրատայի իր տարբերակի հրատարակության մեջ: Ըստ այդ

արձակ քերթվածի, Դիգենիսը Ռոմանոս կայսեր ժամանակ ապրող հռչակավոր մի դյուցազուն էր: «Նրա հայրը Եգիպտոսի սուլթանն էր: Նրա մայրը քրիստոնյա էր և Տիրոջ աղախինը». Σουλτᾶνος ὁ πατέρας τοῦ ἦτον τοῦ Μισιρίου, χριστιανὴ ἡ μάννα τοῦ καὶ δούλη τοῦ Κυρίου:

Դիգենիսի պապը Կապադովկիայում իշխող Կիննամոսների ընտանիքից էր: Նա քրիստոնյա էր, կոչվում էր Անդրոնիկոս, կինը՝ Աննա Դուկիսան, պատկանում էր Կոստանդնի ազնվական ընտանիքին: Նրանք հինգ ուստր և մեկ դուստր ունեին: Ասպազուշակները և իմաստունները գուշակել էին, որ նրանց դստերը Եգիպտոսի ամիրան է առևանգելու, վերջինս կրոնափոխ է լինելու և քրիստոնեություն ընդունելու: Դստեր անունն էր Իրենե: Նա դարձավ Վասիլ Դիգենիսի մայրը: Այս տարբերակի առանձնահատկությունն այն է, որ Դիգենիսի հայրը Եգիպտոսի ամիրան է և դա արժանի է հիշատակության: Մենք դրան դեռ կանդրադառնանք:

Դիգենիսի մասին մի երգ կա՝ ᾎσμα Διγενῆ, ուր հերոսն ընկերներին հայտնում է, որ իր մահը մոտենում է. «ապրել եմ 300 տարի,- ասում է նա,- այժմ պետք է մեռնեմ, քանզի Ալամանի լեռներում շատ մարդ եմ սպանել, իսկ *Արապիի* դաշտում սպանել եմ մի նվիրական եղջերու, որի եղջյուրին խաչ կար, գլխին՝ աստղ, իսկ թիակներին՝ պանակե»:

Ալամանի լեռները և *Արապիի* դաշտը նշանակում են Հայաստան և Արաբիա (այսինքն՝ Միջագետքի հյուսիսային մասը, որը հայերին և պարսիկներին հայտնի էր Արապստան կամ Արվաստան անվան ներքո,ասորիներին՝ իբրև Արաբիայե): Նույն երգի մեկ այլ տարբերակում Ալամանը աղավաղված է *αἱ Μαρίνα* ձևով:

Նվիրական եղջերուն մեզ տանում է դեպի Փոքր Հայքի Սեբաստիա քաղաքը: Ժամանակին այդ շրջանում եղջերուի պաշտամունք է եղել, որի մասին իրավացիորեն կռահել է գերմանացի գիտնական Ա. Գուտշմիդտը՝ այդ հին հավատի վերապրուկները հայտնաբերելով Ս. Աթանագինեսի վարքում, այն սրբի, որի մասունքները Ս. Գրիգոր Լուսավորիչն իր հետ Հայաստան էր բերել: Հնարավոր է, որ Դիոգենեսի կամ Աթանագինեսի հետ կապված էր ինչ-որ հին պաշտամունք, և հնարավոր է, որ դա է նպաստել այդ անվան՝ Դիգենիս ժողովրդական ձևով պահպանմանը հերոսական դյուցազներգության մեջ: Այդ անվան «երկածին» իմաստով մեկնաբանությունը ժողովրդական ստուգաբանության արգասիք է և արժեք չունի:

Ինչպիսին էլ լինի Դիգենիս անվան ծագումը, այնուամենայնիվ, այն տեղական ծագում ունի, այսպես ասած միկրո-հայկական, ինչպես և այն կրող հերոսը, որը կայսրության հայկական սահմաններում կյանքի կոչված պատմական վերհուշի արգասիք է:

Վասիլ անունը, ինչպես մենք արդեն առիթ ունեցանք ասելու, նշան է



հերոսի և Մակեդոնական հարստության հռչակավոր հիմնադրի միջև առկա ինչ-որ ազգակցական կապի: Վասիլից հետո Կուրկուասների, Փոկասների հայկական ընտանիքներին պատկանող մի շարք քաջարի զինվորականներ փառք բերեցին կայսրությանը, տերության արևելյան սահմաններում պայքարելով արաբների դեմ: Այսպիսով, բոլորովին զարմանալի չէ, որ նրանց անունները փառաբանված են հերոսական վեպում: Եվ իսկապես, Դիգենիսի ապելատներից մեկը՝ Իռաննիկիոսը, արդյոք նշանավոր Հովհաննես Կուրկուասի, և կամ ապելատ Մելեմենծիսը (հայ. «Մլեհ Մեծ», ժող. «Մենձ») - Մելիասի՝ Լիկանդոսի հայտնի տիրոջ արտահայտումը չէ՞:

Հետևաբար, բավականաչափ պարզ է, որ պոեմի հերոսը հայկական ծագում ունի և նրա քաջագործությունների բեմահարթակը հայոց երկիրն է: Պետք է շատ թյուր գիտելիքներ ունենալ Բյուզանդիայի պատմության վերաբերյալ, որպեսզի հավակնոտությամբ հայտարարել, թե այն ամենը, ինչ գրվել կամ պահպանվել են բյուզանդական միջավայրում հունարեն լեզվով, պետք է անվերապահորեն վերագրվեն հույն ժողովրդին:

Մենք պնդում ենք, որ Դիգենիս Ակրիտասը կարող էր հայկական ավատական միջավայրի արգասիք լինել: Դիգենիսի մասին առասպելն իր նախնական վիճակում, հույն բանաստեղծի կողմից մշակվելուց առաջ, կարող էր ծագել հայկական իրականության մեջ: Դրա վճռական ապացույցն այն է, որ հայերեն լեզվով կա հերոսական մի դյուցազներգություն, որը շատ հնուց է գալիս, չնայած որ այն մեզ է հասել բանավոր ձևով: Թե՛ բովանդակության, թե՛ հանգամանքների առումով այն Դիգենիսի պոեմի հետ մի ընդհանուր կապ է երևան հանում:

## VI

1874 թ. «Դիգենիս Ակրիտաս»-ի հետ միաժամանակ Կոստանդնուպոլսում լույս տեսավ ժողովրդական մի դյուցազնավեպ, խորագրված «Սասունցի Դավիթ» կամ «Դավիթ և Մհեր»: Աշխատասիրողն էր ճանաչված հայ բանահավաք հայր Գարեգին Սրվանձտյանցը, որն այն գրի էր առել 1873 թ. Մշո Առնիստ գյուղի մի հայ շինականի պատմածից (8):

Կրպոն (Կարապետ), այդ էր շինականի անունը, ասում էր, որ իր պատմածը դյուցազնավեպի սոսկ հատված է. ամբողջական և ծավալուն տարբերակը գիտեր իր ուսուցիչը, և որն այն պատմում էր մեծ վարպետությամբ, և մեջընդմեջ երգում այն ամենը, ինչ ստեղծված էր չափածո:

Ավելի ուշ Էջմիածնի ճեմարանի պրոֆեսոր Մանուկ Աբեղյանը Վանից գաղթած մի գյուղացու պատմածի հիման վրա հրատարակեց դյուցազնավեպի մեկ այլ տարբերակ: Սրան հետևեցին երրորդն ու չորրորդը, որոնք միասին հրատարակվեցին 1891 թ. հայր Գարեգինի (Հովսեփյանի), այժմ՝

Նոր Նախիջևանի Հայոց թեմի առաջնորդի կողմից: Ավելի ուշ «Հայկական ազգագրական հանդեսի» խմբագիր Ե. Լալայանը, ինչպես նաև վանեցի մի մտավորական՝ Տ. Չիթունին, գրանցել են այդ դյուցազնավեպի բազմաթիվ տարբերակներ: Այժմ այդ դյուցազնավեպի շուրջ 15 տարբերակ կա, որոնց համեմատական ուսումնասիրությունը դեռևս սկսված չէ (9): Սակայն, տվյալ դեպքում, դա նշանակություն չունի, քանի որ մեր նպատակը դյուցազնավեպի առարկայի և բովանդակության վերաբերյալ ընդհանուր գաղափար կազմելն է: Ասենք, որ այդ տարբերակները հիմնական գծերով համընկնում են, տարբերությունները գլխավորապես առկա են մանրամասներում: Մենք օգտագործում ենք առաջին տարբերակը:

Բաղդադի խալիֆան Հայաստանի Մշո շրջանում կատարած ասպատակության ժամանակ առևանգում է մի շատ գեղեցիկ աղջկա, որին կնության է առնում: Այդ ամուսնությունից ծնվում են երկու ուստր՝ Աբամելիքն ու Սանասարը:

Հունական պոեմում Ասորիքի ամիրան է, որ արշավում է Բյուզանդիայի վրա, իսկ այստեղ ինքը Բաղդադի տիրակալն է: Բայց քերթվածի ամիրան, լինելով խալիֆայի ստորադրյալը, թշնամու երկիրն ասպատակելուց հետո գնում է Բաղդադ (Παγδάδιν) իր ավարից խալիֆային բաժին հանելու:

«Սասունցի Դավիթը», իր ներկա տեսքով, կրում է աստվածաշնչական մի զրույցի, այն է՝ Սենեքերիմ թագավորի և նրա որդիների մասին, բացահայտ ազդեցությունը: Դրանով շարադրանքը շեղվել է գլխավոր ասքից, և այդ պատճառով բարդացել է:

Խալիֆան կրկին ասպատակում է Հայաստանը, բայց այս անգամ պարտություն է կրում և խոստանում ողջ ու առողջ փրկվելու դեպքում զոհաբերել իր որդիներին: Մայրը, որը երազում նախազգուշացվել է իր որդիներին սպառնացող վտանգի մասին, նրանց խորհուրդ է տալիս փախչել:

Աբամելիքն ու Սանասարը ճանապարհ են ընկնում դեպի Հայաստան, հասնում Տավրոսի շրջանը և այնտեղ, մի գետակի ափին ամրոց են կառուցում, որն անվանում են Սասուն: Եղբայրներն ապրում են այնտեղ զբաղվելով որսորդությամբ:

Նրանցից մեկը՝ Սանասարը, հետագայում գնում է Բաղդադ ծնողների մոտ: Կրոնական հողի վրա հոր հետ վիճելով, նա սպանում է նրան և զավթում գահը: Մյուս եղբայրը՝ Աբամելիքը, շուտով զավթում է Մսրի՝ այսինքն Եգիպտոսի, գահը: Սակայն նա այնտեղ երկար չի մնում: Նա գահը զիջում է Եգիպտոսի թագավորի կնոջից ծնված իր ապօրինի զավակ Մսրա Մելիքին և վերադառնում Սասուն:

Այս շեղումից հետո պատմությունն ընթանում է իր ուղիղ հունով:

Աբամելիքն ամուսնանում է Կապուտկողի թագավորի դստեր հետ:



Հարսնացուն գալիս է Սասուն իր քեռի Թորոսի ուղեկցությամբ: Այդ ամուսնությունից ծնվում են հինգ որդի, որոնցից կրտսերը Դավիթն էր՝ դյուցազնավեպի հերոսը: Որքան Դավթի հայրը՝ Աբամելիքը, հիշեցնում է Ասորիքի ամիրային՝ Դիգենիսի հորը, նույնքան էլ Դավիթն ու հունական պոեմի Դիգենիս Ակրիտասը լիարժեք կերպով համապատասխանում են միմյանց իրենց ծագման պայմանների նմանությամբ. Աբամելիքը ծնվել է մահմեդական հորից ու քրիստոնյա մորից, իսկ սիրիական ամիրան՝ քրիստոնյաադանդավոր հորից և մահմեդական մորից:

Դիգենիսի հայրը Բաղդադի խալիֆային ենթակա Ասորիքի ամիրան էր. վերոբերյալ տարբերակում նա հայտնի է որպես Մսրի կամ Եգիպտոսի սուլթանի որդի: Հին Կտակարանի մի դիպվածի ազդեցությամբ այդ երկակիությունը հայկական դյուցազնավեպի մեջ ուրիշ հնչեղություն է ստացել. Դավիթը Մսրի սուլթանի որդին էր, իսկ նրա հորեղբայրը Բաղդադի գահի վրա էր նստած: Ասորիքի ամիրան դաստիարակվել էր իր քեռու մոտ. նա ուներ նաև հորեղբայր՝ Կարոեսը:

Սասունցի Դավթին հոր մահից հետո տանում են իր կաքնեղբոր՝ Մսրի, այսինքն Եգիպտոսի, սուլթանի մոտ, այնտեղ դաստիարակելու համար:

Հետաքրքրությունից զուրկ չէ այն փաստը, որ չորրորդ գրքում Դիգենիսի քեռուն անվանում են Մուսուր, ծագումով Տարսոնցի, մինչդեռ վերջին գրքում Մուսուրն արդեն Դիգենիսի հայրն է: Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ Դիգենիսի դեպքում Մսր-Եգիպտոսը շփոթել են Մուսուրի հետ. հավանաբար, ուզեցել են ասել, որ Դիգենիսը Մսրի սուլթանի որդին է, ինչպես և ներկայացված է Կոստանդին Դապոնտեսի տարբերակում:

Դավիթը, ինչպես և Դիգենիսը, քեռի ունի՝ Թորոս (Թեոդորոս) անունով, որը նրա կյանքում վճռական դեր է խաղում: Նա է Եգիպտոսի սուլթանից պահանջում իր զարմիկներին՝ Դավթին ու նրա եղբայրներին, և հաստատում իրենց հայրենիքում՝ Սասունում:

Դավիթը Սասունում ամրոց ուներ, ինչպես Դիգենիսը Եփրատի ափին: Նրանց սիրելի զենքերն էին գուրզը[1] կամ կոպալը Դավթի համար, ῥάβδιν-ը՝ Դիգենիսի:

Երկուսն էլ ահարկու ուժի տեր էին: Դավիթը, տակավին պատանի, մատով քարին դիպչելիս կայծ էր թռցնում, իր գուրզի մեկ հարվածով 40 հորթ էր սպանում: Սկզբում նա գյուղի նախրապանն էր: Մի օր քառասուն

[1] Գուրզ բառն առաջացել է հին *վարզ* բառից, որն իրանական ծագում ունի: Ինձ թվում է, որ այն Բյուզանդիա է տարվել իր *վարդուկ*՝ βαρδούκιον փաղաքշական ձևով. Կոստանդին Ծիրանածինը իր հեղինակած Վասիլի կենսագրության մեջ (**Theoph. Cont.**, p. 232) [պարզաբանում է]. τὸ ῥόπαλον τὸ βασιλικὸν ... ὃ βαρδούκιον οἶδε καλεῖν συνήθεια [«թագավորական գուրզը ... սովորաբար կոչվում է *բարդուկիոն*»]:

հրեշ հարձակվում են իր նախրի վրա: Դավիթը ոչնչացնում է դրանց, ավերում նրանց անձավը, ուր բազում գանձեր է հայտնաբերում, այդ թվում նաև հրաշալի մի նժույգ: Այդ պահից Դավիթը հովվականից անցնում է որսորդական կյանքի, մի բազեի իր նժույգին ընկերակից դարձնելով: Դիգենիսը տասներկու տարեկան հասակից ի վեր նույնպես սիրել է որսորդությունը և իր քեռու հետ որս անելիս սպանել արջ, եղջերու և առյուծ:

Մի օր Դավիթը ոտնատակ է անում մի գյուղացու արտը: Վերջինս նրան կշտամբում է, թե ինձ՝ խեղճ ծերունուս վնաս հասցնելու փոխարեն, ավելի լավ կաներ, եթե մտածեր իր կալվածքի մասին, որը Մսրա Մելիքն էր տնօրինում: Դավիթը Սասունի տեր իր եղբորից խնդրում է հոր գուրզն ու աղեղը և գնում Մսրա Մելիքի վրա: Մենամարտում նա սպանում է Մսրա Մելիքին և տիրանում նրա գահին: Հետաքրքիր է, որ Դավիթն իրեն *Արևպտող* (Արևմուտքի) թագավորի որդի է անվանում:

Ինչպես Դիգենիսն է սիրահարվում բյուզանդացի զորավարի դստերը, այդպես էլ Դավիթը՝ Կաղզմանի ամիրայի դստերը: Օրիորդի անունն էր Խանդութ: Վերջինս սաստիկ հրապուրվում է Դավթով, նրա ահարկու ուժի պատճառով: Նա Դավթի մոտ հատուկ աշուղ է ուղարկում, որպեսզի սա դափի նվագակցությամբ գովերգի իր գեղեցկությունն ու Դավթի սերն արթնացնի իշխանուհու հանդեպ: Դափը հենց այն գործիքն է՝ θαμποῦρα, որը սիրում էր նվագել Դիգենիսը: Աշուղը հասնում է իր նպատակին: Դավիթը սիրահարվում է ու մեկնում գեղեցկուհի Խանդութի մոտ: Նա իշխանուհուն գտնում է շրջապատված այլ սիրահարներով՝ իր ախոյաններով: Սրանք բոլորը փահլևաններ էին, այսինքն՝ դյուցազուններ, հերոսներ, ինչպիսիք էին ապելատները, որոնց հետ մրցակցում էր Դիգենիսը: Մեր հերոսի ախրանքները ընթանում են գեղեցկուհի իշխանուհու շուրջը և նրա պատճառով:

Փահլևան-դյուցազունների թվում էին Գորգիսը, Շեբեկան Խորասանցին, Համզա Լոռեցին: Դրանք իսկական հսկաներ էին: Նրանցից մեկը, օրինակ, այնքան երկար հոնքեր ուներ, որ իջնում էին մինչև կուրծքը, իսկ ծայրերը կապվում էին թիկունքին: Մյուսն այնպիսի շրթունքներ ուներ, որ ստորին շրթունքը կախվում էր մինչև գետին ու ցախավելի պես հավաքում փոշին:

Հրեշը, որ ցանկանում էր գայթակղել Դիգենիսի կնոջը, երբ վերջինս գետակի ափին ոտքերն էր լվանում, բոց էր արտաշնչում, իսկ շարժվելիս այնպիսի աղմուկ էր հանում, որ թվում էր թե որոտ է թնդում:

Դավիթը սպանում է երկու դյուցազուններին և նրանց մարմինները ուղարկում գեղեցիկ իշխանուհու մոտ: Ճանապարհին նրան հանդիպում է ալացող մի հեծյալ, որը պատրաստվում է հարձակվել Դավթի վրա: Դավիթը, երբ հարվածի համար բարձրացնում է ձեռքը, նկատում է աղջկա հյուսքերը:



Համոզվելով, որ հեծյալը աղջիկ է, հենց իշխանուհի Խանդութը, Դավիթը նրան ամուսնանալու առաջարկություն է անում: Աղջկա արկածը կարելի է զուգադրել ամազոնուհի Մաքսիմոյի արկածի հետ՝ Դիգենիսի պոեմում:

Դավիթը որոշ ժամանակ մնում է կնոջ ծնողների մոտ Կաղզմանում, ապա վերադառնում է Սասուն:

Երբ Դավիթն անցնում էր Խլաթ քաղաքի մոտով, բնակիչները հարձակվում են նրա վրա: Դավթի ձին ծառս է լինում և նրան նետում գետը: Գետում նրան խոցում է մի նորաբույս աղջկա արձակած նետը: Աղջիկը Իբրահիմի ու Չիմշիմի դուստրն էր, բայց իրականում նա այդ Չիմշիմից ծնված Դավթի հոր ապօրինի դուստրն էր: Ասել է, նա Դավթի կաթնաքույրն էր: Դավիթը այդ նետի խոցվածքից մեռնում է, բայց մեռնելուց առաջ գոռում է ու նրա կանչին Սասունից վազելով գալիս են նրա եղբայրները՝ Ձենով Օհանը, Քոռ-Գուսանը, Վիգենը, Ծնճղափոքրիկն ու քեռի Թորոսը: Ոճրագործ աղջկան բռնում են, Դավիթը նրան սպանում է ու մի քանի օր անց մահանում: Նրա կինը՝ Խանդութը, լսելով այդ բոթը, իր բարձր ամրոցից իրեն ցած է գցում և զոհվում: Դավթին հաջորդում է իր որդի Մհերը:

Ինչպես կտեսնենք, Դավթի պատմությունը հիմնված է այն իրադարձությունների վրա, որոնք սկիզբ են առնում IX դարի կեսերին: Հետևաբար այն իր ծագումով ժամանակակից է Դիգենիսի պոեմին: Երկու պոեմների բնույթն ու այն միջավայրը, ուր դրանք ձևավորվել են, լավ հասկանալու համար անհրաժեշտ է ծանոթանալ ռոմանտիկ մեկ այլ պատմության, որն անմիջականորեն կապված է մեզ հետաքրքրող հարցի հետ:

## VII

Արաբ հեղինակ Ալ-Վակիդին (748-823) գրել է արաբների կողմից Միջագետքի և Հայաստանի նվաճման պատմությունը: Նրա աշխատությունը չի պահպանվել: Այն ինչ մեզ հասել է Վակիդիի անվան ներքո, առասպելական պատմությունների մի շարք է, որի ակնհայտ նպատակն իսլամի փառաբանումն է[1]:

Այդ ֆանտաստիկ զրույցների պատմական հենքը հարկավ սկիզբ է առնում Վակիդիի իրական երկից: Վիպական տարրը պետք է որ, ինչ-որ չափով, հատուկ լիներ այդ հեղինակին: Վակիդին նկարագրել է Այադի՝ Ղանեմի որդու, արշավանքը, որին Օմարը հանձնարարել էր նվաճել Միջագետքն ու Հայաստանը: Արաբները մուտք գործեցին Հայաստան VII դարի կեսերին և պետք է կռվեին բյուզանդական բանակի դեմ, որի զորավարը

[1] Geschichte der Eroberung von Mesopotamien und Armenien, von Mohammed ben Omar el Wakedi, übers. von Niebuhr, herausgeg. von A.D. Mordtman, 1847.

նախ ինքը կայսրն էր, իսկ այնուհետև՝ Մավրիանոսը[1]: Այս անձնավորությունը Վակիդին հիշատակում է Միրիամ անունով: Մենք առաջարկում ենք այսպես կարդալ այս անունը, որը Նիբուրը կարդացել է Շահրիամ:

Նույն հեղինակին ծանոթ է նաև հայ զորավար Մաանի անունը, որին Հերակլիոս կայսրը արաբների դեմ էր ուղարկել: Խոսքն անկասկած հայ Բաանեսի մասին է, որը, ինչպես վկայում է Թեոփանեսը, Յարմուկի ճակատամարտի ժամանակ բյուզանդական բանակի հրամանատարն էր: Բաանեսը հայկական Վահան անունն է:

Հայ պատմիչ Սեբեոսը մեզ հայտնում է, որ Հայաստանի մայրաքաղաք Դվինի վրա արշավող արաբների ուղեցուցողը էր մի հայ իշխան, Մոկքի տեր Վարդիկը, Ակնիկ մականունով: Կեղծ Վակիդիի մոտ արաբների կողմում էր մի հայ, որի անունն ընթերցվում է Բուզինեկ կամ Վարդաբեկ: Ե՛վ մեկ, և՛ մյուս անունը պետք է մերժել: Ճիշտ ընթերցումը Վարդիկ է, անուն, որն իշխանը կրում է Սեբեոսի մոտ:

Այդ և այլ պատմական անձնավորությունների հիշատակությունը, չհաշված ուրիշները, վկայում է արդեն, որ Կեղծ Վակիդիի պատմածները ամբողջությամբ մտացածին չեն, այլ արտացոլում են, թեկուզ ռոմանտիկ ձևով, մի իրական միջավայր:

Հատուկ ուշադրության է արժանի այն, թե իր պատմածների մեջ Վակիդին ինչ տեղ է հատկացնում հայկական զինված ուժերին: Միջագետքում արաբների ճանապարհին ամենուրեք հայերն էին փակում: Ասորիքի նվաճումից հետո արաբներն անցան Միջագետք, ապա Եփրատի մյուս ափը և հարձակվեցին զինված հայերի վրա, որոնց հետ նրանք հայերեն էին խոսում:

Միջագետքում ամենաազդեցիկ իշխանավորն էր Շահրիամը՝ Ռեսային քաղաքի կառավարիչը: Հայ Վարդիկը նրա զարմիկն էր, որին նա օգնության էր ուղարկել Կիրկեսիոն քաղաքին:

Ռուդեսը Խարան և Ուռհա քաղաքների իշխանն էր: Նա Արջուկ անունով մի որդի ուներ, որի մայրը կոչվում էր Հաղա-տիկին՝ ծագումով Շեմիշատ քաղաքից: Առաջին անունը՝ «Արջուկ», հայկական է, իսկ երկրորդում մենք տեսնում ենք հայկական «տիկին»-ը: Ռուդեսը, անկասկած, ինչ-որ հայկական անվան սխալ ընթերցումն է (հնարավոր է Թորոս): Նրա որդի Արջուկը երեք հազար հեծյալների հրամանատար էր:

Արաբների մոտենալուն պես Շահրիամը օգնության է կանչում մյուս քաղաքների՝ Ամիդի, Աղերդի, Խլաթի, Արճեշի, Խոյի, Սալմաստի, Սանասունի, Մոսուլի իշխաններին և Խակիարի լեռնական առաջնորդներին:

[1] Theoph., 528.



Այդ իշխանները մեծ մասամբ հայեր էին: Խլաթի տիրոջ սխրանքները կազմում են Վակիդիի ամբողջ պատմության առանցքը և, հենց իր վկայությամբ, դրանք միաժամանակ Միջագետքի նվաճման ամենագեղեցիկ դրվագներն են:

Խլաթի իշխան Սերուրուղը (հավանաբար աղավաղված անուն. մի ուրիշ անգամ նույն իշխանն անվանված է Հուստին) օգնության է գալիս Շահրիամին: Նա միայն մեկ դուստր ուներ՝ գեղեցիկ ու քաջ, որի անունն էր Տարուն: Մերդ (հավանաբար Մարութ) լեռան անունը, ուր ապրում էր նա, փոխել դրել էին Տարուն:

Տարունի հոր հպատակների շարքում հատկապես աչքի էր ընկնում Մուշը՝ Սելենտերի (կարդալ Սանասար), Սանասունի իշխանի, որդի: Մուշը, իր հոր ջոկատի գլուխն անցած, նույնպես օգնության է շտապում Շահրիամին: Նա աչքի էր ընկնում արտակարգ գեղեցկությամբ: Տարունը սիրահարվում է նրան:

Սակայն Տարունի քեռորդիներից մեկը նույնպես տարված էր նրանով: Նա Բիթլիսի, Արզնի ու Հիզանի տեր Բուզուրն էր: Հետևելով Մուշի օրինակին՝ նա երեք հազար օժանդակ հեծյալների գլուխն անցած գնում է Շահրիամին օգնության: Նրանք կանգ են առնում Ատտախում: Տարունը ծածուկ կանչել է տալիս Մուշին իր սերը խոստովանելու և փոխադարձ հավատարմության երդում տալու համար: Երբ Բուզուրը իմացավ դա, նա թափանցեց Տարունի ճամբարը և առևանգեց նրան: «Վա՜յ քեզ,- ասաց նա,- հայուհու և հոռոմի խառնուրդ, եթե ինձ ատես և սիրես ուրիշի»:

Մուշի հետապնդումից խուսափելու համար Բուզուրը որոշում է անցնել արաբների կողմը, իր հետ տանել զորքը և այսպես է դիմում նրան. «Շահրիամը, հաստատ, ուժեղ չէ Հերակլիոսից, որին օգնում էին արևելքի բոլոր քրիստոնյաները: Սակայն հայ Մաանի (Բաան) հրամանատարության ներքո ուղարկված բանակը պարտվեց: Ես վստահ եմ, որ Շահրիամը ևս արաբներին դիմադրել չի կարող: Նա արդեն կորցրել է իր տիրույթների զգալի մասը Ուռհայից ու Մարդինից մինչև Կիրկեսիոն: Եթե հաղթողը Շահրիամը լինի, ապա նա մեզ բոլորիս կստրկացնի: Ես սիրում եմ Տարունին ու նրա սիրո համար գերադասում եմ հանձնվել արաբներին»:

Մուշը տեղեկանալով այդ ամենին նետվում է իր երջանկացած հակառակորդի ետևից և կկործաներ նրան, եթե արաբները Բուզուրին օգնության չշտապեին:

Բուզուրը, ինչպես և իր նշանածը, մահմեդականություն է ընդունում, Տարունին կնության առնում և նշանակվում Կուֆրատուտա քաղաքի կառավարիչ: Այսպիսով դավաճանը հեշտացնում է արաբների առաջխաղա-

ցումը և Դարա ու Մծբին քաղաքների անկումը: Վերջինս Տարիատների (Տրդա՞տ) նստավայրն էր:

Տարունը իր հոր Խլաթ քաղաքը արաբներին հանձնելու համար խորամանկության է դիմում: Նա վերադառնում է հոր մոտ, ձևանալով, որ փախել է արաբներից, համոզում է նրան, թե իր կամքին հակառակ է մահմեդականություն ընդունել, զղջում է, որ կրոնափոխ է եղել և ցանկանում է վերադառնալ իր նախնիների հավատքին:

Այդ դավաճանությունը նյութվել էր Բուզուրի մասնակցությամբ: Դյուրահավատ հայրը զոհ է դառնում իր դստեր խարդավանքին: Դուստրը հոր տիրույթները արաբներին հանձնելու մտադրությամբ սպանում է նրան: Դավաճանները դառնում են Խլաթի տիրակալներ:

Եվս մեկ հանգամանք, որն արժե ընդգծել: Խլաթի իշխանը հետևելով իր դստեր խորհրդին որոշել էր ընդդիմակայել արաբներին: Վերջիններս բանագնաց են ուղարկում, նրան առաջարկելու խաղաղ կերպով ենթարկվել արաբներին: Երբ բանագնաց արաբը գալիս է ներկայանալու իշխանին, նախքան նրա մոտ մտնելը, նրանից պահանջում են սուրը վայր դնել: Արաբն ընդդիմանում է, ասելով, որ սուրը Մարգարեին տվել է ինքը Տերը և որ արաբները պարտավոր են այն կրել առանց բաժանվելու դրանից: Իշխանն ընդունում է բանագնացին, սակայն հույս դնելով Խոյի ու Սալմաստի իշխանների, ինչպես նաև վրաց թագավոր Ադրագուսայի՝ Միքայելի որդու, օգնության վրա, հրաժարվում է հանձնվել թշնամուն: Բացի այդ Խլաթի իշխանը դստերը հավատացնում էր, որ ինքն Արճեշի ծովի ափին Բարանիս (կարդալ Բզնունիս) անունով անառիկ մի ամրոց ունի, ուր ինքը կարող էր պատսպարվել արաբներից պարտություն կրելու դեպքում:

Այս միջադեպը հիշեցնում է հայ զորավար Մուշեղ Մամիկոնյանի հետ պատահած միջադեպը: Վերջինս 591 թ. հրաժարվել էր ներկայանալ պարսից Խոսրով II Փարվեզ թագավորին, երբ նրանից պահանջել էին սուրը վայր դնել (10): Նույն բանը պատահել է արաբ բանագնաց Նասրին, որին 859 թ. թույլ չէին տվել ներկայանալ Միքայել III կայսերը, քանի չէր հանել իր սև հագուստը և վայր չէր դրել սուրը:

VIII

Խլաթի իշխանական տան ռոմանտիկ պատմությունը ծավալվում է նույն այն շրջաններում, ուր և Սասունցի Դավիթ հայկական դյուցազնավեպը: Դա Վանա լճից արևմուտք ընկած տարածքն է, ուր գտնվում են Մուշ, Բիթլիս, Խլաթ ու Սասուն քաղաքները: Հերոսուհի՝ Տարունը, կրում է Մշո գավառի հայկական անունը՝ Տարոն: Արաբական զրույցում այդ անվանը տրված ստուգաբանությունը ձգտում է այն մոտեցնել Տավրոս լեռան



անվանը և բացահայտում է հայկական մի աղբյուր: Զրույցում առկա է Սասուն անունն իր հին՝ Սանասուն ձևով, վկայված է Գևորգ Կիպրացու և Թովմա Արծրունու կողմից:

Ինչ վերաբերում է Տարունին, ապա հիշենք, որ Դիգենիսի պոեմում ամիրայի մայրը կրում էր մի անուն, որը նույնպես աշխարհագրական ծագում ունի. Սպաթա պավլիկյանների քաղաքներից մեկի անունն է, որ 871 թ. կործանել էր Վասիլ I կայսրը:

Շատ հնարավոր է, որ այս զրույցի Տարունը վերակերպավորում է Բագարատ իշխանի քրոջ՝ Տարոնի իշխանուհուն, որին կնության էին տվել Մուսային՝ Զորահայի որդուն (հայ հեղինակների մոտ Զորարա, Զուրարիկ ընտանիքից)՝ Բիթլիսի ու Արզնի մահմեդական տիրոջը:

Բագարատի մյուս քույրը դարձել է Վասպուրականի իշխանուհին ու ծնունդ է տվել Աշոտին:

Մոտ 877 թ. Շեյբանյան հարստության Իսայի որդին՝ Ահմեդ իշխանը, որը տիրում էր Դիարբեքիրի շրջանին, արշավել է Բագարատի փեսա, Մուսայի որդու Աբու-Մաղրայի դեմ և նրանից խլել Բիթլիսն ու Արզնը: Նույն բախտին է արժանացել Տարոնին հարող գավառի իշխան Գուրգենը, որը սպանվել է, իսկ նրա տիրույթները խլվել են:

Հայ պատմիչները պնդում են, որ Աբու-Մաղրան ամուսնացած էր Արծրունյաց տոհմին պատկանող մի հայ իշխանուհու հետ և որ նա ծածուկ քրիստոնեություն էր դավանում: Հնարավոր է, որ Վակիդիի պատմության Բուզուրը այս Մաղրայի ռոմանտիկ պատճենը լինի: Կարող ենք նաև հարց տալ. Մաղրան, ինչպես Բուզուրը արդյոք չե՞ն ծագում հայ Բակուրից: Սանասար անունը պարզորոշ ցույց է տալիս, որ արաբական զրույցը հորինվել է մի միջավայրում, որին հարազատ էր Աբամելիքի ու Սանասարի առասպելը, այսինքն՝ Հայաստանում և, հատկապես, Սասունի ու Խութի լեռնային շրջաններում, որոնց բնակիչները նույնիսկ համարվում էին ասորեստանցի եղբայրների հետնորդներ: Կարելի է մտածել, որ Խլաթի իշխանի սպանությունը Սանասանի կողմից Բաղդադի խալիֆայի սպանության արձագանքն է: Իսկ այս մեկն էլ իր հերթին կարծես, ոչ այլ ինչ է, քան աստվածաշնչական դրամայի աղավաղված տարբերակը: Մի խոսքով, արաբական զրույցի կապը Դավթի մասին հայկական վեպի հետ ավելի քան հավանական է թվում:

Դժբախտաբար մենք չենք կարող որոշել թե որքանով է Կեղծ Վակիդին հարազատ մնացել իր բնագրին: Արաբների հետ արյունալի ընդհարումներով լեցուն հայ ավատատերերի բուռն կյանքը միշտ էլ կարող էր պոեմների ու հերոսապատումների մեկից ավելի սյուժե տրամադրել: Սակայն Վակիդիի ստեղծագործությունն այն տեսքով, ինչ մեզ հասել է, կարծես թե ձևա-

վորվել է հատկապես IX դարի իրադարձությունների ազդեցության ներքո, չնայած, որ այն ներառել է ավելի ուշ ժամանակաշրջաններին վերաբերող փաստեր ևս:

IX դարի կեսերին Հայաստանում արաբական տիրապետության դեմ ապստամբություն բռնկվեց: Այն բոցավառվեց Սասունի ու Խութի լեռներում: Բնակիչները հարձակվեցին արաբ կառավարիչ Յուսուֆի վրա և իրենց վրեժն առան, սպանելով նրան իր նենգության համար: Նա խաբեությամբ Խլաթ էր կանչել նրանց իշխան Բագարատին, իբր բանակցություններ վարելու՝ իշխանությունը նրան վստահելու համար, բայց իրականում ձերբակալել էր և ուղարկել Սամառա խալիֆային: Այդ իրադարձությունների ականատես հայ պատմիչը (11) լսել է, որ ապստամբության կազմակերպիչը և արաբ պաշտոնյայի սպանության հեղինակը Հոնան (Հովնան) իշխանն էր՝ ծագումով Խութից, հավանաբար Բագարատի ստորականներից մեկը:

Թվում է, թե նա իշխան Հովնանն է, որ Սասունցի Դավիթ դյուցազնավեպում իր անդրադարձումն է գտել Ձենով մականունով Օհանի կերպարում: Մականունը շատ բնորոշ է նրա պատմական դերի՝ ապստամբություն հրահրողի, համար և այդ դերը նրանն է մնացել ժողովրդական դյուցազնավեպում. նա է, որ գոռում է վտանգի պահին և նրա կանչին շտապում են Սասնա տան զավակները:

Ապստամբությունը ճնշելու համար խալիֆան ուղարկում է իր զորավարներից մեկին՝ մի մեծ զորքի գլուխն անցած թուրք Բուղային: Գործելով Յուսուֆի հետևությամբ Բուղան կարողանում է ամենահայտնի իշխան-իշխանուհիներին ծուղակը գցել և ուղարկել Սամառա:

Առաջին զոհը՝ Տարոնի իշխան Բագարատը, ստիպված ուրանում է իր կրոնը: Նրա քույրը կինն էր Արզնի մահմեդական իշխան Մուսայի, որը զինված ընդհարման մեջ էր մտել իր աներձագ Բագարատի հետ, սակայն ապստամբության ժամանակ նա միացավ հայերին՝ արաբների դեմ նրանց պայքարում: Բուղան նրան ևս ձերբակալում և ուղարկում է խալիֆայի մոտ:

Բագարատի որդիներից մեկի անունը Դավիթ էր. նա ամուսնացած էր Արծրունյաց մի իշխանուհու, Աշոտի դստեր՝ Մարիամի հետ: Որքան էլ գայթակղիչ թվա, այնուհանդերձ, նա չի կարող նույնացվել Դավթի՝ դյուցազնավեպի հերոսի նախատիպին: Այն ամենը, ինչ մենք գիտենք նրա մասին մեզ իրավունք չի տալիս նրան արժանացնելու նման պատվի:

Անվան ընդհանրությունից բացի, կարծես թե այլ ոչինչ չի կապում պատմական Դավթին էպիկականի հետ, եթե իհարկե ինքը՝ էպիկական Դավիթը, հուշված չէր աստվածաշնչական թագավորի կերպարով:

Այնուհանդերձ, կա մի հանգամանք, որը մտորումների առիթ է տալիս: Դավիթ իշխանի ամուսնությունը Արծրունյաց իշխանուհու հետ արդյո՞ք



պատմական հենքը չէ այն ամենի, ինչ մենք գիտենք էպոսից Աքամելիքի՝ Դավթի հոր, վերաբերյալ, որն իբր ամուսնացել էր Կապուտկողի թագավորի դստեր հետ: Կապուտկող է կոչվում այժմ Վանա լճի հարավային մասում գտնվող մի հրվանդան, որը համարյա թե հարում է Արծրունյաց տան տիրույթներին: Կարելի՞ է արդյոք Կապուտկողի թագավորի դստերը դիտել որպես Մարիամի մի աղոտ վերհուշ: Այդ դեպքում Կապուտկողի թագավորը կնույնանա Աշոտ Արծրունու՝ Բագարատ Տարոնացու ժամանակակցի ու դաշնակցի, հետ: Այդ կերպ Դավիթը կդառնա ասորեստանցի եղբայրների հետնորդներից մեկը, քանի որ Արծրունիների տոհմը հավակնում էր այդ ծագմանը:

Դավիթ իշխանի որդին ամուսնացել էր Աշոտ Բագրատունու եղբոր՝ Շապուհի, դստեր հետ: Աշոտի զահանիստ քաղաքը Բագավանն էր, Ախուրյանի ու Արաքսի միախառնման տեղում: Կարելի է ընդունել, որ Կաղզմանի ամիրան Բագավանի տիրոջ խեղաթյուրված անդրադարձումն է, ինչպես նրա դուստր Խանդութը՝ Դավթի որդու հետ ամուսնացած, Բագարանի իշխանուհու պատճենը: Այժմյան Կաղզմանը, որը գտնվում է հին Բագավանից ոչ հեռու, նույն իշխանության սահմաններում, ճշգրտորեն ներկայացնում է Դավթի որդու կնոջ ծննդավայրը:

Պարզ է դառնում, որ «Սասունցի Դավիթ» դյուցազնավեպի հենքն են հանդիսացել պատմական այն իրադարձությունները, որոնց ամենախոր արմատները առկա են IX դարի քաղաքական շարժումների մեջ: Հասկանալի է, որ դարերի ընթացքում այն փոփոխություններ է կրել, հաջորդած անկայուն և փոփոխական ժամանակաշրջաններին: Այն ընդգրկել է նաև XI դարին վերաբերող առանձին փաստեր:

Բագրատունիների Տարոնի շրջանում գտնվող իշխանության անկումից հետո Մամիկոնյանների մարտական տոհմի վերջին արծիվներին մենք հանդիպում ենք բուն դրած Սասնա բարձունքներում և շրջակա տիրակալների դեմ մշտական պայքարի մեջ: Նրանցից մեկը Թոռնիկն էր: Նա նշանավոր էր դարձել Փիլարտոսի դեմ պայքարելով, որն ի դեպ, նույնպես հայ էր, բայց քաղկեդոնական, հետևաբար՝ Մամիկոնյանների թշնամին: Ռոմանոս IV Դիոգենեսի 1071 թ. պարտությունից հետո, Փիլարտոսը իրեն անկախ հռչակեց ու ընդարձակ մի իշխանություն հիմնեց, որը տարածվում էր Մելիտենեից մինչև Ուռհա և Ռոմանոպոլսից (Բալու) մինչև Մարաշ:

1165 թ. Սասունում գրված մի Ավետարանի հիշատակարանից իմանում ենք, որ այդ Թոռնիկի թոռան անունը Վիգեն էր: Բայց չէ՞ որ Սասունցի Դավթի հինգ եղբայրներից մեկը կրում էր հենց Վիգեն անունը: Նրանց նույնացումը ինքնաբերաբար է առաջանում:

Դավթի մյուս եղբոր անունը Ճնճղափոքրիկ է: XI դարում Վասպուրա-

կանի իշխաններից մեծ համբավ էին վայելում Խաչիկը և նրա երեք որդիները՝ Հասանը, Ճնճղուկն ու Իշխանը: Նրանց ժամանակակից պատմիչը նկարագրում է այդ իշխանների քաջությունն ու սխրանքները արդարև էպիկական ոգով: Խաչիկի որդիները առիթ էին ունեցել կռվելու արևմտյան ճակատում, կայսրության բանակի շարքերում:

Մոտ 1100 թ. ոմն Ցինցուլուկ (Τζιντζουλούκης) Լավոդիկեա քաղաքի կառավարիչն էր: Նրա անունը Անդրոնիկոս էր[1]: Մեկ այլ Ցինցուլուկի հանդիպում ենք 1150 թ., որպես Բրանիցովայի զորավար[2]: Դրանք հայեր են ու Խաչիկի ընտանիքի հետնորդները: Անկասկած սխալված կլինենք, եթե էպոսի Ճնճղափոքրիկի անձի մեջ Խաչիկի որդուն չտեսնենք: Այս անունը հայերեն նշանակում է «փոքրիկ ճնճուղ», նույնը, ինչ և Ցինցուլուկ՝ հայերեն փաղաքշական ձևը «ճնճուղ»-ից՝ «ճնճղուկ»:

Նույն ժամանակաշրջանում Ուռհայում մի նշանավոր հայ ընտանիք կար՝ Արջքթոնք (այսինքն՝ «արջի քթով») անունով: Այդ ընտանիքին պատկանող երեք եղբայրները՝ Արջուկը, Իշխանն ու Թեոդորոսը, մոտ 1083 թ. զոհ գնացին Փիլարտոսի չարանենգության: Ուռհա քաղաքը Սմբատի կառավարչությունից խլելու նպատակով, Փիլարտոսը հարձակվեց նրա վրա և ի թիվս այլոց ձերբակալեց երեք եղբայրներին, որոնցից Արջուկին սպանեց, իսկ մյուս երկուսին գերեվարեց Մարաշ: Հենց այդ Արջուկն է, որ նույն անվան տակ հիշատակված է Վակիդիի երկում, բայց որպես Ռուդեսի որդի: Եթե կարելի լիներ Ռուդեսի փոխարեն Թորոս կարդալ, ապա կստանայինք Արջուկի եղբայր Թեոդորոսի անունը, որի կրճատ ձևը Թորոս է:

Վակիդին հիշատակում է Բյուզանդիային ծառայող մի հայ զորավարի ևս, որը մոտ 750 թ. պետք է որ արաբներից խլած լիներ Կալիկալա՝ հայկական Կարին (Էրզրում) քաղաքը և որի անունը Կուսանն էր: Սասունցի Դավթի եղբայրներից մեկի անունն էր Քռռ Գուսան և նա կարող է համադրվել բյուզանդացի զորավարի հետ:

Հարկ չկա ավելի երկար զբաղվելու հայկական դյուցազնավեպի, և կամ արաբական ռոմանտիկ զրույցի պատմական վերլուծությամբ: Այն ամենը, ինչ ասվել է, բավարար է թվում Դիգենիս Ակրիտասի ծագմանը վերաբերող խնդրի լուծման համար:

Կայսրության հայկական սահմանները հայտնվում են հենց պոեմում, որպես նրա ձևավորման վայր: Քերթվածի աշխարհագրական հորիզոնները, որպես կենտրոն ունենալով Եփրատի հովիտը, բացվում են դեպի Բաղդադ ու Եգիպտոս, ինչպես և հայկական դյուցազնավեպի մեջ: Գլխավոր

[1] Anna Komnena, XI, 7, pp. 105-107.
[2] Nicetas Choniates, III, 1, p.131.



հերոսները հայկական ծագում ունեն՝ Մուսելե, Խրիսոխեյրոս, Կարբեաս, Իոաննիկիոս, Մելեմենցիս, վերջապես Վասիլ Դիգենիս:

Կայսրության բոլոր ծայրամասերից հայկական հողը հերոսական երգեր հյուսելու համար ամենաբարենպաստն էր, որքան իր աշխարհագրական դիրքով, նույնքան իր մարտական բնակչությամբ: Հայկական դյուցազնավեպը կամ արաբական զրույցը դրա ցայտուն վկայությունն է:

Ինչ վերաբերում է Դիգենիսի և Սասունցի Դավթի ընդհանրություններին, ապա դրանք ակնհայտ են (12): Նույն աշխարհագրական միջավայրը, նույն սյուժեն, որի առանձնահատկությունը կայանում է հերոսի երկածին լինելու մեջ, նույն զարգացումը մինչև որոշ մանրամասների համընկնելը:

Հունական պոեմը, ինչպես և հայկականը ծագել են IX դարին հատուկ պայմաններում ու կլանել հետագա դարերին վերաբերող իրադարձությունների աղոտ վերհուշեր: Մեկն իջել է Փոքր Հայքի սարահարթից, մյուսը՝ Սասնա լեռներից և հասել մինչև Ուռհա քաղաքը:

Եվ հենց Կիպրոս ու Բալկանյան երկրներ գաղթեցված հայերն են, որ Դիգենիսի պոեմը տարել են այդ երկրները[1]:

[1] Դիգենիս Ակրիտասի հին ռուսերեն թարգմանությունը հրատարակել է Մ. Սպերանսկին Պետրոգրադում, 1922 թվականին (13):

# ՎԱՍԻԼ I ԿԱՅՍԵՐ ՏԱՐԻՔՆ ՈՒ ԾԱԳՈՒՄԸ
## (867-886)

### I

867 թ. սեպտեմբերի 4-ին մի դաժան սպանություն կատարվեց: Ողբերգությունը տեղի ունեցավ Ս. Մամաս պալատում, Ոսկեղջյուրից այն կողմ, այժմ Գալատա կոչվող արվարձանում, ուր գտնվում էր թագավորական պալատը և որն այն ժամանակ դեռևս ներառված չէր մայրաքաղաքի մեջ:

Ս. Մամասում մեծ խնջույք էր նախապատրաստված: Երիտասարդ Միքայել III կայսրը, որը սիրում էր վայելքներ, ժամանակ առ ժամանակ գալիս և իր շքեղ խնջույքների աղմուկով ցրում էր մեկուսացած պալատի մռայլ լռությունը: Սա եղավ զվարճասեր միապետի վերջին խնջույքը: Գինուց ծանրացած, հեշտանքներից հոգնած Միքայելն առանձնացել էր իր ննջարանում: Նոր էր քունը տիրացել նրան, երբ սպառնալի մի խումբ ուժգին աղմուկով գրոհեց նրա ապարանքի դուռը: Դա հայերի մի խումբ էր՝ Վասիլի գլխավորությամբ: Գինովցած կայսրը սթափվում է, կարծես իր երիտասարդ կյանքի ողբերգական ավարտին ներկա գտնվելու համար: Փայլատակում են հանցավոր սրերը, և դժբախտ զոհը վայր է ընկնում:

Մինչդեռ զոհի մայրը՝ գահընկեց Թեոդորա կայսրուհին, և նրա դուստրերը միանձնուհու հագուստ հագած արցունք էին թափում արնաշաղախ մարմնի վրա, չարագործները անցնում են Ոսկեղջյուրը: Գիշերը մութ էր, փոթորիկը մոլեգնում էր, խռովահույզ ծովն իր անզուսպ ալիքներով հարվածում էր այն մակույկներին, որոնք մարդասպաններին տանում էին մյուս ափ, ուր նրանց էին սպասում մնացած դավադիրները: Բոլորը շտապում էին Բուկոլեոն՝ Մեծ պալատի նավահանգիստը, և միանալով ափ իջածներին դիմում են դեպի պալատն ու գրավում այն առանց դիմադրության հանդիպելու:

Դավադիրների ղեկավարը՝ Վասիլը, հռչակվում է միահեծան կայսր:

Նոր միապետը, սակայն, շատ բանով էր պարտական Միքայելին: Բարեգործի սպանությունը լուրջ և արգահատելի մի արարք է: Սակայն արարքների մասին դատում են դրանց առաջացրած հետևանքներով: Վասիլի հանցագործությունն այնպիսիներից էր, որը տանում էր դեպի նոր բարձունքներ: Այն կայսրության համար բացում է նոր և փայլուն մի դարաշրջան: Բյուզանդական քաղաքակրթությունը պիտի հասներ իր ծաղկման



գագաթնակետին: Հետևաբար այս հանցագործությունը պախարակման չարժանացավ: Նոր հարստությունը պիտի գոյատևեր մինչև XI դարը: Դրա հիմնադրին փառաբանելու համար հարուստ գրականություն ստեղծվեց:

Վասիլի չարագործությունը ներվեց մեկ այլ պատճառով ևս. նրան պատասխանատու չէին համարում իր գործողությունների համար, որովհետև Նախախնամությունն էր ուղղություն տվել դրանց, հետևաբար նա էլ կրում էր դրանց պատասխանատվությունը: Շատ ծանոթ, սքանչելի մի առասպել ներկայացնում է մեզ պատմական ասպարեզ մուտք գործող Վասիլին Նախախնամության լուսազարդով պսակված երջանիկ ընտրյալի տեսքով:

Պատանի հասակում Վասիլը լքել էր հայրական տունը և ուղևորվել մայրաքաղաք: Նա հույս ուներ այնտեղ աշխատանք գտնելու, իր մորն ու դեռևս մանուկ եղբայրներին ու քույրերին սատար կանգնելու համար: Մի ձեռնափայտ ձեռքին, պարկը ուսին, Վասիլը ոտքով կտրել էր երկար ճանապարհ և կանգ առել մայրաքաղաքի պարսպի մոտ՝ Ոսկե Դռան դիմաց, ուր գտնվում էր սուրբ վկա Դիոմեդեսի մենաստանը: Կիրակի էր: Մութն ընկնում էր, արևն արձակում էր իր վերջին ճառագայթները: Շուտով մթությունը պարուրում է պատանի ճանապարհորդին, որը ծանր ճանապարհից հոգնած, պառկում է մենաստանի պարսպի մոտ գետնին ու քնում:

Գիշերը երկնային մի ձայն արթնացնում է վանքի խորանապետին. «Վե՛ր կաց և գնա՛ գտիր կայսրին»: Խորանապետի անունն էր Նիկողայոս Անդրոսալիտես, իսկ խորհրդավոր ձայնը ոչ այլ ինչ էր, եթե ոչ սրբի ձայնը[1]: Վանականը ելնում է, գնում կայսերն ընդառաջ, բայց տեսնում է փոշոտ և աղքատ մի գյուղացու: Հիասթափված նա վերադառնում է իր մահճակալը:

Հազիվ էր վանականը պառկել, երբ վերստին լսեց նույն պատգամը: Նա նորից է դուրս թռչում իր անկողնուց, բացում դուռը, սակայն դարձյալ կայսերը չի տեսնում և վերադառնում է տուն: Քիչ անց վանականը երրորդ անգամ է արթնանում կողերին ստացած ուժգին հարվածից, և նույն ձայնն է լսվում. «Գնա՛, ասում եմ քեզ, և ներս բեր այն մարդուն, որ պառկած է դռան մոտ, նա է կայսրը»:

Բարեպաշտ վանականը չի համարձակվում չենթարկվել ու վազում է աղքատ ճանապարհորդին ներս բերելու: Հաջորդ օրը նա նրան լողացնում է, տալիս այն ամենը, ինչ անհրաժեշտ էր վայելուչ տեսք ունենալու համար և նրա հետ եղբայրության դաշինք կնքում:

Այդպես Նախախնամության հովանավորյալն իր մուտքն է գործում

---

[1] Sym. Log., Georg. Mon. Cont., 8, 9. Հետագայում Վասիլը προσμονάριος Νικόλαος 'Ανδροσαλίτης-ին նշանակել է Ս. Սոֆիայի սինկելլոս և տնտեսվար (նույնը, 842): Ըստ Genes., 108B և Const. Porph., Vita Basilii, 223B. դա սուրբ վկա Դիոմեդեսի վանահայրն՝ καθηγούμενος-ն էր անձամբ և ոչ թե խորանապետը:

կայսերական պալատ՝ Ոսկե Դռնով, ոսկյա երազներին ընդառաջ:

Ո՞վ էր նա, այդ երկնային պատվիրակը, որտեղից էր նա գալիս: Մենք համարյա թե ոչինչ չգիտենք նրա մասին: Վասիլի ծագումը, նրա ընտանիքի դիրքը, նրա առաջին քայլերը. այդ ամենը պարուրված է անթափանց մշուշով: Նույնիսկ նրա թոռը՝ Կոստանդին Ծիրանածինը, չի կարողացել թափանցել այդ մշուշի միջով. նա, որ պաշտում էր իր պապին, հնարավորն է արել նրա անցյալը լիովին լուսաբանելու համար: Չնայած դրան, նրան չի հաջողվել իմանալ կամ մեզ հայտնել Վասիլի հոր անունը: Հնարավոր է, որ ինչ-որ պատճառ կար նրա անունը, ինչպես և նրա ընտանիքի դիրքը թաքցնելու համար: Ամեն դեպքում Վասիլի կյանքը, նրա անցյալը, մինչև Միքայել III-ի արքունիքում նրա հայտնվելը, մենք տեսնում ենք շատ թե քիչ միտումնավոր հնարանքների ու ժողովրդական առասպելների մշուշի միջից: Ծիրանածինը դրանք խնամքով հավաքել ու կարգի է բերել: Նա դրանք կապակցված պատմությունների է վերածել և իր մեծ հեղինակությամբ կնքված կտակել հաջորդ սերունդներին:

Կոստանդին Ծիրանածինն իր աշխատությամբ կրկնակի նպատակ էր հետապնդում. պատմական ու դաստիարակչական: Նա ցանկացել է նկարագրել իր պապի կյանքը, որպեսզի մարդիկ ճանաչեն «հզոր ճյուղերով ծառի՝ կայսերական տան, արմատը» և վերստեղծել այն մարդու կերպարը, «որը պետք է իր հաջորդների համար ծառայի տիպար, որպես առաքինի միապետի, որին պետք է հետևել և կրկնօրինակել»[1]:

Ներբողագիրն արդեն իսկ վատ պատմագիր է: Ակնհայտ է, որ Վասիլին կատարելության տիպար դարձնելու համար, հետևելով իր պատկերացումներին, նրա թոռը ստիպված է եղել մի քիչ ազատ վարվելու ձեռքի տակ ունեցած նյութերի հետ, մերթ հանելով այն, ինչ չէր համապատասխանում իր նպատակին, մերթ ավելացնելով մանրամասներ, որոնք կարող էին ծառայություն մատուցել նրա հերոսի կերպարը զարդարելու համար: Մեր ջանքերը հակառակ նպատակն են հետապնդում: Մենք մի կողմ կդնենք դեկորատիվ տարրերը կամ «այն, ինչ տեղի է ունեցել Նախախնամության միջամտության շնորհիվ» և լրացնել այն ամենով, ինչը կնպաստի Վասիլի կյանքին իրականությանն ավելի համապատասխան տեսք տալու համար: Ինչպես Վասիլին բարյացկամորեն վերաբերվող հեղինակների՝ Կոստանդին Ծիրանածնի, Գենեսիոսի, այնպես էլ նրան թշնամաբար վերաբերվող պատմիչների՝ Սիմեոն Լոգոթետեսի և այլոց, կողմնապահությունն աչքի է զարնում:

Այն, ինչ պատմում են Վասիլի ծննդյան ու մանկության մասին, պարու-

[1] Vita Basil., 212 b.



նակում է ավելի շատ երևակայական գծեր, քան պատմական: Վասիլը ծնվել է «Մակեդոնիայում», Ադրիանուպոլսի մերձակայքում, ուրեմն Մակեդոնիա կոչվող *բանակաթեմում*, Միքայել I Ռանգաբեի (811-813) թագավորության ժամանակ: Բուլղարների թագավոր Կրումը հարձակվել էր կայսրության վրա և պաշարել մայրաքաղաքը: 813 թ. Միքայել I կայսրը ստիպված եղավ հրաժարվել թագից Լևոն V Հայկազնի օգտին: Բուլղարները դադարեցրին պաշարումն ու նահանջեցին: Ադրիանուպոլսի մոտով անցնելիս, նրանք թալանեցին քաղաքն ու գերեվարեցին տասը հազար տղամարդ ու մեծ քանակությամբ կանանց ու երեխաների: Նրանց տարան և բնակեցրին Դանուբ գետի ափին, դրանցից կազմելով «Մակեդոնիա» գաղթավայրը: Վասիլի ծնողները գերիների շարքում էին: Ինքը դեռ խանձարուրի երեխա էր (հետևաբար նա պետք է որ ծնված լիներ 812-813 թթ.): Գերությունից վերադառնալուց հետո Վասիլը 25 տարեկան էր: Ուրեմն այդ վերադարձը պետք է տեղադրվի 837-838 թվականին՝ Թեոփիլոսի թագավորության ժամանակ:

Գերիների փախուստի պատմությունն առավել հետաքրքրական է: Գերիները միշտ էլ մտածում էին հայրենիք վերադառնալու մասին: Ոմն Կորդիլես, որին կոչում էին στρατηλάτης ἐν Μακεδονίᾳ [«Մակեդոնիայի հրամանատար»], հավանաբար տեղի ստրատեգոսը, որը գերի էր ընկել նրանց հետ միասին, գաղտնի նախաձեռնում է նրանց փախուստի կազմակերպումը: Նա իր փոխարեն թողնում է որդուն՝ Վարդասին, արժանավոր մի մարդու, իսկ ինքը ծածուկ գնում մայրաքաղաք Թեոփիլոս կայսերը նախազգուշացնելու համար: Կայսեր հրամանով մի քանի նավ են ուղարկում գերիներին վերցնելու և Կոստանդնուպոլիս բերելու համար:

Այդ ժամանակ բուլղարների թագավորն էր Կրումի թոռ և Սիմեոնի հայր Վլադիմերը: Գերիները խորհրդակցում ու վճռում են փախչել իրենց կանանց ու երեխաների հետ միասին: Քանի որ Միքայել Բուլղարը հարձակվել էր Թեսաղոնիկեի վրա, գերիները պահը նպաստավոր են համարում իրենց ծրագիրը իրագործելու համար: Նրանք անցնում են Դանուբը, ուղևորվելով դեպի Սև ծովի ափը, ուր կայսեր ուղարկած նավերը սպասում էին նրանց: Բուլղար comes-ը իմանալով իրողությունը նետվում է նրանց ետևից:

«Մակեդոնացի» գերիները Ցանցեսի ու Կորդիլեսի ղեկավարությամբ ընդհարվում են բուլղարների հետ, որոնք ցանկանում էին խանգարել փախուստին: Թշնամին ետ մղվելով՝ օգնություն է խնդրում հարևան ժողովրդից, որին հունգարացի, թյուրք ու հոն էին կոչում: Փախստականները հերոսաբար կռվում են երեք օր, իսկ չորրորդ օրը նրանց հաջողվում է նավ բարձրանալ: Թշնամու վերջին գրոհը ետ է մղվում մի խումբ խիզախ երիտասարդների կողմից՝ քաջարի զորական Լևոն Գոմոստեսի գլխավորությամբ, որը

հետագայում հետերիարքոս է նշանակվում:

Նավերը բարձրացնում են առագաստները, և գերիները բարեհաջող հասնում են կայսեր մոտ, որը նրանց բարյացկամորեն է ընդունում, իսկ հետո ետ ուղարկում «Մակեդոնիա»՝ իրենց հայրենիքը: Վասիլը նույնպես գնում է Մակեդոնիա իր ἴδια χωρία [«սեփական տիրույթները»], և ծառայության է անցնում Մակեդոնիայի ստրատեգոս Ցանցեսի մոտ[1]:

Այսպիսին է ժամանակագիր Սիմեոն Լոգոտեթեսի ավանդած պատմությունը: Այն ստույգ պատմության տպավորություն է թողնում: Ճշգրիտ մանրամասները, որ նա տալիս է մեզ, խոսում են տեղեկությունների իսկության օգտին: Այնուամենայնիվ կան նաև կասկածանք ներշնչող հանգամանքներ: Հավանական չէ, որ բարբարոսները գերիներին թույլ տված լինեին միատարր համայնքով բնակվելու իրենց ընտրած առաջնորդի գլխավորությամբ և որ այդտեղ քառորդ դար ապրելուց հետո նրանք հանկարծակի ցանկություն զգացած լինեին կայսերական նավերով գաղտագողի փախչելու, իսկ բուլղարներին հաջողված չլիներ նրանց խանգարել: Այս ամենը, իրականում, շատ կասկածելի է թվում:

Փախուստի տարեթիվը նույնպես անորոշ է: Վալդիմերը Բոգորիսի կամ Բորիսի որդին էր և նրա հաջորդը: Հնարավոր է, որ դա սխալ է. պետք է լինի Մալամիր, որն իսկապես եղել է Կրումի թոռը և Թեոփիլոսի ժամանակակիցը[2]: Բայց փախուստը պետք է տեղի ունեցած լիներ Միքայել Բուլղարի ներխուժման օրերին: Միքայելը, Բոգորիսի՝ Վալդիմերի հոր, քրիստոնեական անունն էր: Նա հաջորդել է Մալամիրին 825 թվականին, հետևաբար նրա ներխուժումը[3] ամենևին էլ չէր կարող առնչություն ունենալ գերիների վերադարձի հետ, եթե դա իսկապես տեղի է ունեցել Թեոփիլոսի թագավորության ժամանակ: Այդ ժամանակավրեպությունը արժանի է հատուկ ուշադրության: Կորդիլեսը հենց սկզբից նշվում է որպես առաջնորդ, իսկ նրա որդի Վարդասը փոխարինում է նրան: Եվ զարմանում ես իմանալով, որ նա ընտրվել էր ավելի ուշ Ցանցեսի հետ միասին: Վարդասն ուրեմն մոռացված է, եթե, իհարկե, նա չի նույնանում Ցանցեսին:

[1] **Sym. Log., 818; Georg. Mon. Cont.,** 817b ss.

[2] **J. B. Bury**, Eastern Roman Empire, p. 369, note 4.

[3] Սիմեոն Լոգոթետեսի նախադասությունը կարծես թե աղավաղված է **ἐξελθόντες (sc. ἐξελθόντος) δὲ τοῦ Μιχαὴλ Βουλγάρου ἐν Θεσσαλονίκῃ ἤρξαντο διαπερᾶν σὺν ταῖς ὑποστάσεσιν αὐτῶν** [«Երբ Միքայել Բուլղարը դուրս եկավ, Թեսաղոնիկեում <բնակչությունը> ապավինելով սեփական <ուժերին> սկսեց փախստական լ»] (Sym. Log., 818): Նույն հեղինակը հայտնում է, որ մոտ 847 թ. **τῶν δὲ Βουλγάρων ἐπιδρομὰς ποιούντων ἐν Θράκῃ καὶ Μακεδονίᾳ καὶ ληΐζομένων τὰ τοιαῦτα θέματα, ἡ Θεοδώρα ταξατιῶνα ἐποίησεν** [«Քանի որ բուլղարներն ասպատակում էին Թրակիան և Մակեդոնիան և կողոպտում այդ բանակաթեմերը, Թեոդորան ստեղծեց այնտեղ տաքսատիոն»] (Sym., 821): Եթե խոսքը Միքայել Բուլղարի նույն ներխուժման մասին է, ապա գերիների վերադարձը պետք է տեղափոխվի 847 թվականին: Սիմեոն Լոգոթետեսը դրա մասին խոսում է Իգնատիոս պատրիարքի գահակալությունից՝ 847 թվականից հետո: Նա իր ձեռքի տակ ունեցել է գրավոր աղբյուրներ, հավանաբար, վարքագրական բնագրեր: Ինչ վերաբերում է Թեոփիլոսի մոտ Կորդիլեսի առաքելությանը, ապա նա նշում է. **καθὰ ἐκεῖσε προεγράφη** [«ինչպես վերը գրվեց»] (Sym., 818): Դա չի նշանակում, որ նա նրան նախազգուշացրել էր իր գալստյան մասին. ինչը ակնարկ է մի գրավոր աղբյուրի:



Այս հետաքրքրական միջադեպի նկարագրության նպատակն էր մեզ ծանոթացնել Վասիլի և նրա ծնողների հետ. մինչդեռ և՛ Վասիլը, և՛ նրա ծնողները ներկա շարադրանքում ստվերում են թողնված: Նշված չեն նույնիսկ նրանց անունները, և չկա թեկուզ մի աննշան սխրանքի հիշատակում, ուր նրանք իրենց բաժինը կունենային: Եվ առավել զարմանալին այն է, որ Վասիլը, որը պետք է որ 25 տարեկան լիներ, ուստի և կյանքի ծաղկուն շրջանում էր, ոչ մի դեր չի խաղացել այդ իրադարձություններում: Նրան մերժել են նույնիսկ Լևոն Գոմոստեսի խիզախ ընկերների շարքում լինելը: Նման անփութությունը կարելի է բացատրել, եթե մենք ընդունենք, որ սկզբնական շարադրանքում Վասիլը հանդես էր գալիս իբրև մանուկ, որը դեռևս ի վիճակի չէր զենք կրելու: Այս ամենը չի նպաստում մեր շարադրանքի վարկը բարձրացնելուն: Ամեն դեպքում երկու կետ՝ վերադարձի տարեթիվը և Վասիլի տարիքը, մնում են հարցականի տակ: Կոստանդին Ծիրանածնի տվյալներով Վասիլը դեռ մանուկ էր գերիների վերադարձի պահին և դա հաստատում է մեր կասկածը:

Ծիրանածինը ոչինչ չգիտե գերիների այդ պատմության մասին, համենայն դեպս նա այն չի հիշատակում: Սեղմ ձևով նա պատմում է, որ Վասիլի ծնողներն ապրում էին Ադրիանուպոլսում, երբ բուլղար թագավոր Կրումը, խախտելով խաղաղությունը հարձակվում է քաղաքի վրա, բազմաթիվ գերիներ է վերցնում, դրանց թվում քաղաքի եպիսկոպոս Մանուելին և Վասիլի ծնողներին՝ խանձարուրի իրենց երեխայի հետ միասին: Մանուելը սկսում է Ավետարան քարոզել բուլղարներին: Մոնտրագոնը՝ Կրումի հաջորդը, հալածանքներով ստիպում է նրան ուրանալ իր հավատը, սակայն եպիսկոպոսը գերադասում է նահատակությունը[1]: «Նույն կերպ Վասիլի բազմաթիվ ազգականներ ստացան նահատակի պսակ, այնպես որ Վասիլը զերծ չմնաց դրան հաջորդած փառքից»,- ավելացնում է Ծիրանածինը[2]:

Ինչ վերաբերում է գերիների վերադարձին, ապա Ծիրանածինը ոչ մի թվական չի նշում, բայց անորոշ կերպով հայտնում է, որ վերջապես եկավ ժամանակը, երբ Աստված հիշելով իր ժողովրդի մասին, նախապատրաստեց նրա վերադարձը: Բուլղար թագավորը, որը խոնարհվում էր հռոմեական հզորության առջև, թույլ է տալիս գերիներին վերադառնալ իրենց հայ-

[1] Migne, P. G., 117, 276-277: **῎Αθλησις τῶν ἁγίων Μανουήλ, Γεωργίου, Λέοντος καὶ τῶν σὺν αὐτοῖς** [«Վկայաբանություն Ս. Մանուելի, Գեորգիոսի, Լևոնի և նրանց հետ եղածների»]:

[2] Vita Basilii, 217B.

րենիքը: Գերիները նախապատրաստվում էին ճանապարհ ընկնելու, երբ բուլղար թագավորը նկատում է ամբոխի մեջ «ազնվական արտաքինով մանուկ Վասիլին»[1]:

Ինչպես տեսնում ենք, այստեղ խոսք չկա գերիների փախուստի, առավել ևս թշնամուն զինված դիմադրություն ցույց տալու մասին:

Ըստ մեկ այլ՝ բոլորովին անկախ, աղբյուրի, Կրումը, Ադրիանուպոլսի պաշարումից մեկ տարի անց, մի նոր ներխուժում է ձեռնարկել և 30 հազարանոց բանակի գլուխն անցած հասել մինչև Արկադիուպոլիս, ասպատակել է երկիրը և իր հետ տարել 50 հազար գերի[2]:

Ուրեմն հաստատ է թվում այն, որ կայսրության տարածքը կատարած մեկ արշավանքի ընթացքում, բուլղարները գերիներ էին տարել, որոնց թիվը չափազանցված է թվում, և որոնց շարքում էին Կորդիլես զորավարն իր որդի Վարդասի հետ, Ցանցես զորավարը, Լևոն Գոմոստեսը, Վասիլի ծնողները, Մանուել եպիսկոպոսը և, բացի դրանից, ոմն Կինամոն[3]:

Կրումի մահից հետո, 814 թ. ապրիլի 14-ին, նրա հաջորդը՝ Մուրտագոնը կամ Օմուրտագը, վերականգնել է խաղաղությունն ու Լևոն կայսեր հետ երեսուն տարվա դաշինք է կնքել[4]: Կրումի թագավորության վերջին տարիներին սկսված բանակցությունները հաջողությամբ են պսակվել 815 թվականին: Դաշնագրում նախատեսված էր գերիների փոխանակում: Եթե Վասիլի ծնողներն իսկապես գերիների թվում էին, ապա նրանք պետք է որ ազատություն ստանային այդ պահին: Ոչ մի պատճառ չկա, որպեսզի նրանք այնտեղ մնային ևս քսանհինգ տարի, ինչպես պնդում է ավանդությունը: Այդ հարցում Կոստանդին Ծիրանածնի տեղեկությունն ավելի ճշգրիտ է, քան Սիմեոն Լոգոթետեսինը: Վասիլի ծնողներն անվանապես չեն նշված և դա կասկած է հարուցում նրանց գերեվարման հարցում: Գերիների շարքը նրանց մտցնելը (գերիներ, որոնցից մեծ մասը նահատակ մահով են պսակել իրենց կյանքը) չի՞ նշանակում արդյոք, որ ցանկացել են ազգակցական կապ ստեղծել նրանց և նահատակների միջև: Կոստանդին Ծիրանածինը կարծում է, թե կարող է հայտնել, որ Վասիլի ընտանիքը նույնպես զոհեր է տվել բուլղարական բարբարոսությանը:

Վասիլի ծնողները գործուն դեր չեն խաղացել, բոլորովին աչքի չեն

[1] Vita Basilii,217 B.: **ἰδὼν τὸν παῖδα Βασίλειον τῇ τε μορφῇ ἐλευθέριον.**

[2] **Scr. Inc.**, De Leone Armenio, 347B.

[3] **Theophylact. Bulg.**, P.G., 126, 192-197, **ուր Կրումը Κρούβος է անվանված: J. B. Bury**, Eastern Roman Empire, p. 382, note 1.

[4] **Genes.**, 41B: **αἱ γὰρ ὑπὸ Λέοντος τοῦ βασιλέως πρὸς αὐτοὺς τριακοντούτεις σπονδαὶ ἤδη τὴν πρώτην δεκαετερίδα συνεπλήρουν σχεδόν [«Գրեթե ավարտին էր հասնում Լևոն կայսեր օրոք կնքված երեսունամյա հաշտության առաջին տասնամյակը»]: Լևոնի առաջարկը սկզբում բուլղարները մերժել են, սակայն քիչ անց երկու կողմերը համաձայնության են եկել:**



ընկել գերության պատմության մեջ: Ուրեմն ինչու՞ պետք է հիշեին հազարների հասնող գերիների շարքում այդքան աննշանակալից մարդկանց: Դա արվել է մի պարզ ենթադրությամբ, հիմնված այն փաստի վրա, որ առավել աչքի ընկնող գերիները հայկական ծագում ունեին և, հնարավոր է, Վասիլի ծնողներն էին:

Գերիների առաջնորդը՝ Կորդիլեսը, և նրա որդի Վարդասը, ինչպես նաև նրանց մյուս առաջնորդ Ցանցեսը հայկական անուններ են կրում: Վարդասը՝ Վարդն է, Բյուզանդիայում բավականին հայտնի անուն: Կորդիլեսը կարծես նույնանում է Գարջույլ կամ Գարջոլ անվանը[1]: Ինչ վերաբերում է Ցանցեսին, ապա մենք այն համեմատում ենք Վասիլի և նրա որդու՝ Լևոնի, ժամանակակից հզոր պետական գործիչ, հռչակավոր Ստիլիանոսի հայկական անվան հետ: Այս վերջինը հնչում է իբրև Zautzes, և դա մեզ թույլ է տալիս Ցանցեսի փոխարեն ևս կարդալ Tzautzes: Մի հոյակապ վկայություն մեզ համար հասկանալի է դարձնում այդ երկու անունների միջև գոյություն ունեցող կապը: «Ստիլիանոսը իրեն կոչում էր նաև հայկական Zautzes անունով, *քանի որ նա մակեդոնացի էր և հայ իր ծագումով, ինչպես և ինքը* Վասիլը, որը նրան դարձրեց իր որդու խնամակալը»[2]:

Վասիլն իր ծառայությունը սկսել էր Մակեդոնիայի ստրատեգոս Ցանցեսի մոտ: Ստիլիանոսը՝ Վասիլի սիրելին և մակեդոնացին, կրում էր նման մի անուն: Մենք իրավացի կլինենք, եթե նրան կապենք Ցանցեսի ընտանիքին: Վասիլի որդին՝ Լևոնը, հետագայում ամուսնացել է Ստիլիանոսի դստեր՝ Զոեի, հետ: Նրանց հայրերն ուրեմն պետք է որ հասակակից եղած լինեին և ոչինչ չի խանգարում Ստիլիանոսին համարելու զորավար Ցանցեսի որդին: Այդ դեպքում մենք կկարողանայինք հասկանալ այն ջերմության ակունքները, որ Վասիլը ցուցաբերում էր Ստիլիանոսի՝ իր նախկին հրամանատարի որդու, հանդեպ: Ի դեպ, Ստիլիանոսն ուներ Ցանցես անունով մի որդի, վճռորոշ մի փաստարկ մեր ենթադրության օգտին[3]:

Ստիլիանոսի ով լինելը այսպես պարզելուց հետո հրամայական է դառնում այն միտքը, որ գերեվարության պատմության հեղինակը հավա-

[1] **Χατατούριος՝ հայկական Խաչատուր անվան մեջ հայկական -չ- հնչյունը փոխարինված է -տ-ով: Ուրեմն Կորդիլես անվան մեջ դ-ն կարող է համապատասխանել ջ-ին: Դա հնարավորություն է տալիս ճանաչելու այդ անվան ներքո հայկական Գարջույլ, Գարջոլ շատ հայտնի անունը: Սա, իհարկե, ընդամենը ենթադրություն է:**

[2] Vita Euthymii, p.6, de Boor: **Στυλιανὸν δὲ, τὸν καὶ Ζαούτζην κατὰ τὴν τῶν ᾿Αρμενίων διάλεκτον προσαγορευόμενον, ὡς ἅτε Μακέδονα ὄντα καὶ τὸ γένος ᾿Αρμένιον, καθὼς καὶ αὐτὸς** (այսինքն՝ Վասիլ) **ἐπίτροπον καταλιμπάνει.**

[3] **Բոլոր հեղինակները Ստիլիանոսի հայկական անունը վերարտադրում են իբրև Zaoutzas, բայց նրա որդու անունը Tautzes է Թեոփանեսի Շարունակողի (Theoph. Cont., p. 360), Tzautzes՝ Գեորգ Վանականի Շարունակողի (Georg. Cont., p. 856), և Tzantzes՝ Սիմեոն Լոգոթետեսի (Sym., 702) երկերում:**

նաքար Ստիլիանոսն է: Էլ ո՞վ նրանից բացի պետք է պատմեր մի միջադեպ, ուր նրա հայրը՝ Ցանցեսը, այդքան նշանակալից դեր էր խաղացել: Միայն նա կարող էր իմանալ այն, ինչ տեղի էր ունեցել «Մակեդոնիայում» իր հոր ժամանակ: Դա պետք է որ նա լիներ, որ մտցրել էր Վասիլի ծնողներին գերիների շարքը, երկու ընտանիքներին միացնող կապերն ավելի սերտ դարձնելու համար: Կոստանդին Ծիրանածինը հասկացել է Ստիլիանոսի միտումը և հրաժարվել է նրա պատմությունից: Նա գերադասել է իր ազգականներին տեսնել Ադրիանուպոլսի եպիսկոպոսի ընկերակցությամբ, քան Ցանցեսի[1]:

Գերիների մեջ բազմաթիվ հայեր կային: Դրա մասին վկայում է նաև մի հետաքրքիր նշում այն մասին, որ բուլղարների ներխուժման ժամանակ վերցված ավարը բաղկացած էր «հայկական գորգերից, բրդյա ծածկոցներից, տարբեր տեսակի հագուստներից և պղնձյա ամաններից»[2]:

Վասիլի ծնողները վերադառնում են հայրենիք՝ «Մակեդոնիա»՝ ἴδια χωρία [«սեփական տիրույթը»], արտահայտություն, որը վկայում է Վասիլի ծննդավայրի մասին: Բուլղարների կողմից Ադրիանուպոլսում գերեվարվածները աղբյուրներում իրենք իրենց կոչում են «մակեդոնացիներ»: Ի՞նչ պատճառով[3]: Անկասկած հավաստելու համար, որ Վասիլի ծնողները եղել են գերիների մեջ, մինչդեռ նրանք դրանց շարքում չեն եղել: Այդ խառնաշփոթը պահպանվել է Փոտին վերագրվող Վասիլի տոհմաբանության մեջ, սակայն նա փորձել է համաձայնեցնել աշխարհագրական երկվության այդ սխալը. Վասիլի հայրը մակեդոնացի է, իսկ մայրը՝ Ադրիանուպոլսից:

Կոստանդին Ծիրանածինը ոչինչ չունի ասելու գերությունից վերադառ-

---

[1] C. Lebeau, Histoire du Bas-Empire, XIII, 339, կարծել է, որ Tzantzes անվան մեջ ճանաչում է chiaous - չաուշ՝ «պալատական պահակ», բառը, որը տաճկական արքունիքից անցել էր Կոստանդնուպոլսի արքունիքին: Պետք չէ հավատ ընծայել այս բացատրությանը մինչև չնշվի, թե IX դարում որտե՞ղ էր գտնվում այդ տաճկական արքունիքը: Tchaouch բառը հայտնվում է բավական ուշ և τσαβούχη, τζαούσιος ձևով:

[2] Scr. Inc., De Leone, 347B: 'Αρμενιατικὰ στραγγλομαλωτάρια καὶ νακοτάπητα ἀνώτερα καὶ ἱματισμὸν πολὺν καὶ χαλκώματα. Խոսքը հանգույցներով գորգերի մասին է, որոնցով հայտնի էր Հայաստանը: Ա. Սաքըզյանը վերջերս նշել է արաբական աղբյուրներ, որոնք հաստատում են այն բանը, որ գորգագործությունը հնուց գոյություն ուներ Հայաստանում («Revue des Études Arméniennes», I, 121-127): Նույն գիտնականը մեկ այլ հոդվածում ապացուցել է, որ qali բառը (այժմ արտասանվում է «խալի»), որը քաջ հայտնի է Արևելքում և նշանակում է «հանգույցներով գորգ» իր ծագումով պարտական է խալիներով հայտնի Էրզրում քաղաքի հայկական անվանմանը՝ Կարին, որն արաբները արտասանում էին Qali-kala (Ա. Սաքըզյան, Սիրիա, 1928, էջ 238-242):

[3] Դժվար է համաձայնել, որ «Մակեդոնիա» աշխարհագրական անունը օգտագործված լինի ընդլայնված իմաստով՝ ընդգրկելով Թրակիան: IX դարում Մակեդոնիան և Թրակիան կազմում էին երկու տարբեր բանակաթեմեր: Այնուհանդերձ, հայկական մի ձեռագրի հիշատակարանում նշված է. «գրված հայոց տոմարի 452 թ. (=1011 թ.), Մակեդոնիա երկրում, Ադրիանուպոլիս քաղաքում» (Գ. Զարպհանալյան, Պատմություն հայ մատենագրության, էջ 158):



նալուց հետո Մակեդոնիայում Վասիլի անցկացրած մանկության մասին: Այն ինչ նա գիտի այդ տարիների մասին, սահմանափակվում է մի քանի նախանշաններով, որոնք հորինվել են հետագայում: Բուլղար թագավորը նկատում է Վասիլին ու հավանում: Նա երեխային է տալիս մի շատ մեծ խնձոր: Վասիլն անբռնազբոս մոտենում է թագավորին, կարծես շնորհակալություն հայտնելու և դիպչում է նրա ծնկներին այնքան ազնվական բնական ջերմությամբ, որ թագավորը հիանում է: Նրա շրջապատը խանդի ճիրաններում է:

Վասիլի ծնողները վերջապես տուն են վերադառնում: Մի օր նրա մայրը դաշտ է գնում հնձվորներին հսկելու և այնտեղ աշխատելու: Նա երեխային թողնում է հովնցում, որը շրջապատում է ճյուղերով՝ կիզիչ արևից նրան պաշտպանելու համար: Հանկարծ հայտնվում է մի արծիվ և ստվեր գցելու համար թևերը պարզում երեխայի վրա: Մայրը վրա է հասնում ու նրան քշում, վախենալով, որ նա կվնասի որդուն: Քիչ անց թռչունը վերադառնում է. նրան նորից են քշում: Արծիվը Վասիլի գլխավերևում հայտնվում է երրորդ անգամ: Նման մարգարեական նշաններ հաճախ են նկատվել, ասում է Ծիրանածինը, սակայն նա չի ցանկանում դրանց վրա կանգ առնել:

Վասիլը վաղ է կորցրել հորը: Ընտանիքի հոգսն ընկել է նրա ուսերին: Մորը և մանուկ եղբայրներին պահելու համար անհրաժեշտ միջոցներ չկային: Հողագործությունը բավարար միջոցներ չէր ապահովում: Վասիլը մտածում էր մայրաքաղաք գնալու մասին: Ծիրանածինը համարում է, որ խոշոր քաղաքները հնարավորություն են տալիս բնատուր ընդունակությունները կիրառելու համար, մինչդեռ գյուղերը կարող են խեղդել ամենալավ հատկությունները:

Վասիլի մայրը նրանից շատ մեծ դժվարությամբ է բաժանվում: Բազմաթիվ մարգարեական երազները վերջապես նրան դրդում են հնազանդվելու ճակատագրին և օրհնելու որդուն օտարություն մեկնելու համար: Եվ ահա մի օր նա երազում տեսնում է, ինչպես ժամանակին Մեծն Կյուրոսի մայրն (1) էր տեսել, մի մեծ ծառ, որն աճում էր իր կրծքից: Ծաղկած և պտուղներով ծանրաբեռնված ծառը վեր է խոյանում տան վրա: Նրա բունը ոսկուց էր, ճյուղերն ու տերևները կարծես նույնպես ոսկուց լինեին: Մոր ընկերուհիներից մեկը՝ երազահան մի կին, մեկնաբանում է հրաշալի երազը, որպես որդու փայլուն ապագայի նախանշան:

Մեկ ուրիշ անգամ երազում նրան հայտնվում է մի ծերունի, որը բոց էր արտաշնչում և որը նրան հայտնում է, որ նրա որդի Վասիլը մի օր կհասնի կայսերական բարձունքի: Վասիլի մայրը, զարմացած, ցանկանում է պարզել թե ո՞վ է նա. «Ես Եղիան եմ» (2), ասում է ծերունին ու անհետանում: Այդ գերբնական նշանները մորը ստիպում են թույլ տալ որդուն օտարություն մեկնելու:

Վասիլը «Մակեդոնիա-Թրակիայից» ուղևորվում է դեպի մայրաքաղաք:

Երիտասարդ Վասիլը հասնում է մայրաքաղաք և ապաստան է գտնում սուրբ վկա Դիոմեդեսի մենաստանում այն պարագաներում, որոնց մենք արդեն տեղյակ ենք:

Այն ամենը, ինչ մեզ պատմում է Կոստանդին Ծիրանածինը իր պապի կյանքի այն հատվածի վերաբերյալ, որը նախորդում է նրա մայրաքաղաք գալուն, առավելապես առասպելական բնույթ է կրում: Միակ իրական փաստը, որով մենք տեղեկանում ենք, որ Վասիլը ծառայել է Մակեդոնիայի ստրատեգոսի մոտ, Ծիրանածինը մի կողմ է նետել, հրաժարվելով գերության պատմությունից: Այն ժամանակաշրջանում, երբ Կոստանդինը գրում էր իր գործը, Ստիլիանոսի ընտանիքը աչքի չէր ընկնում, և նա ոչ մի շահ չուներ հիշելու իր պապի ծառայությունը Ստիլիանոսի մոտ: Իրական փաստերի պակասը նրան ստիպել է պատմության համար միանգամայն անօգուտ առասպելներ հավաքել:

## II

Վասիլի կյանքի երկրորդ շրջանը, որ սկսվել էր վանական պարիսպների ետևում, ավելի մանրամասն հայտնի չէ: Նրա կյանքի ընթացքը մինչև Միքայել կայսեր մոտ ծառայության անցնելը նույնպես մեզ հայտնի չէ: Այն կորչում է պատմական արժեք չունեցող՝ համեմված զրույցների ստվերում:

Սուրբ վկա Դիոմեդեսի պանդուխությունը արտացոլում է անկասկած այն պատմական փաստը, որ Վասիլը որոշ ժամանակ հյուրընկալվել է Նիկողայոս Անդրոսալիտես վանականի մոտ, բայց ինչ կարգավիճակով՝ մենք չգիտենք:

Վանականը մի բժիշկ եղբայր ուներ, որը մտերիմ էր մի պալատականի՝ Թեոդորայի և Վարդասի ազգականի՝ հետևաբար հայի, հետ, որի անունն էր Թեոփիլոս կամ Թեոփիլիցես[1], իսկ մականունը՝ Պայղեոմենոս [«Կրթված»]: Բժիշկն իր այցելություններից մեկի ժամանակ առիթ է ունենում տեսնելու Վասիլին: Հիանալով նրա գեղեցիկ արտաքինով, բժիշկը հետաքրքրվում է նրանով ու ցանկանում ծանոթանալ: Եղբայրը նրան պատմում է իր տեսած խորհրդավոր երազը և խնդրում այդ պատմությունը գաղտնի պահել: Մի օր բժիշկն իմանում է, որ Թեոփիլիցեսն ախոռում ծառայող տղա է փնտրում: Բժիշկը նրան առաջարկում է ընդունել Վասիլին: Երիտասարդին անմիջապես բերել են տալիս: Վասիլն ուներ բոլոր այն հատկանիշները, որոնք պետք է դուր գային Թեոփիլիցեսին՝ երիտասարդ, գեղեցիկ, բարեկազմ,

[1] Georg. Mon. Cont., 816. Genes., 109 նրան անվանում է Թեոփիլիսկոս, Const. Porphyr., Vita Bas., 224՝ Թեոփիլիդին:



բարձրահասակ: Հիանալով, պալատականն իսկույն ևեթ նրան ընդունում է իր մոտ ծառայության և պրոտոստրատորի՝ այսինքն ախոռապետի, կոչում է տալիս: Մականունն էլ դնում է Կեֆալաս՝ Վասիլի գանգրահեր ու խոշոր գլխի պատճառով[1]:

Վասիլը Թեոփիլիցեսի մոտ է մնում մինչև որ երջանիկ պատահականությամբ նա ծառայության է անցնում Միքայել կայսեր մոտ, որպես ստրատոր՝ ախոռապան:

Մենք համարյա ոչինչ չգիտենք Վասիլի կյանքի այն ժամանակաշրջանի մասին, երբ նա Թեոփիլիցեսի մոտ էր ծառայում, բացի այն բանից, որ նա իր տիրոջ հետ ճանապարհորդություն էր կատարել Հունաստան: Վերջինս Միքայելի ու Վարդասի հրամանով պետական գործով ստիպված է եղել մեկնելու Պելոպոնես: Աքայայի Պատրա քաղաքը հասնելով Թեոփիլիցեսն այցելել է Ս. Անդրեաս եկեղեցին: Վասիլը հիվանդության պատճառով չի կարողացել նրան ուղեկցել և այցելել է նույն եկեղեցին քիչ անց և միայնակ: Վանականը, որն ընդունել էր Թեոփիլիցեսին առանց նրա նկատմամբ որևէ ակնածանք ցուցաբերելու, Վասիլին տեսնելով գնացել է նրան ընդառաջ և արժանացրել արքայական ընդունելության: Այդ բանն ապշեցրել է բոլորին և ի գիտություն է հաղորդվել քաղաքի ամենահարուստ և շատ ազնվական մի տիկնոջ, որն այրի էր և կրում էր ամուսնու անունը՝ Դանիելիս: Նա լավ ծանոթ էր վանականին և համարում էր, որ վերջինս օժտված էր մարգարեական ընդունակությամբ: Դանիելիսն իր մոտ է կանչում վանականին նրա տարօրինակ վարքագծի պատճառն իմանալու համար. քանզի նա մի անհայտ մարդու նկատմամբ ավելի մեծ հարգանք էր ցուցաբերել, քան երբևէ՝ իր որդու կամ թոռան նկատմամբ: Վանականը պատասխանում է. այն մարդը, որին նա ընդունել էր հասարակ մահկանացու չէր, այլ անձամբ հռոմեական կայսրն էր: Մարդիկ պետք է երկրպագեն Աստծո ընտրյալին:

Թեոփիլիցեսն իր առաջադրանքը կատարելուց հետո վերադառնում է մայրաքաղաք: Վասիլը հիվանդության պատճառով չի կարողանում հետևել տիրոջը՝ Թեոփիլիցեսին, և մնում է Պատրայում: Բարի և հարուստ Դանիելիսն իր կարեցածն է անում հիվանդին համակրանքով և հարգանքով խնամելու համար, որպես մի անձ, «որը սերմեր էր ցանում պարարտ հողում, ավելի ուշ առատ բերք հավաքելու համար»: Նա Վասիլին նվիրում է շատ ոսկի ու թանկարժեք հագուստներ, նրան է տալիս երեք հարյուր ստրուկ: Փոխարենն առատաձեռն տիկինը խնդրում է միայն եղբայրական միություն՝ ἀδελφοποίησις, կնքել նրա և իր որդու՝ Հովհաննեսի, միջև:

[1] Գենեսիոսը և Կոստանդին Ծիրանածինը ոչինչ չգիտեն բժշկի մասին:

Սկզբում Վասիլը չի ընդունում Դանիելիսի շնորհները: Բայց ի վերջո ընդունում է դրանք խոստանալով երկրամասի իշխանությունը, եթե վանականի գուշակության համաձայն ինքը հասնի մինչև կայսերական գահը: Դանիելիսի ընծաները Վասիլն օգտագործում է Մակեդոնիայում կալվածքներ գնելու և իր ազգականների ապագան ապահովելու համար: Այսպիսով «նա, ով հարուստ էր առաքինություններով, հարուստ դարձավ նաև ունեցվածքով և դրամով» - եզրափակում է նրա թոռը[1]:

Կոստանդին Ծիրանածինը միակ պատմիչն է, որը տեղյակ է այդ պատմությանը: Նա պատմում է նաև, որ Վասիլը գահ բարձրանալով Դանիելիսին մայրաքաղաք է բերել տվել և շքեղ ընդունելություն ցույց տվել: Դանիելիսը եկել է ճոխ նվերներով բեռնված: Նա Վասիլից երկար է ապրել: Երբ Լևոնը հաջորդել է Վասիլին, Դանիելիսը նորից է հայտնվել Կոստանդնուպոլսում, նրա հոր նկատմամբ իր կապվածությունը վկայելու համար: Քանի որ նրա որդին՝ Հովհաննեսը արդեն մահացել էր, ապա Դանիելիսն իր ամբողջ կարողությունը կտակում է Լևոն կայսերը: Զենովբիոս պրոտոսպաթարը ուղարկվել էր Նավպակտոս Դանիելիսի ժառանգությունը ստանալու համար[2]:

Սակայն, շատ դժվար է առանձնացնել առասպելական մանրամասներով ծանրաբեռնված այս շարադրանքի պատմական կորիզը: Հետաքրքիր է, որ ճակատագրի քմահաճությամբ որդին հոր պես իր ճանապարհին հանդիպում է մի այրիի: Հայրն ամուսնացել էր Ադրիանուպոլսի մի այրիի դստեր հետ, իսկ որդին բավարարվել էր պատրացի մի այրիի հետ հոգևոր բարեկամությամբ: Ինքը պատմիչը՝ Կոստանդին Ծիրանածինը, կարծես թե մտահոգված է այդ բարեկամական կապով և վախենալով, որ այն կարող է արատավորված լինել շահախնդիր զգացմունքի կամ արգելված սիրո կասկածանքով, նախազգուշացնում է ասելով, որ այրին ցանում էր միայն լավ բերք հավաքելու միտումով: Այդ նախազգուշացումը կասկածը փարատելու փոխարեն ամրապնդում է այն: Վանականի կանխագուշակությունը նույնպես համոզիչ պատճառ չէ, քանի որ այն հորինվել է հետագայում: Եղբայրանալու դրվագը «վերացական» է, քանի որ Դանիելիսի որդին հետագայում Վասիլի մոտ պրոտոստրատորի պաշտոն է ստացել:

Դանիելիսի պատմությունը ճգնում է բացատրել Վասիլի ունեցվածքի ծագումը: Ուստի և կարող է պատահել, որ պատրացի տիկնոջ նյութական միջոցները չափազանցվել են: Ժողովրդական ավանդությունը հակում ունի նշանավոր մարդկանց ներկայացնելու որպես համեստ ծագում ունեցող

[1] Vita Basilii, 226.
[2] Ibid., 317.



անձանց, որպեսզի նրանց անսպասելի վերելքը ճակատագրի աստղի ներքո առավել մեծ հիացմունքի արժանանա: Սակայն բյուզանդական արքունիքը չափազանց քաղաքակրթված ու հանդիսավորություն սիրող արքունիք էր հասարակ գյուղացիների առջև Մեծ պալատի դռները բանալու համար: Իրականում, հակառակ ավանդության, Վասիլը ծագում էր հարուստ մի ընտանիքից, որը Մակեդոնիայում կարողություն ուներ: Դանիելիսն իրականում Վասիլի սիրուհին էր և, անկասկած, ինչ-որ բան ավելացրել էր նրա ունեցվածքին: Իր նյութական ապահովվածության շնորհիվ է, որ նա կայծակնային արագությամբ հաջողության էր հասել մի արքունիքում, ուր հարստությունը շատ մեծ նշանակություն ուներ:

Թեոփիլիցեսը Վասիլի հետ Պելոպոնես էր գնացել Միքայելի և Վարդասի հրամանով: Հետևաբար Վասիլը ծառայում էր Թեոփիլիցեսի մոտ, երբ Վարդասը տիրացավ իշխանությանը (856 թ. սկիզբ):

Միքայելի մոտ ծառայության անցնելուց առաջ, Վասիլը, դեռևս Թեոփիլիցեսի մոտ ծառայելիս, իրեն ճանաչել է տվել պալատում մի բուլղարի հետ ունեցած մենամարտի շնորհիվ: Դրա մասին պատմում է Ծիրանածինը: Վարդասի որդին՝ Անտիգոնոսը, իր հոր պատվին խնջույք էր տալիս Մեծ պալատի դահլիճներից մեկում: Այդ խնջույքին ներկա էր բարձր հասարակությունը. ծերակուտականներ, արքունիքի ավագ աստիճանավորներ, խոշոր ավատատերեր: Մի քանի բուլղար հյուրեր՝ բուլղար թագավորի պատվիրակներ, որոնք այդ ժամանակ մայրաքաղաքում էին, նույնպես հրավիրվածների մեջ էին: Թեոփիլիցեսը՝ Անտիգոնոսի ազգականը, ներկա էր այդ խնջույքին, ինչպես և Կոստանդին պատրիկը՝ Գենեսիոս պատմիչի պապը:

Առատորեն մատուցվող գինին տաքացնում է բուլղարների գլուխը: Նրանք սկսում են իրենց գովաբանել ու հայտարարում են, որ իրենց մեջ կա մի ըմբիշ, որի մեջքը գետնին երբեք չի դիպել: Թեոփիլիցեսը մոտենում է Վարդասին և ասում. «Խայտառակություն կլինի մեզ համար, եթե տանենք նման նվաստացումը. այս պոռոտախոս բուլղարներն իրենց երկիրը վերադառնալուց հետո անդադար կհայտարարեն, որ ոչ ոք չի համարձակվել իր ուժը չափել նրա հետ»: Թեոփիլիցեսը նրանից թույլտվություն է խնդրում կանչել տալու իր ստրատոր Վասիլին, որը միակն էր, որ կարող էր հաղթել այդ բուլղարներին:

Հայտնվում է Վասիլը: Կոստանդին պատրիկը, որը հայ էր, ինչպես և Վասիլը, բարեկամական զգացմունքներից դրդված սկսում է ծղոտ շաղ տալ հատակին, որպեսզի մենամարտի ժամանակ իր հայրենակցի ոտքը չսահի: Մենամարտը նոր էր սկսվել, երբ Վասիլը բռնում է իր հակառակորդին, սեղմում է բազուկներով, գետնից պոկում և մի խուրձ հարդի կամ չոր և թեթև

բռնյա կծիկի պես շուռ է տալիս սեղանի վրա: Ապշած հյուրերը հիանում են Վասիլի ահարկու ուժով և այդ օրվանից մայրաքաղաքը խոսում էր միայն նրա մասին[1]:

Ըստ Գենեսիոսի մենամարտը տեղի է ունեցել ոչ թե Անտիգոնոսի, այլ Թեոփիլիցեսի տանը: Թեոփիլիցեսն էր Անտիգոնոսին և Կոստանդին պատրիկին` պատմիչի պապին, հրավիրել ճաշի: Թեոփիլիցեսը, Վարդասն ու Միքայել կայսրը յուրաքանչյուրն ունեին իրենց ըմբիշները: Թեոփիլիցեսի ճաշն ավարտվում է զվարճությամբ` ըմբիշների մենամարտով: Վարդասի և Միքայելի ըմբիշները հաղթում են Թեոփիլիցեսի մարդկանց: Դրանից հետո էր, որ Վասիլը վճռում է ասպարեզ մտնել իր տիրոջ ինքնասիրությունը փրկելու համար: Կոստանդին պատրիկը նույն դերն է կատարում, ինչ Ծիրանածնի մոտ. նա ծղոտ է շաղ տալիս գետնին` Վասիլին ընկնելուց պաշտպանելու համար: Վասիլի հակառակորդը փորձում է նրան բարձրացնել, բայց ապարդյուն, մինչդեռ Վասիլը բարձրացնում է նրան, կտրուկ շարժումով շուռ է տալիս ու գետին տապալում ոտքի հարվածով, որը կոչվում էր πόδρεξα: Հարվածն այնպիսին էր, որ պարտվածն ուշաթափվում է: Անհրաժեշտ է լինում ջուր ցանել նրա վրա, որպեսզի սթափվի:

Ի տարբերություն Ծիրանածնի, Գենեսիոսը ավելացնում է, որ Անտիգոնոսն այդ ամենը պատմել է իր հորը` Վարդասին, իսկ վերջինս տեղեկացրել է կայսերը: Միքայելը ցանկություն է հայտնել ծանոթանալու քաջ ըմբշի հետ: Նա կանչել է տվել Վասիլին երկու այլ ըմբիշների հետ միասին: Վասիլի արտաքինն այնքան տպավորիչ էր, որ առաջացրել է կայսեր հիացմունքը և վերջինս նրան հարգանք է մատուցել և ծառայության վերցրել որպես ստրատոր[2]:

Այստեղ ոչինչ չի ասվում բուլղարների մասին: Գենեսիոսը նրանց պահել է մեկ այլ մենամարտի համար, որն իբր տեղի է ունեցել, երբ Վասիլն արդեն գահի վրա էր: Բուլղար թագավորը անպարտելի համարվող մի ըմբիշ ուներ: Թագավորը հպարտանում էր նրանով: Նա ըմբշին մայրաքաղաք է ուղարկում ուժը ցուցադրելու համար: Վասիլ կայսրը չէր կարող հանդուրժել, որ օտարականը գար և խայտառակեր հռոմայեցու անունը: Նա վճռում է անձամբ մենամարտել: «Սկյութին» չի հաջողվում նույնիսկ գետնից կտրել Վասիլին: Իսկ Վասիլը բռնում է նրան իր հզոր ձեռքերով, բարձրացնում, գետին է տապալում այնպիսի ուժով, որ բուլղարն ուշագնաց է լինում և սթափվում միայն ջուր, գինի և վարդաջուր վրան ցանելուց հետո. նրա քթից ու ականջներից արյուն էր հոսում[3]:

[1] Vita Basilii, 229.
[2] Genes., 109.
[3] Ibid., 127.



Քանի որ Գենեսիոս պատմիչի պապը` Կոստանդինը, ներկա է եղել մենամարտի տեսարանին, ապա մենք կարող էինք հույս ունենալ, որ նրա թոռն ավելի տեղյակ կլիներ դրան ընտանեկան ավանդությունների միջոցով: Բայց դա այն դեպքը չէ: Նրա հեղինակությունը միանգամայն վարկաբեկված է, համենայն դեպս ինչ վերաբերում է երկրորդ մենամարտի փաստերին, դրանք առաջինի անշնորհք աղավաղումներն են: Նա մանկամտորեն պատկերում է Բյուզանդիայի հզոր կայսերը, եթե կարելի է այսպես արտահայտվել, ըմբշի «համազգեստով»:

Գենեսիոսը սխալվել է նաև ասելով, որ առաջին մենամարտը առիթ է հանդիսացել, որ Միքայելը ճանաչեր Վասիլին ու նրան նշանակեր ստրատորի պաշտոնին:

Գեորգի Շարունակողն ու Կոստանդին Ծիրանածինն այս հարցում համակարծիք են, որ առիթը ներկայացել էր ձիու հայտնի միջադեպի կապակցությամբ:

Առաջին հեղինակը հայտնում է, որ Միքայելի հարսանիքից քիչ անց Բուկելլարյան բանակաթեմի ստրատեգոսը նրան մի հոյակապ, բայց շատ ամեհի նժույգ էր նվիրել: Ձիարշավարանում Միքայելը ցանկանում է հեծնել ձին, բայց մտածում է, որ նախ անհրաժեշտ է նրան զննել, նայել ատամները տարիքն իմանալու համար և ընտելանալ նրա բնավորությանը: Սակայն նժույգն այնքան վայրենի էր, որ ո՛չ Միքայելը, ո՛չ էլ նրա շրջապատից որևէ մեկը չեն կարողանում մոտենալ նրան: Թեոփիլիցեսը, որը ներկա է գտնվում այդ տեսարանին, ասում է կայսերը, որ իր մոտ է ծառայում շատ քաջ, գերազանց ձիավարժ մի երիտասարդ, որը կկարողանար ընտելացնել տաքարյուն նժույգին: Անմիջապես մարդ են ուղարկում Երկաթյա Դռան (Σιδηροπύλη) մոտ երիտասարդին բերելու: Վասիլը գալիս է, համարձակորեն մոտենում է նժույգին, մի ձեռքով բռնում է նրա սանձը, մյուսով տրորում նրա ականջը: Կենդանին զիջում է և գառան պես խելոք է պահում իրեն: Կայսրը հիանալով Վասիլի համարձակությամբ և ճարպկությամբ` խնդրում է Թեոփիլիցեսին իրեն զիջել երիտասարդին: Նա նրան վերցնում է որպես ստրատոր և միևնույն ժամանակ հրամայում է Անդրեաս հետերիարքոսին նրան գրանցել ֆեդերատների ( foederati ) գնդում[1]:

Ծիրանածինը նույնն է պատմում, բայց ներկայացնում է այլ կերպ: Միքայելն ազնվացեղ մի արշավաձի ուներ, բոլոր տեսակետներից գերազանց նժույգ, մի հրաշք: Սակայն ձին մի թերություն ուներ. նա թույլ չէր տալիս սանձել և հենց իրեն ազատ էր զգում, ոչ մեկին մոտ չէր թողնում: Մի օր կայսրը հեծնում է նրան որսի գնալու համար: Նա մեծ արագությամբ մի

[1] Georg. Cont., 816.

նապաստակ է հետապնդում, նետում է նիզակն ու սպանում կենդանուն: Այդ հաջողությունից ոգևորված Միքայելը իջնում է ձիուց որսը վերցնելու: Նժույգը փախչում է: Ոչ մեկին չի հաջողվում բռնել նրան: Զայրացած կայսրը հրամայում է ձիուն բռնելուց հետո կտրել նրա ոտքերը: Վարդաս կեսարը խնդրում է խնայել նժույգին ու չնչին մեղքի համար չենթարկել այդքան դաժան պատժի: Հենց այդ միջոցին միջամտում է Վասիլը: Նա իր տիրոջը՝ Թեոփիլիցեսին, ասում է, որ ինքն ի վիճակի է նժույգին բռնելու, եթե կայսրը թույլ տա: Միքայելի թույլտվությամբ Վասիլն իր ձիուն թողնում է քառատրոփ և, հասնելով փախստական նժույգին, ընթացքից ցատկում է նրա մեջքին ու կանգնեցնում նրան: Այդ քաջագործությունից հիացած Միքայելը խնդրում է Թեոփիլիցեսին՝ իրեն զիջել այդ քաջ տղային և նրան նշանակում է կայսերական ախոռի ստրատոր: Վասիլը շահում է կայսեր բարեկամությունը և քիչ անց բարձրանում է մինչև պրոտոստրատորի աստիճան[1]:

Գեորգի Շարունակողի գրվածքը Ծիրանածնի շարադրանքի համեմատ ունի շատ առավելություններ: Այն պարզ է, իրական, նշված է ինչպես նժույգի նվիրատուն, այնպես էլ իրադարձության տարեթիվը: Ծիրանածինը այն աղավաղել է, ծանրաբեռնել դեկորատիվ մանրամասներով ի վնաս ճշմարտացիության: Առաջին հեղինակի տվյալներով այդ իրադարձությունը տեղի է ունեցել Միքայելի ամուսնությունից «քիչ անց»: Բայց ո՞րն է Միքայելի ամուսնության տարեթիվը: Այն նախորդում է Թեոդորայի վարչապետ Թեոկտիստոսի սպանությանը: Մեր բոլոր աղբյուրները համերաշխ են հայտնելիս, որ Թեոդորայի ու Թեոկտիստոսի կառավարումը տևել է 14 տարի, կամ ավելի ստույգ 14 տարի 1 ամիս և 22 օր: Դա անում է 856 թ., եթե հաշվենք 842 թ. հունվարի 20-ից՝ Թեոփիլոսի մահվանից[2]: 856 թ. մարտ ամսին Թեոկտիստոսը սպանվում է: Թեոդորան հեռացվում է իշխանությունից, այն Վարդասին զիջելու համար: Միքայելի ամուսնությունը տոնվում է Թեոկտիստոսի կենդանության օրոք. ուրեմն այն նախորդել է 856 թվականին: Սկզբնաժամկետը ճշգրտելու համար պետք է ելնել Միքայելի արբունքի հասնելու պահից: Նա ծնվել է 839 թվականին: Նա պետք է որ ամե-

[1] Vita Basilii, 230 et sqq.

[2] **Theoph. Cont.**, 210; **Sym.**, 647; **Georg.**, 801 հաշվում են 14 տարի: Anonymi chronographia syntomos, ed. Boor, p. 101՝ 14 տարի 1 ամիս 22 օր: **Georg. Cont.**, 811՝ տալիս է 15 տարի, իսկ Vita Ignatii, P.G., 105՝ 15 տարի և 8 ամիս: Հարցը լավ է քննարկված Ջ. Բ. Բյուրիի կողմից՝ Rom. Emp., Appendix VII:

Այս տարեթիվը հաստատվում է մի անկախ աղբյուրի նշման շնորհիվ: Ըստ այդ նշումի Միքայելի թագավորության հինգերորդ տարին համապատասխանում է աշխարհագործության 6368 տարուն կամ Ք.հ. 860 թ. և VIII ինդիկտիոնին (**F.Cumont**, Anecdota Bruxellensia, I Chroniques Byzantines):



նաքիչը տասնհինգ-տասնվեց տարեկան լիներ ամուսնության պահին: Չմոռանանք, որ մինչ օրինական ամուսնությունը նա սիրուհի է ունեցել: Այդպես մենք կհասնենք 855 թ., Թեոկտիստոսի մահվանը նախորդած տարվան: Վասիլը նժույգն ընտելացրել է քիչ անց (μετὰ μικρόν), մոտ 855 թ.՝ շատ անորոշ մի արտահայտություն: Ծիրանածնի հաղորդմամբ Վասիլի քաջագործությանը ներկա էր Վարդասը, մի բան, որ մեզ պարտադրում է այդ դեպքը տեղադրել 856 թ. հետո: Ըստ Գենեսիոսի, Վասիլն արդեն Միքայելի ստրատորն էր, երբ առիթ ներկայացավ սանձելու կատաղի նժույգին նույն ճարպկությամբ, ինչպիսի ճարպկությամբ Ալեքսանդր [Մեծն] էր սանձել Բուկեֆալին կամ Բելլերոֆոնը՝ Պեգասին[1]:

Թեոկտիստոսի սպանությունից հետո որոշ ժամանակ Թեոդորան մնացել է պալատում, սակայն Վարդասի դեմ դավեր նյութելու պատճառով հեռացվել է այնտեղից: Դա տեղի է ունեցել 856 թ. հետո, 858 թ. առաջ, նոյեմբեր ամսին՝ Իգնատիոս պատրիարքի անկման տարում: Պատրիարքը հրաժարվել էր ձեռնադրել կայսրուհուն ու նրա դուստրերին: Ինչպես ինքն էր բացատրում, նա պաշտոնից հեռացվել էր այդ պատճառով[2]: Քանի որ պրոտոստրատորը մասնակցել էր այդ դավադրությանը, ապա նա դատապարտվել էր մահվան: Հենց այդ ժամանակ ստրատոր Վասիլը զբաղեցրել է պրոտոստրատորի պաշտոնը[3]: Ծիրանածինը իրավացի է ասելով, որ երկու նշանակումների միջև ընկած ժամանակահատվածը մեծ չի եղել: Հավանական է, որ 856 թ. հեղաշրջումը Վասիլին մղել է ստրատորի պաշտոնին: Թեոփիլիցեսը՝ Վարդասի ու Անտիգոնոսի բարեկամը, կարծես թե մասնակցել էր Վարդասի նախաձեռնությանը: Վասիլը, որը հետևել էր նրան, պարգևատրվել էր կայսերական ստրատորի պաշտոնով, անկախ երևակայական կամ իրական այն քաջագործություններից, որ նրան են վերագրում:

Այսպիսով մենք հաստատ կարող ենք ասել, որ Վասիլը Թեոփիլիցեսից Միքայելին է անցել 856 թվականին:

## III

Քանի՞ տարեկան էր Վասիլը 856 թ., երբ ծառայության անցավ Միքայելի մոտ: Ըստ գերեվարության պատմության, որը մենք քննարկեցինք,

[1] **Genes.**, 110; **J. B. Bury**, Rom. Emp., 167, n. 5, սխալվում է ասելով, որ Գենեսիոսը չգիտի նժույգի միջադեպի մասին: Նա ակնարկում է դրա մասին:

[2] Հռոմի Նիկողայոս պապին հասցեագրված հրովարտակով (**Mansi**, XVI, 296), տե՛ս **J. B. Bury**, Rom. Emp., Appendix VII:

[3] **Georg. Cont.**, 823.

Վասիլը 812-813 թթ. ծնված լինելով, պետք է որ քառասուներեք կամ քառասունչորս տարեկան լիներ: Դա անհնարին է: Անհնարին է, որ ախոռապան տղան լիներ 44 տարեկան, մանավանդ որ նրա տերը տասնյոթ-տասնինը տարեկան երիտասարդ էր:

Բացի դրանից, որ այդ նշումն անհավանական է ինքնըստինքյան, այն հակասության մեջ է գտնվում նույն պատմիչի և այլոց տեղեկությունների հետ:

Թեոփիլիցեսը, ներկայացնելով իր ստրատոր Վասիլին Միքայել կայսերը, նրան անվանում է νεώτερος[1]: Միքայելն իր հերթին Վասիլին ներկայացնում է իր մորը ասելով. «Տես, մայր, ինչ ἄγουρος [«մանուկ»] եմ ես գտել»[2]: Կայսրուհին այդ կապակցությամբ հետևյալ մարգարեական խոսքերն է ասում. «Այս մարդն է, որդիս, որ կործանելու է մեր ընտանիքը»:

Այս անվանումներից և ոչ մեկը չի համապատասխանում 44 տարեկան մարդուն:

Պատմում են նաև, որ Վարդաս կեսարը, որն այդ օրվանից վախենում էր իր կյանքի համար, հաճախ էր խորհրդակցում իր ընկեր ու ազգական, իր կողմից հիմնադրված համալսարանի ռեկտոր, մեծ փիլիսոփա Լևոնի հետ սեփական ապագայի վերաբերյալ: «Ես կանխատեսում եմ, ասում էր Լևոնը, որ ձեր ցեղը կվերացվի մի νεανίσκος-ի կողմից»: Իսկ երբ նա տեսնում է Վասիլին, մատնացույց անելով նրան Վարդասին ասում է. «Սա է այն մարդը, որ կլինի ձեր ժառանգորդը»[3]:

Սա ևս մեկ ապացույց է մեր ենթադրության օգտին. νεανίσκος արտահայտությունը նույնպես չի համապատասխանում քառասունչորս տարեկան մարդուն: Այն տպավորությունը, որ առաջացնում են Վասիլի քաջագործությունները և դրանց հետևանք հանդիսացող համընդհանուր հիացմունքը բացատրվում են նրա ծայրահեղ երիտասարդությամբ: Քառասունչորս տարեկան տղամարդու համար այնպիսի քաջությունը, ինչպիսին էր փախստական ձիուն սանձելը կամ ըմբիշին գետնահարելը ոչ մի արտակարգ և առավել ևս սենսացիոն բան չէր պարունակում, որպեսզի կարողանար նրան համարում բերել ու մեծարանքի ճանապարհը բանալ: Բայց եթե խոսքը քաջ պատանու մասին է, որը մի ձիու վրայից ցատկում է մեկ այլ ձիու վրա, ինչպես tragoudia-ների մի հերոս, ապա հիացմունքը չափազանցված չի կարող լինել: Հենց դա էլ տեղի է ունեցել Վասիլի դեպքում:

Բացի այդ, անհավանական է թվում, որ Միքայելը, որն այդքան երիտասարդ էր, ընկերակցեր, թեկուզ և իր ախոռում, մի մարդու, որը նրանից

[1] Georg. Cont., 821.
[2] Idem, δεῦρο, ἴδε, μῆτερ, οἷον ἄγουρον νῦν ἐπελάβομην.
[3] Vita Basilii, 232.



մեծ էր ավելի քան կրկնակի անգամ: Հակառակը, ավելի բնական կլիներ մտածել, որ նրանք հասակակիցներ էին:

Ասում են, որ Միքայելը չար կատակ էր թույլ տվել իր բարեկամ Վասիլի նկատմամբ: Վասիլի թագադրման նախօրյակին՝ 866 թ. մայիսի 21-ին, Միքայելն իր ապագա կայսերակցին պառկեցրել էր գետնին, վերցրել մտրակը և դրանով երեսուն հարված էր հասցրել նրան: Վասիլը սարսափում է, սակայն ծաղկուն տարիքում լինելով՝ դիմանում է այդ փորձությանը[1]:

Ի՞նչ է նշանակում այդ մանկական տեսարանը կայսերական պալատում: Դա, անկասկած, խորհրդանշական պատիժ էր: Հավանաբար լրացել էր Վասիլի երեսուն տարին և նրա բարեկամը տոնում էր դա՝ նրան նույնքան մտրակի հարված հասցնելով: Դա տարօրինակ է թվում, սակայն միևնույն ժամանակ համապատասխանում է երիտասարդ միապետի կենսուրախ բնավորությանը, որը միշտ պատրաստ էր կատակելու: Բացի այդ, այն նշումը, որ Վասիլը ծաղկուն տարիքում էր հիշարժան օրվա նախօրեին, բավական է նրան մոտավորապես երեսուն տարի տալու համար, նույնիսկ, եթե առաջարկված ենթադրությունը չընդունվի:

Եթե 866 թ. մայիսի 25-ին Վասիլը երեսուն տարեկան էր, ապա նա ծնվել է 836 թ. մայիսի 25-ին: Դա հենց գերությունից վերադառնալու տարին է:

Ինչպես տեսանք, պատմիչը պնդում է, որ Վասիլն այդ պահին քսանհինգ տարեկան էր: Ուրեմն, նա սխալմամբ նրա ծնունդը դրել է գերության սկզբում, վերջում դնելու փոխարեն: Կոստանդին Ծիրանածինը կարծես թե իրականության աղոտ զգացողություն ունի. գերիների վերադարձի ժամանակ Վասիլը նրա մոտ շատ փոքր է, բայց միևնույն ժամանակ գերությունից վերադառնալու պահը նա շատ է մոտեցրել գերեվարման տարեթվին:

Մեր մեկնաբանությամբ, Վասիլը պետք է որ քսան տարեկան լիներ, երբ որպես ստրատոր ծառայության էր մտել կայսեր մոտ՝ տարիք, որը համապատասխանում է ախոռում աշխատող տղային և տասնյոթ տարեկան կայսեր ընկերոջը:

*Մենք դեռ առիթ կունենանք վերադառնալու այս հարցին:* Սակայն առայժմ հետևենք Վասիլի առաջխաղացմանը:

Բյուզանդացիները մեծ նշանակություն էին տալիս ամեն տեսակ նախանշանների: Ստրատոր և պրոտոստրատոր Վասիլի կյանքը լեցուն է դրանցով, անկասկած այն պատճառով, որպեսզի ի սկզբանե արդարացվեին նրա կատարվելիք հանցագործությունները: Մարգարեական ունակու-

[1] Genes., 112: ὁ Βασίλειος καταπλήττεται, ὅμως νεανικὸς ὢν τῆς ἐκπλήξεως ἀνακτᾶται (Νεανικός ավելի շուտ նշանակում է «քաջ», քան «երիտասարդ») (3):

թյուններով օժտված Թեոդորան իր վախն է արտահայտել, երբ Միքայելը նրան է ներկայացրել Վասիլին, ասելով. «Ահա այն մարդը, որդիս, որը կկործանի մեր ընտանիքը»[1]:

Ըստ Գենեսիոսի, Միքայելը մորն է ներկայացրել Վասիլին առաջին մենամարտից հետո: Նրա մայրն աչքերը հառել է Վասիլին ու բացականչել. «Որդիս, որքան երջանիկ կլինեի ես, եթե երբեք տեսած չլինեի այս մարդուն. նա կկործանի մեր ընտանիքը, ինչպես կանխագուշակել է քո հայրը»[2]:

Կոստանդին Ծիրանածինը բերում է երկու համանման դրվագ, եթե չհաշվենք Լևոն Իմաստասերի դեպքը, որը ներկայացրել ենք վերը: Առաջինը վերաբերում է Վարդասին, երկրորդը՝ Թեոդորային:

Մի օր Միքայելը որսի է գնում Փիլոպատիոն կոչվող վայրը: Վասիլը որպես պրոտոստրատոր գտնվում էր շքախմբի գլխամասում, նա իր գոտու վրա bardoukion (վարզ) էր կրում: Շքախմբի աղմուկից մի գայլ է անտառից դուրս գալիս: Բոլորը վախից դողում են: Վասիլն անմիջապես գործի է դնում իր վարզը և ճեղքում վայրի գազանի գլուխը:

Վարդաս կեսարը, որը մասնակցում էր այդ որսին, տեսնելով այդ սխրանքը, ասում է իր մտերիմներին. «Այս մարդը վերջ է տալու մեր ցեղին»[3]:

Մեկ ուրիշ անգամ Միքայելը որսի էր Արմամենտորիայում: Նա ճաշկերույթ է կազմակերպում և հրավիրում է իր մորը, մոտ ազգականներին ու մի քանի ծերակուտականների: Վասիլ պրոտոստրատորը նույնպես մասնակցում էր այդ ճաշկերույթին: Երբ Վասիլը նստում է, Թեոդորան՝ կարծես ցանկանալով իմանալ նրա գաղտնիքը, նրան երկար նայելուց հետո հանկարծ երերում է աթոռի վրա ու վայր ընկնում: Նրան սթափեցնում են՝ վրան վարդաջուր ցանելով: Հյուրերն անհարմար զգալով թողնում են սեղանը: Միքայելը մոտենում է մորը և հարցնում ուշաթափության պատճառի մասին:

Հուզված կայսրուհին հայտնում է իր կանխազգացման մասին. «Ինձ թվում է,- ասում է նա,- որ այս մարդն է, որ կործանելու է մեր տունը: Ես լսել եմ, որ քո հայր Թեոփիլոսը կանխագուշակել է, որ ինչ-որ մեկը կործանելու է մեզ: Որոշ նշաններ կարծել են տալիս, որ Վասիլը դառնալու է մեր ժառանգորդը: Ինձ թվաց, որ ես իմ աչքերով տեսնում եմ մեր անկումը: Այդ զգացումն ինձ այնքան հուզեց, որ ես ուշագնաց եղա»:

Միքայելը փորձում է հանգստացնել մորը. «Քո կասկածներն անհիմն

[1] Georg. Cont., 821.
[2] Genes., 109.
[3] Vita Basilii, 232. **Genesius**, 128 նույնպես ծանոթ է Վասիլի այդ սխրանքին և հակիրճ ձևով պատմում է, թե ինչպես նա սկզբում մի եղջերու, իսկ հետո մի մեծ գայլ է սպանում. հմմտ. **H.Grégoire**, "*Byzantion*", *VII*, 490 *sqq*.



են, մայր: Սա ընդամենը սպասավոր է, անկիրթ մի մարդ, որին բնությունն օժտել է արտակարգ ուժով, ինչպես հին Սամսոնին. ընդամենը մի Ենովք կամ Նեբրովթ, որ ծնվել է մեր ժամանակաշրջանում: Քո վախն ու տագնապն ունայն են»:

«Այսպիսով Վասիլը խուսափեց փորձությունից երկնային Նախախնամության շնորհիվ»,- եզրակացնում է նրա թոռը[1]:

Պաշտոնանկ Հովհաննես պատրիարքը, ասում են, նույնպես կանխագուշակել է Վասիլի բարձր դիրք գրավելը[2]: Այս կարգի հնարանքները վկայում են Վասիլի վայելած հաջողության մասին, նրա պրոտոստրատոր եղած ժամանակ, բայց չեն բացատրում այդ հաջողության պատճառները: Չի հիշատակվում և ոչ մի իրական փաստ, որը մեզ կբացահայտեր նրա առաջխաղացման գաղտնիքը: Ամեն ինչ հանձնված է բախտին: Պատահականությունը նրան բարձրացնում է մինչև սենեկապետի՝ պարակիմոմենոսի, պաշտոնը, ինչպես որ եղել էր պրոտոստրատորի պաշտոնի դեպքում, առանց որևէ ջանքի շահագրգիռ անձի կողմից: Դամիանոսը՝ մի ներքինի, որը պարակիմոմենոս էր այդ ժամանակշրջանում, օգնել էր Վարդասին՝ Թեոկտիստոսին տապալելու հարցում՝ վերջինիս պաշտոնը գրավելու հույսով: Չստանալով սպասելիքը, նա գժտվել է Վարդասի հետ: Փառասիրությունը կործանել է պարակիմոմենոսին: Զրկվելով պաշտոնից՝ նա ստիպված էր իր դյուրաբորբոքության հետևանքները քավել վանական առանձնության մեջ: Կայսրը նրա պաշտոնին է նշանակել Վասիլին: Այս պատմության մեջ Վարդասն արդեն կեսար է. նա կրում էր այդ կոչումը 862 թ. ապրիլի 26-ից: Վասիլի նշանակումը պարակիմոմենոսի պաշտոնին հաջորդում է այդ թվականին: Միաժամանակ Վասիլն արժանանում է պատրիկի պատվաստիճանին:

Վարդասը գործել էր հօգուտ Վասիլի, առանց գիտակցելու այդ բանը և գործել էր իր կորստյան համար: Շուտով նա հասկանում է, «որ ինքը քշել էր աղվեսին (Դամիանոսին) և նրա տեղն առյուծ (Վասիլին) էր դրել, որն իրենց բոլորին պետք է խժռեր»: Արդեն ուշ էր գործած սխալն ուղղելու համար: Վասիլի դիրքը ծանրակշիռ էր դարձել: Նրա վարկը կայսեր մոտ գնալով մեծանում էր: Այն արդեն գերակշռում էր Վարդասի վարկին: Երկու մրցակիցների միջև բախումն անխուսափելի էր: Վարդասը բավականաչափ հեռատես էր իրեն սպառնացող վտանգը կանխազգալու համար: Վասիլը

[1] Vita Basilii, 233. Իր ամուսնու գուշակության վերաբերյալ Թեոդորայի արած ակնարկը հենվում է այն բանի վրա, որ ժամանակին մի կախարդ սարակինոսուհի, որին դիմել էր Թեոփիլոսը, պատասխանել էր, որ նրանից հետո կթագավորեն նրա կինն ու որդին, իսկ հետո իշխանությունը կանցնի Մարտինակոսների ընտանիքին (**Theoph. Cont.**, 121): Վասիլի կինը՝ Եվդոկիան, այդ ընտանիքից էր:
[2] **Theoph. Cont.**, 122.

գիտեր, որ իսկական տերը ոչ թե Միքայելն էր, այլ ամենակարող Վարդասը:

Կոստանդին Ծիրանածինն ասում է, որ Վարդասը սկսել էր դավեր նյութել Վասիլի դեմ, սակայն իզուր, որովհետև «անհնարին է փոխել այն, ինչ Նախախնամությունն է որոշել»[1]: Դա, անկասկած, ասված է իրականությունը քողարկելու համար, իսկ իրականությունն այն էր, որ դավադիրը Վասիլն էր: Վերջինիս հաջողվում է սկզբում իր կողմը գրավել ավագ լոգոթետես Սմբատիոսին՝ Վարդասի բարեկամին ու փեսային, նրան խոստանալով կեսարի պաշտոնը՝ հենց որ վերջինս տապալվի: Վասիլը Սմբատի միջոցով հասկացնել է տալիս կայսերը, որ կեսարը գաղտնի չարագույժ ծրագրեր է մշակում նրա կյանքի դեմ, գահին տիրանալու համար: Այդ զրպարտիչ մերկացումները թունավորել էին Միքայել կայսեր միտքը: Նա ձեռք է մեկնում իր ամենահաստատուն հենարանի՝ իր քեռու, թշնամիներին: Նա սպանում է նրան առանց մտածելու, որ իր կատարած չարագործությունը, միևնույն ժամանակ մի սխալ էր, որը պետք է հանգեցներ իր սեփական անկմանը:

Վարդասի սպանության պարագաները վրդովեցուցիչ են: 866 թ. գարնանը Միքայել կայսրը զորքի հետ ճամփա է ընկնում Թրակեսիոն բանակաթեմը գնալու համար և բանակում է Մեանդրոսի հովտում՝ Kῆπος կոչվող վայրում: Կայսրն ասում էր, որ գնում էր կռվելու Կրետեի մահմեդականների դեմ: Արդյո՞ք դա լուրջ ռազմական միջոցառում էր, թե՞ կանխամտածված սպանությունը մայրաքաղաքից դուրս իրագործելու համար նախաձեռնված արշավանքի կեղծակերպում, մենք չգիտենք[2]:

Վարդասը կործանվեց իր հակառակորդի կազմակերպած խարդավանքի հետևանքով[3]: Մենք դրա մասին մանրամասնորեն խոսել ենք այլ տեղ (4): Հիշենք միայն, որ Գեորգ Վանականի Շարունակողը սպանության հեղինակներ է համարում Սմբատին ու Վասիլին. Գենեսիոսը Վասիլի անունը չի տալիս, իսկ Կոստանդին Ծիրանածնի կարծիքով իսկական մեղավորը հենց ինքը՝ կայսրն էր, մինչդեռ Վասիլն իր սուրը հանել էր միայն Միքայելի հրամանով և նրան պաշտպանելու համար: Գենեսիոսը պաշտպանի ազնիվ դերը վերապահել է հայ Կոստանդինին: Այսպիսով երկու պատմիչներն էլ պաշտպանում են իրենց նախնիներին և ոչ թե պատմական ճշմարտությունը:

Միքայել կայսրն անմիջապես նամակով տեղեկացրել է Փոտ պատրիարքին Վարդասի սպանության մասին: Պատրիարքը նրան խորհուրդ է տվել առանց հապաղելու վերադառնալ մայրաքաղաք: Կասկածից վեր է, որ

[1] Vita Basilii, 235.
[2] Տե՛ս պարոն Ա. Գրեգուարի հոդվածը ["Byzantion"-ի] սույն համարում [t. VIII], էջ 526:
[3] Vita Basilii, 232.



նա չէր վստահում Վասիլին ու վախենում էր, որ կայսրն ինքը կարող էր զոհ գնալ նրա փառասիրությանը: Միքայելը վերադառնում է Կոստանդնուպոլիս: Մեկ ամիս անց Վասիլը հայտարարվում է Միքայելին թագակից կայսր:

Թագադրության նկարագրությունը պահպանվել է:

866 թ. մայիսի 26-ին, Հոգեգալստյան տոնի օրը՝ շաբաթ երեկոյան, կայսրը Ռենտակիոս պրոտովեստիարիոսին ուղարկում է պատրիարքի մոտ՝ Վասիլին թագադրելու համար նախապատրաստություն տեսնելու հրամանով: Հաջորդ օրը եկեղեցում երկու գահ էին նախապատրաստել: Ժողովուրդը դրանց զարմանքով էր նայում, առանց հասկանալու, թե ո՞ւմ էր հարկավոր երկրորդը: Շուտով հայտնվում է կայսրը, նրան է հետևում Վասիլը, որը ձեռքին ուներ մի քղամիդ (σκαραμάγγιον) և սուր, քանի որ նա վարում էր սենեկապետի պաշտոնը: Կայսրը ներս է մտնում թագավորական դռնով առանց թագը հանելու և մոտենում բեմին: Նա նստում է գահին: Վասիլը գրավում է իր տեղը կայսեր գլխավերևում: Քիչ հեռու շարքով կանգնում են լոգոթետես Լևոն Կաստորը, Անգուրիս կոչեցյալ Միքայել պրեպոսիտոսը և կուսակցությունների ղեկավարներն (δήμαρχοι) իրենց համախոհների հետ:

Լևոն լոգոթետեսը ընթերցում է կայսերական հրովարտակը, ուր գրված էր հետևյալը. «Վարդաս Կեսարը դավեր էր նյութում ինձ վերացնելու համար: Այդ նպատակով նա ինձ դուրս տարավ քաղաքից: Եթե Սմբատն ու Վասիլը ինձ չպաշտպանեին, ես կենդանի չէի լինի: Վարդասը զոհ գնաց իր չար ծրագրերին: Այժմ ես ցանկանում եմ, որ ավագ սենեկապետ Վասիլը, որն անձնազոհաբար պաշտպանեց իմ հեղինակությունն ու իմ նկատմամբ վկայած իր սիրով փրկեց ինձ թշնամուց, որ նա դառնա իմ կայսրության պահապանն ու պաշտպանը և որ նա բոլորի կողմից փառաբանվի որպես կայսր»:

Վասիլը հուզմունքից արտասվում է: Կայսրը գլխից հանում է թագը և տալիս պատրիարքին, որն այն դնում է սեղանին և օրհնում: Սենեկապետները Վասիլին հագցնում են քղամիդ (διβητήσιον) և երկարաճիտ կոշիկներ (τζάγγια): Վասիլը հանում է քղամիդը և այն փռում կայսեր ոտքերի տակ: Պատրիարքը ոտքի է կանգնում, վերցնում է թագն ու դնում կայսեր գլխին, հետո այն վերցնում է նրա գլխից և ձեռքը տալիս: Կայսրը թագը դնում է Վասիլի գլխին[1]: Ամբոխը ողջունելով բղավում է. «Երկա՜ր կյանք Միքայելին ու Վասիլին»[2]:

[1] Տեքստը պետք է ուղղվի. τῷ βασιλεῖ՝ τῷ Βασιλείῳ-ի փոխարեն, տե՛ս J. B. Bury, Rom. Emp., 175, note 1:
[2] Georg. Cont., 832.

## IV

Սմբատը՝ Վարդասի փեսան, հույս ուներ իր ծառայությունների դիմաց ստանալու աներոջ պաշտոնը: Բնականաբար նա զայրանում է տեսնելով, որ Վասիլն իրեն գայթակղել է: Նա պայմանավորվում է Գեորգիոսի՝ Պեգանեսի որդու, հետ և հաջորդ օրը[1] ստրատեգոսի պաշտոն է պահանջում: Նրա պահանջը մերժվում է: Ավելին, նա զրկվում է լոգոթետեսի պաշտոնից, որը տրվում է ոմն Գումերի[2]: Գեորգիոս Պեգանեսը նշանակվում է Օպսիկիոն բանակաթեմի ստրատեգոս: Գեորգիոսն այդ նշանակումից դժգոհ է մնում և միանում Սմբատին՝ Վասիլի դեմ: Նրանք սկսում են գրգռել բնակչությանը և դաշտերն ու խաղողի այգիները այրել ի նշան բողոքի Վասիլի նշանակման դեմ: Երկու կայսրերի ստորագրությամբ նամակ է ուղարկվում բանակաթեմերի ստրատեգոսներին՝ խռովարարների բռնությունների վերջ տալու հրամանով: Այդ գործը հանձնարարվում է Նիկեփորոս Մալեինոսին: Այս զորավարը կիրառում է որքան զգույշ, նույնքան ազդեցիկ մարտավարություն: Նա զորքերին դիմում է մի շրջաբերականով, որով նրանց հանձնարարում է գործել անաղմուկ և խռովությունը ճնշել ավելի շուտ խորամանկությամբ, քան ուժով, որպեսզի այդ շարժումը չվերածվի քաղաքացիական պատերազմի: Քիչ անց Գեորգիոս Պեգանեսը բանտարկվում է: Մայրաքաղաքի պրեֆեկտը՝ Կոստանդին Միարեսը, հրաման է ստանում նրան կուրացնելու և փայտյա ափսեն ձեռքին կանգնեցնելու փողոցում անցորդներից ողորմություն խնդրելու: Երեսուն օր հետո նույն Նիկեփորոս զորավարը հայտնաբերում է Սմբատին Կելցենեի (Եկեղյաց գավառի) իշխանատներից մեկում և նրան տանում մայրաքաղաք: Նա կանգնում է կայսեր առաջ Ս. Մամաս պալատում: Պատմում են, որ դժբախտ Գեորգիոս Պեգանեսը նույնպես պալատ է տարվում. նրան ստիպում են խեցու մեջ ծծումբ վառել ու որպես բուրվառ պահել Սմբատի առջև: Հետո վերջինիս մի աչքը կուրացնում են, հատում են մի բազուկը և այդ վիճակում նրան նստեցնում են Լավսոս պալատի առջև, թևի տակ մի աման, որպեսզի անցորդները նրան, որպես մի մուրացկանի, նետեին իրենց լումաները: Երեք օր անց երկու մեղսակիցներն իրենց տներն են ուղարկվում և առնվում հատուկ հսկողության տակ[3]:

Ըստ մեկ այլ վարկածի, Սմբատն իբր հրաժարվել էր քաղաքում մնալ ու խնդրել էր իրեն նշանակել Թրակեսիոն բանակաթեմի կառավարիչ: Այդ

[1] «Հաջորդ օրը» (τὸ ἐπαύριον) մենք հասկանում ենք Գեորգիոսի հետ նրա հանդիպելու, և ոչ Վասիլի նշանակման հաջորդ օրը, ինչպես ընդհանրապես ընդունված է կարծել:
[2] Տե՛ս Գույերի. հմմտ. "Byzantion", VIII (1932), p. 719:
[3] Georg. Cont., 833.



խնդրանքը կատարվում է, իսկ Գեորգիոս Պեգանեսը ստանձնում է Օպսիկիոն բանակաթեմի կառավարումը: Նիկեփորոս Մալեինոսը չի հիշատակվում, չի հիշատակվում նաև Կելցենե (Եկեղյաց) գավառը: Սմբատին իբր բռնում են Πλατεῖα կոչվող ամրոցում[1]: Պեգանեսը քաշվում է Cotyaeum (այսօր **Kutaya**):

Այս տեղեկությունների հեղինակը՝ Կոստանդին Ծիրանածինը, պնդում է, որ Վասիլը ներել էր երկու ապստամբներին: Նա նույնիսկ նրանց հրավիրում էր կայսերական սեղանին[2]:

Գենեսիոսը լռում է այդ ամենի մասին:

Կայսերական պատվաստիճանի համատեղ կրումը երկար չի տևում: Մեկ տարի և մի քանի ամիս անց Վասիլը սպանում է Միքայելին ու տիրանում գահին: Նա դառնում է կայսրության միակ տիրակալը:

Եթե հավատալու լինենք Ծիրանածնին, ապա պետք է ընդունենք, որ Միքայելն ընդամենը «ողորմելի մեկն» էր: Պատանի հասակից նա անձնատուր էր եղել վայելքներին: Վարդասի ժամանակ նա չէր հետաքրքրվում երկրի կառավարմամբ: Վայելքներն ու սիրային պատմությունները նրան ավելի էին գրավում, քան պետական գործերը: Նա հատկապես սիրում էր ձիարշավը: Ս. Մամաս պալատն ուներ իր ձիարշավարանը, ուր կայսրը մրցումների էր մասնակցում: Պատմում են, որ մի օր մրցումների ժամանակ հայտնում են, որ արաբները անցել են սահմանը: Լևոն Իմաստասերը մի մեքենա էր ստեղծել. մի տեսակ ժամացույց, որն ամեն անգամ, երբ արաբները անցնում էին սահմանը, գրանցում էր Կիլիկիայից մայրաքաղաք հաղորդված ազդանշանը: Միքայել կայսրն իբր հրամայել էր թաքցնել տհաճ նորությունն ու այն հրապարակել միայն մրցումներից հետո:

Բոլոր այս տարօրինակ պատմությունները, որ պատմում են Միքայելի մասին, կասկածի առիթ են տալիս: Կայսրը շատ էր սիրում փոքր-ինչ մանկամիտ կատակներ ու խաղեր: Նրա բարեկամն ու խաղերի անբաժան ընկերակիցն էր մի ծաղրածու, որն ավելի հայտնի էր Գրիլլոս («խոճկոր») մականունով, քան իր իսկական Թեոփիլոս անվամբ: Միքայելը նրան Հիմերիոս էր կոչում: Նրանց կազմակերպած զվարճանքներն ու անպատկառ խաղերը երբեմն սրբապիղծ բնույթ էին կրում: Հիմերիոսը հագնում էր պատրիարքի, Միքայելը՝ Կողոնեայի[3] արքեպիսկոպոսի, իսկ տասնմեկ հոգի՝ եպիսկոպոսի հանդերձանք ու բոլորը միասին ծաղրական ձևով նմանակում էին սուրբ պատարագը, ձեռնադրության ու կարգալուծության ծեսերը:

[1] Այդ ամրոցը որոշակի դեր է խաղացել նաև Կոստանդին Դուկասի (Theoph. Cont., 421) և Վարդաս Սկլերոսի (Cedr., 434) ապստամբությունների ժամանակ:
[2] Vita Basilii, 238.
[3] Քաղաք Փոքր Հայքում, այսօր Կարահիսար, կամ ավելի շուտ Կոյլիհիսար:

Ասում են, որ նրանք այնքան հանդուգն էին, որ պղծում էին նույնիսկ հաղորդության խորհուրդը, որպես հաղորդություն բաժանելով մանանեխ ու քացախ: Նրանք չէին խնայում նույնիսկ պատրիարքի արժանապատվությունը: Մի անգամ, երբ Իգնատիոս պատրիարքը առաջնորդում էր մի թափոր, հանկարծ նրա առջև հայտնվում է մեկ այլ պատրիարք՝ ավանակ հեծած ու շրջապատված իր սպասավորներով, որոնց կենտրոնում էր Միքայելը: Այդ ծաղրածուները պատրիարքին ընդառաջ են գալիս երգ-երաժշտությամբ: Նրանք իրենց աններդաշնակ երգեցողությամբ խաթարում են խսկական երթը:

Միքայելն առանց վարանելու վիրավորում էր իր բարեպաշտ մոր ամենասուրբ զգացումները: Մի օր նա վերջինիս հավատացնում է, որ պալատում նրան է սպասում պատրիարքը և հրավիրում է մորը գալու և ստանալու նրա օրհնությունը: «Պատրիարքը» կայսերական հռչակավոր ծաղրածու Թեոփիլոս-Գրիլոսն էր, որը պատրիարքի հանդերձանք հագած նստած էր Միքայելի կողքին, գահի վրա: Կայսրուհին գալիս է ու ողորմելի խեղկատակին իրական պատրիարքի հետ շփոթելով, ծունկի է իջնում նրա օրհնությունը ստանալու համար: Այդ պահին կեղծ պատրիարքը մեջքն անում է նրա կողմն ու անպարկեշտ ձայն հանում: Կայսրուհին հեռանում է ամոթից կարմրած, անիծելով իր անարժան որդուն[1]:

Ասում են, որ Միքայելը սիրում էր կրկնել, որ Հիմերիոսն է իր պատրիարքը, Փոտը՝ Վարդասինը, Իգնատիոսը՝ քրիստոնյաներինը[2]:

Կոստանդին Ծիրանածինը, անկասկած, չափից ավելի է անվանարկել Միքայելին, նպատակ ունենալով, հավանաբար, արդարացնելու Վասիլի հանցագործությունը: Միքայելի անվայել վարքագծին վերաբերող բոլոր այս պատմությունները չափազանցված են, եթե ոչ հորինված ամբողջական կտորներով: Պետք է ասել՝ մենք գիտենք վստահելի աղբյուրներից, որ Կոստանդնուպոլսի փողոցները միշտ չէ, որ զերծ էին նման խայտառակ տեսարաններից: 869 թ. եկեղեցական ժողովի ժամանակ հիշատակվում են մայրաքաղաքի փողոցներում ընթացող զվարճալի երթերը: Բայց ժողովի փաստաթղթերում չի նշվում Միքայելի անունը. հանցավորները ծերակուտական դասին պատկանող աշխարհիկ անձինք էին: Նրանք իրենց մազերն այնպես էին հարդարում, ինչպես ընդունված էր հոգևորականների մեջ, հագնում էին եպիսկոպոսական հանդերձանք և ձեռնադրության ու կարգալուծության ծեսերն էին ծաղրում: Եկեղեցական ժողովը հանդիմանում է Փոտ պատրիարքին նման ծաղրական երթերը վճռական միջոցներով չխափանելու համար[1]:

Մեկ այլ, ավելի անկողմնակալ աղբյուր տեղեկություն չունի Միքայելի բոլոր այս խայտառակ արարքների մասին: Մենք այդ աղբյուրին ենք պարտական երիտասարդ ու դժբախտ կայսեր սպանության սարսափելի մանրամասների համար:

Ս. Մամաս պալատի կրկեսում Միքայելը ձիարշավ էր կազմակերպել: Գենեսիոս պատմիչի պապը՝ Կոստանդինը, և երկու այլ անձինք՝ Ագալիանոսն ու Կրասասը պետք է մրցեին Միքայելի հետ: Նրանք համապատասխանաբար ներկայացնում էին չորս խմբավորումներ՝ «Կապույտներ»-ի, «Սպիտակներ»-ի, «Կանաչներ»-ի ու «Կարմիրներ»-ի: Հասկանալի է, որ հաղթում է կայսրը: Այդ կապակցությամբ նա մի խնջույք է կազմակերպում, որին հրավիրում է Վասիլին ու նրա կնոջը՝ Եվդոկիա Ինգերինային: Ճաշի ժամանակ Վասիլիսկիանոս անունով մի պատրիկ գովաբանում է կայսերը ձիարշավի ժամանակ ցուցաբերած ճարպկության համար: Ոչ մի գովեստ չէր կարող ավելի տեղին լինել:

Միքայելը, զմայլվելով Վասիլիսկիանոսի խոսքերից, նրան հրամայում է հանել Վասիլից կարմիր կոշիկներն ու ինքը հագնել: Վասիլիսկիանոսը չի համարձակվում այդ բանն անել ու հարցական հայացքով նայում է Վասիլին: Կայսրը վրդովվում է ու հրամայում նրան ենթարկվել իրեն: Չնայած այն բանին, որ Վասիլն իր համաձայնությունը չի տալիս, Վասիլիսկիանոսը, այնուամենայնիվ, հագնում է կարմիր կոշիկները:

Միքայել կայսրն ասում է Վասիլին. «Ազնիվ խոսք, այս կոշիկները նրան ավելի են սազում, քան քեզ: Ես, որ քեզ կայսր եմ հռչակել, չե՞մ կարող արդյոք նրան էլ նույն պատվին արժանացնել»:

Եվդոկիան հասկանում է, որ Միքայելը գրգռված է Վասիլի դեմ ու սխալ է գործում, երբ ասում է արտասվելով. «Չերդ պայծառափայլություն, կայսերական պաշտոնը շատ վեհ է, և մենք անարժան ենք այն կրելու, սակայն չարժե այն այդչափ արժեզրկել»:

Կայսեր պատասխանը մխիթարվելու առիթ չէր տալիս. «Ընկճվելու պատճառ չունես. ես ցանկանում եմ, որ Վասիլիսկիանոսը նույնպես աթոռակից կայսր լինի»:

Վասիլի ինքնասիրությունը վիրավորված էր: Նրան տանջող ցավն ու վրդովմունքն անսահման էին: Երկու ընկերների լավ հարաբերությունները պետք է խաթարվեին, փոխադարձ վստահությունն անհետանում էր: Այս ամենը ծնունդ է տվել մի առասպելի, որի համաձայն, մի օր որսի գնալիս

[1] Vita Basilii, 238.

[2] Vita Ignatii, Migne, P.G. 105, 528; cf. J. B. Bury, East Rom. Emp., p. 163, n. 1.

[1] Mansi, XVI, 169.

Միքայելը հանդիպում է մի վանականի, որը նրան նամակ է հանձնում, որով կայսերը նախազգուշացնում էին, որ Վասիլը դավեր է նյութում նրա դեմ:

Ինքը՝ Միքայելը, որը վախի ու ատելության ճիրաններում էր, իր վտանգավոր աթոռակցից ազատվելու միջոց էր փնտրում: Սակայն Վասիլը կանխում է նրան:

867 թ. սեպտեմբերի 24-ին Վասիլն իր կնոջ՝ Եվդոկիայի, հետ հրավիրված էր ընթրիքի Ս. Մամաս պալատը: Միքայելը հայտնի էր որպես ոգելից խմիչքների սիրահար: Նա արդեն արբած էր, ու Վասիլը, այդ բանը նկատելով, հեռանում է սեղանից ու գնում դեպի կայսեր ննջարանը: Իր դյուցազնական ուժի շնորհիվ նա կարողանում է այնպես ճկել դռան փականքը, որ անհնարին է դառնում սենյակը կողպել: Այդ բանն անելուց հետո նա վերադառնում է սեղանակիցների մոտ ու շարունակում է ճաշել: Քիչ անց կայսրը բարձրանում է աթոռից և, հենվելով Վասիլի ձեռքին, իրեն ուղեկցել է տալիս մինչև իր ննջասենյակը: Վասիլը համբուրում է նրա աջն ու հեռանում: Վասիլիսկիանոսը մնում է սենյակում ավագ հանդերձապահ Ռենտակեսի փոխարեն: Կայսրը վերջինիս այլ սպասավորների հետ միասին որսի էր ուղարկել, որպեսզի նրանք պարենավորեին Թեոդորա կայսրուհու սեղանը, որի մոտ Միքայելը պետք է ճաշեր հաջորդ օրը: Կուբիկուլարիոսներից (սենեկապետ) մեկը՝ Իգնատիոսը, ցանկանում է դուռը կողպել, բայց չի կարողանում: Նրա սիրտը կասկած է ընկնում: Հուսահատությունից նա սկսեց փետրել իր մազերը...:

Գինովցած կայսրը խոր քուն էր մտել: Հանկարծ ննջարանի մուտքի մոտ հայտնվում է Վասիլը շրջապատված իր ընկերակիցներով: Իգնատիոսը դողալով վեր է կենում իր մահճակալից ու փորձում փակել նրանց ճանապարհը: Դավադիրներից մեկը՝ Պետրոս Բուլղարը, Վասիլի թևի տակից սլանում է դեպի կայսեր մահճակալը, սակայն նրա ճանապարհը փակում է նույն Իգնատիոսը:

Իրարանցումից կայսրն արթնանում է: Դավադիրներից մեկը՝ Հովհաննես Խալդը, սրի մեկ հարվածով հատում է կայսեր դաստակները: Մեկ ուրիշը՝ Հակովբիկը, վիրավորում է Վասիլիսկիանոսին ու նրան ետ մղում:

Վասիլի երկու եղբայրները՝ Մարիանոսն ու Սմբատը, նրա զարմիկ Ասիլեոնը, մեկ այլ անձնավորություն Վարդաս անունով, ինչպես նաև Կոստանդին Տոքսարասը հսկում էին կենտրոնական մուտքը: Այսպիսով, Միքայելի սպասավորները հնարավորություն չունեին իմանալու, թե ինչ է կատարվում կայսեր ապարանքում: Մի պահ դավադիրները վարանում են. հարկ կար արդյո՞ք կայսերը սպանել, թե՞ թողնել անդամալույծ վիճակում: Ասիլեոնը հայտարարում է, որ եթե Միքայելը կենդանի մնա, ապա իրենց



դժվար կլինի վրեժխնդրությունից խուսափել: Վասիլի համակրանքը գրավելու համար Ասիլեոնը թափանցում է կայսեր ննջասենյակն ու տեսնում է թևատ Միքայելին, որը մահճակալին նստած կարեկցանք էր աղերսում: Իրեն հուզվել թույլ չտալով, Ասիլեոնը մոտենում է մահճակալին և սուրը մխրճում կայսեր որովայնը:

Դավադիրները շտապում են գրավել Մեծ պալատը: Ծովն ալեկոծված էր: Նրանք իջնում են Ոսկեղջյուրի ափը, հասնում են պարսիկի (կամ ավելի շուտ պարսկահայի)՝ Եվլոգիոսի, տանը, շարժվում դեպի Բուկոլեոն նավահանգիստն ու այնտեղից գրոհում պալատը: Եվլոգիոսն իր լեզվով (հայերեն) ասում է Արտավազդին՝ օտար զորքերի զորավարին, որ Միքայելը սպանվել է և որ պետք է դուռը բանալ Վասիլ կայսերը դիմավորելու համար:

Արտավազդը վազում է պապիասի՝ պալատական պահակի, մոտ ու նրանից խլում բանալին: Անմիջապես հայտնվում է Վասիլը: Նրա առաջին մտահոգությունն է լինում բանալին հանձնել նոր պապիասին՝ Ֆիլեմոն կոչեցյալ Գրիգորին:

Վասիլն անհապաղ մարդ է ուղարկում իր կնոջը՝ Եվդոկիային, Ս. Մամաս պալատից բերելու: Նրան դիմավորում են մեծ շուքով ու պատվով: Միևնույն ժամանակ մյուս Եվդոկիան՝ Միքայելի կինը, Հովհաննես կուբիկուլարիոսի ուղեկցությամբ ետ է ուղարկվում իր ծնողների մոտ: Մեկ այլ կուբիկուլարիոսի՝ Պողոսին, հանձնարարվում է հողին հանձնել Միքայելի դին: Ս. Մամաս պալատը հասնելով՝ Պողոսը հայտնաբերում է դժբախտ միապետի մարմինն իր սիրելի ձիու ծածկոցի մեջ փաթաթած: Միքայելի մայրն ու քույրերն արցունք էին թափում ու ողբում նրա տխուր վախճանը: Պողոսը մարմինը դնում է մի նավակի մեջ, այն տանում Քրիսոպոլիս, որը գտնվում էր ասիական ափին, ու հողին հանձնում մի մենաստանում:

Այսպես Վասիլը դառնում է ինքնակալ միապետ:

Նոր կայսրը Մարիանոսին՝ Պետրոնասի որդուն, նշանակում է քաղաքի պրեֆեկտ ու հրամայում նրան գնալ և քաղաքի հրապարակում հայտարարել, որ Վասիլն այսուհետև միակ կայսրն է: Պետրոնասը՝ նոր պրեֆեկտի հայրը, Թեոդորայի ու Վարդաս կեսարի եղբայրն էր և այն հռչակավոր զորավարը, որը 863 թ. ջարդել էր արաբներին: Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ Մարիանոսը Վասիլի մեղսակիցներից մեկն էր:

Բյուզանդացի պատմիչներին թվացել է, որ դավադիրների ողորմելի մահվան պատճառը երկնային արդարությունն է եղել: Հակովբիկը՝ Վասիլիսկիանոսի սպանողը, կայսեր հետ որս անելիս զոհվում է. նա վայր է գցում իր սուրը, իջնում է ձիուց այն բարձրացնելու համար, սակայն ձին փախչում է ու տրորում տիրոջը:

Հովհաննես Խալդը, որը քևատել էր Միքայելին, նշանակվել էր Խաղտիքի բանակաթեմի ստրատեգոս: Քիչ անց նա ցանկանում է ապստամբել Վասիլի դեմ, բայց վերջինիս հրամանով Անդրեաս զորավարը նրան ցցահան է անում:

Ասիլեոնին, որին ուղարկել էին Քարտոփիլակիոն՝ մայրաքաղաքի արվարձաններից մեկը, գիշերով սպանում են իր սպասավորները:

Պարսիկ Ապելատեսին խժռում են որդերը:

Կոստանդին Տոքսարասը սպանվում է Կիբիրեոտյան բանակաթեմում, որը նա ղեկավարում էր:

Մարիանոսը՝ կայսեր եղբայրը, ձիուց վայր ընկնելով, մահանում է ստացած վերքի բորբոքումից:

Ինչպես տեսնում ենք, Վասիլի բոլոր գործակիցները հայեր էին, ինչպես և ինքը: Վարդասի փեսան՝ Սմբատը, որին բռնում են Կելցենեի (այսինքն՝ հին Ակիլիսենե, հայերեն՝ Եկեղյաց, Երզնկա) շրջանում, հնարավոր է, որ պատկաներ Բագրատունիների տոհմին: Նրա բարեկամ Գեորգիոս Պեգանեսը նույնպես հայ էր: Պեգանեսը, որը իրանական paîgan բառն է և նշանակում է «հետիոտն», «հետևակ», այստեղ օգտագործված է որպես մականուն կամ ազգանուն:

Պետրոս Բուլղարը և նրա զարմիկ Լևոն Ասուրացին նույնպես հայեր էին: Նրանց մականունները ոչ մի կապ չունեն նրանց ծագման հետ, որովհետև բուլղարացու զարմիկը չէր կարող ասուրացի լինել:

Հովհաննես Խալդը ու Կոստանդին Տոքսարասը կարծես թե նույնպես հայեր էին: Առաջինին Խալդ էին կոչում, որովհետև նա ծնվել կամ ծառայել էր Խաղտիքում: Երկրորդը կրում էր նաև Ծիփենարիտես[1] մականունը (5), որը նշանակում է ծագումով Ծիփենարեից:

Թեպետ, Հովհաննես Խալդը կարող էր լինել ծագմամբ խալդ, այսինքն՝ լազ, բայց, քանի որ բոլոր մյուս դավադիրները ծագումով հայեր էին, ավելի հավանական է, որ նա պատկանում էր նույն ազգությանը:

Կոստանդնի ազգանունն էր Տոքսարաս: Այն նմանվում է իրանական մի բառի և դա վկայում է նրա արևելյան ծագման մասին[2]:

[1] Genes., 106. Tziphi, հայերեն ծփի (ծփենի), վրացերեն՝ cip-eli, tziph-eli, ծառի մի տեսակ է նշանակում: Tziph-nari բառը կազմված է այնպես, ինչպես կազմված են mukh-nari՝ «կաղնուտ» (mukha նշանակում է կաղնի), nadzv-nari՝ «սոճուտ», և buckh-nari՝ «թփուտ» բառերը: Tziph-nari-ն հետևաբար նշանակում է «հաճարկուտ»: XVII դարի հեղինակ Գրիգոր Կամախեցին հայտնում է, որ Սև ծովի և Ճորոխ (=Akampsis) գետի միջև ընկած Պարխարի լեռնային շրջանում, Համշենի մոտ մի գյուղ կա Ծփնի անունով («Ժամանակագրութիւն», Երուսաղէմ, 1915, էջ 405):

[2] Լուկիանոս Սամոսատեցին գիտի Անախարսիսի պես իմաստուն մի սկյութի մասին, որի անունն էր Տոքսարիս, որ անկասկած նույնն է, ինչ որ Տոքսարասը: Հավանաբար դա մականուն է, որ տրվել է Կոստանդնին: Տոքսարասը միգուցե ծագում է tava-xšahra բառից, որ նշանակում է «հզոր» կամ «հարուստ կալվածքի տեր» բառից: Մեկ այլ Տոքսարասի՝ Միքայելին, հավանաբար Կոստանդնի որդուն, հանձնարարվել է արաբների հետ հաշտության պայմանագիր կնքել 917 թ. (Theoph. Cont., 388):



Կարևոր է նշել, որ Վասիլի երկու եղբայրներն ու նրա զարմիկը՝ Մարիանոսը, Սմբատը և Ասիլեոնը, մասնակցել էին դավադրությանը: Վասիլը երրորդ եղբայրն էլ ուներ, որի անունն էր Վարդաս: Գեորգ Վանականի Շարունակողը մեզ հայտնում է, որ Միքայելի սպանության մասնակիցների մեջ էին «Մարիանոսն ու Վարդասը՝ Վասիլ ռեկտորի հայրը, Սմբատը՝ Վասիլի եղբայրը, և Ասիլեոնը՝ Վասիլի զարմիկը»[1]:

Ժամանակին փորձել են ապացուցել, որ իբր Սմբատը ոչ թե Վասիլի եղբայրն էր, այլ Վարդասի որդի ռեկտոր Վասիլի եղբայրը և որ Ասիլեոնը իբր նույն ռեկտորի զարմիկն էր[2]:

Աղբյուրները չեն նպաստում այդ ենթադրությանը: Նախ՝ Թեոդորոս Մելիտենացու վկայությամբ «Մարիանոսը, Սմբատն ու Վարդասը Վասիլի եղբայրներն էին, իսկ Ասիլեոնը՝ զարմիկը»[3]: Ըստ մեկ այլ շատ որոշակի վկայության «Ասիլեոնը կայսեր զարմիկն էր»[4]: Հետևաբար Գեորգի Շարունակողը «Վասիլի զարմիկ» ասելով նկատի ունի «Վասիլ կայսեր զարմիկին» և ոչ թե Վասիլ ռեկտորի զարմիկին: Եվ վերջապես, մենք գիտենք, որ Վասիլի երկու եղբայրները թաղված են նրա մոր կողքին՝ Ս. Եվփիմեայի վանքում. «Մարիանոս՝ սխոլերի դոմեստիկոս, և նրա եղբայր Սմբատ, երկուսն էլ Վասիլ՝ քրիստոսասեր կայսեր, եղբայրներ»[5]:

Այն փաստը, որ Վարդասը հիշատակված է որպես Վասիլ ռեկտորի հայր և ոչ թե որպես Վասիլ կայսեր եղբայր, ստիպել է ենթադրելու, որ Սմբատը Վասիլ կայսեր եղբայրը չէր: Քննարկվող նախադասության մեջ ἀδελφός բառը պետք է սրբագրել ἀδελφοί ձևով. «Մարիանոսն ու Վարդասը՝ Վասիլ ռեկտորի հայրը, և Սմբատը՝ Վասիլի ***եղբայրները*** (և ո՛չ ***եղբայրը***)»: Ընդգծված բառը պետք է վերաբերի երեք անձի՝ Մարիանոսին, Վարդասին ու Սմբատին:

Ասիլեոնին անվանում են զարմիկ կամ Վասիլի եղբոր որդի, սակայն նրա հոր անունը նշված չէ: Ո՞ր եղբոր մասին է խոսքը: Արդյո՞ք Վասիլը չորրորդ եղբայր էլ ուներ Մարիանոսից, Վարդասից ու Սմբատից բացի: Դա հնարավոր է, որովհետև, եթե Ասիլեոնը այդ երեք հիշատակված եղբայրնե-

[1] Georg. Cont., 837. Μαριανὸς δὲ καὶ Βάρδας ὁ πατὴρ Βασιλείου τοῦ ῥαίκτορος καὶ Συμβάτιος ὁ ἀδελφὸς Βασιλείου καὶ ᾿Ασυλαίων ἐξάδελφος Βασιλείου.

[2] J.B. Bury, East Rom. Emp., Appendix, p. 458-459.

[3] Theod. Melit., 170. Μαριανὸς ἀδελφὸς αὐτοῦ καὶ Συμβάτιος καὶ Βάρδας ἀδελφοὶ αὐτοῦ, ᾿Ασυλέων ὁ ἐξάδελφος αὐτοῦ.

[4] Georg. Cont., 837. ἐξάδελφος Βασιλείου; Sym., 688: ὁ ἐξάδελφος τοῦ βασιλέως.

[5] De cerim., 648. Μαριανὸς ὁ γεγονὼς δομέστικος τῶν σχολῶν, καὶ Συμβάτιος ὁ ἀδελφὸς αὐτοῦ, ἀμφότεροι ἀδελφοὶ Βασιλείου τοῦ φιλοχριστοῦ δεσπότου.

րից մեկի որդին լինեն, ապա պատմիչները անպայման այդ բանը կնշեին: Ասիլեոնը հունական անուն չէ:

Դավադիրներից երկուսը՝ Եվլոգիոսն ու Ապելատեսը, համարվել են պարսիկներ: Նրանք պարսիկներ չեն: Ավելի հավանական է, որ նրանք պարսկահայեր են:

Վասիլի կողմնակիցներից էր Արտավազդը, որը հետերիարք էր, այսինքն օտար կամավորներից կազմված զորքի զորավար: Արտավազդից առաջ այդ պաշտոնն էր գրավում Անդրեասը, այն մարդը, որը Միքայելի հրամանով Վասիլին ընդունել էր օտար զորքի կազմի մեջ: Ավելի ուշ Անդրեասը ստրատելատեսի (զորահրամանատարի) պաշտոն է ստանում բանակաթեմերից մեկում. նա այդ պաշտոնն էր վարում, երբ հրաման է ստանում ձերբակալելու ապստամբ Հովհաննես Խալդին:

Մարիանոսը՝ Վասիլի եղբայրը, սխոլերի դոմեստիկոս էր, կամ պալատի զորախմբի դոմեստիկոս: Երկու ամենակարևոր զորախմբերը, որոնցից մեկը ղեկավարում էր Մարիանոսը, իսկ մյուսը՝ Արտավազդը, նվիրված էին Վասիլին: Սրանով է բացատրվում 867 թ. սեպտեմբերի 24-ին տեղի ունեցած հեղաշրջումը: Դա անսպասելի իրադարձություն չէր, որի պատճառը լոկ Վասիլի փառասիրությունն էր կամ ճակատագրի քմահաճույքը: Ամեն ինչ նախապատրաստված էր նախօրոք և, անկասկած, երկու զորամասերի նախնական համաձայնությամբ: Ընդհանրապես «արկածախնդիրներին» գահ բարձրացնող բոլոր հեղաշրջումների շարժիչ ուժը պետք է փնտրել այս երկու զորաբաժինների՝ կայսերական անձնազորի կամ սխոլերի և օտար զորքերի, տրամադրվածության մեջ: Այնտեղ մենք տեսնում ենք զուտ հռոմեական մի ավանդույթ, որը հիշեցնում է այն ժամանակաշրջանը, երբ կայսերական գահը գտնվում էր բացառապես բանակի տնօրինության ներքո:

Այն միտումնավոր առասպելները, որոնք հյուսվել են Վասիլի մասին, լինի դա նրան գովաբանելու, թե պարսավելու համար, մեզնից թաքցրել են նրա իսկական ծագումն ու նրա հաջողության պատճառները:

## V

Վասիլի ծագման վերաբերյալ ավանդությունը կապված է Փոտ պատրիարքի անվան հետ: Հազիվ էր Վասիլը գահ բարձրացել, որ Փոտը պաշտոնանկ է արվել՝ 877 թ. ետ կանչվելու համար: Փոտի պաշտոնանկությունը բացատրվում է եկեղեցական այն քաղաքականությամբ, որ Վասիլը հարկ է համարել որդեգրելու: Հռոմի հետ խաղաղությունը պահպանելու նպատակով կայսրը չի վարանել հրաժեշտ տալու պապության թշնամի և պառակտ-



ման հիմնական հեղինակ Փոտին: Ճնորհազուրկ պատրիարքը միջոցներ էր փնտրում իր անհաջողությունը շտկելու համար: Առաջին հերթին անհրաժեշտ էր վերստին նվաճել կայսեր համակրանքը:

Իգնատիոսի կենսագիրը՝ Նիկետաս Պափլագոնացին, պատմում է, որ Փոտը Վասիլին հաճոյանալու համար հորինել է կեղծ, սակայն Վասիլի ինքնասիրությունը շոյող տոհմաբանություն: Պաշտոնանկ պատրիարքը աքսորվել է Σκέπη վանքը: Հենց այնտեղ է ըստ երևույթին, որ նա կեղծել է Վասիլի տոհմաբանությունը, նրան սերելով Ս. Գրիգոր Լուսավորչի համախոհ Տրդատ թագավորի տոհմից: Փոտը բարեկամական հարաբերություններ ուներ կայսերական գրադարանի վարիչ Թեոփանես Սփենոդայմոնի՝ մի վանականի, հետ, որը արքունի հոգևորականներից էր և հայտնի էր իր բանիմացությամբ: Այդ վանականի միջոցով Փոտին հաջողվում է իր աշխատությունը ներմուծել կայսերական գրադարան: Կեղծ ձեռագիրը գրված էր ալեքսանդրյան տառերով, այսինքն ունիցիալով (հույն երկաթագրով): Հեղինակը ջանացել էր դրան տալ շատ հին վավերագրի հնագրական տեսք: Տոհմաբանական շղթան իջնում էր մինչև Վասիլի հայրը, որը պետք է ծներ Բեկլաս անունով մի որդի:

Նույն Նիկետասը մեզ բացատրում է, որ Beclas-ը երևակայական անուն է, որը կազմված է հետևյալ անունների սկզբնատառերից. B(asilios), նրա կին E(udocia), նրա որդիներ C(onstantinos), L(eon), A(lexandros) և S(tephanos), որոնք տալիս են BECLAS:

Մի օր Թեոփանես գրադարանավարը կայսեր պահանջած գիրքը տանելով տեղեկացնում է նրան, որ հայտնաբերել է հին տառերով գրված ու դժվար վերծանելի մի գիրք: Թեոփանեսը նկատի ուներ Փոտի հորինած վավերագիրը: Նա այն ցույց է տալիս կայսերը, նշելով, որ միայն մի մարդ՝ պատրիարքը, կարող է հասկանալ այդ տեքստը: Գիրքն անմիջապես ուղարկվում է Փոտին: Բայց վերջինս հայտարարում է, որ ինքը կարող է խոսել այդ խորհրդավոր գրքի մասին միայն դրան անմիջապես առնչվող անձնավորության, այսինքն՝ կայսեր հետ: Այդ բանն է՛լ ավելի է գրգռում Վասիլի հետաքրքրասիրությունը: Պատրիարքին պալատ են կանչում: Ներշնչված տեսքով նա վերծանում է վավերագիրը, մեծ բավականություն պատճառելով կայսերը[1]:

Այս ծամծմված պատմությունը միայն մի ճիշտ բան է պարունակում. այն, որ Փոտը ջանացել է պարզել Վասիլի ծագումը: Մնացածը որքան հիմար, նույնքան աններելի հերյուրանք է: Փոտը առաջնակարգ գիտնական էր. բացի այդ, նրա երակներում հոսում էր հայի արյունը (նրա մայրը Արշա-

[1] **Nicetas Paphlagon**, Vita Ignatii, **Migne**, P.G., 105, 565-8; **Symeon**, 689.

վիր պատրիկի քույրն էր)[1]. նա վայելել էր հայ Վարդաս Կեսարի անսահման վստահությունը և ամենաբանիմաց մարդն էր Վասիլի տոհմաբանությունն ուսումնասիրելու համար:

Պատրիարքն, անկասկած, այնքան զուրկ չէր երևակայությունից, որ չկարողանար հնարել որևէ ավելի բանական բան, քան BECLAS-ի պես անհեթեթ մի բառախաղ, իսկ Վասիլն էլ այնքան հիմար չէր նման կոպիտ հերյուրանքով խաբվելու համար: Այդ մանկական հնարանքը նույնիսկ ինքնատիպ լինելու արժանիքը չունի:

Նման անարժան մի պատմություն կա Մեթոդիոս եպիսկոպոսի կյանքում: Թեոփիլոսի թագավորության ժամանակ Մեթոդիոսը բանտ է նետվել երկու հանցագործների հետ միասին: Նա այնտեղից դուրս է եկել հետևյալ կերպ: Գրականության և գիտության սիրահար կայսրը իր գրադարանում մի օր մի գիրք է գտնում, որը չի կարողանում վերծանել: Դիմում են Հովհաննես Քերական պատրիարքին և նրա զարմիկ Լևոն Իմաստասերին, սակայն երկուսն էլ խոստովանում են, որ չեն կարողանում այն վերծանել: Կայսրն այնքան է ազդվում, որ կորցնում է ախորժակը: Հենց այդ ժամանակ սենեկապետներից մեկը նրան խորհուրդ է տալիս դիմելու բանտում գտնվող Մեթոդիոսի օգնությանը: Կայսրը հետևում է խորհրդին և սենեկապետը գնում է Մեթոդիոսի ետևից: Բանտարկյալ եպիսկոպոսը տեսնելով նրան՝ գիրքը ձեռքին, բացականչում է. «Բարի գալուստ, եղբայր Հովհաննես (այդպես էր պատվիրակի անունը), ես գիտեմ, որ քեզ Թեոփիլոսն է ուղարկել: Թուղթ ու մելան բեր ինձ»:

Մեթոդիոսը վերցնում է գրիչն ու շարադրում խորհրդավոր գրքի երեք մեկնություն: Կայսրը երջանիկ էր այդ գաղտնիքը պարզելու համար: Հիանալով գիտնական եպիսկոպոսի գիտելիքներով, նա նրան ազատում է բանտից, բնակեցնում է պալատում ու շնորհում իր բարեկամությունը[2]:

Ահա մի պատմություն ևս, որը նույնքան կեղծ է, որքան և նախորդը: Ե՛վ Մեթոդիոսը, և՛ Փոտը հայտնի էին իրենց գիտելիքներով: Այսպիսով, նույն հնարանքը վերագրվում է և՛ մեկին, և՛ մյուսին. նախ՝ նրանց գիտական համբավին արժանին մատուցելու համար, երկրորդ՝ գիտության գերագույն արժեքը ակնառու դարձնելու համար: Այն ներկայանում է որպես մի հզոր ուժ, որի առաջ բացվում են բանտերի ու պալատների դռները:

Մեթոդիոսի միջադեպը նախորդում է Փոտի միջադեպին: Մեթոդիոսի

[1] Նրա մայրը՝ Իրենեն, Արսաբերի (= Արշավիրի) քույրն էր, Theoph. Cont.,175: Ս. Սեն-Մարտենը (Lebeau, VIII, 203) պաշտպանել է Թեոփանեսի Շարունակողի շարադրանքը Կեդրենոսից, որը չի հասկացել իր աղբյուրը: J. B. Bury, East Rom. Empire, p. 156 նույն կարծիքի է հանգում, առանց ծանոթ լինելու Սեն-Մարտենի գործին:

[2] Sym., 643.



կապակցությամբ հորինված պատմությունը փոխանցվել է Փոտին, ոչ այնքան վերջինիս անսահման գիտելիքները ցույց տալու, որքան այդ գիտելիքներն անազնիվ նպատակով օգտագործելու նրա ունակությունը ցուցադրելու համար:

Փոտի թշնամիներն անմասն չեն այդ հերյուրանքից: Սակայն կարծես հենց իրենց էլ այն բավականին ծամծմված և անհամոզիչ է թվացել: Այսպիսով նրանք հնարել են մեկ այլ, է՛լ ավելի ծիծաղելի հեքիաթ, նպատակ ունենալով բացատրել, թե ինչպես է աքսորված պատրիարքը կարողացել ետ նվաճել կայսեր համակրանքը:

Փոտի բարեկամն էր Թեոդորոս Սանդաբարենոս անունով մի վանական: Նա Ստուդիոն վանքից էր: Իր առաջին հայրապետության ժամանակ (858-867) Փոտը նրան նշանակել էր այդ վանքի վանահայր: Բայց Փոտի անկումից հետո նրան այնտեղից քշել էին: Հենց որ Փոտը վերստին գահ է բարձրանում, նա Թեոդորոսին նշանակում է Եվքայիտի եպիսկոպոս՝ Արմենիակների բանակաթեմում:

Թեոդորոս Սանդաբարենոսը հրաշագործի համբավ ուներ: Նրա մոգական արվեստի շնորհիվ Փոտը կարողացել է վերադարձնել Վասիլի համակրանքը: Սանդաբարենոսը Փոտին խորհուրդ է տվել բարեկամական կապեր հաստատել կայսեր սենեկապետներից մեկի հետ, շահել նրա վստահությունն ու նրան խնդրել կայսերական անկողնու վրա շաղ տալ իր՝ Սանդաբարենոսի, պատրաստած ջուրը: Այդ գործողությունը պետք է ունենար ամենաբարենպաստ ելքը. կայսրը պետք է փոխեր իր վերաբերմունքը պատրիարքի նկատմամբ ու նրան վերստին պարգևեր իր հարգանքը: Բացի դրանից, Փոտը այդ սենեկապետի միջոցով պետք է խնդրեր կայսերը ընդունել Սանդաբարենոսին:

Փոտն արել է այն, ինչ նրան խորհուրդ է տվել նրա բարեկամը: Այդ խորամանկության արդյունքն իրեն սպասեցնել չի տվել: Հենց հաջորդ օրը կայսրն իր զավակներին ուղարկել է Փոտի մոտ՝ նրա օրհնությունը ստանալու համար: Իսկույն ևեթ նախկին պատրիարքի վրա ոսկու և այլ նվերների տարափ է տեղացել: Նրան հրավիրել են բնակվելու Մագնավրա պալատում[1]:

Այս պատմությունը պատիվ չի բերում իր հեղինակների երևակայությանը: Սակայն մենք պետք է նրանցից շնորհակալ լինենք պատմության մեջ բանահյուսական մի մանրուք ներմուծելու համար, որը հնարավորություն է տալիս գուշակելու Սանդաբարենոսի արևելյան ծագումը: Նրա անունն արդեն դրա ապացույցն է. այն պատկանում է մականունների նույն

[1] Sym., 689.

կարգին, ինչ և «մանիքեցի», «մանիքեցու որդի» կամ «մոզպետ»: Կախարդանքը, որ նա խորհուրդ է տվել կիրառել Փոտին, քաջ ծանոթ է հայ ժողովրդին. գյուղական երիտասարդությունը հավատում է, որ մահճակալի վրա ջուր ցանելը լավ միջոց է բաղձալիի սերը գրավելու համար:

Այս շարադրանքի համաձայն Փոտի ու Վասիլի հաշտությունը Սանդաբարենոսի կախարդանքի հետևանքն է: Այստեղ խոսք չկա Վասիլի տոհմաբանության մասին: Այս ամենը ոչ մի արժեք չունի:

Վասիլը պատրիարքի գահի վրա Փոտին Իգնատիոսով էր փոխարինել զուտ քաղաքական նկատառումներով: Քանի որ նա ձգտում էր նվաճումների արևմուտքում, ապա նա ստիպված էր լավ հարաբերություններ պահպանել պապի հետ: Գահընկեց պատրիարքը շարունակում էր վայելել կայսեր հարգանքը իր գիտելիքների ու առաքինությունների համար:

Շուտով նա վերադառնալու էր պալատ, այնտեղ էր ապրելու և զբաղվելու Վասիլի զավակների կրթությամբ[1]: Փոտի և կայսերական տան մտերմությունը բացատրելու համար է հավանաբար, որ հորինվել է այդ առասպելական պատմությունը, Փոտին վերագրվող Վասիլի տոհմաբանությունը ներառյալ:

Տարօրինակ է, բայց պատրիարքի իսկական տոհմաբանական աշխատությունը չի պահպանվել: Նրանք, ովքեր այն տեսել են, հաղորդում են մեզ, որ Վասիլը սերվում էր հայոց արքա Տրդատից:

Գենեսիոսը կարծում է, որ Վասիլը սերվում է պարթևների արքա Արշակից ու նրա ժառանգ Տրդատից: Միաժամանակ նա նրան աշխարհագրորեն, եթե այդպես կարելի է արտահայտվել, բարեկամացնում է Մակեդոնական հարստության ներկայացուցիչներ Փիլիպպոսի ու Ալեքսանդրի հետ: Միակ հեղինակը, որը տալիս է Վասիլի տոհմաբանությունը, դա կայսեր թոռն է՝ Կոստանդին Ծիրանածինը: Բայց Կոստանդինը, ինչպես և Գենեսիոսը, չեն հիշատակում Փոտին:

Ըստ այդ տոհմաբանության Վասիլը ծագումով «Մակեդոնացիների երկրից» էր, չնայած որ սերվում էր հայ Արշակունիներից: Առաջին Արշակը, որը թագավորել էր պարթևների վրա ու իր անունը հռչակել սխրանքներով և առաքինություններով, իբր մի օրենք էր հրապարակել, որով արգելվում էր Արշակունիների տոհմին չպատկանող անձանց կառավարել պարթևներին,

[1] Vita Basilii, 276-277: οὐ μὴν οὐδὲ πρὸ τούτου διέλειπε φιλοφρονούμενος αὐτὸν καὶ τιμῶν διὰ τὴν ἐν αὐτῷ παντοδαπῆ σοφίαν τε καὶ ἀρετήν ... ὅθεν κἂν τοῖς βασιλείοις διατριβὴν αὐτῷ δοὺς τῶν οἰκείων παίδων ἀπέδειξε παιδευτὴν καὶ διδάσκαλον [«Բայց և այնպես չդադարեց բարեհաճել նրան և պաշտել՝ բազմազան իմաստության և առաքինության համար ... ինչի պատճառով, թերևս, շնորհեց նրան և թագավորական <ընտանիքի> հետ շփման <պատիվը>՝ նշանակելով նրան սեփական զավակների դաստիարակ և ուսուցիչ»]:



հայերին ու մարերին: Այդ օրենքի համաձայն Արշակի ժառանգները երկար տարիներ կառավարել են այդ ժողովուրդներին: Հայաստանում թագավորած վերջին Արշակունու մահվանից հետո նրա ժառանգների միջև կռիվներ են ծագել:

Նրանցից երկուսը՝ Արտավանն ու Կլեյենեսը (Kleienes), զրկվելով հոր ժառանգությունից, ստիպված են եղել լքել հայրենիքն ու ապաստան գտնել կայսրության մայրաքաղաքում: Այդ ժամանակ կայսերական գահին էր Լևոն I-ը (457-474): Կայսրն ընդունել է փախստական իշխաններին, նրանց շռայլել ջերմության վկայություններ, ներկայանալի բնակարան և իրենց աստիճանին վայել թոշակ նշանակել:

Պարսից թագավորն իմանալով, որ իշխաններն ապաստան են գտել կայսեր մոտ, նրանց հրամայել է վերադառնալ Հայաստան, խոստանալով հետ դարձնել իրենց ժառանգությունը: Այդ միջոցով թագավորը հույս ուներ հայ ժողովրդին պահել իր իշխանության ներքո: Դրա մասին հայտնել են կայսերը: Նա գուշակել է Պարսկաստանի թագավորի գաղտնի ծրագրերն ու հրամայել խոչընդոտել իշխանների վերադարձը, ինչպես պահանջում էին կայսրության շահերը: Կայսեր հրամանով նրանց տեղափոխել են հեռավոր մի վայր՝ Մակեդոնիայի Նիկե քաղաքը, ուր նրանք կատարյալ անվտանգության մեջ են եղել:

Անցնում են տարիներ: Սարակինոսների իշխանությունն ահագնանում է, ու նրանց առաջնորդ էմիր-ալ-մումինինը (amir-al-mouminin) կրկին անդրադառնում է այդ ծրագրին՝ հետ բերել Արշակունի իշխաններին: Նա նրանց գրավոր կերպով առաջարկում է վերադառնալ և տեր կանգնել իրենց նախնիների ժառանգությանը: Այդ ժամանակ թագավորում էր Հերակլիոսը (610-641): Ելնելով քաղաքական նկատառումներից վերջինս նույնպես հակադրվում է խալիֆայի առաջարկին՝ փախստական իշխանների վերադարձը կծառայեր միայն արաբների շահերին. եթե այդ իշխաններն ընդունեին արաբների գերիշխանությունը, ապա հայ ժողովուրդը, որը միշտ նվիրված էր Արշակունիների տոհմին, չէր վարանի նրանց հետևելու՝ մի բան, որ բոլորովին ցանկալի չէր կայսրության համար: Հետևաբար Հերակլիոսը հրամայում է հայ իշխաններին թողնել Նիկե քաղաքը՝ ավելի հեռավոր ու ավելի ապահով Փիլիպպիոն քաղաքը գնալու համար, որը նույնպես Մակեդոնիայում էր գտնվում: Իշխանները որոշ ժամանակ մնում են այնտեղ, իսկ հետո հաստատվում են ավելի բանուկ կենտրոն Ադրիանուպոլսում:

Դարձյալ տարիներ են անցնում: Կոստանդին VI ու նրա մոր՝ Իրենեի (780-797), թագավորության ժամանակ ոմն Մայիկտես, որը սերվում էր Արշակունիների տոհմից, ինչ-որ հանձնարարությամբ, կամ մեկ այլ գործով մայրաքաղաք է գալիս: Երջանիկ պատահականությամբ նա հանդիպում է

Լևոն անունով մի հայի, որի կեցվածքը վկայում էր նրա ազնվական ծագման մասին: Փոխադարձ համակրանքը մերձեցնում է նրանց: Լևոնը նրան ծանոթացնում է իր ընտանիքի հետ և ի վերջո ամուսնացնում իր դստրերից մեկի հետ: Այդ ամուսնությունից է, որ ծնվում է Վասիլի հայրը:

Վասիլի հայրը, որը գեղեցիկ էր, ուժեղ, առաքինի ոգով, ուներ նախանձելի փեսայի բոլոր հատկանիշները: Ադրիանուպոլսում ազնվական ծագումով մի գեղեցիկ կին կար, որն իր ամուսնու մահից հետո անթերի վարք էր դրսևորել: Պատմում էին և ոչ առանց հիմքի, որ նրա երակներում Կոստանդին Մեծի արյունն էր հոսում: Նա գնահատում է Վասիլի հորն ու նրան ամուսնացնում իր դստեր հետ, որը հայտնի էր ողջախոհությամբ և նրբությամբ: Այդ միությունից ծնվում է Վասիլը, որն այսպիսով, հոր գծով սերվում էր Արշակից, իսկ մոր գծով՝ Կոստանդին Մեծից, և որն իր այդ կրկնակի ծագումով էր պարտական «Ալեքսանդրի փայլին»: Նրա ծննդյան օրվանից սկսած երջանիկ նախանշանները կանխագուշակում էին նրան փառավոր ապագա: Նրա գլխի առաջին մազերի մեջ ծիրանի վարսեր էին նկատվում. նկատել էին նաև, որ նրա խանձարուրը ծիրանի էր արտացոլում[1]: Արշակի հետնորդները մինչ այդ ժամանակաշրջանը պահպանել էին իրենց ազգային առանձնահատկությունները այն բանի շնորհիվ, որ նրանք կազմում էին առանձին մի ընտանիք՝ չնայած որ խառն ամուսնություններ հաճախ էին կնքվել[2]:

Հետո պատմիչը շարադրում է Վասիլի ծնողների գերեվարման պատմությունը Կրումի ներխուժման ժամանակ, և նրանց վերադարձը, ինչպես մենք տեսանք վերը:

Վասիլի տոհմաբանությունն այն վիճակում, ինչպես մեզ է հասել վիճելի է: Անհավանական է թվում այն, որ Արտավանի ու Կլեյենեսի տոհմը դարեր շարունակ մաքուր մնացած լիներ օտար միջավայրում: Հեղինակն ինքն այդ բանը զգացել է և հետևաբար կարծել է, որ պնդելով թե Արշակի հետնորդները կարողացել են պահպանել իրենց ազգային բնավորությունը, նա կանխում է օրինական կասկածը: Սակայն այդ զգուշությունը ավելի շուտ ամրապնդում է կասկածը, քան այն ցրում:

Թրակիայում, անկասկած, շատ հայեր կային: VI դարի վերջում Մորիկ կայսրը այնտեղ էր գաղթեցրել բազմաթիվ հայերի իրենց իշխանների գլխավորությամբ[3]: VIII դարում Կոստանդին V Կոպրոնիմոսը (741-775)

[1] Հմմտ. H. Grégoire, Porphyrios, տե՛ս Mélanges N. Jorga, p. 395 և n. 2:
[2] Vita Basilii, 212.
[3] Սեբեոս, էջ 48, 52, 53, 69:



նույն բանն է արել. մեծ գաղթ է տեղի ունեցել Թեոդոսուպոլսից Թրակիա[1]:

Շատ հայեր աչքի էին ընկնում իրենց եռանդուն գործունեությամբ բոլոր ասպարեզներում և հատկապես բանակում: Հայաստանի բազմաթիվ իշխանական տներ ներկայացված էին այնտեղ: Արշակունիները դրանց թվում էին: Երբեմն նրանց կոչում էին իրենց ազգանվամբ: IV դարի վերջում Հայաստանի բաժանումից հետո, Բյուզանդական Հայաստանում թագավորած Արշակունյաց հարստության այդ ճյուղի վերջին ներկայացուցիչներից էր Հովհաննես Արշակունին, որը չնայած այն բանին, որ թագազուրկ էր, VI դարի սկզբին դեռևս որոշակի հեղինակություն էր վայելում: Նրա որդին՝ Արտավանը, սկզբում թշնամանքով էր ընդունել բյուզանդական տիրապետությունը, սակայն հետո հաշտվել էր Հուստինիանոս I-ի հետ և գաղթել Բյուզանդիա, ուր նա իր անունն է հռչակել բանակում ու հասել այնպիսի դիրքի, որը նրան նույնիսկ հնարավորություն է տվել դավել կայսեր դեմ[2]:

Հաջորդ դարում հայտնի է Վալենտինոս կամ Վալենտինիանոս պատրիկը, որը Հերակլիոսի մահից հետո պաշտպանել է նրա որդի Կոստանդին III-ի, հետո նրա թոռան՝ Կոստանդ II-ի, իրավունքները և նրանց գահ է բարձրացրել: Ավելի ուշ նա ապստամբել է կայսեր դեմ ու փորձել զավթել կայսերական իշխանությունը, սակայն անհաջողության է մատնվել ու զոհ գնացել իր հանդուգն նախաձեռնությանը[3]:

Վալենտինոսին բազմաթիվ էջեր նվիրած բյուզանդացի հեղինակները լռությամբ են շրջանցում նրա ծագումը: Բարեբախտաբար մի հայ պատմիչ ճանաչում է նրան ու հաստատում է Արշակունյաց տոհմին նրա պատկանելության փաստը[4]:

Մեկ այլ գործող անձ, Մանուել անունով, որը Վալենտինոսի ժամանակակիցն էր, նույնպես պատկանում էր Արշակունյաց տոհմին: Ըստ նույն հայ պատմիչի տեղեկությունների Կոստանդին կայսրը իր շնորհներին էր արժանացրել մի հայ իշխանի՝ Սմբատ Բագրատունուն, Վարազ-Տիրոցի որդուն ու Բազմահաղթ կոչեցյալ Սմբատի թոռանը: Նա նրան նշանակել էր իր զորքի դրունգար ու ամուսնացրել Արշակունյաց տնից մի օրիորդի հետ[5]: Օրիորդը Մանուելի դուստրն էր, ինչպես կարելի է եզրակացնել մեկ այլ հատվածից, ուր պատմիչը Մանուելին կոչում է Սմբատի որդի՝

[1] Ղևոնդ, Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 129 ; Theoph., ed. de Boor, I, p. 429 : Michel le Syrien, II, p. 521-522, ասում է, որ կայսրը գերեվարեց Կարինի բնակիչներին:
[2] Procop., B.P., II, 3.
[3] Theoph., I, p. 343 ed. de Boor.
[4] Սեբեոս, էջ 111:
[5] Նույնը, էջ 116:

«Վարազ-Տիրոցի որդի»՝ Սմբատի անէր[1]:

Այլ Արշակունիներ չեն հիշատակվում ո՛չ Հայաստանում, ո՛չ էլ Բյուզանդիայում (6): Բյուզանդիայի հայկական ընտանիքների անդամների ինքնությունը դժվար է վերականգնել առանց հայկական աղբյուրների օգնության: Քանի որ Հայաստանի իշխանական տներից յուրաքանչյուրն ուներ իր գերադաս անվանակարգը, ապա անունները կարող են քիչ թե շատ ճշգրիտ հայտանիշ լինել այդ անունը կրողների տոհմական պատկանելության որոշելու համար: Սակայն տոհմային անունը երբեմն մի ընտանիքից մյուսին էր անցնում, ըստ երևույթին, ամուսնությունների հետևանքով: Լևոն III Իսավրացու փեսան՝ Արտավազդը, որը 742 թ. փորձել է գահը խլել նրա որդուց՝ Կոստանդինից, հայրական կողմից մի քեռորդի ուներ, որի անունն էր Տրդատ: Արշակունիների տոհմի՞ց էին արդյոք նրանք: Արտավազդ անունը, ճիշտն ասած, տարածված էր առավելապես Մամիկոնյանների ընտանիքում: Մանուել անունը, որ կրում էր Սմբատ Բագրատունու աները, նմանապես կրում էր մեկ այլ, կրկեսային սխրանքներով Բյուզանդիայում իր անունը փառաբանած, Սմբատ Բագրատունու հայրը[2]:

Ընդհանուր առմամբ օնոմաստիկան կարելի է հաջողությամբ կիրառել, եթե հայտնի են քննարկվող անձնավորության հոր, որդու կամ եղբայրների անունները:

Մեր դեպքում պատմությունը չի պահպանել այլ Արշակունիների անուններ, բացի Արտավանից, Վալենտինոսից ու Մանուելից:

Վասիլի տոհմաբանության մեջ հիշատակված երկու անձնավորություններից մեկը՝ Արտավանը, կարծես թե արտացոլում է Հուստինիանոսի ժամանակաշրջանի Արտավանի կերպարը: Նրանց բաժանող տարիները շատ չեն: Տոհմաբանության Արտավանը պետք է որ հայրենիքը լքած լիներ Լևոն I կայսեր (457-474) ժամանակ, իսկ պատմական Արտավանը հայտնի է 530 թվականներից:

Մյուս անձնավորության՝ Արտավանի ընկերակցի, անունն է Կլեյենես (Kleienes), տարօրինակ ու անկասկած աղավաղված մի անուն, որն իր ներկայիս ձևով անճանաչելի է: Երկու հայ ավատատերեր՝ Արտավանն ու Կիլակեսը (Cylaces), հիշատակված են Ամմիանոս Մարկելլինոսի կողմից[3]: Դրանք հայկական ավանդության համաձայն համապատասխանում են Մուշեղ Մամիկոնյան զորավարին ու Գլակ Մարդպետին, Փավստոսի



[1] Սեբեոս, էջ 136: Սեբեոսի շարադրանքում չակերտների մեջ առնված անունը բաց է թողնված:

[2] Նույնը, էջ 53: Հմմտ. Theophylact. Simocat., III, 8:

[3] Amm., 29, 12; 30, 1. Cylaces (պետք է կարդալ Gylaces) հայ «Գլակն» է, որ նշանակում է «Գիլանի մարդ», «գիլանցի»:

պատմությունում և չեն կարող նույնացվել Արտավանի և Կլեյենեսի (Kleienes) հետ[1]:

Մեկ այլ Գլակիոս ծառայում էր բյուզանդական բանակում Հուստինիանոսի ժամանակ, այսինքն Արտավանի հետ միաժամանակ[2]:

IV դարի Արտավանը և Կիլակեսը (Cylaces) կամ էլ VI դարի Արտավանն ու Գլակիոսը կարելի կլիներ համարել տոհմաբանության՝ Արտավանի ու Կլեյենեսի (Kleienes) նախատիպերը, եթե վերջին անունը Կիլակես (Cylaces) կամ Գլակիոս անունների ձևափոխությունը լիներ:

Տոհմաբանության հեղինակը կարծում է, որ առաջին Արշակունուն կարելի է վերագրել մի օրենք՝ ամենայն հավանականությամբ կեղծ, որն իր բացատրությունն է ստանում պարթևների գերիշխանության հետևանքով ստեղծված պայմաններով. այն է՝ նրանց ժառանգները թագավորում էին Պարսկաստանում, Մարաստանում և Հայաստանում: Արտավան Արշակունին Հուստինիանոսի դեմ իր պայքարի ընթացքում սպանել էր Հայաստանում նրա կառավարչին և օգնություն ստանալու համար դիմել պարսից թագավոր Խոսրով I-ին: Հուստինիանոսի քաղաքականությունը դատապարտելիս, նա հայտարարում է, որ վերջին Արշակունի թագավորը (7) զիջել էր Հայաստանը Թեոդոս կայսերը այն պայմանով, որ նրա ժառանգները պետք է պահպանեին իրենց ազատությունը, և նրանց չպետք է պարտադրվեր և ոչ մի պարհակ[3]:

Կարելի է կապ հաստատել Արտավանի այդ բողոքի և Արշակունիների նախնին վերագրվող կարծեցյալ օրենքի միջև, ըստ որի թագավորական իշխանությունը պատկանում էր բացառապես Արշակի ժառանգներին: Վերջին Արշակունու մահը և այն հուզումները, որոնց հետևանքով Արտավանն ու Կլեյենեսը (Kleienes) գաղթել էին, պետք է որ տեղի ունեցած լինեին Լևոնի I-ի (457-474) ժամանակ: Այդ ժամանակաշրջանում է, որ, Վարդանի 451 թ. ապստամբությունից հետո և Վահանի 482 թ. ապստամբությունից առաջ, հայ իշխանները գաղտնի խորհրդակցություններ էին անցկացնում Գյուտ կաթողիկոսի մոտ, իրենց դժբախտությունների դեմ միջոց գտնելու համար. նրանք մտածում էին «երբեմն փախչել յօտարութիւն, և երբեմն ի խնդիր լինել օգնականութեան և ապստամբել: Առաքէին գաղտ և պատգամաւորս միանգամ և երկիցս առ թագաւորն Յունաց Լևոն.

[1] Մարդպետը «ներքինիների ղեկավար» չի նշանակում, ինչպես ընդհանրապես ընդունված է կարծել, այլ Մարդերի (Mardes) տոհմապետ, տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, с. 406, 417:

[2] Procop., B. G., III, 26.

[3] Procop., B. P., II, 3; Aed., III, 1.

որոյ թէպէտ և յանձն առեալ կամէր օգնել՝ յերկարէր ժամն և խափանէին խորհեալքն»[1]:

Պարսիկների դեմ ուղղված շարժումը ղեկավարում էին Բաբիկ Սյունի և Առնակ Ամատունի իշխանները: Հավանաբար հենց նրանց էր հանձնարարվել կայսեր մոտ գնալու առաքելությունը: Այն, որոշ չափով, հիշեցնում է Արտավանի և Կլեյենեսի (Kleienes) դեպքը, ու մենք մեզ չէինք զրկի մերժեցում անելու հնարավորությունից, եթե համոզված լինեինք, որ Արտավանն ու Կլեյենեսը (Kleienes) իսկապես գոյություն են ունեցել[2]: Դրա ապացույցը մենք չունենք:

Առավել կասկածելի է թվում այն, որ փախստական իշխանների ժառանգներն ապրելով Կոստանդնուպոլսում, հետո Նիկեում, Փիլիպպեում և Ադրիանուպոլսում երեք դար շարունակ օտար միջավայրում պահպանած լինեին ոչ միայն իրենց ազգությունը, այլև արյան մաքրությունը:

Մեկ այլ՝ Մայիկտես կոչված հայ, իբր եկել էր Կոստանդնուպոլիս և այնտեղ ծանոթացել Լևոն անունով մի այլ հայի հետ: Ոչ մի կասկած չկա, որ Մայիկտեսը Մայիկեսի, կամ ավելի շուտ Մայակեսի թյուր ընթերցում է, որը վերարտադրում է հայկական Հմայակ անունը: Արդյո՞ք խոսքը պատմական անձանց մասին է, թե նրանց գոյությունը նույնքան ենթադրական է, որքան Արտավանի ու Կլեյենեսի (Kleienes) գոյությունը:

Լևոն IV կայսեր (775-780) ժամանակ բյուզանդական բանակը հինգ զորավարների հրամանատարությամբ արշավել էր արաբների դեմ: Զորավարներից չորսը հայեր էին. Արտավազդը՝ Անատոլիկոն բանակաթեմի ստրատեգոսը, Տաճատը՝ Բուկելլարյան բանակաթեմից, Վարազ-Տիրոցը՝ (Βαριστερότζης և ո՛չ Καριστερότζης)[3] Արմենիակների բանակաթեմից, և Գրիգորը՝ Մուշեղակի որդին, Օպսիկիոն բանակաթեմից:

Տաճատը Արծրունիների մի ճյուղի՝ Անձևացոց ընտանիքի անդամներից մեկը, անցել էր խալիֆայի կողմը Իրենեի թագավորության ժամանակ, որը թշնամաբար էր տրամադրված հայերի նկատմամբ, նշանակվել էր Հայաստանի կառավարիչ ու զոհվել 785 թ. խազարների դեմ արշավանքի ժամանակ: Վարազ-Տիրոցը՝ Բագրատունյաց իշխանը, անկասկած 727 թ. մահացած հայ իշխան Սմբատ կյուրոպաղատի որդին էր և կրում էր իր պապի՝ Վարազ-Տիրոցի, անունը[4]: Գրիգորը՝ Մուշեղակի (Մուշեղի փաղաքշականը) որդին պատկանում էր Մամիկոնյանների տոհմին (ըստ երևույթին

[1] Ղազար Փարպեցի, էջ 113:

[2] Կարո՞ղ է արդյոք պատահել, որ Առնակը Առավան-Արտավանի փաղաքշական ձևը լինի, իսկ Կլեյենեսը (Kleienes) Սյունիի աղավաղումը:

[3] Թեոփանեսի քննական հրատարակության մեջ պահպանվել է այդ թյուր ընթերցումը:

[4] Ղևոնդ, էջ 19: Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Մոսկվա, 1860, II, 46:



նա VIII դարում հայոց պատմության մեջ շատ հայտնի երեք եղբայրների՝ Գրիգորի, Դավթի և Մուշեղի, ազգականն էր): Եվ վերջապես Արտավազդը, որը մեզ բոլորից շատ է հետաքրքրում, կարող է նույնացվել 771 թ. արաբների դեմ ապստամբած այն Արտավազդի հետ, որը ստիպված է եղել լքել հայրենիքը: Նա նույնպես Մամիկոնյանների տոհմից էր և իրեն կոչում էր Հմայակի որդի[1]: Թվում է թե Հմայակի հիշատակն է, որ արտացոլվել է Վասիլի տոհմաբանության մեջ: Եթե ընդունենք այն ավանդությունը, որի համաձայն Մայակեսը մայրաքաղաք էր եկել Կոստանդնի և Իրենեի (780-797) ժամանակ, ապա պետք է ընդունել, որ Արտավազդն ուներ մի որդի, որը կրում էր իր պապի անունը և որ Մայակեսը հենց այդ որդին էր:

Ինչ վերաբերում է Լևոնին՝ Մայակեսի աներոջը, չափազանց հանդուգն կլիներ, անկասկած, նրան նույնացնել Լևոն V Հայկազնի հետ, որը քիչ անց կայսերական գահ էր բարձրացել: Լևոնը 791 թ. բուլղարական ճակատում զոհված Վարդաս պատրիկի որդին էր: Նա մասնակցել էր բուլղար թագավոր Կրումի դեմ Միքայել I Ռանգաբե կայսեր արշավանքին: Ադրիանուպոլսի ճակատամարտում Միքայելի պարտությունից հետո բանակը Լևոնին կայսր էր հռչակել: Հնարավոր է, որ մյուս Լևոնի փեսան՝ Հմայակը, եղած լիներ նրա ճամբարում, Ադրիանուպոլսում, և որ հենց այդ փեսան է ծնունդ տվել Ադրիանուպոլսում հաստատված Արշակունիների մասին առասպելին:

Հմայակի որդին ամուսնացել է Ադրիանուպոլսի մի այրիի դստեր հետ: Այդ ամուսնությունից ծնվել է Վասիլը: Իրավամբ զարմանալի է, որ ո՛չ առասպելի, ո՛չ էլ տոհմաբանության հեղինակները չեն իմացել և կամ չեն ցանկացել բացահայտել ո՛չ նրա հոր և ո՛չ էլ մոր անունները: Գերության բոլոր հերոսները, ինչպես Կորդիլեսը, նրա որդի Վարդասը, Ցանցեսը, Լևոն Գոմոստոսը անվանապես նշված են, բացի Վասիլի ծնողներից: Դա առավել շփոթեցնող է, քանի որ գերության ամբողջ պատմության միակ նպատակը կարծես կայանում է նրանում, որ 812 թ. Ադրիանուպոլսում Կրումի վերցրած գերիների շարքում հիշատակված լինեին Վասիլի ծնողներն ու ինքը մանուկ Վասիլը:

Վասիլի մոր անունը մենք իմանում ենք այլ տեղից: Նրա անունն էր Պանկալո, եթե ելնենք նրա գերեզմանի արձանագրությունից, որը գտնվում է Ս. Եվփեմիա եկեղեցում, նրա մյուս որդիների՝ Սմբատի ու Մարիանոսի, գերեզմանների կողքին[2]: Պանկալոն կարող էր Ադրիանուպոլսի այրիի դուստրը լինել, բայց վերջինս, ամենայն հավանականությամբ, ոչ մի կապ չուներ Կոստանդին Մեծի հետ: Վասիլի հայրը, թերևս, ինչ-որ պատճառ

[1] Ղևոնդ, էջ 138:

[2] De cerim., 648: Παγκαλὼ ἡ μήτηρ Βασιλείου τοῦ φιλοχρίστου δεσπότου [«Պանկալո՝ քրիստոսասեր Վասիլ տիրակալի մայրը»]:

ուներ իր ծագումը Տրդատից սկսելու համար, սակայն նրա մայրը և ոչ մի պատճառ չուներ Կոստանդինին մտցնելու իր նախնիների շարքը: Մի տոհմաբանություն, որը հավակնում է մի կողմից սկիզբ առնելու արևելքի առաջին քրիստոնյա արքայից, իսկ մյուս կողմից արևմուտքի առաջին քրիստոնյա կայսրից, բավականին արհեստական է թվում, բավականին միտումնավոր՝ միանգամայն դատապարտված լինելու համար:

Պանկալոն կարծես թե նույնպես հայտնի է, եթե դատելու լինենք նրա որդիների անուններից: Սմբատը բացառապես հայկական անուն է: Մարիանոս անունը շատ վաղ ժամանակներից ընդունված էր արևելքում և Բյուզանդիայի հայկական միջավայրում: Մանուելի եղբայրը՝ Վարդասի, Պետրոնասի ու Թեոդորայի, հայրը, այդ նույն անունն էր կրում, նույն անունն էր կրում նաև Պետրոնասի որդին: Բացի այդ, հայկական աղբյուրները հաստատում են, որ Վասիլի մայրը հայուհի էր. «Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ,- ասում է Վարդան պատմիչը,- ասէր նմա (Վասիլի), թէ Արշակունի իցէ. զի մայրն հայ էր, և կատարիլ թուէր տեսլեանն Սահակայ սրբոյ՝ նստիլ թագաւոր Արշակունի»[1]:

Այս բառերից պետք չէ եզրակացնել, որ Վասիլը հայ էր միայն մոր կողմից: Հակառակը, դրանք հստակորեն հասկանալ են տալիս, որ հայրական կողմից նրա հայկական ծագումը կասկած չի հարուցում և այդ պատճառով պատմիչն այդ հարցին չի անդրադառնում: Տարաձայնությունները վերաբերում էին միայն նրա մոր ազգությանը, որն Ադրիանուպոլսում ծնված լինելով, հայ համարվելու փոխարեն օտար էր համարվում: Այդ թյուրիմացությունը շտկելու համար է, որ պատմիչը բերում է Տարոնի եպիսկոպոսի որոշակի վկայությունը:

Սակայն շփոթեցնող մի հարց է ծագում. ո՞վ էր ուրեմն Վասիլի հայրը, և ի՞նչն է պատճառը, որ Կոստանդին Ծիրանածինը գերադասել է այդ անունը լռությամբ շրջանցել: Տարօրինակ չէ՞ արդյոք, որ նա պահպանել է նրա պապի անունը, ինչպես մայրական, այնպես էլ հայրական կողմից, սակայն չգիտի կամ չի ցանկանում բացահայտել մեզ նրա հոր և մոր անունները: Կարո՞ղ է պատահել, որ Կորդիլեսը ինչ-որ ազգակցական կապ ուներ Վասիլի հետ:

Եթե կարելի լիներ Վասիլի պապին՝ Լևոնին, նույնացնել Լևոն Հայկազնի՝ ապագա կայսեր, հետ ապա մենք հեշտությամբ կկարողանայինք բացատրել, թե ինչու է Վասիլի կենսագիրը թաքցրել նրա ազգակցական կապը պատկերամարտ կայսեր հետ: Լավ չէր լինի, եթե Վասիլի պես կայսերը կապեին անաստված կայսեր հետ, որի հիշատակը, լիներ դա իրավամբ, թե

[1] Վարդան, Պատմութիւն, Վենետիկ, 1862, էջ 85:



անիրավի, արգահատելի էր: Բայց այն փաստը, որ նա պետք է որ կասկածած լիներ այդ ազգակցական կապի մասին, անհերքելի է, հատկապես, եթե նկատի ունենանք այն անունները, որոնք հատկանշական էին նրանց տների: Լևոն V-ի որդիներից մեկի անունն էր Սմբատ, մյուսինը՝ Վասիլ: Սմբատը, թագաժառանգ հռչակվելով, ընդունել է Կոստանդին անունը: Մինչդեռ Լևոն, Սմբատ, Վասիլ, Կոստանդին անունները ընդունված էին Վասիլի ընտանիքում ևս: Սմբատ էր Վասիլի եղբոր անունը: Նրա որդիների անուններն էին Կոստանդին և Լևոն: Խոսում էին նաև նրա երրորդ որդու մասին, որի անունն էր Վարդաս: Վարդաս էին կոչվում նաև Լևոն V-ի հայրն ու զարմիկը, որը ստրատեգոս էր Թրակեսիոն բանակաթեմում[1]: Մեկ այլ հետաքրքրական հանգամանք. Լևոն V-ը խիտ մորուք ուներ ու զանգրահեր էր: Վասիլը նույնպես զանգրահեր էր[2]: Պատահականությո՞ւն է դա արդյոք, թե ժառանգականության նշան:

Այսպիսիք են պատմական տվյալները: Դրանք ոչ մի հիմք չեն տալիս տոհմաբանական թեզի համար: Մայիկտեսը, ինչպես նաև Լևոնը չեն կարող Արշակունի համարվել: Նրանք, հավանաբար, ծագում էին Մամիկոնյան տոհմից: Եթե սա է այն տոհմաբանությունը, որը կեղծիք է պարունակում և որի պատճառով անդադար հանդիմանում են Փոտին, ապա պետք է խոստովանել, որ այն պատիվ չի բերում պատրիարքի ո՛չ գիտելիքներին և ո՛չ երևակայությանը: Հարկավոր էր որևէ այլ բան հորինել, որն ավելի արժանի լիներ Փոտին:

## VI

Կոստանդին Ծիրանածինը վկայակոչում է մի մարգարեություն, որը հաստատում է իր պապի Արշակունյաց տոհմին պատկանելու փաստը: Վասիլի գահ բարձրանալու կապակցությամբ նա ասում է. «Եվ այդ պահին իրականացավ 350 տարի առաջ արված կանխագուշակությունը և մարգարեությունը, որի հեղինակն էր քահանաների ու վանականների մեջ ամենախորաթափանց անձնավորությունը՝ Սահակը, որն ինքը լինելով Արշակունյաց տոհմից, մի տեսիլքով զգուշացվել էր, որ այդքան տարի անց Արշակի ժառանգներից մեկը կարժանանա Հռոմեական կայսրության գահին»[3]:

[1] Այդ Վարդասը հիշատակված է Թեոդորոս Ստուդիտեսի վարքում, Migne, P. G., 99, 233, հմմտ. J. B. Bury, East Rom. Emp., p. 69 և 72:

[2] Script. Incert., De Leone, 341: ἐπίσγουρον; Sym., 603: ὀγυρός (σγυρός-ի փոխարեն, ըստ De Boor-ի B.Z., II, p. 297):

[3] Vita Basilii, 241: τότε δὲ καὶ ἡ πρὸ πεντήκοντα καὶ τριακοσίων ἐτῶν πρόρρησις καὶ προφήτεια τὸ τέλος ἐλάμβανεν Ἰσαὰκ τοῦ διορατικωτάτου τῶν ἱερέων καὶ μοναχῶν, ὃς ἐξ Ἀρσακιδῶν καὶ αὐτος καταγόμενος δι' ὁράματος ἔμαθεν ὅτι μετὰ τοσοῦτον χρόνον

Վարդան պատմիչը գրում է, որ «Դարձեալ ի նոյն կայսերէ Վասլէ եկն ներքինի մի Նիկիտ կոչեցեալ յերեքհարիւր քսան և հինգ թուին (այսինքն՝ Ք.հ. 875 թ. – Ն. Ա.), խնդրեալ ի յԱշոտէ թագ, բերեալ շատ պարգևս. քանզի Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ ասէր նմա, թէ Արշակունի իցէ, զի մայրն հայ էր, և կատարիլ թուէր տեսլեանն Սահակայ սրբոյ՝ նստիլ ի թագաւոր Արշակունի. և կամէր պսակիլ ի Բագրատունւոյն: Զոր կատարէ Աշոտ, ընդ նմին առաքէ և տասն հազար արծաթ ընծայ նորաշէն եկեղեցւոյն[1], որպէս Մամիկոնեանքն՝ հինգ գրիւ արծաթոյ, ասեն դնել զդուռն արևմտեան Սրբոյն Սոփիայ ի Յուստիանոսէ, յիշատակ Հայոց: Եւ պատմեաց Նիկիտն, թէ գտաք նշխար Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ի յաղուհացսն ի հինգերորդ շաբաթուն շաբաթ օրն, զոր տօն կարգեցին»[2]:

Նիկետաս ներքինին ոչ այլ ոք է, եթե ոչ հայտնի գիտնական Նիկետաս Բյուզանդացին, որը Վասիլի պատվերով հայերին հասցեագրված դավանաբանական մի աշխատություն էր գրել: Այդ աշխատությունը հասել է մեզ[3]: Ինչ վերաբերում է Վահան Տարոնացի եպիսկոպոսին, ապա մենք կարծում ենք, որ նա նույնանում է Փոտի և Զաքարիա կաթողիկոսի նամակագրության մեջ հանդես եկող Հովհաննես Նիկեցի եպիսկոպոսին: Նա Զաքարիա կաթողիկոսի պատվերով մի աշխատություն է գրել Ծննդյան և Մկրտության տոների մասին, որը նույնպես պահպանվել է[4]: Վահանը՝ Տարոնի հայ եպիսկոպոսը, անցնելով ուղղափառ եկեղեցու գիրկը վերցրել էր Հովհաննես անունը և ստացել Նիկեի աթոռը: Փոտի նամակում, որը Վահանը տարել էր Հայոց կաթողիկոսին[5], նրան անվանում են Նիկեի արքեպիսկոպոս Վահան, մինչդեռ Վարդան պատմիչը այն հատվածում, ուր խոսում է Փոտի նամակի մասին, նրան ճանաչում է որպես Նիկեի միտրոպոլիտ Հովհաննես[6]:

Դավանափոխ եպիսկոպոսը որոշիչ դեր է կատարել Փոտի ու հայերի հարաբերություններում, որպես միջնորդ կաթողիկոսի և պատրիարքի միջև և, առավել ևս, որպես խորհրդատու հայկական գործերում: Նրան կարելի է լիիրավ կերպով մասնակիցը համարել Վասիլի տոհմաբանության ստեղծման գործին, ներառյալ Սահակի տեսիլքը:

τὸν μεταξὺ ἐκ τῶν ἀπογόνων ᾽Αρσάκου μέλει τις ἐπὶ τὰ τῆς ᾽Ρωμαικῆς βασιλείας σκῆπτρα ἀναβιβάζεσθαι.

[1] Խոսքը Փրկչին, Միքայել Հրեշտակապետին և Եղիային նվիրված νέα ἐκκλησία՝ [«Նոր եկեղեցու»] մասին է, տե՛ս Theoph. Cont., 319:

[2] Վարդան, էջ 85, Ղ. Ալիշան, Հայապատում, Բ, էջ 42-48:

[3] Migne, P. G. 105, 588 sqq.

[4] Նույնը, P. G. 96, 1437 sqq.

[5] Պահպանվել է հայերեն լեզվով և հրատարակվել «Палестинский Православный сборник», вып. XXXI, 1892:

[6] Վարդան, էջ 82:



Սահակը Գրիգոր Լուսավորչի ընտանիքի վերջին ներկայացուցիչն էր: Նա ստիպված է եղել թողնել իր պաշտոնը, երբ պարսիկները Արշակունյաց վերջին թագավորին՝ Արտաշեսին, զրկել էին գահից: Քիչ անց նախարարները խնդրում են Սահակին նորից գրավել իր աթոռը: Այդ կապակցությամբ կաթողիկոսը նրանց բացատրում է, որ անիմաստ է երկարաձգել այն, ինչ մոտենում է իր կորստյանը, որովհետև Նախախնամությունը մի տեսիլքով իրեն բացահայտել է, որ Արշակունիների թագավորությունն ու Գրիգորյանների քահանայությունը շուտով պետք է ավարտվեն. «զի լռեսցէ (այսինքն՝ դադարելու է - Ն. Ա.) մերձ ընդ մերձ թագաւորութիւն յազգէդ Արշակունեաց, և քահանայութիւն ի ցեղէ արժանաւոր քահանայապետին Գրիգորի»[1]:

Տեսիլքը նրան հայտնվել է «եպիսկոպոս ձեռնադրվելուց առաջ», այսինքն՝ կաթողիկոսությունից առաջ:

Սակայն նույն տեսիլքով նա զգուշացվել է, որ Արշակունիների թագավորությունն ու Գրիգորյանների քահանայությունը կվերականգնվեն. «զի մերձ յերևումն պղծոյն անապատի դարձեալ յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց, և նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ սրբոյն Գրիգորի»[2]:

Ժամկետը նշված է բավական ճշգրիտ. «յայսմ հետէ մինչև ի վախճան աշխարհիս՝ երեք տասներեակք ամաց և կէս տասներեքի համառաւտեսցի ի վերայ ամենայն աշխարհի, մինչև յերևումն պղծոյն անապատի, ... և լինին սոքա յայտնապէս թուով ամք երեք հարիւր յիսուն ...»[3]:

Տեսիլքի շարադրանքը և այն ուղեկցող հրեշտակի մեկնաբանությունը պահպանվել են V դարի վերջի պատմիչ Ղազար Փարպեցու Պատմության մեջ: Այն փաստը, որ տեսիլքի շարադրանքը նրան չի պատկանում, ակնհայտ է: Բայց ո՞ր դարաշրջանում և ի՞նչ պայմաններում է այն ստեղծվել: Դա շատ մութ հարց է:

Տեսիլքում պարունակվող ժամանակագրական նշումը չի հեշտացնում մեր հետազոտությունները: Սահակ կաթողիկոսը մահացել է 439 թվականին: Տեսիլքը պետք է որ նրան հայտնված լիներ նրա եպիսկոպոս ձեռնադրվելուց առաջ, մոտ 400 թվականին: Եթե այդ թվականից հաշվենք 350 տարի, ապա կստանանք 750 թվական: Կարո՞ղ էին արդյոք այդ դարաշրջանի իրադարձությունները դրդել նման մարգարեական տեսիլք ստեղծելու:

VIII դարի կեսերին արաբների միջև ծագած քաղաքացիական պատե-

[1] Ղազար Փարպեցի, էջ 34:

[2] Նույն տեղում:

[3] Նույնը, էջ 33:

բազմը քաջ հայտնի է: Այդ հուզումները հանգեցրին նոր հարստության՝ Աբբասյանների, հաղթանակին: Հույսի մի ցոլք դրդեց հայերին ապստամբելու, մահմեդական տիրապետությունից ազատվելու համար: Այդ շարժումը ոգեշունչ մարգարեներ ունեցավ: «Առն միոյ մենոզոնի (monazon, μονάζων, վանական – Ն.Ա.), որ մոլորութեան հոգւովն շարժեալ՝ մարգարէանայր,- ասում է ժամանակի պատմիչը,- սնոտիս և ընդունայն ասելով. «ահա մերձեալ է ժամանակ փրկութեան ձերոյ. զի այժմ ընդ հուպ դարձցի զաւազան թագաւորութեանն միանգամ ի տուն Թորգոմայ»[1]:

Հետևաբար մենք կարող ենք ենթադրել, որ Սահակի տեսիլքը ստեղծվել է հայրենասիրական քարոզչության գերշիկացած այդ միջավայրում, արաբների դեմ զինված պայքարը քաջալերելու համար, հավատացնելու համար, որ պայքարում էին մի գործի համար, որը համապատասխանում էր Նախախնամության նպատակներին այնպես, ինչպես դրանք ժամանակին ներկայացվել էին Ս. Սահակին:

Սակայն այն ճշգրտումները, որ կան այդ տեսիլքում, նման վարկածի համար բարենպաստ չեն: Այնտեղ խոսք չկա Հայաստանի քաղաքական վերածննդի մասին. մարգարեությունը վերաբերում է միայն Արշակունյաց տան և Գրիգորի տոհմի վերականգնմանը: Այդ հանգամանքը անիմաստ է դարձնում այդ տեսիլքի բացատրությունը Հայաստանի պատմության մեջ փնտրելու փորձերը: VIII դարում, ինչպես նաև հետագա դարերում մենք չենք գտնում Արշակունիների և ոչ մի հետք: Ինչ վերաբերում է Գրիգորի տոհմին, ապա այն կհայտնվի Պահլավունիների անվան ներքո, բայց ավելի ուշ ժամանակաշրջանում և, միգուցե, տեսիլքի հետևանքով:

Առաջին հայ հեղինակը, որը ծանոթ է տեսիլքին ներկայիս իր ձևով, Թովմա Արծրունին է՝ Կոստանդին Ծիրանածնի ժամանակակիցը[2]: Նրանից առաջ Մովսես Խորենացին ակնարկում է դրա մասին առանց հայտնելու, որ անձամբ լսել է ներկայիս տարբերակը[3]: Հովհաննես Կաթողիկոսը, որը քաջ ծանոթ է Մովսես Խորենացու պատմական աշխատությանը և այն բարձր է գնահատում, ոչինչ չի ասում տեսիլքի մասին[4]:

[1] **Ղևոնդ**, էջ 141: Թորգոմը, որի անունը աստվածաշնչական Թոգարմա անվան հայկական ձևն է, համարվում է հայ ազգի անվանադիրներից մեկը:

[2] **Թովմա Արծրունի**, Պատմութիւն տանն Արծրունեաց, գլ. 11, էջ 74, ասում է, որ Սահակը «ոչ առ յանձն լսել նոցա. զհանգամանս տեսլեանն՝ զոր եցոյց նմա Հոգին Սուրբ՝ որ ինչ առ յապա ժամանակս գործելոց էր. զբառնալ եպիսկոպոսապետութեանն եւ թագաւորութեանն ի տանէն Արշակունեաց, եւ զկարգապետել անարժանիցն, եւ զընտրութիւնն սրբոց: Եւ դարձեալ զնորոգումն հայրապետութեան և թագաւորութեան ի նոյն զարմէ Արշակունեաց»:

[3] **Մովսէս Խորենացի**, III, 66: «Այլ նա ոչ առնոյր յանձն. և ի բազում թախանձելոյ նոցա հարկաւորեալ պատմեաց զտեսիլն, որ յառաջ քան զբազում ժամանակս երևութացաւ նմա ի քուն ապագայիցն յայտնութիւնք»:

[4] **Յովհաննէս Կաթողիկոս**, էջ 34:



Գրիգոր Լուսավորչի հաջորդների մասին հայտնի աշխատությունը, որը պահպանվել է հունարեն լեզվով, որը սակայն թարգմանություն է հայերենից, նույնպես չի հիշատակում տեսիլքը: Բայց դրան կցված կաթողիկոսների ցուցակում այն հիշատակված է աղոտ ձևով (8), ինչպես Մովսեսի մոտ, հնարավորություն չտալով մեզ կռահելու, թե հեղինակն արդյոք ինչ-որ բան գիտե՞ր Արշակունյաց և Գրիգորյանների տների վերականգնման վերաբերյալ կանխագուշակության մասին, թե՞ ոչ[1]:

Աշխատությունն ու ցուցակը ընդհատվում են Սահակ Գ կաթողիկոսի վրա՝ առանց նշելու նրա հայրապետության տարիները: Այդտեղից մենք կարող ենք եզրակացնել, որ այս փաստաթղթերը կազմվել են Սահակ Գ Ձորոփորեցի կաթողիկոսի հայրապետության տարիներին, որը գահակալել է 677-703 թվականներին: Վավերագրի՝ Διήγησις ἀπὸ τοῦ ἁγίου Γρηγορίου μέχρι τοῦ νῦν [«Պատմություն Սուրբ Գրիգորից մինչ այժմ»], վերնագիրը նույնպես դրա ապացույցն է: Սահակը հրավիրվել էր Կոստանդնուպոլիս երկու եկեղեցիների միության մասին խորհրդակցելու համար: Հնարավոր է, որ այդ վավերագրերը պատրաստվել էին այդ կապակցությամբ: Դրանք շարադրված են քաղկեդոնականների համար շատ նպաստավոր ձևով և, հնարավոր է, որ դրանք ավելի շուտ վերաշարադրվել էին հայկական աղբյուրների հիման վրա, քան թարգմանվել: Եթե դրանք հայկական բնագրի պարզ թարգմանություններ են, ապա մենք կարող ենք դրանք տեղադրել Փոտի ժամանակաշրջանում և վերագրել Հովհաննես Նիկեցուն կամ Տարոնացուն: Ամեն դեպքում այդ երկու հայրապետները դրանից օգտվել են լայնորեն ու արդյունավետ կերպով: Գիտնական պատրիարքը այնպես է ազդվել այդ վավերագրից, որ Զաքարիա Ա Ձագեցուն հասցեագրված իր նամակում կրկնում է դրա ակնառու սխալները[2]:

[1] **Migne, P. G., 127. Ես մեջբերում եմ կատարում ըստ իմ գրչագրի, որն ընդօրինակվել է Փարիզի № 900 ձեռագրից, էջ 181ա. Διηγήσατο αυτοῖς τὴν ὀπτασίαν ἣν ἑώρακα περὶ τῆς ἐκπτώσεως αὐτῶν τῆς γενομένης καὶ ἐσομένης** [«Պատմեց նրանց իր տեսիլքը, որ տեսել էր նրանց վիճակվող <իրադարձությունների> մասին՝ ներկայում և ապագայում»]: Պետք է նշել, որ կաթողիկոսների ցուցակը գտնվում է այդ աշխատությունը պարունակող ձեռագրում և նրանից բաժանված է մի քանի հոդվածներով: Այնուամենայնիվ դա կարծես թե այդ աշխատության մասն է կազմում:

[2] Օրինակ՝ Διήγησις-ն անում է հետևյալ ժամանակագրական հաշվարկները. **Ἀπὸ τῆς παρουσίας τοῦ Κυρίου ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ ἕως ἔτους ζ' Κωνσταντίνου τοῦ ἐπὶ τῆς ἐν Νικαίᾳ συνόδου ἔτη τιε'. Καὶ ἀπὸ τῆς συνόδου τῆς ἐν Νικαίᾳ ἕως τῆς ἐν Κωνσταντινοπόλει συνόδου τῷ ε' ἔτει μεγάλου Θεοδοσίου ἑβδομήκοντα γ'. Καὶ ἀπὸ ταύτης τῆς συνόδου ἕως τῆς ἐν Ἐφέσῳ ἁγίας συνόδου τῆς γενομένης ἐν ταῖς Θεωδοσίου τοῦ μικροῦ ἐν τῷ ιε' ἔτει τεσσαράκοντα ἔτη εἰσιν** [«Մեր Տիրոջ Հիսուս Քրիստոսի գալուստից մինչև Կոստանդնի վեցերորդ տարում <կայացած> Նիկիայի ժողովը՝ 315 տարի: Եվ Նիկիայի ժողովից մինչև Թեոդոսիոս Մեծի հինգերորդ տարում <կայացած> Կոստանդնուպոլսի ժողովը՝ յոթանասուն տարի: Եվ այս ժողովից մինչև Եփեսոսի Սուրբ ժողովը, որը կայացել է Թեոդոսիոս

Փոտը պետք է որ հենց այդ ցուցակից տեղեկացած լիներ, որ պաշտելի հայ պատրիարք Սահակը մի տեսիլք է ունեցել՝ մի ὀπτασία: Սահակի տեսիլքի և Վասիլի՝ իշխանության գլուխ անցնելու միջև նկատվող ակնառու կապը շատ խորհրդավոր է և կարող է պատահել, որ այն իր մեջ պարփակում է մեկ այլ գաղտնիքի բանալին. Փոտի հորինած և կայսերական գրադարան ներմուծած խորհրդավոր գիրքը արդյոք չէ՞ր պարունակում Սահակի տեսիլքի նոր ու լրացված տարբերակը: Սա անկասկած շատ գայթակղիչ գաղափար է, որը պարտադրվում է ինքնըստինքյան. նման տեսիլք հորինելը և՛ հնարամիտ կլիներ, և՛ պատիվ կբերեր գիտնական պատրիարքին:

Բայց կան փաստեր, որոնք հակադրվում են այս ենթադրությանը և որոնք հատուկ ուսումնասիրություն են պահանջում[1]: Այսպես, տեսիլքի հիշատակությունը պարունակող հունական ցուցակը կարծես թե հենց առաջին առարկությունն է մեր վարկածին: Բայց դրա տարեթվի հարցը մնում է բաց: Շատ հնարավոր է, որ ցուցակը Փոտի ժամանակակիցն է: Մովսես Խորենացին նույնպես ծանոթ է Սահակի տեսիլքին: Ճիշտ է նրա պատմական աշխատությունն այն աստիճան է անվանարկվել, որ [տեսիլքի հիշատակման] փաստը կարող է թերևս ծառայել նրա աշխատության ստեղծման ժամանակաշրջանը Փոտից հետո տեղադրելուն: 350 տարին չի ծածկում Սահակին և Վասիլին բաժանող ժամանակահատվածը, որն իրականում 100 տարով ավելի է: Սակայն անարդարացի կլիներ ժամանակագրական լիարժեք ճշգրտություն պահանջել վարքագրական մի աշխատությունից:

Ամենալուրջ դժվարությունը, անկասկած, մատուցում է հունական ցուցակը: Եթե դրա ենթադրյալ հնությունը հաստատվեր, ապա պետք կլիներ ընդունել, որ Ղազար Փարպեցու շարադրանքն ի սկզբանե պարունակել է տեսիլքի մի բնագիր, որը տարբերվել է մեզ հասածից, և որ այն հետագայում պետք է որ փոփոխված լիներ Վասիլի դեպքին հարմարեցվելու համար:

Փոքրի տասնհինգերորդ տարում՝ քառասուն տարի»]: Հմմտ. Փոտի նամակը, ուր նա ասում է, որ «Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի, հարությունից հետո 315 թ., Կոստանդնի գահակալության 7-րդ տարում Ս. հայրերը հրավիրվեցին Նիկե... և Նիկեի եկեղեցական ժողովից 74 տարի անց Թեոդոս Մեծի գահակալության 5-րդ տարում Ս. հայրերը հավաքվեցին Կոստանդնուպոլսում... և Կոստանդնուպոլսի եկեղեցական ժողովից 45 տարի անց Թեոդոսիոս II-ի գահակալության 15-րդ տարում հրավիրվեց Եփեսոսի եկեղեցական ժողովը:

Այս համապատասխանությունները մտածել են տալիս, որ Փոտի նամակը հավանաբար կազմել է Հովհաննես Նիկեցին:

[1] Վենետիկի Մխիթարյան միաբանության վանականներից մեկը, հայր Կ. Տեր-Սահակյանը, որը մահացել է պատերազմի ժամանակ Տրապիզոնում, զոհ գնալով թուրքական բարբարոսությանը, մի հետաքրքիր հոդվածով պաշտպանում է այն տեսակետը, ըստ որի Սահակի տեսիլքը պետք է որ ստեղծված լիներ Կոստանդնուպոլսում Վասիլի գահակալության կապակցությամբ: Սակայն այս հոդվածում հեղինակը փորձ անգամ չի արել հաղթահարելու այդ տեսակետի առջև ծառացած դժվարությունները ("Byzantinische Zeitschrift", XX, 1911):



Այն հանգամանքները, որոնց առկայությամբ պատմիչը Սահակին խոսել է տալիս տեսիլքի մասին, բոլորովին բարենպաստ չէին Արշակունիների և Գրիգորյանների տոհմերի վերականգնման մասին հայտարարություն անելու համար: Այն մարդիկ, որոնց, իրավամբ թե անիրավի, մեղադրում են վերջին Արշակունու անկման և իր իսկ Սահակի պաշտոնանկության մեջ, վերադառնում են նրա մոտ ու խնդրում նորից գահ բարձրանալ: Պատրիարքը մերժում է նրանց խնդրանքը, պարսավում է նրանց, մեղադրում դավաճանության մեջ և նրանց վրա բարդում երկրին պատուհասած բոլոր դժբախտությունների պատասխանատվությունը. «Երթա՛յք յինէն ի բաց, և թո՛յլ տուք ինձ ողբալ զընդհանուր կորուստ աշխարհիս Հայոց, զոր տեսանեմ աչօք մտացս ի զօրութենէ վերին ցուցակութեանն. մի՛ բռնադատէք մխիթարել զիս ի վերայ բեկման ժողովրդեան իմոյ: Վասն զի զանցս աղէտիս այսորիկ յառաջ քան զձեռնադրելն զիս յեպիսկոպոսութիւն՝ եցոյց ինձ վերին կանխասացութիւն, գիտելութիւն յանուրջս, ըստ օրինակի մարգարէական տեսլեանն, որ ցուցաւ սուրբ նահատակին Գրիգորի, գիտելութիւն իրաց առ ի յապայս եղելոցս: Զոր և ձեզ պատմել այսօր բռնադատիմ առ նեղել սրտի իմոյ»[1]:

Այս խոսելակերպը հույս չի թողնում, որ պատրիարքը հաշտվողականություն կցուցաբերի: Սահակը՝ վրդովված իր խոսակիցների վարքագծից, ոչ մի մխիթարական խոսք չի գտնում նրանց ասելու. առավել ևս նա ամենևին էլ մտադրություն չունի նրանց հույս տալու, որ ներկայումս անկում ապրող տները լուսավոր ապագայում կվերականգնվեն: Միակ բանը, որ նա հարկ է համարում նրանց ասելու այն է, որ պատահած դժբախտությունների մասին նրան վաղուց ի վեր հայտնել էին, և որ անիմաստ է նորից վերցնել իշխանությունը, քանի որ իր տունը, ինչպես և թագավորականը, մարում են: Ոչինչ թույլ չէր տալիս այդ պահին կանխագուշակություններ անելու Արշակունիների ու Գրիգորյանների վերածննդի մասին: Այսպիսով այն մարգարեությունը, որ դրան է վերաբերում, պետք է որ դիտվի որպես ավելի ուշ ժամանակաշրջանի ընդմիջարկություն: Փավստոս Բուզանդը, որն անկասկած ականատես է եղել Արշակունիների անկմանը, Ներսես պատրիարքի՝ Սահակի հոր, շրթներին է դրել նրանց ուղղված հետևյալ նզովքը. «ըմպել ազգիդ Արշակունեաց զյետին բաժակն, արբջիք արբեսջիք և կործանեսջիք, և այլ մի՛ ևս կանգնեսջիք»[2]: Հետևաբար V դարի երկրորդ

[1] **Ղազար Փարպեցի**, էջ 28:

[2] **Փավստոս Բուզանդ**, IV, 15: Ներսեսի այս բառերը և այն բառերը, որ նա պետք է որ արտասանած լիներ մահվան մահճին (**Փավստոս Բուզանդ**, V), բավականաչափ աննորոշ լինելով զարգացում ապրելու համար, ծնունդ են տվել ավելի հանգամանալից գուշակության և այդ բանը շատ ուսանելի է Սահակի դեպքի համար: Մեսրոպ Երեց Վայոցձորեցին, որի երկասիրությունը պարունակում է Փավստոսի Պատմության՝ 967 թվականին կատարված կրճատ

կեսին Սահակի մահից քիչ անց ոչ մի պատրանք չկար Արշակունիների թագավորության վերականգնման վերաբերյալ:

Բավականաչափ աղոտ ժամանակագրական նշումները մեզ բերում հասցնում են «անապատի պիղծի», այսինքն արաբների հայտնվելու ժամանակաշրջանը՝ VII դարի կեսին: Նշված 350 տարիները մեզ բերում հասցնում են VIII դարի կեսին և եթե նկատի ունենանք Արշակունիներից մեկի գահ բարձրանալը, ապա մենք կհասնենք Վասիլի ժամանակաշրջանին: Անհրաժեշտություն կա՞ արդյոք նշելու մեր վավերագրի անցած տարբեր փուլերը:

Տեսիլքի ամենախորհրդավոր պահը Գրիգորի վերականգնված տան առաջին երկու պատրիարքների ճակատագիրն է: «Եւ քահանայացեալ առաջինն կատարէ զաւուրս իւր, կրեալ ճգնութիւնս բազում ի սուտ առաքելոց իշխանին կորստեան, և վախճանի խաղաղական հանգստիւ և ոչ սրով: Եւ միւս զաւակ նորին յաջորդեալ զաթոռ քահանայապետութեանն՝ բազում և ազգի ազգի համբերեալ քերանաց և բանից, սովոյ և հալածանաց և դառն նեղութեան ժամանակս բազումս՝ յանօրէն իշխանին դահճացն սրով ընկալցի զվճիռ մարտիրոսութեան»[1]:

Ու՞մ մասին է խոսքը: Կարելի է կարծել, որ խոսքը Ստեփանոսի՝ Վասիլի որդու, մասին է, որը պատրիարք է եղել (887-893): Սակայն Ստեփանոսը փորձությունների չի ենթարկվել: Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում պատմությանը հայտնի չէ և ոչ մի պատրիարք ո՛չ Կոստանդնուպոլսում, ո՛չ էլ Հայաստանում, որը նահատակված լիներ[2]: Պատկերները չափազանց-

---

շարադրանքը, հայտնում է, որ Ներսեսը այլ գուշակությունների շարքում կանխագուշակել էր նաև, որ «յետ լնլոյ յիսուն ամաց՝ բարձցի քահանյութիւն յազգէն մերմէ՝ որ է սրբոյ նախնոյն իմոյ Գրիգորի, ընդ նմին և թագաւորութիւնդ յազգէդ Արշակունեաց, մինչեւ ի մերձենալ պղծոյն անապատի: Յետ այնորիկ ի լնուլ ամաց հարիւր և յիսնից առցեն զսուրբ քաղաքն Երուսաղէմ Պարսիկք, և նոյն ինքն զխաչն, և վարեսցեն ի գերութիւն»: Քիչ անց գուշակության հեղինակը խոսում է ֆրանկ կոչվող հռոմեացիների կողմից Երուսաղեմը ետ գրավելու մասին: Սա վկայում է, որ Մեսրոպ Երեցի խմբագրությունը փոփոխվել է հետագայում («Սոփերք», VI [«Յաղագս զարմից Սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի և պատմութիւն Սրբոյն Ներսիսի Հայրապետի»], էջ 89-90): Սահակի տեսիլքը նույնպես կարող է բազմաթիվ փուլեր անցած լինել իր ներկայիս տեսքը ստանալուց առաջ:

[1] **Ղազար Փարպեցի**, էջ 35:

[2] Կոստանդնուպոլսի երկու պատկերամարտ պատրիարքներ Անաստասն ու Կոստանդինը շատ դաժան ճակատագրի են արժանացել: Նրանց ճակատագիրը հիշեցնում է այն ամենը, ինչ մենք կարդում ենք շարադրանքում: Անաստասը՝ Գերմանոս Ա պատրիարքի սինկելլոսը, զբաղեցրել է պատրիարքի գահը, երբ վերջինս պաշտոնանկ է արվել: Արտավազդի ապստամբության ժամանակ նա դավաճանել է իր բարեգործին՝ Կոստանդին V կայսերը, և կապվել նրա հակառակորդի հետ: Ավելի ուշ Կոստանդինը նրան պատժել է՝ աչքերը կուրացնելով: Նա պահպանել է իր պաշտոնը և մահացել ծանր հիվանդությունից (Theoph., ed. de Boor, I, p.408 sqq.): 743 թ. եկեղեցական ժողովի ժամանակ Կոստանդինը նրա հաջորդ է նշանակել Պամփիլիայի Սիլեա քաղաքի եպիսկոպոս Կոստանդինին: Վերջինս նույնպես կաս-



ված են և անօգուտ է հուսալ, որ հետազոտությունները թույլ կտան հայտնաբերելու այնպիսի անհատակություններ, որոնց այդ պատկերը կհամապատասխաներ: Արդյո՞ք Փոտն ինքն իրեն չի պատկերել: Նա որոշ չափով իրավունք ուներ իրեն համարելու Գրիգորի ժառանգներից մեկը: Նրա մայրը՝ Իրենեն, հայ էր: Վերջինիս եղբայրը Արշավիր մագիստրոսը բարձր խավի ներկայացուցիչ էր և ամուսնացած էր Թեոդորա կայսրուհու և Վարդաս Կեսարի քրոջ՝ Կալոմարիայի, հետ: Արշավիրը Պահլավունիների տոհմի մի ճյուղից՝ Կամսարականների ցեղից էր: Արշավիր անունը հատկանշական է այդ տոհմի համար: Հետևաբար Փոտը մորական կողմից սերվում էր Պահլավունիներից՝ Ս. Գրիգորի տոհմից: Հռչակավոր պատրիարքի փոքրկալից կյանքն այնպիսին էր, որ կարող էր նրան նահատակի լուսապսակ պարգևել:

Գրիգորի մյուս ժառանգը, որը մահացել է խաղաղ ձևով շատ տանջանքներ կրելուց հետո, կարող է նույնացվել Հովհաննես Քերականի՝ Կոստանդնուպոլսի պատրիարքի (832-843), հետ: Նրա եղբոր անունն էր Արշավիր: Նա ոմն Բագրատի որդին էր:

Անունները մեզ ստիպում են մտածել, որ հոր կողմից Հովհաննեսը պատկանում էր Բագրատունիների տոհմին, իսկ մոր կողմից՝ Կամսարականների: Հետևաբար նա կարող էր Ս. Գրիգորի տոհմից համարվել նույն իրավունքով, ինչ և Փոտը: Նրան էին վերագրում մի մարգարեություն Վասիլի գահ բարձրանալու վերաբերյալ[1], մի բան, որ շատ նշանակալից է: Միգուցե այստեղ մենք հանդիպում ենք մի փաստի արձագանքի, որն իր հերթին ժամանակին եղել է մարգարեության առարկա:

Սահակի տեսիլքի հայերեն խմբագրության մեջ, եթե դատելու լինենք որոշ կարևոր բյուզանդական բնագրերից, ինչ-որ հունարեն բնագիր է

---

կածել են դավաճանության մեջ: Կայսրը նրան քշել է պատրիարքի գահից և բանտ նետել: Նրա հետ շատ դաժան կերպով են վարվել: Ծուրջ երկու տարվա ընթացքում նա ստիպված է եղել կրել տարբեր վիրավորանքներ: Նրան ծեծում էին փայտերով, աքացի էին տալիս, փետել էին նրա մորուսը, արտևանունքները և գլխի մազերը: Հանելով հագուստը, նրան նստեցրել էին ավանակի վրա և պտտեցրել կրկեսում, իսկ ամբոխը ծաղրում էր նրան և անպատվում: Այդ կտտանքներից հետո 767 թ. նրան գլխատել են (Theoph., ed de Boor, I, p. 408 sqq.): Այս երկու հայրապետների պատմությունը ճշգրտորեն համապատասխանում է տեսիլքի շարադրանքին: Սակայն ի՞նչ կապ կարող էին նրանք ունենալ Գրիգորի տան հետ: Սիլեայի վանքը պատկերամարտության կենտրոն էր: Այնտեղից էր եկել Թեոդորոս Կասիտերասը, որը Լևոն Հայկազնի կրոնական քաղաքականության ոգեշնչողներից մեկն էր: Ո՛չ Բյուզանդիայի, ո՛չ էլ Հայաստանի հայերի շրջանում պատկերասիրությունը մեծ հաջողություն չի ունեցել: Ի՞նչ ծագում ուներ նահատակ Կոստանդինը: Արտավազդը և նրա քեռորդի Տրդատեսը չէի՞ն հավակնում արդյոք Արշակունյաց ծագմանը: Մեր գուշակության առաջին տարբերակը վերաբերում է VIII դարին: Այն փաստերը, որ մենք հիշատակեցինք այստեղ չափից ավելի աչք զարնող են չհիշատակված մնալու համար:

[1] **Theoph. Cont.**, 122.

նշմարվում: Սահակի տեսած քառակուսի սեղանը անվանված է «տետրասկել», «տետռասկել»՝ τετρασκελής: Սա հունական մի բառ է, որը հայ գրականության մեջ հանդիպում է առաջին անգամ: Սեղանի ծածկոցն ոսկեգույն նկարներով ծիրանի էր, վրան խաչ կար. այդ ծևը օտար է հայկական ճարտարապետության համար: Սեղանի վրա ոսկյա գունդ կար, մինչդեռ Բյուզանդիայի կայսերական իշխանության այդ խորհրդանիշը Հայաստանի թագավորների համար հատկանշական չէ: Պետք է ավելացնել, որ սեղանի մոտ կար մի ձիթենի՝ հույների համար սիրելի ծառ, որը հայերի համար ոչինչ չի խորհրդանշում:

Այս ամենը ստիպում է մեզ մտածելու, որ Սահակի տեսիլքը ստեղծվել է Կոստանդնուպոլսում, Վասիլի գահ բարձրանալու կապակցությամբ, նրա արքայական ծագումն ու Արշակունյաց տոհմին պատկանելու փաստն ապացուցելու համար, ավելի ճշգրիտ տեղեկությունների բացակայության պատճառով:

Կոստանդին Ծիրանածնի ժամանակակից Տաբարին միակ արաբ պատմիչն է, որը հավատում է, որ Վասիլը սերվում է արքայական տոհմից ու նրան անվանում է սլավոն, «որովհետև նրա մայրը սլավոն էր»[1]: Ալեքսանդրիայի պատրիարք Եվտիքիոսը, որը հայտնի էր Սաիդ-իբն-ալ-Բադրիկ անվան ներքո և որն ապրել է Տաբարիի հետ միաժամանակ, ասում է, որ հակառակը «Վասիլը թագավորական ծագում չուներ, քանի որ նրա մայրը սլավոն էր»[2]: Մասուդին կրկնում է նույն բանը, որ Վասիլը թագավորական տոհմի ժառանգ չէր և որ նա սլավոն էր, քանի որ նրա մայրը սլավոն էր[3]:

Մենք գիտենք, որ արաբների համար սլավոնը ոչ այլ ինչ է, եթե ոչ «մակեդոնացի»: Նրանց պնդումները ոչ մի արժեք չունեն և լոկ ենթադրություններ են, որ նրանք արել են ելնելով նրա մականունից: Վասիլին համակրող պատմիչները նրան մակեդոնացի են կոչել ոչ միայն այն բանի համար, որ նա ծնվել էր Մակեդոնիայում, այլև նրան Ալեքսանդրի փայլ հաղորդելու և նրան Նոր Ալեքսանդր դարձնելու համար: Ապացույց չկա, որ նրա մայրը օտար է՝ սլավոն: Դա ևս մի ենթադրություն է, որ արվել է նրա ծննդավայրից կամ մականունից ելնելով: Տարոնի եպիսկոպոսի՝ Հովհաննեսի, վկայությունը որոշակի է. «Վասիլն Արշակունի է, որովհետև նրա մայրը հայուհի է»[4]: Բացի այդ, Վասիլի եղբոր Սմբատ հայկական անունը գրավականն է այն բանի, որ նրա մայրը օտար ծագում չուներ (9):

[1] А. Васильев, Византия и арабы, II.
[2] Там же, с. 20.
[3] Там же, с. 32.
[4] Վարդան, էջ 85:



Պետք չէ մոռանալ, որ հայկական միջավայրում տարածված էր մեկ այլ ավանդություն ևս, ըստ որի Վասիլը ծագումով Տարոնի շրջանի Թիլ բնակավայրից էր[1]: Մենք մեզ հարց ենք տալիս, թե արդյոք այդ տեղեկությունների հեղինակը նույն Հովհաննես եպիսկոպոսը չէ, որն ինքը Տարոնից լինելով, պետք է որ տեղյակ լիներ, թե Վասիլը այդ երկրից էր, թե՞ ոչ: Ահա մի պատճառ ևս Վասիլի տարոնացի լինելու մասին ավանդությունը չթերագնահատելու համար:

Տարոնի շրջանը դարեր շարունակ հանդիսացել է Մամիկոնյանների ժառանգական կալվածքը: Բայց VIII դարից սկսած Բագրատունիներին հաջողվել է հիմնվել այնտեղ: 775 թ. արաբների դեմ հայերի ապստամբության ժամանակ Տարոնը գտնվում էր մի ազդեցիկ Բագրատունու՝ Սահակի որդի Աշոտի իշխանության ներքո: Նրա ժառանգները կարողացել են այնտեղ մնալ հաջորդ դարերի ընթացքում ևս: Հնարավոր է, որ Տարոնի Թիլում պահպանված լիներ Մամիկոնյանների մի կենտրոն: Մայակեսը կամ Հմայակ Հայկազնը, որին համարում են Վասիլի պապ, կրում էր Մամիկոնյանների տոհմում ընդունված մի անուն: Կարող է պատահել, որ նա Կոստանդնուպոլիս էր գնացել Թիլից: Բայց Վասիլի եղբոր՝ Սմբատի, անունը տարածված էր Բագրատունիների մոտ և այդ բանը ստիպում է մտածել, որ Վասիլի ընտանիքը կանանց կողմից կապված էր Բագրատունիների տոհմի հետ:

Ամեն դեպքում Վասիլը Արշակունի չէ: Արշակունիների տոհմը վաղուց էր հանգել: Հայաստանը ուներ բազմաթիվ հոչակավոր իշխանական ընտանիքներ, որոնք Արշակունիների անկումից հետո սուր մրցակցության մեջ էին մտել երկրի քաղաքական իշխանությունը նվաճելու համար: Հատկապես աչքի են ընկել դրանցից երկուսը՝ Բագրատունիների և Մամիկոնյանների տոհմերը, որոնք, ի դեպ, [հայ իրականությունում] Արշակունյաց տնից ավելի հին էին. դրանք հայտնի էին առնվազն արքայից արքա Տիգրանի ժամանակից[2]: Հայաստանի բախտը տնօրինելու համար այս երկու տների վարած պայքարն ի վերջո հանգում էր երկու կողմնորոշումներից մեկի ընտրությանը՝ բյուզանդական կամ արաբական: Բագրատունիների քաղաքականությունը, որի միտումն էր վերականգնել լավ հարաբերությունները արաբների հետ, հանգեցրել է այն բանին, որ նրանք դարձել են երկրի տերերը: Խալիֆան նրանց թագավորական թագ է ուղարկել: Մամիկոնյանները, որոնք ձգտում էին դեպի քրիստոնեական կայսրությունը, ստիպված եղան

[1] Վարդան, էջ 85 ; Ասողիկ, էջ 145. Բագրատունիները Տարոնում մնացին մինչև 966 թվականը (Ասողիկ, էջ 183): Վերջին Աշոտի երկու որդիները՝ Գրիգորն ու Բագրատը հարեցին Վարդաս Սկլերոսին:
[2] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, с. 411-415.

նահանջել իրենց հակառակորդների առաջ և գնացին Բյուզանդիա: Բյուզանդիայում աչքի ընկած բարձրաստիճան հայ պաշտոնյաները հիմնականում Մամիկոնյանների ժառանգներն էին: Կասկած չկա, որ եթե Վասիլը չլիներ, ապա նրանց կհաջողվեր ի դեմս Վարդաս Կեսարի հարստություն հիմնել Բյուզանդիայում: Արդյոք դարձյալ Բագրատունին կտրե՞ց Մամիկոնյանների ճամփան, ինչպես պատահել էր Հայաստանում, թե Վասիլը ներկայացնում էր նույն Մամիկոնյանների տոհմը, կամ երկու հռչակավոր ընտանիքների միությունը:

Վասիլի Արշակունի ծագումը հերքող գիտնականների մեջ կան այնպիսիք, որոնք իրենց անզգուշություն են թույլ տվել միևնույն ժամանակ կասկածելու կամ ժխտելու նրա հայկական ծագումը. նետել են «das Kinde mit dem Bade» [«երեխային լագանի <ջրի> հետ միասին»]: Եթե Վասիլը հայ չլիներ, ապա ինչու՞ պետք է փորձ կատարվեր նրան սերելու Հայաստանի թագավորական ընտանիքից: Կոստանդին Ծիրանածնի աշխատությունների գիտակ մեկնաբան Ի. Ռեյզկեն առաջինն է խոսել Վասիլի սլավոնական ծագման մասին, վկայակոչելով այն փաստը, որ Համզա Սպահանցին նրան սլավոն է անվանում, մինչդեռ վաղուց արդեն բազմուսում Բ. դ'Հերբլոն բացատրել էր արաբ հեղինակների մոտ հանդիպող այս արտահայտության իմաստը:

Ի. Ռեյզկեի գաղափարը ճանապարհ է հարթել հատկապես սլավոն գիտնականների շրջանում: Կասկածից վեր է, որ մեծ կայսր և Բյուզանդիայի ամենափայլուն հարստության հիմնադիր Վասիլը արժանի էր, որ նրա փառքը վեճերի առարկա դառնար...

Մի ռուս բյուզանդագետ իր մասնագիտական ուսումնասիրության մեջ քննել է Վասիլի ծագման վերաբերյալ արտահայտված կարծիքները սկսած Շ. Դյու Կանժից մինչև մեր օրերը, և հանգել է նրան, որ Վասիլը պետք է համարվի կամ հայ, կամ հայ-սլավոն[1]:

Մեկ այլ բյուզանդագետ, այս մեկը ֆրանսիացի, իրավացիորեն նկատել է, որ դա հարցի լուծում չէ, այլ տարբեր տեղեկությունների պարզ համակցություն: Սակայն հենց ինքը սխալ է թույլ տվել պնդելով, որ «Վասիլի հայկական ծագումը հենվում է միայն Փոտի կեղծ տոհմաբանության վրա և որ արաբական աղբյուրների վկայություններն այն մասին, որ նա սլավոն է, արժանի են հաշվի առնվելու»[2]:

Պետք չէ խառնել Վասիլի հայկական ծագումը նրա Արշակունյաց տոհմին պատկանելու հետ: Դրանք տարբեր բաներ են: Փոտին վերագրվող

[1] А. Васильев, «Византийский временник», XII, 1905, с. 148.
[2] L. Bréhier, «Revue Historique», 1922, janvier- février, p. 67.



տոհմաբանությունը կեղծ է այնքանով, որքանով պնդում է Վասիլի Արշակունյաց ծագումը: Սակայն այն փաստարկ է հօգուտ նրա հայկական ծագման. եթե այդ ծագումը չլիներ, ապա փորձ չէր արվի նրան Արշակունյաց տոհմի ժառանգ դարձնելու: Բյուզանդացի հեղինակները կասկածում են նրա Արշակունյաց ծագման վերաբերյալ, բայց ընդունում են նրա հայ լինելը: Ասել, որ Վասիլի հայկական ծագումը Փոտի տոհմաբանությունից բացի այլ հիմք չունի՝ նշանակում է ծաղրել ճշմարտությունը: «Եվթիմիոսի վարքի» վկայությունը լրիվ անկախ է Փոտի վկայությունից: Ինչ վերաբերում է արաբական վկայություններին, ապա պետք չէ դրանց չափազանց վստահել. դրանք վերաբերում են միայն Վասիլի մորը, քանի որ հոր ծագումը կասկած չի հարուցում: Մի մայր, որն իր որդուն անվանում է Սմբատ, կարող է սլավոն լինել միայն այդ բառի աշխարհագրական իմաստով:

Բայց առավել վճռորոշ վկայությունը մեզ է տրամադրում ինքը Բյուզանդիայի պատմությունը: Վասիլը ո՛չ առաջին, ո՛չ էլ վերջին հայն է, որ գահ է բարձրացել: VII դարից սկսած մենք տեսնում ենք հայերի պայքարը կայսերական գայիսոնի համար: Համարյա յուրաքանչյուր կայսր ունեցել է իր հայ մրցակիցը: Մենք այստեղ թվում ենք միայն վկայված փաստեր. 635 թ. Վահան զորավարը կայսր հռչակվեց Հերակլի փոխարեն, 644 թ. Վալենտինոս Արշակունին ապստամբեց Կոստանդ II-ի դեմ, 668 թ. Մեզեզիոս (հայ. Մժեժ) զորավարը կայսր հռչակվեց Կոստանդին IV-ի փոխարեն, Փիլիպպիկոս Վարդանը թագավորել է 711-713 թթ., Արտավազդ կյուրոպաղատը՝ 742 թ., Ալեքսիոս Մուզելե զորավարը՝ 790 թ., 803 թ. կայսր է հռչակվել Վարդան մոնոստրատեգոսը, 808 թ. Արշավիր քվեստորը, 813-820 թթ. գահը զբաղեցրել է Լևոն Հայկազնը, Թովմա Ապստամբը՝ 821-822 թթ., Մամիկոնյան իշխանուհի Թեոդորան կայսրուհի էր 842-857 թթ., Վարդասն ամենակարող էր 856-866 թթ., վերջապես Վասիլը թագավորել է 867-886 թվականին: Առիթ կա՞ արդյոք մտածելու, թե Վասիլը հայ չէր: Վասիլի հարստությունը ստիպված էր հաշվի նստելու Կուրկուասների, Փոկասների, Լեկապենոսների, Սկլերոսների և այլ հայ ընտանիքների հավակնությունների հետ: Ոչինչ առիթ չի տալիս մեզ ենթադրելու, որ հայերի հավակնությունների երկար շղթան, որն ընդգրկում էր բազմաթիվ հարյուրամյակներ, ընդհատվել է մի սլավոնի կողմից, մինչդեռ Բյուզանդիայի պատմությունը չի տրամադրում մեզ և ոչ մի նման փաստ:

Բյուզանդիայի պատմությունից քաղած գլխավոր փաստարկը վերջ կտար ամեն մի անվստահության Վասիլի ծագման հարցում, նույնիսկ եթե անմիջական փաստեր չլինեին:

Վասիլի ով լինելը դատարկ գիտակության հարց չէ: Բյուզանդիան իր վեհությամբ պարտական է իր կազմի մեջ ներգրավված ժողովուրդների

արդյունավետ համագործակցությանը: Կայսրությանը դրանցից յուրաքանչյուրի մատուցած ավանդը և ծառայությունները որոշելը կնպաստի վերջինիս բնույթի և նրա քաղաքակրթությունն ավելի լավ հասկանալու խնդրին: Հայերին առաջնակարգ դեր է բաժին ընկել. Բյուզանդիայի պատմության ամենաակնառու հերոսները կամ ծնունդով, կամ ծագումով հայեր էին: Սովորություն կա նրանց ներկայացնելու որպես արկածախնդիրներ, որպես բախտի շփացած զավակներ, որպես թափառական ասպետներ, որոնք իրենց փառքն էին փնտրում մեծ ճանապարհներին: Ավելի սխալ բան հնարել հնարավոր չէ: Եթե հույները կայսրության անհերքելի տերերն էին լեզվի և քաղաքակրթության միջոցով, ապա հայերը իրենց ստեղծարար մտքի և իրենց ազգին հատուկ ռազմական հանճարի շնորհիվ գտնվում էին այն ազգերի շարքում, որոնք ամենամեծ նպաստն էին մատուցել այն պահպանելու գործում:

## ԼՐԱՑՈՒՑԻՉ ՀՂՈՒՄՆԵՐ

Աստ, էջ 132. Պարոն **M. E. Stein, Date de la naissance de Michel III, «Mélanges Bidez»** ժողովածուի մի հոդվածում ապացուցել է, որ Միքայելը ծնվել է 837 թվականին: Պարոն Ն. Ադոնցի ենթադրությունները դրանից միայն ամրապնդվում են (10):

1. Վահան եպիսկոպոսը, որի մասին խոսվել է վերը (տե՛ս աստ, էջ 160, նաև էջ 162) ոչ այլ ոք է, եթե ոչ Βαάνης Μαστράβων-ը, որը մասնակցել է 879 թ. Կոստանդնուպոլսի եկեղեցական ժողովին (**Mansi, XVII, p. 377**): Չնայած այն բանին, որ բազմաթիվ գիտնականներ ենթադրել են (հմմտ. **F. Dvornik, Les légendes de Constantin et de Méthode, p. 180**), որ Μαστράβων-ը կապ ունի Տամատարխայի կամ Տմուտարականի հետ, բայց այն ոչ մի կապ դրանց հետ չունի: Ճիշտ ընթերցանությունն է Ματραβάν: Խոսքը Տարոնում գտնվող Մատրավան կամ Մատրավանք շատ հայտնի վանքի մասին է: Վերջին անվանումը հայտնվում է Ματραβάτζ ձևով **Notitiae episcopatuum**` «Եպիսկոպոսությունների կարգում», որը հրատարակված է Լևոն Իմաստասերի անվամբ (**Migne, P. G., 107, 284**): Մատրավան կամ ավելի շուտ Մատրավանց, Մատրավանից-ի փոխարեն նույն անվան ժողովրդական ձևի սեռական հոլովն է: Այդպես էր կոչվում Գրիգոր Լուսավորչի կողմից Սեբաստիա բերված Հովհաննես Կարապետի և Ս. Աթանագինեսի մասունքների վրա կառուցված եկեղեցին: Մատրավան նշանակում է «վանք նահատակաց», կազմված է «մատուռն» և «վանք» բառերից: **Ագաթանգեղոս**, Պատմութիւն, Էջմիածին, էջ 422. **Զենոբ**, էջ 8. **Հովհաննէս Մամիկոնեան**, էջ 12 և հջ., **Գրիգոր Մագիստրոս**, **Թղթեր**, էջ 22:

2. Սիմեոն Մագիստրոսը (էջ 686, Բոնն) Վասիլի արտաքինը նկարագրում է հետևյալ բառերով. ἦν δὲ οὗτος τὴν μὲν μορφὴν τοῦ σώματος ἀνθηρότατος, εὐεκτικός, σύνοφρυς, εὐόμματος, σκυθρωπός, μελανόχρους, τὴν ἡλικίαν μέσος τοῦ εὐμήκους, τὰ στέρνα πλατύς, κατηφής, καὶ ὡς ἄν τις εἰκάσῃ, τῶν ἑαυτοῦ συλλογιζόμενος. «Ֆիզիկապես նա ուժեղ էր և հզոր. նրա հոնքերը միանում էին միմյանց. նրա աչքերը խոշոր էին, հայացքը` խիստ, մաշկի գույնը` թուխ. նա միջահասակ էր, թիկունքը լայն, իսկ գլուխը նա կախ էր պահում, կարծես մտքերի մեջ խորասուզված լիներ»: Մենք չունենք և ոչ մի պատճառ կասկածելու այս նկարագրության ճշգրտության վրա, որը կարող էր ժամանակագրին ներշնչված լինել որևէ քանդակով: Պետք է խոստովանել, որ այն դիմագծերը, որ նա վերագրում է Վասիլին` իրար միացող հոնքեր, խոշոր և մուգ գույնի աչքեր, թուխ մաշկ, բնորոշ են հայկական տիպի համար և բոլորովին չեն համապատասխանում սլավոնական տիպին: Եվ մենք հասկանում ենք, թե ինչու էր Ծիրանածինը գրում, որ Վասիլի ընտանիքը պահպանել էր իր ազգային հատկանիշները:

## ՎԱՍԻԼ I-Ի ՄԱՀՎԱՆ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ՆՐԱ ՈՐԴՈՒ՝ ԼԵՎՈՆ VI ԻՄԱՍՏԱՍԵՐԻ ԱՐՏԱՍԱՆԱԾ ԴԱՄԲԱՆԱԿԱՆ ՃԱՌԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Լևոն VI Իմաստասերի *Դամբանական ճառի* հրատարակիչներ՝ հայր Ա. Վոգտը և Ի. Հաուսհերը միգուցե իրավացի են, երբ այն համարում են փաստագուրկ ու բավականաչափ անդեմ: Այդուհանդերձ դա չի նվազեցնում այդ շատ կարևոր փաստաթղթի պատմական արժեքը (1):

«Վասիլի կյանքը» այնպես, ինչպես այն ավանդել է նրա թոռը (2), մեծ վստահություն չի ներշնչում: Այն կասկածներ չհարուցելու համար չափից ավելի է ծանրաբեռնված առասպելներով: Թերևս իրավացի էին նրանք, ովքեր դրանք համարում էին Կոստանդին Ծիրանածնի հնարանքներն իր պապի անունը փառաբանելու համար: Եվ ահա, Լևոն Իմաստասերն իր *ճառով* պաշտպանում է որդուն նման կասկածներից: *Ճառը* պարունակում է «Վասիլի կյանքի» հիմնական, ստվար գծերով պատկերած ուրվագիծը: Հռետորը ժամանակ չի ունեցել մանրամասների վրա կանգ առնելով նկարագրելու նրա ամբողջ կյանքը, նամանավանդ, որ նրա նպատակը պատմական աշխատություն գրելը չէր, այլ ճարտասանական արվեստի օրենքներին համապատասխան գովաբանելը: Մանրամասն շարադրանքի հոգսը նա թողել է որդուն՝ Կոստանդին Ծիրանածնին: Եթե համեմատելու լինենք հոր և որդու ստեղծագործությունները, ապա մենք կտեսնենք, որ առաջինը նախապատրաստել է երկրորդի աշխատության հենքը: Այդ իմաստով Լևոնի *Դամբանականը* Կոստանդին Ծիրանածնի գրական ազնվության փայլուն ապացույցն է: Նա ոչինչ չի հորինել կամ աղավաղել, այլ մանրակրկիտ կերպով վերարտադրել է այն ամենը, ինչ նա լսել էր արքունիքում իր հոր թագավորության և հենց իր՝ Վասիլի կենդանության օրոք: Վասիլի կենսագրության հիմքը նշմարվում է արդեն Լևոնի ճառում:

Վասիլի Արշակունյաց տոհմին պատկանելը, նրա ցածր հասարակական դիրքը «նման ամբոխի դիրքին», շարժունակ ազնվությունը, նրա վեհասքանչ կեցվածքը, հոգու գեղեցկությունը. «հասուն տարիքին հասնելուց հետո» նրա փայլուն քաջությունը, «որը նրան դրդում էր մրցակցելու» հաղթություններ տանելու համար՝ որոշակի ակնարկ ըմբշամարտում Վասիլի տարած հաղթանակների. բազմաթիվ նշաններ, որոնք նրան կանխագուշակում էին կայսրությունը մանուկ հասակից և պատանեկության տարիներին՝ նա-



հատակ Դիոմեդեսի հայտնությունը կայսրի պատվին հասնելու խոստումով, պարակիմոմենոսի պաշտոնում կայսերական ծառայությանն անցնելը, «լավագույն կանանցից մեկի» հետ ամուսնությունը, նախանշաններ, որոնք այդ կնոջը ևս կայսրություն էին խոստանում, այդ ժամանակ թագավորողի ձեռքից թագ ստանալը և «անքննելի ճակատագրի» կամքով վերջինիս անհետանալը: Այսպիսիք են *Դամբանականում* շարադրված փաստերը և դրանք են Կոստանդին Ծիրանածնի գրած կենսագրության հիմնական կետերը:

Կարելի է այլ համեմատություններ ևս անել: Լևոնը գտնում է, որ Վասիլը պետությունը ստացավ «կիսով չափ թոռոմած» վիճակում՝ «որպես մույկեր հագած մի ծեր կին»: Կոստանդինը նույնպես այդ կարծիքին է: Վասիլի գործունեությունը ներքին քաղաքականության ասպարեզում, թշնամիների դեմ նրա տարած հաղթանակները, բազմաթիվ կառույցները՝ պալատներ, տաճարներ, մասնավոր տներ, և վերջապես եկեղեցական գործերում հաշտության քաղաքականությունը, այդ ամենը նկարագրել է նաև նրա որդին: Վերջին հաշվով Լևոնի Դամբանականն իր հիմնական գծերով համապատասխանում է Կոստանդին Ծիրանածնի ընտրած «ժանրին»:

Դամբանականը, մասնավորապես, պարունակում է մի քանի արժեքավոր նշումներ, որոնք, առաջին հայացքից, թույլ են տալիս վիճելու Լևոնի տարիքի և նրա օրինական զավակ լինելու հարցի վերաբերյալ:

Հեղինակի հայտարարության համաձայն, նա 22 տարեկան էր, երբ գրում էր այդ *ճառը*: Իսկ ե՞րբ է նա այն գրել: Գիտնական հրատարակիչները կարծում են, որ *ճառն* արտասանվել է Վասիլի մահից քիչ անց (3): Բայց հենց ինքը *ճառը* ոչ մի ժամանակագրական նշում չի կրում բացի այն, որ *ճառի* վերջում ասվում է. « Վերջերս էր, ո՜վ հայր, որ հանելով կայսերական զգեստը դու հագար երկնային թագավորության հոյակապ հագուստը. վերջերս էր, որ դու հեռացար մեզանից վայելելու երկնային պերճությունը..., վերջերս էր, որ դու գնացիր ճաշակելու շատ նուրբ պտուղներ..., այժմ դու մեծ ես և հարգված Աստծո մոտ»:

Ἄρτι [«վերջերս»] և νῦν [«այժմ» բառերի] հակադրությունը մի բան է բացահայտում. Վասիլի մահվան և *ճառն* արտասանելու միջև մի որոշակի ժամանակահատված էր անցել: Սակայն և ոչ մի նշան մեզ հնարավորություն չի տալիս որոշելու դրա տևողությունը: Հրատարակիչները ենթադրում են, որ *ճառն* արտասանվել է այն ժամանակ, երբ Փոտը հայրապետական աթոռը դեռևս չէր զիջել Ստեփանոս Ա-ին և քանի որ այդ բանը տեղի էր ունեցել, նրանց կարծիքով, 886 թ. Ծննդյան տոներին, ապա *ճառը* պետք է նախորդած լիներ այդ տարեթվին:

Սակայն *ճառում* Ստեփանոսին նվիրված մեծ հատվածը ենթադրում է, ինչպես իրավացիորեն նշում է Ա. Գրեգուարը, որ Ստեփանոսի հայրապե-

տությունն արդեն կատարված փաստ էր[1]: Այդ հատվածի վերջին մասը, ուր խոսվում է «[նրա <ջանքերով>] Եկեղեցում հաստատված խաղաղության» մասին՝ τὸ τῇ ἐκκλησίᾳ τὴν εἰρήνην δι᾿ ἐκείνου περιποιηθῆναι, լիովին արդարացնում է Ա. Գրեգուարի մեկնաբանությունը: Այդ դեպքում *ճառը* գրվել է 886 թ. Ծննդյան տոներից հետո, քանի որ այդ թվականով է համադրվում Ստեփանոսի հայրապետությունը: Թերևս այդ թվականը ևս անվիճելի չի թվում: Ոչինչ մեզ իրավունք չի տալիս պնդելու այդ թվականի վրա, ինչպես նաև ոչինչ մեզ չի խանգարում այդ իրադարձությունը թվագրելու 887 թ. Ծննդյան տոներով[2]:

Նման անորոշության դեպքում դժվար է ընդունել այն շտապողական եզրակացությունները, որոնց հանգել են Ա. Վոգտը և Ի. Հաուսհերը Լևոնի ծննդյան և նրա օրինական զավակ լինելու հարցում: Պետք է մի կողմ դնել նրանց «խորաթափանց մեկնությունը» ըստ որի Վասիլը Եվդոկիայի հետ ամուսնացել է մոտ 858 թ. Միքայել III-ի հրամանով և ըստ որի «քիչ թե շատ զաղտնի» այդ ամուսնությունը հայտարարվել էր Միքայելի կողմից Վասիլին թագադրելուց քիչ առաջ... Այդ ամուսնությունից պետք է որ ծնված լինեին Կոստանդինը՝ մոտ 859 և Լևոնը՝ 864 թվականին: Այդ մեկնությունը որքան կամայական, նույնքան և սխալ է: Եթե Լևոնի ճշումները մեկնաբանության կարիք են զգում, ապա այդ բանը պետք է անել այն տեղեկությունների հիման վրա, որոնք մեզ են հաղորդում ժամանակագիրները:

Վասիլը 4 որդի ուներ և նույնքան դուստր: Որդիներն էին Կոստանդինը, Լևոնը, Ալեքսանդրը և Ստեփանոսը:

Հեղինակները չեն հիշատակում առաջին որդու ծնունդը: Մնացած որդիների կապակցությամբ մենք ունենք հետևյալ վկայությունները.

[Լևոն]

**Sym. Mag.**, 681 B: τῷ δὲ Σεπτεμβρίῳ μηνὶ τῆς ιε′ ἐπινεμήσεως ἐγεννήθη Λέων ὁ βασιλεὺς ἐκ Μιχαὴλ καὶ Εὐδοκίας τῆς ᾿Ιγγερίνης ἔτι περιόντος τοῦ Μιχαήλ [«սեպտեմբեր ամսին տասնհինգերորդ օրը Միքայելից՝ դեռևս նրա կենդանության օրոք, և Եվդոկիա Ինգերինայից ծնվեց Լևոն կայսրը (և ո՛չ Կոստանդինը, որը սխալ է - Ն.Ա.)»]:

**Sym. Log.**, Georg. Mon. Cont., 835 B: ἐγεννήθη δὲ Λέων ὁ βασιλεὺς ἐκ Μιχαὴλ καὶ Εὐδοκίας τῆς ᾿Ιγγερίνης ἔτι περιόντος τοῦ Μιχαήλ μηνὶ Σεπτεμβρίῳ α′, ἰνδικτιῶνος ιε′ [«սեպտեմբեր ամսին առաջին օրը

[1] «Byzantion», VII, 1932, p. 631.

[2] Եթե 5 տարիների (և մի քանի ամսվա հայրապետության) մասին մեր ենթադրությունը հաստատվի, ապա Ստեփանոսի «գահակալությունը» պետք է հաշվել 887 թ. դեկտեմբերի 25-ից, տե՛ս վարը, էջ 549 (4):



Միքայելից՝ դեռևս նրա կենդանության օրոք, և Եվդոկիա Ինգերինայից ծնվեց Լևոն կայսրը»]:

**Leo Gram.**, 249: ἐγεννήθη δὲ Λέων ὁ βασιλεὺς ... δεκεμβρίου πρώτη - **Slave**, p. 109 [«դեկտեմբերի մեկին ... ծնվեց Լևոն կայսրը»]

**Ստեփանոս**

**Sym.**, 688: ἐν τῇ ἑορτῇ τῶν Χριστοῦ γέννων προσελεύσεως γενομένης βαπτίζει ὁ βασιλεὺς διὰ Φωτίου Στέφανον υἱὸν αὐτοῦ ἐν μεγάλῃ ἐκκλησίᾳ [«Քրիստոսի ծննդյան տոնին թափորի ժամանակ Փոտ <պատրիարքից> Մեծ Եկեղեցում մկրտվեց կայսեր (իմա՛ Վասիլի) որդին՝ Ստեփանոսը]: Նույն բանը մյուսների մոտ առանց Փոտի հիշատակության. **Georg.**, 840; **Leo Gram.**, 254 – **Slave**, 111.

**Ալեքսանդր**

**Sym.**, 690: τῷ ε′ αὐτοῦ ἔτει τῆς Νοεμβρίου μηνὸς ἐγεννήθη ᾿Αλέξανδρος βασιλεὺς ἀπὸ ῎Ιγγηρος Εὐδοκίας, γνήσιος παῖς Βασιλείου [«Նույն տարվա նոյեմբերի հինգին Եվդոկիայից՝ Ինգերի <դստրից> ծնվեց Ալեքսանդր կայսրը, Վասիլի հարազատ զավակը»], նույնը՝ **Georg.**, 841; **Leo Gram.**, 255 – **Slave**, 111 (5):

Ինչպես տեսնում ենք, Լևոնի ծննդյան օրվա վերաբերյալ հեղինակների տվյալները չեն համաձայնում: Մեկը հիշում է սեպտեմբեր ամիսն առանց օրը նշելու, մյուսը՝ սեպտեմբերի 1-ը, իսկ երրորդը՝ դեկտեմբերի 1-ը: Ինքը՝ Լևոն VI-ը, վկայում է, որ իր ծննդյան տարեդարձը մի քանի օրով նախորդում էր Ս. Թովմայի տոնին, որը նշում էին հոկտեմբերի 6-ին[1]: Դա վկայում է, որ նա ծնվել է սեպտեմբերի վերջին կամ հոկտեմբերի սկզբին: Անհամաձայնեցումը կարծես թե թյուր ընթերցման հետևանք է: Դեկտեմբերի 1-ի դեպքում սխալի պատճառը միգուցե δέ մասնիկն է եղել. ἐν τῷ δ᾿ ὀκτωβρίῳ [«իսկ հոկտեմբերին»] կամ δ′ ὀκτωβρίῳ [«հոկտեմբերի չորսին»] դարձել է δεκεμβρίῳ [«դեկտեմբերին»]:

Կարևորն այն է, որ երկու հեղինակներն էլ Լևոնի ծնունդը տեղադրում են XV ինդիկտիոնում: Դա համընկնում է 866 թ. սեպտեմբեր, հոկտեմբեր կամ դեկտեմբեր ամիսներին: Հրատարակիչները սխալվել են գրելով «XV ինդիկտիոնի հոկտեմբեր ամիս, 867 թ.»: Վարդասը սպանվել է XIV ինդիկտիոնի ապրիլ ամսին: Վասիլը թագադրվել է նույն ինդիկտիոնի մայիս ամսին[2]. և՛ մեկ, և՛ մյուս իրադարձությունները տեղի են ունեցել 866 թվականին: Սակայն այդ նույն 866 թ. սեպտեմբեր ամսից սկսվում է XV ինդիկտիոնը: Ուստի Լևոնը ծնվել է մոտավորապես 866 թ. հոկտեմբերի 1-ին:

[1] Introduction de l'Oraison funèbre de Basile I, p. 10.

[2] Vita Baslii, 238 et 239.

Հաջորդ տարին Վասիլը իրեն միահեծան կայսր է հռչակել: Հեղինակները նշում են, որ կայսրն իր որդի Ստեփանոսին մկրտել է Ծննդյան տոներին: Նրանք նկատի ունեն նույն կամ հաջորդ տարվա Ծննդյան տոնը, որովհետև դրանից հետո Սիմեոնը խոսում է Վասիլի թագավորության երրորդ տարվա իրադարձությունների մասին: Ստեփանոսն ուրեմն պետք է որ ծնված լիներ 867 կամ ավելի շուտ 868 թ. դեկտեմբեր ամսին: Քանի որ Եվդոկիան մասնակցել էր Միքայելի սպանությանը, ապա հավանական չէ, որ նա այդ ժամանակ հղի լիներ: Այսպիսով, 868 թ. գերադասելի է:

Սիմեոնը Լևոնի ծնունդը տեղադրում է Վասիլի թագավորության հինգերորդ տարվա նոյեմբեր ամսին, հետևաբար 870 կամ 871 թթ., կախված այն բանից թե Վասիլի թագավորության սկիզբ կհամարվի 866 թ. մայիսի 26-ը, թե՞ 867 թ. սեպտեմբերի 24-ը: Սիմեոնը կարծես թե հաշվում է մայիսի 26-ից, եթե դատելու լինենք այն բանից, որ Իգնատիոսի մահը նա տեղադրում է Վասիլի թագավորության 12-րդ տարում. Τὸ ιβ' τελευτᾷ ὁ πατριάρχης Ἰγνάτιος [«Տասներկուերորդ տարում վախճանվեց Իգնատիոս պատրիարքը»]: Իգնատիոսը մահացել է 877 թ. հոկտեմբերի 23-ին և դա համապատասխանում է Վասիլի թագավորության 12-րդ տարվան, եթե հաշվենք 866 թ. մայիսի 26-ից:

Կոստանդին Ծիրանածնի տվյալներով Ստեփանոսը Վասիլի կրտսեր որդին էր, մինչդեռ մնացած պատմիչները նրան Ալեքսանդրից ավագ են համարում: Կեդրենոսը նույնիսկ ասում է, որ Ալեքսանդրը 20 տարեկան էր իր գահակալության ժամանակ՝ νεανίας τὸ εἰκοστὸν τῆς ἡλικίας [«քսան տարեկան պատանի էր»][1]: Դա միանգամայն սխալ տեսակետ է, սակայն այն ապացուցում է, որ նա Ալեքսանդրին համարում էր Վասիլի կրտսեր որդին: BECLAS ակրոստիքոսը, ուր Ստեփանոսը նշված է որպես եղբայրներից կրտսերը, չի՞ ազդել արդյոք Կոստանդին Ծիրանածնի վրա: Սակայն տառերի տեղադրությունը կարող է բացատրվել BECLSA-ի փոխարեն BECLAS ավելի բարեհնչուն ձևը ստեղծելու ցանկությամբ: Չնայած այն բանին, որ Կոստանդնի հեղինակությունը շատ մեծ է, ճշմարտությանն ավելի մոտ կլինի, եթե Ստեփանոսն ավելի մեծ լինի, քան Ալեքսանդրը. ավելի հասկանալի կդառնա, թե ինչու՞ էր Վասիլը եկեղեցուն նվիրել Ստեփանոսին և ոչ թե Ալեքսանդրին. բացի այդ, Ստեփանոսն ավելի համապատասխան տարիք կունենար հայրապետական աթոռին նստելու ժամանակ:

Մեր կատարած հետազոտություններից ի վերջո պարզվում է, որ Լևոնը ծնվել է 866 թ. հոկտեմբեր ամսին, Ստեփանոսը՝ 868 թ. դեկտեմբերին, Ալեքսանդրը՝ 870 թ. նոյեմբերին:

[1] Cedr., II, 274.



Այսպիսով, Լևոնի *Դամբանական ճառը* հաղորդու՞մ է մեզ արդյոք այնպիսի մի տվյալ, որը կարող է փոփոխություն մտցնել Վասիլի ընտանիքին վերաբերող այս տարեթվերի մեջ: Լևոն VI-ը համամիտ է այն ժամանակագիրների հետ, որոնք պնդում են, թե Վասիլը ամուսնացել էր Եվդոկիայի հետ պարակիմոմենոս եղած ժամանակ: Սա ժամանակագրական շատ հաստատուն կետ է: Ազնվական ընտանիքից դուրս եկած երիտասարդ աղջիկը, որը կայսերական հարսնացուների շարքում էր, անկասկած, չէր կարող ամուսնանալ հասարակ մի պրոտոստրատորի հետ, նույնիսկ եթե դա կայսերական պրոտոստրատոր էր: Այդ պաշտոնը Վասիլը ստանձնել էր Դամիանոսից հետո, որը, ըստ Սիմեոնի, զոհվել էր Միքայել III-ի թագավորության տասներորդ տարում: Նույն հեղինակը Միքայելի ինքնակալությունը թվագրում է 855 թ., մոր հետ միասին 14 տարի թագավորելուց հետո: Ուստի և նրա թագավորության 10-րդ տարին համընկնում է 865 թվականին: Քիչ անց Միքայելը Վասիլին հրամայում է բաժանվել կնոջից՝ Մարիամից, նրան իր սիրուհին համարվող Եվդոկիա Ինգերինայի հետ ամուսնացնելու համար: Հաջորդ տարին Եվդոկիան աշխարհ է բերում Լևոնին՝ իր անդրանիկ որդուն:

Լևոն VI-ն այլ բան չի ասում: Միքայելն ուզում էր ամուսնացնել Վասիլին. հարսնացուն գտնվեց: «Դրանից քիչ առաջ» ինքը՝ Միքայելը նույնպես ամուսնացել էր: Ամեն կողմից գեղեցիկ աղջիկներ էին հավաքել և Եվդոկիա Ինգերինան դրանց թվում էր: Միքայելը նրան չէր ընտրել, քանի որ Եվդոկիան՝ հեղինակի ապագա մայրը, ուրիշին էր վիճակված: Նախախնամությունը նրան հետագա հրճվանք էր վերապահել: «Քիչ անց» նա ամուսնանում է Վասիլի հետ:

Ելնելով այդ հատվածից Ա. Վոգտը և Ի. Հաուսհերը ցանկանում են վիճարկել Վասիլի ամուսնության և Լևոնի ծննդյան տարեթվերը: Նրանք Վասիլի ամուսնությունը տեղադրում են մոտավորապես 857 կամ 858 թթ.՝ «Միքայելի 855 թ. տեղի ունեցած ամուսնությունից քիչ անց»: Բայց քանի որ այդ ժամանակահատվածում Վասիլը դեռևս չուներ ո՛չ պատրիկի, ո՛չ էլ պարակիմոմենոսի պատվաստիճան, ապա նրանք մեղադրում են Լևոնին սխալի և հակասության մեջ:

Դժբախտաբար նրանք չափազանց մեծ նշանակություն են տալիս «դրանից քիչ առաջ», «դրանից քիչ անց» հռետորական դարձվածներին: Քննարկվող հատվածում հեղինակն առաջ է քաշում այն գաղափարը, որ իր ապագա մայրը՝ «ամենագեղեցիկ կանանցից մեկը», հենց սկզբից արժանի էր կայսերը, սակայն Աստված նրան նախախնամել էր ավելի լավ ամուսնու՝ հեղինակի հոր: Հռետորի համար աններելի աննրբանկատություն կլիներ, եթե նա ասեր, որ այդ սպասումը տևել էր 10 տարի: Նման դեպքում միմիայն

կարելի էր և պետք էր ասել, որ Նախախնամությունը ի վերուստ շուտով կամ «քիչ անց» իր կանխատեսումը իրականություն է դարձրել: Այդ հռետորական դարձվածին պետք չէ ժամանակագրական արժեք տալ:

Լևոն VI-ն իր *ճառում* ասում է, որ ինքը 22 տարեկան է, այսինքն, որ ինքը ծնվել է 864 թ., եթե իհարկե *ճառը* գրվել է Վասիլի մահվանից քիչ անց՝ 886 թ., ինչպես ենթադրում են գիտնական հրատարակիչները: Այդ կապակցությամբ Ա. Վոգտը բազում ենթադրություններ է անում, որոնք հարցը պարզելու փոխարեն ավելի են խճողում: Այն ճշտումը, որ Լևոնն անում է իր տարիքի վերաբերյալ տարօրինակ, եթե ոչ կասկածելի է թվում մի հռետորի համար, որը հիմնականում արտահայտվում է մշուշոտ ու անորոշ լեզվով: εἴκοσι γὰρ ἔτη δυσὶ τοῦτο συνάγεται [«քանզի երկու տարվան միացավ ևս քսան»] նախադասությունը լուսանցագիր չէ՞ արդյոք: Ենթադրենք այնուամենայնիվ, որ այն հեղինակինն է:

Լևոնի ծննդյան տարեթիվն ավելի ճշգրիտ է, քան *ճառի* կամ Ստեփանոսի ձեռնադրման տարեթիվը: Ինչպես տեսանք այն հավաստագրված է XV ինդիկտիոնում, որը համապատասխանում է 866 թվականին: Ա. Վոգտը մի կողմ է նետում այդ թվականը առավել հեշտությամբ, քանի որ նա կարծում է, որ XV ինդիկտիոնը համընկնում է 867 թվին: Երե Լևոնը ծնվել է 866 թ. և իր *ճառն* արտասանել 22 տարեկան հասակում, ապա այն պետք է թվագրել 888 թվականով: Հնարավոր է, որ այն արտասանվել է Վասիլի մահվան տարեդարձի կապակցությամբ, օգոստոս ամսին:

Ինչպես նշվել է *ճառի* նախաբանում, Լևոնն իր ἐπιτάφιος-ը [«Դամբանականը»] հեղինակել է Գրիգոր Նազիանզացու երկու ճառերի նմանակությամբ, որոնք արտասանվել էին Գրիգորի եղբայր Կեսարիոսի և իր դաշնակեր Բարսեղ Կեսարացու պատվին: Վերջինս մահացել էր 379 թ. հունվարի 1-ին, իսկ Գրիգորի ճառն արտասանվել էր 2 տարի անց՝ նրա մահվան տարեդարձի կապակցությամբ[1]: Լևոն VI-ը ոչ միայն ընդօրինակել է Գրիգոր Նազիանզացուն, այլև հավատարիմ է մնացել նրան այդ հարցում ևս. նա ընտրել է իր հոր մահվան երկրորդ տարեդարձը նրա հիշատակը փառաբանելու համար: Կարծես նույնիսկ *ճառի* գաղափարը նրան հուշել է նրա ընտրած բնօրինակը: Լևոնը ասում է, որ այս *ճառը* իր առաջին փորձն է. τῶν λόγων ἡ ἀπαρχή [«ճառերի նորապտուղ»]: Այստեղ ևս նա կրկնօրինակում է իր ուսուցիչ Գրիգոր Նազիանզացուն, որը նույն բանն է ասում Կեսարիոսի պատվին արված գովասանքի մեջ՝ αὐταὶ τῶν ἐμῶν λόγων αἱ ἀπαρχαί[2] [«իմ ճառերի նորապտուղը»]: Կարելի է առարկել մեր առաջարկած թվակա-

[1] F. Boulanger, Grégoire de Nazianze (Textes et documents pour l'étude historique du christianisme, poubliés sous le direction de H. Hemmer et P. Lejay), Paris, 1908, p. XXXII.

[2] Grégoire de Nazianze, op. cit., p. 32.



նի դեմ. եթե այն գրվել է 888 թ., ապա այն չի կարող «առաջին քայլը» լինել, որովհետև Լևոնը ճառ է արտասանել Ստեփանոսի ձեռնադրման ժամանակ, որը նախորդել է այդ թվականին: Նախ, դժվար է տառացիորեն հասկանալ Գրիգոր Նազիանզացու խոսքերը: Հռչակավոր հռետորը ծնվել է 330 թ., ձեռնադրվել 361 թ., իսկ իր եղբոր պատվին ճառ է արտասանել 369 թվականին: Հավանական չէ, որ ի ծնե հռետորը, որպիսին էր նա, առաջին անգամ ցուցաբերեր իր ճարտասանությունը 40 տարեկան հասակում: Միգուցե առաջին քայլեր ասելով, նա նկատի ուներ իր եղբորը նվիրված ճառերից առաջինը:

Լևոն VI-ն այդ արտահայտությունն օգտագործում է հենց այդ իմաստով: «Հարկավոր է,- ասում է նա,- որ, ինչպես Աստծուն, այնպես էլ նրանց, ովքեր նրանից հետո անկասկած մեր ծննդյան հեղինակներն են, նվիրենք մեր կարողությունների չափով մեր առաջին փորձերը»: Հռետորը ուրեմն ճանաչում է իր ծննդյան 2 հեղինակներ՝ Աստծուն և իր ծնողներին. և այնպես, ինչպես իր առաջին փորձը նա ընծայել էր Աստծուն, ցանկանում է այժմ այն ընծայել իր ծնողներին: Աստծուն ընծայած առաջին փորձի ներքո պետք է հասկանալ Ὁμιλία ἐν τῷ τῆς Θεοῦ Σοφίας ἐπωνύμῳ ναῷ ῥηθεῖσα [«Քարոզ, որ արտասանվել է Աստծու Իմաստության անվանակիր տաճարում»] ճառը, արտասանած իր եղբոր՝ Ստեփանոսի, ձեռնադրման օրը: Այսպիսով Լևոնի *Դամբանական ճառը* ոչ մի դժվարություն չի հարուցում. հակառակը այն հաստատում է ժամանակագրությունը, որը հենվում է բյուզանդացի ժամանակագիրների տվյալների վրա, և Ա. Վոգտը իրավացի չէ, երբ դրանք հաշվի չի առնում: Լևոնը ծնվել է 866 թ. հոկտեմբերի 1-ին, Ստեփանոսը՝ 868 թ. դեկտեմբերին, Ալեքսանդրը՝ 870 թ. (կամ 871) նոյեմբերի 23-ին:

Ինչ վերաբերում է Վասիլի որդիների օրինական լինելու հարցին, ապա Լևոնի *ճառը* չի հաղորդում և ոչինչ, որը թեկուզ չնչին ստվեր գցեր նրա ծնողների ամուսնական կյանքի վրա: Հակառակը, այն լի է այնքան հուզիչ որդիական սիրով իր հոր և մոր նկատմամբ, որ ներկայանում է որպես խոսուն վկայություն այդ ընտանիքի վրա ճնշող նողկալի զրպարտության դեմ:

Որոշ ժամանակագիրներ ասում են, որ իբր Լևոնն ու նույնիսկ Կոստանդինը Միքայելից ծնված ապօրինի զավակներ են: Նրանք պատմում են, որ Միքայելը Եվդոկիային կնության էր տվել Վասիլին մի պայմանով, որ Վասիլը ձևական ամուսին պիտի լիներ, իսկ ամուսնական իրավունքը պետք է պատկաներ Միքայելին: Փոխարենը Միքայելն իր հարազատ քրոջը՝ Թեկղիին, տրամադրել էր Վասիլին որպես սիրուհի: Հավատացնում էին, որ Եվդոկիայի առաջին երկու որդիների հայրը Միքայելն էր և ոչ թե Վասիլը:

Կոստանդնի մահվան կապակցությամբ ժամանակագիրները ասում են,

որ նա υἱὸς Μιχαὴλ βασιλέως ἐξ Εὐδοκίας, ὡς δὲ λόγος υἱὸς Βασιλείου (6) [«Միքայել կայսեր՝ Եվդոկիայից <ծնված որդին էր>, բայց ընդունված էր ասել, որ Վասիլինն էր»][1]: Դա ակնհայտ զրպարտություն է: Իսկապես, Կոստանդինը մի որոշ ժամանակ դիտվում էր որպես Լյուդովիկոս II Բարեպաշտ կայսեր դստեր նշանածը: Բարիին տիրանալու բազմաթիվ անհաջող փորձերից հետո, Լյուդովիկոսը օգնություն խնդրեց Վասիլից ու նրան առաջարկեց դաշնակցության պայմանագիր կնքել՝ խոստանալով այն նվիրագործել իր դուստր Հերմենգարդայի և Կոստանդնի ամուսնությամբ: Այդ բանակցությունները տեղադրվում են 870 և 871 թվականների միջև: Լյուդովիկոսի պատվիրակները եկել էին Կոստանդնուպոլիս գործը կարգավորելու համար[2]:

Հետևաբար Կոստանդինը այդ ժամանակ պետք է որ ամենաքիչը 14-15 տարեկան լիներ որպես փեսացու ներկայանալու համար: Ուրեմն նա պետք է ծնված լիներ մոտ 855 թ., մինչդեռ Վասիլի ամուսնությունը Եվդոկիայի հետ տեղի է ունեցել 10 տարի անց՝ 865 թ., Վարդասի ողբերգական մահից առաջ: Ակնհայտ է, որ Կոստանդնի ծնունդը ոչ մի կապ չի կարող ունենալ նրա հոր «նոր ամուսնության» հետ: Կոստանդինը ծնվել էր, անկասկած, նրա առաջին կնոջից՝ Մարիամից:

Ինչ վերաբերում է Լևոնի օրինական զավակ լինելուն, ապա դա նույնպես կասկածից վեր է: Եթե հավատալու լինենք ժամանակագիրներին, ապա Միքայելը սիրային կապի մեջ էր Եվդոկիայի հետ սեռական հասունության հասնելուց ի վեր: Այդ կապին վերջ տալու համար նրա մայր Թեոդորան, Թեոկտիստոս վարչապետի առաջարկությամբ, Միքայելին պարտադրել էր ամուսնանալ Դեկապոլիտեսների ընտանիքին պատկանող մեկ այլ Եվդոկիայի հետ: Միքայելը Եվդոկիայի հետ էր ամուսնացել առանց Եվդոկիա Ինգերինայի հետ կապը խզելու: Նրա ամուսնության ճշգրիտ տարեթիվը մենք չգիտենք, սակայն այն պետք է նախորդած լիներ 856 թ. տեղի ունեցած Թեոկտիստոսի սպանությանը: Չի կարելի շատ հետաձգել այդ տարեթիվը, քանի որ 839 թ. ծնված Միքայելը ամուսնության համար «հարմար» տարիք պետք է որ ունենար, որպեսզի նրա մայրը, առաքինի մի կին, վճռեր նրան ամուսնացնել: Վասիլը Եվդոկիայի հետ է ամուսնացել 865 թվականին: Ուստի Միքայելը պետք է որ շարունակած լիներ հարաբերությունները իր սիրուհու՝ Եվդոկիա Ինգերինայի, հետ իր ամուսնությունից

---

[1] **Sym.**, 692; **Georg. Cont.**, 844; **Leo Gramm.**, 258.

[2] **Mansi,** XVI, p. 7-8E: causa nuptialis commercii quod efficiendum ex filio imperatoris Basilii et genita praefati Dei cultoris Augusti ab utraque parte sperabatur simul et parabatur [«ամուսնության մասին բանակցությունների համար՝ ամուսնություն, որ պետք է կայացվեր Վասիլ կայսեր որդու և աստվածապաշտ Օգոստոսի դստեր միջև, և որը երկու կողմից էլ հույսով սպասվում և նախապատրաստվում էր»]:



հետո ևս 10 տարի, եթե չհաշվենք դրան նախորդող տարիները:

Բոլոր այդ տարիների ընթացքում Միքայելը զավակներ չի ունեցել ո՛չ իր օրինական կնոջից, ո՛չ էլ իր ենթադրյալ սիրուհուց: Մինչդեռ գեղեցկուհի Եվդոկիան՝ Վասիլի կինը դառնալով, իր ամուսնության հենց հաջորդ տարին՝ 866 թ. հոկտեմբերի, ամուսնուն է պարգևել իր անդրանիկ զավակին. հետո ևս երկու որդի՝ Ստեփանոսին ու Ալեքսանդրին (կամ Ալեքսանդրին ու Ստեփանոսին) և չորս դուստր: Փաստորեն մենք ոչ մի պատճառ չունենք կասկածելու կամ խոսելու Միքայելի հայրության մասին, որն ամուլ էր մնացել և՛ որպես ամուսին, և՛ որպես սիրեկան:

Լևոն VI-ն իրեն Վասիլի որդին է համարում: Եթե նա թեկուզ մի փոքր կասկած ունենա՛ր իր ծագման և կամ իր ծնողների բարոյականության հարցում, ապա չէր ստեղծի իր գովաբանող ճառը, նա այդքան ջերմ զգացմունքներով չէր խոսի մի հասարակության առջև, «որն ականատես էր եղել այդ պատմությանը»: Ոչինչ չէր ստիպում նրան հրապարակավ հանդես գալու որպես իր ծնողների ներբողիչ, բացի այն հաստատ համոզմունքից, որ նրանք կազմել են աշխարհի ամենալավ զույգը:

*Ճառի* հրատարակիչներն անդրադարձել են այդ հարցին ևս, սակայն առաջ են քաշել մեկը մյուսից անհիմն վարկածներ: Նրանք իրենք իրենց հարց են տալիս, թե ինչո՞ւ է Լևոն VI-ը Միքայելի համար կառուցել տվել կայսերական աստիճանին վայել դամբարան: Անկասկած այն նույն պատճառով, որով Թեոփիլոսը մահվան էր դատապարտել Լևոն V-ին սպանողներին, որոնք գահ էին բարձրացրել իր հորը: Նրանք կարծում են, որ Լևոն VI-ը «ծաղրի է ենթարկել իր ունկնդիրներին և արհամարհել է պատշաճությունը քաղաքական ու անձնական նպատակի հասնելու համար, որի կարիքը, ի դեպ, նա չուներ»: Ու՞մ էր պետք ուրեմն այդ ծաղրը, եթե այն քաղաքական նպատակ չուներ:

Հետո նույն գիտնականները ենթադրում են, որ Լևոն VI-ն «անտեղյակ էր իր իսկական ծագմանը», սակայն բարեբախտաբար նրանք շտապում են հերքել այդ վարկածը, որ «առավել անհավատալի է»: Ի վերջո նրանք միտք են հղացել, որ *Ճառը* «Լևոնինը չէ, այլ ավելի ուշ է գրվել տհաճ խոսակցությունները հերքելու համար»: Այդ դեպքում ոչինչ չի մնում *Ճառի* իսկության հարցին նվիրված նրանց գրած գեղեցիկ էջերից: Այնուամենայնիվ նրանց պետք է արժանին մատուցել, քանի որ նրանք ի վերջո հանգել են «ճշմարտությանը, որն ավելի պարզ է, քան ավելի ուշ արված անստույգ ու անբարյացակամ ենթադրությունները», և նրանք ընդունում են, որ Լևոնն իսկապես եղել է Վասիլի ու Եվդոկիայի որդին:

Լևոն VI-ը մեծ հիացմունք է տածում իր մոր՝ «կանանց մեջ ամենագեղեցիկի», նկատմամբ: Նա շատ արժեքավոր տեղեկություններ է հաղորդում,

Այս հարցն ի վերջո պետք է հանվի օրակարգից, որքան էլ ախորժալի թվա դրա այուժեն հին ու նոր պատմաբաններին: Բյուզանդական արքունիքը անչափ մեկուսացած, արտաքին աշխարհի համար չափազանց փակ էր, որպեսզի մենք նշանակություն տայինք ամբոխի կողմից տարածվող այն ասեկոսեներին, թե ինչ էր տեղի ունենում Մեծ պալատի ապարանքներում: Դրանք ավելի մեծ վստահություն չեն ներշնչում, քան ամեն տեսակ թեթևամտությունները, որ սիրում են այսօր պատմել անկում ապրած մեծ կայսերական արքունիքի մասին: Պետք չէ դրանց հավատալ: Կան բաներ, որոնք փողոցի իրավասությունից դուրս են:

## ԼՐԱՑՈՒՑԻՉ ՆՇՈՒՄ

«Բյուզանդիոն»-ի այս հատորում [t. VIII, fasc. 2, 1933], որը մեծ մասամբ նվիրված է Միքայել III-ի, Վասիլ I-ի ու Լևոն VI-ի թագավորությանը, մենք, ինչպես և պարոններ Ֆ. Դվորնիկն ու Ա. Գրեգուարը, բազմաթիվ անգամներ վիճարկել ենք Ալբերտ Վոգտի տեսակետները: Հարկ կա՞ արդյոք մեր և խմբագրության անունից նշելու, թե ինչ հարգանքով ենք մենք լցված հեղինակի ու նրա հիմնարար աշխատության նկատմամբ: Ա. Վոգտի Վասիլ I-[ին նվիրված ուսումնասիրությունը] (7) մնում է այն հիմքը, որի վրա պետք է կառուցվեն IX դարին վերաբերող բոլոր հետազոտությունները:



## ԱՇՈՏ ԵՐԿԱԹ. ԹԱԳԱՎՈՐ ՀԱՅՈՑ
913 - 929

I

Բյուզանդացի ժամանակագիրները հետևյալ կերպ են արձանագրել Հայոց արքա Աշոտ Երկաթի ժամանումը Բյուզանդիա.

Παρεγένετο δὲ τότε ἐν τῇ πόλει καὶ ᾿Ασώτιος, ἀνὴρ ἐπὶ ῥώμῃ ὀνομαστότατος, υἱὸς ὢν τοῦ ἄρχοντος τῶν ἀρχόντων, ὃν φασι σιδηρᾶν ῥάβδον ἐκ τῶν ἄκρων ἑκατέραις κρατοῦντα χερσὶ τῇ ὑπερβαλλούσῃ δυνάμει διακάμπτειν καὶ πρὸς τὸ κυκλικὸν σχῆμα μετάγειν, τῆς ἀντιτύπου τῆς σιδήρου φύσεως τῇ βίᾳ τῶν ὑπεικούσης. ὃν παραγενόμενον ἡ δέσποινα καὶ μετὰ πολλῆς τιμῆς ὑπεδέξατο καὶ πάλιν εἰς τὴν ἰδίαν χώραν ἐξέπεμψεν.

Σεπτεμβρίῳ δὲ μηνί, ἰνδικτιῶνος τρίτης, Παγκρατούκας ὁ ᾿Αρμένης τὴν ᾿Αδριανούπολιν τῷ Συμεὼν προσδέδωκεν[1].

«Այդ ժամանակ մայրաքաղաք ժամանեց Աշոտը՝ իր ուժով համբավավոր մի մարդ, իշխանաց իշխանի որդին, որի մասին պատմում էին, որ նա, բռնելով երկաթյա ձողի երկու ծայրերից՝ իր արտակարգ ուժի շնորհիվ ճկում էր այն, դարձնելով շրջանակ, և երկաթի բնական ամրությունը չէր դիմադրում նրա հզոր բազուկներին: Երբ նա ժամանեց, կայսրուհին ընդունեց նրան մեծ պատիվներով, իսկ հետո ետ ուղարկեց իր երկիրը:

III ինդիկտիոնի սեպտեմբեր ամսին Պանկրատուկաս (= Բագրատուկ) Հայկազնը Ադրիանուպոլիսը հանձնեց (1) Սիմեոնին»:

Աշոտի ժամանման տարեթիվը պատմիչները չեն հիշատակում, սակայն քանի որ այն տեղադրված է III ինդիկտիոնի սեպտեմբերին Ադրիանուպոլսի գրավումից, այսինքն՝ 914 թվականից առաջ, ապա հավանական է, որ նրա ժամանումը մայրաքաղաք նախորդել է այդ տարեթվին:

Հայ իշխանին ընդունող կայսրուհին Զոեն է՝ Կոստանդին Ծիրանածնի մայրը: Ալեքսանդր կայսրը մահացել է I ինդիկտիոնի հունիսի 6-ին, այսինքն՝ 913 թվականին: Կոստանդինը՝ նրա հաջորդը, Կոստանդին Դուկասի հավակնությունները ճնշելուց հետո, պահանջել է արքունիքից Ալեքսանդրի

[1] Theoph. Cont., p. 387 ; Sym., p. 722 ; Georg., p. 897.

կողմից հեռացված իր մոր՝ Չոեի վերադարձը: Այս ամենը վերաբերում է 914 թ. սկզբին, և դա մեզ ստիպում է Աշոտի ժամանումը Բյուզանդիա տեղադրել այդ նույն 914 թ. առաջին կեսին՝ մինչև սեպտեմբեր ամիսը:

Սա հաստատուն մի տվյալ է, որը մեզ հնարավորություն է տալիս ճշգրտելու Աշոտի թագավորության բավականաչափ շփոթ ժամանակագրությունը:

Այս Աշոտին պետք չէ շփոթել մեկ այլ Աշոտի հետ, որը նույնպես համբավավոր էր իր ուժի շնորհիվ և որին կոչում էին Մակրոխեյր կամ Երկայնաձեռն: Նա զոհվել է Բուլգարոփիգոնի ճակատամարտի ժամանակ՝ 896 թվականին: Նշանավոր է հատկապես նրա ծառան՝ Լիկանդոսի բանակաթեմի քաջարի հիմնադիր Մելիաս-Մլեհը:

Մեր Աշոտը իշխանաց իշխանի՝ τοῦ ἄρχοντος τῶν ἀρχόντων-ի, որդին էր: Դա այն պաշտոնական տիտղոսն էր, որ կայսերական դիվանատունը տալիս էր Մեծ Հայքի՝ τῆς Μεγάλης ᾿Αρμενίας, արքաներին, որոնք պատկանում էին Անիի Բագրատունյաց և Վասպուրականի՝ Βασπαρακᾶν-ի, Արծրունյաց հարստություններին[1]:

Աշոտը հաջորդել է իր հորը՝ Սմբատին, որն ըստ X դարի պատմիչ Ասողիկի գահ է բարձրացել հայոց տոմարի 340 թ. = Ք.թ. 891 թ., թագավորել քսանչորս տարի և մահացել հայոց տոմարի 364 թ. = 915 թվականին: Նույն հեղինակն ասում է, որ Աշոտն իր հորից հետո ապրել է տասնհինգ տարի, որոնցից ութ տարին՝ որպես թագավոր, և մահացել հայոց տոմարի 378 թ. = 929 թվականին: Հետևաբար նա թագավորել է 921-929 թվականներին: Ուստի 915 թ. Սմբատի մահից հետո Ասողիկը յոթ տարի տևողությամբ գահաթափություն է ենթադրում մինչև Աշոտի գահակալությունը՝ 921 թվականին:

Դժբախտաբար այս ժամանակագրությունը, չնայած իր թվացյալ ճշգրտությանը, խնդրական է: Հովհաննես Դրասխանակերտցին, որ Աշոտի և նրա հոր՝ Սմբատի, ժամանակակիցն է և նույնիսկ նրանց խորհրդատուն, Սմբատին վերագրում է թագավորության քսաներկու տարի, և դա, ինքնըստինքյան, վարկաբեկում է Ասողիկի կատարած հաշվարկները: Թովմա Արծրունին Սմբատի հոր մահը տեղադրում է հայոց տոմարի 339 թ. = Ք. թ. 890 թ., իսկ Ասողիկը Սմբատի գահակալությունը տեղադրում է հայոց տոմարի 340 թ. = Ք. թ. 891 թվականին: Ուրեմն, 891-ը կլինի նրա թագավորության առաջին տարին, իսկ վերջինը՝ քսանչորսերորդը, կհասնի հայոց

---

[1] De cerim., pp. 686-687. Ի դեպ, Ռոմանոս Լեկապենոսի և Կոստանդին VII-ի ժամանակ այդ տիտղոսը կիրառվում էր Վասպուրականի արքաներին նշելու համար, մինչդեռ Անիի (Շիրակի) Բագրատունի արքաներին կոչում էին πρῶτος τῆς Μεγάλης ᾿Αρμενίας [«Մեծ Հայքի առաջնորդ»] տիտղոսով:



տոմարի 363 թ. = Ք.թ. 914 թ. և ոչ թե հայոց տոմարի 364 թ. = Ք. թ. 915 թ., ինչպես սխալ հաշվել է Ասողիկը: Դա հենց այն տարեթիվն է, որով Մովսես Կաղանկատվացին թվագրում է Սմբատի մահը, և նույն տարեթիվն ընդունում է նաև Մխիթար Այրիվանեցին: Սամուել Անեցին պարզապես ներմուծում է իր երկասիրության մեջ և՛ առաջին տարեթիվը, և՛ երկրորդը, այնպես, որ նրա մոտ Սմբատը առաջին անգամ մահանում է 914 թ., իսկ երկրորդ անգամ 915 թ. (և ո՛չ 917 թ., ինչպես տեսնում ենք հրատարակված օրինակում, ուր *պժէ*-ն պետք է ուղղել և դարձնել *պժե*) (2): Եվ վերջապես, Ստեփանոս Օրբելյանը կանգ է առել հայոց տոմարի 362 թ. վրա, համադրելով, անկասկած, Ասողիկի և Հովհաննես Կաթողիկոսի տվյալները. 340 + 22 = հայոց տոմարի 362 թ., կամ Ք.թ. 913 թվական[1]:

Ասողիկի և այլ պատմիչների տեղեկությունները, ինչպիսին և լինեն դրանց տարբերությունները, գալիս են ոչ թե միմյանցից անկախ աղբյուրներից, այլ բոլորն էլ այս կամ այն կերպ սերում են Հովհաննես Կաթողիկոսի աշխատությունից: Ուստիև դրանք հարկավոր է ճշտել ըստ առաջին աղբյուրի և ուսումնասիրել այդ աղբյուրը՝ մեզ հետաքրքրող տարեթիվը պարզելու, ինչպես նաև Աշոտի թագավորության ժամանակ տեղի ունեցած իրադարձությունների ժամանակագրական կարգը ճշտելու համար:

Հովհաննես Կաթողիկոսն իր աշխատության 117-րդ էջում տալիս է մի բավականաչափ ճշգրիտ թվական, որը կարող է մեկնակետ լինել մեր հետազոտության համար: Մենք նկատի ունենք այն տարին, երբ Ատրպատականի (Ատրոպատենե) ամիրա Աբուսաջի որդի Յուսուֆը՝ Սմբատ արքայի ախոյանը, ասպատակել է Սյունիքի շրջանը. այդ իրադարձությունը պատմիչը տեղադրում է հայոց տոմարի 358 թ. Զատկի տոնի օրը, այսինքն 909 թ. ապրիլի 16-ին:

Նույն թվականի ամբողջ ամռան ընթացքում[2] ամիրան ջանք չի խնայել Սմբատ արքային գերելու համար, սակայն չհասնելով իր նպատակին նա վերադարձել է Դվին ձմեռելու[3]: Սմբատն էլ վերադարձել է իր գահանիստ Երազգավորք քաղաքը:

Հաջորդ տարին, այսինքն 910 թ. գարնանը[4] Յուսուֆը Նիգի մոտ ճակատամարտ է տվել Սմբատի որդի Աշոտին և նրա եղբայր Մուշեղին: Յուսուֆը պարտության է մատնել նրանց զորքը և պաշարել Վաղարշակերտ քաղաքը Բագրևանդում: Այդ իրադարձությունը Ասողիկը տեղադրում

---

[1] Ստեփանոս Օրբելեան, Պատմութիւն նահանգին Սիսական, գլ. 38:

[2] Յովհաննու Կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց, ի լոյս ընծայեաց Մ. Էմին, Մոսկվա, 1853, էջ 118:

[3] Նույնը, էջ 119:

[4] Նույն տեղում:

է հայոց տոմարի 359 թ. = 910 թ. և դա համապատասխանում է Հովհաննես Կաթողիկոսի տեղեկություններին:

Հետո Սմբատը Տարոնի իշխան Գրիգորի միջնորդությամբ դիմում է խալիֆային: Գրիգորը հռչակավոր Կրիկորիկիոսն է, որի մասին պատմում է Կոստանդին Ծիրանածինը (3): «Իմաստուն և չափազանց զգույշ իշխան» (4) Գրիգորը հաջողության չի հասնում խալիֆայի մոտ, քանի որ քաղաքական իրադրությունը նպաստավոր չէր խալիֆայի միջամտության համար: Նրա տերությունը այդ ժամանակաշրջանում խռովությունների թատերաբեմ էր դարձել: Մեր պատմիչն ակնարկում է Կարմատների ապստամբական շարժումը (5): Նրանց առաջնորդը 910 թ. հունվարի 8-ին իրեն մահդի էր հռչակել և գրավել Ալեքսանդրիան: Խալիֆայի լավագույն զորավար Մունիսը պայքարում էր Եգիպտոսի ապստամբների դեմ[1]:

Հովհաննես Կաթողիկոսն ավելացնում է, որ Լևոն կայսրը[2] պատրաստ էր օգնելու Սմբատին, սակայն վրա հասած մահը խանգարել է նրան այդ բանն անելու: Նրա հաջորդը՝ Ալեքսանդրը, որին խանգարել են «ապստամբական հուզումները», նույնպես չի կարողացել օգնել հայոց արքային: Այս երկու կայսրերի մասին հիշատակությունը, որոնցից մեկը մահացել էր 912 թ. մայիսի 11-ին, իսկ մյուսը՝ 913 թ. հունիսի 6-ին, ինչպես նաև Կոստանդին Դուկասի ապստամբության մասին ակնարկությունը ամենևին չեն նշանակում, թե պատմիչը հասել է 912-913 թթ. իրադարձություններին: Իրականում նրա շարադրանքը չի անցնում 910 թվականից: Սմբատը օգնության խնդրանքով կայսերը չէր դիմել: Դա մեր հեղինակի լոկ ենթադրությունն է: Լինելով կայսրության ջերմեռանդ բարեկամը, նա փորձում է արդարացնել քրիստոնյա մեծ միապետի անտարբերությունը իր երկրի դժբախտությունների հանդեպ այն ժամանակ, երբ նույնիսկ անհավատների առաջնորդը դրականորեն էր տրամադրված գործին միջամտելու հարցում:

Ի դեպ այս կատարած շեղումից հետո հեղինակը վերադառնում է իր շարադրանքի ընթացքին: Շատ լավ հասկանալով իր օրհասական վիճակը, չտեսնելով արտաքին օգնության և ոչ մի հնարավորություն, Սմբատը եկել և փակվել է Կապույտ բերդամրոցում՝ հույս դնելով միայն «երկնաւոր այցելութեան» վրա: Մեկ տարի անց՝ «զկնի ամի միոյ»[3], հետևաբար՝ 911 թ. Յուսուֆը հայտնվում է ամրոցի մատույցներում: Տեսնելով իր դեմ պայքարելու համար մահմեդականներին միացած քրիստոնյաներին, արքան խորապես հուզվում է և, չցանկանալով թափել եղբայրական արյունը, նախընտրում է կյանքը զոհաբերել նրանց փրկությունն ապահովելու համար:

[1] Geschichte der Chalifen, G. Weil, II, p.594.
[2] Հովհաննես Կաթողիկոսի տպագրի մեջ նշված է Վասիլ. դա ակնհայտ սխալ է, էջ 128:
[3] Նույն տեղում:



Նա հանձնվում է իր թշնամի Յուսուֆին:

Մեր հեղինակը չափազանց նրբանկատ է այդ «ուխտադրուժ քրիստոնյաների» անունները տալու համար: Միքայել Ասորին հենվելով հայկական մի աղբյուրի վրա՝ վկայում է, որ այդ ուխտադրուժները ոչ այլ ոք էին, եթե ոչ Գագիկ Վասպուրականցին, Ատրներսեհ Տայեցին և Շապուհի որդի Աշոտը՝ Սմբատի զարմիկը[1]:

Կաթողիկոսը, լավ հարաբերությունների մեջ լինելով այդ երեք իշխանների հետ, խուսափել է հայտնել նրանց անունները:

Սկզբում Յուսուֆը պատվով էր վարվում իր արքայական բանտարկյալի հետ, բայց ի վերջո նրան ենթարկում է ամենադաժան տանջանքների ու սպանում մեկ տարի անց՝ «զամ մի բովանդակ ձգեալ ընդերկարէր»[2], այսինքն 912 թվականին: Այսպիսով Սմբատը վախճանվել է քսաներկու տարի թագավորելուց հետո[3]: Քանի որ Սմբատի գահակալությունը թվագրվում է հայոց տոմարի 340 թ., ապա նրա քսաներկուերորդ, վերջին տարին ընկնում է հայոց տոմարի 361 թ. = 912 թ. ապրիլի 12-ից - 913 թ. ապրիլի 11-ը:

Նրա որդի և գահաժառանգ Աշոտը շարունակել է պայքարը զավթիչների դեմ: Դեռևս իր հոր կենդանության օրոք երիտասարդ իշխանն իր անունը հռչակել էր ուժով և անհավատներին ցույց տված հզոր դիմադրությամբ: «Իբրև զարծուի սաւառնաթև սլացեալ ընդ օդս, այնպէս սրավարեալ խոյանար զկնի գիշատեալ այլազգեացն, որք ասպատակ սփռեալ տարածեալ էին ընդ երեսս երկրի մերում»[4]: Իր հոր նահատակությունից հետո, նա բազմապատկել է եռանդը և, ծայրից ծայր անցնելով երկիրը, ջարդել թշնամուն և կարճ ժամանակամիջոցում վերագրավել բոլոր այն ամրոցները, որոնք պատկանել էին իր հորը, և որոնք Յուսուֆ ամիրան նրանից խլել էր: Այս ամրոցների մահմեդական կայազորները նա սրի քաշեց: Իր եղբոր՝ Աբասի օգնությամբ Աշոտը Բագրևանդում հարձակվում է սարակինոսների պահակազորի վրա և ոչնչացնում: Շիրակում տեղակայված արաբական ուժերը նույնպես ջախջախվում են: Այնտեղից նա գնում է Գուգարքի շրջան և վերագրավում հորենական տիրույթները: Թիֆլիսում նա հարձակվում է թշնամու զորքի վրա, ջարդում այն, շղթայակապ անում բազմաթիվ արաբ զորավարների, ավելի ուշ դրանց փոխանակելու համար քրիստոնյա գերիների հետ: Հետո Աշոտը վերադառնում է Տաշիր և այնտեղից մի բուռ անձնտիր զինվորներով նետվում Աղստևի մոտ բանակած արաբական գնդերի վրա, ջարդում է դրանց և ավարով ծանրաբեռնված վերադառնում

[1] Chroniqie de Michel le Syrien, trad. Chabot, t. III, p. 515.
[2] Հովհաննես Կաթողիկոս, էջ 130:
[3] Նույնը, էջ 131:
[4] Նույնը, էջ 132-133:

Տաշիր: Այստեղից նա գնում է իր բարեկամ Գուրգեն իշխանի մոտ՝ իրավիճակը նրա հետ քննարկելու համար և վերադառնում է Արշարունիք: Այդ ամենից հետո թշնամին դադարեցնում է երկրի ասպատակությունները:

Ատրներսեհ արքան, որը դավաճանել էր Սմբատին, իր զորքի հետ համախոհությամբ, արքայական թագը դնում է Աշոտի գլխին և հաստատում նրան հոր գահի վրա:

Արծրունի եղբայրներ Գագիկն ու Գուրգենը, ինչպես նաև Սյունիքի իշխանները, Աշոտի քաջությունից սրտապնդվելով նորից զենք են վերցնում ընդհանուր թշնամու դեմ պայքարելու համար: Յուսուֆը, տեսնելով այդ միասնական ճակատը, գազազում է և, հարձակվելով սկսում է «զթույնս թափել»[1] թույլերի՝ բնակչության վրա: Մեր հեղինակը տալիս է մահմեդական ամիրայի իրականացրած դաժանությունների և կեղեքման սարսուռ պատճառող նկարագրությունը. այդ ժամանակ նա չէր խնայել ո՛չ կանանց, ո՛չ երեխաներին: Միքայել անունով մի երիտասարդ Գուգարքից, Գնունիների տոհմից երկու եղբայրներ՝ Դավիթն ու Գուրգենը, նահատակվել են[2]:

Երկրի վիճակը բարդանում է նաև այն պատճառով, որ քրիստոնյա հարևանները՝ հույները, աբխազները, Գուգարքի և Ուտիքի բնակիչները, իրենց թույլ էին տալիս նույնպես ասպատակելու Հայաստանը, պատճառաբանելով, որ երկրում կուտակված հարստությունը կարող էր գրավել չար ամիրայի ուշադրությունը:

Այն մարդկանց թշնամական վարքագիծը, որոնցից ազգաբնակչությունն օգնություն էր ակնկալում, հուսահատեցնում է նրան: Արտաքին պատերազմը, ախոյան առաջնորդների ներքին վեճերն ի վերջո լցնում են ընդհանուր համբերության բաժակը: Հեղափոխության պես մի բան է սկսվում. «նուազունքն քան զմեծամեծսն ձեռներէց լինել ջանային,- գրում է պատմիչը,- և ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին, զի զտեարս տրեխաւորեալ ի գետնի գնացուսցեն, եւ ինքնեանք ելցեն յերիվարս»[3]: Թագավորներն ու իշխաններն իրենց ներքին աշխատում էին սնանկացնել ազնվական հին ընտանիքները և իրենց քմահաճույքով ստեղծում նորերը: Սանձազերծված

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 134:

[2] Ըստ Հովհաննես Կաթողիկոսի (էջ 138), այդ նահատակների հիշատակը նշում էին մարտի ամսի 27-ին (սա պետք է ուղղել և դարձնել 20-ին, ինչպես որ Ասողիկի «Պատմության» մեջ է և Հայսմավուրքում): 912-916 թթ. մարտի ամիսը համընկնում էր հունվար ամսին: Հովհաննես Կաթողիկոսը այդ նահատակներին դասում է «թույլերի» («ի թեթևազոյնս», էջ 134) շարքը, որոնց վրա Յուսուֆը թափել է իր մաղձը: Նույն հեղինակը նրանց տանջանքները տեղադրում է Սմբատի մահից և նույնիսկ Աշոտի թագադրումից հետո, հավանաբար 914 թ. հունվար ամսին: Միքայելը հայտնի է «Վրացական ժամանակագրությունից», ուր նրա մականունն էր Գորրոն: Ըստ «Գորրոնի վարքի»՝ Միքայելը Յուսուֆի ձեռքն է ընկել Սմբատի մահից առաջ (M. Brosset, Hist. de la Géorgie, I, p. 276):

[3] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 141:



կրքերը սպառնում էին տապալել հասարակական կարգն ու կանոնը. ստոր բնազդները՝ նախանձը, չարությունը, իրենց համար ճանապարհ էին հարթում. ատելությունը բոլորին զինված ընդհարման մեջ է ներգրավում: Արյունը հոսում էր գետի պես, տները, գյուղերն ու քաղաքները ավերվում են: Այս բոլոր դժբախտությունները պսակվում են ահավոր սովով, որն անհամար զոհեր է տանում: «Վասն զի հուրն կայծակնահայտ որ տեղեացն ի մեզ, եւ սուրն անողորմ պատերազմողացն որ միշտ ի մեզ բղխէր զհոտ մահու, մինչև յեօթն ամ ձգեալ ընդերկարեցաւ. եւ վասն այսորիկ մնացեալքս պանդխտեցաք»[1]:

Այս տխուր տեսարանի հեղինակն այն, կարծես թե չափազանց մռայլ գույներով է ներկայացրել և դա արել է անձնական պատճառ ունենալով: Նա թողել է Հայաստանը Սմբատի կենդանության օրոք: Արքան նրան Յուսուֆի մոտ էր ուղարկել խաղաղության բանակցություններ վարելու: Ամիրան նրան կալանավորել ու բանտ էր նետել: Կաթողիկոսին հաջողվել էր փախչել Աղվանք՝ Ատրներսեհ իշխանի մոտ, այնտեղից՝ մյուս Ատրներսեհի՝ Վիրքի թագավորի մոտ անցնելու համար: Նա տակավին Ատրներսեհի հյուրընկալությունից էր օգտվում, երբ Սմբատը սպանվեց, իսկ Աշոտը գահ բարձրացավ: Երիտասարդ արքայի և երկրի վիճակը, անկասկած, շատ ծանր էր: Այդուհանդերձ պատմագիրն այն չափից ավելի ծանր է ներկայացրել, միգուցե ինչ-որ չափով իրեն արդարացնելու այն բանի համար, որ ինքը լքել էր իր հոտը, մինչդեռ Սմբատը զոհաբերել էր իրեն՝ պարտքը կատարելու համար:

Ատրներսեհի մոտ եղած ժամանակ [Հովհաննես] Կաթողիկոսը նամակ է ստացել Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսից (Խորհրդաբանից): Պատրիարքը խորապես ազդված էր Հայաստանին, Վիրքին ու Աղվանքին պատուհասած դժբախտություններից և փրկությունը տեսնում էր այդ երկրների իշխանների միաբանության մեջ: Պատրիարքը հորդորում էր կաթողիկոսին ամեն ջանք գործադրել նրանց փոխըմբռնումը վերականգնելու համար. «և դադարեցուցանել զնէ ի հակառակութենէ չարութեանդ՝ որ ընդ միմեանս. և մի՛ տալ թոյլ մնալ ի վայրենի գազանութեանդ, որք բարկացեալք և դիմեալք են ի սպանումն միմեանց, և դառնալ ի մարդկային մտածութիւնս և ի քրիստոնեական հանդարտութիւնս...»[2]:

Պատրիարքը նախազգուշացնում է կաթողիկոսին, որ ինքը միաժամանակ գրում է նաև Ատրներսեհ կյուրոպաղատին և Աբխազիայի ավագներին ու նրանց կոչ անում հետևելու կաթողիկոսի խորհրդին և լիակատար միաբանություն պահպանել ինչպես միմյանց, նույնպես և՛ իրենց, և՛ Հայաստա-

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 142:

[2] Նույնը, էջ 145:

նի ու Աղվանքի իշխանների միջև: Այդ երկրները պետք է միանան պիղծ թշնամու՝ Աբու Սաջի որդուն, դիմագրավելու համար. իսկ կաթողիկոսը, հատկապես, պարտավոր է ձեռնարկել բոլոր միջոցները՝ առաջնորդների կործանարար հակամարտությանը վերջ տալու համար: Միաբանությունը վերականգնվելուն պես կայսրը, պատրիարքի կարծիքով, անհապաղ զորք կուղարկի, որին պետք է միանան կյուրոպաղատը, Աբխազիայի առաջնորդները և Մեծ Հայքի իշխանները, որպեսզի միացյալ ուժերով ջարդեն թշնամուն[1]:

Կաթողիկոսն անմիջապես գործունեություն է ծավալում պատրիարքի պատգամն ի կատար ածելու նպատակով: Նա սկսում է Ատրներսեհ կյուրոպաղատից և նրան համոզում գործի անցնել ցանկալի միաբանությունը վերականգնելու համար: Հետո «ղուեալ եւս զտառապանս տրտմութեան ամպրոպաց՝ որ տեղացաւն իսկ ի վերայ ժողովրդեանն Տեառն, առի սուգ սաստիկ, և ակն իմ իջոյց զարտասուսն զհոսանս ջուրց… և յիշեալ զօր տառապանաց անջատման իմոյ, որ իբրև զցանց ձգեալ էր իմոց սրտիցս. և զտկարացեալ զօրութիւն իմ սակաւ ինչ կազդուրեալ և զօտեւորեալ՝ չուեցի գնացի յաշխարհն Տարօնոյ, և անդ ի մերձաւորաց իմոց և իշխանաց և ժողովրդոց գտեալ՝ ի մխիթարութիւն տառապանաց վշտաց իմոց, արծարծեցաւ յիս հոգի իմ»[2] (6):

Յուսուֆի բանտում անցկացրած օրերի հիշատակն այնքան ծանր էր, որ կաթողիկոսը չէր կարողանում իրեն ստիպել վերադառնալ Հայաստան: Նա կգերադասեր մնալ Ատրներսեհի մոտ, եթե Նիկողայոս պատրիարքի հանձնարարությունը նրան չստիպեր Տարոն գնալու:

Տարոնի իշխան Գրիգորի մոտ հասնելուն պես կաթողիկոսը լսեց, որ Դվինում հաստատված Յուսուֆ ամիրան նոր զոհեր է փնտրում: Նա իր զենքն ուղղել էր Գագիկ Վասպուրականցու դեմ, որի օգնությամբ ինքը պարտության էր մատնել Սմբատին: Մոկքի և Կորճայքի անառիկ լեռները ապահով ապաստան էին Գագիկի համար: Նրա եղբայր Գուրգենն ու փեսա Սմբատ Սյունին, որոնք Սմբատի նահատակությունից հետո ապաստան էին գտել Գագիկի մոտ, օգնում էին նրան ամիրայի դեմ պայքարում:

Շապուհի որդի Աշոտը՝ Աշոտ արքայի հորեղբորորդին, գտնվում էր Յուսուֆի ճամբարում: Նրա վիճակը չափազանց բարդ էր. մի կողմից նա չէր ցանկանում խախտել իր բարեկամությունը ամիրայի հետ, իսկ մյուս կողմից չէր ցանկանում վնասել իր երկրին: Ինչ վերաբերում է Աշոտ արքային, ապա նա հաստատակամ էր մնում և բոլորին հիացնում իր արիությամբ, իր

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 144-146:
[2] Նույնը, էջ 146-147:



սխրանքներով ուղղված մահմեդական, վրաց և գուգարաց ապստամբների դեմ: Կրքերի այդ փոթորկալից ծովն այդքան դյուրին չէր հանդարտեցնելը, ինչպես կարծում էր Կոստանդնուպոլսի պատրիարքը, և վերականգնել բնականոն կյանքն առանց հեղինակավոր անձնավորության միջամտության: Կաթողիկոսը հասկանում է դա և նամակ է ուղղում կայսրը: Անշուշտ, դա տեղի ունեցավ ոչ առանց Գրիգոր իշխանի թելադրության, որի հյուրասիրությունն էր վայելում այդ ժամանակ կաթողիկոսը:

Կաթողիկոսի նամակի բնագիրը մեզ է հասել նրա պատմական աշխատության միջոցով: Դա մեր հեղինակի գրչին հատուկ պերճախոս ոճով շարադրված մի գրվածք է: Ուշադրության են արժանի հատկապես երկու հանգամանքներ: Սկզբում նա նկարագրում է երկրի ողբալի վիճակը, որը դարձել էր անհավատների ավերիչ ասպատակությունների թատերաբեմ և մասնատված փառասեր իշխանների գժտություններից, և հաստատում «արևելյայցս գլխավորի»՝ Սմբատ արքայի, ողբերգական վախճանը, որը «խաղաղացուցեալ էր զԱսքանազեան ազգս յամենայն վրդովմանց չարի»[1]:

Հետո կաթողիկոսը խնդրում է կայսերը՝ «Համբարձջի՛ք զձեռս ձեր ի վերայ ամբարտաւանութեան թշնամւոյն մինչև իսպառ և փրկեսջիք զվիճակ ժառանգութեան ձերոյ և լցուցանիջիք սփիւռ ծախիւք զտաճար մեծվայելչութեան Աստուծոյ բարձրելոյ, որ գերեալ և կապուտ կողոպուտ մնաց յապստամբաց ատի: Եւ հալածեալ զզազանս չարաչարս և զգայլս յափշտակողս և զհեթանոսս ապստամբս և զբարբարոսս վայրենիս՝ նուաճեսջիք զկողմանս գայսոսիկ, զոր ստացայք ի սկզբանէ ի ձեռն քաղցր օրինաց ձերոց, որ լի է ողորմութեամբ: Եւ թօթափեսջիք զմեզ ի հողոյ ատի. յոր և մածան մէջք մեր, և լուծէք զլուծ ի պարանոցէ մերմէ, որ ի ձեռն բռնակալիս այսմիկ ծանրացաւ մինչև ի մահ»[2]:

Կայսրության հանդեպ իր նվիրվածությունն առավել ևս ընդգծելու համար մեր հեղինակը հայտարարում է, որ ինքը կցանկանար գնալ և կայսերը հանդիպել նրա գահանիստ քաղաքում, և որ դա իր վաղեմի երազանքն էր, որի իրականացումը սակայն խանգարվել էր շարունակաբար անբարենպաստ պայմաններով: Կաթողիկոսի երազանքն է՛լ ավելի հեռուն էր գնում. նա ցանկանում էր հաստատվել կայսերական իշխանության հովանավորության ներքո: Դա նշանակում է, որ նա պատրաստ էր հայրապետական աթոռը տեղափոխել Բյուզանդական Հայաստան:

«Զի թերևս,- շարունակում է կաթողիկոսը,- յԻսմայէլականաց ատի արտաքս զերծեալ և ի հովանի թևոց ձերոց ամրացեալ և առկայացեալ՝ արա-

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 150:
[2] Նույնը, էջ 152:

ծեսցուք որ ի մեզ հոտս է Աստուծոյ. և առհասարակ մշտնջենաւոր աղօթս մատուցո՞ւք առ Աստուած վասն խաղաղութեան և յապահովութեան և բարեհաստատութեան ինքնակալ և տիեզերաքարոզ թագաւորացդ: Եւ օգնականութեամբ ձերով մեծաւ և փառօք և շնորհօք պատրաստեսցուք զՀայաստանեայցս ժողովուրդ՝ կազմեալ նախ Տեառն և ապա ձեզ կամօքն Աստուծոյ: Վասնզի այս ինչ յայտնի է առաջի փառաց աթոռոց ձերոց. զի եթէ նւազ հովիւ հօտից բնակիցիմ ընդ հովանեաւ զօրափառ սուրբ նշանիդ և ընդ խնամակալութեամբ ինքնակալ թագաւորացդ, ո՞րչափ ևս առավել հոտս Աստուծոյ և ժառանգութիւն Քրիստոսի զհետ շաւղաց իմոց հետևին, և հորդան տան ընդ խաշին արօտի այդմ տիեզերական ոչխարացդ բանականաց ելանել, և առհասարակ հետազօտել ընդ Հռովմեացւոցդ իշխանութեամբ՝ որպէս Իտալիայ և ամենայն Ասիայ»[1]:

Կաթողիկոսի նամակում արտահայտված գաղափարները քրիստոնեական կայսրությանը նվիրված հոգևոր առաջնորդին հատուկ անձնական գաղափարներ են: Երկրի իրական տերերը, անկասկած, չէին կիսում նրա տեսակետները. նրանք նույնպես համակրում էին կայսրությանը և պատրաստ էին նրա հետ միասին պայքարել ընդհանուր նպատակի համար, սակայն չէին ցանկանում վտանգել իրենց անկախությունը ենթարկվելով կայսրությանը և կապվելով «խաշին արօտի այդմ տիեզերական ոչխարաց»: Սակայն Հայոց Եկեղեցու առաջնորդն այդքան հեռուն չէր էլ գնում. հանդգնելով նման արտահայտությունների, նա նկատի ուներ ընդամենը քրիստոնյա կայսեր հովանավորությունը: Մենք դեռ կտեսնենք, թե ինչպես նա կհրաժարվի «կայսերը տեսնելու երազանքից» (7) հենց այն պահին, երբ այդ երազանքն իրականանալուն շատ մոտ կլինի:

Կաթողիկոսն իր նամակով տեղեկացրել էր կայսերը այն ամենի մասին, ինչ տեղի էր ունեցել Հայաստանում: Վերջինս անմիջապես հանձնարարում է ոմն վասիլիկոս (= βασιλικός) Թեոդորոսին գնալ Հայաստան կաթողիկոսին ու Աշոտին մայրաքաղաք բերելու համար: Պատվիրակն այցելում է կաթողիկոսին Տարոնում, ուր նա օթևանել էր Գրիգոր իշխանի մոտ: Կաթողիկոսն ընդունում է կայսեր հրավերը, իսկ Թեոդորոսին ուղարկում Աշոտ արքայի մոտ: Վերջինս բռնում է Կոստանդնուպոլսի ճանապարհը: «Եւ բազում հիւրամեծարութիւնս և արքայական պատիւս յիջաւանս այնր պողոտայի գտեալ՝ երթայ ապա ի հանդիպումն մեծի Կայսերն: Եւ անդ առ ի նմանէն մեծավայելուչ գահիւ պատիւ առեալ քան զամենայն գահերէցս՝ ընկալեալ զփառաց փարթամութիւն՝ ոչ իբրև զայլս ոմանս պատուաւորս, այլ իբրև զթագաւորազուն բողբոջ՝ գրեթէ ընդ իւրով իսկ Կայսր զնա հարթայարմար ցուցանէր և թագաւորական հրահանգաց հանդիսիւ ճոխացուցանէր»[1], ասում է մեր պատմիչը: «Ապա միանգամայն իսկ և ուստր զնա մարտիրոսի և որդի սիրելի Կայսր իւր անուանէր. և զարդարէր զնա ծիրանազգեաց փառօք և երևելի ոսկեհուռն հանդերձիւք և ոսկետառն վառիւք և կամար ականակապ ընդ մէջ ածէր ոչ միանգամ կամ երկիցս՝ այլ բազում անգամ նոքա զայս արարեալ, և երիվարս սրավարս և ահիպարանոցս զեղեցիկ զինուք և զարդուք առաջի կացուցանէին, և այլ ևս բազում ըմպակս և սպաս և բազում կազմուածս ոսկեղէն և արծաթեղէն նմա պատրաստէին: Այլ և իւրոցն ևս նախարարաց զկնի տարելոցն ոչ սակաւ պատիւ պերճութեան տային, և բազում հռոգս (= ῥόγα) (8) և առատաձեռն ռոճիկս նոցա յարդարեալ կազմէին՝ մինչև ի դարձ նորա այսրէն»[2]:

Կաթողիկոսը նույնպես ճամփա էր ընկել Կոստանդնուպոլիս գնալու, սակայն, Տարոնից Դերջան հասնելով, նա փոխում է իր վճիռը և, հակառակ կայսեր կրկնակի պնդումներին, հրաժարվում է շարունակել ճանապարհը: Մտահոգվելով, որ իրեն կարող են սխալմամբ կասկածել քաղկեդոնականների նկատմամբ համակրանք տածելու մեջ, նա հրաժարվում է շարունակել ճանապարհորդությունը, որը կարող էր գայթակղեցնել տկարամիտներին: Այնուամենայնիվ, նա հասնում է մինչև Եկեղյաց գավառը, անկասկած Կոստանդնուպոլիս գնալու նպատակով, սակայն հետ է կանգնում իր որոշումից, և այդ ճանապարհորդությունը բացատրում Գրիգոր Լուսավորչի կյանքի հետ կապված սուրբ վայրերը այցելելու ցանկությամբ: Կաթողիկոսը, ակնածանքով լի, այցելում է Հայոց եկեղեցու հիմնադրի այրը, աղբյուրն ու այգին, կտրում է Ս. Գրիգորի տնկած ծառի մի ճյուղը և շուրջ ինն ամիս մնում է այդ շրջանի վանքերում, սպասելով հավանաբար Աշոտի վերադարձին: Ավելի քան հավանական է, որ կաթողիկոսը հրաժարվել է կայսերն այցելելու իր մտադրությունից այդ վանքերի վանականների ազդեցությամբ:

Իսկ այդ ժամանակ Յուսուֆը կատաղի հարձակումներ էր ձեռնարկում Գագիկ Վասպուրականցու դեմ: Սմբատի ողբերգական ճակատագիրն ուսանելի դաս էր Գագիկի համար, որպեսզի նա չզիջեր ուխտադրուժ ամիրային, որը նրան օգտագործել էր հայոց արքայի դեմ, իսկ այժմ իր հարձակումների թիրախն էր դարձրել հենց իրեն: Յուսուֆի առաջին հարձակումները եւ մղվեցին: Չարացած ամիրան հարձակվում է Գագիկի տիրույթների վրա, սակայն չի համարձակվում նրան հետապնդել լեռներում, ուր քաշվել էր Գագիկը, և վերադառնում է իր եկած ճանապարհով առանց որևէ

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 153-154:

[1] Նախադասությունն անորոշ է. խոսքը թագավորելու արվեստին համապատասխան դաստիարակություն ստանալու մասի՞ն է արդյոք, թե՞ կայսերական շքահանդեսներում իր մասնակցությունը բերած լինելու:

[2] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 155:

արդյունքի հասնելու: Գագիկը վերադառնում է իր գահանիստ քաղաքը և նախապատրաստվում է ամիրայի նոր հարձակումներին դիմագրավելու և այդ նպատակով ապահովում է Ատոմ Անձևացու և Գրիգոր Մոկացու աջակցությունը:

Այդ իրադարձությունների լուրը Աշոտին է հասնում Կոստանդնուպոլսում: Նա թողնում է մայրաքաղաքը: Կայսրը նրան տրամադրում է սպաներ և օգնական զորք: Յուսուֆը, որն իր մոտ էր պահում մյուս Աշոտին՝ արքայի հորեղբոր որդուն, շտապում է թագադրելու նրան և ուղարկում Դվին՝ վիճարկելու Աշոտի թագավորական իշխանությունը: Ամիրան իր խորամանկությամբ սասանում է երկու ախոյան իշխանների զգուշավորությունը: Մեկ անգամ ևս գրեթե ամբողջ երկիրը հայտնվում է քաղաքացիական պատերազմի ճիրաններում: Սյունիքի իշխան Սմբատը, որն ապաստանել էր Գագիկի մոտ, վերադառնում է Աշոտի կողմն անցնելու համար: Երկու արքաների կանչով կաթողիկոսը նույնպես վերադառնում է Եկեղյաց գավառից: Նրանց մոտ վայելած իր հեղինակության շնորհիվ նա կարողանում է հաշտեցնել ախոյաններին:

Հովհաննես Կաթողիկոսը Դերջան և Եկեղյաց գավառ էր գնացել ճիշտ այն ժամանակ, երբ Աշոտը Կոստանդնուպոլիս էր մեկնել: Դերջանում նա մնացել էր մեկ, իսկ Եկեղյաց գավառում ինն ամիս: Կոստանդնուպոլսից Աշոտի վերադարձից երկու ամիս անց նա ետ է եկել արքայի մոտ: Կոստանդնուպոլսում Աշոտը հավանաբար մնացել էր այնքան ժամանակ, որքան կաթողիկոսը Դերջանում և Եկեղյաց գավառում: Եթե, ինչպես մենք տեսանք, Աշոտը Կոստանդնուպոլիս էր գնացել 914 թ. սեպտեմբեր ամսից առաջ, ապա նրա վերադարձը տասն ամիս հետո պետք է տեղադրվի հաջորդ (915 թ.) տարվա ամռան սկզբին:

Սյունյաց Սմբատ իշխանը Վասպուրականից գալիս է Աշոտի մոտ: Ստեփանոս Օրբելյանի պատմական աշխատության մեջ պահպանված մի վավերագիր արձանագրում է Սմբատի ներկայությունն իր տիրույթներում հայոց տոմարի 364 թ. = 915 թ. ապրիլին[1]: Նա տուն էր վերադարձել Աշոտի մոտից, և դա մեզ ստիպում է Աշոտի վերադարձը տեղադրել 915 թվականին:

Աշոտին ուղեկցում էր կայսերական զորքը, որը նրան օգնում է ամրապնդել իր իշխանությունը: Բյուզանդացի պատմագիրներն այդ մասին լռում են: Արաբական աղբյուրները վկայում են, որ հիջրայի 303 թ. = 915 թ. հուլիսի 17 - 916 թ. հուլիսի 4, բյուզանդական բանակն արշավել է Մարաշի, Սամոսատի և Հիսն-Մանսուրի ուղղությամբ. այն ասպատակել է երկիրը և հիսուն հազար գերի է տարել: Մարաշի շրջանի վրա կատարված հարձակ-

[1] Ստեփանոս Օրբելյան, գլ. 48:



ման առաջնորդն էր հայ Մլեհը (Մելիաս Լիկանդոսցին)[1]:

Շատ հնարավոր է, որ այդ արշավանքի ժամանակ բյուզանդական բանակի մի զորաջոկատ Աշոտին ուղեկցել է Հայաստան: Այս փաստը կհաստատեր Աշոտի վերադարձի տարեթիվը, որն է 915 թ. ամառը:

Սմբատ Սյունիի երեք եղբայրները՝ Սահակը, Բաբգենն ու Վասակը, իրենց կալվածքները վերագրավել են Սմբատի հետ միաժամանակ՝ 915 թվականին: Այդ ժամանակ Յուսուֆը ազատ է արձակել Սմբատի և Սահակի կանանց, որոնց նա գերության մեջ էր պահում Երնջակ ամրոցի անկումից ի վեր, որը նա գրավել էր Սմբատի մահից քիչ անց: Գերիները բանտում էին պահվել երկու տարի[2], ուրեմն նրանք գերեվարվել էին մոտ 913 թվականին: Սմբատը սպանվել էր նրանց գերեվարությունից քիչ առաջ: Դա անում է 913 թ. սկիզբը կամ 912 թ. վերջը: Սա ևս մեկ փաստարկ է Սմբատի մահվան տարեթվի վերաբերյալ մեր արած առաջարկի օգտին:

Այս ամենը նպաստավոր չէ Ասողիկի ժամանակագրության համար, քանզի նա Սմբատի մահը տեղադրում է 915 թ. կամ ավելի շուտ 914 թ., ենթադրում է յոթ տարվա անտերնչություն և Սմբատի որդի Աշոտին գահ է բարձրացնում 921 թ., որպեսզի նա թագավորի մինչև 929 թվականը: Այս ժամանակագրությունն առավել զարմանալի է այն պատճառով, որ Ասողիկը բացառությամբ Հովհաննես Կաթողիկոսի աշխատության Սմբատի ու Աշոտի թագավորության վերաբերյալ այլ աղբյուր չի ունեցել: Որտեղի՞ց է գալիս յոթ տարվա այդ գահաթափուրությունը: Կապված չէ՞ դա արդյոք Հովհաննես Կաթողիկոսի այն հատվածի հետ, ուր նա բողոքում է այն դժբախտություններից, որոնք տևել են յոթ տարի և նրան ստիպել են տարագրվելու: Հեղինակը նկատի ունի այն ժամանակահատվածը, որը սկսվում է 909 թ.՝ Յուսուֆի բանտից իր փախչելու պահից և տևում է մինչև 915-916 թթ., երբ նա Եկեղյաց գավառից վերադառնում է Աշոտի մոտ:

Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ Ասողիկը լավ չի հասկացել Հովհաննես Կաթողիկոսի շարադրանքը: Նախ, նա սխալ է թույլ տվել Յուսուֆի Հայաստան գալը տեղադրելով 907, իսկ գնալը՝ 914 թվականին: Յուսուֆը Հայաստանում շատ ավելի երկար է մնացել՝ 901-ից մինչև 919 և 922-ից մինչև 926 թիվը: Ասողիկն ասում է «Ամիրայն Յուսուփ Է ամ յամեալ ի Հայս սրով և սովով և գերութեամբ վանեաց զաշխարհս»[3]: Մինչդեռ ըստ կաթողիկոսի, ոչ թե Յուսուֆի հեռանալը, այլ Աշոտի վերադարձը կայսեր մոտից վերջ է դնում ամիրայի կեղեքմանը: Իր սխալն ուղղելու համար Ասողիկը մի ենթադրություն է անում, որը նույնպես սխալ է: Հովհաննես Կաթո-

[1] G. Weil, II, p. 635.
[2] Հովհաննես Կաթողիկոս, էջ 161:
[3] Ասողիկ, Գ, գլ. 5:

ղիկոսը յոթնամյա դժբախտությունները նկարագրում է Սմբատի մահը նկարագրելուց հետո: Դա կարծես թե ստիպել է Ասողիկին Սմբատի մահից հետո հաշվել յոթ տարի և այդպիսով նա հասել է մինչև 921 թ. (914+7=921), ուր և տեղադրել է Աշոտի գահակալությունը: Նա առավել մեծ հեշտությամբ է ընկել այդ սխալմունքի մեջ, քանի որ հենց այդ 921 թ. Յուսուֆի հաջորդ Սբուկ ամիրան ճանաչել է Աշոտին և արժանացրել նրան շահնշահ՝ արքայից արքա, շոյիչ տիտղոսին: Այսպիսով, հայոց արքան ճանաչվել է խալիֆայի կողմից: Հնարավոր է, որ Ասողիկը Աշոտի թագավորության իրական սկիզբը համարում է այդ պահը: Ամեն դեպքում նրա ժամանակագրությունը կամայական է և պետք է իր տեղը զիջի այդ ժամանակաշրջանի պատմիչ՝ Հովհաննես Կաթողիկոսի շարադրանքից բխող ժամանակագրությանը:

II

Աշոտի մականունն էր Երկաթ: Նա այն ստացել էր իր ուժի և սխրանքների համար[1]: Հորից ստացած ժառանգությունը պահպանելու համար նա ստիպված է եղել անդադար պատերազմել արտաքին և ներքին թշնամիների դեմ: Նա պետք է ճնշեր իր հորեղբորորդու՝ Յուսուֆի հովանավորյալի, վտանգավոր ընդդիմությունն ու զսպեր իր անհանգիստ ստորակաների հավակնությունները: Գնթունի Վասակ ու Աշոտ եղբայրները, որոնք Սմբատ արքայից ստացել էին Տաշիրի Սամշուլդե բերդը, հրաժարվում են ենթարկվել Աշոտին: Նրանց դեմ ձեռնարկված առաջին արշավանքն անհաջողությամբ է մտնվում: Աշոտը ստիպված է լինում դաշնակից փնտրել Աղվանքում, ամուսնանալով Աղվանքի իշխան Սահակ Սևադայի դստեր հետ: Հարսանիքին Յուսուֆը նրան թագավորական թագ ու թանկարժեք նվերներ է ուղարկում՝ զգեստներ, նժույգներ և նույնիսկ նրան է տրամադրում մահմեդական այրուձիի մի գունդ: Թե ինչո՞ւ է Յուսուֆը հանկարծ փոխում իր քաղաքականությունն Աշոտի նկատմամբ, մենք կտեսնենք հետագայում: Չնայած Յուսուֆի դիրքորոշմանը՝ Դվինում հաստատված Աշոտի ախոյան, հակարքա Աշոտը շարունակում է իր պայքարը: Աշոտ Երկաթն իր աներոջ տրամադրած օգնական զորքով գալիս և բանակում է Դվինի դիմաց: Հակաթոռ արքան նրան ստիպում է հեռանալ: Աշոտը գնում է իր բարեկամի՝ վրաց Գուրգեն իշխանի մոտ և Դվին է վերադառնում նրա զորքի գլուխն անցած: Այս անգամ միջամտում է Հովհաննես Կաթողիկոսը՝ պատմիչը, և նրան հաջողվում է հաշտեցնել հակառակորդներին:

Աշոտը կրկին վերադարձավ աներոջ՝ Սահակ Սևադայի մոտ: Այս անգամ ևս նա նրա օգնության կարիքն է զգում մեկ այլ ստորակային՝ Ուտիքի ամբարտավան իշխան Մովսեսին, խելքի բերելու համար: Մովսեսն ապստամբել էր արքայի դեմ, թեև հենց Աշոտն էր նրան նշանակել այդ շրջանի վայրի [«ճիւաղաբարոյ»] ցեղերի իշխան: Մովսեսը ջախջախվում է, և նրան խստորեն պատժում են կուրացնելով:

Աշոտը հաղթանակած տուն՝ Շիրակ է վերադառնում: Այնտեղ նրան մեկ այլ ցավալի անակնկալ էր սպասում: Նրա եղբայր Աբասը, որն ամուսնացել էր վրաց Գուրգեն իշխանի դստեր հետ, իր աներոջ հետ միասին դավեր էր նյութում Աշոտի դեմ: Այդ դավադրության ոգեշնչողը կարծես թե նրա ախոյան հակաթոռ արքա Աշոտն էր: Աշոտ Երկաթի մոտ է գալիս Գեղարքունիքի իշխան Վասակն իր նվիրվածությունը վկայելու համար: Սակայն, հակարքա Աշոտի և Աբասի աներ Գուրգենից[1] ստացված մի նամակի պատճառով, նրան ամբաստանում են, թե իբր համագործակցում է դավադիրների հետ և նետում Կայան բերդը:

Այդ ժամանակաշրջանում Յուսուֆին փոխարինում է մի նոր արաբ կառավարիչ: Նրա անունն էր Փարկինի և նա խալիֆայի կողմից թագ էր բերել Գագիկ Արծրունուն թագադրելու համար: Դա առաջացնում է Յուսուֆի դժգոհությունը, քանզի նա Գագիկին իր ոխերիմ թշնամին էր համարում:

Փարկինիի ժամանումը բացահայտում է գաղտնի լծակներն այն իրադարձությունների, որոնց նկարագրությունը դեռևս չի ավարտվել:

Խարդավանքներով և սադրանքներով լի այդ միջավայրում ոչինչ հաստատուն չէր՝ ո՛չ բարեկամությունը, ո՛չ էլ հավատարմությունը: Սահակ Սևադա իշխանը՝ Աշոտի աները, որին վերջինս իր հիմնական հենարանն էր նկատում, համարում է, որ եկել էր թագավորին դավաճանելու իր հերթը: Արյունալի ընդհարումն անխուսափելի կլիներ, եթե չմիջամտեին երկրի խոշոր ավատատերերը, որոնց հաջողվում է վերականգնել փեսայի և աներոջ սասանված փոխվստահությունը:

Աշոտ արքան շատ լավ էր հասկանում, որ այդ ապստամբությունների հրահրիչը թագի փափագով տոչորվող իր հորեղբորորդին էր: Ուստի անսպասելիորեն հարձակվում է նրա նստավայրի՝ Դվին քաղաքի վրա և գրավում այն: Դրանից հետո նա գնում է Ատրներսեհի՝ Վիրքի թագավորի մոտ և նրա հետ միասին արշավում Գուրգենի՝ հակաթոռ արքայի կողմնակցի, դեմ: Հակաթոռ արքան օգնության է շտապում վերջինիս, որին իր հերթին օգնում էր նաև Աբասը՝ Աշոտի եղբայրը: Երեք դավադիրները չեն համարձակվում ճակատամարտ տալ և ետ են քաշվում դեպի դժվարամատչելի կապանները,

[1] Ասողիկ, Գ, գլ. 6:

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 165: «զմիւս թագաւորին Աշոտոյ և Գուրգենայ աներոյ իւրոյ» նախադասությունը պետք է սրբագրել «աներոյ (եղբաւր) իւրոյ»:

սակայն Աշոտի ու Ատրներսեհի հետապնդումից խուսափելու նպատակով խաղաղության առաջարկ են անում, պարտավորվելով հատուցել իրենց պատճառած վնասը:

Հաղթանակած իշխանների ուրախությունը թունավորում է Աշոտի աներոջ՝ Սահակ Սևադայի, բարձրացրած ապստամբության լուրը: Նա ներխուժել էր Ուտիք, ասպատակել այն, գրավել Չորոփոր և Կայան բերդերը, ազատել Կայանում բանտարկված Վասակին: Ապստամբ Սևադան այրել է հասած բերքը և դիրքավորվել Տավուշի մոտ գտնվող մի հովտում: Սահակի ութ հազար զինվորի դիմաց ունենալով երեք հարյուր, Աշոտն առաջարկում է հաշտություն կնքել մի պայմանով, որ Սահակը Աշոտին պետք է հանձներ բերդերն ու տեղահանված ազգարնակչությունը: Վստահ լինելով, որ հաղթելու է, Սահակը ձերբակալում է Աշոտի պատվիրակին և հայտարարում, որ Աշոտին պատասխանելու է սրով: Վրդովվելով իր աներոջ հանդգնությունից, Աշոտը մի սխրանք է գործում, որը հիացրել է Հովհաննես պատմիչին: Երկու հարյուր զինվորով նա հարձակվում է իր հակառակորդի ութ հազար զինվորի վրա և նրանց փախուստի մատնում: Սահակը և նրա որդի Գրիգորը գերեվարվում են, և քիչ վարանելուց հետո Աշոտը հրամայում է նրանց կուրացնել: Գարդման ամրոցն ու պարտված իշխանի ամբողջ երկիրն անցնում են Աշոտին:

Սահակի պարտությունից քիչ առաջ, ըստ մեր պատմիչի, Յուսուֆն ապստամբել է իր տիրոջ դեմ. մեկ թե երկու անգամ նա ջարդել է խալիֆայի զորքը, սակայն ի վերջո պարտություն է կրել և շղթայակապ տարվել խալիֆայի մոտ:

Արաբ հեղինակները հաստատում են հայ պատմիչի այս տեղեկությունը: Յուսուֆը, իբրև Ատրպատականի կառավարիչ, երբեք չի վայելել Բաղդադի վստահությունը: Ոչ ոք չէր տարակուսում, որ նա առիթ էր փնտրում անկախ իշխանավոր դառնալու համար:

Հիջրայի 299 թ. (= 911 թ. օգոստոսի 18), երբ արաբների զորքը պայքարում էր Կարմատների ապստամբության դեմ, Յուսուֆը փաստորեն դադարեցնում է սովորական մատակարարումները խալիֆային:

Մի քանի տարի անց, հիջրայի 340 թ. (= 916 թ. հուլիսի 5 - 917 թ. հունիսի 24) Ատրպատականի ամիրան, չնայած իրեն լրացուցիչ կերպով տրվել էր Ռեյի, Ղազվինի, Զենգանի և Աhարի կառավարումը, հրաժարվել է հարկ վճարել, պատճառաբանելով, որ իր եկամուտները հազիվ էին բավարարում իր կառավարած երկիրը պահելու համար:

Հիջրայի 341 թ. (= 917 թ. հունիսի 24 - 918 թ. հունիսի 14) խալիֆան զորք է ուղարկում, որպեսզի խելքի բերի անշրջահայաց ամիրային: Առաջին անհաջողությունից հետո Յուսուֆը զգում է, որ ինքը գործը տանուլ է տալիս:



Նա բանակցություններ է սկսում և խաղաղության առաջարկ անում՝ տարեկան յոթ հարյուր հազար ոսկյա դրամ վճարելու պայմանով: Բաղդադում ոչինչ չէին ուզում լսել: Պատերազմը վերսկսվում է և 919 թ. հունիսի 19-ին Արդաբիլի մոտ Մունիս զորավարը հարձակվում է Յուսուֆի վրա, հաղթում նրան ու գերեվարում:

Հաղթանակած Մունիսի վերադարձից հետո ոմն Սբուկ՝ Յուսուֆի նախկին ծառան, որին նա ազատ էր արձակել, համախմբում է իր տիրոջ համախոհներին և քշում խալիֆայի զորքը, որի զորավարն էր Մուհամադ ալ Ֆաբիքի թին Ուբեյդ (կամ Արդ) Ալլահը[1]: Այս արժեքավոր տեղեկությունները, որոնք մասամբ հայտնի են նաև Հովհաննես Կաթողիկոսին, մեզ օգնում են պարզորոշ կերպով տեսնելու այն իրադարձությունները, որոնք մենք շարադրելու ենք ըստ հայ պատմիչի տեղեկությունների, ճշգրտել դրանց ժամանակագրությունն ու բացատրել դրանց պատճառները:

Յուսուֆը խալիֆայի հետ գժտվել է 911 թվականին: Հենց նույն տարին նա հարձակվում է Սմբատ արքայի վրա, գրավում Կապույտ բերդն ու գերեվարում արքային: Ամիրան ճիշտ պահն էր ընտրել այդ բանն անելու համար: Խալիֆը զբաղված էր իր ներքին խնդիրներով և, ինչպես վկայում է Հովհաննես Կաթողիկոսը, ի վիճակի չէր Յուսուֆի գործողություններին դիմագրավելու:

Նույն Յուսուֆը երկար ժամանակ հակաթոռ արքային հովանավորելուց հետո լքում է նրան և ճանաչում նրա անվանակից Աշոտ Երկաթ արքային, նրան արքայական թագ ուղարկելով: Անհիմն չէր լինի, եթե այդ իրադարձությունը տեղադրենք այն պահին, երբ Յուսուֆը սպասում էր իր դեմ ուղարկված խալիֆայի զորքի ժամանելուն, այսինքն՝ 917 թվականին: Պատերազմը սկսվել է և տևել երկու տարի (917-919): Եվ հենց այդ ժամանակաշրջանում մենք տեսնում ենք, թե ինչպես է Աշոտը պայքարում ներքին ընդդիմության դեմ. քիչ թե շատ բացահայտ մի խմբավորում, որը կազմված էր արքայի եղբորից, հորեղբորորդուց, աներոջից, բարեկամներից ու ստորականերից, և որը զինվում էր նրա դեմ: Պատմիչը՝ Հովհաննես Կաթողիկոսը, կարծում է, թե այդ կտրուկ փոփոխությունը կարելի է բացատրել մարդկային կրքերի վնասակար ազդեցությամբ՝ նախանձով ու հավակնոտությամբ: Որպիսին էլ լինի անձնական շարժառիթների դերը քաղաքական կյանքում, այնուամենայնիվ, այն բավարար չէ մեր ուշադրությանն արժանացած ընդհարումների շրջադարձերը հասկանալու համար:

Յուսուֆի վարքագիծը առեղի էր դարձել բոլորի համար: Երկրի իշխաններից և ոչ մեկը չէր էլ մտածել նրա ուժն օգտագործել իր հակառա-

[1] G. Weil, II, pp. 621-624.

կորդների դեմ: Նույնիսկ հակաթոռ արքա Աշոտը՝ նրա կարծեցյալ բարեկամը, երբեք իրեն թույլ չէր տվել դիմելու նրա օգնությանը: Աշոտ արքան ընդունել էր այդ մարդու մեկնած ձեռքը այն պահին, երբ խալիֆայի զորքը շարժվում էր նրա դեմ և երբ ի դեմս ալ-Ֆարիքիի հաջորդ էր եկել նրան փոխարինելու (Ֆարիքին Հովհաննես Կաթողիկոսի Փարկինին է): Այսուհանդերձ պահը շատ հարմար էր հանցագործ ամիրայից վրեժխնդիր լինելու համար: Նրա պատճառով այդքան տառապանք տեսած Սյունյաց իշխանները հանդգնում են հարձակվել նրա վրա: Այդ պայմաններում Աշոտի դաշինքն իր հորը սպանողի հետ պետք է որ երկրի տերերին անպատեհ թվար: Այն կարող էր վարկաբեկել արքային: Աբասը՝ նրա եղբայրը, Գուրգենը՝ նրա բարեկամը, առաջիններից էին, որ բացահայտորեն ցույց են տվել իրենց վրդովմունքն ու միացել մյուս Աշոտին, որն իր վարկը բարձրացրել էր չարագույժ ամիրա Յուսուֆի հետ կապերը խզելով: Մյուս իշխանների ապստամբությունների պատճառը նույնն էր: Նշենք, որ նոր ամիրան արքայական թագի էր արժանացրել ոչ թե Աշոտին, այլ Գագիկ Արծրունուն: Շատ հնարավոր է, որ նա քաջալերել էր իշխաններին Աշոտին հակադրվելու հարցում:

Յուսուֆը պարտվելով, 919 թ. Բաղդադում դատապարտվել է խալիֆայի բանտում իր հանդգնության մեղքը քավելու: Սբուկը՝ նրա ստորական, նորից պարզել է ապստամբության դրոշը և, հավանաբար, Աշոտի օգնությամբ քշել է ալ-Ֆարիքիին: Արաբ ամիրան իր դաշնակցին շնորհել է շահնշահի հավակնոտ տիտղոսը: Բոլորի կարծիքով Յուսուֆի գործակալի հետ նման համագործակցությունը պատիվ չէր բերում Աշոտին: Միգուցե Սահակ Սևադայի ապստամբությունը բողոքի ցույց էր այդ փաստի դեմ: Սակայն ահա մեկ այլ ավելի տհաճ միջադեպ:

921 թ. բյուզանդական բանակը մտնում է Հայաստան և պաշարում Դվինը: Աշոտ թագավորը քաղաքը պաշտպանող Սբուկ ամիրայի դաշնակիցն էր[1]: Քրիստոնյա կայսեր դեմ մահմեդական իշխանին օգնություն ցույց տալը չէր կարող բարձրացնել Աշոտի հեղինակությունը: Արքային խնայելու նպատակով Հովհաննես Կաթողիկոսը լռությամբ է շրջանցում Դվինի պաշարումը, ինչպես նաև այն դերը, որ այդ գործում ունեցել է Աշոտը: Բայց նա պատմում է, որ Ուտիքի իշխան Ամրամը, որն իր ֆիզիկական ուժի պատճառով Ցլիկ մականունն էր ստացել, «լքեալ խոտեալ անարգեալ զբնիկ տէրութիւնն իւր՝ հաճէր հաւանէր մտանել ընդ լծով ծառայութեան անբնիկն Գուրգենայ, որ իշխան իշխանաց էր Գամրաց աշխարհին. նա և

[1] Առաքել, Գ, գլ. 6, այս արշավանքը տեղադրում է Լեկապենոսի թագավորության երկրորդ տարում, այսինքն 921 թվականին:



զայլս ևս զբոլոր նախարարութիւն այնմ նահանգի դառյթ ընդ ինքեան առնել ի նոյնն յարդարէր ապստամբութիւն»[1]: Ամրամն իր ընտանիքը փոխադրեց Տավուշ բերդը՝ ազատ գործելու հնարավորություն ունենալու համար:

Կապադովկիայի իշխանաց իշխանը ոչ այլ ոք էր, եթե ոչ հռչակավոր Հովհաննես Կուրկուասը, որը որպես սխոլերի դոմեստիկոս առաջնորդել էր բյուզանդական բանակը Դվին քաղաքի դեմ: Բյուզանդական զորավարի հիշատակությունը վկայությունն է այն բանի, որ Դվինն իսկապես էր պաշարվել և որ 921 թ. այդ պաշարումը չի կարելի շփոթել 927-928 թթ. պաշարման հետ, որի մասին հիշատակում են արաբական աղբյուրները: Ամրամն ակնհայտորեն ցանկանում էր օգտվել բյուզանդական զորքի ներկայությունից՝ ամիրայից վրեժխնդիր լինելու համար: Հովհաննես Կաթողիկոսը խեղաթյուրել է Ամրամ իշխանի մտադրությունը, նրան վերագրելով Կապադովկիայի ստրատեգոսի իշխանության ներքո անցնելու անհերեթ գաղափարը:

Աշոտը շարժվել է Ուտիքի ապստամբի դեմ: Նրա կացությունը չափազանց ծանր էր: Նա միայնակ էր մնացել: Մի քանի աննշան մարդկանցից բացի բոլորը նրան լքել էին: Նա ստիպված էր օգնություն փնտրել հեռավոր Աբխազիայում: Օգնական զորքի հետ նա վերադառնում է Ամրամի վրա հարձակվելու համար: Վերջինս պատսպարվում է լեռներում: Նրան հետապնդելու ընթացքում Աշոտը մոլորվում է անտառում գտնվող մի մացառուտում: Առանց սննդամթերքի և խմելու ջրի մնացած հուսահատ զորքը կապեր է հաստատում թշնամու հետ և մտադիր է Աշոտին նրան մատնել: Տեղեկանալով դավաճանության մասին, Աշոտը հավաքում է իրեն նվիրված մարդկանց և անօրինակ քաջությամբ կարողանում է գիշերով շրջանցել թշնամու դիրքերը: Նա պատսպարվում է Կաքավաքար կոչվող հարևան բերդում:

Այդ պահից բախտը երես է թեքում Աշոտից (9): Մեր պատմիչը դա համարում է բարոյալքության հետևանք. «Թուի ինձ,- գրում է նա,- եթէ զողջախոհութիւնն զայն՝ զոր նախն էր ստացեալ, յանմաքուր բղջախոհութիւն փոխարկեալ և զքաղցրութիւն պաշտամանն Աստուծոյ յանձնէ ի բաց վարատեալ, և ըստ օրինակի փարիսեցւոյն զանբարտաւան կամս կամեցուցեալ իւր, վասն այնորիկ թերևս դատապարտեալ անկանէր՝ ոչ ժամանեալ ի կատարս փրկութեան իւրոյ»[2]:

Հեղինակը չի ցանկացել բացատրել իր ասելիքը, առավել ևս այն փաստարկել: Նա պարսավում է Աշոտին արաբական կողմնորոշում ունենալու

[1] Հովհաննես Կաթողիկոս, էջ 173:
[2] Նույնը, էջ 175:

համար, որն արգահատելի էր իր համար:

Այդուհանդերձ, Աշոտի քաղաքականությունն ամենևին պարսավելի չէր, ինչպես դա ցույց կտան հետագա իրադարձությունները:

Հիջրայի 310 թ. = 922 թ. մայիսի 1 – 923 թ. ապրիլի 21, Յուսուֆն ազատ է արձակվում և վերականգնվում իր նախկին պաշտոնում: Նրան բանտարկած Մունիսը (Հովհաննես Կաթողիկոսի Մոնոսը) միջնորդել էր խալիֆայի առջև նրան բանտից ազատելու համար: Յուսուֆը մեկնում է Ատրպատական: Ճանապարհին նա ապարդյուն կերպով փորձում է գերի վերցնել Գագիկ Վասպուրականցուն, որի դեմ նա քեն էր պահել: Ի վերջո նա Գագիկին հաշտության առաջարկ է անում իր պահանջած գումարը որպես հարկ վճարելու պայմանով: Նրա չարության շարժիչ ուժը ագահությունն էր: Գագիկը, ինչպես և Ատոմ Անձևացի իշխանը համաձայնում են վճարել խաղաղության համար:

Հասնելով Ատրպատական, Յուսուֆը տեղեկանում է, որ Սբուկը մահացել է Արդաբիլում և մեծ կարողություն է թողել: Յուսուֆը տիրանում է այդ ժառանգությանը: Քանի որ նա պետք է Ռայ մեկներ, ապա նա Հայաստան է ուղարկում ոմն Նասրի, որի մականունն էր Սբուկ[1]: Պետք չէ շփոթել այս անունը կրող երկու անձանց, որոնց Հովհաննես Կաթողիկոսը պարզորոշ կերպով տարբերակում է: Մեկը՝ Սբուկը, հաջորդել է Յուսուֆին 919 թ. և վախճանվել 922 թ., վերջինիս վերադարձից առաջ: Մյուսի անունն էր Նասր, «որում Սբուկն փաղաքշաբար յորջորջէին»[2]: Առաջին Սբուկն էր, որ Աշոտին պատվեց «արքայից արքա» տիտղոսով և ոչ թե երկրորդը՝ Նասր Սբուկը, ինչպես սխալմամբ կարծում են ոմանք:

Նասրը, Հայաստան հասնելուն պես, ննենգորեն ձերբակալում է Սյունիքի երկու իշխաններին և *բանտ նետում*: Դա վատ նշան էր: Հովհաննես Կաթողիկոսը, որը քաջությամբ աչքի չէր ընկնում, լքում է աթոռն ու մեկնում Այրիվանք, իսկ այնտեղից՝ Սևանա կղզի: Նա այնտեղ վանականների հետ քննարկում է ամիրայի չար մտադրություններն ու վճռում վերադառնալ իր աթոռանիստը՝ եկեղեցուն և նրա ունեցվածքն անտեր չթողնելու համար: Կաթողիկոսը վերադառնում է Բյուրական՝ մի ամրոց, որ նա գնել էր վանքի վերածելու նպատակով: Նա նամակով ամիրայից հայցում է իր անվտանգության հավաստիքը, խոստանալով դրա դիմաց հարուստ ընծաներ:

Իր շրջապատի մոլեռանդ իմամների դրդմամբ, ամիրան թշնամաբար է տրամադրվում Հայոց եկեղեցու նկատմամբ և պղծում իր կառավարումը անլուր դաժանությամբ: Նրա զորքերը կողոպտեցին Այրիվանքը, իսկ հետո

[1] Հովհաննես Կաթողիկոս, էջ 178-179:

[2] Նույնը, էջ 179:



շարժվեցին Բյուրականի դեմ: Կաթողիկոսը Բագավանում ապաստանում է Աշոտի՝ արքայի զարմիկի, մոտ: Բայց Բյուրականի բնակիչները՝ հոգևոր և աշխարհիկ դասերի ներկայացուցիչները իրենց օգնության հասած մի քանի զինվորականների օգնությամբ հուժկու դիմադրություն են ցույց տալիս: Բյուրականի պաշտպանությանը զոհ է գնում երկու հարյուր մարդ: Ամրոցն առնվում է հայոց տոմարի 372 թ. Ահեկանի 10-ին, որը համապատասխանում է 923 թ. դեկտեմբերի 15-ին[1]: Գևորգ անունով մի սարկավագ, փախչելով կաթողիկոսի մոտ, հայտնում է նրան այս գույժը:

Յուսուֆը Նասրին ետ է կանչում Ատրպատական: Հայաստանում նրան փոխարինում է ոմն Բշիր: Այս ամիրան իր դաժանությամբ չէր զիջում նախորդին: Աշոտ արքան, որը ներություն չէր կրել Նասրի կառավարման ժամանակ, հանկարծ հարձակման է ենթարկվում Բշիրի կողմից: Այդ ժամանակ նա Սևանում էր: Նրա զորավար Գևորգը ետ է մղում հարձակումը: Բշիրը Դվին է վերադառնում և քիչ անց երկրորդ անգամ արշավում Աշոտի դեմ: Պարտվելով նա նահանջում է և հարձակվում Դվինի ու Գառնու միջև գտնվող Գեղայ կամ Քեղայ ամրոցի վրա[2]: Գևորգ զորավարը նրան մեկ անգամ ևս պարտության է մատնում և քշում: Այդ ժամանակ Նասրը վերադառնում է Ատրպատականից: Յուսուֆը կանչել էր նրան Ռայը գրավելու համար, որը Սբուկի մահից հետո դարձյալ անցել էր Սամանյաններին, որոնցից նախապես Յուսուֆը խլել էր այն: Յուսուֆը հեշտությամբ քշում է Սամանյանների դրածո Ահմեդ բեն Ալի Սալուկին և Ռայը հանձնում է իր ազատագրյալ ստրուկ Մուֆլիհին: Սակայն հետագայում նա հեռացնում է վերջինիս և Ռայը ենթարկում իրեն: Դա տեղի է ունեցել հիջրայի 313 թ. = 925 թ. մարտի 28 – 923 թ. մարտի 19[3]: Հաջորդ տարի Յուսուֆին ետ են կանչում իր պաշտոնից և ուղարկում Բասրա Կարմատների դեմ: Սուլեյմանը՝ Կարմատների առաջնորդը, ջարդում է նրա զորքը հիջրայի 313 թ. սավալի 10-ին = 927 թ. դեկտեմբերի 10, գերեվարում նրան և քիչ անց սպանում[4]:

Հովհաննես Կաթողիկոսը չի հիշատակում Յուսուֆի հեռանալը: Նա այդ իրադարձությունը մոռացության չէր մատնի, եթե տեղյակ լիներ, բայց Նասրի վերադարձի մասին նա գիտի: 923 թ. դեկտեմբերին Նասրն արդեն Հայաստանում էր: Ռայում Յուսուֆին օգնելու համար նրա ձեռնարկած արշավանքը, ինչպես նաև նրա վերադարձը Հայաստան պետք է տեղադրվեն

[1] Հովհաննես Կաթողիկոսի տպագրում (էջ 189) տրված է 332 թվին: Դա ակնհայտ սխալմունք է *յիգ*-ի փոխարեն *յլգ* թյուր ընթերցման հետևանքով:

[2] Այժմ այն կոչվում է Քեյվա՝ Իմերզեկ գյուղի մոտ (տե՛ս Գ. Հովսեփյանց, Խաղբակյանք կամ Պռոշյանք, էջ 61-65):

[3] G. Weil, II, pp. 621-624.

[4] Նույնը, էջ 607-609:

924 թվականին[1]: Դրանից հետևում է, որ կաթողիկոսն իր Պատմությունը հասցրել է մինչև 925 թվական:

Աշոտի պատմությունն ավարտելու համար հիշեցնենք, որ ըստ արաբական աղբյուրների հիջրայի 913 թ. = 927 թ. մայիսի 8 – 928 թ. փետրվարի 25, Կուրկուաս դոմեստիկոսը մի մեծ բանակի գլուխն անցած արշավել է Դվինի դեմ: Նասր ալ Սուբկին (Սբուկը) քաղաքում էր և ստանձնել էր դրա պաշտպանությունը: Դոմեստիկոսի զորքը զինված էր μαγγανικά-ներով (testudines) և նավթարձակ մի սարքով, որը մեկ հարվածով տասներկու մարդ էր սպանում: Մահմեդական մի զինվոր նետահարել էր այդ սարքը սպասարկող զինվորին: Քաղաքից և զորքից բարձր գտնվող մի վայրում տեղադրված գահավորակի վրա նստած դոմեստիկոսը ղեկավարում էր ճակատամարտը: Բյուզանդացիներին հաջողվում է քաղաք ներխուժել, սակայն բնակչությունը հարձակվում է նրանց վրա և հետ մղում: Նրանք սպանում են տասը հազար մարդ[2]:

Այս առիթով խոսք չկա ո՛չ Աշոտի, ո՛չ էլ քաղաքը պաշտպանելու համար ամիրային նրա ցույց տված օգնության մասին: Հետևաբար այս պաշարումը տարբերակվում է 921 թ. պաշարումից:

Աշոտի թագավորությունը, ընդհանուր առմամբ, այդքան դժնդակ չէր՝ արդարացնելու նրա ժամանակակից պատմիչ Հովհաննես Կաթողիկոսի հոռետեսությունը: Իբրև պատմագիր նա անկասկած ճշմարտապատում է և լավ տեղեկացված, բայց, որպես ազգի հոգևոր հովիվ, նա չափից ավելի զգայուն է իր հոտին պատուհասած դժբախտությունների նկատմամբ և, հետևաբար, հակամետ է չափազանցության:

Հայաստանն իր իշխանապետություններով հանդերձ խալիֆայության մի խոշոր միավորի՝ Ատրպատականի, մասն էր կազմում: Հայ իշխանները չէին ցանկանում հնազանդվել Ատրպատականի ամիրային և ձգտում էին, նրանից ձերբազատվելով, անմիջականորեն ենթարկվել Բաղդադի կենտրոնական իշխանությանը: Հայ իշխանները հպատակության տարեկան հարկ էին վճարում: Ատրպատականի ամիրաները պահանջում էին ավելին, քան իշխանապետները կարող էին կամ ցանկանում էին վճարել: Դա էր հաճախակի ընդհարումների պատճառը: Հայ իշխանների վայելած անկախությունն ու առանձնաշնորհները չէին վիճարկվում, բացառությամբ դավաճանության և Բյուզանդիայի նկատմամբ բացահայտ համակրանքի դեպքերի:

[1] Իր աշխատության 194-րդ էջում Հովհաննես Կաթողիկոսն ասում է, որ Քեղայի բնակիչները Նասրի գալուն պես հեռացան ամրոցից արյունահեղությունից խուսափելու համար և որ Նասրը «յետ երկեամ մի աւուրց իմացեալ զթափրանալ ամրոցին ի բնակչաց անտի, յինքն գրաւէ»: Սա չի նշանակում, թե ամիրան տիրացավ ամրոցին բնակչության հեռանալուց երկու տարի անց, այլ՝ Բշիրի պաշարումից երկու տարի անց:

[2] Ibn-al Athir, VIII, pp. 129-130.



Կասկածից վեր է, որ արաբների քաղաքականությունը միտված էր առանց միջոցների խտրականության քաջալերել երկրի տերերի միջև վեճերն ու տարաձայնությունները՝ իրենց իշխանությունն ամրապնդելու համար:

Աշոտի թագավորությանն ուղեկցող ներքին պատերազմներն ունեին առանձնահատուկ բնույթ, որ մենք լուսաբանեցինք վերը: Պետք է ավելացնել, որ Աշոտն էլ ուներ մեղքի իր բաժինը: Մեր պատմագիրը նրան որակում է որպես գոռոզամիտ մարդ: Կայսերական արքունիքում եղած ժամանակ նա ծանոթացել էր ինքնակալության և իշխանության կենտրոնացման երևույթներին: Թվում է թե այս «մեծամիտ» իշխանը երազում էր ամրապնդել իր իշխանությունը ի վնաս իր հպատակների: Ավատատիրական վարչակարգը, այդ բառի լայն իմաստով, դարեր շարունակ Հայաստանի քաղաքական և հասարակական կյանքի հիմքն էր կազմում: Այդքան խոր արմատներ գցած համակարգի դեմ ցանկացած ոտնձգություն ի սկզբանե դատապարտված էր անհաջողության և կարող էր ավելի շուտ տկարացնել թագավորական իշխանությունը, քան ամրապնդել: Քաղաքական իմաստնությունը պահանջում էր ջանքեր գործադրել իշխանների միասնության ամրապնդման և ոչ թե նրանց կործանման համար:

## ԼԻԿԱՆԴՈՍԻ ԲԱՆԱԿԱԹԵՄԸ ՀԱՅ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Այս բանակաթեմի հիմնադիրը հայազգի նշանավոր Մելիասն է՝ «երկայնաքազուկ» հորջորջված Աշոտ իշխանի քաջարի զինվորը և վասալը (1): Ահա թե ինչ է պատմում Լիկանդոսի ծագման մասին Կոստանդին VII Ծիրանածինը (944-959).

«Լիկանդոսը բոլորովին վերջերս դասվեց բանակաթեմերի և քաղաքների շարքը՝ երանելի Լևոն կայսեր գահակալության օրոք: Անցյալում այն ամայի և անմարդաբնակ էր, ինչպես Ցամանդոս կոչվող երկրամասը և հայերին մերձակա տարածքները: Այդ ամբողջ տարածաշրջանը ճանաչում և անգամ ընդհանուր անուն չուներ:

Հաղթ և հսկա հայը՝ [Լեկաստրիա] Անզուրինեի փեսան, երկայնաբազուկն ու խիստ կոփվածը, որին հայերեն լեզվով Ազոտոս [Աշոտ] էին անվանում և որը, դժվարանում եմ ասել՝ իբրև փախստական, թե բարեկամ, եկել էր երանելի Լևոն [VI] կայսեր մոտ: Իբրև ստորակա նրան էր ենթարկվում հենց վերջերս վախճանված հռչակավոր Մելիասը, որը նրա հետ մասնակցեց բուլղարական դժբախտ արշավանքին՝ ես նկատի ունեմ բուլղարական թագավորի դեմ մղվող պատերազմը: Բուլղար Սիմեոն թագավորի դեմ այդ պատերազմում հայը սպանվեց. նա էքսկուբիտոսներ կոչվող կայսերական պահակախմբերի հրամանատարն էր: Հենց այդ ժամանակ էր, որ միևնույն պատերազմում, անհայտ հանգամանքներում, զոհվեց Լևոն կայսեր պրոտովեստիարիոս Թեոդոսը:

Սակայն, վերոնշյալ Մելիասը պատերազմում կենդանի մնաց և ողջ ու առողջ գնաց հայերի երկիր: Լինելով հաղթ և հակված բարբարոսական ավազակության, նա անդամակցեց հայերից կազմված հրոսակախմբին և ինչպես կարողացավ՝ ամրապնդեց [Լիկանդոս] քաղաքի միջնաբերդը: Աստիճանաբար առաջադիմելով՝ նրան հաջողվեց գրեթե ամբողջ քաղաքը դուրս բերել ավերակներից: Իր նախկին տեսքն ընդունած բովանդակ երկիրը վերաբնակեցվեց հայերով: Այն արգավանդ էր բնակչությանը կերակրելու և հարուստ արոտավայրերով՝ ձիերի ու ցանկացած անասունների համար: Շատ խոհեմ Մելիասի ջանադիր գործունեության շնորհիվ՝ Լիկանդոսը վերածվեց բանակաթեմի և դարձավ նշանավոր զորավարություն: Ինչ վերաբերում է այս քաղաքի անվանը, ապա այն նախասկզբնականն է և



հին, ծագում է հայ ցեղից և հայերեն լեզվից:

Այս քաղաքի մասին մի հիասքանչ լեգենդ գոյություն ունի, որին օտար չէ բանաստեղծական երևակայությունը: Քաղաքի պարսպապատին փորագրված է մի արձանագրություն, որտեղ նշված է. «Ի՞նչ Կոստանդնուպոլիս: Ի՞նչ Լիկանդոս: Ի՞նչ Թովմա *ὁ πρόοικος* (մեծատուն): Ի՞նչ կայսր»:

Այս արձանագրությունը ծագել է հետևյալ կերպ: Մեծ և նշանավոր Հուստինիանոս I կայսրն այն ժամանակաշրջանում, երբ նրա հորեղբայր Հուստինոսը կեսարի կարգավիճակով ձեռքում էր պահում Հռոմեական կայսրության գայիսոնը, նշանակվել էր հռոմեական բոլոր զորքերի գլխավոր հրամանատար և քանի որ շրջագայում էր Փոքր Հայքի բնակավայրերով, ժամանել է Լիկանդոս: Այս քաղաքի *πρόοικος*-ը՝ նշանավոր Թովման, որն անասունների հոտերով այնքան հարուստ էր, որքան, ըստ Սուրբ Գրքի վկայության՝ Հոբ Երանելին, առաջարկել է Հուստինիանոս կեսարին իբրև զարմանահրաշ և գրավոր հիշատակման արժանի նվեր, ծաղկաքմբի տեսքով, զանազան գույների տասը հազար ոչխար. հազար սև ոչխար, նույնքան սպիտակ գույնի, նույնքան մոխրագույն, նույնքան բծավոր, հազար ուրիշներ, որոնք հրագույն էին, նույնքան գորշ, նույն քանակությամբ ուրիշներ՝ դեղին գեղմով, նույնքան կապտավուն և նույնքան ուրիշներ՝ ծիրանագույն գեղմով, նույնքան ոսկեգույն, որոնք ունեին այնպիսի գեղմ, ինչպիսին է ծովային կակղամորթի բուրդը, ինչպիսին պետք է լինի հռչակավոր ոսկե գեղմը՝ ինչպես այդ մասին պատմում են հույները: Կարճ ասած՝ տասը հազար ոչխար՝ տարբեր գույների և որոնք զանազանվում են ըստ յուրաքանչյուր հազարի: Կեսարը դրանով հիացել է և Թովմայի ընծան ընդունելուց հետո կատակով կարգադրել է քաղաքի դարպասի վրա փորագրել վերոնշյալ արձանագրությունը:

Այս քաղաքը բանակաթեմի է վերածվել երանելի Լևոն կայսեր օրոք՝ Մելիասի անվեհերության շնորհիվ, որին անդրադարձանք վերը և, մասնավորապես, որովհետև խելացի միապետը կարողացել է կարգավորել գործերը զգուշությամբ և գնահատել այս մարդու արժանիքները: Այսքանը Լիկանդոսի և դրա հարևան Ցամանդոսի մասին»[1] (2):

Լևոն VI կայսեր օրոք (886-912) տեղի ունեցած մի քանի բանակաթեմերի վերափոխության կապակցությամբ, Կոստանդին VII Ծիրանածինը վերստին անդրադառնում է Լիկանդոսի պատմությանը՝ շատ ավելի մանրամասնորեն կանգ առնելով Մելիասի իրականացրած աշխատանքի վրա.

«Աստվածավախ Լևոն կայսեր օրոք Լարիսան Սեբաստիայի տուրման էր, Կյումբալեոսը՝ Խարսիանոնի, իսկ Սյումպոսիոնն ամայի էր և սահմա-

[1] **Constantinus Porphyrogenitus**, De Thematibus, t. 1, cap. 12, p. 32-35.

նամերձ Լիկանդոսի տարածաշրջանին: Աստվածավախ Լևոն կայսեր գահակալության ժամանակ Արգիրոսի որդի Եվստաթիոսը ետ կանչվեց աքսորից և նշանակվեց Խարսիանոնի զորավար: Մելիասն իբրև փախստական դեռևս գտնվում էր Մելիտենեում, ինչպես նաև Վասակիոսն իր երկու եղբայրների՝ Կրիկորիկոսի և Պազունեսի հետ և Իսմայիլ հայը, որոնք կայսրից և վերոհիշյալ Արգիրոսից գրավոր պահանջեցին խրիսովուլով հաստատված հավաստիացում առ այն, որ Վասակիոսն իր եղբայրների հետ գնան հաստատվելու Լարիսայում, և որ Վասակիոսը նշանակվի Լարիսայի կլեյսուրարխ, ինչը որ եղավ, և Իսմայիլը՝ Սյումպոսիոնի, ինչը որ եղավ, և որ Մելիասը լինի Եփրատեսիայում գտնվող Տրյուպիա անապատի տուրմարխ, ինչը որ եղավ:

Բայց քանի որ մելիտենացի [արաբները] շարժվեցին Իսմայիլի դեմ և նրան սպանեցին, Սյումպոսիոնը մնաց ամայի: Վասակիոսը դատապարտվեց դավաճանություն պատրաստելու պատրվակով և բռնեց աքսորի ճանապարհը: Դրանով Լարիսան վերստին դարձավ Սեբաստիային ենթակա տուրմա, որի զորավար նշանակվեց Լևոն Արգիրոսը՝ Եվստաթիոսի որդին, որը հետագայում դարձավ մագիստրոս և սխոլերի դոմեստիկոս:

Ինչ վերաբերում է Մելիասին, նա հաստատվեց Եփրատեսիայում, և երբ Կոստանդինը նշանակվեց Խարսիանոնի դուքս (ավելի շուտ՝ Կոստանդին Դուկասը Խարսիանոնում – [*Ն. Ա.*]), այս նույն Մելիասը մեկնեց և վերագրավեց Լիկանդոսի նախկին ամրոցը, այն վերակառուցեց, ամրացրեց և դարձրեց իր նստավայրը: Աստվածավախ Լևոն կայսրը դրան տվեց կլեյսուր անունը: Այնուհետև, Մելիասը Լիկանդոսից գնաց Ցամանդոսի լեռը և այնտեղ հիմնադրեց մինչ օրս գոյություն ունեցող բերդամրոցը: Այն ևս կոչվեց կլեյսուր: Մելիասը դարձավ նաև Սյումպոսիոնի տիրակալը և այն դարձրեց տուրմարխություն:

Աստվածավախ Կոստանդին կայսեր և նրա մոր՝ Զոեի գահակալության օրոք, Լիկանդոսին առաջին անգամ տրվեց զորավարության կարգավիճակ և դրա առաջին զորավար նշանակվեց անձամբ ինքը՝ Մելիասը, որն այդ ժամանակ սոսկ Լիկանդոսի կլեյսուրարխն էր:

Հետագայում այս նույն Մելիասն արժանացավ մագիստրոսի կոչումի՝ Կոստանդին կայսեր հանդեպ ցուցաբերած հավատարմության և սարակինոսների դեմ [պայքարում] գործած տարբեր ու անհամար սխրանքների համար»[1]:

Մելիասի տիրոջ անունն Ազոտոս է, որն, անկասկած, հայկական Աշոտ

[1] **Constantinus Porphyrogenitus**, De Administrando Imperio. Recognovit Immanuel Bekkerus. Bonnae, 1840, cap. 50, p. 227-228.



անունն է, թեպետ հեղինակն իր աշխատություններում ամենուր տառադարձում է *'Ασώτιος* և [նվաստական-փաղաքշական]՝ *'Ασωτίκιος*[1]:

Երկաթաբազուկ և հաղթահասակ Աշոտին հարկ չկա շփոթելու մեկ այլ հայ իշխանի հետ, որն ունենալով միևնույն անունը՝ նմանապես հռչակված էր իր ֆիզիկական ուժով, ինչպես այդ հավաստում են ժամանակագիրները: Նա Սմբատ I թագավորի որդին էր. 914 թ. [արքայազն Աշոտը] եկել է Կոստանդնուպոլիս և վերադարձից հետո հաջորդել իր հորը[2]:

Աշոտ Երկաթաբազուկը Կոստանդնուպոլիս է եկել Լևոն կայսեր գահակալության սկզբում: Ճակատամարտը, որի ընթացքում նա զոհվել է՝ Բուլգարոփիգոնի ճակատամարտն է:

Արշավանքն ուղղված էր Բուլղարիայի Սիմեոն թագավորի [893-927] դեմ: Բանակը Լևոն Կատակալոս մագիստրոսի բարձր հրամանատարության ներքո էր, որին Լևոն Փոկասը հենց նոր նշանակել էր սխոլերի դոմեստիկոս: Լևոն կայսրը նրա հետ ուղարկել է պատրիկ և պրոտովեստիարիոս Թեոդոսին, որը զոհվել է մարտի դաշտում[3]: Ժամանակագիրները չեն հիշատակում Աշոտ Երկաթաբազուկի մասին: Նրան ճանաչում է միայն Կոստանդին [VII] Ծիրանածինը, որը նրան դասում է Սիմեոնի դեմ մղված պատերազմի զոհերի շարքում, «որտեղ, ի շարս այլոց, զոհվեց նաև պրոտովեստիարիոս Թեոդոսը»: Սա մեզ թույլ է տալիս հավաստել, որ երկուսն էլ՝ թե՛ Աշոտը և թե՛ Թեոդոսը զոհվել են Բուլգարոփիգոնի ճակատամարտում: Ժամանակագիրները չեն հաղորդում նաև ճակատամարտի տարեթիվը: Սիմեոն [Լոգոթետեսը] դրա մասին հիշատակում է ի շարս այն իրադարձությունների, որոնք, ըստ նրա, տեղի են ունեցել Լևոն VI-ի [թագավորության] երրորդ տարուց հետո և վեցերորդ տարուց առաջ: Բայց քանի որ այդտեղ հիշատակված է Ստեփանոս պատրիարքի վախճանի և նրա հաջորդ Անտոնիոսի վերելքի մասին, շատ ավելի հավանական է, որ Բուլգարոփիգոնի ճակա-

[1] Նույնը, գլուխ 43, 45 և 46: **'Ασωτίκιος**, նույն տեղում, գլուխ 43, էջ 187: Կոստանդին VII Ծիրանածինին ծանոթ է **ἄζατος**՝ «ազատ» հայերեն բառը (նույն տեղում, էջ 202), որն Աշոտի հետ որևէ առնչություն չունի, բայց, հավանաբար, ազդել է **'Αζῶτος** տառադարձության վրա:

[2] Տե՛ս մեր հոդվածը՝ N. Adontz, Ašot Erkat [ou de fer, roi d'Arménie de 913 à 929, «Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales», t. I (1932-1933), Bruxelles, 1935, p.13-35]:

[3] **Theophanes Continuatus**, Chronographia, ex recognitione Immanuelis Bekkeri, Bonnae, 1838, p. 359-360; **Georgii Monachi** Vitae Imperatorum recentiorum. In.: **Theoph. Cont.**, p. 855. ***Λέων ὁ βασιλεὺς δομεστικὸν τῶν σχολῶν προβάλλεται Λέοντα Κατακαλόν, ἐν τῇ 'Ράβδῳ τὴν οἴκησιν ἔχοντα, καὶ μετ' αὐτοῦ ἀποστέλλει Θεοδόσιον πατρίκιον καὶ πρωτοβεστιάριον*** [Լևոն թագավորը սխոլերի դոմեստիկոս է նշանակում Լևոն Կատակալոսին, որը բնակվում էր Ռաբդոնում և նրա հետ ուղարկում է պատրիկ և պրոտովեստիար Թեոդոսիոսին]: Սիմեոն Լոգոթետեսը նրան անվանում է ***πρωτοβεστιάριος Θεόδωρος*** [«պրոտովեստիար Թեոդորոս»]: Տե՛ս **Symeonis Magistri ac Logothetae** Annales. In.: **Theoph. Cont.**, p. 702:

տամարտը կարող էր տեղի ունենալ Լևոնի [թագավորության] հինգերորդ տարվա վերջին կամ վեցերորդ տարվա սկզբին, այսինքն՝ 891-892 թվականին:

Այն կինը, որի փեսան Աշոտն էր, թվում է, թե Միքայել Անգուրեսի՝ *Μιχαὴλ πραιπόσιτος ὁ 'Αγγούρης* ազգականուհին է, որը հիշատակվում է Վասիլ I-ի (867-886) թագադրության մասնակիցների թվում[1]: Ենթադրվում է, որ նա եղել է թեթևաբարո կին: Լատիներենի թարգմանիչը կարծել է, թե *λαικαστρία*-ն հատուկ անուն է կամ մականուն: Եթե նա եղել է այլասերված կին, հասկանալի չէ, թե ինչո՞ւ է գրող կայսրը նրան արժանացրել իր ուշադրությանը: *Γαμβρός* արտահայտությունը բավական երկիմաստ է, որպեսզի կարողանանք ճշգրտել, թե ո՞ւմ հետ է ամուսնացել Աշոտը՝ նրա քրոջ, թե դստեր հետ: Աշոտը, որն ինչպես բոլոր հայ ավատատերերը, զինվորական էր, մայրաքաղաք ժամանումից քիչ անց, կարողացել է հասնել էքսկուբիտորների դոմեստիկոսի պաշտոնի, որը սխոլարիոսներից հետո կայսերական ամենակարևոր զորամասն էր. ուստի՝ զարմանալի է, որ մեր հեղինակը թերացել է նրան անվանել ոչ այլ կերպ և ավելի հարգալից, քան իբրև թեթևաբարո կնոջ փեսա:

Այնուամենայնիվ, նրա վասալ Մելիասի հանդեպ ճակատագիրն ավելի բարեհաճ է գտնվել, և կայսրությանը մատուցած ծառայությունների դիմաց նա գովեստի է արժանացել նաև իր տիրոջ նոթերում: Նա սովորական սպասավոր կամ ծառա չէր. հունարեն *δοῦλος*-ը, ինչպես հայերեն՝ «ծառայ»-ն, ունի նաև վասալի իմաստ: Այն պայմանները, որոնցում նա և նրա տերը թողել են իրենց երկիրը՝ Կոստանդնուպոլիս գնալու համար, անհայտ են: Մեր հեղինակը չի կարող նույնիսկ ասել, թե նրանք կայսեր մոտ էին եկել իբրև *πρόσφυξ* [«փախստական»], թե *φίλος* [«բարեկամ»], և թե ծագումով նրանք Հայաստանի որ երկրամասերից էին: Այս դարաշրջանում Հայաստանում տիրող քաղաքական իրավիճակը հնարավորություն է ընձեռում ստորև առաջադրել մի քանի ենթադրություն: Ընդունելով, որ Աշոտը կայսեր մոտ էր եկել իբրև *φίλος*, այն է՝ ինչ-որ առաքելության հանձնակատար, կարելի է դա հարաբերակցել Աշոտի՝ Բագրատունիների առաջին թագավորի գահ բարձրանալու հետ, ինչը տեղի է ունեցել հենց այն ժամանակաշրջանում, երբ Աշոտն ու Մելիասը եկել են մայրաքաղաք: Բոլոր հայ պատմիչները հաստատում են, որ իշխանաց իշխան Աշոտը արքայական թագին հասել է Վասիլ I-ի համաձայնությամբ, և որ կայսրը, այն, ինչ հաղորդում է [իրադարձությունների] ժամանակակից պատմիչ Հովհաննես Կաթողիկոսը, հաշ-

[1] Georg., p. 832. *'Αγγουρίνη* համապատասխանում է *'Αγγούρης* անվանը, ինչպես *'Ιγγερίνα 'Ιγγερ*-ին (Theoph. Cont., p. 235; Sym., p. 675; Georg., p. 828):



տություն և դաշինք է կնքել Աշոտ I-ի (885-890) հետ՝ անվանելով նրան «իմ սիրելի որդի»[1]: Մենք գիտենք, որ Հայաստանի իշխանաց իշխաններին հասցեագրված՝ կայսեր գրվածքներն ունեին *πρὸς … πνευματικὸν ἡμῶν τέκνον* [«մեր հոգևոր որդուն»] խորագիրը[2]: Հովհաննես Կաթողիկոսն, անտարակույս, տեղյակ է եղել Վասիլ I-ի՝ Աշոտ թագավորին հղած նամակին, և որ նրան ներշնչել է հղված արտահայտությունը:

Հավաստելով, որ Աշոտի թագադրությանը Վասիլը տվել է իր համաձայնությունը, Ասողիկը գտնում է, որ դա տեղի է ունեցել հայոց թվարկության 336 թվին (887 թ. ապրիլ - 888 թ. ապրիլ), այսինքն՝ խոսքը վերաբերում է այնպիսի տարեթվի, երբ Վասիլն արդեն վախճանվել էր[3]: Հարցն ավելի է բարդանում նրանով, որ Մոսկվայի Լազարյան ճեմարանի Ավետարանի հիշատակարանը՝ մեզ հասած հայերեն ամենահին ձեռագիրը, տեղեկացնում է, որ Ավետարանն արտագրվել է հայոց թվարկության 336 թվին՝ *իշխանաց իշխան* Աշոտի իշխանության օրոք: Այսպիսով, կամ 336 թ. գրիչը դեռևս չգիտեր, որ իշխանաց իշխան Աշոտը դարձել է թագավոր, կամ գերադասել է պահպանել *ἄρχων τῶν ἀρχόντων* պաշտոնական տիտղոսը: Եթե մենք ավելացնենք, որ ըստ Թովմա Արծրունու, Աշոտը վախճանվել է հայոց թվարկության 339 թվին՝ չորս տարի թագավորելուց հետո[4] և, այսպիսով, գահ է բարձրացել հայոց թվարկության 335 թվին, հասկանալի կդառնա, որ Աշոտ I-ի թագադրման տարեթիվը մնում է անորոշ: Այդուհանդերձ, հավաստի է, որ Աշոտ I-ի թագադրության առիթով նրա և կայսեր (անկախ այն բանից՝ Վասիլի, թե նրա որդու՝ Լևոնի) միջև տեղի են ունեցել դիվանագիտական բանակցություններ: Եթե Աշոտ I թագավորի ուղարկած առաքելության ղեկավարն Աշոտն էր՝ Մելիասի հետ մեկտեղ, որոնք ժամանել են Կոստանդնուպոլիս Լևոն VI-ի օրոք, ապա ճիշտ կվարվենք, եթե Աշոտ I-ի գահակալությունը հետաձգենք մինչև Լևոնի թագավորությունը: Մոսկվայի Ավետարանի միևնույն հիշատակարանի վերջում նշված է. «Ես՝ Սահակ Վանանդացիս, Վարդ Վանանդացու որդին, որին նաև Մլեհ էին անվանում»[5]:

[1] **Հովհաննէս Կաթողիկոս Դրասխանակերտցի**, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 140:

[2] De cerimoniis Aulae Byzantinae, liber II, 48, p. 686-687. «Իմ հոգևոր որդի»՝ ինչպես Հովհաննես I Չմշկիկն է իր նամակում անվանում Աշոտ III թագավորին՝ ըստ Մատթեոս Ուռհայեցու (տե՛ս **Մատթէոս Ուռհայեցի**, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, գլուխ 16, էջ 19):

[3] **Ասողիկ**, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 157:

[4] **Թովմայի վարդապետի Արծրունւոյ** Պատմութիւն Տանն Արծրունեաց, ի լոյս էած Ք. Պատկանեանց, Ս. Պետերբուրգ, 1887, III, [գլուխ] 21:

[5] Ֆ. Մակլերը սխալվել է, նշելով՝ «որին անվանում էին երկրորդ Մլեհ» (տե՛ս Ասողիկի թարգմանության նրա նախաբանը՝ F. Macler, Introduction, Etienne Asołik de Târon, historien arménien du Xe-XIe siècle.– Histoire universelle par Asołik de Târon. Traduite de l'arménien et

Խիստ հրապուրիչ է ի դեմս նրա ճանաչել Լիկանդոսի ապագա տիրոջը: Ժամանակաշրջանը և մեր հաղորդած հանգամանքները պատեհ են այսպիսի նույնացմանը նպաստելու համար: Վանանդը Շիրակի հարևանությամբ գտնվող Կարսի տարածաշրջանն է, որտեղ և Աշոտ I թագավորի մայրաքաղաքն էր: Մելիասի գերական՝ Աշոտ Երկայնաբազուկը, կարող էր լինել Վանանդի իշխաններից և, հավանաբար, անձամբ թագավորի մերձավորներից: Այս ամենը նպաստում է Մլեհին Մելիասի կամ Լիկանդոսի Մլեհի հետ նույնացմանը: Այդուհանդերձ, հարկ չկա այստեղ ոգևորվելու: Նախ՝ Սահակն իր հոր մասին արտահայտվում է ինչպես արդեն վախճանվածի մասին, քանզի նշում է, որ իր հորն *անվանում էին* (և ոչ թե *անվանում են*) Վարդ, իսկ երկրորդ անվամբ՝ Մլեհ: Այնուհետև, եթե նա նույնիսկ դեռևս կենդանի է եղել և մեկնել է Կոստանդնուպոլիս, Մլեհը հայոց թվարկության 336 թվին (887-888 թթ.) պետք է լիներ ոչ պակաս, քան երեսունհինգ տարեկան, եթե հաշվի առնենք, որ նա այդ ժամանակ ուներ մի որդի, որը պետք է լիներ բավական մեծահասակ՝ կատարելու համար գրական պատվեր: Մլեհն, այսպիսով, կարող է ծնված լինել 850-855 թվականների շրջանում: Մելիասը մահացել է 934 թ.՝ ճակատամարտի դաշտում: Եթե Մլեհը նույնանում է Մելիասի հետ, ապա նա իր վախճանի պահին կարող էր լինել ավելի, քան ութսուն տարեկան, որն ակնհայտորեն չափազանց է՝ զենքը ձեռքին մահկանացուն կնքած մարդու համար:

Անբացատրելի է, թե ինչու Աշոտ I թագավորի կարծեցյալ բանագնացները, հայրենիք վերադառնալու փոխարեն, ծառայության են անցել կայսեր մոտ, այնուհանդերձ որքան էլ դա տարօրինակ թվա, ինչ-որ ձևով կարելի է արդարացնել: Սակայն զարմանալի է նաև, որ Մելիասն իր տիրոջը՝ Աշոտին կորցնելուց հետո, գնացել է ոչ թե Աշոտ I թագավորի մոտ, այլ Եփրատեսիայի տարածաշրջան: Այսպիսով, իրավասու ենք կարծելու, որ ինչպես և նրա տեր Աշոտը՝ նա սերում էր այդ տարածաշրջանից:

Կոստանդին VII Ծիրանածինը կարող էր շատ ավելի իրավացի լինել, եթե Աշոտ Երկայնաբազուկին բնութագրեր միաժամանակ *πρόσφυγος* և *φίλος*: Մենք ավելի հավանական ենք համարում, որ այս հայ իշխանը ներկայացել էր Լևոն կայսերը՝ հողերի փոխանակությանը հետամուտ լինելու համար, ինչպես նրանից հետո և, անտարակույս, նրա օրինակով՝ դա կա-

annotée par Frédéric Macler, deuxième partie, livre III, (888[?]-1004[?], Paris, 1897), p. LXIV): Այս ժամանակահատվածում հայ ավատատերերի շրջանում ընդունված էր ունենալ երկու անուն: Սահակի հորն անվանում էին Վարդ-Մլեհ կամ Վարդ, որին անվանում էին Մլեհ: Մոսկովյան ձեռագիրը՝ Լազարյան ճեմարանի ամբողջ գրադարանի հետ մեկտեղ, այժմ գտնվում է Երևանում: Բարեբախտաբար, ունենք դրա լուսատիպ հրատարակությունը, որը պատրաստվել է Մոսկվայում 1899 թվականին: [Տե՛ս «Աւետարան ըստ թարգմանութեան նախնեաց մերոց գրեալ ՅԼԶ թ. Հայոց և յամի Տեառն 887», Մոսկվա, 1899:]



նեն Մանուելն իր չորս որդիների, Վասակիոսն իր երկու եղբայրների հետ, Իսմայիլն ու այլք: Աշոտի քայլերը հաջողությամբ չեն պսակվել: Կայսրը բավարարվել է նրան էքսկուբիտոսների հրամանատար նշանակելով, ինչպես ավելի ուշ Մանուելն է պահվել մայրաքաղաքում, իսկ նրա որդիները պաշտոններ են ստացել բանակում:

Մելիասը գտնվել է ավելի իրատես և կայսրից որևէ բարերարություն չակնկալելով՝ գնացել է այնտեղ, որտեղից, անկասկած, եկել էր, տնօրինելու իր ճակատագիրը: Մելիասի պարագան խիստ ուսանելի է և, ըստ էության, արժանի է քննության:

Կոստանդին VII Ծիրանածինը նշում է, որ 892 թ. պատերազմից հետո Մելիասը գնացել է հայերի երկիր՝ *πρὸς τὴν τῶν Ἀρμενίων χώραν ἀπάρας*, և հայերի օգնությամբ հաստատվել Լիկանդոսի ու Ցամանդոսի տարածաշրջանում: Ի դեպ, միևնույն հեղինակը նրան մեզ ներկայացնում է իբրև փախստականի, որը բնակվել է Մելիտենեում, հետևաբար՝ մի արաբ էմիրի մոտ, որի ենթակայության ներքո էր գտնվում քաղաքն այդ ժամանակաշրջանում և որտեղից, այլ հայերի հետ մեկտեղ, նա դիմում է Խարսիանոնի Եվստաթիոս Արգիրոս զորավարին և կայսերը՝ ստանալու խրիստովուլով հաստատված թույլտվություն՝ տուրմարխոս լինելու համար *εἰς Εὐφράτειαν εἰς τὰ Τρυπία εἰς τὴν ἐρημίαν*[1] [«Եփրատեսիայում գտնվող Տրյուպիա անապատի շրջանում»]: Մելիասը գրավել է Լիկանդոսն ու Ցամանդոսը և նույնիսկ Սյումպոսիոնը, երբ Կոստանդին Դուկասը նշանակվել է Խարսիանոնում:

Մելիասին վերաբերող այս երկու պատմությունում նշմարելի է անհամապատասխանություն: Ըստ առաջին պատմության՝ Մելիասն սկսել է իր գործունեությունը Լիկանդոսում, որը ռազմակալել է մայրաքաղաքից ժամանելուց ի վեր, այն դեպքում, երբ երկրորդ պատմությունը նրան ներկայացնում է իբրև փախստականի Մելիտենեում. այնուհետև՝ նա հաստատվում է Եփրատեսիայում և այնտեղից իր տիրույթներն ընդարձակում՝ ռազմակալելով Լիկանդոսն ու Ցամանդոսը:

Եթե չենք ցանկանում մեղադրել գրող կայսրին իրեն հակասելու մեջ, հարկ է ընդունել, որ այստեղ խոսքն առնչվում է Մելիասի պատմության երկու տարբեր պահերի: Առաջին անգամ նա հաստատվել է Լիկանդոսում, բայց հարկադրված է եղել այն լքել մեզ անհայտ պատճառով և հասնել Մելիտենե: Այստեղից նա հետամուտ է եղել Եփրատեսիայի տարածաշրջանում իբրև տուրմարխոս հաստատվելու համար թույլտվություն ստանալուն, որպեսզի այնուհետև՝ գնա և Լիկանդոսում ու Ցամանդոսում հաստատի իր

[1] Constantinus Porphyrogenitus, De Thematibus, t. 1, cap. 12, p. 33 (3).

տիրապետությունը[1]: Սակայն սա միակ հակասությունը չէ, որը հարկ է հաղթահարել: Մեր հեղինակը պնդում է, որ Մելիասը դիմել է Խարսիանոնի Եվստաթիոս Արգիրոս զորավարին՝ Եփրատեսիան ստանալու համար: Սակայն, հայտնի է, որ Եվստաթիոս Արգիրոսն Անատոլիկոնի ենթազորավար լինելուց հետո, եղել է վիգլայի դրունգար, և որ Լևոն VI կայսրը նրան ազատել է այդ պաշտոնից՝ Խարսիանոնում գտնվող նրա տուն աքսորելու համար, և որ ճանապարհին նա մահացել է իր ծառայի տված թույնից[2]: Այսպիսով, Եվստաթիոսը երբեք չի եղել Խարսիանոնի զորավար: Այս փաստը նսեմացնում է Կոստանդին VII Ծիրանածինի վկայության արժանահավատությունը, քանզի աքսորված Արգիրոսն այստեղ ներկայացվում է իբրև Խարսիանոնի զորավար[3]:

---

[1] **Constantinus Porphyrogenitus**, De Adm[inistrando Imp[erio,] p. 227.

[2] **Theoph**. **Cont**., p. 374.

[3] Պետք չէ Եվստաթիոս Արգիրոսին շփոթել նրա նույնանուն ժամանակակիցների հետ, որոնցից երկուսին մեր սկզբնաղբյուրները զանազանում են: Նրանցից մեկը՝ Լևոն VI կայսեր թագավորության սկզբից ի վեր մինչև 904 թ. կատարում էր նավատորմիղի դրունգարի պարտականությունները: Նա է եղել նավատորմիղի հրամանատարը բուլղարների Սիմեոն ցարի դեմ ուղղված՝ Նիկեփորոս Փոկասի արշավանքի ժամանակ՝ 891 թ. շրջանում (տե՛ս **Theoph**. **Cont**., p. 358; **Georg**., p. 854; **Sym**., p. 701):

Այս հեղինակները չեն հիշատակում հրամանատարների անունները և ըստ նրանց՝ արշավանքը տեղի է ունեցել Լևոն VI-ի թագավորության երրորդ տարուց հետո և յոթերորդ տարուց առաջ: Կոստանդին VII Ծիրանածինը լավ է ճանաչում այս Եվստաթիոսին՝ նավատորմիղի դրունգարին, և այն, ինչ պատմում է Սիմեոնի դեմ պայքարում օգնության կանչված թուրքերի և նավավար Միքայել Բարկալասի մասին, որի անվեհերության շնորհիվ իրավիճակը փրկվել է, վկայում է, որ այստեղ, իրոք, խոսքը վերաբերում է Փոկասի արշավանքին և դրունգար Եվստաթիոսին (**Constantinus Porphyrogenitus**, De Administrando Imperio, p. 237-239): Նույն ժամանակագիրները հիշատակում են Սիկիլիայում գտնվող Տաորմին քաղաքի գրավման մասին, որն ըստ Սիմեոն Լոգոթետեսի՝ տեղի է ունեցել Լևոն VI-ի թագավորության տասներեքերորդ տարում, այն է՝ 898-899 թթ. և միայն Գեորգիոսն է քաղաքի կորուստը վերագրում նավատորմիղի դրունգար Եվստաթիոսի և ոմն Կարմալասի դավաճանությանը, այնպես որ կայսրը նրանց դատապարտել է մահվան, սակայն այնուհետև՝ պատրիարք Նիկողայոսի միջամտության շնորհիվ բավարարվել նրանց աքսորելով՝ Եվստաթիոսին Ստրոպիլոնի, իսկ Կարմալասին Պիկրիդիոնի վանքերը (**Theoph**. **Cont**., p. 365; **Georg**., p. 860-861; **Sym**., p. 704): Սակայն, ինչպես պարզվում է, քիչ անց, Եվստաթիոսին ներում է շնորհվել, և նա վերականգնվել է իր պաշտոնում: Ինչպես հաղորդում են միևնույն սկզբնաղբյուրները՝ նավատորմիղը Եվստաթիոսի հրամանատարությամբ է ուղարկվել Լևոն Տրիպոլիտացու՝ այդ նշանավոր ուխտադրուժի դեմ, որն ուղեկցել է արաբների ռազմածովային ուժերին դեպի կայսրություն և կողոպտել Թեսաղոնիկե քաղաքը՝ Լևոն VI-ի թագավորության տասնութերորդ տարում, այն է՝ 903-904 թվականին: Այս անգամ ևս Եվստաթիոսն իր կոչումի բարձրության վրա չի գտնվել՝ չհամարձակվելով նույնիսկ դիմակայել թշնամուն և հարկադրված է եղել իր տեղը զիջել Կիմերիոսին՝ կայսեր պրոտոասեկրետիսին (**Theoph**. **Cont**., p. 366-368; **Georg**., p. 862; **Sym**., p. 707):

Կոստանդին VII Ծիրանածինին հայտնի է մեկ այլ՝ Լևոն VI-ի թագավորության օրոք Կիբիրեոտների բանակաթեմի ենթազորավար Եվստաթիոսի, որը բնութագրվել է իբրև պրոտոսպաթար և սեկրետիկոս: Իր բանակաթեմ հասնելուն պես, այս Եվստաթիոսը սկսում է բանսարկել մարդայիտների կատեպանի դեմ, որն էր ոմն Ստավրակիոս Պլատիս: Հիմերիոսի



Ինչ վերաբերում է Կոստանդին Դուկասին, ապա ճշգրտելու համար այն տարեթիվը, երբ նա կարող էր Խարսիանոնի զորավարը լինել, հարկ է անդրադառնալ նրա հոր՝ Անդրոնիկոսի մասին պատմածին:

Թեոփանեսի Շարունակողը նշում է.

*'Ο βασιλεὺς εἶχε τῶν 'Ανατολικῶν ὑποστράτηγον Εὐστάθιον πατρίκιον, ὃς ἐκ τῆς καλλίστης καὶ ἀγαθῆς γενεᾶς τῶν 'Αργυρῶν ἐκπεφώνηται· ὃς τοῖς 'Ισμαηλίταις κατεστράτει καὶ ἔτρεπεν οὐχ ἅπαξ ἀλλὰ καὶ πολλάκις, ῥώμῃ καὶ ἰσχύι καὶ συνέσει καὶ ἀνδρίᾳ καὶ φρονήσει καὶ σωφροσύνῃ καὶ δικαιοσύνῃ, τετιμημένος καὶ ἐπειλημμέννος, ἔχων καὶ 'Ανδρόνικον τὸν ἐκ τοῦ Δουκός. Εὐστάθιον 'Αργυρὸν οἱ 'Αγαρηνοὶ ἐδεδίεσαν, ὡς τὸ τούτου ὄνομα ἔκπληξιν καὶ φόβον αὐτοῖς λέγεσθαι*[1]. [«Թագավորն որպես Արևելյան՝ Անատոլիկոն <թեմերի> ենթազորավար (հյուպոստրատեգոս)՝ ուներ պատրիկ Եվստաթիոսին, որը հռչակված է եղել Արգիրոս՝ գեղեցկագույն և բարի տոհմանուններով: Նա պատերազմում էր իսմայելացիների դեմ՝ ոչ թե մեկ, այլ բազում անգամներ, աչքի ընկնելով և գնահատվելով իր եռանդի, ուժի, խելամտության, խիզախության, բանականության, պարկեշտության և արդարության համար: Նրան էր ծառայում նաև Անդրոնիկոսը՝ Դուկաս <տոհմից>: Հագարացիներն այնպես էին սարսափում Եվստաթիոս Արգիրոսից, որ նրա լոկ անունը նրանց երկյուղ էր ներշնչում ու շփոթություն <պատճառում>»]:

Այս հատվածը օգտակար է համեմատել [Գեորգիոս] Համարտոլոսի [Մեղապարտի] Շարունակողի բնագրի հետ (ռուսերեն հրատարակությունում).

*'Ο δὲ βασιλεὺς εἶχε τῶν 'Ανατολικῶν ὑποστράτηγον Εὐστάθιον πατρίκιον, ὃς ἐκ τῆς γενεᾶς τῶν 'Αργυρῶν ἐκπεφώνηται· ὃς τοῖς 'Ισμαηλίταις κατεστράτει οὐχ ἅπαξ ἀλλὰ καὶ πολλάκις μωμαλεόμενος, καὶ 'Ανδρόνικον τὸν ἐκ τοῦ Δουκός, καὶ αὐτὸς αὐτῆς μετὰ τοῦτον τε τῆς στρατηγεσίας ἐπειλημμέννος καὶ πατρίκιος ἐνσεμνυνόμενος· ὃν τοσοῦτον 'Αγαρηνοὶ ἐδεδίεσαν, ὡς τὸ τούτου ὄνομα πρὸς ἐκδειμάτωσιν ἐν τούτοις ἅπασι λέγεσθαι*[2]. [«Թագավորն <որպես> Արևելյան՝ Անատոլի-

---

օժանդակությամբ, որն այդ ժամանակ փոստի լոգոթետեսն էր և հովանավորում էր Եվստաթիոսին, իսկ ավելի ուշ դարձել է նրա թշնամին, նրան հաջողվել է հեռացնել Ստավրակիոսին՝ նրա տեղը զբաղեցնելու համար: Նա մնացել է այս զույգ պաշտոններում մինչ Լևոն VI-ի մահը, որի հաջորդ Ալեքսանդր I կայսրը նրան պաշտոնանկ է արել և Խասեին նշանակել Կիբիրեոտների զորավար, իսկ իր եղբորորդի Աբերկիոսը ստացել է մարդայիտների կատեպանի պաշտոնը (**Constantinus Porphyrogenitus**, De Administrando Imperio, p. 229-231): Այս Եվստաթիոսը, որն ավելի երկար է ապրել, քան Լևոն VI կայսրը, չի կարող ակնհայտորեն նույնացվել Եվստաթիոս Արգիրոսի հետ, որը վախճանվել է նույն կայսեր օրոք:

[1] **Theoph**. **Cont**., p. 368-369.

[2] **Georgii Monachi**, dicti **Hamartoli**, Chronicon. Ed. Istrin, p. 33. Հունարեն բնագրում

կոն <թեմերի> ենթազորավար (հյուպոստրատեգոս)՝ ուներ պատրիկ Եվստաթիոսին, որը խոչակված է եղել Արգիրոս տոհմանունով, որը պատերազմում էր իսմայելացիների դեմ, և ոչ թե մեկ, այլ բազում անգամներ կռվի է բռնվել, ինչպես նաև Անդրոնիկոսին Դուկաս <տոհմից>, որն ինքը <Եվստաթիոսից> հետո ստացել էր այս զորավարությունը և արժանացել պատրիկի կոչման: Հագարացիներն այնպես էին սարսափում <նրանից>, որ լոկ նրա անունը երկյուղ էր ներշնչում ու շփոթություն <պատճառում>»]:

Զանազանությունը երկու բնագրերի միջև ակնառու է: Մեկը Եվստաթիոս Արգիրոսին է վերագրում այն, ինչը մյուսը նախասահմանում է Անդրոնիկոս Դուկասի համար: Քաջարի զորավարը, որի սոսկ անունը սարսափ էր ներշնչում թշնամուն, ըստ առաջին բնագրի՝ Եվստաթիոսն է, այն դեպքում, երբ մյուսը պնդում է, որ դա եղել է Անդրոնիկոսը: Վերջինս իբր Եվստաթիոսին հաջորդել է նրա հրամանատարի պաշտոնում, փաստ, որին առաջին բնագիրն անտեղյակ է եղել կամ այդ մասին լռություն է պահպանել: Այս տարակարծության հետևանքով առաջ եկած դժվարությունը շրջանցելու համար, Կեդրենոսը սահմանափակվել է միայն փաստեր հաղորդելով՝ առանց զանազանելու երկու զորավարներին.

*ὁ δὲ βασιλεὺς πρὸς τὴν ἕω δύο γενναιότατω ἐκπέμπει στρατηγώ, Εὐστάθιον τε τοῦ γένους τῶν ᾿Αργυρῶν καταγόμενον καὶ ᾿Ανδρόνικον τὸν ἐκ τοῦ Δουκός, οἵτινες πολλὰ τρόπαια ἐστήσαντο κατὰ τῶν ᾿Αγαρηνῶν*[1]. [«Թագավորն Արևելք է ուղարկում երկու ազնվագույն զորավարների՝ Եվստաթիոսին, որը սերում էր Արգիրոսների տոհմից, և Անդրոնիկոսին՝ Դուկասներից, որոնք նշանավորվեցին հագարացիների դեմ <մղված պատերազմի> բազում զինաբախումներում»]:

Համարտոլոսի Շարունակողի բնագիրը, այս պարագայում, անկասկած, գերադասելի է, քան Թեոփանեսի Շարունակողի բնագիրը: Հստակորեն տեսանելի է, որ վերջինս դրանից է սերում՝ Եվստաթիոսի օգտին անելով մի քանի փոփոխություններ: Այսպիսով, Թեոփանեսի Շարունակողը բաց է թողել Անդրոնիկոսի հրամանատարությանը վերաբերող նախադասությունը՝ դրանից պահպանելով միայն մեկ բառ՝ *ἐπειλημμέννος* («ստացել <է>»), որպեսզի նրան ներկայացնի այլ պաշտոնում, և հետևաբար, Անդրոնիկոսին դարձրել է Եվստաթիոսի ենթակա՝ *ἔχων καὶ ᾿Ανδρόνικον* («ունենալով և Անդրոնիկոսին») ի նկատի ունենալով Եվստաթիոսին,

բացակայում են փակագծերում վերցված բառերը, ինչը կարելի է վերականգնել ըստ հին ռուսերեն թարգմանության. црь же имяше Естафиа патрициа соуще от въстока подстратиго (соущи подвоеводоу), иже от Аргоуръ имене словяшесе (4).

[1] Georgius Cedrenus, Historiarum compendium. Ioannis Scylitzae ope ab Immanuele Bekkero, t. II, Bonnae, 1839, p. 263.



այլ ոչ թե *ὁ βασιλεὺς*-ին («թագավորին»), ինչպես նշված է Համարտոլոսի Շարունակողի մոտ: Այս փոփոխությունները հեղինակն արել է գիտակցաբար՝ փառաբանելու համար Արգիրոսի ցեղը, հավանաբար, մի ժամանակաշրջանում, երբ կայսերական գահը զբաղեցնում էր Ռոմանոս III Արգիրոսը (1028-1034)[1]: Դա, իհարկե, չի նշանակում, որ Եվստաթիոսն արժանի չէր գովեստի: Երկու զորավարներին դիտելով իբրև հավասարի՝ Կեդրենոսը մասամբ իրավացի էր: Թվում է, թե արաբական սկզբնաղբյուրները հաստատում են, որ թե՛ մեկը և թե՛ մյուսը աչքի են ընկել արաբների դեմ մղվող պատերազմում: Հիջրայի թվարկության 291 թ. (24-ը նոյեմբերի 903 թ. - 13-ը նոյեմբերի 904 թ.)՝ բյուզանդացիները մտել են Հաղաթի տարածաշրջան: Արաբական նավատորմիղը՝ մի ուխտադրուժի հրամանատարությամբ, որին արաբներն անվանում էին Ղուլամ Զուրակա, իսկ բյուզանդացիները՝ Լևոն Տրիպոլիտացի, ավերածություններ է սփռել մինչև Թեսաղոնիկե, որը գրավել է և կողոպտել[2]: Սիմեոն Լոգոթետեսը գտնում է, որ Լևոն Տրիպոլիտացու արշավանքը տեղի է ունեցել Լևոն VI-ի թագավորության տասնութերորդ տարում (903 թ. մայիս - 904 թ. մայիս), այսպիսով, նույն տարում, երբ բյուզանդական բանակը ներխուժել է Հաղաթի տարածաշրջան[3]: Հիջրայի թվարկության 292 թ. (904-905 թթ.)՝ բյուզանդացիները բռնություններ են գործադրել Տարսոնի, Մարաշի և Մամեստիայի բնակիչների նկատմամբ, իսկ հիջրայի թվարկության 293 թ. (904-905 թթ.)՝ իրենց ավերածությունները ծավալել են մինչ Հալեպի արվարձաններն ընկած տարածաշրջանները:

Սակայն հիջրայի թվարկության 294 թ. (22-ը հոկտեմբերի 906 թ. - 11-ը հոկտեմբերի 907 թ.)՝ արաբական բանակը վրեժ է լուծել: Զորավար Ահմադ իբն Քեյ-Ղալաղը ռազմերթի է դուրս եկել Տարսոնից, մտել բյուզանդական տարածք, այն ավերել ու վերադարձել քառասուն հազար գերիով և մեծ ավարով: Նա ներխուժել է երկրորդ անգամ և հասել Ծամնդավ [Sek̲end?]: Այս արշավանքների ժամանակ սահմանամերձ բերդամրոցների հրամանատար

[1] Նշենք, որ ո՛չ Սիմեոն Լոգոթետեսի և ո՛չ Գեորգիոսի աշխատությունները չեն ընդգրկում Թեոփանեսի Շար[ունակողի]՝ վերոնշյալ հատվածը:

[2] G. Weil, Geschichte des Chalifen. Nach Handschriften, grosstentheils noch unbenutzen Quellen, Bd. III, Mannheim, 1851, S. 531. Արաբներն, անտարակույս, չափազանցնում են պնդելով, որ բյուզանդական բանակում կար հարյուր հազար մարդ և այն կազմված էր տասը խաչից կամ դրոշից՝ որոնցից յուրաքանչյուրն ուներ տասը հազար զինվոր:

[3] Sym., p. 705. Ուխտադրուժի Ղուլամ Զուրակա արաբական անունը հիշեցնում է նրա հակառակորդի անունը, ում հանձնարարված էր պաշտպանել Թեսաղոնիկեն և որն արաբների ձեռքն է ընկել քաղաքի անկումից հետո: Նա ուներ միևնույն՝ Լևոն անունը, ինչ ուխտադրուժը և ըստ Թեոփանեսի Շարունակողի՝ *Κατζιλάκιος* (Theoph. Cont., p. 368), իսկ ըստ Գեորգիոսի՝ *Χατζιλάκιος* մականունները (Georg., p. 863): Արդյո՞ք հարկ է կարդալ *καταζιλάκιος* (կազակզիլակ՝ «փոքր զիլակ»), թե արաբերեն բառի ընթերցվածը ստույգ չէ: Արաբները կարող էին շփոթել երկու Լևոններին՝ ուխտադրուժին և գերուն: Հնարավոր է նաև, որ Ղուլամ Զուրական նշանակում է «նավավար, կապիտան» ([زورق] zürag՝ նավ):

զորավար Անդրոնիկոսը հայցել է խալիֆայի ներումը և իր երկու հարյուր մահմեդական գերիների հետ փախել Բաղդադ: Բյուզանդացիները ձեռնամուխ են եղել նրա հետապնդմանը, սակայն արաբները նրան պաշտպանել են և հույներին վտարել մինչ Իկոնիոն: Արաբական մի ստորաբաժանում [զաղտնի] թափանցել է կայսրության հողերը՝ փնտրելու Անդրոնիկոսի ընտանիքը՝ նրա դղյակում[1]: Անդրոնիկոսի փախուստի պատմությունը՝ իր առույգ տարեքվով, թույլատրում է ձերբազատել նրա կյանքն այս բոլոր առասպելներից, որոնցով լի է այն: Եթե նշանավոր զորավարը փախել է մինչ 907 թ. հոկտեմբեր, դա չէր կարող որևէ առնչություն ունենալ ո՛չ Սամոնասի փախուստի և ո՛չ Հիմերիոսի ռազմածովային արշավանքի հետ: Բյուզանդական ժամանակագիրները Հիմերիոսին են վերագրում ռազմածովային երկու արշավանք. առաջինը, որը տեղի է ունեցել Ս. Թովմայի տոնի օրը, այն է՝ հոկտեմբերի 6-ին, երբ նա հաղթանակ է տարել և երկրորդը, *ὀκτωβρίῳ δὲ μηνί* [«հոկտեմբեր ամսին»], որն ավարտվել է նրա պարտությամբ[2]: Ըստ Սիմեոն Լոգոթետեսի՝ առաջին ճակատամարտը տեղի է ունեցել Լևոն VI-ի թագավորության քսաներեքերորդ տարում (908 թ. հոկտեմբերին), իսկ երկրորդը՝ քսանհինգերորդ տարում (910 թ. հոկտեմբերին): Անդրոնիկոսը պետք է մասնակցած լիներ առաջին ռազմարշավին, սակայն Սամոնասի նյութած դավերի պատճառով նա հրաժարվել է դրանից և երկյուղելով կայսրից՝ գնացել Գաբալա, իսկ այնտեղից անցել արաբների մոտ: Այդուհանդերձ, այս ժամանակաշրջանում Անդրոնիկոսը գտնվում էր արդեն խալիֆայի մոտ և, այսպիսով, այս պատմությունը չի հավաստվում և կասկածելի է դարձնում նման ռազմարշավի գոյության փաստն իսկ: Ավելի քան տարօրինակ է այն ճակատագրական զուգադիպությունը, ըստ որի՝ այս երկու մարտերը կարող էին տեղի ունենալ հոկտեմբերին: Արդյո՞ք առաջին արշավանքը երկրորդի կրկնակը չէ: Արդյո՞ք այն չի հնարվել նախընտրելի հերոսի՝ Անդրոնիկոսի փախուստի պատմությունը դրական երանգներով ներկայացնելու համար: Մենք գիտենք, որ կայսերական նավատորմիղն ընդունակ չէր հաղթանակներ տանելու: Դրունգար Եվստաթիոսը չի համարձակվել դիմակայել ուխտադրուժ Լևոն Տրիպոլիտացուն և նրան փոխարինել է Հիմերիոսը: Վերջինս ևս չի համարձակվել արաբական նավատորմիղի ճանապարհը փակել, որն առաջ է ընթացել մինչ Թեսաղոնիկե: Ի դեպ, դեռևս հավաստի չէ, որ Հիմերիոսն ուղարկվել է արաբների դեմ: Սիմեոն Լոգոթետեսը նրան չի հիշատակում, ինչը խիստ հատկանշական է: Թեոփանեսի

[1] G. Weil, p. 534-535.

[2] Theoph. Cont., p. 372; Georg., p. 867; Sym., p. 710. Երկրորդ արշավանքի մասին տե՛ս Theoph. Cont., p. 376; *ὀκτωβρίῳ δὲ μηνί* = Georg., p. 870; Sym., p. 715 **ἐπὶ ὀκτὼ μῆνας** [«ութ ամսով»] որտեղ ὀκτώ պետք է հասկանալ *ὀκτωβρίῳ*.



Շարունակողը և Գեորգիոս Վանականը նշում են, որ Հիմերիոսն այդ պահին *πρωτασηκρῆτης* էր, այն դեպքում, երբ ըստ Սիմեոն Լոգոթետեսի՝ այդ տիտղոսն ուներ այն Սիմեոնը, որն Իտալիայի զորքերի համար նախասահմանված գումարը փոխանցել է Լևոն Տրիպոլիտացուն՝ Թեսաղոնիկե քաղաքը հրդեհից փրկելու համար: Հետաքրքրական է, որ վերոնշյալ երկու մյուս ժամանակագիրներն այս Սիմեոնին անվանում են *ἀσηκρῆτης*, ավելացնելով, որ նա այնուհետև դարձել է պատրիկ և *πρωτασηκρῆτης*[1]: Ահա մի փորձ, որը հարթում է Հիմերիոսին վերագրվող արշավանքով պայմանավորված հակասությունը, որի արժանահավատությունը կասկածելի է դարձնում այս նույն փորձը: Այն կացությունը, որում այս ժամանակաշրջանում գտնվում էր բյուզանդական նավատորմիղը, թույլ չէր տալիս հույսեր կապել հաղթանակի հնարավորության հետ, ինչն իբրև 908 թ. տեղի ունեցած իրադարձություն վերագրվում է Հիմերիոսին: Հենց նավատորմիղի ողբալի կացությունն է հարկադրել Լևոն VI կայսերը հոգ տանել այն կարգի բերելու համար և 911 թ. Հիմերիոսի հրամանատարությամբ ուղարկել թշնամու դեմ[2]: Նույնիսկ վերանորոգված նավատորմիղը պարտություն է կրել, այնպես որ Ալեքսանդր կայսրը (912-913) Հիմերիոսին ազատել է զբաղեցրած պաշտոնից: Ակնհայտորեն դժվար է ընդունելն իսկ, որ 908 թ. Հիմերիոսը կարող էր լինել ավելի հաջողակ՝ ունենալով մի նավատորմիղ, որն ավելի թույլ էր, քան 911 թ. նավատորմիղը: Ժամանակագիրները վկայում են, որ Հիմերիոսը, երբ 908 թ. նրա վրա է դրվել նավատորմիղի պատասխանատվությունը, լոգոթետես էր: Սակայն զարմանալի է տեղեկանալ, որ նա լոգոթետես էր նաև 911 թ. արշավանքի ժամանակ[3]: Սա նշանակում է, որ երկու արշավանքի փոխարեն տեղի է ունեցել մեկը և որ 908 թ. արշավանքն ուղղակի մտացածին է:

Սամոնասի պատմությունն այնպես, ինչպես ներկայացված է՝ ենթակա է քննադատության: Այն ակնբախորեն ձևափոխված է՝ Դուկասի զործում կայսեր շնորհառուին խոցելու համար: Ըստ Սիմեոն Լոգոթետեսի՝ Սամոնասի փախուստը տեղի է ունեցել Լևոն VI-ի թագավորության տասնիններորդ տարում, այն է՝ 904-905 թվականին: Փախստականին հետապնդելու են ուղարկել հետերիարքոս Վասիլ Կամատերոսին և Գեորգիոս Կրինիտեսին: Հալիս գետն անցնելու ժամանակ նրան ձերբակալել է դրունգար Նիկեփորոս Կալոնասը: Սամոնասը պատճառաբանել է, թե գնում է աղոթելու Սիրիխայի խաչի մոտ (*Σιριχᾶς*): Բայց Կոստանդինը՝ Անդրոնիկոս Դուկա-

[1] Theoph. Cont., p. 367-368; Georg., p. 863; Sym., p. 707.

[2] De cerimoniis Aulae Byzantinae, liber II, 48, p. 651 et sqq.

[3] Theoph. Cont., p. 371, 376-378; Georg., p. 866, 870; Sym., p. 710-715.

սի որդին, նրան բռնել է և ետ բերել մայրաքաղաք[1]: Սակայն, հենց որ Հալիսն անցնում են՝ մտնում են Խարսիանոն: Կոստանդինը ներկայացել է իբրև Խարսիանոնի զորավար և փախստականին ձերբակալել այդ տիտղոսով: Այդուհանդերձ, այդ ժամանակաշրջանում՝ 904-905 թթ., Կոստանդինը գտնվում էր իր հոր՝ Անդրոնիկոսի մոտ, հավանաբար՝ Գաբալայում, որտեղից իր հոր հետ փախչում է Բաղդադ: Երկուսից մեկը. կամ Սամոնասի փախուստը համապատասխանում է ոչ թե հիշատակված, այլ ուրիշ տարեթվի, երբ Կոստանդինն իր փախուստի վերադարձից հետո կարող էր նշանակված լինել զորավար, կամ Կոստանդին Դուկասն այս պատմության հետ բացարձակապես որևէ առնչություն չունի: Առաջին ենթադրությունը կարող է ավելի համապատասխանել այն ամենին, ինչ մենք գիտենք Սամոնասի մասին: 904-905 թթ. Սամոնասը հազիվ էր ձեռք բերել Լևոն VI կայսեր վստահությունը՝ Վասիլ կուբիկուլարիոսի դավադրության մերկացման կապակցությամբ: Նրան ոչինչ չէր դրդում լքելու արքունիքը մի պահի, երբ արդեն ձեռնամուխ էր եղել այնքան հրապուրիչ թվացող կարիերայի: Քանզի նա դեռևս նվազ կարևորություն ունեցող դեմք էր, նրա հնարավոր փախուստը չէր կարող այնպիսի ուշադրություն գրավել, որին իբր արժանացել է: Դասալիքին պատժելու փոխարեն, եթե նա այդպիսին եղել է, ինչո՞ւ պետք է նրա վրա տեղային կայսերական ողորմածությունները: 906 թ. հունվարի 6-ին՝ Աստվածահայտնության օրը, կայսեր եղբոր՝ Ալեքսանդրի հետ Սամոնասն արժանացել է մեծ պատվի՝ երբ մկրտության ավազանից նրանց են հանձնել կայսեր որդուն՝ Կոստանդինին, իսկ 907-908 թթ. նա նշանակվել է պարակիմոմենոսի պաշտոնում, որը թափուր էր մնացել Վասիլ I-ից ի վեր: Սամոնասի փախուստի պատմությունը միտումնավոր է և միտված է փառաբանելու Կոստանդին Դուկասի ճշմարտացիությունը, որը չի կարողացել ստել, չնայած կայսերը խոստացել էր դատավորների առջև կեղծ վկայություն տալ մեղավորի օգտին: Եթե մենք չենք ցանկանում բացասել այս դիպվածն իբրև մտացածին, հարկադրված կլինենք ելակետ ընդունելով Կոստանդինի անունը, դա վերագրել մի ժամանակաշրջանի, երբ Կոստանդինն իրոք Խարսիանոնի զորավարն էր: Ժամանակագիրները չեն զլացել հիշատակել Սամոնասի հոր մայրաքաղաք ժամանելու մասին, ինչպես նշում է Սիմեոն Լոգոթետեսը՝ Լևոնի թագավորության քսանչորսերորդ տարում, այսպիսով՝ 909-910 թվականին: Կուրացած իր որդու փառքով՝ Սիրիացին ցանկանում էր դարձի գալ քրիստոնեության և մնալ մայրաքաղաքում, սակայն Սամոնասը նրան տարհամոզում է և պատրաստակամություն հայտնում, անհրաժեշտության դեպքում, գնալու և նրան միանալու՝ *κάγὼ δὲ, φασὶ,*

[1] Theoph. Cont., p. 368; Sym., p. 708. *Καμινίτζης*՝ *Καλλωνᾶς*-ի փոխարեն: Գեորգիոսի մոտ հանդիպում ենք նույն անվան մեկ այլ տարընթերցման՝ Καμινᾶς (Georg., p. 864):



*εἴπερ δυνηθῶ, τάχιον πρὸς σὲ ἐπανελεύσομαι*[1] [«ես էլ,- ասում է,- երբ կկարողանամ, իսկույն կվերադառնամ քեզ մոտ»]: Անհիմն չէ կարծելու, որ Սամոնասը ջանացել է իրականության վերածել իր խոստումն ու փախչել հոր մոտ: Կոստանդինը նրան խանգարել է և ուղեկցել կայսեր մոտ: Լևոն VI-ի թագավորության քսանհինգերորդ տարում՝ 910-911 թթ., Սամոնասը մեղադրվում է կայսեր հասցեին զրպարտչական գրվածքի անանուն հեղինակ լինելու մեջ, ինչը դարձել է նրա անկման պատճառը: Կայսրը կարգադրել է նրան ձեռնադրել հոգևորական և աքսորել Մարտինակիոսի վանք: Խիստ հավանական է, որ մայրաքաղաքը թողնելու ծրագիրը Սամոնասը հղացել է հենց այս առիթով, սակայն բռնվել և պատժվել է կայսեր կողմից[2]: Կոստանտին Դուկասը հիշատակվում է 913 թ. խռովության առիթով իր՝ սխոլերի դոմեստիկոս լինելու հանգամանքի պատճառով[3]: Իմաստ ունի ընդունել, որ նա այդ պաշտոնը ստացել էր իբրև փոխհատուցում այն ծառայության դիմաց, որը մատուցել է երախտամոռ շնորհառուի հետապնդման ժամանակ:

Մեր ուսումնասիրությունների նպատակը՝ Խարսիանոնում Եվստաթիոսի և Կոստանդինի կառավարման տարեթվի ճշգրտումն էր: Եվստաթիոսը Անատոլիկոնի ենթազորավարի տիտղոսով Կիլիկիայի սահմաններում մասնակցել էր արաբների դեմ մղված ռազմական գործողություններին (903-905 թթ.): Այնուհետև՝ մայրաքաղաքում նա պաշտոնանկ է արվել և նշանակվել վիգլայի դրունգար՝ քիչ անց Խարսիանոնում գտնվող իր տուն աքսորվելու համար: Անդրոնիկոս Դուկասը, որը Սելևկիայի կլեյսուրարխն էր, զբաղեցրել է Եվստաթիոսի տեղը, բայց 906-907 թթ. հոկտեմբերին՝ իր ամբողջ ընտանիքով, ներառյալ Կոստանդին որդին, փախել է արաբների մոտ: Ըստ ժամանակագիրների՝ կայսրը փորձել է նրան վերադարձնել, ինչը հնարավոր է: Սակայն այս կապակցությամբ նրանց շարադրանքն այնքան անհավանական է, որ լուրջ պատմությունը դրանից ոչինչ չի շահում: Հերթական անգամ Սամոնասին այստեղ դարձրել են քավության նոխազ: Մեր սկզբնաղբյուրները չեն հաստատում նաև Անդրոնիկոսին վերագրվող սխրանքները[4]: Կոստանդինը վերադարձել է հոր վախճանից հետո, գերիների փոխանակման ժամանակ, ինչը հաջորդել է Քեյ-Ղալաղի՝ 906-907 թթ. արշավանքին, հավանաբար, 908 թվականին: Նա ուղղակիորեն նշանակվել է Խարսիանոնի զորավար: Ինչ վերաբերում է Եվստաթիոսին, ապա, ինչպես մենք տեսանք, Կոստանդին VII Ծիրանածինի վկայությունը զանազանվում

[1] Theoph. Cont., p. 375; Sym., p. 711, Georg., p. 868.
[2] Theoph. Cont., p. 375-376; Sym., p. 712-713; Georg., p. 869-870.
[3] Theoph. Cont., p. 381; Sym., p. 718; Georg., p. 874.
[4] [Ծանոթագրությունն անընթեռնելի է - թարգմ.]:

է Թեոփանեսի Շարունակողի վկայությունից,: Մեկն ընդունում է, որ նա եղել է Խարսիանոնի զորավար, մյուսը նշում է, որ նա մահացել է ճանապարհին՝ *εἰς τὸ ῞Αραν ... καὶ θάπτεται εἰς τὸ Σπωνὶν τοῦ ῞Αρα τὴν κορύφην* [«դեպի Արան.. և թաղվել Սպունիսում, Արա լեռան գագաթին»]: Արան կամ Արանը և Սպունիսը նույնանում են Անտոնիոսի երթուղու Արանիսին և Եվսպոենային ու գտնվում էին Մելիտենե քաղաքի և Սեբաստիայի միջև ձգվող գծի վրա[1], այն է՝ Խարսիանոնից արևելք: Եվստաթիոսը կարող էր մահկանացուն կնքած լինել Մելիտենեից Սեբաստիա ճանապարհին: Կարելի է ընդունել, որ ծովային ճանապարհով նա գնացել է մինչև Տրապիզոն, իսկ այնուհետև ցանկացել է Մելիտենեով վերադառնալ Խարսիանոն և կամ Խարսիանոն գնալու փոխարեն ապաստանել է Մելիտենեի էմիրի մոտ, ինչը թվում է ավելի հավանական: Եվստաթիոսը Խարսիանոնի զորավար է նշանակվել այն ժամանակ, երբ գնացել է Մելիտենե: Թվում է, թե հարկ է հենց այսպես ընկալել Կոստանդին VII Ծիրանածինի արտահայտությունը. *Εὐστάθιος ὁ τοῦ ᾿Αργυροῦ ἀπὸ τῆς ἐξορίας ἀνακληθεὶς εἰς Χαρσιανὸν στρατηγὸς ἐχωρίσθη*[2] [«Եվստաթիոսն Արգիրոս <տոհմից> ետ կանչվեց աքսորից և զորավարի պաշտոնով ուղարկվեց Խարսիանոն»]: Նշանակման վայր մեկնելիս, նա մահացել է ճանապարհին: Մելիասը, որի ճակատագիրը մեզ հատկապես հետաքրքրում է, այս ժամանակաշրջանում գտնվում էր Մելիտենեում՝ որպես փախստական: Հենց որ Եվստաթիոսին ներում է շնորհվել, Մելիասը և հայ իշխաններ Վասակիոսը, Կրիկորիկոսը, Պազունեսը և Իսմայիլը, Եվստաթիոսի միջնորդությամբ, հավանաբար նույնիսկ նրա հրահրմամբ, կայսրից պահանջել են խրիսովուլով կնքված հավաստիացում՝ բյուզանդական տարածքում հաստատվելու համար: Մելիասը բնութագրվել է իբրև փախստական՝ *πρόσφυγος*, ինչը մատնացույց է անում, որ նախկինում նա բնակվել է կայսրության տարածքում: Մենք տեսանք, որ 892 թ. իր տիրոջ՝ Աշոտ Երկայնաբազուկի վախճանից հետո, նա վերադարձել է իր՝ Հայոց երկիր: Նույն տարում և նույն ճակատամարտում սպանվել է նմանապես հայազգի Կուրտիկեսը, *ὁ ᾿Αρμένιος Κουρτίκης*, Լոկանայի նախկին տերը: Թվում է, թե Մելիասը զավթել է լքված Լոկանան կամ հաստատվել ինչ-որ մի տեղ իր տարածաշրջանում: Նրա փախուստը Մելիտենե ակնհայտորեն առնչվում է բյուզանդական բանակի գործողությանը Հադաթի ուղղությամբ՝ հիջրայի թվարկության 291 թ. (903-904 թթ.): Արդյո՞ք բյուզանդական բանակին նա իր օգնությունն է ցուցաբերել, իսկ այնուհետև՝ հետքերը խառնել, թե վարել է չեզոք և զգույշ քաղաքականություն, որպեսզի

[1] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана. [Политическое состояние на основе нахарарского строя], с. 81 и др.

[2] Constantinus Porphyrogenitus, De Administrando Imperio, p. 227.



կարողանա՝ երկու հակառակորդների միջև պահպանել իր տիրույթները: Ամեն դեպքում, միայն բյուզանդական իշխանությունների թշնամանքը կարող էր նրան դրդել գնալու Մելիտենեի էմիրի մոտ: Եվստաթիոս Արգիրոսը, որն ինքն աքսորական էր, կարեկցել է դժբախտության իր բախտակից գործընկերոջը և հենց բարելավել է իր կացությունը՝ միջնորդել է կայսեր առջև՝ նրան իր իսկ տիրույթներում վերահաստատելու համար: Ճիշտն ասած՝ Մելիասը չի համաձայնվել, քանզի չի վերահաստատվել Լոկանայում: Նրա միջնորդ ընկերները եկել են իբրև Լարիսայի և Սյումպոսիոնի կլեյսուրարխներ՝ շատ ավելի շահավետորեն տեղավորվելու համար, այն դեպքում, երբ Մելիասին նկատի են ունեցել դարձնել տուրմարխոս *εἰς Εὐφρατείαν εἰς τὰ Τρυπία εἰς τὴν ἐρημίαν* [«Եփրատեսիայում գտնվող Տրյուպիա անապատի շրջանում»]: Տեղեկությունը ստույգ չէ: Սակայն ակնհայտ է, որ խոսքը վերաբերում է մի տարածաշրջանի, որը գտնվում է Մելիտենեի հարավում՝ արևելքից՝ Եփրատի և արևմուտքից՝ արաբական բերդամրոցների միջև, այն գծի վրա, որը Տարսոնի լեռնաշղթայով ձգվում էր Մարաշից դեպի Մելիտենե: Հայերն այս տարածաշրջանն անվանում էին Կլավդիոյի գավառ, իսկ սիրիացիները՝ Կլավդիոյի և Գուբբոսի երկրամաս[1]: Կայսրը բավական առատաձեռն գտնվեց Մելիասին զիջելու այն՝ ինչը կայսրությանը չէր պատկանում, որովհետև խիստ կասկածելի է, որ Բյուզանդիան այդ տարածաշրջանի նկատմամբ որևէ իրավունքներ ունենար մի ժամանակաշրջանում, երբ այն Մելիտենեն արաբ էմիրի տիրապետության ներքո էր: Այդ ժամանակից ի վեր, հասկանալի է դառնում, որ Կոստանդին Դուկասի ժամանման պահին (ավելի մեծ բարդություններ պատճառած փախստակի, քանզի նրա փախուստը տեղի էր ունեցել ավելի ծանր հանգամանքներում), որը պատժվելու փոխարեն, Խարսիանոնի զորավարի պարտականություններն էր ստանձնել, Մելիասն իրեն իրավասու է համարել պահանջել Լոկանայի կամ Լիկանդոսի իր ամրոցը և այն գրավել մոտավորապես 908 թ. շրջանում: Նա ամրացրել է այդ բերդամրոցը, ուր և տեղափոխել է իր նստավայրը: Լևոն VI կայսրն այն ճանաչել է իբրև կլեյսուր: Մելիասն իր տիրույթները հասցրել է մինչև Ցամանդոսի լեռը, այնտեղ կառուցել մի բերդամրոց, որը ևս դասվել է կլեյսուրների շարքը: Գործունյա իշխանն իր տիրույթներին կցել է նաև Սյումպոսիոնի բերդամրոցը՝ Իսմայիլ հայի կալվածքը: Սյումպոսիոնի ճա-

[1] Հայերեն մի Ավետարանի հիշատակարանը մեզ տեղեկացնում է, որ այն գրվել է հ[այոց] թ[վարկության] 467 թ. (1018 թ.)՝ «ի գաւառի Կղաւտոյ», տե՛ս «Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի», կազմեց Երվանդ Լալայան, պրակ առաջին, Թիֆլիս, 1915, № 43, էջ 76: Միքայել Ասորին նշում է, որ 1065-1066 թթ. հայերն ամայացրել են Կլավդիոյի և Գուբբոսի գավառները, տե՛ս Chronique de Michel le Syrien, patriarche jacobite d'Antioche (1166-1199), éd. et trad. par J. Chabot, t. III, Paris, 1905, p. 162-164:

կատագիրը, որն Իսմայիլը հազիվ էր վերակառուցել, երբ նրա սպանությունից հետո այն կրկին ավերակների է վերածվել և մնացել անտերունչ, ապացուցում է, որ կայսրությունը հայ իշխաններին ոչ այնքան բարերարություններ էր անում, որքան շահագործում էր նրանց ուժերը՝ սահմանամերձ՝ ավերակների վերածված բերդամրոցները վերակառուցելու և դրանց պաշտպանունակությունն ամրապնդելու համար: Այդ նրա՝ [Մելիասի], ջանքերի շնորհիվ է նախապատրաստվել ապագա մեծ հարձակումը, այդ նա է, ով դարձել է այդ հարձակման ոգեշնչողը, ով բյուզանդական զենքերին պետք է վերադարձներ տարիներ ի վեր դրանց խամրած փայլը: Ի դեպ, առաջին հարվածներն արաբներին հասցրել է անձամբ Մելիասը: Վերջիններս հավաստում են, որ հիջրայի թվարկության 303 թ. (17-ը հուլիսի 915 թ. - 4-ը հուլիսի 916 թ.)՝ հայազգի Մելիասը հարձակվել է Մարաշի վրա և կայսերական բանակն առաջ մղել Հիսնի-Մանսուրի ուղղությամբ՝ մինչ Սամոսատ[1]: Թվում է այս արշավանքի կապակցությամբ է, որ Զոե կայսրուհին, Լիկանդոսը, որը սոսկ կլեյսուր էր, վերածել է զորավարության կամ բանակաթեմի և կլեյսուրարխ Մելիասը դարձել է Լիկանդոսի բանակաթեմի զորավար: Պաշտոնի այդ բարձրացումը ոչինչ չի փոխել թե՛ Մելիասի կացությունում և թե՛ նրա տիրույթում, բացի այն, որ իբրև երրորդ աստիճանի զորավար՝ նա պատրաստվում էր ստանալ քսան լիտր աշխատավարձ՝ հինգ լիտրի փոխարեն, որն ստանում էր իբրև կլեյսուրարխ[2]: Ակնհայտ հաջողությամբ սկսված պատերազմը, ինչի մասին կարելի է դատել ելնելով գերեվարվածների թվից, որոնք հաշվվում են հիսուն հազարի սահմանում (ոչ առանց չափազանցության), ընդհատվել է այն շարժման պատճառով, որին վերստին ձեռնամուխ է եղել Բուլղարիայի Սիմեոն ցարը: Բանակը բուլղարների դեմ է մեկնել սխոլերի դոմեստիկոս Լևոն Փոկասի հրամանատարությամբ 917 թվականին: Իրենց զորքերով դրան մասնակցած բանակաթեմերի զորավարների կողքին է եղել նաև հայերին առաջնորդած Մելիասը, *Μελίας μετὰ τῶν 'Αρμενίων* [«Մելիասը հայերի հետ»]: Արշավանքն ավարտվել է բյուզանդական բանակի պարտությամբ, որը տանուլ է տվել երկու մեծ ճակատամարտ, մեկն օգոստոսի 20-ին՝ ինդիկտիոնի V-ին (917 թ.)՝ Ախելոս գետի մոտ, մյուսը՝ Կատասիրտայում[3]: Մելիասը վերադարձել է իր Լիկանդոսը: Ռոմանոս I Լեկապենոսը (919-944) հաղթել է իր և Փոկասի միջև գահի համար սկիզբ առած պայքարում և 919 թ. դեկտեմբերի 17-ին հռչակվել կայսր: Հովհաննես Կուրկուասը Ռոմանոս I Լեկապենոսի կողմնակիցների թվում էր և նրա հաղթանակի պահին վիգլայի դրունգար էր: Քիչ անց՝ 921 թ., նա նշանակվել է սխոլերի դոմեստիկոս և ուղարկվել Արևելք: Ըստ Ասողիկի՝ Ռոմանոս I Լեկապենոսի թագավորության տասներորդ տարում դոմեստիկոսը պաշարել է Դվին քաղաքը, սակայն չի կարողացել այն գրավել: Կոստանդին VII Ծիրանածինն այդ արշավանքը վերագրում է «զորավար Հովհաննես Կուրկուասին»[1]:

[1] G. Weil, op. cit., Bd. II, Mannheim, 1848, p. 634.

[2] De cerimoniis Aulae Byzantinae, liber II, 50, p. 697. *ὁ στρατηγὸς Λικανδοῦ, ὡς ὢν τότε κλεισουράρχης λλ. ε'* [Լիկանդոսի զորավար, որն այն ժամանակ կլեյսուրարխոս էր հինգ լիտր <աշխատավարձով>]:

[3] Այս ճակատամարտում սպանվել է, ի դեպ, Նիկողայոսը, որին Թեոփանեսի Շարունակողն ու Գեորգիոսը ներկայացնում են իբրև Դուկասի որդի, այն դեպքում, երբ Սիմեոն Լոգոթետեսը գտնում է, որ նա եղել է Լևոն Փոկասի որդին: Թեոփանեսի Շար[ունակողը] (էջ 390) նշում է. *ἐξῆλθε Λέων ὁ δομεστικὸς τῶν σχολῶν καὶ 'Ιωάννης ὁ στρατιάρχης καὶ Νικόλαος ὁ υἱὸς τοῦ Δουκός* [«դուրս էր եկել Լևոնը, սխոլերի դոմեստիկոսը և Հովհաննես զորագլուխը (ստրատիարքոսը) և Նիկողայոսը Դուկասի որդին»] (տե՛ս նաև Georg., p. 882-883): Սակայն Սիմ[եոն Լոգոթետեսը] (էջ 725) նշում է. *ἐξῆλθε Λέων ὁ δοὺξ τῶν σχολῶν καὶ Νικόλαος ὁ υἱὸς αὐτοῦ καὶ 'Ιωάννης ὁ ἑταιρειάρχης* [«դուրս է եկել Լևոնը, սխոլերի առաջնորդը (դուքսը) և Նիկողայոսը, նրա որդին, և Հովհաննես հետերիարքոսը»]: Տարբերությունը բացատրվում է δούξ բառի առաջ բերած շփոթությամբ, որը նախնական սկզբնաղբյուրում օգտագործվել է իբրև դոմեստիկոս՝ ինչպես Սիմեոն Լոգոթետեսի մոտ: Սակայն երկու մյուս ժամանակագիրներն այն ընդունել են իբրև Դուկասի ընտանիքի անվանում և, հետևաբար, աղավաղել բնագիրը: Հայտնի է, որ Կոստանդին Դուկասի ամբողջ ընտանիքը 913 թ. նրա խռովության ժամանակ ոչնչացվել է: Նա ունեցել է մի որդի, որի անունը եղել է Գրեգորաս Իվերիցես՝ իր մորեղբոր անվամբ և մի եղբորորդի՝ Միքայել անվամբ: Նրանք սպանվել են. *ἀνῃρέθη δὲ καὶ Γρηγορᾶς ὁ υἱὸς τοῦ Δουκὸς καὶ Μιχαὴλ ὁ ἐξάδελφος αὐτοῦ* [«կործանվել են և՛ Գրիգորասը՝ Դուկասի որդին, և՛ Միքայելը՝ նրա եղբորորդին»] (Theoph. Cont., p. 383; Sym., p. 718-719; Georg., p. 876): Կոստանդինի կինը՝ Գրեգորաս Իվերիցեսի դուստրը, ետ է ուղարկվել Պափլագոնիայում գտնվող իր հայրական տուն (Theoph. Cont., p. 385; Georg., p. 8[**]; Sym., p. 721): Նա որևէ տեղ չի հիշատակում Կոստանդինի երկրորդ որդու մասին: Հավաստի է, այսպիսով, որ Սիմեոն Լոգոթետեսի տեղեկությունը նախընտրելի է, և այս Նիկողայոսը չի կարող լինել կայսր Կոստանդին Դուկասի (1059-1067) նախահայրը, ինչպես կարծում են որոշ ուսումնասիրողներ:

[1] Կոստանդին Դուկասից հետո, որը 913 թ. խռովության ժամանակ եղել է սխոլերի դոմեստիկոս (Theoph. Cont., p. 381; Sym., p. 718; Georg., p. 874), Լևոն Փոկասը ստանձնել է դոմեստիկոսի պաշտոնը (Theoph. Cont., p. 388; Sym., p. 723; Georg., p. 881): 917 թ. անհաջող արշավանքը պատրվակ է ծառայել նրան պաշտոնանկ անելու համար: Իրական պատճառն ակնհայտորեն Ռոմանոս I Լեկապենոսի մղած գաղտնի պայքարն էր իր թշնամու՝ Լևոն Փոկասի դեմ: Նրա փոխարեն նշանակվում է Հովհաննես Գարիդասը (Theoph. Cont., p. 392; Sym., p. 726; Georg., p. 885): Չնայած այս վկայությանը, նույն ժամանակագիրները գտնում են, որ *τῶν δὲ Βουλγάρων πάλιν ἐξελασάντων μεχρὶ Κατασύρτων μετὰ τὴν τοῦ δομεστίκου 'Αδραλέστου τελευτὴν, προεβλήθη Πόθος ὁ τοῦ 'Αργυροῦ, ἀνὴρ κάλλιστος καὶ ἐμπειρότατος, δομέστικος τῶν σχολῶν* [«երբ բուլղարները կրկին հասան մինչև Կատասյուրտայ՝ դոմեստիկոս Ադրալեստոսի մահից հետո, սխոլերի դոմեստիկոս նշանակվեց Պոթոսը՝ Արգիրոս տոհմից, այր լավագույն և վերին աստիճանի փորձառու»] (Theoph. Cont., p. 400): Միևնույն արտահայտությունը տեղ է գտել Գեորգիոսի երկում (Georg., p. 892)՝ բացի *ἀνὴρ κάλλιστος καὶ ἐμπειρότατος* [«այր լավագույն և վերին աստիճանի փորձառու»] բառերից: Սիմեոն Լոգոթետեսը (Sym., p. 732) առաջարկում է. *μετὰ τὴν τοῦ Δουκὸς* (հմմ՝ *δουκὸς*) *'Αδραλέστου τελευτὴν* [Դուկաս (հմմ՝ «դուքս») Ադրալեստոսի մահից հետո]: Այստեղ ևս Սիմեոն Լոգոթետեսը դոմեստիկոսի փոխարեն օգտագործում է *δούξ* բառը: Որևէ կասկած չի կարող լինել, որ խոսքը վերաբերում է Լևոն Փոկասին: Ժամանակագիրները մոռացել են, որ Պոթոսը հաջորդել է ոչ թե Փոկասին, այլ Գարիդասին: Նրանք նաև սխալվել են այս Արգիրոսի անվան հարցում: Կոստանդին VII Ծիրանածինը մեզ տեղեկացնում է, որ դոմեստիկոսի

Մելիասն իր զորքերով շարունակում էր մնալ Կուրկուասի կողքին: Նրանք համարձակորեն սկզբնավորել են այս փառապանծ դարաշրջանը, որն այնուհետև նշանավորվել է Նիկիֆոր Փոկասի և Հովհաննես I Չմշկիկի (969-976) արշավանքներով: 927 թ. Հովհաննես Կուրկուասն ու Մելիասը գրավել են Մելիտենեն և մտել Հայաստան՝ Արածանի (Արսանիաս) գետի հովիտ: Հաջորդ տարի Խլաթ, Բիթլիս, Նփրկերտ, Արզն և նույնիսկ Ամիդ քաղաքներն ընկել են նրանց տիրապետության տակ: Այն ժամանակ, երբ արաբները ջանում էին վերագրավել այս քաղաքները, 930 թ. Մելիասն իր զորքերն առաջ է մղել մինչ Սամոսատ: Բախտը փոփոխական էր, իսկ Կուրկուասի ու Մելիասի հակառակորդները՝ Համդանյան զորավարները, նույնքան քաջարի էին, որքան նրանք: 931 թ. Կուրկուասն ու Մելիասը կորցրել են իրենց նվաճած բոլոր տարածքները, սակայն 934 թ. վերագրավել են Մելիտենեն և Սամոսատը: Այդ նույն տարում Մելիասը զոհվել է: Անտարակույս, նրա բանակաթեմ Լիկանդոսը նրանից ավելի երկար է գոյատևել: Մելիասի ստացած կայսերական խրիսովուլը ոչ այլ ինչ էր, եթե ոչ ինվեստիտուրայի տեսակ՝ երաշխավորելու համար նրա *ժառանգական* իրավունքը նվաճված կամ նվաճվելիք տարածքի նկատմամբ: Այսպիսով, բնական է, որ Մելիասի պաշտոնը նախասահմանվել է նրա ընտանիքի համար (5):

Երկրորդ Մելիասը քաջ հայտնի է Հովհաննես I Չմշկիկի գահակալության օրոք: Նա ստանձնել էր սխոլերի դոմեստիկոսի պարտականությունները և կայսեր հրամանով բյուզանդական բանակն առաջնորդել դեպի արաբական տարածքներ, կողոպտել Վերին Միջագետքը, գրավել բազմաթիվ քաղաքներ, սակայն 973 թ. Ամիդի պարիսպների տակ ընկել թշնամու ձեռքն ու կյանքին հրաժեշտ տվել գերության մեջ՝ արաբների մոտ[1]:

Ոմն Մելիասի անունը կարելի է կարդալ մի կնիքի վրա, որտեղ դրոշմված է հետևյալ արձանագրությունը.

---

պաշտոնը հանձնարարվել է Լևոն Արգիրոսին, այն է՝ Պոթոսի եղբորը, և ոչ թե Պոթոսին (**Constantinus Porphyrogenitus**, De administrando Imperio, p. 228): Կոստանդին VII Ծիրանածինի գահակալության վերջում՝ 958 թ., Պոթոսը դեռևս սոսկ պատրիկ էր և էքսկուբիտորների դոմեստիկոս՝ *τὸν πατρίκιον καὶ δομέστικον τῶν 'Εξκουβίτων Πόθον τὸν 'Αργυρόν* (**Theoph**. **Cont**., p. 462-463; **Sym**., p. 756): Լևոնն այդ բարձր պաշտոնին արժանացել է միայն Ռոմանոս I Լեկապենոսի հետ իր դաշինքի համար, որի դուստր Ագաթեն ամուսնացել էր Լևոնի որդու՝ Ռոմանոսի հետ (**Theoph**. **Cont**., p. 399), այլ ոչ թե Լևոնի եղբոր հետ, ինչպես նշում է Թեոփանեսի Շարունակողը, որի երկում «Ռոմանոս»-ի փոխարեն կարդում ենք «Պոթոս» (**Theoph**. **Cont**., p. 374): Անհաջող արշավանքից հետո, որ Լևոնը ղեկավարում էր իր եղբոր՝ Պոթոսի հետ մեկտեղ, նա հարկադրված թողել է դոմեստիկոսի պաշտոնը և այն զիջել Հովհաննես Կուրկուասին: Իբրև այդպիսին՝ վերջինն ուղարկվել է ապստամբ հայ իշխաններ Տաճատի և Վարդաս Վոյիլասի դեմ (**Theoph**. **Cont**., p. 404; **Sym**., p. 734; **Georg**., p. 896):

[1] **В. Р. Розен**, Император Василий Болгаробойца. Извлечения из летописи Яхьи Антиохийского.— «Записки Императорской академии наук», т. 44, СПб., 1883, примечание 143, с. 184.



*Γεώρ(γιος) ὁ (πρωτο)σπαθ(άριος) βέστ(ης) στρατ(ηγὸς)*
*Μαμίστρ(ας), 'Αναβάρζ(ου) Τζαμαν(δοῦ) ὁ Μελίηας*[1].
[«Գեորգիոս պրոտոսպաթարիոս վեստես ստրատեգոս
Մամիստրայի, Անավարզայի, Ցամանդոսի՝ Մելիաս»:]

Խիստ ուշագրավ է, որ Լիկանդոսը տեղ չի զբաղեցնում դրա հիմնադրից սերող Մելիասին ենթակա տարածաշրջանների թվում: Բայց ահա մեկ այլ կնիք, որի սեփականատերը Մելիասի ընտանիքից չէ և որտեղ Լիկանդոսը հիշատակված է Մելիտենեի հետ մեկտեղ.

*Βασιλ(είῳ) βέστ(ῃ) κρίτ(ῃ) καὶ κατεπάνῳ*
*Μελιτ(ήνης) Λικανδ(οῦ) τῷ Μαχητ(α)ρᾷ*[2].
[«Վասիլ վեստեսին, դատավորին և կատեպանին
Մելիտենեի, Լիկանդոսի՝ Մախետարասին (իմա՝ Մխիթարին)»:]

Այս երկու կնիքին ի տես, հարկադրված ենք ընդունել, որ ինչ-որ մի ժամանակաշրջանում Լիկանդոսի բանակաթեմը կերպարանափոխվել է. Լիկանդոսի բուն մասը կցվել է Մելիտենեին և դրվել կատեպանի հրամանատարության ներքո, այն դեպքում, երբ մյուս՝ Ցամանդոսի մասը՝ Մոպսուեստիայի և Անազարբայի տարածաշրջանների հետ կազմավորել է նոր զորավարություն: Այս փոփոխության տարեթիվը ճշգրտվում է Մոպսուեստիա և Անազարբա քաղաքների գրավումով: Կեդրենոսն այդ վերագրում է 924 թվականին: Ըստ Ասողիկի՝ որի տեղեկությունն ավելի ճշգրիտ է, Անազարբայի գրավումը տեղի է ունեցել այն նույն տարում, երբ կայսր Ռոմանոս II-ը (959-963) մահացել է, այն է՝ 963 թ., իսկ Մոպսուեստիայի գրավումը՝ 964 թվականին[3]: Պրոտոսպաթար Գեորգիոս Մելիասը, թվում է, թե այս նոր զորավարության առաջին հրամանատարն է, եթե այդ մասին դատենք ելնելով Չաուշի ժայռերի վրա գտնվող եկեղեցու որմնանկարներից և արձանագրություններից[4]: Այնտեղ որմնանկարների մի խումբ ներկայացնում է Նիկեփորոս [II] Փոկաս կայսերը (963-969), նրա կնոջը՝ Թեոփանո կայսրուհուն,

---

[1] **G. Schlumberger**, La Sigillographie de l'empire byzantin, Paris, 1884, p. 274.

[2] Ibid., p. 282.

[3] **Georgius Cedrenus**, p. 361. *μηνὶ 'Ιουλίῳ ἰνδικτιῶνος ζ'* [«ինդիկտիոնի վեցերորդ տարվա հուլիս ամսին»]: Կեդրենոսը նշում է, որ Տարսոնը և Ադանան ևս նվաճվել են: Ասողիկը նշում է Տարսոնի գրավման մասին 965 թվականին (տե՛ս **Ասողիկ**, էջ 183): Ըստ Իբն Հաուկալի՝ Տարսոնը դեռևս սահմանական էր 978 թ., այն դեպքում, երբ Յակուտը (XIII դ.) հաստատում է Ասողիկի վկայությունը (տե՛ս **G. Le Strange**, The Lands of the Eastern Caliphate. Mesopotamia, Persia and Central Asia from the Moslem conquest to the time of Timur, Cambridge, 1932, p. 132-133): Եթե Տարսոնն իրոք Բյուզանդիային է անցել 965 թ., մեր կնիքը պետք է թվագրված լինի 964 թվականով:

[4] **G. de Jerphanion**, Une nouvelle province de l'art byzantin. Les églises rupestres de Cappadoce, t. 2, Paris, 1932, p. 523.

խորը՝ Վարդասին և եղբորը՝ Լևոնին: Կարելի է տեսնել նաև Սեբաստիայի քառասուն նահատակների երկարաձիգ շարանը, որը եզրափակում են նիզակն ուսին, սպիտակ ժապավենը վզին՝ դեպի աջ գնացող երկու հեծյալ: Առաջինի մոտ կարելի է կարդալ հետևյալ արձանագրությունը. *Κυριε βοηθει τον δουλον σον Μεληαν μαγιστρον* [«Տե՛ր, օգնի՛ր քո ծառա՝ Մելիաս մագիստրոսին»]:

Երկրորդից տեսանելի են միայն մի քանի տառեր, որոնք գտնվում են գլխի երկու կողմում.

*ω μ*
*ση τη*

Իբրև Նիկեփորոս II Փոկաս կայսեր ժամանակակից՝ զորավար Մելիասը չի կարող լինել Լիկանդոսի նշանավոր հիմնադիրը, որն սպանվել է 934 թվականին: Նա պետք է, որ լինի կնիքի սեփականատեր Գեորգիոս Մելիասը, միակը, որը, մեր ունեցած տեղեկությունների սահմաններում, կրում է այս անունը բացի Լիկանդոսի հիմնադրից: Սակայն կա մի դժվարություն, որը բարդություն է հարուցում այս նույնացման համար: Գեորգիոս Մելիասն իբրև պրոտոսպաթար հիշատակված է 964 թ. հիմնադրված զորավարության հրամանատար եղած ժամանակ, այն դեպքում, երբ Չաուշի արձանագրության Մելիասը զորավար է՝ որպիսին եղել է առաջին Մելիասը: Ի դեպ, կարելի է ընդունել, որ երկու հեծյալները ներկայացնում են հորն ու որդուն, և որ նրանք ոչ այլ ոք են, եթե ոչ առաջին Մելիասը և Գեորգիոսը, հավանաբար, նրա որդին: Մենք համոզված չենք, որ հեծյալները կարող էին նկարված լինել միևնույն տարեթվին, ինչ Փոկասի կայսերական ընտանիքը: Ակնհայտ է, որ չի կարելի նկարներից ելնելով դատել այն մասին, թե ըստ կատարողական արվեստի կարո՞ղ է արդյոք երկու խմբի միջև այդտեղ զանազանություն լինել: Ինչ վերաբերում է արձանագրություններին, տարբերությունը միանգամայն ակնհայտ է: Նիկեփորի արձանագրության տառերը և ուղղագրությունը, որոնք մեծ չափով զիջում են Մելիասի տառերին և ուղղագրությանը, ի հայտ են բերում այլ ձեռագիր: Մելիասի արձանագրությունը կոչ է, որի հեղինակն անձամբ ինքն է *(τὸν σὸν δοῦλον* [քո ծառա]), այն դեպքում, երբ Նիկեփորի արձանագրությունը նրա նախաձեռնությունից չի բխում (*τους αιψεβεις ημον βασιλης* [աղավաղված՝ *τοὺς εὐσεβεῖς ἡμῶν βασιλεῖς*՝ մեր բարեպաշտ թագավորներին (հայց. հոլով)]): Այս հանգամանքը ենթադրել է տալիս, որ հենց առաջին Մելիասն է կենդանության օրոք, այն է՝ մինչ 934 թ. փորագրել տվել իր՝ իբրև եկեղեցու նվիրատուի կամ նույնիսկ հիմնադրի և որդու ու ժառանգորդի նկարը, այն դեպքում, երբ կայսերական խմբի նկար-



ները կարող էին փորագրվել ավելի ուշ՝ 964 թ., նույն վանքի տարածաշրջան՝ իր երեխաների հետ կայսրուհու կատարած այցելության առիթով: Ամեն դեպքում, երկու հեծյալներից մեկն, անտարակույս, Գեորգիոս Մելիասն է՝ Ցամանդոսի, Մոպսուեստիայի և Անազարբայի զորավարը: Նա հաջորդել է իր հորը, նրա՝ Լիկանդոսի բանակաթեմում և այն կառավարել 934-963 թվականներին: 964 թ. Կիլիկիայի մի մասի նվաճման հետևանքով՝ նրա բանակաթեմը ձևափոխվել է, և նա նշանակվել է Ցամանդոսին միացած այս մասի ղեկավարը կամ զորավարը: Հովհաննես I Չմշկիկը, որը Նիկեփորոսի գահակալության օրոք սխոլերի դոմեստիկոս էր, գահ բարձրանալով՝ անմիջապես այս պաշտոնը վստահել է Մելիասին: Իբրև այդպիսին է նա զոհվել 973 թվականին:

Գոյություն ունեն Լիկանդոսի անունը կրող երկու այլ կնիքներ. մեկը պատկանում է վեստեսի դատավոր բնութագրված ոմն Պետրոսի, մյուսը՝ Լիկանդոսի բանակաթեմի պրոտոնոտար կոչված ոմն Դավթի[1]: Այն ամենից, ինչ հենց նոր ասացինք, հետևում է, որ այս կնիքները պետք է վերաբերեն X դարի առաջին կեսին՝ նախքան 964 թվականը: Լեգենդով հայտնի է նաև մեկ այլ կնիք.

*Ανθιμ(ιω) β(ασιλικω) σπαθ(αρο)κανδ(ι)δ(ατω) επι τ(ων) οικιακ(ων) κ(αι) (πρωτο)νοτ(αριω) Λικανδ(ου)*[2]. [Անթիմիոսին, թագավորական սպաթարոկանդիդատին՝ սեփական [տիրույթում] և Լիկանդոսի պրոտոնոտարին:]

Այս կնիքի սեփականատերը կայսերական տիրույթների սպաթարոկանդիդատ է և միաժամանակ Լիկանդոսի պրոտոնոտար: *οἰκιακά* բառը հարկ է վերագրել Մելիտենեի տարածաշրջանին, որը Հովհաննես Կուրկուասը նվաճել էր 927 թ. և հայտարարել *κουρατωρία*՝ կայսերական տիրույթ[3]: Այսպիսով, Անթեմիոսը, որն այս տիրույթի կառավարիչն էր, միաժամանակ ստացել էր Լիկանդոսի հարևան բանակաթեմում հարկերը գանձելու հանձնարարություն: Հետևաբար՝ նրա կնիքը վերաբերում է 934-964 թվականներին: 964 թ. Մելիտենեին միացած Լիկանդոսն ընդգրկվել է կատեպանության մեջ, որի առաջին կառավարիչը, թվում է, եղել է Վասիլ Մխիթարը: Մխիթարի ընտանիքը (6) սերում էր հայկական Հանձիթ տարածաշրջանից և հայտնի էր Նիկեփորոս II Փոկասի ու Հովհաննես I Չմշկիկի գահակալությունից ի վեր: Ըստ Մատթեոս Ուռհայեցու՝ Հովհաննես I Չմշկիկը գահաժառանգորդներին՝ Վասիլին և Կոստանդինին ուղարկել էր Մխիթարի մոր մոտ Հանձիթ, որպեսզի նրանք ապաստանեն վանքում՝ նրանց մոր՝

[1] G. Schlumberger, p. 282.
[2] Ibid.
[3] Theoph. Cont., p. 416-417; Sym., p. 741; Georg., p. 908.

կայսրուհու կողմից սպառնացող վտանգից փրկվելու համար: Սույն պատմությունը, որն առնչվում է, ինչպես մենք ցույց կտանք այլ տեղում (7), 964 թ. կայսեր զավակների բնակությանը Դրիզիոն (Drizion) վանքում: Այս փաստը վկայում է, այնուամենայնիվ, որ բյուզանդացիների համար Մխիթարը նշանավոր ավատատեր էր, և որ նրանք կարող էին, հետևաբար, նոր կազմավորված կատեպանությունը վստահել նրա ընտանիքի անդամներից որևէ մեկին, հավանաբար, նրա որդի Վասիլին: Ըստ այդմ՝ Վասիլի կառավարչության և կնիքի տարեթիվը կարելի է սահմանել 964-987 թթ. միջև՝ եթե հավատ ընծայենք Յահյա Անտիոքացու հաղորդած տեղեկությանը, ըստ որի՝ Բաղդադից ժամանելուց ի վեր Սկլերոսը տեսել է, որ Մելիտենեն գտնվում է հայազգի Կուլեյբայի կառավարչության ներքո[1]:

Ի դեպ, թվում է, թե Վասիլը եղել է Լիկանդոսի և Մելիտենեի՝ նոր միավորման առաջին և վերջին կատեպանը, ինչպես և Մելիասն է եղել Ցամանդոսի, Մոպսուեստիայի և Անազարբայի կատեպանը: Ընդհանուր առմամբ, սահմանամերձ բանակաթեմերի սահմանների կայունությունը երաշխավորված չէր: Ստիպված լինելով դիմակայել թշնամիների զինաբախումներին՝ դրանց տարածքները հաճախ մերթ աճում էին, մերթ նվազում: Տարոնի և Մելիտենեի միջանկյալ տարածքում գտնվող քաղաքները հաճախ ձեռքից ձեռք էին անցնում: Քաղաքը գրավելը բավական դյուրին էր, իսկ պահելը՝ բավական դժվարին: Ուստի՝ բազմիցս է հաղորդվում այս կամ այն քաղաքի գրավման մասին, սակայն մենք չենք տեղեկանում այդ նույն ժամանակաշրջանում թշնամու կողմից դրանց վերագրավմանը: Տասնմեկերորդ դարից ի վեր բանակաթեմերի կազմավորումը ենթադրում էր տրոհում, որն ավարտվել է նրանով, որ արևելյան սահմաններում այն իր տեղը զիջել է այլ համակարգի. բերդամրոցի, քաղաքի կամ տարածաշրջանի տիրակալ դառնալը զուգորդվում էր դրանք դուքսի կամ կատեպանի հրամանատարության ներքո դնելուն: Միաժամանակ կայսրությունը շարունակում էր իր կործանարար քաղաքականությունը, որը միտված էր հայ իշխաններին հարկադրելու լքել իրենց բնօրրանը և փոխարենը կալվածքներ ստանալու Եփրատից արևմուտք: Մի կողմից՝ Եփրատի, իսկ մյուս կողմից՝ Սեբաստիայից Տարոն ձգվող շղթայի միջև ընդգրկված ընդարձակ տարածքը քիչ անց ծածկվել է հայկական [իշխանական] հարստությունների ցանցով: Նույն տասնմեկերորդ դարի վերջից նրանք են հող նախապատրաստել Կիլիկիայում հայկական պետության ստեղծման համար: Հայոց եկեղեցու դիրքորոշումը թույլ չի տվել տեղափոխված իշխաններին և բնակչությանը ձուլվել բյուզանդացիներին՝ դառնալ հայ-հոռոմներ (ինչպես այդ տեղի էր ունենում

[1] Յահյան նրան անվանում է [անընթեռնելի]:



մինչ այդ), հանգամանք, որը միշտ հետևել է տարագիրներին: Այս ժամանակաշրջանում ազգությունը հավաստող հայտանիշը կրոնն էր, դավանանքը, որը հաշվի էր առնվում ավելի, քան լեզուն: Սկսած Մելիասի ժամանակներից՝ բյուզանդական բանակը բազմիցս առաջ էր ընթացել Մելիտենեից դեպի Խլաթ, Վանա լճի ափերը: Եփրատի երկու կողմում գտնվող երկրամասերի միջև հաղորդակցությունը դառնում էր դյուրին: Հայ հոգևորականությունը հնարավորություն ուներ անխոչընդոտ մուտք գործել Մելիասի վերագրաված տարածաշրջան: Տարոնի վանականներից մեկը՝ Մովսեսը, նախաձեռնություն ունեցող մի մարդ, գնացել է Լիկանդոս և այնտեղ կառուցել մի վանք. «Շինեցաւ վանքն բարեզարդ կարգադրութեամբ, բազմութեամբ եղբարց, բազմապայծառ, բանական իմաստնովք: Մովսէս այրն Աստուծոյ, որ ամենայն արևմտեան աշխարհին պատճառ բարեաց եղև՝ ի բազմացուցանել զդասս կրօնավորաց. և իբրև աւանդապահ կրօնիցս մեր եղեալ՝ բաւեաց մինչև յաւուրս մեր»: Մովսեսի վանքը հիմնադրվել է «ի Լիկանտիոն աշխարհին, ի Նահրնեար տեղիսն, ի Կարբերդ գավառին»[1]: Այս ճշգրտումները վկայում են, որ պատմիչը, որին մենք պարտական ենք դրանց համար, քաջատեղյակ է Լիկանդոսում Մովսեսի գործունեությանը: X դարը նշանավորում է նոր առաջընթաց Հայաստանում վանական կյանքի և հետևաբար՝ մտավոր կյանքի պատմության մեջ, քանզի այս վանքերը գրեթե բոլորը բացառիկ կրթամշակութային կենտրոններ էին: Հայոց թագավորներ Աբասի (929-953), Աշոտ III-ի (953-977) և Սմբատ II-ի (977-989) գահակալության օրոք Հայաստանը թևակոխել է խաղաղության և բարգավաճման ժամանակաշրջան, մասնավորապես, Բագրատունիների թագավորության սահմաններում: Իրադարձությունների ժամանակակից պատմիչ Ասողիկը թողել է այն վանքերի նկարագրությունը, որոնք այդ ժամանակաշրջանում բարգավաճում էին, ինչպես նաև ամենահռչակավոր հանրագիտակների անունները: Բյուզանդիայից վտարված հայ վանականները նշանակալից մասնակցություն են ունեցել այս շարժմանը: Հանդուրժողությունը քրիստոնեական մեծ կայսրության առաքինություններից չէր: X դարից ի վեր նա սկսում է հալածել բոլոր այլադավաններին և առաջին հերթին՝ հայերին: Նրանց նկատմամբ գործադրվող բռնությունն ընդունել է այնպիսի ձևեր, որոնք ամենևին պատիվ չէին բերում խելամիտ քաղաքականությանը: Հեռու լինելով իր նպատակին հասնելուց՝ այն, ընդհակառակը, հրահրել է վճռական հակազդեցություն: Իր իրավունքները, իր և իր ժողովրդի գոյությունը պաշտպանելու համար՝ Հայոց եկեղեցին զինվել է: Կայսրության հռչակած պայքարը՝ իր իսկ համար ունեցել է կործանարար հետևանքներ: Այն հայե-

[1] Ասողիկ, էջ 175:

րին խոտորելու էր և վանելու կայսրությունից, դրդելու նրանց կենտրոնանալ Տարոնում անկախության դրոշը պարզելու գաղափարի վրա: Ուստի՝ կայսրությունը միայն ցամաքեցրել է դարեր շարունակ իր զինվորական փառքն ապահովող աղբյուրը:

Հայոց եկեղեցու հայրապետները՝ Անանիա Ա Մոկացին (943-968) և Խաչիկ Ա Արշարունեցին (972-991) հոգացել են բնակչության հոգևոր կարիքները՝ բնակչություն, որին կտրել էին իր հողից՝ կայսրության տարածքում վերաբնակեցնելու համար և ջանում էին նաև նրան անջատել Հայոց եկեղեցուց: Գլխավոր քաղաքներում՝ Սեբաստիայում, Լարիսայում, Տարսոնում, Լիկանդոսում, Անտիոքում նրանք հիմնադրել են հայկական թեմեր[1]: Անտարակույս, հույն հոգևորականությունը չէր կարող ողջունել Հայոց եկեղեցու այս ձեռնարկումները: Նա ավելի է շեշտել իր թշնամանքը, որն արտահայտվել է գրավոր գրոհների, բանավեճերի տեսքով: Կաթողիկոս Խաչիկ Ա Արշարունեցու երկու նամակ-պատասխանը՝ հղված համապատասխանաբար՝ Սեբաստիայի և Մելիտենեի մետրոպոլիտներին[2], հստակ պատկերացում են տալիս այն ժամանակ երկրի հոգևոր կյանքում տիրող անողոքության, անհաշտելիության մասին: Անհարկի է կասկածի ենթարկելն իսկ կրոնական այն անկեղծությունը, որով վիճաբանող կողմերը պաշտպանում էին իրենց դավանանքը: Սակայն չի կարելի նաև քողարկել, որ իրեն զգալ էր տալիս հատկապես ազգային զգացողությունը, որը գործում էր և պայքարում այդ ձևով և նշանավորում, այսպիսով, շրջադարձ հայ-բյուզանդական հարաբերություններում:

[1] Առաքել, էջ 202, 258: Այստեղ (էջ 258) «Սուլնդայ» տեղանունը պետք է կարդալ «Լուկնդայ», ինչպես ակնհայտ է դառնում ըստ «Լուլընդայ» տարընթերցումից:

[2] Նույն տեղում, էջ 202-243, հմմտ. «Գիրք թղթոց», էջ 302:



# ԱԿՆԱՐԿՆԵՐ [ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ] ԱՐԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՐՔԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

## I

### ԲԱՑԹՈՂՈՒՄՆԵՐԻ ՀԱՐՑԸ

Մի քանի տարի առաջ Ա. Վոգտի աշխատասիրությամբ լույս տեսած «Բյուզանդական արքունիքի արարողությունների գրքի» քննական հրատարակության առաջին հատորը պարունակում է Կոստանդին Ծիրանածնի հռչակավոր աշխատության առաջին 37 գլուխները (1):

Այդ հատորի (պատկառելի ծանոթագրություններով ուղեկցվող վերանայված բնագիր) գիտական արժեքն անշուշտ կճանաչվի բոլոր բյուզանդագետների կողմից: Ծանոթագրություններում դրվել են բազմաթիվ հարցեր և քննարկվել ամենայն խորիմացությամբ: Գիտական հրատարակիչը հատկապես մեծ ջանք է գործադրել «Արարողությունների գրքի» հրատարակված մասում բնագրի խաթարումները ուսումնասիրելու և շտկելու համար:

Ըստ Ա. Վոգտի ուսումնասիրության, կայսեր աշխատության այն մասը, որ նա հրատարակել է, ամբողջական չէ: Այնտեղ մի լուրջ բացթողում և սկզբնական բնագրի խաթարում կա: Ձեռագրում [գլուխների] համարակալումը, որն ընթանում է 9-րդ համարից մինչև 20-րդը, հաստատում է նրա ենթադրությունն ու վկայում առաջին 9 գլուխների կորստի մասին: Նույն գիտնականը այդ ենթադրյալ խաթարման մեկ այլ նշան է համարում այն փաստը, որ ներկա ձեռագրի արարողությունների շարքը սկսվում է Ս. Զատկի տոնից, մինչդեռ սկզբնագրում այն պետք է որ սկսվեր Ս. Ծննդյան տոնից:

Մեզ թվում է, որ խնդրի վերաբերյալ Ա. Վոգտի առաջ քաշած ենթադրությունները կարոտ են որոշ ուղղումների և ճշգրտումների, որոնք, կարծում ենք, ի զորու ենք անելու մի կողմ դնելով հնարավոր խաթարման ենթադրությունը:

Ձեռագրի համարակալումը բացահայտում է մի բացթողում, դա անվիճելի է: Սակայն այդ բացթողումը այնքան մեծ չէ, որքան թվում է: Նախ՝ պակասող գլուխները բոլորը չէին, որ գտնվում էին № 9 և հաջորդ համարների միջև, ուր պակասում է Զատկի տոնին վերաբերող հոդվածի միայն սկիզբը: № 9-ի վերջի և 45-րդ գլխի միջև զետեղված մասն առանձին մի աշխատություն է կազմում: Դա ավելի հին վավերագիր է, որը Կոստանդին Ծիրանածինը պարզապես ներմուծել է իր աշխատության մեջ:

Ինչ վերաբերում է առաջին մասին՝ 1-9-րդ գլուխներին, ապա այն պատկանում է մատենագիր կայսերը: Աշխատության այդ մասն ամբողջական չէ: Այնտեղ պակասում են 9 գլուխներ կամ, ավելի շուտ 9 հոդվածներ, քանի որ պահպանված գլուխների մեջ մի քանիսը գրչի մեղքով համարակալված չեն, և այդպիսով գլուխների կորուստը սահմանափակվում է չորսով:

Այս եզրակացությանը հանգելու պատճառները ներկայացնելուց առաջ մենք կցանկանայինք սեղմագրել այդ մասի գլուխներն այնպես, ինչպես մեր կարծիքով եղել է նախնական բնագրում:

Գլուխ Առաջին. Ընդհանուր բնույթի արարողություն, որը պետք է պահպանվեր կայսերական երթերի և հանդիսավոր թափորների ժամանակ Ս. Պալատից դեպի Ս. Սոֆիա և հակառակը: Գլուխն ավարտվում է մի նշումով այն մասին, որ այդ արարողությունը կիրառելի է Զատկի կիրակիի, Պայծառակերպության, Ծննդյան և Աստվածհայտնության տոների ժամանակ:

Հետո գալիս են չորս հոդվածներ, որոնցում հաջորդաբար քննվում են հետևյալ չորս տոներից յուրաքանչյուրին հատուկ արարողությունները՝ Ս. Զատիկ, Աստվածամոր Ծնունդ, Ավետումն, Ավագ Շաբաթ:

Հենց այս հոդվածները համարակալված չեն, մինչդեռ դրանցից յուրաքանչյուրն առանձին գլուխ է կազմում: Որոշ վերապահություն կարելի է անել առաջին հոդվածի համար, որը վերաբերում է Զատկի օրվան: Եվ իսկապես, այն կարելի է չդիտել որպես առանձին հոդված, քանի որ Զատկի օրն ընդգրկված է այն հինգ տոների շարքը, որոնք նշվում են ըստ ընդհանուր արարողության: Սակայն քանի որ այս հոդվածը գալիս է ընդհանուր արարողության ընթացքը ճշգրտելու կամ լրացնելու՝ Զատկի օրվա տոնի կապակցությամբ, ապա մենք կարող ենք այն ինքնուրույն գլուխ համարել և մենք այն դիտում ենք որպես այդպիսին[1]:

Այլ են Աստվածամոր Ծննդյան, Ավետման և Ավագ Շաբաթվա տոներին վերաբերող երեք հոդվածները: Դրանք մեծ տոներ են, որոնց արարողությանը նվիրված հոդվածները սկզբնագրում պետք է որ առանձին գլուխներ լինեին:

<Գլ. 2> Ս. Զատկի տոնի արարողություն (էջ 17, տ. 16 - էջ 20, տ. 29 ),

<գլ. 3> Աստվածամոր Ծննդյան տոնի արարողություն (էջ 20, տ. 30 - էջ 26, տ. 21),

[1] Տե՛ս նման մի դեպք, որ հաստատում է մեր ենթադրությունը: Ծննդյան տոնի արարողության վերջում (գլ. 2, էջ 34) ասվում է, որ նույն արարողությամբ էին ընթանում Աստվածհայտնության ու Զատկի տոները, սակայն, այնուամենայնիվ, Աստվածհայտնության տոնը առանձին նկարագրված է 2-րդ գլխում, իսկ Զատկինը՝ 4-րդ գլխում:



<գլ. 4> Ավետման տոնի արարողություն (էջ 26, տ. 22 - էջ 26, տ. 31),

<գլ. 5> Ավագ Շաբաթվա արարողություն (էջ 26, տ. 22 - էջ 28, տ. 20):

Այս վերջին տոնի զբաղեցրած տեղը բացատրվում է հեղինակի այն նախազգուշացմամբ, որ դրա արարողությունը համապատասխանում է Ավետման տոնի արարողությանը (էջ 26, տ. 22):

Հաջորդ գլուխները պարունակում են երգեր և գոչյուններ բոլոր այն հանդիսությունների համար, որոնց մասնակցում էր կայսերական արքունիքը: Դրանք են.

<գլ. 6> Հիսուսի Ծննդյան տոն = գլ. 2 (տպագիր),

<գլ. 7> Ճրագալույց Ս. Հարության = գլ. 3 (տպագիր),

<գլ. 8> Ս. Զատիկ = գլ. 4 (տպագիր),

<գլ. 9> Ս. Զատկի Բ օր = գլ. 5 (տպագիր):

Ձեռագրում դրանից հետո գալիս է Նոր Կիրակին և դա մատնանշում է ակնհայտ մի բացթողում, քանի որ Զատկական Շաբաթվա մնացած բոլոր օրերը՝ երեքշաբթին, չորեքշաբթին, ուրբաթը և շաբաթը, բացակայում են: Մինչդեռ դրանք պատկանում էին այն օրերի շարքին, որոնք տոնվում էին հանդիսավոր կերպով արքունիքի մասնակցությամբ: Եվ իսկապես, վերահրատարակված բնագրի երկրորդ մասում, որը, մեզ հետաքրքրող հատվածից տարբերակելու համար, մենք կանվանենք «Արարողությունների երկրորդ գիրք», տեղ է հատկացված այդ օրերից յուրաքանչյուրին՝ իրեն հատուկ արարողության հետ միասին: Կա միայն մեկ բացառություն. քանի որ շաբաթ օրվա արարողությունը նույնանում է ուրբաթ օրվա արարողությանը (հեղինակն այդ բանը նշում է 99-րդ էջում), ապա այն առանձին ներկայացված չէ: Այսպիսով, այս օրերը զբաղեցնում են չորս գլուխ՝ 20-24-ը: Առանց իրականության դեմ մեղանչելու, մենք կարող ենք ընդունել նույն դասավորությունը «Արարողությունների առաջին գրքի» համար: Այդ դեպքում մենք կունենանք.

<գլ. 10> Զատկի Գ օր,

<գլ. 11> Զատկի Դ օր,

<գլ. 12> Զատկի Ե օր,

<գլ. 13> Զատկի Զ օր ( նույնը Է օրվա համար ),

<գլ. 14> Զատկի Ը օր կամ Կրկնազատիկ = տպագրի. 6-րդ գլ.,

<գլ. 15> Փոքր Հոգեգալուստ = տպագրի 7-րդ գլ.,

<գլ. 16> Համբարձում = տպագրի 8-րդ գլ.,

<գլ. 17> Հոգեգալուստ = տպագրի 9-րդ գլ., մինչև 56-րդ էջի 8-րդ տողը:

Այստեղ երգերի և գոչյունների կարգը և դրա հետ միասին «Արարողությունների առաջին գիրքն» ավարտվում են: Պայծառակերպության տոնի արարողությունը համընկնում է Քրիստոսի Ծննդյան տոնի արարողությանը,

ինչպես նշված է այդ տոնին վերաբերող գլխի վերջում (էջ 34):

Համարակալումը շարունակվում է «Արարողությունների երկրորդ գրքի» համար:

<գլ. 18> Ս. Զատկի օրվա տոնի արարողություն = գլ. 9, էջ 56, տ. 9, գլխի սկիզբը թերթերի կորուստի հետևանքով պակասում է,

<գլ. 19> Զատկի Բ օրվա արարողություն = տպագրի 10-րդ գլ.,

<գլ. 20> Զատկի Գ օրվա արարողություն = տպագրի 20-րդ գլ.:

Ինչպես տեսնում ենք, այստեղ ենթադրությամբ վերականգնված համարակալումը միանում է իրական համարակալմանը: Նշված բացթողման չափը ճշգրտված է և զգալիորեն նվազել է պարզապես համարները վերականգնելու շնորհիվ: Հետո ամեն ինչ տեղն է ընկնում:

Գլ. 21 Զատկի Դ օր,

Գլ. 22 Պատրիարքի հրավերը,

Գլ. 23 Զատկի Ե օր,

Գլ. 24 Զատկի Զ օր ( և Է օր ),

Գլ. 25 Կրկնազատիկ,

Գլ. 26 Փոքր Հոգեգալուստ,

Գլ. 27 Համբարձում,

<Գլ. 28 Ս. Եղիայի տոնը>,

<Գլ. 29 «Նեայի» օծումը>,

<Գլ. 30 Ս. Դեմետրիոսի տոնը>,

Գլ. 31 Երևումն Ս. Խաչի,

Գլ. 32 Սուրբ Ծնունդ,

<Գլ. 33 Ս. Բարսեղի տոնը>,

Գլ. 34 Նավակատիք Ս. Ճրագալույցի,

Գլ. 35 Ս. Ճրագալույց,

Գլ. 36 Տեառնընդառաջ,

Գլ. 37 Ուղղափառության տոն (վերջում, էջ 147, տող 27-148),

Գլ. 38 Սուրբ Խաչ,

Գլ. 39 Ավետում,

Գլ. 40 Ծաղկազարդի նավակատիք,

Գլ. 41 Ծաղկազարդ,

Գլ. 42 Ավագ հինգշաբթի,

Գլ. 43 Ավագ ուրբաթ,

Գլ. 44 Ավագ շաբաթ,

Գլ. 45 Եկեղեցու միություն,

<Գլ. 46 Միապետների զգեստափոխությունը տոների և երթերի ժամանակ>:



Այսպիսով 46 գլխից բաղկացած աշխատությունը բաժանված է երկու տարբեր մասերի: Մեկն ընդգրկում է առաջին 17 գլուխները, իսկ մյուսը՝ 18-ից 46-րդ գլուխը: Աշխատության այս երկու մասերը զգալի կերպով տարբերվում են միմյանցից: Առաջին մասում ամենուր խոսվում է կայսրերի, միապետների՝ οἱ δεσπόται, մասին, մինչդեռ երկրորդ մասում արարողությունը ճանաչում է միայն մեկ կայսր՝ ὁ βασιλεύς: Մեջբերումներն ու փաստարկներն ավելորդ են: Դրանց կարելի է հանդիպել որքան ցանկանաք պատահական էջեր թերթելիս: Օրինակ, 12-րդ էջում οἱ δεσπόται ձևին հանդիպում ենք տասն անգամ: Բարեմաղթանքները հասցեագրված են բազմաթիվ միապետների. πολλοὶ ὑμῖν χρόνοι [«բազում տարիներ ձեզ»] կամ πολλοὶ ὑμῖν χρόνοι σὺν ταῖς αὐγούσταις καὶ τοῖς πορφυρογεννήτοις [«բազում տարիներ ձեզ ավգուստաներով և ծիրանածիններով (իմա՛ կանանցով և զավակներով) հանդերձ»] (էջ 30, 32, 39): Նրանց կոչում են εὐεργέται [«բարերարներ»] կամ θεοσεπτοὶ εὐεργέται [«աստվածավախ բարերարներ»] (էջ 36, 58, 53) կամ ἀνδρειότατοι δεσπόται [«քաջարի տիրակալներ»] (էջ 55) և այլն:

Հոգնակիով օգտագործված արտահայտությունները վկայում են միաժամանակ բազմաթիվ միապետների ներկայության մասին:

Այդ մասում «կայսր» բառը հայտնվում է լոկ այն դեպքում, երբ խոսում են կայսրերից մեկի մասին. օրինակ՝ կարդում ենք. *ἀνίστανται οἱ δεσπόται* [«տիրակալները ոտքի են կանգնում»] (էջ 18, տող 16), սակայն. պրեպոզիտոսը հրաման է ստանում τοῦ δεσπότου [«տիրակալից»] (էջ 18, տող 9). կամ καὶ ἐπιδίδωσι ὁ πατριάρχης τῷ μεγάλῳ βασιλεῖ τὸν θυμιατόν [«և պատրիարքը փոխանցում է բուրվառը մեծ թագավորին»] (էջ 12, տող 6) և այլն: Այն կայսրը, որին պատրիարքը տվել էր բուրվառը, որակված է որպես «մեծ, ավագ»՝ նրան իր գործընկերներից տարբերելու համար: Մեկ այլ հատվածում ասվում է, որ պատրիարքը բուրվառը փոխանցում է կայսերը՝ τῷ βασιλεῖ, առանց որևէ բնորոշման (էջ 22, տող 12):

Լիովին այլ պատկեր է «Արարողությունների երկրորդ գրքում», ուր երբեք չի խոսվում կայսրերի մասին, այլ միայն մեկ կայսեր մասին՝ ὁ βασιλεύς: Վերցնենք ցանկացած՝ օրինակ 10-րդ, գլուխը. «Սպասում են կայսերը»՝ τὸν βασιλέα (65, տող 12). Ὁ δὲ βασιλεύς ... φορῶν σάγιον χρυσοῦν [«Իսկ կայսրը ... հագնելով ոսկե պատմուճանը (սագիոն)»] (65, տող 15) διελθὼν ὁ βασιλεύς [«դուրս գալով, կայսրը»] (66, տող 4); «երկրպագել կայսերը»՝ τῷ βασιλεῖ (տող 7); «կայսերը նախորդում է», (տող 12 և 25). «կայսրը ժամանում է» (տող 19). «կուսակցությունները ընդունում են կայսերը» (տող 30): Այդ տեսակետից հատկապես ուսանելի է 9-րդ գլուխը: Թերթերի կորստի հետևանքով «Արարողությունների գրքի» առաջին

մասի վերջին գլուխը և երկրորդ գրքի սկիզբը միացել են՝ կազմելով 9-րդ գլուխը: Այսպիսով այս մասում շատ լավ զգացվում է, որ կա տարբեր ծագում ունեցող երկու հատված. մեկում բացականչում են «կայսրեր»՝ θεόσεπτοι εὐσεβεῖς εὐεργέται [«աստվածավախ <և> բարեպաշտ բարերարներ»] (54, տող 16), իսկ մյուսում ամենուր խոսում են կայսեր՝ βασιλεύς-ի, մասին և այդպես մինչև տասն անգամ՝ միայն մեկ էջում (էջ 59): Հիշենք ուրեմն երկու աշխատությունների միջև գոյություն ունեցող այս տարբերությունը:

Սակայն «Արարողությունների երկրորդ գիրքը» պարունակում է որոշ գլուխներ, ուր նույնպես խոսում են «միապետների» մասին և այդ գլուխները երկրորդ գիրքը հարազատացնում են «Արարողությունների առաջին գրքին»: Դրանք այն գլուխներն են, որոնք մենք առել ենք փակագծերի մեջ և որոնք վերարտադրում են Ս. Եղիայի, Նեայի կամ Նոր Եկեղեցու, Ս. Դեմետրիոսի և Ս. Բարսեղի տոների արարողակարգը (գլ. 28-30, 33), ինչպես նաև վերջին գլուխը, որը վերաբերում է կայսերական զգեստներին և Ուղղափառության տոնին հետևող մեկնաբանություններին:

Այսպես, Ս. Եղիայի գլխում երբը արժանանում է «միապետների»՝ οἱ δεσπόται, ներկայությանը, և դա կրկնվում է մոտ տասնհինգ անգամ մի քանի էջում: Այդ միապետներից մեկն անվանվում է «ավագ կայսր»՝ μέγας βασιλεύς, մնացածը «երիտասարդ կայսրերն» են՝ οἱ μικροί (էջ 107, տ.10): Ավագ կայսրը «ազնվականներին բաժանում է փոքր խաչեր», կարդում հրավիրվածների ցուցակը (էջ 109, տող 19) և պատրիարքի հետ միասին դուրս գալիս եկեղեցուց (էջ 108, տող 18): Նույն բանն է նկատվում 29, 30, 33 և 37-րդ գլուխներում: Այս չորս գլուխներում հիշատակվում է Ս. Թեոդորոսի սրահը՝ ἡ καμάρα τοῦ ἁγίου Θεοδόρου, ուր միապետները հագնում են իրենց քղամիդները՝ արարողությունը սկսելու համար (էջ 107, 110, 113, 33-րդ գլխի համար տե՛ս վարը): «Արարողությունների երկրորդ գրքի» մյուս գլուխներում այս սրահը հիշատակված չէ, բայց այն մեզ ծանոթ է «Արարողությունների առաջին գրքից», ուր հիշատակվում է Ս. Թեոդորոսի մատուռը, որտեղ պահվում էր Մովսեսի գավազանը և որը գտնվում էր Քրիստոտրիկլինոսում (էջ 4): Հետևաբար սրահը գտնվում էր այդ մատուռում: Հնարավոր է, որ այդ ընդհանուր գիծը վկայում է «Արարողությունների առաջին գրքի» և այդ գլուխների միջև գոյություն ունեցող ընդհանրության մասին:

Այս բոլորից հետո հարց է ծագում, թե ո՞րն է «միակ կայսրը» և ովքեր են «միապետները»: Հարց, որը ստիպում է մեզ ճշտելու երկու վավերագրերի ժամանակագրական կապը:

Միաժամանակ գահը զբաղեցնող բազմաթիվ կայսրերի ժամանակաշրջանը սկսվում է Վասիլ I-ի հիմնադրած Մակեդոնական կոչվող հարստության հետ: Վասիլ I թագադրել է իր երկու որդիներին՝ Լևոնին և Ալեքսանդրին: Լևոնը թագավորել է իր եղբոր հետ միասին: Ալեքսանդրի գործընկերն էր նրա զարմիկ Կոստանդին Ծիրանածինը: Վերջինս իշխանությունը կիսել է Ռոմանոս Լեկապենոսի հետ, որին 921-931 թթ. ընկերակցել է նրա որդի Քրիստափորը, իսկ 924-945 թթ. Ստեփանոս և Կոստանդին որդիները: Կոստանդին Ծիրանածինը իր որդի Ռոմանոսին թագադրել է 945 թվին, և նրանք միասին թագավորել են մինչև 959 թվականը: Այսպիսով Վասիլի գահակալությունից մինչև Կոստանդին Ծիրանածնի մահը գահը զբաղեցնում էին մեկից ավելի կայսրեր:

Հետևաբար «Արարողությունների երկրորդ գրքի» այն գլուխները, ուր խոսվում է մեկ կայսեր մասին, գալիս են Վասիլ I-ին նախորդած ժամանակաշրջանից: Իսկ մյուս կողմից այս վավերագրի մեջ պահպանվել է անթիպատոս-պատրիկի տիտղոսը՝ εἰσάγει βῆλον δεύτερον πατρικίους καὶ ἀνθυπάτους [«ներս է թողնում երկրորդ աստիճանակարգը՝ պատրիկներին և անթիպատոսներին»] (56, տող 17), և քանի որ այս տիտղոսը ստեղծել է Թեոփիլոսը մոտ 830 թ. իր փեսա և հավանական հաջորդ Ալեքսիոս-Մուշեղի պատվին, հետևաբար վավերագիրը ստեղծվել է այդ թվականից հետո: Ուղղափառության տոնը մեզ առավել ճշգրիտ տարեթիվ է մատնանշում: Դա պատկերների պաշտամունքի տոնն է, որը վերականգնվել էր 843 թ. եկեղեցական ժողովի ժամանակ: Եկեղեցու հայրերի որոշումը արքունիքի մասնակցությամբ տոնել են հենց ժողովի օրը, և այդ ժամանակից ի վեր սույն հիշարժան օրը դասվել է այն տոների շարքը, որոնք արքունիքը նշում էր մեծ հանդիսավորությամբ: Ավելի քան մեկ դար կայսրությունը փոթորկող դավանաբանական վեճերը մեկընդմիշտ հանդարտվեցին: Եկեղեցու հաղթանակի նշանակությունն առավել ընդգծելու համար, կարծես թե, որոշվել էր նույն պատվին արժանացնել Եկեղեցու Միության հիշատակը, այսինքն՝ 787 թ. ժողովի հիշատակը, քանի որ այդ ժողովն էր սկսել պայքարը պատկերամարտության քաղաքականության դեմ: Այդ տոնի հանդիսությունները կատարվում էին Ս. Իրենեի եկեղեցում, անկասկած ի պատիվ Իրենե կայսրուհու հիշատակին, որին վերագրում են 787 թ. ժողովի գումարման նախաձեռնությունը, այնպես, ինչպես 843 թ. ժողովի գումարման նախաձեռնությունը վերագրվում էր Թեոդորա կայսրուհուն:

Այն կայսրը, որը հիշատակվում է Ուղղափառության և Միության տոնի արարողակարգում, Միքայելն է՝ Թեոդորայի որդին[1]: Այս երկուսը «Արարողությունների երկրորդ գրքի» մեջ ներառված ամենանոր տոներն են: Մնա-

[1] J. B. Bury, History of the Eastern Roman Empire, p.82, note 3, նույնպես կարծում է, որ Ուղղափառության տոնի արարողությունը կազմվել է Միքայել III-ի ժամանակ:

ցածները գոյություն ունեին վաղ շրջանից, սակայն նրանց արարողակարգը ըստ երևույթին կատարելագործվել և օրինակարգվել էր Թեոփիլոսի ժամանակ, որը հանդիսություն ու ճոխություն շատ էր սիրում:

Անցնենք մեկ այլ հարցի: «Արարողությունների երկրորդ գրքի» չորս գլուխները, ուր խոսվում է բազմաթիվ կայսրերի մասին, և «Արարողությունների առաջին գիրքը» պատկանո՞ւմ են արդյոք նույն ժամանակաշրջանին, և արդյոք այն «միապետները», որոնք մասնակցում են այդ արարողություններին, նույնն են, թե՞ ոչ:

«Արարողությունների առաջին գրքում» ասվում է, որ այն պահին, երբ սուրբ ընծաները դրվում են Ս. Սեղանի վրա «միապետները կանգնում են սուրբ դռների ետևում՝ *առաջին* միապետը աջից, իսկ *երկրորդը*՝ ձախից». οἱ δεσπόται ... ἵστανται ἔξω τῶν ἁγίων θυρῶν, ὁ μὲν πρῶτος δεσπότης δεξιᾷ, ὁ δὲ δεύτερος ἀριστερᾷ[1]: Սա վճռական հատված է: Կասկածից վեր է, որ «առաջին» կայսրն ինքը Կոստանդինն է, իսկ «երկրորդը»՝ նրա որդի Ռոմանոսը, որը թագադրվել է Զատկի տոնի օրը՝ 945 թ. ապրիլի 6-ին: «Առաջին կայսր» արտահայտությունը պատկանում է Կոստանդին Ծիրանածնի գրչին և այն հաճախ է հանդիպում «Արարողությունների երկրորդ գրքի» հենց այն գլուխներում, ուր խոսվում է միապետների՝ δεσπόται, մասին. καὶ ἐπιδίδωσιν ὁ πατριάρχης θυμιατὸν τῷ πρώτῳ βασιλεῖ [«և պատրիարքը փոխանցում է բուրվառը առաջին կայսրին»][2]. καὶ λαμβάνει ὁ πρῶτος βασιλεὺς θυμιατὸν [«և առաջին կայսրը վերցնում է»][3]. ὁ πρῶτος βασιλεὺς ἐντίθεται ἀλειπτόν [«առաջին կայսրը քսում է օծման յուղը»][4]:

«Առաջին կայսրը» այնտեղ անվանված է նաև «ավագ կայսր», նրան «ավելի երիտասարդ» կայսրից տարբերելու համար. φιλεῖ τοὺς πόδας καὶ τὰ γόνατα τοῦ μεγάλου βασιλέως, ὁμοίως καὶ τοῦ μικροῦ [«համբուրում է ավագ, ինչպես և կրտսեր կայսրերի ոտքերն ու ծնկները»][5]. εἴτε τοῦ μεγάλου βασιλέως, εἴτε τοῦ μικροῦ, εἴτε τῆς αὐγούστης [«թե՛ ավագ կայսեր, թե՛ կրտսերինը, թե՛ ավգուստայինը»][6]:

Մատենագիր կայսրն ամենուր ինքն իրեն որակում է որպես «առաջին կայսր» կամ «ավագ կայսր», իսկ իր որդի և գահակից կայսր Ռոմանոսին՝ որպես «կրտսեր կայսր»:

Սակայն «Արարողությունների երկրորդ գրքի»՝ մեզ հետաքրքրող չորս գլուխներում οἱ δεσπόται կարծես թե Կոստանդին Ծիրանածնին և նրա

[1] De cerim., I, Cap. 1, p. 12 (ed. A.Vogt).
[2] De cerim., II, p. 533 (ed. I.Reiske).
[3] Ibid., II, p. 552, 563.
[4] Ibid., II, p. 555.
[5] Ibid., II, 529.
[6] Ibid., II, 511.



որդի Ռոմանոսին չեն վերաբերում: Լուծմունքի վկայությամբ (28-րդ գլուխ, էջ 106, ծան. 1 և 29-րդ գլ., էջ 116, ծան. 1) Ս. Եղիայի և Նոր Եկեղեցու տոները սահմանվել էին Վասիլ I կայսեր կողմից: Եվ իսկապես, այս երկու տոները զետեղված են Փիլոթեոսի Կլետորոլոգիոնի մեջ, որը գրվել է III ինդիկտիոնի սեպտեմբեր ամսին = 899 թվականին[1]:

Երկու տոների արարողակարգերը գրված են նույն ձևով, բացի Համբարձիքի ծեսից և մի տեսարանից թափորի սկզբում: Այս վերջին երկու կետերը ուշադրություն են գրավում:

Համբարձիքի տոնը նշում էին Փարոսի Ս. Աստվածածնի եկեղեցում Ս. Եղիայի տոնի հսկմանը և արարողությունն ավարտվում էր մի երգով, որ հորինել էր Լևոն կայսրը և որը կատարվում էր Συνταφέντες σοι [«Թաղված քեզ հետ միասին» <տաղի>] մեղեդիով: Հետո կայսեր անունից արծաթե փոքր խաչեր էին բաժանում պաշտոնյաներին. ἐπιδίδοται τοῖς τε μάγιστροις, πραιποσίτοις, ἀνθυπάτοις, πατρικίοις τε καὶ ὀφφικιαλίοις παρὰ τοῦ βασιλέως ἀνὰ ἑνὸς ἀργυροῦ μικροῦ σταυροῦ [«մագիստրոսներից, պրեպոսիտոսներից, անթիպատոսներից, օֆֆիկիալներից յուրաքանչյուրին թագավորը նվիրում է փոքր արծաթե խաչ»] (գլ. 28, էջ 106, 20 - 107, Ա. Վոգտի հրտ.):

Փիլոթեոսը կրկնում է նույն բանը. προεκτελεῖται δὲ πρὸ αὐτῆς τῆς ἡμέρας ἐν τῇ παραμονῇ ἑσπερινὸν ἐν τῷ Φάρῳ, καὶ ᾄδεται παρὰ πάντων ἀπολύσιμον ᾆσμα ἰσόμελον τοῦ Συνταφέντες, καὶ δίδοται τοῖς μαγίστροις, πραιποσίτοις, ἀνθυπάτοις, πατρικίοις τε καὶ ὀφφικιαλίοις εἰς τύπον παρὰ τοῦ βασιλέως σταυρίτζια ἀργυρᾶ [«կատարվում է նախօրեին, Փարոսում՝ երեկոյան հսկման ժամին, և բոլորը երգում են արձակման երգը՝ «<Քեզ հետ> միասին թաղված» <տաղի> մեղեդիով, և թագավորն իբրև նշան բաժանում է մագիստրոսներին, պրեպոսիտոսներին, անթիպատոսներին և օֆֆիկիալներին արծաթե խաչիկներ»][2]:

Հաջորդ օրը լուսադեմին Ծերակույտի անդամները սպիտակ քղամիդներ հագած ներկայանում էին միապետներին, որոնք նրանց ընդունում էին ծիրանի դիվիտիսիոններ հագած: Միապետները մտնում էին Ս. Թեոդորոսի սրահը և հագնում էին իրենց քղամիդները՝ καὶ ἐξερχόμενοι καθέζονται, ὁ μὲν μέγας βασιλεὺς ἐπὶ τοῦ θρόνου, οἱ δὲ μικροὶ ἔνθεν κἀκεῖθεν ἐν χρυσοῖς σελλίοις. Τοῦ δὲ κουβουκλείου εἰσελθόντος κατὰ τὸν τύπον τῆς βαιοφόρου καὶ εἰς τὴν οἰκείαν τάξιν στάντος, ἤγουν δεξιὰ καὶ ἀριστερά, ὅ τε τοῦ σακελλίου καὶ οἱ ξενοδόχοι καὶ γηροκομικοί, προσάγοντες τῷ

[1] De cerimoniis, II, p. 775, 19 et 776, 13.
[2] Ibid., II, p. 776, 16-20.

βασιλεῖ τοὺς κατὰ τύπον χρυσοστοιβάστους σταυρούς. Καὶ εἶθ᾽ οὕτως εἰσάγεται στοιχηδὸν πᾶσα ἡ τάξις τῶν τε μαγίστρων ἀνθυπάτων, πατρικίων καὶ ὀφφικιαλίων καὶ ἄλλων, ὧν ἂν κελεύσωσιν οἱ δεσπόται καὶ ἐπιδίδωσιν ὁ βασιλεὺς ἑνὶ ἑκάστῳ τούτων ἀνὰ ἑνὸς σταυροῦ [«և դուրս գալով <այնտեղից>, նստում են ավագ կայսրը՝ գահին, իսկ կրտսերները՝ երկու կողմից ոսկե աթոռների վրա: Երբ ներս է մտնում սենեկապետության անձնակազմը՝ արմավենիների ճյուղեր կրողների նմանությամբ, կանգնում է ընդունված կարգով, այն է՝ աջ և ձախ կողմից, ինչպես և գանձապետարանը, և օտարերկրացիներով զբաղվող ծառայությունը և ծերերի հոգաբարձուները, մոտենում են կայսրին ոսկեզօծված խաչեր կրողների նմանությամբ: Այնուհետև այդպես հերթով ներս է բերվում մագիստրոսների, անթիպատոսների, պատրիկների և օֆֆիկիալների ամբողջ շարքը, և մնացածները, ում որ հրամայեն տիրակալները, և կայսրը յուրաքանչյուրին նվիրում է մեկ խաչ»] (գլ. 28, էջ 107, 9-19):

Այս հատվածը Փիլոթեոսը սեղմագրում է հետևյալ կերպ. τῇ δὲ ἐπαύριον ἡμέρᾳ, ἐν ᾗ τὴν ἑορτὴν ἐκτελοῦμεν, προκαθέζεται ὁ βασιλεὺς μετὰ ἀλλαξιμάτων ἐπὶ τοῦ ἐνδόξου χρυσοτρικλίνου, καὶ παρεστῶτος τοῦ μυστικοῦ κουβουκλείου, εἰσάγονται ὅ τε τοῦ σακελλίου καὶ οἱ ξενοδόχοι καὶ γηροκόμοι, προσάγοντες σταυροὺς χρυσοστοιβάστους κατὰ μίμησιν τῆς ἑορτῆς τῶν βαΐων, καὶ λαμπροφορούντων πάντων, εἰσάγεται ἡ τάξις τῶν μαγίστρων, ἀνθυπάτων, πατρικίων καὶ ὀφφικιαλίων ἔμπροσθεν τοῦ δεσπότου, καὶ διανομῆς τῶν λεχθέντων σταυρίων ὑπὸ τοῦ βασιλέως γενομένης, τελεῖται ... πρόλευσις [«մյուս օրվա ցերեկը, երբ նշվում է տոնը, կայսրն ամբողջ հանդիսավոր հանդերձանքը հագին նստում է հռչակավոր Քրիսոտրիկլինոսում, և, հավաքվելով գաղտնի <ներքի՞ն> ապարանքի մոտ, ներս են մտնում գանձապետարանի անձնակազմը, օտարերկրացիներով զբաղվող ծառայությունը և ծերերի հոգաբարձուները, գնում են դեպի ոսկեզօծված խաչերը արմավենիների տոնի նմանությամբ, և՝ բոլորը փայլուն զգեստներով, կայսրին ներկայանալու համար ներս է հրավիրվում մագիստրոսների, անթիպատոսների, պատրիկների և օֆֆիկիալների դասը. երբ կայսեր կողմից բաշխվում են հիշյալ խաչերը, թափորն ավարտվում է»][1]:

Երկու շարադրանքների ընդհանրությունն ակնհայտ է, սակայն դրանցից ո՞րն է առաջնայինը: Փիլոթեոսը նկարագրում է խնջույքների արարողությունն առանձնապես չհետաքրքրվելով տոների արարողությամբ: Սակայն նա ուշադրություն է դարձրել Ս. Եղիայի տոնի արարողու-

[1] De cerimoniis, II, p. 776, 20 - 727, 6.



թյանը: Այս տոնը նշում էին հուլիսի 20-ին, Լևոն VI կայսեր համար հիշարժան մի օր՝ բանտից ազատվելու տարեդարձը, ուր նրան նետել էր նրա հայրը, Թեոդորոս Սանդաբարենոսի զրպարտության հետևանքով: Փիլոթեոսն իսկապես վկայում է, որ հուլիսի 20-ին նշում էին Ս. Եղիայի հիշատակի և միևնույն ժամանակ կայսերական բանտարկյալի երջանիկ ազատագրության օրը. ἡ ἀνάκλησις τῆς περιορίσεως τοῦ εὐσεβοῦς ἡμῶν βασιλέως [«մեր բարեպաշտ թագավորի՝ կապանքներից ետ կանչվելը»][1]: Բավարար պատճառ չէ՞ր դա արդյոք այդ օրը հատուկ հանդիսություն կազմակերպելու համար, որի արարողությունն ըստ երևույթին մշակել էր ինքը կայսրը: Համբարձիքի ծեսի ժամանակ կատարվող օրհներգը, որը հորինել էր կայսրը, դրա խոսուն վկայությունն է:

Սակայն այս ենթադրությանը հակադրվում է վերը բերված հատվածը, որից իմանում ենք, որ «ավագ կայսրը բազմում է գահի վրա, իսկ կրտսերները նրա կողքերին, յուրաքանչյուրը ոսկե աթոռի վրա»: Եթե շարադրանքի οἱ δεσπόται [«տիրակալները»] կարող է վերաբերել Լևոն VI-ին և նրա եղբայր Ալեքսանդրին, որոնք միասին են թագավորել, ապա ὁ μέγας βασιλεύς [«մեծ թագավոր»] և οἱ μικροί [«փոքրերը»] այդպես չեն կարող հասկացվել, քանի որ Լևոն VI-ի ժամանակ կար միայն մեկ μικρός: Նույն այդ պատճառով մենք չենք կարող մտածել նաև Կոստանդին Ծիրանածնի և նրա որդի Ռոմանոսի թագավորության մասին: Ռոմանոս Լեկապենոսի ժամանակաշրջանում դրանք անկասկած բազմաթիվ էին, սակայն Կոստանդին Ծիրանածնի համար չափազանց նվաստացուցիչ կլիներ «ավագ կայսր» անվանել բռնակալ Լեկապենոսին, իսկ իրեն դասել բռնակալի որդիների շարքը որպես «կրտսեր կայսր»: Ի վերջո մեզ մնում է միայն մեկ դարաշրջան. դա Վասիլ I «ավագ կայսեր» և նրա որդիներ Լևոնի ու Ալեքսանդրի ժամանակաշրջանն է. նրանք շատ շուտ են արժանացել «կրտսեր կայսրերի» տիտղոսին: Դա ստիպում է մեզ մտածել, որ Վասիլ I-ը սահմանելով Ս. Եղիայի տոնը՝ այդ աստվածաշնչյան մարգարեի նկատմամբ տածած հարգանքի պատճառով, միևնույն ժամանակ մշակել է դրա արարողությունը: Նրա որդի Լևոնը այդ տոնին նվիրված մի օրհներգ է հորինել և հնարավոր է, որ վերանայել է տոնի արարողակարգը, այդ կրկնակի նշանակություն ունեցող օրվան առավել մեծ փայլ տալու համար, առանց վերացնելու ավագ և կրտսեր կայսրերի հիշատակությունը:

Մյուս տոնը՝ Նոր Եկեղեցու օծումը, նշվում էր Ս. Եղիայի տոնի ծեսի *հիմնական մասը կրկնող մի արարողությամբ:*

Ինչ վերաբերում է Ս. Դեմետրիոսի և Ս. Բարսեղի տոներին, ապա

[1] De cerimoniis, II, p. 776, 15.

դրանք սահմանվել էին Լևոն VI-ի կողմից: Փիլոթեոսը դրանց ծանոթ չէր, և դրանք նրա «Կլետորոլոգիոնում» չկան: Հետևաբար դրանք սահմանվել են «Կլետորոլոգիոնից»՝ 899 թ. սեպտեմբերից, հետո: Կայսրը Ս. Դեմետրիոսին նվիրված մի կցուրդ էր հորինել, որը երգում էին նրա տոնի օրը «λαθὼν ἐτέχθης» [«թաքուն ծնվեցիր»]-ի մեղեդիով: Ըստ երևույթին Քրիսոտրիկլինոս սրահում գտնվող Ս. Դեմետրիոսի մատուռը կառուցվել, իսկ նրա տոնը սահմանվել էր 904 թ. Թեսաղոնիկեի պաշարումից հետո՝ ինչպես մեզ հաղորդում է առասպելը, քաղաքի պաշտպանությանն այս նահատակի հրաշալի միջամտության կապակցությամբ:

Հարց է ծագում, թե Խրիսոտրիկլինի մոտ գտնվող Ս. Բարսեղի մատուռը կառուցված չէ՞ր արդյոք Վասիլ I-ի պատվին, քանի որ Ս. Բարսեղի տոնը նրա անվանակոչության օրն էր: Այս տոնի արարողակարգի հեղինակային մասը նույնպես սկիզբ է առնում Լևոն VI-ի թագավորության ժամանակաշրջանից և այն «միապետները», որոնք այնտեղ հիշատակված են հենց իրենք են՝ Լևոնը և նրա գործակից Ալեքսանդրը: Փիլոթեոսը իր «Կլետորոլոգիոնում» հաճախ է խոսում «միապետների» մասին՝ արտահայտություն, որով նա նշում է նույն այդ կայսրերին:

Եվ վերջապես 46-րդ գլուխը, որը վերաբերում է կայսրերի հանդերձանքներին՝ տոների և երթերի ժամանակ, պատկանում է Կոստանդին Ծիրանածնի գրչին: Այս գլուխը ուշադրություն է գրավում հատկապես թվարկված տոների կարգով: Այն, ինչպես և «Արարողությունների երկրորդ գիրքը», սկսվում է Զատկի տոնով: Դա ապացուցում է, որ շարադրանքի խաթարում չկա, կամ, եթե այն կա, ապա այդ խաթարման մեղավորը հեղինակն է, և ոչ թե գրիչը: Ա.Վոգտը իրավացի է, երբ պնդում է, որ եկեղեցական օրացույցը առաջ սկսվում էր Քրիստոսի Ծննդյան տոնով: Եվ իսկապես, մենք տեսնում ենք դա Փիլոթեոսի երկում: Սակայն հենց Կոստանդին Ծիրանածինն է, որ փոխել է այդ կարգը, Զատկի տոնից սկսելու համար: Հայոց եկեղեցին ընդունում է այս երկու համակարգերն էլ: Ամենահին օրացույցը, եթե դատելու լինենք հին ճաշոցներից, սկսվում էր Ծննդյան և Աստվածհայտնության տոներով, որոնք նշվում էին միասին՝ հունվարի 6-ին: Սակայն ավելի ուշ մենք տեսնում ենք, որ օրացույցը սկսվում է Զատկի տոնով: Այդ օրացույցը հավանաբար կազմվել է Կիլիկիայում բյուզանդականի նմանակությամբ: Ամենահանդիսավոր թափորը, որին մասնակցում էր կայսերական արքունիքը, տեղի էր ունենում Զատկի տոնի օրը: Այսպիսով Կոստանդին Ծիրանածինը այդ տոնը դրել է իր աշխատության սկզբում: Առաջին գլխում (էջ 17) հեղինակը, թվարկելով այն տոները, որոնք պետք է տոնվեին նկարագրված արարողության համաձայն, սկզբում խոսել է Զատկի տոնի մասին, իսկ



հետո միայն Հոգեգալստյան, Պայծառակերպության, Ծննդյան և Աստվածհայտնության տոների մասին:

«Արարողությունների գիրքը» այնպիսի աշխատություն չէ, որը գրվել է նախապես հղացած ծրագրի համաձայն: Դա անկանոն մի ժողովածու է կամ, ինչպես ասում է հեղինակը, տարբեր տեղերից քաղված ծաղիկների մի փունջ, որի նպատակն էր առավել գեղեցիկ դարձնել կայսերական արքունիքի շքեղությունը: Կոստանդին Ծիրանածինը մտադիր չէր նկարագրելու արքայական բոլոր երթերի արարողությունները, այլ միայն Տերունական՝ խոշոր տոների երթերի արարողությունը, ներառյալ Աստվածամոր այն տոները, որոնք դիտվում էին որպես Տերունական տոներ: Նա սկզբում ուրվագծել է ընդհանուր բնույթի արարողությունը, որը կիրառվում էր բոլոր տոների ժամանակ, նշելով երգերը և փառաբանությունները յուրաքանչյուր տոնի ժամանակ: Սա այն է, ինչ մենք կոչել ենք «Արարողությունների առաջին գիրք»՝ 1 - <17> -րդ գլուխները[1]:

Հետո դրան է կցվել «Արարողությունների» մեկ այլ գիրք, որը մենք կոչել ենք «երկրորդ գիրք»: Վերջինս մեր հեղինակի գրչին չի պատկանում: Այն գոյություն է ունեցել դրանից առաջ: Հեղինակը պարզապես այն կցել է իր աշխատությանը՝ որոշ լրացումներով և ճշգրտումներով հանդերձ, որոնց հետքերը զգացվում են:

Արքունիքը թափորներ էր կատարում նաև հասարակ օրերին կամ նահատակների տոների ժամանակ: Այդ կարգի յուրաքանչյուր տոնին հատուկ նվազ հանդիսավոր արարողությունն ու թափորը քննարկվում են հեղինակի կողմից «Արարողությունների երկրորդ գրքում»՝ 6-14-րդ գլուխներում: Անիմաստ է, հետևելով Ա.Վոգտին, տրամաբանական կապ փնտրել մատենագիր կայսեր բանաքաղության թե՛ ամբողջության և թե՛ առանձին մասերում:

## II

### 33-ՐԴ ԳԼԽԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Ս. Պալատի մոտ Ս. Բարսեղի հիշատակին նվիրված մատուռի կառուցումից հետո, վերջինիս տոնը դառնում է արքունական և տոնվում է որոշակի հանդիսությամբ: «Արարողությունների գրքի» 33-րդ գլխում քննվում է այդ տոնի արարողակարգը:

Միապետները գնում են Փարոսի Ս. Աստվածամոր եկեղեցին, որը

[1] Մենք մտադիր չենք քննարկելու խնդրի հանգամանքները: Միայն նկատենք, որ Ա.Վոգտի 13-րդ էջի հղումը՝ «գլուխ 32, էջ 124»-ին սխալ է: Այն վերաբերում է նախորդ էջին, ուր խոսվում է նշխարքի մասին և նշանակում է, որ հաղորդության պահին միապետների վարքագիծը նույնն է, ինչ նշխարքի բաժանման ժամանակ:

նույնպես տեղադրված էր Ս. Պալատի մոտակայքում: Այդտեղից նրանք հանդիսավոր թափորով ուղևորվում են դեպի Ս. Բարսեղի եկեղեցին, մասնակցում ծիսակատարությանն ու Քրիստոտրիկլինոս են վերադառնում առանց որևէ պաշտոնական ճոխության: Օրվա արարողությունն ավարտված է:

Հետևում է դիպվածային մի պատմություն: III ինդիկտիոնին, այս տոնի օրը Քրիստոտրիկլինոս վերադառնալու փոխարեն միապետները բոլոր պալատականների հետ միասին գնում են Մագնավրա, ուր, ընդունված կարգի համաձայն, հրավերք է տեղի ունենում. առաջին βῆλον [«դասը, բարձը»]՝ մագիստրոսներ, երկրորդ βῆλον՝ (անթիպատոսներ)-պատրիկներ, երրորդ βῆλον՝ ծերակուտականներ:

Հետո օստիարիոսը ներս է բերում առաջին βῆλον՝ Տարոնի մագիստրոսին և արխոնտին, երկրորդ βῆλον՝ բուլղար բարեկամներին, երրորդ βῆλον՝ Տարոնի մագիստրոսի (2) և արխոնտի «շքախմբի» երևելի մարդկանց: Արարողությունն ավարտելուց հետո միապետները բարեմաղթություններով վերադառնում են Ս. Պալատ:

Այսպիսով կասկածից վեր է, որ մենք ունենք ամեն տարի կատարվող տոնի արարողությունը և մի պատահական ընդունելության նկարագրություն, որը տեղի է ունեցել III ինդիկտիոնի այդ օրը Մագնավրա պալատում:

Սակայն Ա.Վոգտի մեկնաբանությունը տրամագծորեն տարբերվում է մեր մեկնաբանությունից: Նրա կարծիքով ընդունելության տեսարանը պատկանում է «Արարողությունների գրքին» և միայն Մագնավրա պալատը գնալուն վերաբերող հատվածը շարադրանքի մեջ սխալմամբ ներմուծված լուսանցանիշ է: Նա ենթադրում է նաև, որ III ինդիկտիոնը համապատասխանում է 944-945 թթ., երբ Կոստանդին Ծիրանածինը ազատվել է իր խնամակալ Ռոմանոս Լեկապենոսից և, հնարավոր է, որ հենց այդ կապակցությամբ ընդունելություն է կազմակերպել Մագնավրա պալատում: Նման ենթադրությունը քիչ հավանական է, ինչպես հենց ինքը հեղինակն է խոստովանում: Եվ իսկապես, ընդունելության տեսարանը չի կարող օրվա արարողակարգի մաս կազմել, քանի որ այնտեղ ի միջի այլոց ներկա է Տարոնի մագիստրոսը, որն անշուշտ ամեն տարի այդ տոնին չէր մասնակցում: Օրվա արարողակարգի համաձայն ընդունելությունը նույնիսկ պարտադիր չէր: Ընդունելություն չէր լինում նաև Ս. Դեմետրիոսի և Նոր Եկեղեցու տոներին:

Ա.Վոգտը համարում է, որ Մագնավրա գնալու մասին հատվածը բնականոն կերպով տեղադրված է իրար հաջորդող երկու նախադասությունների միջև, և այդ պատճառով նա այն լուսանցանիշ է համարում, որը գրիչը, ըստ երևույթին, ներմուծել է բնագրի մեջ:



Բնագիրը չի արդարացնում նման ենթադրությունը: Իրականում միապետները քղամիդ էին կրում ամբողջ արարողության ընթացքում, մինչդեռ այդ նախադասությունը, որը Վոգտի կարծիքով կազմում է շարադրանքի բնականոն շարունակությունը և որն իբր բաժանված է լուսանցանիշով, մեզ տեղեկացնում է, որ «միապետները հագնում են իրենց քղամիդները»: Դրանից հետևում է, որ եղել է մի պահ, երբ միապետները հանել էին իրենց քղամիդները, քանի որ հետո նրանք ստիպված էին դրանք կրկին հագնել: Քանի որ այդ պահը ճշտված չէ, ապա մենք չենք կարող պնդել, որ շարադրանքը անխաթար է:

Իրականում այդ պահը նշված է ենթադրյալ լուսանցանիշով. Մագնավրա գնալու պահին միապետները «դիվետիսիոն և սագիոն էին հագել»: Ս. Բարսեղ եկեղեցու ծիսակատարությունից հետո նրանք հանել էին իրենց քղամիդները: Մագնավրա հասնելով, նրանք կրկին հագնում են քղամիդները և բազմում նորակառույց գահի վրա: «Մեկուսի» նախադասությունն ուրեմն շատ էլ տեղին է: Այդ նախադասության մեջ կա մի բան, որը կրկնվում է «լուսանցանիշում» և դա շեղել է Ա. Վոգտին: «Լուսանցանիշում» միապետները կրկին հագնում են քղամիդները այն բանից հետո, որ «ընդունելության ամբողջ արարողությունն ավարտված էր»՝ πάσης τῆς καταστάσεως τῆς δοχῆς τελεσθείσης: Ի՞նչ բան էր այդ արարողությունը: Հենց այս հարցին է պատասխանում հեռացված նախադասությունը. «արարողության ղեկավարը դրսում βῆλα-ները բաժանում է ըստ կարգի. մագիստրոսներ, (անթիպատոս)-պատրիկներ և այլ ծերակուտականներ», որից հետո միապետները կրկին հագնում են քղամիդները և կապում քազերը:

Անվիճելի է, որ ընդունելությունը տեղի է ունեցել Մագնավրա պալատում և որ դրա միակ նպատակը Տարոնի մագիստրոսին և բուլղար բարեկամներին միապետներին ներկայացնելն էր: Այս թեզի հաստատումը գտնելու համար բավական է դիմել «Արարողությունների երկրորդ գրքի» 15-րդ գլխին. Ὅσα δεῖ παραφυλάττειν, δοχῆς γενομένης ἐν τῷ μεγάλῳ τρικλίνῳ τῆς Μαγναύρας, τῶν δεσπότων καθεζομένων ἐπὶ τοῦ Σολομωντείου θρόνου [«Ինչպիսի <արարողակարգ> պետք է պահպանել Մագնավրայի մեծ սրահի ընդունելության ժամանակ, երբ տիրակալները նստում են Սողոմոնի գահին»]:

Այս գլխում նկարագրվում է Մագնավրայում տեղի ունեցող ընդունելությունների ամբողջական արարողությունը: 33-րդ գլուխը այդ նույն արարողության կրճատ շարադրանքն է: Որոշ մեջբերումներ բավական են այդ երկու գլուխների միջև եղած սերտ կապը բացահայտելու համար:

Գլ. 15 (= Ի. Ռեյզկեի հրտ., հատ. 2, էջ 567). Καὶ περιβαλλόμενοι οἱ δεσπόται τὰ διβητήσια καὶ τὰ χρυσοπερίκλειστα σαγία [«Եվ տիրակալ-

ները հագին ունենում են դիվիտեսիոնները ու ոսկեթել պատմուճանները»] = գլ. 33 (Վոգտի հրտ., էջ 128) ἀπὸ διβητησίων περιβεβλημένοι καὶ τὰ χρυσοπερίκλειστα σαγία [նույնը]:

Նույնը, տող 13. καὶ ὅτε πάντα καλῶς εὐτρεπισθῶσιν ὑπό τε τοῦ καταστάσεως <καὶ τῶν πραιποσίτων καὶ τοῦ λογοθέτου τοῦ δρόμου> εἰσέρχονται οἱ πραιπόσιτοι καὶ ὑπομνήσκουσι τοὺς δεσπότας· καὶ εὐθέως ἐξέρχονται οἱ δεσπόται καὶ ἀπέρχονται ἔνθα αἱ χλαμύδες καὶ στέμματα ἀποκεῖνται, καὶ περιβαλλόμενοι τὰ αὐτὰ ὑπὸ τῶν πραιποσίτων, ἀνέρχονται καὶ καθέζονται ἐπὶ τῶν θρόνων [«և երբ ամեն ինչ պատշաճ կերպով պատրաստված է լինում արարողության համար <պատասխանատուի և պրեպոզիտների և դրոմոսի լոգոթետեսի կողմից>, ներս են գալիս պրեպոսիտները և տեղեկացնում են տիրակալներին, և իսկույն դուրս են գալիս տիրակալները և գնում են այնտեղ, որտեղ պահվում են քղամիդներն ու թագերը, և հագնելով դրանք պրեպոսիտների օգնությամբ, բարձրանում և նստում են գահերին»] = գլ. 33, էջ 128, տ. 12. καὶ ὅτε πάντα καλῶς εὐτρεπισθῶσιν, ὑπομιμνήσκεται ὁ βασιλεὺς καὶ <οἱ δεσπόται> περιβάλλονται τὰς χλαμύδας καὶ τὰ στέμματα καὶ ἀνιόντες καθέζονται ἐπὶ τῶν ἑαυτῶν θρόνων [«երբ ամեն ինչ պատշաճ կերպով պատրաստված է լինում, տեղեկացվում է կայսրը, և <տիրակալները> հագնում են քղամիդներն ու թագերը, և բարձրանալով բազմում են իրենց գահերին»]:

Հետո, պրեպոսիտոսի ազդանշանով, օստիարիոսը ներս է ուղեկցում առաջին βῆλον [«դասը»]. τοὺς μαγίστρους [«մագիստրոսներ»], երկրորդ βῆλον՝ τοὺς <ἀνθυπάτος>-πατρικίους [«անթիպատոսներ-պատրիկներ»], երրորդ βῆλον՝ τοὺς συγκλιτικούς [«սինկլիտիկոսներ»], καὶ ἁπλῶς ὅσα ἂν βῆλα ἔχει ἡ τάξις τῶν δοχῶν [«և առհասարակ բոլոր այն դասերը, որոնք նախատեսված են ընդունելության արարողակարգով»] = գլ. 33, էջ 128, տտ. 20-23. նույն βῆλα և վերջին նախադասությունը վերարտադրված է տառացիորեն: Դրանից հետո օստիարիոսը ներս է ուղեկցում օտարերկրացուն. εἰσάγει τὸν ἐθνικόν, δηλονότι κρατούμενον ὑπὸ τοῦ κατεπάνω τῶν βασιλικῶν καὶ ὑπὸ τοῦ κόμητος τοῦ σταύλου ... καὶ τοῦ λογοθέτου τοῦ δρόμου [«ներս է հրավիրվում օտարերկրացիների խումբը, անպայման արքունիքի կատեպանի, ախոռապետի ... և դրոմոսի լոգոթետեսի ուղեկցությամբ»] = գլ. 33, էջ 128, տ. 23 և հջ.:

Հետո գալիս են οἱ προκριτώτεροι τούτου ἄνθρωποι [«սրանից նախապատվություն ունեցող մարդիկ»]... εἰσάγει τὸ τοῦ ἐθνικοῦ κανίσκιον εἰ δὲ καὶ ἔστιν καὶ ἕτερος φίλος [«ներս է բերվում օտարերկյա հյուրերի նվիրատվական զամբյուղը, եթե անգամ ներկա է այլ բարեկամներից որևէ



մեկը»], այս ամենին մենք հանդիպում ենք նաև 33-րդ գլխում:

Արարողության ավարտից հետո, καθίασιν οἱ δεσπόται ἀπὸ τῶν θρόνων, καὶ τὰ τούτων ἐκβάλλοντες στέμματα τε καὶ χλανίδια, περιβάλλονται τὰ χρυσοπερίκλειστα αὐτῶν σαγία, καὶ εἰσέρχονται μυστικῶς ἐν τῷ θεοφυλάκτῳ παλατίῳ [«տիրակալները վայր են իջնում գահերից և հանելով քղամիդներն ու թագերը, հագնում են իրենց ոսկեթել պատմուճանները և խորհրդավոր կերպով մտնում աստվածապահպան պալատը»] = հատվածը բառացիորեն վերարտադրված է 33-րդ գլխի վերջում:

Ավելացնենք. Καὶ εἰσέρχονται εἰς τὸν μέγαν τρίκλινον, ἐν ᾧ καὶ ὁ Σολομώντειος ἵδρυται θρόνος [«և մտնում են մեծ ճաշասրահ, որում կանգնեցված է Սողոմոնի գահը» (3)] = գլ. 33, էջ 128, տ. 7. καὶ ἀνελθόντες ἐκάθισαν ἐν τῷ νεοκατασκευάστῳ σένζῳ τῷ ἱσταμένῳ ἐν τῷ τοιούτῳ τῆς Μανναύρας τρικλινίῳ [«և բարձրանալով բազմում են նորակառույց գահին, որը կանգնեցված է Մագնավրայի այս նույն սրահում»]:

Այս փաստի առկայությամբ հնարավոր չենք համարում վիճարկել այն եզրակացությունները, որոնց հանգել ենք 33-րդ գլուխն ուսումնասիրելիս և որոնք լիովին հաստատվում են այն զուգահեռներով, որ արձանագրված են վիճահարույց գլխի և 15-րդի միջև: Ուստի հաստատվում է այն ենթադրությունը, որ Մագնավրա պալատում կազմակերպված հանդիսությունը չուներ այլ նպատակ, քան Տարոնի մագիստրոսի և արխոնտի և բուլղար բարեկամների ընդունելությունը: Մենք քաջ գիտենք, որ Մագնավրայի հենց այդ սրահում էր, որ Լևոն VI կայսրը ընդունել էր Տարոնի ու Մելիտենեի պատվիրակներին, որոնք մայրաքաղաք էին եկել Սամոնասի հոր հետ. καὶ τούτους ὁ βασιλεὺς ἐδέξατο μεγάλην δοχὴν ποιήσας καὶ κόσμῳ πολλῷ τὴν Μαγναύραν κατακοσμήσας [«և կայսրն ընդունեց նրանց, պատրաստելով մեծ ընդունելություն, շքեղ զարդարանքով զարդարելով Մագնավրան»][1]:

Եթե նույնիսկ ապացուցված համարենք, որ ընդունելության նկարագրության մեջ լուսանցանիշ չի ընդգրկվել և որ այն ամբողջական է, անորոշ է մնում, թե այդ ամբողջականությունն արդյոք պատկանում է հեղինակայի՞ն բնագրին, թե՞ դա ավելի ուշ ժամանակաշրջանի լուծումն է: Հարցի լուծումը կախված է այդ երկու միանման գլուխների միջև եղած կապերի բացահայտումից:

Քանի որ «Արարողությունների երկրորդ գրքի» 15-րդ գլուխը ավելի ամբողջական է և հանգամանալից, ապա առաջին հայացքից այն կարող է առաջնության հավակնություն ունենալ. քանի որ այդ գիրքը գրվել է 957-959 թթ., ապա եզրահանգումն անբարենպաստ կլինի 33-րդ գլխի համար:

[1] Cedrenus, II, p. 270.

Սակայն բացառված չէ, որ 15-րդ գլուխը կարող է որպես հիմք ունենալ 33-րդ գլխի շարադրանքը, որը կհանդիսանար արարողության հիմնական տարրերը պարունակող 15-րդ գլխի համառոտ տարբերակը: Ամեն ինչ կախված է ընդունելության շարադրանքում հիշատակված փաստերից: Ո՞վ էր Տարոնի մագիստրոս իշխանը և ո՞ր տարվան է համապատասխանում III ինդիկտիոնը:

Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում կար միայն մեկ Տարոնացի, որը մագիստրոսի տիտղոս էր կրում: Դա Գրիգորն է կամ Կրիկորիկը (ինչպես նրան անվանում է Կոստանդին Ծիրանածինը), որի հարաբերությունները Լևոն VI կայսեր հետ քննարկվել են «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլխում: Կրիկորիկը իշխանությունը ժառանգել էր 898 թ. ապրիլ ամսին: Նա մեկնել էր մայրաքաղաք Լևոն VI-ի հրավերով, որը նրան արժանացրել էր մագիստրոսի պատվաստիճանին: Նա լավ հարաբերությունների մեջ էր նաև Ռոմանոս Լեկապենոսի հետ, սակայն Կոստանդին Ծիրանածինը, որը նրան հիշատակում է, և ոչինչ չի ասում, որից կարելի կլիներ ենթադրել, որ նա ճանապարհորդություն դեպի մայրաքաղաք ձեռնարկած լիներ Ռոմանոս Լեկապենոսի ժամանակ:

Եթե կանգ առնենք Լևոն VI-ի թագավորության իրադարձությունների վրա, ապա III ինդիկտիոնի հունվարի 1-ն ընկնում է 900 թ. նույն ամսի առաջին օրը: Այդ տարեթիվը մեզ չի բավարարում: Լևոն VI կայսրը բողոքում էր կայսրության և խալիֆայության միջև Կրիկորիկի վարած երկիմաստ քաղաքականությունից և, նրա՝ կայսրության շահերի շրջանակները ներքաշելու ջանքեր թափելուց հետո, կայսրը նրան մայրաքաղաք է հրավիրում և հարգանքի նշաններ շռայլում նույն այդ նպատակով: 900 թ. հունվար ամսին Կրիկորիկի իշխանության գլուխն անցնելու երկրորդ տարին էր՝ չափազանց կարճ ժամանակաշրջան նրա քաղաքականության մասին դատելու և հատկապես այն դատապարտելու համար, ինչպես դա անում է Լևոն VI կայսրը: Իսկապես կարելի է կասկածել տարեթվի ճշգրտությանը:

Մյուս կողմից կայսեր պատվիրակը, որը Կրիկորիկին, ինչպես նաև նրա որդուն և եղբորը ուղեկցել էր Կոստանդնուպոլիս, Կոստանդին Լիպսն էր: 900 թ. նա հասուն դուստր ուներ, որին կարելի էր ամուսնացնել Կրիկորիկի եղբոր հետ, իսկ 951-952 թթ. նա դեռևս ողջ էր: Հասուն դուստր ունենալու համար Կոստանդինը պետք է առնվազն 30 տարեկան լիներ, իսկ 951 թ. նա պետք է որ լիներ առնվազն 80 տարեկան ծերունի, չափազանց պատկառելի տարիք հետերիարքոս լինելու համար:

Այս դիտարկումները մեզ մի շատ պարզ ենթադրություն են ներշնչել. III ինդիկտիոնը ուղղել XIII ինդիկտիոնով = 910 թ.՝ ἰνδικτῶνι <ι>γʹ: Այսպիսով Լևոն VI կայսրը բավականաչափ ժամանակ ունեցած կլիներ (898-910)



հետևելու Տարոնի իշխանի քաղաքականության միտմանը և դրա վերաբերյալ որոշակի կարծիք կազմելու համար, իսկ Կոստանդին Լիպսը համապատասխանաբար կերիտասարդանար տասը տարով:

Կա մի փաստ, որը նպաստում է այս ենթադրությանը: Հայոց 358 թ. = 909 թ. ապրիլ - 910 թ. ապրիլ, Կոստանդնուպոլսում Աշոտ անունով մի հայ իշխան Ավետարան է պատվիրել, որը մեզ է հասել, և ուր գրիչը՝ ոմն Թուքայել, իրեն որակում է որպես «ծառայ ծառային Քրիստոսի տեառն Աշոտի» և գովաբանում է իր տիրոջը՝ Աշոտին, նրա հասցեին շռայլելով «իմաստուն, հարուստ մտքով, ընթերցանությամբ տարված, հայ զորավարի հոյակապ անունը կրող, շատ փառաբանված, երկնային փայլ ունեցող, Քրիստոսին պաշտող» մակդիրները այն բանի համար, որ Աշոտը նրան նվիրել էր չորս ավետարաններից կազմված βραβεῖον [«մրցանակ»][1] (4): Կարծում ենք, որ հանդգնություն չէր լինի այդքան հայտնի իշխանի անձի ներքո ճանաչել Կրիկորիկի որդի Աշոտին, որը հորից առաջ էր գնացել կայսեր մոտ և վերադարձել էր պրոտոսպաթարի պատվաստիճանով: Ձեռագրի տարեթիվը կատարելապես համընկնում է մեր ենթադրության հետ: Աշոտն ու Ապողանեմը պետք է որ մայրաքաղաք գնացած լինեին 909 թ. ընթացքում, իսկ Կրիկորիկը մեկնել էր նրանց վերադարձից հետո, տարեվերջին և 910 թ. հունվարի 1-ին եղել էր մայրաքաղաքում: Մենք չենք պնդում III ինդիկտիոնը ուղղելու վրա, սակայն անվերապահորեն հրաժարվում ենք 900 թվականից: Եթե 900 թ. Աշոտն առնվազն 20 տարեկան եղած լիներ, ապա իր մահվան պահին՝ 968 թ., նա պետք է որ 88 տարեկան լիներ, իսկ դա նույնքան անհավանական է, որքան Կոստանդին Լիպսի դեպքը: Մեր բնագրում հիշատակված միապետները 910 թ. պետք է որ Լևոն VI-ն ու նրա եղբայր Ալեքսանդրը լինեին: Բուլղար «բարեկամները» բուլղար թագավորի պատվիրակներն են, որոնք եկել էին Ծննդյան տոնի կապակցությամբ կամ, ինչպես ասում է մեր հեղինակը, եկել էին «տոնը մեզ հետ նշելու համար»: 896 թ. տեղի ունեցած Բուլգարոփիգոնի ճակատամարտից հետո մինչև 917 թ. տեղի ունեցած Աքելոսի ճակատամարտը կայսրության և Բուլղարիայի միջև չէր արձանագրվել և ոչ մի զինված ընդհարում: Եթե նույնիսկ ինչ-որ

---

[1] [«Զբաղմանս ներանձնացեալ ունախոհի և մտահարուստ ընթերցասիրական ուշմագունի, և մեծասքանչ անուան Հայոց սպայապետի առլնլով ամենափառ և հրաշազարդեալ աստուծավայելուչ և քրիստոսասէր տեառն Աշոտոյ իբրև զբրաբիովն ներընծայեաց զչորից աւետարանչացն զարտաճառութիւնս ի մի հաւաքելով, առ ի յիշատակ ստացատին և ընծայեցելումն: ՅԾԸ (909) թուականութեանն Հայոց, հրամանաւ տեառն Աշոտոյ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի Կոստանտիանոպոլիս, ի ձեռն Թուքայելի՝ ծառայի ծառային Քրիստոսի տեառն Աշոտոյ: Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն»:], տե՛ս **Գարեգին վարդապետ [Հովսեփյան]**, Քարտեզ հայ հնագրության, Վաղարշապատ, 1913, էջ 22-23: Մեծշեն գյուղի ձեռագիրն այժմ պահվում է Էջմիածնի կաթողիկոսարանի ձեռագրատանը:

քաղաքական լարվածություն կար, ապա այն չէր խանգարում պահպանելու որոշ պայմանականություններ:

Սակայն եթե անհրաժեշտ է կանգ առնել III ինդիկտիոնի վրա, ապա այն պետք է փնտրել 900 թ. դուրս: 900 թվականից հետո եկող III ինդիկտիոնը համընկնում է 915 թվականին: Այս տարեթիվը չի հարմարվում մեր բնագրին, քանի որ այդ ժամանակաշրջանում գահի վրա էր Զոե կայսրուհին, իսկ մեր բնագրում խոսվում է δεσπόται՝ միապետների մասին: Հաջորդ III ինդիկտիոնը համապատասխանում է 930 թ. և դա մտածելու առիթ է տալիս:

Ա. Վոգտը Տարոնի մագիստրոսի և բուլղար բարեկամների ընդունելությունը տեղադրում է 927 և 930 թթ. միջև, քանի որ «մենք գիտենք,- գրում է նա,- որ Կրիկորիկը մահացել է 930 թվականին»: Դժբախտաբար Կրիկորիկի մահվան մասին չկա և ոչ մի աղբյուր, և ոչ մի տեղեկություն: Եթե մենք, անտեսելով Կոստանդին Ծիրանածնի լռությունը, կանգ առնենք 930 թ. վրա որպես ընդունելության տարեթվի, ապա կկարողանանք դրանից հետևություն անել Կրիկորիկի ենթադրյալ մահվան մասին, այն տեղադրելով 930 թվականից հետո և 935 թվականից առաջ: 935 թ. այն տարին է, երբ Կրիկորիկի որդի Բագրատը հիշատակվում է որպես Տարոնի իշխան: Հովհաննես Կաթողիկոսը, որը ճանաչում էր Տարոնի այդ իշխանին, վայելել էր նրա հյուրասիրությունը և բարձր էր գնահատում նրա «իմաստուն և զգույշ» (5) քաղաքականությունը, իր աշխատությունը հասցրել է միայն մինչև 925 թ. և չի հիշատակում նրա մահը: Դա շատ թույլ փաստարկ է նրա մահը 925 թվականից հետո տեղադրելու համար:

Շատ գրավիչ կլիներ Մագնավրայի ընդունելության ժամանակ Կրիկորիկի փոխարեն տեսնել նրա որդի և հաջորդ Բագրատին, որը լինելով կայսերական ընտանիքի փեսան՝ ավելի արժանի էր հանդիսավոր ընդունելության, քան նրա հայրը: Սակայն նրա պատրիկի պատվաստիճանը թույլ չի տալիս մեզ նրան վերագրելու այդ պատիվը, եթե իհարկե չենթադրենք, որ այդ պահին նա արդեն մագիստրոս էր: Ըստ Կեդրենոսի[1] Վասպուրականի արքա Սենեքերիմը արժանացել էր պատրիկի պատվաստիճանի՝ πατρίκιος τιμηθείς, մինչդեռ Կեկավմենոսը՝ «Ստրատեգիկոնի» հեղինակը, որն ավելի քաջատեղյակ է, հայտնում է, որ իր տիրույթներից զրկված արքան որպես հատուցում ստացել է մագիստրոսի պատվաստիճանը:

Ամեն դեպքում Ա.Վոգտի գաղափարը III ինդիկտիոնի մասին, մեր ուղղումով հանդերձ, կարող է ընդունելի լինել այն դեպքում, եթե մենք անջատենք Մագնավրա պալատում տեղի ունեցած Տարոնի իշխանի ընդունելու-

[1] Cedrenus, II, 464.



թյունը Կոստանդին Ծիրանածնի՝ Տարոնի իշխանների Լևոն կայսեր հետ ունեցած հարաբերությունների մասին շարադրանքից: Լևոն կայսրը պետք է որ Կրիկորիկին ընդունած և մագիստրոսի պատվաստիճանի արժանացրած լիներ 910 թ. (6), իսկ նույն իշխանի կամ նրա հաջորդի ընդունելությունը տեղի ունեցած լիներ 930 թվականին: Դա անտեղի բարդացնում է հարցը և ստիպում գերադասել մեր տեսակետը:

Ինչևէ, 33-րդ գլխի իսկության հարցը կարելի է լուծված համարել: Այն լուսանցանիշով ընդմիջարկված չէ, ամբողջ շարադրանքը պատկանում է նույն հեղինակին՝ մատենագիր կայսեր, իսկ «Արարողությունների երկրորդ գրքի» 15-րդ գլուխը վերարտադրում է առաջին գրքի 33-րդ գլուխը և այն լրացնում է որոշ մանրամասներով, ինչպիսին է հայտնի սարքավորման նկարագրությունը, որը գոյություն ուներ Թեոփիլոսի ժամանակներից և որը գործի էին դնում ընդունելությունների ժամանակ:

# ՏԱՐՈՆԱՑԻՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅՈՒՄ

## I

Բյուզանդական արքունիքի «Արարողությունների գրքի» 24-րդ գլխում խոսվում է Տարոնացի մի իշխանի մասին, որի ինքնությունը դեռևս պարզված չէ:

Հունվարի 1-ին նշվող Բարսեղ Կեսարացու տոնը նշանավորվում էր ճոխ արարողությամբ: Սրբազան Պալատից մի թափոր էր դուրս գալիս, որը գնում էր Փարոսի Ս. Աստվածամոր տաճարը, հետո Ս. Բարսեղի եկեղեցին, իսկ այնտեղից նորից բռնում էր դեպի պալատ տանող ճանապարհը:

Հենց այդպես են նշել սրբի տոնը III ինդիկտիոնի հունվարի 1-ին, այսինքն՝ 900 թ. հունվարի 1-ին (συνέβη δὲ καὶ τοῦτο γενέσθαι τῇ αὐτῇ ἡμέρᾳ ἰνδικτιῶνι γ′ [«III ինդիկտիոնի նույն օրը եղավ և այսպիսի մի բան»]): Այդ օրը, եկեղեցուց վերադառնալուց հետո, Մագնավրա պալատում շքեղաշուք ընդունելություն է տեղի ունեցել, որի ժամանակ Լևոն և Ալեքսանդր կայսրերին ըստ βῆλα-ների կարգին են ներկայացել բոլոր ազնվատոհմիկ անձինք: Ահա թե ինչ է գրում «Արարողությունների գրքի» հեղինակն այդ կապակցությամբ. μετὰ τὸ σταθῆναι πάντας νεύει ὁ πραιπόσιτος τῷ ὀστιαρίῳ τῷ τὴν χρυσῆν βέργαν κατέχοντι, καὶ εἰσελθὼν εἰσάγει βῆλον α′, τὸν μάγιστρον καὶ ἄρχοντα τοῦ Ταρῶ<ν>. Καὶ δὴ τούτου εἰσελθόντος, ὑπὸ τοῦ κατεπάνω τῶν βασιλικῶν κρατουμένου καὶ τοῦ λογοθέτου τοῦ δρόμου, καὶ πεσόντος καὶ προσκυνήσαντος τοὺς δεσπότας, φέρουσιν αὐτὸν ὡς ἀπὸ ὀλίγου διαστήματος τοῦ βασιλικοῦ θρόνου. Καὶ ὑπὸ τοῦ λογοθέτοθυ ἐρωτῶμενος τὰς συνήθεις ἐρωτήσεις εἰσάγει ὁ πρωτονοτάριος τοῦ δρόμου τὸ τούτου κανίσκιον, καὶ δὴ μετὰ τὴν συμπλήρωσιν τοῦ κανισκίου πάλιν ἐπὶ τῆς γῆς πεσὼν προσκυνήσας ἐξέρχεται[1].

Թարգմանենք. «Երբ բոլորը զբաղեցնում են իրենց տեղերը, պրեպոզիտոսը ազդանշան է տալիս ոսկյա գավազան կրող օստիարիոսին, որը ներս է հրավիրում առաջին «բարձը» (βῆλον)՝ մագիստրոսին և Տարոնի իշխանին: Վերջինս ներս է գալիս կայսերական կատեպանի և դրոմոսի լոգոթետեսի ուղեկցությամբ, երկրպագում վեհապետներին, որից հետո նրան տեղ



[1] De cerimoniis, p.138.

են տալիս կայսերական գահից ոչ հեռու: Լոգոթետեսը դիմում է նրան ընդունված հարցերով, դրոմոսի պրոտոնոտարը ներս է բերում նրա համար նախատեսված զամբյուղը և, երբ վերջինս լցվում է <նվերներով>, մագիստրոսը նորից երկրպագում և դուրս է գալիս»: Հետո ներս են հրավիրում երկրորդ «բարձը» (βῆλον)՝ բուլղար բարեկամներին, հետո երրորդ «բարձը» (βῆλον)՝ τοὺς προκρίτους ἀνθρώπους τοῦ μαγίστρου καὶ ἄρχοντος τοῦ Ταρῶ<ν> [«երևելի մարդիկ Տարոնի մագիստրոսի և իշխանի <շքախմբից>»] և այդպես շարունակ: Արարողությունն ավարտվում է պալատ վերադարձող կայսրերի հացեին արված մաղթանքներով: ὁ δὲ μάγιστρος ὁ Ταρωνίτης [«Տարոնացի մագիստրոսը»],- ավելացնում է «Արարողությունների գրքի» հեղինակը,- καὶ οἱ φίλοι Βούλγαροι ἐν τοῖς ἰδίοις ἀπέρχονται ἀπλήκτοις, αὐτῇ τῇ ἡμέρᾳ μὴ συνεσθιώμενοι τοῖς βασιλεῦσιν [«և բուլղար բարեկամները անմիջապես հեռանում են սեփական <օթևանները>, այդ օրը չմասնակցելով թագավորների ճաշին»]:

Ո՞վ էր Տարոնի այդ իշխանը: Անկասկած Կրիկորիկիոս իշխանը, որի պատմությունը հանգամանորեն մեզ է հասցրել նույն Կոստանդին Ծիրանածինը իր *«De administrando Imperio»* («Կայսրությունը կառավարելու մասին») երկասիրության մեջ:

Եթե հավատալու լինենք մեր հեղինակին, ապա Տարոնի իշխանը երկակի քաղաքականություն էր վարում. նա ջանում էր շահել կայսեր համակրանքը և հայտարարում, որ պատրաստ էր ճանաչելու նրա իշխանությունը, սակայն միևնույն ժամանակ կապեր էր պահպանում խալիֆայի հետ, նրան տեղեկացնում այն ամենի մասին, ինչ տեղի էր ունենում նրա հակառակորդների ճամբարում և իր ցուցումներով նույնիսկ ուղղություն էր տալիս արաբներին, դեպի կայսրության տարածքներ ձեռնարկվող նրանց ներխուժումների ժամանակ:

Այդ ամենը չէր խանգարում նրան ընծաներ ուղարկելու Լևոն VI կայսերը՝ որպես բարեկամության վկայություն: Կայսրը պատասխան ընծաներ էր ուղարկում և մրցում նրա հետ առատաձեռնության մեջ: Նա բազմիցս էր իշխանին հրավիրել Կոստանդնուպոլիս, խոստանալով պատշաճ ընդունելություն և պատվավոր վերաբերմունք: Սակայն իշխանը վարանում էր այդ հրավերքներն ընդունել, պատճառաբանելով, որ երկիրն իր բացակայության ընթացքում կարող էր արաբների ասպատակությանը ենթարկվել, իսկ իրականում, մեր հեղինակի կարծիքով, նա վախենում էր իրեն վարկաբեկել խալիֆայի աչքում:

Նույն իշխանը, դարձյալ Կոստանդին Ծիրանածնի տվյալներով, մի ճակատամարտում հաղթել էր ու գերել Արքայիկի ('Αρκαικά) որդիներին, այսինքն, ճշտում է պատմիչը, Աշոտ ('Ασωτίου) պրոտոսպաթարի հոր՝

պատրիկ Կրիկորիկիոսի, եղբորորդիներին (ἐξάδελφος): Նա նրանց գերության մեջ էր պահում իր մոտ և դա անդադար անհանգստացնում էր իշխանաց իշխան Սմբատին (1), որն ի վերջո որոշում է գրել կայսրին՝ խնդրելով, որ վերջինս իր մոտ բերել տար գերիներին՝ «իր <երկու> զարմիկներին» (τοὺς οἰκείους ἀνεψιούς), վախենալով, որ նրանց արաբներին կհանձնեին: Սմբատը պատրիկ Գրիգորի (Γρηγόριος) կամ Կրիկորիկիոսի ազգականն էր (συγγενής):

Լևոն կայսրն անմիջապես հանձնարարում է Սինուտես ներքինուն, որն այդ ժամանակ χαρτουλάριος τοῦ ὀξέος δρόμου [«հրատապ գործերի քարտուղար»] էր, գնալ Կրիկորիկիոսի մոտ, իսկ հետո մեկ այլ գործով՝ Վիրքի կյուրոպաղատ Ադրանասերի (2) մոտ: Պատվիրակին հանձնարարված էր ընծաներ տանել երկու իշխաններին:

Սակայն Սինուտեսին զրպարտում է նրա հայ թարգմանիչ Թեոդորոսը: Նրա փոխարեն ուղարկվում է Լիպսի որդի պրոտոսպաթար Կոստանդինը, որն անթիպատոս էր, պատրիկ և ավագ հետերիարքոս այն ժամանակ, երբ հեղինակը գրում էր իր աշխատությունը: Նա հրաման է ստանում մեկնել Տարոն, իր հետ տանելով Կրիկորիկիոսի համար նախատեսված ընծաները, իսկ Սինուտեսը պետք է ուղևորվեր Վիրք՝ կյուրոպաղատի մոտ:

Ուստի պրոտոսպաթար Կոստանդինը մեկնում է Տարոն: Նա կայսերական նամակն ու ընծաները հանձնում է Կրիկորիկիոսին և Կոստանդնուպոլիս է վերադառնում վերջինիս խորթ որդու՝ Աշոտի, հետ միասին: Կայսրն Աշոտին արժանացնում է պրոտոսպաթարի պատվաստիճանին, նրան շրջապատում ուշադրությամբ և նույն Կոստանդինի ուղեկցությամբ ետ ուղարկում հոր մոտ: Վերջինս այս անգամ Կոստանդնուպոլիս է վերադառնում Կրիկորիկիոսի եղբոր՝ Ապոգանեմի, և Արքայիկի երկու որդիների ուղեկցությամբ: Ապոգանեմը նույնպես արժանանում է պրոտոսպաթարի պատվաստիճանի և կայսերական ուշադրությունից հետո Կոստանդինի ուղեկցությամբ ետ է ուղարկվում հայրենիք:

Խաղտիքում երկար ժամանակ մնալուց հետո Կոստանդինը մեկ անգամ ևս վերադառնում է Տարոն, նպատակ ունենալով համոզել Կրիկորիկիոս իշխանին իրեն Կոստանդնուպոլիս ուղեկցել: Կոստանդնուպոլիս հասնելով Կրիկորիկիոսը արժանանում է մագիստրոսի պատվաստիճանի և նշանակվում է Տարոնի ստրատեգոս: Ավելին, կայսրը մայրաքաղաքում նրան մի տուն է ընծայում: Դա այն տունն էր, որը հետագայում «Բարբարոսի տուն» է կոչվել և որը մեր հեղինակի ապրած ժամանակաշրջանում պատկանում էր Վասիլ պարակիմոմենոսին: Միապետը դրանով չի սահմանափակվում: Նա Կրիկորիկիոսին տարեկան ռոճիկ է նշանակում, որը կազմում էր տասը գրվանքա ոսկի և նույնքան արծաթ: Կրիկորիկիոսը որոշ ժա-



մանակ մնում է մայրաքաղաքում, հետո վերադառնում է հայրենիք՝ դարձյալ Կոստանդին պրոտոսպաթարի ուղեկցությամբ:

Ապոգանեմը ևս մեկ անգամ այցելում է կայսերը և պատրիկի պատվաստիճան ստանում: Բացի այդ, կայսրը նրան թույլ է տալիս ամուսնանալ Կոստանդինի դստեր հետ և այդ կապակցությամբ նրան է ընծայում «Բարբարոսի տունը», առանց այդ նվիրատվությունը խրիսովուլով հաստատելու: Ամուսնությունից առաջ Ապոգանեմը ցանկանում է հայրենիք վերադառնալ, սակայն տուն հասնելուց մի քանի օր անց մահանում է:

Այդ իրադարձությունից հետո Կրիկորիկիոսը գրում է կայսերը և թույլտվություն խնդրում մայրաքաղաք այցելելու՝ կայսեր ձեռքից իր թոշակը ստանալու և որոշ ժամանակ մայրաքաղաքում մնալու համար: Բացի այդ, նա ցանկանում էր տիրանալ «Բարբարոսի տանը», որն ընծայվել էր նրա եղբորը: Կայսրը ընդառաջում է նրա խնդրանքին, հարգելով նրա ցուցաբերած հնազանդությունը ու, հատկապես, այն նպատակով, որպեսզի նրա վարքագիծը խրախուսեր արևելքի մյուս իշխաններին հետևելու նրա օրինակին: Նվիրատվությունը, ինչպես և նախորդ անգամ, չի հաստատվում խրիսովուլով:

Տարիներ են անցնում և, երբ գահ է բարձրանում Ռոմանոս Լեկապենոսը, Կրիկորիկիոսը տեղեկացնում է նրան, որ ինքը պատրաստ էր փոխանակել «Բարբարոսի տունը» Կելցենեում գտնվող որևէ տիրույթի հետ: Այսպիսով նա հույս ուներ իր համար ապահովել մի ապաստան, ուր անվտանգ կպահեր իր ընտանիքն ու ունեցվածքը արաբների ասպատակությունների ժամանակ:

Ռոմանոս կայսրը, կարծելով, որ Կրիկորիկիոսը տնօրինում էր այդ տունը Լևոն կայսեր խրիսովուլի հիման վրա, համաձայնում է Տարոնացու առաջարկած փոխանակությանը և նրան է զիջում Գրեգորասի (3) տիրույթը Կելցենեում: Բայց, ինչպես և Լևոնը, նա այդ նվիրատվությունը չի հաստատում խրիսովուլով:

Սակայն Ապոգանեմի որդի և Տարոնացու զարմիկ Թոռնիկը նույնպես գրում է Ռոմանոսին նրան տեղեկացնելու համար, որ Լևոնն այդ տունն ընծայել էր իր հորը և վերջինիս մահից հետո իր հորեղբայրը՝ Կրիկորիկիոսը, զավթել էր այն, խոստանալով տունն իրեն վերադարձնել, երբ ինքը չափահաս դառնա: Իմանալով, որ հորեղբայրն այն փոխանակել էր Գրեգորասի տիրույթի հետ, նա պահանջում էր, որպեսզի իր իրավունքները հաշվի առնվեին:

Բացի այդ, կայսեր նախապատվությունը Տարոնի իշխանի նկատմամբ առաջացնում էր մյուս իշխանների նախանձը: Վասպուրականի իշխան Կակիկիոսը (4), Վիրքի կյուրոպաղատ Ադրանասերը և իշխանաց իշխան

Աշոտիկիոսը (5) բողոքում են կայսերը, որ միայն Տարոնացին էր արժանացել կայսերական թռշակի. «Ո՞րն է կայսրության մատուցած նրա այն ծառայությունը, որն առավել է մեր ծառայություններից,- գրում էին նրանք,- արդարացի կլիներ, ուրեմն, որ մենք էլ թոշակ ստանայինք, և կամ նա այլևս չվայելեր այդ արտոնությունը…»:

Ռոմանոսը նրանց պատասխանում է, որ Տարոնացու թոշակը սահմանել է ոչ թե ինքը, այլ Լևոն կայսրը և ինքը չէ, որ պետք է այդ շնորհը վերացներ. անարդարացի կլիներ, եթե վախճանված կայսրերի որոշումները չեղյալ համարվեին նրանց հաջորդների կողմից: Բայց միևնույն ժամանակ նա Կրիկորիկիոսին տեղյակ է պահում հայ իշխանների բողոքի մասին և հայտնում նրան, որ ինքն այլևս ի վիճակի չի լինելու նրա թոշակը ոսկով կամ արծաթով վճարելու. այնուամենայնիվ նա պարտավորվում էր բացի ընդունված նվերներից նրան ուղարկել տասը գրվանքա արժողությամբ հագուստ և պղնձյա իրեր: Ռոմանոսը կատարում է իր խոստումը երեք կամ չորս տարվա ընթացքում, իսկ հետո տեղեկացնում է, որ ի վիճակի չէ այլևս կատարելու իր պարտավորությունները:

Սակայն, ինչպես երևում է, Կրիկորիկիոսը գերադասում էր իր թոշակը ստանալ դրամով: Նա խնդրել է, որպեսզի իրեն շարունակեին վճարել այդ ձևով, հայտարարելով, որ հակառակ դեպքում նա պատրաստ էր հրաժարվել թոշակից[1]: Կակիկիոսի և մյուս իշխանների նախանձը մեղմելու համար, Ռոմանոսը վճռում է վերացնել Կրիկորիկիոսի թոշակը: Սակայն Կրիկորիկիոսի ինքնասիրությունը խնայելու նպատակով նա Կոստանդնուպոլիս է բերել տալիս նրա որդուն՝ Աշոտին, տալիս պատրիկի պատվաստիճան և հայրենիք ուղարկում միայն բարեկամության նշաններ շռայլելուց հետո:

Կրիկորիկիոսի մահից հետո Թոռնիկը՝ Ապոգանեմի որդին, շատ էր ցանկանում տեսակցել կայսրին: Վերջինս նրա մոտ է ուղարկում Կրինիտես պրոտոսպաթարին, որը նրան մայրաքաղաք է ուղեկցում: Կայսեր կողմից պատրիկի պատվաստիճան ստանալուց հետո, Թոռնիկը փորձում է իր իրավունքը բանեցնել «Բարբարոսի տան» վրա և բողոքել իր հորեղբոր իրականացրած գործարքի դեմ: Նա պահանջում է, որ իրեն վերադարձնեն տունը կամ էլ զիջեն Կելցենեի տիրույթը: Հակառակ դեպքում նա պատրաստակամություն էր հայտնում հրաժարվելու իրեն հասանելիքից՝ հօգուտ կայսերը, գերադասելով զրկվել դրանից, քան այն տեսնել իր հորեղբորորդիների տնօրինության ներքո:

[1] Կոստանդին Ծիրանածնի շարադրանքը պարզ չէ: Լատիներեն թարգմանությունն այստեղ ոչ մի իմաստ չունի (6):



Դա էր պատճառը, որ Կրիկորիկիոսի մահից հետո իրեն չափազանցված նրբանկատությունից ազատ զգացող կայսրը հնարավորություն է ստացել Տարոնացիներից ետ վերցնել տունը և տիրույթը, մանավանդ որ այդ նվիրատվությունները հաստատված չէին խրիսովուլներով:

Ավելի ուշ, Կրիկորիկիոսի ավագ որդի Պանկրատիոսը նույնպես մեկնել է Կոստանդնուպոլիս: Կայսրը նրան պարգևել է պատրիկի պատվաստիճան և կոչել Տարոնի ստրատեգոս: Պանկրատիոսը ցանկանում էր ամուսնանալ կայսերական ընտանիքին պատկանող որևէ աղջկա հետ: Կայսրը նրան ամուսնացնում է Թեոփիլակտոս մագիստրոսի քրոջ հետ: Ամուսնությունից հետո Պանկրատիոսը մի կտակ է գրում, որով իր երկիրը պետք է ժառանգեին այդ միությունից ծնված որդիները: Նա խնդրում է նաև, որպեսզի Գրեգորասի կալվածքը տրվի իրեն որպես իր կնոջ օժիտ: Վերջինիս մահից հետո այն պետք է վերադարձվեր արքունիքին: Կայսրն ընդառաջում է նրա խնդրանքին և բարեկամության բազմաթիվ նշաններ շռայլելուց հետո նրան իր կնոջ հետ տուն է ուղարկում:

Մինչդեռ Կրիկորիկիոսի որդիներ Պանկրատիոսը և Աշոտիոսը շարունակում էին հալածել իրենց հորեղբորորդի Թոռնիկ պատրիկին: Վերջինս խնդրում է կայսերը իր մոտ ուղարկել որևէ մեկին, որը կտիրանար իր երկրին, իսկ իրեն կնոջ և որդու հետ միասին կուղեկցեր մայրաքաղաք: Կայսրն այդ գործը կրկին հանձնարարում է Կրինիտես պրոտոսպաթարին: Կրինիտեսը Տարոն հասնելով տեղեկանում է, որ Թոռնիկը մահացել է և իր երկիրը կտակել կայսրությանը, իսկ կնոջն ու որդուն վստահել կայսրին: Երբ նրա այրին Կոստանդնուպոլիս է հասնում, կայսրը նրան բնակեցնում է Միքայել պրոտոսպաթարին՝ Խաղտիքի նախկին կոմերցիարիոսին, պատկանող Պսոմաթեոսի վանքում: Հետո միապետը հանձնարարում է նույն Կրինիտեսին գնալ և տիրանալ Թոռնիկի երկրին: Սակայն Տարոնացու որդիները՝ մահացած իշխանի հորեղբորորդիները, Թոռնիկի կալվածքի դիմաց նրան առաջարկում են Ողնուտ կալվածքը: Կայսրը բարությունից դրդված ընդունում է նրանց առաջարկությունը: Նա նրանց զիջում է Թոռնիկի կալվածքը և փոխարենը ստանում Ուղնուտը (7) և դրա շրջակայքը: Տարոն աշխարհը բաժանված էր երկու մասի. մի մասը պատկանում էր Կրիկորիկիոսի որդիներին, իսկ մյուսը՝ նրանց հորեղբորորդիներին՝ Ապոգանեմի որդիներին[1]:

Հիշեցնենք, որ այն երկասիրությունը, ուր Կոստանդին Ծիրանածինը զետեղել է այս տեղեկությունները և ուր Ռոմանոս Լեկապենոսն արժանանում է μακάριος և μακαριώτατος [«երանելի և ամենաերանելի»] մակդիրների, ստեղծվել է վերջինիս մահից հետո: Իսկ Լեկապենոսը մահացել է

[1] De administrando Imperio, 43, p. 182-191.

վանական միայնության մեջ VI ինդիկտիոնի հունիսի 15-ին, այսինքն 948 թվականին:

Ավելին, «Բարբարոսի տունը» այն ժամանակաշրջանում, երբ գրում էր հեղինակը, պատկանում էր Վասիլ պարակիմոմենոսին (ὁ νῦν Βασιλείου τοῦ παρακοιμωμένου οἶκος): Այդ Վասիլը Ռոմանոսի ապօրինի որդին էր և ծնվել էր նրա գահ բարձրանալուց առաջ: Ուստի Ստեփանոսի՝ Լեկապենոսի որդու, օգտին կազմակերպված դավադրության և իր՝ Լեկապենոսի, մահվան մասին պատմելուց հետո ժամանակագիրը մեզ ասում է, որ μετὰ δὲ τὸ μόνον καταλειφθῆναι αὐτοκράτορα Κωνσταντῖνον, προεχειρίσατο Βασίλειον τὸν πρωτοβεστιάριον αὐτοῦ ... πατρίκιον καὶ παρακοιμώμενον καὶ παραδυναστεύοντα τῆς συγκλίτου [«Կոստանդնի՝ միապետ դառնալուց հետո նրա պրոտովեստիար Վասիլին շնորհվեցին ... պատրիկի և պարակիմոմենոսի և խորհրդի համանախագահի [պաշտոնները]»][1]: Հետևաբար, Վասիլը պատրիկի պատվաստիճան է ստացել և պարակիմոմենոսի պաշտոնին է արժանացել ոչ թե 944 թ. դեկտեմբերի 20-ի հեղաշրջման հետևանքով, այլ Լեկապենոսի մահից, այսինքն՝ 948 թվականից, հետո:

Այս երկու փաստերը ստիպում են մտածել, որ Տարոնի մասին գլուխը գրվել է նույն ժամանակաշրջանում, ինչ որ Վիրքին վերաբերող գլուխները, որոնք ինքը հեղինակը թվագրել է X ինդիկտիոնով, այսինքն՝ 951-952 թվականներով[2]:

## II

Կոստանդին Ծիրանածնի այս շատ հետաքրքիր տեղեկությունները լույս են սփռում Տարոնի իշխանության պատմության մի էջի վրա, որը հայկական աղբյուրները ստվերում են թողել (8):

Կրիկորիկիոսը կամ Գրիգորը (Գրիգորիկը այս անվան փաղաքշական ձևն է) ծանոթ է հայ մատենագրությանը: Նա պատկանում էր Բագրատունյաց տոհմի այն ճյուղին, որը IX դարի սկզբից հաստատվել էր Տարոնում: Տարոնը՝ ժամանակին Մամիկոնյան իշխանների ժառանգական ավատը կազմող Մշո դաշտի հին, սակայն գոյատևող անունն է: Տարոնի Բագրատունյաց հարստության հիմնադիր Բագարատը, Մուտավակիլ խալիֆայի վարած քաղաքականության հետևանքով, դարձել է IX դարի կեսերին Հայաստանում բռնկված ապստամբության առաջին զոհերից մեկը: 851 թ. գերի ընկնելով, նա իր մահկանացուն կնքել է Բաղդադում:

[1] Theoph. Cont., p. 442; Sym., p. 743.
[2] De adm. Imp., 45, p. 199.



Նա ուներ երկու որդի՝ Աշոտ և Դավիթ: Վերջինիս մականունն էր Արքա կամ Արքայիկ: Դավիթ-Արքայիկը Կոստանդին Ծիրանածնի Արքայիկան է: Երկուսն էլ ընկել են տաճիկ զորավար Բուղայի ձեռքը, որին խալիֆան հանձնարարել էր ճնշել ապստամբությունը և որն իր առաքելությունը կատարել էր իր ազգին հատուկ դաժանությամբ: Երկրի ազդեցիկ տերերը ձերբակալվել և ուղարկվել են Բաղդադ: Դրանց թվում էին Բագարատի որդիները՝ Աշոտն ու Դավիթ-Արքայիկը[1]: Նրանք ազատ են արձակվել 858 թ. մյուս գերիների հետ միասին[2]:

Ավագը՝ Աշոտը, իշխանության գլուխ է անցնում: Նա կրում էր կյուրոպաղատի պատվաստիճան[3]: Ե՞րբ և ի՞նչ պայմաններում էր նա ստացել այդ պատվաստիճանը: Մենք այդ մասին ոչինչ չգիտենք, ինչպես նաև տեղյակ չենք նրա իշխանության տևողության մասին: Նա այն իշխանների թվում էր, որոնք ներկայացել էին արաբ նոր կառավարիչ Մուհամմադ իբն Խալիդին, վերջինիս Վանա լճի ափին գտնվող Դաթուն քաղաք այցելության ժամանակ[4]: Մուհամմադ իբն Խալիդը Հայաստան էր ուղարկվել հենց հայերի խնդրանքով: Սակայն նա ամենևին էլ չէր արդարացրել այն վստահությունը, որին արժանացել էր: Տեղ հասնելուն պես նա սկսում է խարդավանքներ հյուսել և տարաձայնություններ սերմանել տեղի իշխանների միջև: Ուստի երկրի տեր Աշոտ Բագրատունին չի վարանում նրան քշելու հար-

[1] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 67:
[2] Բաղդադից գերիները վերադառնում են հայոց 307 թ. սկզբին, այսինքն՝ 858 թ. (307 թ. ըստ հայկական թվականության սկսվում է 858 թ. ապրիլի 26-ին): Աշոտի և Արքայիկի վերադարձը պետք է այդ տարում տեղադրվի: Խալիֆան իր մոտ պահել է միայն Աշոտ Արծրունի իշխանին, որին 868 թ. ստիպել է իր զորավարներից մեկին ուղեկցել Ատրպատականի Ղազվին քաղաքի դեմ արշավանքում, որից հետո Արծրունին վերադարձել է իր երկիրը: Յո. Մարկվարտը, որն արձանագրել է այդ փաստը, սխալվում է կարծելով, որ Աշոտ և Դավիթ-Արքայիկ եղբայրները Բաղդադից վերադարձել են Աշոտ Արծրունու հետ միաժամանակ՝ 868 թվականին: Ելնելով այն փաստից, որ Թովմա Արծրունու տվյալներով Գուրգեն Արծրունի իշխանը Տարոնում էր 862 թ., Յո. Մարկվարտը եզրակացնում է, որ նա էր երկրի տերը, ուստի և Բագարատի ժառանգները այդ ժամանակ դեռևս տուն չէին վերադարձել («Südarmenien und die Tigrisquellen», S. 305): Սակայն հայ պատմիչի շարադրանքը բոլորովին չի արդարացնում այդ ենթադրությունը: Թովման պատմում է, որ Գուրգեն իշխանը, որը խույս էր տվել դաժան Բուղայից, սկզբում ցանկացել է ծառայության մեջ մտնել Միքայել III կայսեր մոտ, և հետո հաստատվել է Սրինգում և Ջիլմարում (այժմ Ջուլամերկ): Շուտով նա ստացել է Վասպուրականի Մարդաստան գավառը, սակայն, չվստահելով Աշոտ Բագրատունուն, որը խալիֆայից ստացել էր Հայաստանի իշխանաց իշխանի կոչումը, նա գերադասել է թափառիկ կյանք վարել՝ շարունակ փոխելով բնակավայրը և միշտ պատրաստ լինելով բյուզանդական տարածքն անցնելու: Երբ նա իմանում է, որ իշխանաց իշխան Աշոտը ձերբակալել է Դերենիկ իշխանին՝ անմիջապես լքում է «Տարոն աշխարհը» վերջինիս օգնության հասնելու համար (**Թովմա Արծրունի**, Գ, 14): Դրանից չի հետևում, ինչպես տեսնում ենք, որ Գուրգենն այդ պահին Տարոնի տերն էր, առավել ևս՝ միակ տերը: Ավելի հավանական է, որ նա այնտեղ էր եկել և գտնվում էր գերությունից վերադարձած երկրի իշխանների պաշտպանության ներքո:
[3] **Թովմա Արծրունի**, Գ, 19, էջ 218:
[4] Նույն տեղում:

ցում[1]: Նրա կառավարումն ուրեմն պետք է որ շատ կարճ տևած լիներ: Բացի այդ, այն, անկասկած, նախորդել է հիջրայի 266 թ. (= 879 թ. օգոստոս - 880 թ. օգոստոս), այն թվականը, երբ նրա փոխարեն խալիֆան Հայաստան է ուղարկում Իսակ իբն Կունդաջիկին, որին նա Հայաստանից բացի վստահել էր նաև Մոսուլն ու Դիար Ռաբիան[2]: Իբն Խալիդի կառավարումը, հետևաբար, կարող է տեղադրվել 877-878 թվականներին:

Որքան էլ կարճատև եղած լիներ Մուհամմադ իբն Խալիդի պաշտոնավարումը Հայաստանում, այնուամենայնիվ նրան հաջողվել էր երկպառակտել Տարոնի իշխան Աշոտ կյուրոպաղատին ու Վասպուրականի իշխան Դերենիկ Արծրունուն: Դերենիկը բռնել է տվել Աշոտին, արգելափակել նրան մի ամրոցում և նրա հաջորդ է նշանակել կյուրոպաղատի եղբայր Դավիթ-Արքայիկին: Դերենիկի այս վարքագիծը բացատրվում էր մեկ այլ դրդապատճառով ևս. նա իր քրոջը՝ Մարիամին, նշանել էր Դավիթ-Արքայիկի հետ: Մուհամմադ իբն Խալիդը Դերենիկի խնդրանքով ճանաչել է նոր իշխանին[3]:

Ուստի Աշոտը պետք է որ իշխած լիներ 858-878 թվականներին: Կյուրոպաղատի պատվաստիճանը նա անկասկած ստացել էր Բյուզանդիայի և խալիֆայության ընդհարումներից մեկի ժամանակ: Հնարավոր է, որ Միքայել III-ը նրան այդ պատվաստիճանը տվել է մոտ 863 թ., և կամ Վասիլ I-ը՝ պավլիկյանների դեմ ուղղված իր արշավանքների ժամանակ՝ 871-873 թվականներին:

Դավիթ-Արքայիկը՝ կյուրոպաղատի եղբայրը, նրան է հաջորդել 878 թվականին: Ըստ Թովմա Արծրունու, նա իշխել է ընդամենը յոթ տարի և թողել Աշոտ անունով մի որդի[4]: Սակայն նրա իշխանության տևողությունը վիճելի է: Եվ իսկապես, նույն Թովման մեզ հայտնում է, որ Դավիթ-Արքայիկը մահացել է Դվին քաղաքն ավերած երկրաշարժի երկրորդ տարում. այն տարում, երբ հույները պաշարել են Կարին-Թեոդոսուպոլիս քաղաքը: Քանի որ այդ երկրաշարժը, նույն հեղինակի տեղեկությունների համաձայն, տեղի է ունեցել Սմբատի գահակալության երրորդ տարում և քանի որ այդ իրադարձությունը թվագրվում է հայոց 339 թ. (= 890 թ. ապրիլ - 891 թ. ապրիլ)[5], ապա երկրաշարժը պետք է տեղի ունեցած լիներ 893 թվականին, իսկ Կարինի պաշարումը, ինչպես նաև Դավիթ - Արքայիկի մահը տեղի են ունեցել 895 թվականին: Եթե Արքայիկը իշխել է ընդամենը յոթ տարի, ապա նրա

[1] **Թովմա Արծրունի**, Գ, 19, էջ 221-222:
[2] Tabari, III, 1942.
[3] **Թովմա Արծրունի**, Գ, 20, էջ 220-221:
[4] Նույնը, Գ, 22, էջ 231:
[5] Նույնը, Գ, 22, էջ 230-231:



իշխանության սկիզբը պետք է տեղադրել 888 թվականին: Սակայն այդ ժամանակաշրջանում նրան գահ բարձրացրած Դերենիկն արդեն մահացել էր: Մենք հակված ենք կարծելու, որ յոթ թիվը գրչական սխալ է *տասնյոթի* փոխարեն: Այդ դեպքում Արքայիկը պետք է որ իշխանական գահ բարձրացած լիներ 878 թվականին և դա համապատասխանում է մեր վերն արած ենթադրությանը[1]:

Ճիշտն ասած, Դերենիկի մահվան տարեթիվը ստույգ հայտնի չէ: Յո. Մարկվարտը ենթադրել է, որ նա մահացել է 887 թ. և որ նրա հովանավորյալը՝ Արքայիկը, իշխել է իսկապես յոթ տարի՝ 888-894 թվականներին[2]: Ըստ Թովմայի, Դերենիկը Բաղդադից վերադառնալու պահին (858 թ. սկիզբը) իսկապես տասը տարեկան երեխա էր. հետևաբար նա պետք է որ ծնված լիներ 847 թ. և քանի որ նա մահացել է քառասուն տարեկան հասակում, ապա այսպիսով մենք ստանում ենք 887 թվականը[3]:

Ավելին, Թովման հայտնում է, որ Սոփին՝ Դերենիկի կինը, մահացել է ամուսնուց մեկ և կես տարի անց և որ Աշոտ արքան՝ առաջին Բագրատունի արքան, մահացել է նրանից քիչ անց: Մեկ այլ հատվածում նա ասում է, որ Սոփին մահացել էր իր ամուսնուց յոթ ամիս (հավանաբար մեկ տարի յոթ ամսվա փոխարեն ) հետո, իսկ Աշոտը Սոփիից մեկ և կես տարի անց: Աշոտը մահացել է 890 թվականին: Եթե թույլատրելի լիներ համադրել այս երկու նշումները և դրանից հետևություն անել, որ Աշոտը մահացել էր Դերենիկի

[1] Սա միակ անգամը չէ, որ գրիչը *ժէ*-ի փոխարեն գրել է *է*: Երրորդ գրքի 18-րդ գլխում, էջ 216 կարդում ենք, որ Աշոտ Արծրունին գերության մեջ մնացել է *ե* (= 5) տարի (կարդա *է* =7), որը պետք է փոխվի և դարձվի *ժէ* (=17) տարի, քանի որ Աշոտը տուն է վերադարձել միայն 868 թվականին: Մեկ այլ հատվածում (գլ. 15, էջ 29) Աշոտի վերադարձը տեղադրված է հայոց 307 թվականին: Եթե մենք չենք ուզում պատմիչին մեղադրել հակասության մեջ, ապա պետք է ընդունենք, որ *յէ* (=307) ընթերցանությունը գրչական սխալ է *յժէ* (=317) - ի փոխարեն: Ի դեպ, նույնիսկ Կեղծ Շապուհը (էջ 57-58) Աշոտի գերեվարության տևողությունը հաշվում է 16 տարի: Իսկ Թովման այդ տեղեկության ճշգրտությունը ամրապնդում է վճռական մի փաստարկով, ասելով, որ գերեվարությունից վերադառնալուց հետո նա մինչև իր մահը իշխել է 5 տարի, որը վրա է հասել Հոռի ամսի 6-ին, հինգշաբթի օրը, այսինքն 874 թ. մայիսի 27-ին: Ուրեմն պատմիչը տեղյակ է, որ Աշոտի գերեվարությունը տևել է 852 թ. մինչև 868 թվականը:

Ինչ վերաբերում է 893 թ. տեղի ունեցած երկրաշարժին, ապա Թովման հիշեցնում է, որ այն տեղի է ունեցել Զաքարիա կաթողիկոսի ժամանակ՝ «յետ Է ամի գերութեանն հայոց»: Այստեղ ևս 7-ի փոխարեն պետք է կարդալ 17, որովհետև խոսքն այն երկրաշարժի մասին է, որն ըստ Մովսես Կաղանկատվացու (Գ, 20, էջ 61) տեղի է ունեցել հայոց տոմարի 318 թ. = 869 թվականին: Ասողիկը (Բ, 2, էջ 110) այն տեղադրում է հայոց 312 թ. = 863 թ., սակայն ակնհայտ է, որ *յժբ*-ն սխալ դրված է *յժը* (318 )- ի փոխարեն, այն տարեթիվը, որ տալիս է Մովսեսը: Այս երկրաշարժը հիշատակում են բյուզանդացի հեղինակները ևս: Նրանց տեղեկությունների համաձայն այն տեղի է ունեցել Վասիլ I-ի թագավորության երրորդ տարում, այսինքն՝ 869 թ. (**Symeon**, p. 688): Կոստանդնուպոլսում այն գրանցվել է Ս. Պողիկտոսի օրը՝ հունվարի 9-ին՝ Հայաստանում, ըստ Ասողիկի, Մեծ Պահքի ժամանակ, այսինքն մարտ ամսի ընթացքում:

[2] «Südarmenien und die Tigrisquellen», S. 323.
[3] **Թովմա Արծրունի**, Գ, 14, էջ 201-202:

մահվանից երեք տարի անց, ապա 887 թիվը որպես Դերենիկի մահվան տարեթիվը ևս կհաստատվեր[1]:

Սակայն նույն պատմիչի հաղորդած այլ տեղեկություններ արժեզրկում են այս տարեթիվը: Դերենիկը երեք որդի ուներ: Ավագը՝ Սարգիս-Աշոտը, ծնվել էր հայոց 326 թ. = 877 թ., միջնեկը՝ Խաչիկ-Գագիկը՝ 328 թ. = 879 թ., իսկ կրտսերը՝ Գուրգենը՝ 330 = 881 թվականին: Դերենիկի մահվան պահին ավագը ինը տարեկան էր, միջնեկը՝ յոթ, իսկ կրտսերը՝ հինգ[2]: Բացի այդ, Թովման հայտնում է, որ ավագը մահացել է քսանինը տարեկան հասակում Արեգ ամսի 4-ին, երկուշաբթի օրը և նրա ապրած տարիների հաշիվը նա սկսում է հայոց 325 թ. = 876 թվականից[3]:

Եթե պատմիչն ասում է, որ Աշոտը ծնվել է 877 թ. և նրա տարիքը սկսում է հաշվել հայոց 876 թ., ապա դա նշանակում է, որ Աշոտը ծնվել է 876 թ. վերջում կամ 877 թ. սկզբին: Այդպես հաշվելու դեպքում նրա մահվան տարեթիվը կլինի 876 թ. + 29 = 905 թվական:

Է. Դյուլորիեն ընդունել է 904 թ., այսինքն հակառակ պատմիչի շատ որոշակի նշման, 876 թ. նա մտցրել է իր հաշվարկների մեջ: Դրա պատճառն այն է, որ Արեգ ամսվա 4-րդ օրը ընկնում է *երեքշաբթի* օրը՝ նոյեմբերի 13-ին[4]:

Սակայն Թովմայի երկասիրության առաջին, ինչպես նաև երկրորդ հրատարակության մեջ գրված է *երկուշաբթի* և ոչ թե երեքշաբթի: Երեքշաբթի օրվան մենք հանդիպում ենք միայն մեկ օրինակում: Եվ եթե նույնիսկ ինչ-որ պատճառ կար երեքշաբթի օրը գերադասելու երկուշաբթի օրվան, ապա ավելի լավ կլիներ կարդալ Արեգ ամսվա *երեքը*՝ չորսի փոխարեն (-դ- և -գ- տառերը խառնելն ավելի հեշտ է ), նույն 905 թ. գալու համար, ուր հայկական ամսվա այդ օրը համապատասխանում է *երեքշաբթի*՝ նոյեմբերի 13-ին. դա գոնե այն առավելությունը կունենար, որ կհամապատասխաներ պատմիչի տեղեկություններից ելնող տարեթվին:

Իրականում այդ տարեթվերից և ոչ մեկը ճիշտ չէ: Թովման իսկապես հայտնում է, որ երբ Սմբատ արքան ընդհարվել էր Աբդ-ար-Ռահմանի որդու հետ, ապա նրան օգնում էր Աշոտ Արծրունին: Այդ իրադարձության թվականը ճշտված է. դա հայոց 351 թ. = 902 թ. է՝ 899 թ. գահ բարձրացած Հովհաննես Կաթողիկոսի հայրապետության երրորդ տարին: Հաջորդ տարի՝ «ի գալ միւսոյ տար(ւ)ոյն», ուրեմն 903 թվականին, նույն արքան, այս անգամ Սմբատ Սյունյաց իշխանի հետ գժտվելով դարձյալ օգնության է կանչում

[1] **Թովմա Արծրունի**, Գ, 20, էջ 229 և Դ, 1, էջ 269:
[2] Նույնը, Գ, 1, էջ 228:
[3] Նույնը, Գ, 29, էջ 249:
[4] **E. Dulaurier**, Recherches sur la chronologie arménienne, pp. 272-273.



Աշոտին: Վանից դուրս գալու պահին վերջինս հիվանդանում է: Նրա վիճակն այնքան լուրջ է լինում, որ ազգականները նրան խորհուրդ չեն տալիս ճամփա ընկնել: Սակայն ապարդյուն: Աշոտը շտապում է օգնության հասնել իր քեռուն՝ Սմբատ արքային: Սակայն հիվանդությունը բարդանում է և քառասուն օր անց նա մահանում է Նախիջևան քաղաքում[1]:

Ակնհայտ է, որ պատմիչը նրա մահը տեղադրել է 903 թվականին: Իսկ այդ տարվա առաջին օրը համընկել է ապրիլի 15-ին, իսկ Արեգ ամսվա 4-ը՝ տարվա 214-րդ օրը համապատասխանում է նոյեմբերի 14-ին, որը երկուշաբթի էր: Դրանից հետո ոչ մի կասկած չի կարող լինել, որ Աշոտը մահացել է 903 թ. նոյեմբեր ամսին: Միաժամանակ մենք հնարավորություն ենք ստանում վերահսկելու Թովմայի տված մնացած ժամանակագրական տվյալները:

Իսկապես, եթե Աշոտը մահացել է քսանինը տարեկան հասակում 903 թ., ապա նրա ծննդյան տարեթիվն ընկնում է 874 թ. վերջին կամ 875 թ. սկզբին = հայոց 324 թվականին: Պատմիչն այն տեղադրում է 326 թվին, բայց դա կարծես թե 324 թվականի թյուր ընթերցում է (*յիզ*՝ *յիդ*-ի փոխարեն), առավել ևս, որ նա Աշոտի տարիքը սկսում է հաշվել 325 թվից:

Եթե Աշոտը հոր մահվան պահին ընդամենը ինը տարեկան էր, ապա Դերենիկը պետք է որ մահացած լիներ 883-884 թթ., իսկ եթե նա տասներկու տարեկան էր, ինչպես նշվում է նույն երկասիրության վերջին գրքում[2], ապա նրա հոր մահը պետք է տեղադրվի 886-887 թվականին: Դժվար է ընտրություն կատարել այս երկու տարեթվերի միջև[3]: Երկրորդը համընկնում է այն տարեթվի հետ, որի մասին մենք խոսել ենք վերը:

Ամեն դեպքում, նույնիսկ եթե Դերենիկը ապրել է մինչև 886-887 թթ., ապա Դավիթ-Արքայիկի իշխանակալությունը այդ տարեթվից առաջ է եղել, քանի որ այդ իշխանին ճանաչել է Մոհամմեդ իբն Խալիդը, որը Հայաստանը կառավարել է 878 թվականին:

Դավիթ-Արքայիկը հայտնի իշխան էր: Նրան կոչում էին «մեծ իշխան», անվանում էին արքա կամ արքայիկ[4]: Ուրեմն նա բավականաչափ երկար է իշխել իսկական համբավ ձեռք բերելու համար:

[1] **Թովմա Արծրունի**, Գ, 28, էջ 245-248:
[2] Նույնը, Դ, 1, էջ 269:
[3] Ինչ վերաբերում է Դերենիկի երկրորդ որդուն՝ Գագիկին, որը ծնվել է 879 թ., ապա Դ-րդ դպրությունում կարող ենք կարդալ, որ նա 15 տարեկան էր, երբ սպանել էր Գագիկ- Աբումրվանին: Իսկ վերջինս զոհվել է 898 թվականին: Հետևաբար Գագիկը պետք է որ ծնված լիներ 883 թվականին: Նույնիսկ եթե մենք *ժե*-ն փոխենք և դարձնենք *ժէ* (17 տարի), ապա այս երկու թվականների միջև կմնա երկու տարվա տարբերություն:
[4] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 96: **Թովմա Արծրունի**, էջ 220 և 231:

Նրա մահվան տարեթիվն ավելի լավ է հայտնի, քան գահակալության տարեթիվը: Եվ իսկապես նա մահացել է այն տարին, երբ հույները պաշարել են Կարին-Թեոդոսուպոլիսը, այսինքն՝ 895 թվականին: Ըստ երևույթին խոսքն այն արշավանքի մասին է, որը Կոստանդին Ծիրանածինը նկարագրում է հետևյալ բառերով. «Լևոն Իմաստասեր կայսրն իմանալով, որ սարակինոսները Փասիանի (Բասենի) շրջանի եկեղեցիները դարձրել են բերդեր, նրանց դեմ ուղարկեց Արմենիակների բանակաթեմի ստրատեգոս Լալակոնին, որին օգնում էին Կոլոնեայի, Միջագետքի և Խալդիկայի ստրատեգոսները: Նրանք ավերեցին այդ բերդերը, ազատեցին եկեղեցիները և կողոպտեցին Փասիանը, որն այդ ժամանակ սարակինոսների ձեռքին էր: Հետո կայսրն ուղարկեց սխոլերի դոմեստիկոս Կատակալոն մագիստրոսին, որն արշավեց Թեոդոսուպոլիս բերդի դեմ, կողոպտեց շրջակայքը, ասպատակեց Փասիանը և հարևան ամրոցները, այսպիսով մեծ հարված հասցնելով սարակինոսներին»[1]: Կատակալոնը քաջ հայտնի այն զորավարն է, որը հաջորդել է Նիկեփորոս Փոկասին սխոլերի դոմեստիկոսի պաշտոնում: Լևոն կայսրը շատ էր գնահատում Նիկեփորոսին: Նրա հռչակավոր վարչապետ Զաուցասը Նիկեփորոսին իր դստեր Զոեի հետ ամուսնացնելու նպատակ ունենալով, նրան նշանակել էր տվել դոմեստիկոսի պաշտոնին: Սակայն Նիկեփորոսը վախենալով արթնացնել կայսեր կասկածամտությունը հրաժարվել էր այդ առաջարկից: Զաուցասը, վրդովվելով, նրան պաշտոնանկ էր արել և նրա տեղը նշանակել Կատակալոնին[2]: Այդ ամենը տեղի է ունեցել մոտ 896-897 թվականին: Նոր դոմեստիկոսին ուղարկում են բուլղարաց թագավոր Սիմեոնի դեմ: Նա պարտություն է կրում Բուլգարոփիգոնի ճակատամարտում, ուր զոհվել են պրոտովեստիարիոս Թեոդոսը, ինչպես նաև ազգությամբ հայ Աշոտ Մակրոխեյրը[3]:

Կատակալոնը, անկասկած, արաբների դեմ էր ուղարկվել այդ արշավանքից առաջ: Փասիանն այդ ժամանակ հայոց արքա Սմբատի տիրույթների մի մասն էր կազմում: Ըստ Հովհաննես Կաթողիկոսի Սմբատը զգալի կերպով ընդլայնել էր իր թագավորությունը. արևմուտքում այն տարածվում էր մինչև Կարին, հյուսիսում՝ մինչև Կովկասի ստորոտը[4]: Այդ ընդլայնումը անդադար անհանգստացնում էր Ատրպատականի Սաջյան ամիրային, որին դուր չէին գալիս Սմբատին ու Լևոն կայսերը կապող բարեկամական

[1] De adm. Imp., 45, pp. 199-200.

[2] **Theoph. Cont.**, p. 359. Գևորգ Վանականը չի խոսում Զաուցասի ծրագրերի մասին: Նա սահմանափակվում է ասելով (էջ 855), որ Կատակալոնը Նիկեփորոս Փոկասի մահից հետո նշանակվեց սխոլերի դոմեստիկոս:

[3] **Theoph. Cont.**, p. 360; **Georgius Monachus**, p. 855; **Symeon**, p. 702. պրոտովեստիարիոսին Թեոդորոս են կոչում:

[4] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 89-90:



հարաբերությունները: Երբ Աբու Սաջիի որդի Աֆշինը անսպասելիորեն հայտնվում է Նախիջևանի մոտ ու բանակում Դվինում, Սմբատը չհասցնելով ժողովել իր զորքը, ամրանում է Արագած լեռան լանջերին և ապա միայն կարողանում քշել զավթիչներին: Հնարավոր է, որ հենց Աֆշինն էր ներխուժել մինչև Փասիան և պղծել եկեղեցիները: Կատակալոնը հավանաբար օգնության էր ուղարկվել Սմբատ արքային, որն ըստ հայ պատմիչի տեղեկությունների բարեկամական հարաբերությունների մեջ էր Լևոն կայսեր հետ[1]:

Սմբատի տիրույթների վրա Աֆշինի կատարած հարձակման տարեթիվը քաջ հայտնի է: Այն տեղադրվում է հայոց 342 թ. = 893 թվականին[2]: Լալակոնի արշավանքը պետք է որ տեղի ունեցած լիներ 894 թ., իսկ Կատակալոնինը՝ 895 թվականին՝ հենց այդ տարում էլ մահացել է Դավիթ-Արքայիկը:

Արքայիկին հաջորդում է Գուրգենը նույն այդ 895 թվականին: Գուրգենն Արքայիկի զարմիկն էր, Աշոտ կյուրոպաղատի որդին: Գուրգենի իշխանությունը շատ կարճ է տևում: Ինչպես որ Սմբատի թագավորությանը սպառնում էին Սաջյանները, այնպես էլ Տարոնի իշխանությանը սպառնում էին Շայբանյան հարստության ներկայացուցիչները՝ Ամիդում հաստատված ամիրաները: Հիսեի որդի Ահմադ Շահբանյանը արդեն զավթել էր Արզանենեն, որի ամիրաները բազմաթիվ խառն ամուսնությունների հետևանքով կիսով չափ հայացել էին և չէին թաքցնում իրենց ակնկալությունները Տարոնի իշխանության նկատմամբ: Ըստ Թովմա Արծրունու «այր քաջ եւ երեւելի, և քաջայայտ ի մէջ հայաստանեայցս» Գուրգենը զոհ է գնացել Հիսեի որդի Ահմադի խարդավանքին: Ըստ Հովհաննես Կաթողիկոսի Ահմադը նրան պատերազմ էր հայտարարել, սպանել և տիրացել Տարոնին[3]: Հենց այդ ժամանակ միջամտում է Սմբատը և նամակով Ահմադից պահանջում Տարոնը հանձնել օրինական ժառանգորդ Աշոտին:

Աշոտը՝ Դավիթ-Արքայիկի որդին, Գուրգենի քեռորդին էր: Ամիրան մտադիր չէր հրաժարվելու իր նվաճումից: Սմբատի համառ պահանջները մնում են անհետևանք: Զինված ընդհարումն անխուսափելի էր թվում: Այն իրեն սպասեցնել չի տալիս:

Սմբատ արքան Աբումրվան կոչեցյալ Գագիկին նշանակել էր Դերենիկի որդիների խնամակալ: Երբ նրանք հասունանում են, նրանցից ավագը՝

[1] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 92-94:

[2] **Մովսես Կաղանկատուացի**, Գ, 21, էջ 63: Պատմիչը այդ տարեթիվը նշում է որպես Գևորգ կաթողիկոսի գերեվարության տարի, որը գերի էր ընկել Աֆշինին՝ վերջինիս արշավանքի ժամանակ:

[3] **Թովմա Արծրունի**, Գ, 23, էջ 236 ; **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 96:

Աշոտը, փորձում է իր իրավունքները բանեցնել, սակայն նրանց խնամակալը չի ցանկանում հրաժարվել իշխանությունից: Սմբատը պաշտպանում է Գագիկին, միգուցե իր եղբոր՝ Շապուհի, ազդեցության ներքո, որի դուստրը Գագիկի կինն էր: Այնուամենայնիվ նշենք, որ Սմբատը չէր ներել Աշոտ Արծրունուն՝ Ափշինի հետ նրա բարեկամությունը: Այդ բարեկամությունը հեռացրել էր նրան իր քեռուց՝ հայոց արքայից: Ոգևորվելով Սմբատի հովանավորությունից Գագիկը բանտարկել է տալիս Դերենիկի երեք որդիներին: Այդ վարքագծից վրդովված Վասպուրականի տերերը անզգուշություն են ունենում դիմելու Հիսեի որդի Ահմադին, օգնություն խնդրելով գահընկեց անելու բռնատերին: Արաբ ամիրան, որ հայ իշխանների վեճերին խառնվելու առիթ էր փնտրում, պատրաստակամությամբ արձագանքում է նրանց խնդրանքին: Բացի այդ, Սմբատ արքայի և Ահմադի հարաբերությունները լարված էին նաև Տարոնի հարցի պատճառով: Այսպիսով շատ հարմար պահ էր ներկայանում նրա վրա հարձակվելու և Վասպուրականի Արծրունիների ու Տարոնի [Բագրատունիների] օգնությամբ նրան վտարելու համար: Շապուհն էլ իր կողմից ստիպում էր Սմբատին հարգել Աշոտի՝ իր փեսայի, իրավունքները Տարոնում. իսկապես Աշոտն ամուսնացել էր Շապուհի մյուս դստեր հետ: Այսպիսով Սմբատը ստիպված էր պաշտպանել իր եղբոր երկու փեսաների՝ Գագիկ Ապումրվանի և Աշոտի, շահերը Վասպուրականում ու Տարոնում: Ըստ Հովհաննես Կաթողիկոսի տվյալների Վանա լիճը թափվող Թուխ գետի ափին տեղի ունեցած ճակատամարտում Սմբատը պարտվում է Գագիկի դավաճանության պատճառով: Թովման, հակառակը, գավառական հայրենասիրությունից դրդված փորձում է մեզ շփոթության մեջ գցել Արծրունիների վարքագծի հարցում: Սմբատի բախտից նույն տարում Հիսեի որդի Ահմադը մահանում է: Ինչ վերաբերում է դավաճան Գագիկին, ապա նա անմիջապես սպանվում է Արծրունիների կողմից[1]: Ինչպես վկայում են և՛ հայկական, և՛ արաբական աղբյուրները, բոլոր այս իրադարձությունները տեղադրվում են 898 թվականին:

Մովսես Կաղանկատվացին տեղյակ է, որ պիղծ Սաջյանը հայոց տոմարի 342 թվականին Հայաստան է արշավել ու գերեվարել Գևորգ կաթողիկոսին: Չորս տարի անց (այդ տարի հայկական թվականության առաջին օրը համընկել էր Զատկի տոնին) Սմբատ արքան գնում է Ասորիք արաբների դեմ կռվելու: Այդ արշավանքի ժամանակ զոհվում է Աշոտ Սյունին, իսկ Վասպուրականի իշխան Գագիկ Ապումրվանը սպանվում է իր զորքի կողմից: Հենց այդ ժամանակ՝ հայոց 346 թ., մահանում է նաև Գևորգ կաթողիկոսը[2]:

[1] **Թովմա Արծրունի**, Գ, 24, էջ 238; **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 97-98:
[2] **Մովսես Կաղանկատվացի**, Գ, 21, էջ 63-65:



Այս իրադարձությունները, որոնց հավասարապես իրազեկ են Հովհաննես Կաթողիկոսն ու Թովմա Արծրունին, տեղի են ունեցել Թուխի ճակատամարտի տարում, որի թվականը մեզ հայտնում է միայն Մովսես Կաղանկատվացին: Սակայն պատմիչը մի անճշտություն է թույլ տվել, որն, ի դեպ, հեշտ է ուղղել հենց իր տված տեղեկությունների շնորհիվ: Նա մեզ ասում է, որ հայոց 346 թ. (= 897 թ. ապրիլ - 898 թ. ապրիլ) առաջին օրը համընկել է Զատկի տոնին: Մինչդեռ 897 թ. հայկական տարվա առաջին օրը համընկել է ապրիլի 16-ին, իսկ Զատկի տոնը ապրիլի 4-ին էր: Ակնհայտ է, որ մեր հեղինակը սխալվել է: Ոչ թե 897 թ., այլ հաջորդ 898 թ. էր, որ հայկական թվականության առաջին օրն ու Զատկի տոնը, որն ընկել է ապրիլի 16-ին, համընկել էին: Դա համապատասխանում է Թովմա Արծրունու վկայությանը, որը Գևորգ կաթողիկոսի մահը տեղադրում է հայոց 347 թ. = 898 թվականին[1]:

Ինչպես արդեն ասացինք, Հիսեի որդի Ահմադը չի կարողանում օգուտ քաղել իր հաղթանակից: Իրապես նա մահանում է հիջրայի 285 թ. (898 թ. հունվար - 899 թ. հունվար), այսինքն հենց այն տարում, երբ տեղի էր ունեցել Թուխի ճակատամարտը[2]:

Այսպիսով, Տարոնը վերադարձվում է իր ժառանգական տերերին: Մենք տեսանք, որ 900 թ. հունվարի 1-ին երկիրը պատկանում էր Կրիկորիկիոսին: Այն ամենից հետո, ինչ մենք ասացինք, այնտեղ պետք է իշխեր Աշոտը՝ Արքայիկի որդին, որի շահերն էր պաշտպանում Սմբատը: Սակայն Կրիկորիկիոսը հաղթելով նրան բանտ էր նետել և զավթել իշխանությունը: Դա տեղի էր ունեցել, հավանաբար, Սմբատի պարտությունից հետո: Հնարավոր է, որ Ահմադը լավ էր վերաբերում Կրիկորիկիոսին, և կամ վերջինս բավական լավ հարաբերությունների մեջ էր արաբական իշխանությունների հետ: Քանի որ Ատրպատականի Ափշինի եղբայր ու հաջորդ Յուսուփի դեմ պայքարը կլանել էր Սմբատի բոլոր ուժերը, ապա վերջինս խնդրել էր Լևոն VI կայսերը բարեխոսել Կրիկորիկիոսի առջև Արքայիկի բանտարկյալ որդիների համար:

Հայկական աղբյուրները հիշատակում են Արքայիկի միայն մեկ որդուն, մինչդեռ Կոստանդին Ծիրանածինը խոսում է նրա որդիների մասին: Ուրեմն Աշոտը՝ Արքայիկի որդին, եղբայր ուներ: Կոստանդինը նրանց անվանում է Կրիկորիկիոսի ἐξάδελφοι՝ «զարմիկներ»: Հետևաբար Կրիկորի-

[1] Հնարավոր է, որ Մովսես Կաղանկատվացու տված թվականը վերցված է որևէ մի աղբյուրից, ուր հաշիվը տարվել է տեխնիկական, և ոչ թե ժողովրդական տոմարով, որից օգտվում էին, հիմնականում, հայ հեղինակները: Ըստ տեխնիկական տոմարի հայոց 346 թ. = 898 թվականին: Եվ իսկապես այդ տոմարով հայոց տոմարը սկսվում է 553 թ. հուլիսի 11-ին, իսկ ժողովրդական տոմարով այն բացվում է 552 թ. հուլիսի 11-ին:
[2] **Ibn Al Atir**, VII, p. 339. Հմմտ. **Jo. Markwart**, Südarmenien, S. 324.

կիոսի հայրը պետք է որ Արքայիկի եղբայրը լիներ։ Մենք արդեն գիտենք, որ Աշոտ կյուրոպաղատը, որի Գուրգեն որդուն սպանել էր Հիսեի որդի Ահմադը, Արքայիկի եղբայրն էր։ Ուրեմն պետք է ենթադրել, որ Արքայիկը ունեցել է ևս մի եղբայր, որը Կրիկորիկիոսի և Ապոգանեմի հայրն էր։ Եվ իսկապես, Ասողիկը հայտնում է, որ 851 թ. Բուղան գերեվարել էր Բագարատի երեք որդիներին[1], մինչդեռ մնացած հեղինակները հիշատակում են միայն երկու որդիներին՝ Աշոտ կյուրոպաղատին ու Դավիթ-Արքայիկին։ Բագարատի երրորդ որդին պետք է որ լիներ Կրիկորիկիոսի և Ապոգանեմի հայրը։

Ավելին, Կոստանդին Ծիրանածնի տվյալներով Կրիկորիկիոսն ու Սմբատը ազգականներ էին։ Դա համապատասխանում է իրականությանը. նրանք երկու եղբայրների՝ Բագարատի ու Սմբատի, թոռներն էին, ուրեմն՝ հորեղբորորդիներ։ Իսկ ինչ վերաբերում է Արքայիկի որդիների և Սմբատի ազգակցական կապին, ապա Կոստանդին Ծիրանածինը առաջիններին համարում է երկրորդի զարմիկները. դա ճիշտ կլինի այն դեպքում, եթե զարմիկ ասելով նա նկատի ունենար հորեղբորորդու որդիներին։ Ավելին, Արքայիկի որդիներից մեկը՝ Աշոտը, ամուսնացել էր Սմբատի զարմուհու՝ նրա եղբոր Շապուհի դստեր, հետ։ Ինքն Արքայիկը ամուսնացած էր Սմբատի քրոջ՝ Սոփիի, ամուսնու՝ Դերենիկի, քրոջ հետ։

Կրիկորիկիոսը, որի անունը Գրիգոր անվան փաղաքշական՝ Գրիգորիկի, ժողովրդական ձևն է, քաջ ծանոթ է պատմիչ Հովհաննես Կաթողիկոսին, որը նույնիսկ որոշ ժամանակ՝ Սմբատ արքայի ողբերգական մահից հետո, ապրել է նրա մոտ։ Կաթողիկոսը գովաբանում է այդ «զմեծ և զխոհեմ և զհանճարեղ» իշխանին։ Սմբատը, ուժասպառ լինելով Սաջյան Յուսուփի դեմ մղվող երկարատև պայքարից, վերջին փորձն է անում իր վտանգավոր թշնամուց ազատվելու համար։ Մոտավորապես 910 թ. Կապուտ բերդում փակվելուց առաջ՝ բերդ, որում նա մեկ տարի անց անձնատուր է լինելու, նա Գրիգոր Տարոնացի իշխանի (որը մեր Կրիկորիկիոսն է) միջնորդությամբ կոչ է անում խալիֆային, որպեսզի նա «շիջուցանել զհարեալ հուրն յանօրէն ոստիկանէն» և վերահաստատի խաղաղությունը։ Գրիգորն իր կարեցածն է անում, սակայն արդյունքի չի հասնում. Եգիպտոսում ծայր առած հուզումների պատճառով պահը հարմար չէր։ Այդ իրադարձությունները կլանել էին ամիրապետի ամբողջ ուշադրությունը[2]։

[1] Ասողիկ, Բ, 2, էջ 107։ Պատմիչն այս տեղեկությունը քաղել է հավաստի աղբյուրից, հնարավոր է, որ Շապուհ Բագրատունուց։ Նա ավելացնում է, որ Բուղան կոտորել էր «Վաշգինակ լեռան վրա» գտնվող Խութի բնակիչներին՝ հանգամանք, որն այլուստ անհայտ է։ Յո. Մարկվարտը առանց այս հատվածին ծանոթ լինելու ենթադրել է, որ Կրիկորիկիոսը Բագարատի երրորդ որդու որդին էր («Südarmenien», S. 324)։

[2] Հովհաննես Կաթողիկոս, էջ 127։



Եվ իսկապես, 910 թ. հունվարի 8-ին Ուբեյդ-Ուլլահը իրեն մահդի էր հայտարարել և գրավել Ալեքսանդրիան։ Խալիֆայությունը պայքարում էր Կարմատների վտանգավոր շարժման դեմ։ Խալիֆայի զորքը Եգիպտոսում էր, ուր պայքարում էր ապստամբների դեմ[1]։

Կրիկորիկիոսը մեկ անգամ ևս հիշատակվում է Կեղծ Շապուհի Պատմության մեջ, ուր ասվում է, որ Դերենիկ Արծրունին «ետ զդուստրն Գրիգորի պատրիկին Բագրատունւոյ։ Եւ էր նա կին գեղեցիկ և սիրեր զնա այրն իւր Գրիգոր պատրիկ Բագրատունին»[2]։ Միգուցե այստեղ արտացոլվել է (փաստը այլուստ հայտնի չէ) Դավիթ-Արքայիկի՝ Գրիգորի հորեղբոր, Դերենիկի քրոջ հետ ամուսնության աղոտ հուշը։

Կոստանդին Ծիրանածինը Գրիգոր Տարոնացուն մեղադրում է երկդիմասա քաղաքականություն վարելու մեջ։ Սակայն եթե նա իշխանության գլուխ էր անցել 898 թ. Թուխի ճակատամարտից հետո, ապա 900 թ. հունվարին նրա կառավարումը տակավին այնքան երկար չէր նման եզրակացության հանգելու համար։ Կարելի՞ է արդյոք ենթադրել, որ մինչ այդ նա իշխել էր Տարոնի մի մասում։ Ավելի հավանական է, որ Կոստանդին Ծիրանածինը նկատի ուներ այն քաղաքականությունը, որ վարել էր հայ իշխանը Կոստանդնուպոլսից հայրենիք վերադառնալուց հետո։

Նրա որդի Աշոտի, հետագայում Արքայիկի որդիների հետ նրա եղբայր Ապոգանեմի ճանապարհորդությունները Կոստանդնուպոլիս տեղադրվում են 898-900 թվականներին՝ Թուխի ճակատամարտից հետո և Գրիգորի ճանապարհորդությունից առաջ[3]։ Ապոգանեմը կայսերն այցելում է երկրորդ անգամ ևս, ստանում է պատրիկի պատվաստիճան և նշանադրվում Կոստանդնի դստեր հետ։ Գրիգորը նույնպես ցանկանում էր երկրորդ անգամ այցելել Կոստանդնուպոլիս և կայսեր թույլտվությունն էր խնդրում այդ բանն անելու համար։ Ծիրանածնի շարադրանքը, որն այս հատվածում պարզ չէ, հնարավորություն չի տալիս որոշելու, թե Գրիգորը գնացել էր Կոստանդնուպոլիս, թե՞ ոչ։ Մի բան հավաստի է, որ նրա խնդրանքին ընդառաջել էին և նրան էին զիջել «Բարբարոսի տունը»։ Այս ամենը տեղի է ունեցել Լևոն VI Իմաստասերի թագավորության ժամանակ։

Ռոմանոս Լեկապենոսի թագավորության ժամանակ Գրիգորը թույլտվություն է խնդրել «Բարբարոսի տունը» փոխանակել Կելցենեում գտնվող մի տիրույթի հետ։ Կայսրը նրան է տալիս Գրեգորասի «պրոաստիոն»

[1] G. Weil, Geschichte der Chalifen, II, p. 594.

[2] Կեղծ-Շապուհ Բագրատունի, էջ 49։

[3] Փիլոթեոսը իր «Կլետորոլոգիոն»-ը գրել է III ինդիկտիոնին, այսինքն՝ հենց այն տարին, երբ Գրիգորին ընդունել էին արքունիքում։ Տարոնի իշխանի ընդունելության նկարագրությունը բյուզանդական արքունիքի «Արարողությունների գրքում» արդյոք այստեղից չի՞ գալիս։

[կալվածքը], որը գտնվում էր այդ տարածքում: Սակայն Ապոգանեմի որդի Թոռնիկը բողոքում է իր հորեղբոր վարքագծի դեմ: Վերջինս յուրացրել էր իր հորը պատկանող սեփականությունը: Հայ իշխանները՝ Գագիկ Վասպուրականցին, Վիրքի կյուրոպաղատն ու իշխանաց իշխան Աշոտիկիոսը (Աշոտ Երկաթը), իրենց հերթին բողոք էին ներկայացրել այն արտոնյալ վերաբերմունքի դեմ, որին արժանացել էր Գրիգորը: Ռոմանոս Լեկապենոսը դադարեցնում է վերջինիս արծաթով թոշակ վճարել, որին նա արժանացել էր որպես Տարոնի ստրատեգոս, սակայն երեքից չորս տարիների ընթացքում շարունակում է նրան բնամթերքով նույն չափի վճարումներ կատարել, որից հետո դադարեցնում է ամեն տեսակ վճարումները: Այս բոլոր իրադարձությունները տեղի էին ունենում Լեկապենոսի թագավորության առաջին տարիների ընթացքում: Դժգոհ իշխանների շարքում էր Վիրքի կյուրոպաղատ Ադրանասերը՝ Սմբատ արքայի և նրա որդի Աշոտ Երկաթի ժամանակակից շատ հայտնի մի անձնավորություն: Կյուրոպաղատի պատվաստիճանը նրան տվել էր Լևոն Իմաստասերը[1], իսկ 899 թ. Սմբատը թագադրել էր Ադրանասերին: Վրացական ավանդության համաձայն նա մահացել է 923 թվականին[2]: Մեր բերած փաստերը նախորդում են այդ թվականին և տեղի են ունեցել 919 թ. դեկտեմբեր ամսից՝ Լեկապենոսի գահ բարձրանալուց, հետո: Հենց այդ Ադրանասերի մասին է, որ բյուզանդացի ժամանակագիրները ասում էին. τηνικαῦτα δὲ καὶ ὁ κυροπαλάτης Ἴβηρ ἐν τῇ πόλει παρεγένετο[3] [«Այդ ժամանակ իբերացի կյուրոպաղատը նույնպես գտնվում էր քաղաքում»]: Նա Կոստանդնուպոլիս է եկել, երբ մահացել է Լեկապենոսի կինը՝ Թեոդորան, և երբ թագադրվել է նրա որդու՝ Քրիստոփորոսի կինը՝ Սոֆիան, այսինքն X ինդիկտիոնի ընթացքում, 922 թվականին: Կյուրոպաղատի ճանապարհորդությունը անկասկած կապված էր Կրիկորիկիոսի պատմության հետ: Հնարավոր է, որ այն իշխանները, որոնք նախանձում էին Գրիգորի արտոնյալ վիճակին, ուղարկել էին նրան Կոստանդնուպոլիս իրենց համար բարեխոսելու:

Կրիկորիկիոսն իր խնդրած Պածածեսի կալվածքի փոխարեն ստանում է Գրեգորասի պրոաստիոնը: Ինչպես մենք գիտենք, «proasteion» եզրույթը նշանակում է անշարժ գույք, սեփականություն, տիրույթ (9): Պածածեսն

[1] De adm. Imp., 45, p.199. Այդ ʼΑδραvασή-ն Աշոտի որդին չէր, ինչպես կարծում է Կոստանդին Ծիրանածինը, այլ Դավթինն էր: Պետք չէ նրան շփոթել մեկ այլ ʼΑδραvασή-ի հետ, որը Աշոտ Կյուրոպաղատի հայրն էր և Կոստանդին Ծիրանածնի ժամանակակիցը (ibid., 46, p. 217): Այդ Աշոտը մահացել է 954 թվականին:

[2] Հմմտ. M. Brosset, Histoire de la Géorgie, I, p. 273.

[3] Theoph. Cont., p. 402; Sym., p. 733; Georgius Monachus, p. 896.



ըստ երևույթին բյուզանդացի հեղինակներին քաջ հայտնի Տածատես՝ հայերեն Տաճատ, անվան աղավաղված ձևն է:

Տաճատը պետք է որ այն հարուստ հայը լինի, որը Խալդիկայի ստրատեգոս Վոյիլասի դրդմամբ, Ադրիանոս Խալդի հետ պայմանավորվելով ապստամբել էր Լեկապենոս կայսեր դեմ: Սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասին հանձնարարվել էր ճնշել ապստամբությունը: Ապստամբները գրավել էին Պայպերտ (հայ. Բաբերդ, այսօր Բայբուրդ) ամրոցը: Դոմեստիկոսը ջախջախում է նրանց, ձերբակալում ղեկավար սպաներին և կուրացնում: Տաճատը պատսպարվում է մեկ այլ ամրոցում, սակայն քիչ անց, ստանալով անձեռնմխելիության խոստում, հանձնվում է և գալիս է Կոստանդնուպոլիս: Կայսրը նրան ներում է շնորհում, տալիս մանգլավիտի (10) կոչում և պահում իր աչքի առաջ Մանգանես պալատում: Փախուստի փորձ կատարելուց հետո, նրան կուրացնում են: Ապստամբության կազմակերպիչ Բոիլասը, որը միևնույն ժամանակ Լեկապենոսի ընկերն էր, վանք է ուղարկվում: Հովհաննես Կուրկուասը «բռնագրավում է <ապստամբների> ունեցվածքը»՝ τὰς οὐσίας αὐτὰς δημεύσας[1]:

Հենց այդ Տաճատի բռնագրավված կալվածքն էր, որ խնդրում էր Տարոնի իշխանը: Որպեսզի մեր նույնացումը հաստատվի, պետք է ճշտել այդ ապստամբության տարեթիվը:

Ժամանակագիրներն այդ միջադեպը տեղադրում են X և XI ինդիկտիոնների արանքում, այսինքն 922 և 924 թթ. միջև[2]: Մենք կարծում ենք, որ դա ապստամբներին պատժելու տարեթիվն է, իսկ բուն ապստամբությունը տեղի է ունեցել 921 թ. և ահա թե ինչու:

[1] Theoph. Cont., p. 404; Sym., 734 ; Georgius Monachus, p. 896 տալիս են Τζάντζης ձևը, որը Մակեդոնիայի մի ստրատեգոսի անունն է:

[2] Հրատարակված բնագրում մենք կարդում ենք ինդիկտիոնի X և II: Դա ակնհայտ սխալ է՝ ինդիկտիոնի X-ի և XII-ի փոխարեն: Այդ ընթերցվածի հանդիպում ենք Theoph. Cont., p. 405; Symeon, p. 735 և Georgius Monachus, p. 898: Ժամանակագիրները հայտնում են, որ այդ տարվա սեպտեմբեր ամսին բուլղարների թագավոր Սիմեոնը արշավել է Կոստանդնուպոլսի վրա: Նիկողայոս պատրիարքը մեկնել է խաղաղության բանակցություններ վարելու նրա հետ: Սակայն Սիմեոնը ցանկացել է բանակցել անձամբ կայսեր հետ և իսկապես նրան է հանդիպել հինգշաբթի օրը սեպտեմբերի 9-ին: Հենց այդ օրը խաղաղության դաշինք է կնքվել: Թեոփանեսի Շարունակողն ու Գևորգ Վանականը երկուսն էլ սխալվում են հանդիպումը տեղադրելով, մեկը՝ նոյեմբերի 9-ին, իսկ մյուսը՝ նույն ամսի 19-ին: Միայն Սիմեոնն է (էջ 736), որ տալիս է մեզ ճիշտ թվականը՝ 9 սեպտեմբերի հինգշաբթի օրը: Սակայն երեքն էլ համամիտ են, որ այդ իրադարձությունը պետք է տեղադրվի XIII ինդիկտիոնից առաջ: Սիմեոնի տված թվականը համապատասխանում է 924 թ., երբ սեպտեմբերի 9-ը ընկել է հինգշաբթի օրը, մինչդեռ նոյեմբերի 9-ը երեքշաբթի էր, իսկ նոյեմբերի 19-ը՝ ուրբաթ: Ուստի կասկածից վեր է, որ վերը հիշատակված հատվածներում պետք է կարդալ ἰνδικτιῶνος ιβʹ, ἰνδικτιῶνος βʹ-ի փոխարեն: Այդ երեք ժամանակագիրների թույլ տված սխալը նրանց միջև գոյություն ունեցող բնագրային ազգակցության հետաքրքիր օրինակ է:

Մի հայ պատմիչ հայտնում է, որ Լեկապենոսի թագավորության երկրորդ տարում բյուզանդական բանակը սխոլերի դոմեստիկոսի հրամանատարությամբ արշավել է Դվին քաղաքի վրա[1]:

Կոստանդին Ծիրանածինը գիտե այդ արշավանքի մասին: Նա այն հիշատակում է Հովհաննես Կուրկուասի Բասենում կատարած ավերածությունների կապակցությամբ. ἐπὶ δὲ τῆς βασιλείας τοῦ κυρίου ʼΡωμάνου τοῦ βασιλέως ὁ μάγιστρος ʼΙωάννης ὁ Κουρκούας ἀπερχόμενος κατὰ τοῦ κάστρου Τιβίου, εἰς τὴν δίοδον αὐτοῦ ἠφάνισεν τὴν πᾶσαν χώραν τῆς Φασιανῆς, ὡς ὑπὸ τῶν Σαρακηνῶν κρατουμένην [«Տեր Ռոմանոսի թագավորության օրոք Հովհաննես Կուրկուաս մագիստրոսը գնալով Տիբիոն բերդի դեմ, ճանապարհին ամայացրել է ամբողջ Փասիանե (Բասեն) երկիրը, քանի որ այն սարակենոսների ձեռքին էր»][2]:

Նույն հեղինակի տեղեկությունների համաձայն Բասենը Հովհաննես Կուրկուասից առաջ ասպատակել էր նրա եղբայր Թեոփիլոսը, Խալդիկայի ստրատեգոս եղած ժամանակ:

Տաճատի ապստամբության ժամանակ Խալդիկայի ստրատեգոսն էր Վարդաս Վոիլասը, որը և համարվել է հուզումների իրական մեղավորը, պաշտոնանկ է արվել և վանք աքսորվել: Նրան հաջորդել է Հովհաննես Կուրկուասը և ասպատակել Բասենը իր եղբորից առաջ, որն այն ավերել է 921 թվականին: Այդ ապստամբությունը կարծես թե կապված է Ռոմանոս Լեկապենոսի գահակալության հետ: Վարդաս Վոիլասը, որը խոշոր ավատատեր էր և Լեկապենոսի բարեկամը, հավանաբար նախանձից դրդված վճռել է ստեղծել իր սեփական իշխանությունը: Համենայն դեպս Տաճատը դարձել է Վոիլասի հավակնությունների զոհը և զրկվել իր ունեցվածքից: Ինչպես տեսնում ենք, Տաճատի պրոաստիոնը կարելի է նույնացնել հայ ապստամբից բռնագրավված կալվածքի հետ:

Ինչ վերաբերում է Գրեգորասի պրոաստիոնին, որը կայսրը զիջել էր Կրիկորիկիոսին, ապա հավաստի է մի բան, որ խոսքը Կեցենեի Թիլ գյուղի մասին չէ, որը ժամանակին մտնում էր Գրիգոր Լուսավորչի կալվածքների մեջ: Ավելի ճիշտ կլիներ այդ Գրեգորասին նույնացնել Գրեգորաս Իբերիցե-

[1] Ասողիկը (Գ, 6, էջ 170), Լեկապենոսի թագավորության սկիզբը դնում է հայոց 365 թ. = 916 թվականին: Լեկապենոսին նա վերագրում է քսաներկու տարվա թագավորություն և Կոստանդին Ծիրանածնի թագավորության սկիզբն է համարում հայոց 392 թ. = 943 -944 թ. (էջ 179): Ըստ այս վերջին տվյալների Լեկապենոսի թագավորության առաջին տարին կընկնի հայոց 370 թ. (392 - 22 = 370), կամ, եթե չհաշվենք 392 թ., ապա հայոց 369 թ. = 920 թվականին: Սա ճիշտ է, քանի որ Ռոմանոսն իշխանությունն իր ձեռքն է վերցրել 919 թ. դեկտեմբեր ամսին: Ակնհայտ է, որ 365 թ. գրչական սխալ է 368-ի փոխարեն (*յկե` յկը*-ի փոխարեն):

Ուստի և Հովհաննես Կուրկուասի` Լեկապենոսի երկրորդ տարով թվագրված արշավանքը տեղի է ունեցել 921 թվականին:

[2] De adm. Imp., 45, p. 200.



սի հետ, որին մենք ծանոթ ենք Անդրոնիկոս Դուկասի հետ կապված դրվագից: Գրեգորասին որպես սխոլերի դոմեստիկոսի հանձնարարվել էր 906-907 թթ. հետապնդել Անդրոնիկոս Դուկասին, երբ վերջինս փախուստի էր դիմել[1]: Ավելի ուշ, 914 թ. նա մի դավադրության է մասնակցել: Այդ դավադրության նպատակն էր գահ բարձրացնել Կոստանդին Դուկասին: Նա կարողացել է խույս տալ իրեն սպասող պատժից, ապաստանելով Ս. Սոֆիա եկեղեցում, սակայն նրան այնտեղից դուրս են բերել և բանտարկել Ստուդիոս վանքում[2]: Կոստանդին Դուկասը ամուսնացել էր Գրեգորասի դստեր հետ և հեղաշրջման պահին զբաղեցնում էր սխոլերի դոմեստիկոսի պաշտոնը: Հետևաբար այդ պաշտոնում նա հաջորդել էր իր աներոջը:

Շատ հնարավոր է, որ Գրեգորասի պրոաստիոնը Գրեգորաս Իբերիցեսի կալվածքը լիներ: Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում հայտնի չէ այդ անունը կրող մեկ այլ անձնավորություն: Գրեգորասի մականունը կարող է մեզ թյուրիմացության մեջ գցել և մենք կարող ենք կարծել, որ նա ծագումով իբերացի կամ վրացի էր: Սակայն վրացիները Բյուզանդիայում ավելի ուշ են հայտնվել: Գրեգորասը ծնունդով հայ էր, որն Իբերացի մականունն էր ստացել քաղկեդոնիկներին հարելու պատճառով[3]: Հետևաբար նա կարող էր կալվածքներ ունենալ Կեցենեում:

Կրիկորիկիոսի մահից հետո, նրա զարմիկ Թոռնիկը սկսել է պահանջել Գրեգորասի պրոաստիոնը, որն անցել էր Պանկրատիոսին` Տարոնացու որդուն և հաջորդին: Ռոմանոս Լեկապենոսը վեճը լուծել է նրանցից վիճահարույց կալվածքը ետ վերցնելով:

Հնարավոր է, որ հենց այդ կապակցությամբ էր Պանկրատիոսը Կոստանդնուպոլիս գնացել: Կայսրը նրան շնորհում է պատրիկի պատվաստիճան և նշանակում է Տարոնի ստրատեգոսի պաշտոնին: Ավելին, Գրեգորասի կալվածքը նրան է զիջվում որպես նրա կնոջ` Թեոփիլակտոս մագիստրոսի դստեր, ցմահ աթոռանիստ կալվածք:

Կրիկորիկիոսը իր ունեցվածքը բաժանել էր որդիների և զարմիկների միջև: Հետևաբար Պանկրատիոսը իշխում էր Տարոնի միայն մի մասի վրա: Մյուս մասը պատկանում էր նրա եղբորորդիներին` Ապոգանեմի որդիներին (τὸ δὲ ἥμισυ οἱ τοῦ ʼΑπογανέμ τοῦ πατρικίου [«կեսը` Ապոգանեմ պատրիկի <որդիներինն էր>»]): Այս հոգնակի թվից մենք եզրակացնում ենք, որ

[1] Theoph. Cont., p. 372; Georgius Monachus, p. 867; Symeon, p. 710. Անդրոնիկոսի փախուստը դնում են Լևոն VI-ի (909 թ.) թագավորության 23-րդ տարում, մինչդեռ արաբական աղբյուրները այն թվագրում են հիջրայի 294 թ. ( = 906 թ. հոկտեմբեր - 907 թ. հոկտեմբեր):

[2] Theoph. Cont., pp. 382 – 383; Sym., pp. 718 – 719; Georgius Monachus, pp. 874 - 875.

[3] Իբերիցես մականունը հիշեցնում է հայերեն *(ի)վ(ի)րացի*-ն և վրացերեն (I)beridze-ն, սակայն ոչ մի կապ չունի այդ ձևերի հետ: ʼΙβηρίτζης - ը ʼΊβηρ - ի փաղաքշական ձևն է:

Թոռնիկը Ապոգանեմի միակ որդին չէր: Թոռնիկի մահից հետո նրա այրին ու որդին տեղափոխվել են Կոստանդնուպոլիս: Կայսրը ցանկացել է տիրանալ մահացած իշխանի ժառանգությանը, սակայն Պանկրատիոսը և նրա եղբայր Աշոտը դեմ են դուրս եկել դրան և փոխարենը նրան են առաջարկել Ողնուտ քաղաքը, որպեսզի Տարոնը մնա իրենց իշխանության ներքո:

### III

Մեր շարադրած պատմության մեջ կան անձինք, որոնք որպես կայսեր գործակալներ հատուկ դեր են խաղացել հայ ղեկավարների հետ տարվող բանակցություններում և որպես այդպիսիք կարող են արժանանալ մեր ուշադրությանը: Դրանք են Սինուտեսը (Σινούτης), Թեոդորոսը, Կոստանդինը, Կրինիտեսը (Κρινίτης) և Թեոփիլակտոսը:

Սինուտեսին կոչում են ἐκεῖνος ὁ εὐνοῦχος [«այն ներքինին»] և դա նշանակում է, որ խոսքը բավականին հայտնի անձնավորության մասին է: Տարոն մեկնելու պահին նա վարում էր χαρτουλάριος τοῦ δρόμου [«փոստի քարտուղարի»] պաշտոնը: Խարտուլարիոսը դրոմոսի լոգոթետեսի գրասենյակի վեց պաշտոնյաներից մեկն էր[1]: *Սինուտես* նույն տիպի մականուն է, ինչ որ Տարոնիտես կամ Բասպուրականիտես, և նշանակում է, որ այն կրող անձը ծագում է Սյունիք հայկական նահանգից[2] (11), որը տարածվում էր Սևանա լճից մինչև Արաքս գետը: Սինուտես մականունը այլուստ մեզ ծանոթ չէ, մենք չգիտենք նաև, թե որ ժամանակաշրջանում է նա Բյուզանդիա գաղթել:

Թեոդորոսը՝ հայ թարգմանիչը, անկասկած այն անձնավորությունն է, որը, Հովհաննես Կաթողիկոսի տեղեկությունների համաձայն, Աշոտ արքայի հետ միասին եկել էր վերջինիս մոտ՝ Տարոն, նրան Կոստանդնուպոլիս ուղեկցելու համար: Կաթողիկոսը հրաժարվել է նրան հետևել, սակայն Աշոտի ժամանումը մայրաքաղաք 914 թվականին վկայված է բյուզանդական ժամանակագիրների կողմից[3]:

Հովհաննես Կաթողիկոսը նրան անվանում է Թեոդորոս Վասիլիկոս[4]: Այս անվան մեջ դժվար չէ ճանաչել հունական βασιλικός [«թագավորական»] բառը: Կոստանդին Ծիրանածինը Սինուտեսին է βασιλικός կոչում և ոչ թե Թեոդորոսին. ᾿Εξαπεστάλη βασιλικὸς ἀντ᾿ αὐτοῦ (sc. Σινούτου) ὁ

[1] Philotheos (= De cerimoniis), II, p. 718.

[2] Եվսեբիոս Կեսարացին (Praeparatio evangelica, VI, 31) հիշատակում է այս երկիրը Σαύνια անվամբ. Procop., Pers., I, 74, նրա բնակիչներին կոչում է Σουνῖται: Σινούτης-ը դրված է Σιουνίτης-ի կամ Σουνίτης-ի փոխարեն:

[3] Տե՛ս մեր «Աշոտ Երկաթ» հոդվածը՝ «Annuaire de l'Institut de Phylologie et d'Histoire orientales», t. III, 1935:

[4] Հովհաննես Կաթողիկոս, էջ 154:



πρωτοσπαθάριος Κωνσταντῖνος [«Նրա (իմա՝ Սինուտեսի) փոխարեն իբրև վասիլիկոս (իմա՝ թագավորական, կայսերական) ուղարկվել էր Կոստանդին պրոտոսպաթարը»][1]: Ինչ վերաբերում է ճշգրիտ իմաստին, ապա այն դժվար է կռահել: Լևոն Իմաստասեր կայսրը մի βασιλικός էր ուղարկել տիկին Դանիելիսի ժառանգությունը ստանալու համար[2]: Նա պատկանում էր կայսերական նոտարների դասին՝ βασιλικοὶ νοτάριοι τῆς σακέλλης [«գանձարանի թագավորական նոտարներ»], կամ τοῦ εἰδικοῦ [«հատուկ գործակալության»]: Յահյա Անտիոքցու մոտ βασιλικός-ը հարկահավաք է. երբ Սկլերոսը Բաղդադից Մելիտենե է գալիս, նա «բազիլիկից»՝ (باسليق) խլում է նրա ունեցած ամբողջ դրամը: Նույն պատմիչի տեղեկությունների համաձայն ոմն Կուլեբ 987 թ. «Մելիտենե քաղաքի բազիլիկն էր և կառավարիչը»: Երբ Վասիլը 1018 թ. գրավում է Բուլղարիան, նա երկրում կարգ ու կանոն է հաստատում և այնտեղ «բազիլիկներ է նշանակում, այսինքն՝ բոլոր գործերի և տիրույթների կառավարիչներ»,- ասում է նույն Յահյան[3]:

Թեոդորոսի հանձնարարության բնույթը թույլ չի տալիս նրան βασιλικός համարել այն իմաստով, ինչ իմաստ որ այդ բառին տալիս է Յահյան: Փիլոթեոսին ծանոթ է ὁ πρωτοσπαθάριος τῶν βασιλικῶν՝ [«վասիլիկոսների պրոտոսպաթարի»] կոչումը, որն իր գրասենյակում ուներ մի [«վասիլիկոսների»]՝ τῶν βασιλικῶν դոմեստիկոս և βασιλικοὶ μανδάτορες [«թագավորական դեսպանորդներ»][4]: Հնարավոր է, որ Թեոդորոսը այդ mandatores-ներից մեկն էր:

Կոստանդինը պրոտոսպաթար էր և δομέστικος τῆς ὑπουργίας: Փիլոթեոսի ցուցակում կա ὁ δομέστικος τῆς ὑπουργίας [«ծառայության դոմեստիկոս»]՝ պաշտոնյա, որը հայտնի է նաև Կոստանդին Ծիրանածնին: Այդ պարտականությունները հատուկ էին պալատական մասնավոր ծառայությանը, աղախնությանը[5]:

Կոստանդնին անվանում են ὁ τοῦ Λίβος՝ «Լիպսի որդի»: Լիպսը անհայտ մարդ չէ, նա կրում է նաև Կոստանդին անունը: Նա Լևոն VI կայսերը հրավիրել էր Ս. Առաքելոցի մոտ իր կառուցած եկեղեցու նավակատիքին և իր տանը տրվելիք ճաշին: Հունիս ամիսն էր: Հանկարծ փոթորիկ է բարձրանում, փչում է «լիպս կոչվող քամին»՝ ἄνεμος ὁ λεγόμενος Λίψ, որը մոլեգնում է այնպիսի կատաղությամբ, որ բազմաթիվ տներ ու եկեղեցիներ վնասվում են: Սարսափահար բնակիչները լքում են իրենց տները, կարծե-

[1] De administr. Imper., p. 184.

[2] Theoph. Cont., p. 320.

[3] В. Р. Розен, Император Василий Болгаробойца, с. 1-2, 22, 59.

[4] Philotheos (= De cerimon.), II, p. 713 et 718.

[5] De cerim., II, p. 463. Նաև Philotheos = De cerimon., II, p. 736.

լով, թե վրա է հասել աշխարհի վերջը: Բարեբախտաբար առատ անձրևը վերջ է տալիս փոքրիկին[1]:

Թվում է թե Լիպս մականունը Կոստանդինը ստացել էր այդ տհաճ իրադարձության հետևանքով: Հնարավոր է, որ նրա ինքնակալ հյուրն էր կատակով նրան տվել այդ մականունը՝ «անձրևոտ» իմաստով: Սակայն Սիմեոն Լոգոթետեսը այդ փոքրիկը տեղադրում է Լևոն VI-ի թագավորության 22-րդ տարում, ուրեմն 908 թ., չխոսելով ո՛չ Կոստանդնի, ո՛չ էլ նրա վանքի մասին[2]: Քանի որ մականունը հիշատակվում է Կոստանդնին տրված հանձնարարության մասին խոսելիս, այսինքն՝ 899 թ., ուստի և փոքրկի եռքադրական թվականից առաջ, ապա մեր վարկածը դրանից կարծես թե արժեզրկվում է: Սակայն նախ և առաջ պետք է նշել, որ Սիմեոնի երկը ժամանակագրական տեսակետից չափազանց կամայական է և վստահություն չի ներշնչում: Բացի այդ, եթե Կոստանդնի առաքելությունը եղել է 899 թ., ապա այն շարադրանքը, որը մեզ տեղեկացնում է դրա մասին, գրվել է հետագայում՝ 908 թվականին: Հետևաբար մականվան հիշատակումը բնավ չպետք է վարանման պատճառ լինի մեր ենթադրությունն ընդունելու համար: Ավելին, այն փաստը, որ այդ առաքելությունը տեղի է ունեցել հենց 899 թ., հաստատ չէ. առավել հավանական է թվում, որ այն տեղի ունեցած լիներ 909 թ., և դա մենք հիմա կտեսնենք:

Կոստանդին Լիպսը մասնակցել է Կոստանդին Դուկասի 913 թ. բարձրացրած ապստամբությանը և կայսերական պատժից խուսափել է փախուստի շնորհիվ[3]: Հետագայում նրան ներում է շնորհվում և նա ուղեկցում է սխոլերի դոմեստիկոս Լևոն Փոկասին բուլղարական արշավանքում, ուր և զոհվում է Ախելոս գետի ափին V ինդիկտիոնի օգոստոսի 20-ին, այսինքն՝ 917 թ. տեղի ունեցած ճակատամարտում[4]:

Մյուս Կոստանդինը՝ ὁ τοῦ Λίβος, որին ուղարկել էին Հայաստան, ողջ էր դեռևս Կոստանդին Ծիրանածնի օրոք և այդ ժամանակ՝ «<այժմ> անթիպատոս էր, պատրիկ և ավագ հետերիարքոս». ὁ νῦν ἀνθύπατος πατρίκιος καὶ μέγας ἑταιρεάρχης: Հետևաբար դա Կոստանդին Լիպսի որդին էր: 944 թ. դեկտեմբերի 20-ի հեղաշրջման հետևանքով հետերիարքի պաշտոնը վստահվել էր Վասիլ Պետեյնոսին կամ Պետեյնակեսին. Βασίλειον, ᾧ

¹ **Theoph. Cont.**, p. 731; **Georg.**, p. 866, ասում է, որ Կոստանդնի կառուցած վանքը գտնվում էր **Μαρδοσαγγάρη**-ում: Ըստ Ա. Մորդմանի μονὴ τοῦ Λίβος [«Լիպսի վանքը»], որը նվիրված էր Աստվածամորը, կարծես թե այժմյան Ֆեների Իզա մզկիթն է Քալիջիլար Կիոսկի թաղամասում (**A. J. Mordtmann**, Esquisse topographique de Constantinople, pp. 71 -72), հմմտ. **H. Délehaye**, Deux typica byzantins de l'epoque des Paléologues, Bruxelles, 1920, p. 178:

² **Sym.**, p. 709.

³ **Theoph. Cont.**, p. 384 ; **Georg.**, p. 877; **Sym.**, p. 718, չի նշում Կոստանդնի անունը:

⁴ **Theoph. Cont.**, p. 389; **Georg.**, p. 881; **Sym.**, p. 724.



*ἐπίκλην Πετεινὸς, πατρίκιον καὶ μέγαν ἑταιρεάρχην ... πεποίηκεν* [«Վասիլին, Պետեյնոս մականվամբ, նշանակեց ... պատրիկ և մեծ հետերիարքոս»][1]: Մեր Կոստանդինը պետք է որ հետերիարքոսի պաշտոնում Վասիլի հաջորդը լիներ այն ժամանակ, երբ Կոստանդին Ծիրանածինը մոտ 951 թվականին գրած «Արարողությունների գրքում» հիշատակում էր Տարոնի մասին:

Սակայն Կոստանդինը, որն արդեն 899 թ. հասուն դուստր ուներ, և որին կարելի էր ամուսնացնել Ապոգանեմ իշխանի հետ, 950 թ. պետք է որ շատ ծեր լիներ հետերիարքոսի պաշտոնը վարելու համար: Մենք հակված ենք կարծելու, որ Ծիրանածինը շփոթել է հորը և որդուն, և որ 899 թ. հավանաբար հայրն էր ուղարկվել Հայաստան և ոչ թե որդին: Հակառակ դեպքում պետք է ընդունել, որ Կրիկորիկիոսը Բյուզանդիա էր գնացել ոչ թե 899 թ., այլ 909 թվականին: Այդ դեպքում Ծիրանածնի հրատարակված տեքստում ἰνδικτιῶνι γ' [«ինդիկտիոնի երրորդի»] փոխարեն պետք է կարդալ ἰνδικτιῶνι <ι>γ' [«ինդիկտիոնի տասներորդի»]: Այսպիսով որդու տարիքը տասը տարով կնվազի և միաժամանակ կհարթեցվեն այն դժվարությունները, որոնց մասին մենք խոսել ենք վերը:

Կոստանդին Լիպսն ուներ մեկ այլ որդի ևս, որը կրում էր հայկական Վարդաս անունը: Դա վկայում է այդ ընտանիքի հայկական ծագման մասին և հասկանալի է դառնում, թե ինչու էր ընտրությունն ընկել Կոստանդնի վրա, որը բազմաթիվ անգամներ ուղարկվել էր Հայաստան ինքնավար իշխանների մոտ: Վարդասը ներգրավված էր 961 թ. Վասիլ Պետեյնոսի կազմակերպած դավադրությանը, որի նպատակն էր Ռոմանոս II կայսերը գահընկեց անելը[2]:

Մենք ունենք մի կնիք, որը կրում է հետևյալ արձանագրությունը. ΚΩΝΟ ΛΙΒΗΣ, այսինքն՝ Κωνσταντῖνος ὁ Λίβης[3]: Վերծանությունը կարծես թե սխալ է: Խոսքն անկասկած այն ընտանիքի մասին է, որը հետաքրքրում է մեզ: Հետևաբար պետք է կարդալ Λίβος կամ միգուցե Λίβας, որը և կտա Λίψ-ի ժողովրդական ձևը[4]: Այս կնիքի տերը հավանաբար նույնանում է Կոստանդին հետերիարքոսի՝ Կոստանդին Լիպսի որդու հետ:

Պրոտոսպաթար և հայ թարգմանիչ Կրինիտեսը՝ Κρινίτης, ներկայացնում է մի ընտանիք, որի մի շարք անդամներ հայտնի են պատմությանը: Այս Կրինիտեսի անունը հայտնի չէ: Կրինիտեսը ազգանուն է:

¹ **Theoph. Cont.**, p. 436; **Sym.**, p. 753, բաց է թողել Մարիանոս Արգիրոսի անունը, իսկ նրա պաշտոնը (κόμης τοῦ στάβλου) վերագրել է Պետեինոսին: **Georg.**, p. 921, փաղաքշական ձևով է տալիս նրա անունը՝ Պետեինակես (Πετεινάκης):

² **Դավադիրների անունները պահպանել է Կեդրենոսը՝ II, p. 341-342:**

³ **G. Schlumberger**, Sigillographie, p. 673.

⁴ **Հմմտ. H. Délehaye**, op. cit., p. 174:

Այդ ազգանունը կրողներից առաջինը եղել է Թեոփիլոս կայսեր փեսա Ալեքսիոս Մուզելե-Մուշեղը: Բյուզանդիայի հայերը սովորություն ունեին կրկնապատկելու իրենց անունները, ազգային անվանը բյուզանդական անուն կցելով: Մուզելեն կամ Մուշեղը հայկական անուն է, որն ընդունված էր Մամիկոնյանների տոհմում: Ալեքսիոս Մուզելեն (Մուշեղը) կեսար հռչակվելով, դիտվում էր որպես թագաժառանգ, սակայն նրա կնոջ մահը և Միքայելի ծնունդը խափանել էին ծրագրերը և նա իր օրերն ավարտել էր Անթեմիոս վանքում, որն ինքն էր կառուցել և ուր հեռացել էր նաև նրա եղբայրը՝ անվանի զորական պատրիկ Թեոդոսը[1]:

Այդ կրկնակի անվան ներքո հայտնի առաջին իշխանը Կոստանդին VI-ի ժամանակ Արմենիակների բանակաթեմի ստրատեգոսն էր և 790 թ. ամբարտավան Իրենեի դեմ ապստամբության կազմակերպիչը[2]:

Երրորդ Ալեքսիոսը՝ ἐκεῖνος περιβοητὸς τὸ γένος ᾽Αρμένιος [«այն տոհմով անվանի Հայը»], որը հավանաբար նույնպես կրում էր Մուզելե (Մուշեղ) անունը, աչքի է ընկել Վասիլ I-ի թագավորության ժամանակ Կիպրոսի նվաճումով, որը և նա կառավարել է յոթ տարիների ընթացքում[3]:

Վերջապես, չորրորդ Ալեքսիոս Մուզելեն հայտնվում է Ռոմանոս I Լեկապենոսի թագավորության ժամանակ. 921 թ. բուլղարաց թագավոր Սիմեոնի դեմ կազմակերպված արշավանքի ժամանակ, նա որպես դրունգար ղեկավարում էր նավատորմիղը: Զորքին օգնելու նպատակով նա ցամաք է իջնում, սակայն վերադարձին նավ բարձրանալիս ջուրն է ընկնում և խեղդվում զինվորական հանդերձանքի ծանրության պատճառով[4]:

Այս անունը կրող բոլոր անձինք ընդհանուր ծագում ունեն և մեկը մյուսի հաջորդն է, հավանաբար ուղիղ գծով: Տարօրինակն այն է, որ միայն կեսար Ալեքսիոս-Մուզելեի կապակցությամբ է, որ նշվում է Կրինիտեսների տոհմին նրա պատկանելությունը. ὁ δὲ ἀνὴρ τῆς τῶν Κρηνιτῶν κατήγετο γενεᾶς, χώρας τῆς τῶν ᾽Αρμενίων [«Այս այրը սերում էր Կրինիտեսներից, Հայոց երկրից»]: Սակայն Ալեքսիոս Մուզելեից բացի ևս հինգ հոգի կրում են Կրինիտես ազգանունը: Դրանք են՝ Պրոկոպիոսը, Գեորգը, Արոտրասը, Աբիսողոմը և Պասքալիոսը:

Պրոկոպիոսն ապրում էր Լևոն VI Իմաստասերի թագավորության ժամանակ: 889 թ. մեկ այլ հայի՝ Կուրտիկեսի, հետ նա առաջնորդում է կայսերական բանակը բուլղարաց թագավոր Սիմեոնի դեմ և զոհվում է այդ արշավանքի ժամանակ[1]:

Գեորգ Կրինիտեսը նույնպես Լևոն VI կայսեր ժամանակակիցն է: Նա հիշատակվում է Սամոնասի փախուստի կապակցությամբ. Գեորգին և Վասիլ Կամատերոսին հանձնարարվել էր հետապնդել փախստական նախարարին[2]:

Արոտրաս Կրինիտեսը պրոտոսպաթար էր և Պելոպոնեսի ստրատեգոսը Ռոմանոս Լեկապենոսի թագավորության ժամանակ: Այդ ժամանակաշրջանում մելինգների և էզերիտների ցեղախմբերում հուզումներ էին սկսվել. նրանք հրաժարվում էին կատարել իրենց հարկային պարտավորությունները: Երկրի ստրատեգոսը՝ Հովհաննեսը, անկարող է եղել նրանց կարգի հրավիրելու: Հենց այդ ժամանակ է, որ Լեկապենոսը նրան փոխարինել է Արոտրասով: Վերջինս վճռական միջոցներ է ձեռնարկել, որոնք համաձայնության են բերել ապստամբների հետ: Հետո Արոտրասը տեղափոխվել է Հունաստան, իսկ Պելոպոնեսում նրան փոխարինել է մեկ այլ հայ, որի անունն էր Վարդաս Պլատիպոդես և որը պրոտոսպաթարի կոչում ուներ: Պլատիպոդեսի Փոտինոսը՝ Φωτεινὸς ὁ τοῦ Πλατυπόδη, զորավարը, որը զոհվել է 921 թ. բուլղարների դեմ պատերազմում, այդ Վարդասի որդին էր: Նույն Վարդասի զորավարներից էր Լևոն Ագելաստոսը («Մռայլը»), որն ավելի ուշ նշանակվել է Արմենիակների բանակաթեմի ստրատեգոս: Ամենայն հավանականությամբ նա ևս հայ էր[3]:

Արոտրասն ուներ Աբիսողոմ անունով որդի՝ ᾽Αβεσσαλὼμ ὁ τοῦ ᾽Αροτρᾶ, որը 913 թ. զինվորագրվել է Կոստանդին Դուկասի կուսակցությանը և կուրացվել: ᾽Αβεσσαλὼμ-ն ըստ երևույթին Μουσελώμ-ի կամ Μουσελέ-ի թյուր ընթերցումն է: Հույն գրիչները այդ հայկական անունը ձևափոխել դարձրել են սկզբում Μουσελώμ, ինչպես տեսնում ենք «Դիգենիս Ակրիտաս» հերոսական վեպում, իսկ հետագայում՝ ᾽Αβεσσαλώμ[4]:

Πασχάλιος՝ Պասքալիոսը, որը պրոտոսպաթար էր և Լոմբարդիայի ստրատեգոսը, Ռոմանոս Լեկապենոսի հրամանով 943 թ. ներկայանում է [Ֆրանսիայի] Հուգո [թագավորին], նրա դստեր ձեռքը Կոստանդին

[1] Theoph. Cont., pp. 107-109; Sym., p. 630; Georg., pp. 794-795.

[2] Theoph., Chronographia, 6283 թվականի ներքո:

[3] Const. Porph., De Thematibus, p. 40.

[4] Theoph. Cont., p. 401; Sym., p. 733; Georg., p. 893.

[1] Theoph. Cont., p. 358; Georg., p. 853 ; Sym., p. 701, չի հիշատակում Կրինիտեսին: Կրինիտեսի անունը՝ Պրոկոպիոս, պահպանել է Կեդրենոսը՝ հատ. Բ, էջ 254:

[2] Theoph. Cont., p. 369; Georg., p. 863; Sym., p. 708, չի տալիս ո՛չ Գեորգի, ո՛չ էլ Վասիլի անունները:

[3] Const. Porph., De admin., pp. 222-223. Πλατυπόδης (Πλατυπούς-ի փոխարեն) մականունը, որ թարգմանվում է «լայնթաթ», հիշեցնում է հայկական Թաթուլ անունը, որը նշանակում է «մեծ, կամ լայն ոտնաթաթեր ունեցող անձնավորություն»: Արմենիակների բանակաթեմի ստրատեգոս Ագելաստոսի մասին տե՛ս Theoph. Cont., p. 443:

[4] Theoph. Cont., p. 384; Georg., p. 876 ունի ᾽Αβεσαλών. Sym. նրան չի ճանաչում:

Ծիրանածնի որդու՝ Ռոմանոսի, համար խնդրելու: Ավելի ուշ՝ 961 թ., Վասիլ Պետեյնոսի գլխում միտք է ծագել Ռոմանոս II-ի դեմ ապստամբելու, և նա իր դավադրության մեջ է ներքաշել Պասքալիոսին ու Վարդաս Լիպսին: Կայսրը Պասքալիոսին աքսորել է վանք, սակայն հետագայում ներել է նրա հանցանքը և դուրս բերել մենաստանից[1]: 963 թ. մենք նրան տեսնում ենք Մարիանոս Ապամբասի և Նիկողայոս Թոռնիկի կողքին ընդդեմ Նիկեփորոս Փոկասի[2]:

Կեդրենոսը մեզ հայտնում է, որ Պասքալիոսը Կրինիտես էր: Նա ասում է, որ Կոստանդին Ծիրանածինը Կրինիտեսին ազատելով Խալդիայում վարած պաշտոնից նշանակել է Կալաբրիայի ստրատեգոս. παρὰ τοῦ Πορφυρογεννητοῦ ὁ Κρηνίτης Χαλδίας τῆς Καλαβρίας γενόμενος στρατηγός [«Խալդիայի Կրինիտեսը Ծիրանածինի կողմից նշանակվեց Կալաբրիայի ստրատեգոս»]: Սարակինոսներին ետ մղելու համար Կոստանդին Ծիրանածինը Մալակենոս պատրիկի գլխավորությամբ զորք է ուղարկել Կալաբրիա. ἑνωθῆναι κελεύσας τῷ στρατηγῷ τῆς χώρας (Πασχάλιος ἦν, πρὸ μικροῦ μνημονευθείς) [«հրամայելով միանալ երկրի զորավարին (Պասքալիոսն էր, որի մասին հիշատակեցինք քիչ առաջ)»]: Դրանից բխում է, որ Կրինիտեսն ու Պասքալիոսը նույն մարդն է: Նույն հեղինակի տեղեկությունների համաձայն այդ Կրինիտեսը հարստանալու նպատակով չարաշահում է թույլ տվել. նա իր գավառից ցորեն էր գնում էժան գնով և ավելի թանկ գնով վաճառում էր դրսում: Տեղեկանալով այդ մասին՝ Կոստանդին կայսրը նրան հեռացրել է ստրատեգոսի պաշտոնից, բռնագրավել ունեցվածքը, և դժբախտն իր կյանքն ավարտել է ողորմելի կերպով[3]: Ի դեպ այս պատմությունը վատ է համաձայնեցվում այն ամենի հետ, ինչ պատմում է ինքը Կեդրենոսը՝ հենվելով իր նախորդ ժամանակագիրների հաղորդած տեղեկությունների վրա[4]: 943 թ. Պասքալիոսն արդեն պետք է որ Լոմբարդիայի ստրատեգոսը լիներ: Հետևաբար նրան Կալաբրիա էր նշանակել ոչ թե Կոստանդինը, այլ Ռոմանոս Լեկապենոսը, իհարկե, եթե մենք ընդունենք, որ այդ ժամանակաշրջանում Կալաբրիան Լոմբարդիայից անկախ մի բանակաթեմ չէր կազմում:

Եվ վերջապես այդ ընտանիքի վերջին ներկայացուցիչը հիշատակված է 1065 թ. որպես Մելիտենեի կատեպան: Երեք հարյուր զինվորներից կազմված հայերի մի խումբ հարձակվել է այդ շրջանի վրա և սպանել դրա կատեպան Կրինիտեսին[5]:

---

[1] Theoph. Cont., p. 431; Georg., p. 917; Sym., p. 748.

[2] De cerim., p. 435.

[3] Cedrenus, II, pp. 357-358.

[4] Idem, p. 319.

[5] Michel le Syrien, III, p. 164 (éd. Chabot). Այստեղ Կրինիտեսի փոխարեն գրված է *Կրինոտես*.



Եթե մենք վերադառնանք մեր թարգմանիչ Կրինիտեսին, ապա կտեսնենք, որ շատ դժվար է մեր թվարկած անձանցից որևէ մեկի հետ նրան նույնացնել: Նախ և առաջ չենք կարող նրան նույնացնել Թեոդորոս թարգմանչի հետ: Նա ապրում էր Լեկապենոսի ժամանակ, ինչպես Գեորգն ու Պասքալիոսը: Վերջինս, որին անվանում էին «քաղդեացի»՝ այնտեղ ծառայելու պատճառով, ավելի հեշտ կնույնացվեր թարգմանչի հետ, քան Գեորգը: Սակայն այդ նույնացումն անհնարին է:

Ուշադրության է արժանի այն փաստը, որ Կրինիտեսների ընտանիքում, եթե դատելու լինենք թարգմանչի անձից, չէր կորսվել հայերենի իմացությունը: Դա առավել զարմանալի է թվում, քանի որ Կրինիտեսների ընտանիքը սկիզբ էր առնում Ալեքսիոս Մուզելեից: Պետք է ասել, որ Ալեքսիոս Մուզելեներից և ոչ մեկն իրեն Կրինիտես չէր կոչում՝ կեսարից բացի: Պետք է ենթադրել, որ այս ազգանունը կցվել էր նույն տան մեկ ճյուղին, մինչդեռ մյուս ճյուղը բավարարվել է Ալեքսիոս Մուզելե անունով: Նույն բանն է տեղի ունեցել Բագրատունյաց ընտանիքում, որի մի ճյուղը յուրացրել է Տարոնացի անունը, իսկ մյուսը՝ Թոռնիկիոս անունը: Կրինիտեսների ճյուղում հայոց լեզվի պահպանումը կարող է բացատրվել միայն նույն ընտանիքի Հայաստանից եկած նոր անդամների ազդեցությամբ:

Այդ անվան ծագումը պարզ չէ: Կոստանդին Ծիրանածինը գրում է Κρινίτης, Շարունակողը՝ Κρηνίτης, Գեորգ Վանականը՝ Κρηνήτης: Եթե այստեղ պետք է տեսնել հունարեն κρήνη «աղբյուր» բառը, ապա բանասիրական մոլուցքով տառապող կայսր մատենագիրը չէր մոռանա այդ մասին նշում կատարել: Κρινίτης անունը կազմված է Ταρωνίτης, Σινούτης, Βασπαρακανίτης անունների նմանությամբ, այսինքն այն ստեղծվել է աշխարհագրական անվան հիման վրա: Այսպես, Հայաստանի Դեգիկ գավառում մի վայր կա, որը հիշեցնում է այս անունը: Դեգիկ՝ Դեգիսը, որտեղից և գալիս է Գեորգ Կիպրացու Διγισίνη (Δηγισήνη-ի փոխարեն), Կոստանդին Ծիրանածնի Τεκῆς-ը (և ո՛չ Τέκη), տեղադրված է Արզանի գետաբերանում: Այս գավառը պատկանում էր Մանուել իշխանին: Նրա ընտանյոք Բյուզանդիա տեղափոխվելուց հետո այդ գավառը կազմել է Միջագետքի բանակաթեմի կորիզը: Դեգիկի երեք բերդերից մեկը, ըստ Կեղծ Խորենացու Աշխարհացույցի, կրում էր Կռնի անունը: Հնարավոր է, որ Կրինիտեսների ընտանիքի օրրանը հենց այդ բերդն է եղել: Դեգիկի տեր Մանուելը պատկանում էր Մամիկոնյանների տոհմին: Այդ տոհմին էր պատկանում նաև Վասակը՝ այդ գավառում ապրող մեկ այլ հայ իշխան, որը Բյուզանդիա էր գաղթել Մելիասի հետ միասին: Կրինիտեսների նախնին՝ Ալեքսիոս Մուզելեն, պատկանում էր այդ նույն տոհմին, եթե դատելու լինենք նրա անունից: Դեգիկը, որի տեղադրությունը ռազմավարական տեսակետից շատ կա-

ըևոր էր, մեծ դեր է խաղացել հայ-բյուզանդական հարաբերություններում: Ինչպես մենք դեռ կտեսնենք՝ հռչակավոր Կեկավմենոսի հետնորդներից մեկը իշխում էր այստեղ դեռևս XII դարում:

Մեր վավերագրում հիշատակված վերջին անձնավորությունը Թեոփիլակտոս մագիստրոսն է, որի քրոջը կնության էր առել Բագրատ իշխանը: Թեոփիլակտոսը պատկանում էր Լեկապենոսի ընտանիքին, քանի որ հայ իշխանը խնդրել էր իրեն կնության տալ ἀπὸ τῶν βασιλικῶν συγγενίδων [«թագավորական տոհմի աղջիկներից»]: Այդ ժամանակաշրջանում Թեոփիլակտոս անունը կրող երկու անձինք էին հայտնի. մեկը հետերիարքես էր, մյուսը՝ գլխավոր ախոռապան, κόμης τοῦ στάβλου: Առաջինի հայրը ոմն Դոմինիկոս էր, որն առնչություն ուներ Ալեքսանդր կայսեր մահվանը հաջորդած իրադարձություններին և ստիպված է եղել իր պաշտոնը զիջել Հովհաննես Գարիդասին[1]: Այդ շնորհազուրկ եղած մարդը չի կարող մեր Թեոփիլակտոսը լինել: Մյուս Թեոփիլակտոսը հայտնի է միայն հետևյալ միջադեպի պատճառով: Ռոմանոս Լեկապենոսը վճռել էր Կոստանդին Ծիրանածնի դաստիարակ Թեոդոսի հարցը լուծել: Մի օր, երբ Թեոդոսը ճաշի էր հրավիրված Թեոփիլակտոսի մոտ, Լեկապենոսը վիգլայի դրունգար Հովհաննես Կուրկուասին հրամայել է գնալ և ձերբակալել նրան ու նրա եղբայր Սիմեոնին և երկուսին էլ աքսորել[2]: Այդ ժամանակ Թեոփիլակտոսը պատրիկ էր: Դեպքը տեղի է ունեցել մոտ 919 թ. Ռոմանոս Լեկապենոսի կեսար հռչակվելուց առաջ: Հետևաբար Թեոփիլակտոսի քրոջ ամուսնությունը պետք է տեղադրվի 919 թ. հետո: Այդ ժամանակաշրջանում նա հասել էր մագիստրոսի պատվաստիճանին:

## IV

Կոստանդին Ծիրանածնի շարադրանքը, ինչպես տեսանք, ընդհատվում է Պանկրատիոսի, այսինքն Կրիկորիկիոսի որդի Բագրատի հիշատակմամբ: Տարոնի պատմության շարունակությունը ուսումնասիրելու համար մեր տրամադրության ներքո են հայկական ու արաբական աղբյուրները: Սակայն հեշտ չէ տեսնել, թե ո՞վ է հաջորդել Բագրատին, նրա եղբայր Աշո՞տը, թե մեկ այլ անձնավորություն, որին արաբները կոչում են Իբն-Թոռնիկ:

Ալի-իբն-Բագաֆուր անունով մի արաբ իշխան, որը խառն էր Համդանյանների գործերին Մոսուլում, ապաստանել էր Արզան քաղաքում և օգնություն էր խնդրել հայ իշխան Իբն-Թոռնիկից: Այս ամենը տեղի է ունեցել հիջրայի 324 թ. = 935 թ. նոյեմբեր - 936 թ. նոյեմբեր:

Քիչ անց, հիջրայի 328 թ. = 939-940 թթ. հոկտեմբերին, հռչակավոր Համդանյան Սայֆ-ալ-Դոլահը մտնում է Հայաստան, գնում մինչև Կալիկալայի (Թեոդոսուպոլիս, այսօր՝ Էրզրում) շրջանը և ստիպում բյուզանդացիներին թողնել Հավճիճ բերդը, որ նրանք կառուցել էին Կալիկալայի մոտակայքում: Հաղթանակած իշխանը վերադառնում է Արզան, այնտեղ ձմեռելու: Ձյունը հալչելուն պես, այսինքն՝ 940 թ. գարնան սկզբին, նա գնում է Վանա լճի ափին գտնվող Խլաթ քաղաքը և այնտեղից ասպատակում Իբն-Թոռնիկի երկիրը, ավերում է Մուշ քաղաքն ու երկրում շատ պաշտելի մի սրբավայր[1]:

Այս երկու վկայությունները ցույց են տալիս, որ 936-940 թթ. Տարոնին տիրում էր Իբն-Թոռնիկ անունով մի իշխան: Նույն տարում՝ հիջրայի 328 թ. = 939-940 թթ. հոկտեմբերին Սայֆ-ալ-Դոլահը Մայաֆարկինից եկել է Խլաթի մոտ գտնվող Դատվան քաղաքը: Հայ իշխանները ներկայացել են նրան: Նրանց շարքում էր Գրիգորի որդի Աշոտը, որից մահմեդական իշխանը խլել էր Սասունը, Կուլպն ու Սուլեյմանը[2]: Գրիգորի որդի Աշոտը Բագրատի եղբայրն էր: Նա կարծես թե հաջորդել է Իբն-Թոռնիկին և իշխել մինչև 967 թ., ինչպես վկայում է Ասողիկը:

Սակայն ո՞վ էր այդ Իբն-Թոռնիկը: Արդյոք Ապոգանեմի որդի Թոռնիկը Տարոնում որդի՞ էր թողել, որի մասին ոչինչ չի ասում Կոստանդին Ծիրանածինը: Ավելի հավանական է, որ նա նույնանում է Գրիգորի որդի Բագրատի հետ և կրում է նաև Իբն-Թոռնիկ անունը որպես, ասենք, հայրանուն, որը վերարտադրում է նրա պապի ենթադրական անունը՝ նրա այն պապի, որին մենք չենք ճանաչում: Յո. Մարկվարտը այդ կարծիքին է և ենթադրում է, որ Իբն-Թոռնիկ անունը սխալմամբ է օգտագործված Իբն-Գրիգորի փոխարեն[3]:

Եթե մենք ուզում ենք մնալ փաստերի շրջանակներում, ապա պետք է բավարարվենք արձանագրելով, որ մի իշխան Իբն-Թոռնիկ անունով իշխել է 935-940 թվականին: Նրան է հաջորդել Աշոտը և իշխել 940 – 966/967 թվականներին:

[1] **Theoph. Cont.**, p. 386, բաց է թողել անունը և նրան անվանում է **Δομίνικος**: **Sym.**, p. 722 և **Georg.**, p. 878 գրել են «Դոմինիկոսի որդի Թեոփիլակտոս»:

[2] **Theoph. Cont.**, p. 397; **Sym.**, p. 731; **Georg.**, p. 890.



[1] **G. Weil**, II, p. 674-675; **G.W. Freytag**, Geschichte der Hamdaniden, Z.D.M.G., X, 1856, p. 467, հմմտ. **Jo. Markwart**, Südarmenien, 1930, S. 463; **В. Розен**, **Император Василий Болгаробойца**, с. 105, փախստական իշխանի անունը կարդում է Ալի-իբն-Բաջաֆար: Վեյլը և Ֆրեյտագը՝ Ալի-իբն-Աբի-Ջաֆար: Երկրորդ արշավանքի ժամանակ Սայֆ-ալ-Դոլահը հասել է մինչև Կոլոնեա: Այդ մասին վկայում է նաև Ասողիկը, Բ, գլ. 7, էջ 179:

[2] **H. F. Amedroz**, The Arabic Mss of the History of the City of Mayyafariqin, J.R.A.S. 1902, p. 797. **Jo. Markwart**, Südarmenien, S. 453 sqq.

[3] **Ibid.**, S. 463.

Ասողիկն ասում է, որ «հայոց 415 թ. = 966/67 թ. տեղի ունեցավ արևի խավարում, և այդ ժամանակ մահացավ Տարոնի իշխան Աշոտը: Իսկ բյուզանդացիները գրավեցին Տարոնը»:

«Հայոց 417 թ. = 968/969 թվին»,- շարունակում է նույն հեղինակը,- «Վարդ եղբօրորդի Նիկիփոռայ զօրու ծանու գայ յԱպահունիս, պաշարէ զՄանազկերտ քաղաք. և առեալ զնա՝ ի հիմանց բրեալ խրամատեաց զպարիսպ նորա»[1]:

Կեդրենոսը հայտնում է նաև, որ «Գրիգոր և Պանկրատիոս (= Բագրատ) եղբայրները [«շտապելով կայսեր մոտ եկան և»] կայսրությանը զիջեցին [«իրենց <պատկանող>»] Տարոն աշխարհը և փոխարենը շնորհվեցին պատրիկությամբ և բերրի հողերով». προσερρύεσαν δὲ τῷ βασιλεῖ Γρηγόριος καὶ Παγκράτιος οἱ αὐτάδελφοι τῆς ἑαυτῶν παραχωρήσαντες αὐτῷ χώρας τοῦ Ταρῶν· οὓς πατρίκιος τιμήσας καὶ κτήμασι ἐφιλοφρονήσατο πολυπροσόδοις[2]:

Այս երկու եղբայրները Աշոտի որդիներն են և նրա ժառանգները: Բյուզանդացի ժամանակագիրը Տարոնի բռնակցումը տեղադրում է այն թվականին, երբ տեղի է ունեցել արևի խավարումը՝ XII ինդիկտիոնի դեկտեմբերի 22-ին, այսինքն 968 թվականին[3]: Կայսրությունն այս բռնակցումով բացել է մի այնպիսի քաղաքականության դարաշրջան, որն աղետալի էր որքան Հայաստանի, նույնքան և Բյուզանդիայի համար: Տարոնից հետո եկել է [Տայքի] իշխան Դավիթ կյուրոպաղատի հերթը, հետո՝ Վասպուրականի: Ավելի ուշ նույն քաղաքականությունն է կիրառվել Անիի և Կարսի թագավորությունների նկատմամբ: Խոսքը, անկասկած, ինքնակամ զիջման մասին չէ, ինչպես մեզ ձգտում են համոզել բյուզանդական պատմագիրները: Ոչ ոք երբեք չի հրաժարվում իր ունեցվածքից, առավել ևս իշխանները տիրույթներից, որոնց նրանք տիրել են երկար դարերի ընթացքում: Ճշմարտությունն ավելի պարզ է. կայսրությունը բռնություն էր գործադրել: Տարոնը դարձել է այդ քաղաքականության առաջին զոհը: Նրա ժառանգական իշխանները՝ Գրիգորն ու Բագրատը, փորձել են պաշտպանել իրենց իրավունքները: Հնազանդաբար չէ, որ նրանք գնացել ու բնակություն են հաստատել կայսերական այն հողերում, որ նրանց տվել էին իրենց տիրույթների փոխարեն: Մենք տեսնում ենք, որ 975 թ. Տարոնը կառավարում էր բյուզանդացի ստրատեգոս՝ ոմն Լևոն պրոտոսպաթար, սակայն բռնակցման հարցը դեռևս փակված չէր: Առնվազն ինչ-որ վիճելի հարցեր կային, ասենք, Այծյաց բերդի խնդիրը, որը Հովհաննես Չմշկիկը հանձնել էր դրա նախկին տերերին:

[1] Ասողիկ, Գ, գլ. 8, էջ 183:
[2] Cedrenus, II, p. 375.
[3] Ibid.



Հաջորդ տարին, երբ Վարդաս Սկլերոսն ապստամբել է, ունեցվածքից զրկված Տարոնի իշխաններ Գրիգորն ու Բագրատը, ինչպես նաև Ռոմանոս Տարոնացին անմիջապես միացել են ապստամբին: Մեկ այլ իշխան՝ Զաֆռանիկը՝ Մոկքի տերը, նույնպես միացել է նրանց: Կայսրությանը ծառայող հայոց այրուձին նույնպես բռնել է Սկլերոսի կողմը: Այս տեղեկությունները մեզ հաղորդող հեղինակը՝ Ասողիկը, այդ ասելով նկատի է ունեցել, հավանաբար, Միջագետքի բանակաթեմը, որի ստրատեգոսն այդ ժամանակ Վարդաս Սկլերոսն էր: Նրան այդ պաշտոնին էր նշանակել Վասիլ II-ը Հովհաննես Չմշկիկի մահից հետո: Նշանակման վայրը՝ Խարպոտ կամ ավելի շուտ Խարպուտ, որը հայկական Խարբերդ քաղաքն է, Միջագետքի բանակաթեմի մայրաքաղաքն էր: Խարպուտ հասնելուն պես, նա ապստամբել էր կայսեր դեմ: Տարոնացիները, ամենայն հավանականությամբ, դժգոհ էին իրենց վիճակից և հույս ունեին Սկլերոսի ապստամբության շնորհիվ ետ ստանալ Տարոնը: Սակայն ապստամբն իր ձեռնարկման մեջ անհաջողության է մատնվել: Սկզբում հաղթանակելով, հետո՝ 979 թ. մարտի 24-ին, նա պարտություն է կրել և պատսպարվել Մայաֆարկինում, իսկ այնտեղից գնացել Բաղդադ: Սկլերոսի կողմնակիցները հնազանդվել են կայսերը, նրանց հետ միասին հնազանդվել են նաև Տարոնացիները: Գրիգորը մագիստրոսի պատվատիճան է ստացել:

987-988 թթ. Փոկասի ապստամբության ժամանակ Գրիգորը կայսեր կողքին էր: Վճռական պահին, երբ ապստամբը լրջորեն սպառնում էր մայրաքաղաքին, Վասիլ կայսրը Տարոնացուն հանձնարարել է Տրապիզոն մեկնել ծովով և թշնամու թիկունքում զորաշարժ կատարել նրա զորքը մայրաքաղաքից հեռացնելու համար: Այդ զորաշարժին հակահարված տալու համար Փոկասն իր որդի Նիկեփորոս Ծռվզին ուղարկել է Տայքի տեր Դավիթ կյուրոպաղատից Տարոնացու դեմ օգնություն խնդրելու համար: Կյուրոպաղատն իր ստորականերից մեկի և Բագրատի երկու որդիների՝ Խալդիկայի տերերի, առաջնորդությամբ երկու հազար ձիավոր է ուղարկել: Վերջիններս հարձակվել են Տարոնացու վրա և ստիպել են նրան նահանջել, սակայն հենց որ ստացվել է Վարդաս Փոկասի պարտության լուրը՝ նրանք տուն են վերադարձել[1]: Բագրատի որդիների անունները բարեբախտաբար մեզ են հասել մի հույն հեղինակի միջոցով: Նա ասում է. στέλλονται τοίνυν πρέσβεις παρ' αὐτοῦ Φωκᾶ πρὸς τοὺς τῆς Περσαρμενίας στρατάρχας, τὸν τε Παγκρατείαν φημι καὶ τῶν Τζουρβαλελήν (sc. Τζουρβανελήν), συνήθεις ὄντας αὐτῷ καὶ φίλους τότε [«Նույն Փոկասից դեսպաններ ուղարկվեցին Պարսկահայաստանի ստրատարքոսների մոտ, ես նկատի

[1] Яхья, в кн. В. Розен, Василий Болгаробойца, с. 24.

ունեմ Պանկրատիասին և Զուրբալելեսին (այսինքն՝ Զուրբանելեսին), որոնք նրա ազգակիցներ էին և այդ ժամանակ՝ բարեկամներ»][1]. Հետևաբար Բագրատի որդիների անուններն էին Բագրատ և Չորտվանել:

Անդրադառնալով հիջրայի 379 թ. (989 թ. ապրիլի 11 - 990 թ. մարտի 30) տեղի ունեցած իրադարձություններին, Յահյան պատմում է, որ Վասիլ կայսրը, վրդովվելով՝ ապստամբին այդ իշխանների ցույց տված օգնությունից, զորք է ուղարկել Տայքի տիրոջ Դավթի ու Բագրատի որդիների՝ Խալդիկայի տերերի, դեմ: Զորքի առաջնորդն էր ալ-Ջակրուզը, որը և սպանել է Բագրատի ավագ որդուն, իսկ կրտսերին փախուստի է մատնել[2]: Ասողիկի տեղեկությունների համաձայն Վարդաս Փոկասի կողմնակիցներից մեկը, Թոռնիկ Վանականի եղբորորդին՝ Չորտվանել մագիստրոսը, գրավել էր Դերջանի ու Տարոնի գավառները: Կայսրը նրա դեմ է ուղարկել Պորտեզ մականունով Հովհաննես պատրիկին, որը նրան երկու ճակատամարտ է տվել: Երկրորդ ճակատամարտի ընթացքում Դերջանի Բագառիճի դաշտում Չորտվանելը սպանվել է: Դա տեղի է ունեցել հայոց 439 թ. ( 990 թ. փետրվարի 11 - 991 թ. փետրվարի 11)[3]:

Այս երկու տեղեկությունները լիովին համընկնում են: Բագրատի ավագ որդին Չորտվանելն է՝ Թոռնիկի զարմիկը: Հետևաբար Բագրատը Վանականի եղբայրն էր: Ջակրուզը նույնանում է Հովհաննես Պորտեզի հետ, որի անունը աղավաղվել է, հավանաբար, արաբական շատ խառը գրության հետևանքով[4]: Չորտվանելի մահվան երկու տարեթվերը համընկնում են, եթե այդ տարեթիվը տեղադրվի 990 թ. փետրվարի 11-ից հետո, սակայն մարտի 30-ից առաջ:

Երբ Յահյան ասում է, որ Բագրատի որդիները Խալդիկայի տերերն էին, ապա Խալդիա ասելով նա, ամենայն հավանականությամբ, նկատի ունի Դերջանի շրջանը, որը կազմում էր Խալդիկայի բանակաթեմի մի մասը: Ասողիկի վկայությամբ կայսերական իշխանությունը Դերջանում ամրապնդվել է 949 թ. բյուզանդացիների կողմից Թեոդոսուպոլսի նվաճումից հետո[5]: Վիրքի իշխանները վեճի մեջ էին կայսրության հետ այդ քաղաքի և դրա շրջակայքի համար: Ի վերջո նրանք ազատներից մեկին՝ Զուրբանելեսին (Չորտվանել) հանձնարարել են մայրաքաղաք գնալ և պաշտպանել

1 И. Лазаропулос, Сборник источников по истории Трапезундской империи, составлен А. Пападопулосом-Керамевсом, СПб., 1897, с. 82 (12).

2 Яхья, с. 27.

3 Ասողիկ, Գ, գլ. 27, էջ 251:

4 Ասողիկի բնագրում Պորտեզի անունը Ժան է, որը հունարեն ʼΙάννις-ի տեղական արտասանությունն է: Այն կարելի է ճանաչել Ջակրուզ անվան առաջին մասում, որն ակնհայտորեն հանդիսանում է Ծորtrz-ի թյուր ընթերցումը:

5 Ասողիկ, Գ, գլ. 7:



իրենց շահերը[1]: Չորտվանել մագիստրոսը, որը 990 թ. զոհվել է Դերջանում, այդ Զուրբանելեսի թոռն էր և կրում էր իր պապի անունը: Հայերեն ἄζατος՝ «ազատ», «ազնվական» բառը, որն օգտագործվում է Զուրբանելեսի կապակցությամբ, ինչպես նաև Թոռնիկ հայկական անունը, որ կրում էր Զուրբանելեսի որդին՝ հռչակավոր Թոռնիկ Վանականը, որին նաև Հովհաննես էին կոչում, վկայում են, որ այդ ընտանիքը հայկական ծագում ուներ, սակայն վրացական էր համարվում, որովհետև հարել էր քաղկեդոնական կամ «վրացական» ծեսին: Զուրբանելեսը ծագումով կարծես թե Դերջանից էր: Նրա որդու Թոռնիկ անունը մեզ տեղափոխում է Տարոն և ենթադրել է տալիս, որ մորական գծով նա ազգակցական կապի մեջ էր Տարոնի Իբն-Թոռնիկի ընտանիքի հետ: Հնարավոր է, որ նրա մայրը մոտ 935 թ. Տարոնում իշխող այդ Իբն-Թոռնիկի դուստրն է եղել:

Չորտվանել մագիստրոսը, որը տիրացել էր Տարոնին, այն, հավանաբար, համարում էր իր մոր ժառանգությունը: Թոռնիկ և Չորտվանել անունները հանդիպում են նաև Սասունի իշխանական տանը՝ Տարոնի լեռնային մասում, հավանաբար Դերջանի Զուրբանելեսի տան հետ խնամիական կապերի հետևանքով: Սասունցի այդ ընտանիքի մեզ ծանոթ ամենահին անդամը Մուշեղն է: Նա ամենևին էլ չէր պատկանում Բագրատունիների տոհմին: Եթե դատելու լինենք նրա անունից, հետևաբար նա պետք է պատկաներ Մամիկոնյանների տոհմին: Այդ հարցում, ի միջի այլոց, մենք ունենք Գրիգոր Մագիստրոսի վկայությունը. նա համարում է, որ Թոռնիկը Մամիկոնյան իշխան Մուշեղի որդին է: Մուշեղը Չորտվանել մագիստրոսի ժամանակակիցն էր և հնարավոր է, որ նա ամուսնացել էր Չորտվանելի դստեր կամ քրոջ հետ: Այդ ճանապարհով Թոռնիկ և Չորտվանել անունները կարող էին անցած լինել այդ ընտանիքին:

Ժամանակին Մամիկոնյանների ընտանիքին պատկանած Տարոնի շրջանին դարեր շարունակ տիրել են Բագրատունի իշխանները: X դարի վերջին սրանց ասպարեզից հեռանալուն զուգահեռ, իրենց նախկին տիրույթում կրկին հայտնվում են Մամիկոնյանները: Որտեղի՞ց էին նրանք գալիս: Այն ժամանակաշրջանում, երբ Տարոնում իշխում էին Բագրատունիները, Մամիկոնյանների մի ճյուղ հաստատվել էր Տարոնի արևմտյան մասում, Արածանի գետի ստորին հոսանքում: Մանուել իշխանը և նրա որդիները, Վասակ իշխանը և նրա եղբայրները, որոնք Բյուզանդիա են գաղթել Լևոն VI կայսեր թագավորության ժամանակ, պատկանում էին այդ ճյուղին: Քանի որ Մուշեղի որդի Թոռնիկն իրեն անվանում էր ոչ միայն Սասունի, այլև Աշմուշատ (հին Արշամաշատ) բերդի տերը, ապա պետք է կարծել, որ

1 Const. Porph., De admin., p. 202.

Մուշեղի ընտանիքը սկիզբ է առել Մամիկոնյանների այդ ճյուղից և որ վերջինս, քաշվելով Սասնա անառիկ լեռները, կարողացել էր գոյատևել և իշխում էր Արշամաշատից մինչև Տարոն ձգվող այդ ընդարձակ տարածքի վրա:

Մուշեղի մասին մենք դժբախտաբար անունից բացի այլևս ոչինչ չգիտենք: Նրա որդի Թոռնիկն աչքի է ընկել իր պայքարով: 1058 թ. նա սելջուկ-թուրքերին քշել է Տարոնից, երբ նրանք Մելիտենեն կողոպտելուց հետո եկել և բանակել են այդ շրջանում: Արիստակես ու Միքայել Ասորին խոսում են այդ քաջագործության մասին, որը նրանք վերագրում են սասունցիներին, առանց հիշատակելու Թոռնիկի անունը: «Միննույն սասունցիները նրանց նկատելով,- գրում է ասորի պատմիչը,- իջան ընդառաջ և շրջապատեցին բոլոր կողմերից, փակելով բոլոր արահետներն ու ճանապարհները, և նրանք այնտեղ մեռան սովից ու ցրտից, իսկ ովքեր կենդանի մնացին՝ սպանվեցին սասունցիների կողմից, և նրանցից և ոչ մեկը չկարողացավ խույս տալ»[1]: Իսկ Մատթեոս Ուռհայեցին ասում է, որ սասունցիներին (սանասունցիներին) առաջնորդում էր Թոռնիկը՝ Մուշեղի որդին:

Թոռնիկը հռչակավոր Փիլարտոսի վտանգավոր ախոյանն էր, սակայն հայոց 521 թ. (=1072-1073 թթ.) նա զոհ է գնացել այդ նենգ իշխանի խարդավանքին:

Թոռնիկից հետո մնացել են նրա երկու որդիները՝ Չորտվանելն ու Վասակը[2]: Չորտվանելին հաջորդել է նրա որդի Վիգենը, որն ամուսնացել էր Արծրունյաց տան մի իշխանուհու՝ Հմայակ Մոկացու դուստր՝ Մելիքսեթիի հետ, որից նա երեք որդի և մեկ դուստր է ունեցել: Դրանք էին Գրիգորը, Չորտվանելը († 1165 թ.), Կատան († 1166 թ.) ու Վասակը: Չորտվանելն ամուսնացել էր Գրիգոր և Ներսես կաթողիկոսների եղբայր Բարսեղի դուստր Վանինեի հետ և ունեցել է երեք որդի: Դրանք էին Բարսեղը, Շահնշահն ու Թոռնիկը: Այս տոհմաբանությունը մեզ է հասել մի Ավետարանի հիշատակարանի շնորհիվ, որը Մելիքսեթի իշխանուհին պատվիրել էր 1169 թ.՝ 1166 թ. մեռած իր դուստր Կատայի հիշատակը հավերժացնելու համար[3]: Իշխանուհու ամուսին Վիգենը բավականաչափ ժողովրդականություն էր վայելում՝ «Դավիթ և Մհեր» հերոսական դյուցազներգության մեջ տեղ գրավելու համար, ուր նա, անկասկած, ներկայացնում է ամբողջ տոհմը: Վարդան պատմիչը մեզ է հասցրել էպիկական մի դրվագ Վիգենի կյանքից: Հան-

¹ **Արիստակես Լաստիվերտցի**, գլ. 21; **Michel le Syrien,** III, p. 159 (éd. Chabot); **Մատթեոս Ուռհայեցի**, գլ. 81:

² **Մատթեոս Ուռհայեցի**, գլ. 106 և 107:

³ Այդ հիշատակարանը հրատարակել է Գ. Սրվանձտյանցը, Թորոս Աղբար, էջ 308 և մասնակիորեն վերարտադրել Յո. Մարկվարտը «Südarmenien» գրքում (S. 518):



ձին Խլաթում նստող մահմեդական իշխանավորի, որն իրեն անվանում էր Շահ-ի-արմեն՝ «Հայոց արքա», Սասունի իշխանը վտանգավոր թշնամի ուներ: Մի օր մահմեդական տիրակալը Սասուն է մտնում և խնջույք կազմակերպում մի գյուղում: Վիգենը, որին նախազգուշացրել էին, գալիս և պաշարում է այն տունը, ուր գտնվում էր այդ տիրակալը: Ուրախ իշխանի հյուրերից մեկը ծաղրելով երկրի տեր Վիգենին բացականչում է «Հե՜յ, Վիգեն, ո՞ւր ես»: Նրանց զարմանքին չափ չի լինում, երբ լսում են Վիգենի ձայնը, որը պատուհանի տակից պատասխանում է. «Ահա և ես: Աստծո ողորմածությամբ ես այստեղ եմ»: Նա հարձակվում է Շահ-ի-արմենի վրա, բռնում է նրան և բանտարկում իր ամրոցում: Սակայն շուտով Վիգենն ազատում է նրան՝ ստիպելով բարեկամության երդում տալ[1]:

Նույն պատմիչի տեղեկությունների համաձայն Շահ-ի-արմենը, որի անունն էր Ամիր-Միրան, իշխանության գլուխ էր անցել հայոց 581 թ. (=1132/33 թթ.) և վախճանվել հայոց 634 թ. (=1185/86 թ.): Վիգենն ավելի շուտ էր մահացել, և նրան հաջորդել էր նրա թոռը՝ Շահնշահը: Քանի որ Շահ-ի-արմենը ժառանգ չուներ, ապա ոմն Բեկթեմուր՝ նրա տոհմի առաջնորդը, հավակնում էր նրան հաջորդելու: Երբ գահը զավթելու նպատակով նա անցնում էր Սասունով, Շահնշահը գերեվարում է նրան և ազատ է արձակում Տարոնի շրջանի, կամ, ինչպես գրում է Միքայել Ասորին, իր հոր ամրոցներից մեկը՝ Թարջյան բերդը, որպես փրկագին ստանալուց հետո[2]: Մահմեդական իշխանն առանց որևէ խղճի խայթի խախտում է իր երդումն ու Շահնշահից պահանջում է ոչ միայն զիջած ամրոցները, այլև գրավում է ամբողջ Սասունը: Բացի այդ, Վարդանը վկայում է, որ արդեն Շահ-ի-արմենն իր իշխանությունն էր պարտադրել այդ երկրին և որ նա այն խաղաղ պայմաններում էր պահել վաքսուն տարուց ի վեր: Հայերի բազմաթիվ սեպուհներ բերդերի տերեր էին Սասնա լեռներում. 1174 թ. թուրքերը գրավում են այդ ամրոցները, սակայն Մայաֆարկինի ամիրայի ճնշման ներքո նրանք ստիպված են լինում դրանք հանձնել Խլաթի տեր Շահ-ի-արմենին[3]: Այդ ամիրան կարծես թե Շահ-ի-արմենի զորականներից մեկն էր, հնարավոր է, որ հենց Բեկթեմուրը, որի մասին մենք խոսել ենք վերը:

Հայոց 638 թ. (=1189/1190 թ.) Չորտվանելի որդիները լքել են Սասունը՝ Կիլիկիայի իշխան Լևոն II-ի մոտ գնալու համար: Նրանց հեռանալու պատճառը, անկասկած սելջուկյան ցեղերի կատարած ավերածություններն էին, որոնք սկսվել էին սելևկյան տոմարի 1496 թ. (=1185 թ.) և տևել ութ տարի: Սելջուկ-թուրքական վաչկատուն ցեղերը ընդհարման մեջ են մտել քոչվոր

¹ **Վարդան**, էջ 123-124:

² **Michel le Syrien,** III, p. 396.

³ Ibid., p. 361.

կյանք վարող քրդերի հետ, որոնք փորձել են զավթիչներին քշել իրենց տարածքից, սակայն պարտություն էին կրել և ապաստանել քրիստոնեական գյուղերում: Նրանց հետապնդող սելջուկները սկսում են ջարդել նաև քրիստոնյաներին, որոնց մինչ այդ նրանք խնայում էին: «Նրանք կեղեքում էին Մեծ Հայքի բոլոր ժողովուրդներին: Քրդերին ջարդելուց հետո, նրանք գերեվարեցին հայերին. նրանք քսանվեց հազար մարդ քշեցին և վաճառեցին որպես ստրուկ. նրանք այրեցին գյուղերը և հրդեհեցին Ս. Կարապետ հոչակավոր վանքը՝ այնտեղ գտնվող վանականներին սպանելուց և ամբողջ գրքերն ու գույքը կողոպտելուց հետո»[1]:

Ս. Կարապետը Նախավկայի հռչակավոր վանքն է Մուշի մոտ՝ Տարոնում: Ամենայն հավանականությամբ, Չորտվանելի որդիները երկիրը թողել և Կիլիկիա են տեղափոխվել այդ ավերածությունների պատճառով: Չորտվանելի որդիներից մեկը Շահնշահն էր: Միքայել Ասորին մի տարօրինակ պատմություն է պատմում, ըստ որի Շահնշահը 1496 թ. (=1185 թ.) Ռումկալեում էր գտնվում իր քեռու՝ Գրիգոր [Դ] կաթողիկոսի մոտ: Կաթողիկոսը Տարսոն է գնում, իսկ Շահնշահն օգտվելով նրա բացակայությունից ապստամբում է նրա դեմ և մտադիր լինում Ռումկալե ամրոցը հանձնել սելջուկներին: Սակայն կաթողիկոսը տեղեկանալով շտապ վերադառնում է, հավաքում իր զինվորներին և պաշարում ամրոցը: Ապստամբը ներկայանում է կաթողիկոսին և հաշտվում նրա հետ[2]: Նույն պատմիչը մեզ տեղեկացնում է, որ Բեկթեմուրը Խլաթին տիրանալու նպատակով Սասնա լեռների մոտով անցնելիս «հանդիպեց հայոց կաթողիկոսի զարմիկին, որը փախել էր Ռումկալեից»[3]: Կարելի է ենթադրել, որ Շահնշահը Ռումկալեում է եղել և ապստամբել կաթողիկոսի դեմ Կիլիկիա գնալու ճանապարհին՝ 1189/1190 թթ. իր երկիրը լքելուց հետո, սակայն պատմիչի որոշակի շարադրանքը թույլ չի տալիս նման ենթադրություն անելու: Ինչևիցե, 1189-1190 թթ. Սասունի վերջին իշխանները գնացել են Կիլիկիա: Լևոն II-ը իր եղբայր Ռուբենի դստերը՝ Ալիսին, կնության է տվել նրանց ավագ եղբորը՝ Հեթումին, և նրան հանձնել Մսիս (Մամեստիա) քաղաքը. Շահնշահը ստացել է Սելևկիա քաղաքը: Մենք տեսանք, որ Շահնշահի ավագ եղբոր անունն էր Վասիլ, իսկ կրտսերինը՝ Թոռնիկ: Հետևաբար Հեթումը Վասիլի երկրորդ անունն էր: Թոռնիկի ճակատագիրը անհայտ է: Նրանց Կիլիկիա գալուց երեք տարի անց՝ 1193 թ. մայիսի 16-ին

[1] **Michel le Syrien, III, p. 401.**
[2] **Ibid., p. 395.**
[3] **Ibid., p. 396.**



վախճանվում է Գրիգոր Տղա կաթողիկոսը[1]: Նույն թվականին մահանում են նաև նրա զարմիկներ Հեթումն ու Շահնշահը:

1199-1201 թթ. ընդօրինակված հայկական մի ձեռագրում պահպանվել է մի հրովարտակ, որով այդ իշխանն իրեն հայտարարում է Տարոնի և ամենայն հայոց իշխան Չորտվանել, քաջ Տաճատ Մամիկոնյանի որդի. «իշխանի Տարաւնոյ եւ ամենայն հայոց Չորտուանէլի որդւոյ Տաճատայ քաջի Մամիկոնոյ»: Այս իշխանը, ինչպես կարդում ենք վավերագրում, երկար տարիներ իշխել է Տարոնում՝ իր նախնիների երկրում: Նա հույն միապետի հրամանով դիմագրավել է քրիստոնեական եկեղեցու կատաղի թշնամիների՝ իսմայելյանների, սպառնալիքը: Նա արիաբար պայքարել է նրանց դեմ իր ամբողջ կյանքի ընթացքում, մինչև խոր ծերություն ու ապահովել իր իշխանության ներքո գտնվող երկրի խաղաղությունը: Եվ վերջապես, իր հիշատակը հավերժացնելու համար նա գնացել է Ս. Ղազարոսի վանքը՝ մեծ հռետոր Պողոսի (13) մոտ, որն այդ ժամանակ շատ ծեր էր, և նրան հայտնել այդ սուրբ վայրում թաղված լինելու իր ցանկությունը: «Իր գերեզմանի համար տրամադրվող հողակտորի դիմաց նա վանքին կտակեց բազմաթիվ հողեր» և դրանց թվում իր ծննդավայր Բերդակ գյուղը: Այդ ամենն արվում էր նրա հոր՝ Տաճատ Մամիկոնյանի, նրա մոր՝ Զարմանդուխտի, ինչպես նաև այդ երկրում իշխած իր նախնիներ, քաջ այրեր Վեզենի (Վիգե՞ն) և Միհրի հիշատակը հավերժացնելու նպատակով[2]:

[1] **Սմբատ Սպարապետ**, էջ 105-106: Պետք է կարդալ *զկնի երից ամաց* - «երեք տարի անց» և ոչ թե *ամսոց*, որը տպագրի ընթերցանությունն է:

[2] **Բ. Սարգիսեան**, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատ. Բ, Վենետիկ, 1924, հիշ. 473-475: Այս ձեռագիրը *Տոնական*՝ ἑορταστικόν, կոչվող գրքի օրինակ է, որը գրվել է Բաբերդ քաղաքի պատվավոր մի քաղաքացու՝ Աստվածատուրի, պատվերով՝ Վարդան Կարնեցու կողմից, որը երեք տարի է ծախսել այդ ստվար հատորը ընդօրինակելու համար: Նա արդեն ավարտին էր մոտենում, երբ Սեբաստիայի ամիրան արշավեց Էրզրումի վրա՝ ցանկանալով ներխուժել Հայաստան և Վրաստան, սակայն պարտություն կրեց և ետ մղվեց վրաց բանակի քաջ զորավարներ Զաքարեի և Իվանեի կողմից: Նույն տարին Բաբերդի ամիրա Ալադինը գերեվարել է Աստվածատուրին՝ ձեռագրի տիրոջը, և սպանել նրան, թալանվել ունեցվածքը, և մնացել է միայն այդ ձեռագիրը: Այդ ժամանակ նույն քաղաքի դատավորը, պատճառաբանելով, որ սպանվածը իրեն պարտք էր 300 պատատ, բռնագրավում է ձեռագիրը: Նա այն տանում է Խլաթ, ուր և պահում է այդ արժեքավոր ձեռագիրը առանց որևէ մեկին տեղեկացնելու: Վերջապես Մշո Ս. Ղազարոս վանքի վանականները տեղեկանում են դրան և մեկ տարի տևող բանակցություններից հետո նրանց հաջողվում է գնել ձեռագիրը: Դատավորը գրքի դիմաց պահանջում էր 5000 դիրհեմ, սակայն ի վերջո նա այն զիջում է 4000 դիրհեմով: Հետաքրքրաշարժ պատմությանը հետևում է մի հիշատակարան, ուր առաջին դեմքից պատմվում է, թե ինչպես է ձեռագիրը կազմվել և հանձնվել Ս. Ղազարոս վանքին աշխարհագործության 6630 թ., Ք. թ. 1204 թ. և հայոց 654 թվականին:

Աշխարհագործության տարին (6630-5508=1122) չի համապատասխանում մյուս երկու տարեթվերին: Արդյոք դա սխալ է, թե՞ ավելի շուտ մեր ձեռագրի գաղափար օրինակի տարեթիվն է, որը, ամենայն հավանականությամբ, սխալմամբ պահպանել է Վարդան գրիչը և որը հիշատակարանի հեղինակ կազմարարը, որին մենք, անկասկած, պարտական ենք նաև ձեռա-

Հրովարտակն ավելի հին է, քան այն ձեռագիրը, որին այն կցված է: Հայ գրականության պատմության մեջ Պողոս վանականը հայտնի է իր դավանաբանական աշխատություններով: Մատթեոս Ուռհայեցին, որը շատ լավ գիտե նրան և գովաբանում է, վկայում է, որ նա մահացել է հայոց 572 թ. (1123-1124 թթ.) և թաղվել Տարոնի Ս. Ղազարոս վանքում[1]: Հետևաբար մեր հրովարտակը նախորդում է այդ տարեթվին:

Նույն հեղինակը հիշատակում է նաև մի իշխանի, որի անունն էր Աբլասաթ (Աբու'լ-Ասադ) և որը Տարոնի իշխան Տաճատի որդին էր: Նա ծառայում էր Գող Վասիլին: Հետո գնացել է Կիլիկիա և մահացել հայոց 561 թ. (=1112-1113 թթ.)[2]: Այս Տաճատը նույնանում է այն Տաճատի հետ, որը մեր հրովարտակում նշված է որպես Չորտվանելի հայր: Ուրեմն Աբլասաթը Չորտվանելի եղբայրն է, որը թողել էր իր Տարոն աշխարհը սկզբում Գող Վասիլին ծառայելու համար, իսկ հետո Լևոն I-ին՝ Կիլիկիայում: Այն ժամանակ, երբ Չորտվանելը իր հրովարտակն էր գրում, և՛ ինքը, և՛ Պողոսը բավական ծեր էին և դա ստիպում է ենթադրել, որ նվիրատվությունն արվել էր Պողոսի մահից քիչ առաջ, որը վրա էր հասել 1123-1124 թվականին: Այդ ենթադրությունը մեզ հնարավորություն է տալիս հրովարտակը թվագրել 1122 թվականով՝ մեր ձեռագրի բնագրի ենթադրյալ տարեթվով, ինչպես մենք ենթադրել էինք վերը արված նշման մեջ: Չորտվանելը հայտարարում է, որ ինքը պայքարել է խմայելյանների դեմ բյուզանդական կայսեր հրամանով, իսկ դա մեզ տանում հասցնում է Մանազկերտի ճակատամարտի

գրին պատահած դիպվածների շարադրանքով, նույնպես հետագայում պահպանել է: Հայկական տարեթիվը, որը համապատասխանում է 1205 թ. հունվար - 1206 թ. հունվար բոլորովին չի համընկնում քրիստոնեական տոմարի նշված տարեթվին: Պետք է կարդալ *ռծգ* 653, *ռծդ* 654-ի փոխարեն: Այդ դեպքում համապատասխանությունը կատարյալ կլինի՝ 1204 թվականին: Դա գիրքը կազմելու տարեթիվն է, սակայն այն օրինակվել է երեք տարի ավելի վաղ, այսինքն 1201 թ., կամ ավելի շուտ ընդօրինակությունն ավարտվել է այդ թվականին: Իրականում Ալադինը ոչ այլ ոք է, եթե ոչ Էրզրումի շրջանի ամիրա Ալահ-ադ-Դինը, որը մահացել է ճիշտ հիջրայի 558 թ. = 1201 թ., և նրա հետ մարել է այն հարստությունը, որը հիմնադրել էր նրա պապ Սալիքը (**E. Sachau**, Ein Verzeichnis Muhammedanischer Dynastien, Abhandl. D. Preussischen Akad. D. Viss., 1923, Phil.-hist. Klasse, № 1): Ակնհայտ է, որ ձեռագիրն ընդօրինակվել է 1199-1201 թթ., ամիրայի մահից առաջ և ոչ թե 1201-1205 թթ., ինչպես պնդում է Բ. Սարգիսյանը. դա կազմելու տարեթիվն է:

Ամիրան սկզբում պահանջում էր 500 պատատ, հետո 5000 դիրհեմ: Կարելի է ենթադրել, որ երկու գները հավասար էին, ուստի և 1 պատատն արժեր 10 դիրհեմ: Դա հենց դինարի՝ ոսկե դրամի, և դիրհեմի՝ արծաթե դրամի, արժեքն է: Դրանից հետևում է, որ պատատը ոսկե դրամ է: Ինձ թվում է, որ պատատ մեծության մեջ կարելի է ճանաչել բյուզանդական բոտանիատ մեծության կրճատ ձևը: Դա ոսկե դրամ էր, որը կրում էր Վոտանիատես կայսեր անունը: Այդ անունը արտասանվում էր *Պոտանիատ*, ինչպես տեսնում ենք վրացերենում՝ *պոտռնատ*, կամ *բոտինատ* (**M. Brosset**, Hist. de la Géorgie, Introduction, p. LXXXVIII):

[1] **Մատթեոս Ուռհայեցի**, գլ. 238:

[2] Նույնը, գլ. 202 և 211:



ժամանակաշրջանը և մտածել է տալիս, որ երիտասարդ հասակում նա մասնակցել էր Ռոմանոս Դիոգենեսի արշավանքին: 1071 թ. ճակատամարտից հետո, որը վերջ է տվել Բյուզանդիայի գերիշխանությանը Հայաստանում, կայսրերի հրամանները այլևս իրավական ուժ չունեին:

Սակայն մենք գիտենք, որ 1073 թ. Թոռնիկի մահից հետո նրան հաջորդել է նրա որդին՝ Չորտվանելը: Վերջինիս իշխանության ժամանակաշրջանը համընկնում է Տաճատի որդի Չորտվանելի իշխանության ժամանակաշրջանին: Ի՞նչ կապ կա նույն անունը կրող այս երկու իշխանների միջև: Թոռնիկն ուներ երկու որդի՝ Չորտվանել և Վասակ: Կարելի կլիներ ենթադրել, որ Վասակը, ըստ ժամանակի սովորության, կրում էր նաև արաբական Աբուլասաթ անունը: Դա թույլ կտար նույնացնել երկու Չորտվանելներին, ենթադրելով, որ Թոռնիկի իսկական անունը եղել է Տաճատ և դա, միգուցե, եղել է նաև Թոռնիկի պապի անունը և պետք է որ հենց այդ պատճառով նրան «Թոռնիկ» կոչած լինեին: Սակայն Մատթեոս Ուռհայեցին կարծես թե տարբերակում է Թոռնիկին Տաճատից, իսկ դա չի նպաստում մեր ենթադրությանը: Մի բան հաստատ է. Տաճատի որդի Չորտվանելը պատկանում է այն ընտանիքին, որին պատկանում է Թոռնիկը և, հնարավոր է, որ ներկայացնում է անուղղակի մի ճյուղ, որն իշխում էր Տարոնի մի այլ՝ արևելյան, տարածքի վրա:

## V

## [ՏԱՐՈՆԱՑԻՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԸ]

Տարոնի Բագրատունյաց հարստությունը Բյուզանդիա գաղթելով, բարգավաճում է և այնտեղ ծնունդ տալիս երկու՝ Թոռնիկի և Տարոնացու, ընտանիքներին, որոնք շատ պատվավոր տեղ էին գրավում կայսրության աչքի ընկնող ընտանիքների շարքում: Ըստ այն ամենի, ինչ ասվեց վերը, 851-967 թթ. Տարոնում իշխած Բագրատունիների հաջորդականությունը ներկայանում է հետևյալ կերպ.




Նրանք, ում անուններն ընդգծված են, գաղթել են Բյուզանդիա: Ոչինչ հայտնի չէ Դավիթ-Արքայիկի երկու որդիների հետագա ճակատագրի վերաբերյալ: Նրանցից մեկի անունն Աշոտ էր և երկուսն էլ Լևոն Իմաստասերի օրոք գնացել և հաստատվել էին մայրաքաղաքում: Թոռնիկի որդին, որն իր մոր հետ գաղթել էր Կոստանդնուպոլիս, դարձել է Թոռնիկես բյուզանդական ընտանիքի հիմնադիրը, իսկ վերջին Գրիգոր և Բագրատ (ավելի շուտ Գրիգորը, քան Բագրատը) իշխանները դարձել են Տարոնիտեսների՝ Տարոնացիների, ընտանիքի հիմնադիրները: Վարդաս Սկլերոսի կողմնակից [պատրիկ] Ռոմանոս Տարոնացին (ʽΡωμανὸν πατρίκιον τὸν Ταρωνίτην)[1] կարծես թե այն Բագրատի որդին է, որն ամուսնացել էր Ռոմանոս Լեկապենոսի ազգական Թեոփիլակտոս մագիստրոսի քրոջ հետ: Նրան Ռոմանոս էին անվանել ի պատիվ մեծ կայսր Լեկապենոսի: Դա ապացուցում է, որ նա լեկապենյան ծագում ուներ:

Գրիգոր և Բագրատ եղբայրները նախ հարել են Սկլերոսի ճամբարին, հետո, հաշտվելով կայսեր հետ, անցել են կայսերական ծառայության: Վարդաս Փոկասի ապստամբության կապակցությամբ հիշատակվում է Տարոնացի մի այլ մագիստրոս: Նրան հանձնարարել էին գործել մայրաքա-

[1] Cedrenus, II, p. 425.



ղաքը շրջափակման մեջ վերցնող ապստամբի բանակի թիկունքում[1]: Գրիգորից բացի հայտնի չէ այդ ընտանիքի մեկ այլ անդամ, որը կրեր մագիստրոսի պատվաստիճան: Տարոնի բռնակցման պահին[2] պատրիկի պատվաստիճան կրող Գրիգորը մագիստրոսի պատվաստիճանի էր հասել 991 թ. առաջ[3]: Նա ուղեկցում էր Վասիլին բուլղարական արշավանքի ժամանակ՝ 991 թ. մարտ ամսին: Պատերազմը տևել է չորս տարի: 995 թ. սկզբին կայսրը Գրիգոր Տարոնացուն թողնում է Թեսաղոնիկեում որպես կառավարիչ, իսկ ինքը մեկնում է Անտիոք: Բուլղարների առաջնորդ Սամուելը հարձակվում է Թեսաղոնիկեի վրա: Գրիգորն իր որդի Աշոտին հանձնարարում է ետ մղել թշնամուն: Աշոտը հաջողությամբ կատարում է հոր հրամանը, սակայն թշնամուն հետապնդելու ընթացքում դարանն է ընկնում: Նրա հայրը՝ Գրիգորը, օգնության է շտապում որդուն, սակայն, շրջապատման մեջ ընկնելով, զոհվում է ռազմի դաշտում: Աշոտը գերեվարվում է: Աշոտի սիրային պատմությունը բավական հայտնի է: Մենք այդ մասին խոսել ենք բուլղարների արքա Սամուելին նվիրված մեր ուսումնասիրության մեջ (14): Սամուելի դուստրը սիրահարվել է երիտասարդ բանտարկյալին: Սամուելը ստիպված է եղել համաձայնել նրանց ամուսնությանը և իր նորընծա փեսային կնոջ հետ ուղարկել է Դյուրաքիոն: Սակայն երիտասարդ զույգը մոտ 1005 թ. գերադասում է փախչել Կոստանդնուպոլիս: Վասիլ կայսրը նրանց բարյացակամորեն է ընդունում և Աշոտին շնորհում մագիստրոսի պատվաստիճան, իսկ նրա կնոջը՝ ζωστή-ի [«գոտկավորվածի»] պատվաստիճան (15):

Մեկ այլ Տարոնացի, որը նույնպես Գրիգոր անունն էր կրում և որը պատրիկի պատվաստիճան ուներ, աչքի է ընկել 1040 թ. Միքայել IV կայսեր եղբայր ավագ դոմեստիկոս Կոստանդնի դեմ ուղղված դավադրության ժամանակ: Ձեռնարկումը ձախողվել է, և դրան մասնակից բարձրաստիճան սպաները կրել են իրենց արժանի պատիժը: Դավադրության ոգեշնչողը Գրիգոր Տարոնացին էր: Նրա երկու մեղսակիցները՝ Միքայել Գաբրասը և Թեոդոս Մեզանիկտեսը, կուրացվել են: Գրիգորը շատ տարօրինակ պատժի է ենթարկվել. նրան պարուրել են նոր մորթված ցլի մորթի մեջ, թողնելով միայն մի անցք շնչելու համար և տարել են Օրֆանոտրոֆոս՝ կայսեր [Հովհաննես] եղբոր մոտ[4]:

Միքայել Տարոնացին ավելի հայտնի է Կոմնենոսների ընտանիքի հետ իր խնամիական կապերի շնորհիվ: Նա ամուսնացել էր Իսահակ Կոմնենոս կայսեր եղբոր՝ Հովհաննեսի, դուստր Մարիամի հետ: Հովհաննեսի երկրորդ

[1] Яхья, с. 24 (в кн. В. Розен, Император Василий Болгаробойца).
[2] Cedrenus, II, p. 275.
[3] Ibid., II, p. 447; Ասողիկ, Գ, գլ. 33:
[4] Cedrenus, II, p. 531.

դուստրը ամուսնացել էր Նիկեփորոս Մելիսենոսի հետ[1]: Երկու ամուսնությունններն էլ տեղի են ունեցել Հովհաննեսի կենդանության օրոք՝ 1067 թ. առաջ, քանի որ Հովհաննեսը վախճանվել է Կոստանդին Դուկասի մահվանից քիչ անց, 1067 թ. մայիս ամսին:

Միքայել Տարոնացին, ինչպես և Նիկեփորոս Մելիսենոսը իրենց աներորդու հետ էին սելջուկ-թուրքերի դեմ ուղղված արշավանքի ժամանակ: Ռոմանոս Դիոգենես կայսրը Մանուելին շնորհել էր կյուրոպաղատի տիտղոս և նրան վստահել զորքը՝ սելջուկ-թուրքական հրոսակները ետ մղելու համար: Մանուելը հաստատվել էր Խալդիկայում: Խրիզոկուլոս անունով մի թյուրք զորավար ասպատակելով հասնում է մինչև Արմենիակների բանակաթեմ: Մանուելն իր երկու փեսաների՝ Միքայել Տարոնացու և Նիկեփորոս Մելիսենոսի, հետ արշավում է նրա դեմ, սակայն թյուրք զորավարին հետապնդելու ընթացքում նրանք գերի են ընկնում: Բարեբախտաբար նրանց դեմ հաղթանակ տարած հակառակորդը ընդհարվում է սուլթանի հետ և փախչում կայսեր մոտ, հետը տանելով իր ազնվազարմ գերիներին[2]:

Միքայել Տարոնացին կարծես թե նպաստել է Ալեքսիոս Կոմնենոսի առաջխաղացմանը, որը գահ բարձրանալով մեծարանքի է արժանացրել Միքայելին. ὁ Ταρωνίτης καὶ γαμβρὸς ἐπ᾽ ἀδελφῇ τοῦ βασιλέως πρωτοσέβαστός τε πρωτοβεστιάριος, μετ᾽ οὐ πολὺ δὲ καὶ πανυπερσέβαστος ἀναδείκνυται καὶ σύνθωκος τῷ καίσαρι γίνεται [«Տարոնացին, որն ամուսնացած էր կայսեր քրոջ հետ, պրոտոսեբաստոսն ու պրոտովեստիարիոսը, ոչ շատ ժամանակ անց ստացել է պանիպերսեբաստոսի <տիտղոսը> և դարձել կայսեր գահակիցը»][3]: Այս տիտղոսները Միքայելին ապահովում էին երկրորդ տեղը կայսրից հետո: Նա կայսեր եղբայր Ադրիանոսի հետ կիսում էր պրոտոսեբաստոսի կոչումը, կեսարինը՝ Նիկեփորոս Մելիսենոսի հետ: Պանհիպերսեբաստոսի տիտղոսը, որը կայսրը ստեղծել էր նրա համար, նրան բարձրացնում էր գրեթե մինչև միապետի ավագ եղբոր՝ կայսրության երկրորդ դեմքի՝ Իսահակ սեբաստոկրատորի, աստիճանը: Կայսեր երրորդ եղբայրը՝ Նիկեփորոսը, ստիպված էր բավարարվելու սեբաստոսի կոչումով և նավատորմիղի դրունգարի պաշտոնով:

[1] Bryennius, p. 24. Մելիսենոսի մասին այս հեղինակն ասում է, որ πατρόθεν ἐς Μορτίους τὸ γένος ἀνέφερει [«հայրական կողմից ծագում էր Մորտիոսներից»], ի դեպ այս անունը այլուր հայտնի չէ: Մեկ այլ հատվածում (էջ 117-118) նույն հեղինակը հայտարարում է, որ Մելիսենոսը ἐς Βουρτζίους τε καὶ Μελισσηνοὺς ἀνέλκων τὸ γένος [«սերվում է Բուրցիոսներից և Մելիսենոսներից»]: Դա թույլ է տալիս Μορτίους-ը սրբագրել իբրև Βουρτζίους:

[2] Bryennius, pp. 32-33; Skylitzes, pp. 685-686, 688. Այս հեղինակն ասում է, որ Մանուելը բանակել է Կեսարիայում, մինչդեռ Վրիեննիոսը կարծում է, որ նա περὶ τὴν Χαλτικὴν διατρίβων [«դեգերում էր Խաղտիքի շրջակայքում»]:

[3] Anna Comnena, III, 4, p. 148.



Չնայած իր գրաված այդքան բարձր դիրքին, Միքայելը չի կարողացել իրեն զսպել և հարել է կայսերը թշնամաբար տրամադրված կուսակցությանը: Համենայն դեպս նրան մեղադրել են Նիկեփորոս Դիոգենեսի կազմակերպած դավադրությանը մասնակցելու մեջ: Ռոմանոս Դիոգենես կայսեր որդի Նիկեփորոսը իրավունք ուներ հավակնելու հորից խլված թագին: Ալեքսիոսի ժլատությունը, նրա ինքնիշխան, խոռամանկ, նույնիսկ բարեկամների նկատմամբ կեղծ բնավորությունը կարող էին խարխլել նրա ժողովրդականությունը և բարենպաստ հող նախապատրաստել [ուրիշների] իշխանատենչ հավակնությունների համար: Այսպես, նրա դստեր՝ Աննա Կոմնենայի, վկայությամբ, մենք ականատես ենք լինում դավադրությունների անընդհատ մի շարքի, որոնց նպատակն էր կայսերը գահընկեց անելը: Ի միջի այլոց Նիկեփորոս Դիոգենեսը Ալեքսիոսին սպանելու բազմաթիվ փորձեր է արել: Առաջին անգամ, ἀνὴρ τις βάρβαρος ἐξ ᾿Αρμενίων καὶ Τούρκων φύς [«բարբարոս մի այր, ծագումով հայերից և թյուրքերից»], Դիոգենեսի դրդմամբ որոշել է սպանել կայսերը: Նա մոտեցել է գնդակաթիակ խաղացող կայսերը, սակայն, հանելով թաքցրած դաշույնը, հակառակ իր ջանքերին չի կարողացել այն գործի դնել, խոստովանել է իր հանցավոր մտադրությունն ու ներում խնդրել կայսրից: Վրա հասած ամբոխը ուզում էր նրան պատառ-պատառ անել, սակայն միապետը մեծահոգի է գտնվել, «ոչ միայն ներել է» նրա չար մտադրությունը, այլև նրան «ամենաշքեղ նվերներ» ընծայել (οὐκ ἀφέσεως δὲ μόνον, ἀλλὰ καὶ μεγίστων δωρεῶν), հայտարարելով, որ և՛ իր փրկությունը, և՛ իր պահպանությունը Աստծու ձեռքին են: Մարդասպանը պետք է որ Նիկեփորոս Դիոգենեսի դրդմամբ գործած լիներ[1]:

Երկրորդ փորձը Դիոգենեսը կատարել է մոտ 1093 թ., երբ ինքը կայսրին Դալմատիա էր ուղեկցում: Նա կարողացել է մտնել Ալեքսիոսի վրանը այն ժամանակ, երբ կայսրը և կայսրուհին քնած էին, սակայն նկատելով կայսերական մահճակալի մոտ կանգնած ճանճեր քշող սպասուհուն, որն արթուն էր, նա հեռանում է, որևզի իրեն չբացահայտեն: Եվ վերջապես երրորդ անգամ Դիոգենեսը փորձել է սպանել նրան նույն արշավանքի ընթացքում: Կայսրը շարունակել է ճանապարհը և հասել Սերես: Մի օր առավոտյան, այն ժամին, երբ կայսրը լոգանք էր ընդունում, դաշույնով զինված Դիոգենեսը մտնում են նրա մոտ, ձևանալով, թե որսից է վերադառնում: Սակայն Թաթիկիոս անձնապահապանը նրան կանգնեցրել է ասելով. «Հիմա լոգանքի ժամն է և ոչ թե որսի կամ մեկնելու»: Շփոթված Դիոգենեսը հեռացել է, առանց կարողանալու իր ծրագիրն իրագործել:

[1] Anna Comnena, IX, 7, pp. 449-451.

Կայսրը զգալով իրեն սպառնացող վտանգը, իր եղբայր Ադրիանոսին հանձնարարել է ձերբակալել Դիոգենեսին և ստիպել նրան խոստովանելու իր մտադրությունը և անվանելու իր գործակիցներին: Ավագ դոմեստիկոս Ադրիանոսը այդ անշնորհակալ գործում հաջողության չի հասնում: Գործը հանձնարարվում է Մուծակեսին: Նա դաժանությամբ է վարվում և «իրեն թույլ է տալիս այն, ինչ կայսրը նրան չէր հրամայել»՝ καὶ ἃ μὴ προσέτακτο ἐπιχειρεῖν ἠπείγετο. Նա Դիոգենեսի նկատմամբ կտտանք է գործադրում և այդ միջոցով նրան ստիպում իր գործակիցների անունները հայտնել: Դատապարտյալի վկայությունները գրանցել է քարտուղար Գրիգորիոս Կամատերոսը և դրանք ներկայացվել են կայսրին: Դավադիրների ցուցակում բազմաթիվ հռչակավոր անունների շարքում էին նաև Միքայել Տարոնացու և Կատակալոն Կեկավմենոսի անունները: Վերջինս, ինչպես և Միքայելը, հայկական ծագում ուներ: Ալեքսիոսը ընդհանուր ժողով է հրավիրել, զեկուցել այդ գործի մասին և, դատավճիռը հրապարակելով, մեկ անգամ ևս ցուցադրել իր գթասրտությունը: Նա չի ցանկացել ոչնչացնել մեղավորներին և նրանց դատապարտել է աքսորի, Դիոգենեսին և Կեկավմենոսին τοὺς πρωταιτίους ἐς Καισαρόπολιν ἐξέπεμψεν [«առաջին մեղադրյալներին վտարեց Կեսարոպոլիս»]: Ինչ վերաբերում է «Միքայել Տարոնացուն, [«քրոջ ամուսնուն և պանհիպերսեբաստոսին»], ապա նա արտաքսվել է ունեցվածքի բռնագրավմամբ», ὑπερόριον δὲ καὶ τὸν ἐπ' ἀδελφῇ γαμβρὸν αὐτοῦ Μιχαὴλ τὸν Ταρωνίτην καὶ τὸν <πανυπερσέβαστον> καὶ τὰς περιουσίας αὐτῶν ἀφελόμενος: Սակայն ժողովը պակաս գթասիրտ է գտնվել, քան կայսրը և «առանց <կայսեր> գիտության»՝ ἄτερ τῆς αὐτοῦ γνώμης[1] մարդ է ուղարկել Դիոգենեսի և Կատակալոնի աչքերը կուրացնելու:

Աննա Կոմնենայի շարադրանքը մեծ վստահություն չի ներշնչում: Դիոգենեսի ցուցաբերած թուլությունը չի համապատասխանում նրա բնավորությանը, որի նկարագրությունը տվել է ինքը Աննա Կոմնենան: Դիոգենեսը քաջ էր, ճարպիկ ամեն տեսակ վարժություններում՝ ձիարշավ, խաղեր, նետաձգություն, բարկության պահին նա առյուծ էր դառնում՝ θυμοειδὴς καθάπερ λέων [«ցասկոտ իբրև առյուծ»], նա հսկայի ուժ ուներ. մի խոսքով նա այնպիսի ֆիզիկական հատկանիշներ ուներ, որոնք հիացնում էին մեր հեղինակին: Զարմանալի է, որ այդ առյուծը, հանցանքի գնալու հաստատակամություն ունեցող այդ հսկան վճռական պահին դողում էր և նահանջում մի սպասուհու կամ մի պահապանի առջև, երբ գիշերով դեմ առ դեմ

[1] Anna Comnena, IX, 8. Այն բառը, որը բացակայում է տպագրում, և որը 445-րդ էջում նշված է չորս աստղիկներով, այն բառն է, որ մենք դրել ենք բնագրում վերցնելով մեկ այլ հատվածից՝ էջ 446:



հանդիպում էր նրանց: Այդչափ թատերական տեսարանները, բազմաթիվ անօգուտ մանրամասները, որոնցով արքայադուստրը շրջապատել է պատմական կորիզը, չեն նպաստում նրա շարադրանքը արդարացնելու գործին: Ստեղծվում է այն տպավորությունը, որ երեք հռչակավոր անհատներ զոհ են գնացել, ավելի շուտ, Ալեքսիոսի կասկածամտությանը, քան իրենց հանցանքին: Կայսրը ևս մեկ անգամ առիթը բաց չի թողել դատապարտյալների ունեցվածքին տիրանալու:

Այսպես է ավարտվել Միքայել Տարոնացու փայլուն առաջխաղացումը 1093 թվականին: Նա թողել է երեք որդի: Մեկի անունն էր Հովհաննես, ի պատիվ նրա մորական պապի՝ Հովհաննես Կոմնենոսի: Նրան առաջին անգամ հիշատակել են 1094 թվականին: Հովհաննեսին հանձնարարվել էր Նիկեփորոս Մելիսենոսի և Գեորգիոս Պալեոլոգոսի ընկերակցությամբ արշավել կոմանների դեմ[1]: Նիկեփորոսը կայսեր քրոջ ամուսինն էր, իսկ Գեորգը՝ կայսրուհու քրոջ ամուսինը:

Մեզ հայտնի է, որ Միքայելը մի եղբայր ուներ, որի անունը մենք չգիտենք և որը Գրիգոր անունով մի որդի ուներ: Վերջինս միտք է հղացել ապստամբելու Ալեքսիոս կայսեր դեմ այն ժամանակ, երբ իրեն ուղարկել էին Տրապիզոն Դավատենոս դքսին փոխարինելու: Դա տեղի է ունեցել XII ինդիկտիոնի սկզբին՝ 1103 թ., աշնանը[2]: Պատմիչները լռություն են պահպանում նրա ապստամբության դրդապատճառների մասին: Դավատենոսի նախորդը՝ Թեոդորոս Գաբրասը, նույնպես վարկաբեկվել էր նման մի արարքով: Գրիգոր Տարոնացին հասնելով Տրապիզոն ձերբակալել է Դավատենոսին և նրան պահել է Տեբեննա (Τηβέννα) ամրոցում, որպեսզի նա կայսեր կողմը չանցներ: Մի քանի ազդեցիկ անձնավորություններ արժանացել են նույն բախտին:

1105-1106 թթ. (XIV ինդիկտիոնի) Ալեքսիոսը նրա դեմ է ուղարկել իր զարմիկ Հովհաննես Տարոնացուն՝ Միքայելի որդուն՝ ուստի և ապստամբի եղբորորդուն[3]: Այդ ժամանակ Գրիգորը Տրապիզոնից Կողոնեա է գնում, ուր մտադիր էր կապ հաստատել Սեբաստիայի տեր մահմեդական իշխան Դանիշմանի հետ: Սակայն Հովհաննեսը խափանել է նրա ծրագրերը որքան վճռական, նույնքան էլ արագ հարձակումով և գերեվարել նրան: Կայսրը մտադիր էր նրա հետ խստությամբ վարվել: Ուժ գործադրելուց առաջ նա առաջարկել էր Գրիգորին խոստովանել իր մեղսագործությունները,

[1] Anna Comnena, X, 2, p. 9.

[2] Ibid., XII, 7, p. 162.

[3] Ibid., p. 163. Ἰωάννην τὸν ἴδιον ἀδελφιδοῦν τῆς πρωτοτόκου αὐταδέλφης, ἐξάδελφον δὲ πατρόθεν τοῦ ἀποστάτου [«Հովհաննեսին, իր սեփական ավագ քրոջ որդուն (հայց. հոլով), և ուրացողի՝ հայրական կողմից զարմիկին»]:

հուսադրելով լիակատար ներում, սակայն վերջինս ոչ միայն մերժել է կայսեր առաջարկը, այլև ծաղրական բանաստեղծությամբ է պատասխանել նրան, վիրավորելով ծերակուտականներին և զորահրամանատարներին, առանց խնայելու նույնիսկ կայսեր անձը, նրա ազգականներին և փեսաներին: Գրիգորին կկուրացնեին, եթե չմիջամտեր նրա հորեղբորորդի Հովհաննեսը և այդ սարսափելի պատժի առաջը չառներ: Այդ ժամանակ կայսրը հրամայել է սափրել նրա գլուխն ու մորուսը և այդ վիճակում պտտել քաղաքի հրապարակում: Հետո նրան բանտ են նետել: Նման վերաբերմունքից հուսահատված Գրիգորը շարունակում է անպատվել կայսերը: Նա հաճախ խնդրում էր Նիկեփորոս Վրիեննիոսին՝ մեր հեղինակի ամուսնուն, որի հետ նա կապված էր բարեկամական հարաբերություններով՝ πρὸς ἡμᾶς φιλίως ἔχων [«մեր նկատմամբ բարեկամ էր»], իրեն այցելել բանտում: Նիկեփորոսը՝ կայսեր համաձայնությամբ, այցելում էր բանտարկյալին և խորհուրդ էր տալիս ներում խնդրել կայսրից: Սակայն անզիջում բնավորության տեր Գրիգորը համառում էր: Ի վերջո բանտային պայմանները կոտրում են նրա տոկունությունը, և նա ներում է խնդրում կայսրից: Ազատ արձակվելուց հետո, նա «նախկինից ավելի շնորհների [և պատվի] է արժանացել» ἀπήλαυε καὶ δωρεῶν καὶ τιμῆς ὁπόσης οὐδὲ πρὸ τοῦ[1]: Այդ միջադեպից տասը տարի անց՝ մոտ 1117 թ. (= սելևկյան 1429 թ.), Տրապիզոնի դուքսն էր ոմն Գաբրաս: Հավանաբար Գրիգորը՝ Թեոդորոսի որդին[2]:

Գրիգորի միջադեպը չի սասանել կայսեր վստահությունը Տարոնացիների ընտանիքի նկատմամբ: Նույն ժամանակաշրջանում, ավելի ստույգ 1107 թ. (I ինդիկտիոնի) նոյեմբերի 1-ին Ալեքսիոսը ստիպված է եղել լքել մայրաքաղաքը Դյուրաքիոնին սպառնացող Բոհեմունդի (16) դեմ արշավելու համար: Այդ ժամանակ մայրաքաղաքի պրեֆեկտն էր Վարդաս Քսերոսը, որը, ինչպես կարելի է դատել նրա անունից, ծագումով հայ էր: Կայսրը նրա փոխարեն այդ պաշտոնին էր նշանակել ἔπαρχον Ἰωάννην τὸν Ταρωνίτην [«էպարքոս Հովհաննես Տարոնացուն»]: Դա աչքի ընկնող անձնավորություն էր: Աննա Կոմնենան արժանին է մատուցել նրա մտավոր և բարոյական հատկանիշներին. Ἀνὴρ δὲ οὗτος τῶν εὐγενῶν, νηπιόθεν πρὸς αὐτοῦ προσληφθεὶς καὶ ὑπογραμματεύσας αὐτῷ ἐπὶ πολύ, φρονήματος μὲν ὢν δραστικωτάτου καὶ νόμων Ῥωμαϊκῶν ἐπιστήμων καὶ τὰ βασιλέως προστάγματα μεγαληγορῶν, ὁπηνίκα προστάττοιτο, βασιλικῆς μεγαλοφροσύνης ἐπάξια, ἐλευθέραν ἔχων τὴν γλῶτταν καὶ οὐκ ἐπὶ ψόγῳ ἀναισχυντίαις στομούμενος, ἀλλ᾽ ὁποῖον ὁ Σταγειρίτης τὸν

[1] Anna Comnena, XII, 7, p. 164.
[2] Michel le Syrien, III, p. 205 (éd. Chabot).



διαλεκτικὸν εἶναι παρακελεύεται[1]. «Նա ազնվական ծագում ուներ, մանուկ հասակից կայսրը նրան իրեն էր մոտեցրել, երկար տարիներ նա կայսեր քարտուղարն է եղել: Արթուն միտք ունենալով, նա քաջատեղյակ էր հռոմեական իրավունքին և կարողանում էր բարձր ոճով կազմել կայսերական հրամանագրերը, երբ նրան էր հանձնարարվում այդ գործը, և դրանց տալիս էր կայսերական բարձրությանն արժանի տեսք: Նրա խոսքն ազնիվ էր և երբեք չէր իջնում մինչև անհարկի կշտամբանքը, այլ միշտ մնում էր այնպիսին, ինչպիսին Ստագիրիտը կպահանջեր դիալեկտիկոսից»:

Այն փաստը, որ Հովհաննես Տարոնացին դաստիարակվել էր իբրև Ալեքսիոս կայսեր մտերիմը, մեզ թույլ է տալիս նրան նույնացնելու Միքայելի և Ալեքսիոսի քրոջ որդու՝ Հովհաննեսի, հետ:

Մանուել կայսեր ժամանակ պատրիարք Կոսմասի գործի կապակցությամբ 1147 թ. գումարված հոչակավոր տիեզերական ժողովին, այլոց հետ, մասնակցել է ոմն Հովհաննես Տարոնացի, որին կոչում էին՝ σεβαστός, δικαιοδότης, ἔπαρχος [«սեբաստոս, դատավոր, էպարքոս»][2]: Կոսմասին մեղադրում էին բոգոմիլների առաջնորդ Նիփոնի հետ կապեր պահպանելու մեջ: Սինոդը դատել է նրան և ազատել պաշտոնից: Այդ δικαιοδότης [«դատավոր»] Հովհաննեսը հավանաբար այն անձնավորությունն է, որի իրավաբանական գիտելիքներով հիանում էր Աննա Կոմնենան:

Տարոնացիների ընտանիքի վերջին անդամին մենք հանդիպում ենք Հովհաննես Կոմնենոս կայսեր նախարարների շարքում, նրա գահակալության տարում՝ 1118 թվականին: Նա շատ բծախնդիր պաշտոնյայի համբավ ուներ և միևնույն ժամանակ օրինակելի համեստության տեր մարդ էր: Նրա անունը նույնպես Գրիգոր էր. ὁ δὲ Γρηγόριος (Ταρωνίτης πρωτοβεστιάριος) τῆς προκειμένης ἐχόμενος, μηδὲ μακρὰ βιβὰς ἢ γοῦν ἐκτείνων πόδας ὑπερβαθμίους, *μονιμωτέρας* ἰσχύος μετείληχε[3]: «Պրոտովեստիարիոս Գրիգոր Տարոնացին իր գործը կատարում էր մեծ ջանասիրությամբ, երբեք դուրս չգալով իր պարտականությունների շրջանակներից: Նա իր պաշտոնը վարում էր մշտական եռանդով»:

Պրոտովեստիարիոսի տիտղոսը և հանգիստ ու հավասարակշռված բնավորությունը թույլ չեն տալիս նրան նույնացնել ապստամբ Գրիգորի հետ: Հնարավոր է, որ նա Միքայել Տարոնացու երկրորդ որդին լինի. վերջինս նույնպես պրոտովեստիարիոսի պատվաստիճանն էր կրում, մինչև պանհիպերսեբաստոսի պատվաստիճանի արժանանալը:

[1] Anna Comnena, XII, 7, pp. 177-178 (17).
[2] Ch. Du Fresne Ducange, «Ալեքսիադ»-ին վերաբերող իր ծանոթագրություններում, էջ 652:
[3] Nicetas Choniates, p. 13.

Բյուզանդական կնիքագիտությունը Տարոնացիների ընտանիքին ավելացնում է մեկ անուն ևս՝ Դավիթ հյուպատոսինը, որի կնիքը գտնվում է Կոստանդնուպոլսի թանգարանում[1]: Դավթի մասին այլ աղբյուրներ ոչինչ չեն հայտնում: Դա չի կարող Դավիթ-Արքայիկը լինել, սակայն նրա անունը ակնբախորեն արտացոլում է ինչ-որ ընտանեկան վերհուշ, որը կենդանի էր մնացել Բյուզանդիայում:

Մեզ հայտնի է նաև մի կնիք, որը կրում է Գրիգոր Մագիստրոսի անունը[2]: Մենք լիիրավ կերպով կարող ենք այն վերագրել Թեսաղոնիկեի դուքս Գրիգորին, քանի որ միայն նա է կրել այդ տիտղոսը:

Մեկ այլ կնիք կրում է հետևյալ արձանագրությունը. Τὸν Τα<ρω>νίτην κουροπαλάτην Ἰῶ [«Տարոնացի կյուրոպաղատին Հով<հաննեսին>» (հայց. հոլով)][3]: Բյուզանդացի ժամանակագիրները չեն ճանաչում Տարոնացիների ընտանիքի և ոչ մի անդամի, որն արժանացած լիներ կյուրոպաղատի պատվաստիճանի: Այդուհանդերձ շատ հնարավոր է, որ Հովհաննես կյուրոպաղատին պետք է նույնացնել Ալեքսիոսի զարմիկի՝ Հովհաննեսի, հետ: Մի չորրորդ կնիք պատկանել է Տարոնացի մի տիկնոջ. Ἐὐδοκίᾳ προεδρίσ<σ>ᾳ Ταρωνιτίσ<σ>ᾳ [«Եվդոկիային, Տարոնացի պրոեդրոսի <կնոջը>» (տրական հոլով)][4]: Բուլղարիայի արքեպիսկոպոս Թեոփիլակտոսը, ինչպես մենք կտեսնենք հետագայում (18), Տրապիզոնի դուքս ապստամբ Գրիգորին դիմում է որպես պրոեդրոսի: Պատմիչները չեն նշում նրա այդ տիտղոսը, ինչպես նաև չեն նշում Հովհաննեսի կրած կյուրոպաղատ տիտղոսը: Պրոեդրիսսա Եվդոկիան պետք է որ Գրիգոր պրոեդրոսի կինը եղած լիներ:

Կա ևս երկու կնիք: Դրանք պատկանում են Ռոմանոսին ու Հովհաննեսին[5]: Տարոնացիների տոհմաբանական ցանկն ի վերջո ներկայանում է հետևյալ տեսքով.

[1] J. Ebersolt, Dans la *Revue Numismatique*, Paris, 1914, p. 379.

[2] G. Schlumberger, Sigillographie, p. 706.

[3] Ibid.; Գ. Շլյումբերժեն, "Mélanges d'Archéologie byzantine", I, p. 270 շփոթում է Տարոնացիներին և Սարոնացիներին, որոնք տարբեր են: Առաջին Սարոնացին՝ Ռոմանոսը, Ռոմանոս Լեկապենոսի դուստրերից մեկի ամուսինն էր, Theoph. Cont., p. 441:

[4] V. Laurent, Byz. Zeitschr., 1933, S. 359.

[5] Հրատարակել է Ն.Պ. Լիխաչևը: Այն մեջ է բերում Վ. Լորանը նշված երկում:






Մենք դեռ կանդրադառնանք Թեոփիլակտոս արքեպիսկոպոսի Տարոնացուն հասցեագրված նամակների քննությանը:

### ԹՈՌՆԻԿԻ ԸՆՏԱՆԻՔԸ
### (Τορνίκιοι)

Սա Տարոնացիների ընտանիքի շառավիղներից մեկն է: Կոստանդին Ծիրանածինը, չվստահելով Լեկապենոսի որդիներ Ստեփանոսին ու Կոստանդինին, որոշել է ազատվել նրանցից: Նա նրանց ճաշի է հրավիրել իր մոտ և ձերբակալել οἱ λεγόμενοι Τορνίκιοι [«Թոռնիկ կոչեցյալների»] և Մարիանոսի միջոցով 945 թ. հունվարի 27-ին երկուշաբթի օրը[1]: Կեդրենոսը մեզ հայտնում է նրանց անունները՝ Նիկողայոս և Լևոն[2]: Առաջինն ասպարեզ է իջել դեռևս 963 թ. իրադարձությունների ժամանակ, որպես Հովսեփոս Բրինգաս պարակիմոմենոսի կողմնակից՝ Նիկեփորոս Փոկասի դեմ: Նիկողայոս Թոռնիկին՝ ὁ Τορνίκης Νικόλαος, Մարիանոս Ապամբասի և նախկին ստրատեգոս Պասքալիոսի հետ հանձնարարվել է Ս. Սոֆիայում ապաս-

[1] Theoph. Cont., p. 437; Yahya (= «Patrologia Orientalis», XVIII), p. 739.

[2] Cedrenus, II, p. 324. Նա այդ տեղեկությամբ պարտական է Շարունակողին, որի աշխատության մի ավելի լավ օրինակ է ունեցել իր ձեռքի տակ:

տանած Վարդաս Փոկասին՝ Նիկեփորոսի հորը, դուրս բերել եկեղեցուց[1]:

Նիկողայոսն ու Լևոնը Տարոնի իշխան Ապոգանեմի որդի Թոռնիկի սերունդներն են: Ապոգանեմը մահացել էր մոտ 900 թ. և այդ ժամանակ նա ամուրի էր, քանի որ մահից առաջ նա ցանկանում էր ամուսնանալ Կոստանդին Լիպսի դստեր հետ: Իր առաջին կնոջից նա ուներ մի որդի, որի անունն էր Թոռնիկ՝ փաղաքշական «թոռ» բառից: Թոռնիկի կինը Տարոնից հեռացել է Կոստանդնուպոլսում հաստատվելու համար: Գաղթելու պահին նա մի զավակ ուներ: Շատ հնարավոր է, որ այդ παιδίον [«զավակը»] Նիկողայոսը կամ Լևոնն էր, և կամ երկուսն էլ նրա որդիներն էին: Ուղղակի վկայություններ մենք չունենք և, բնականաբար, դժվար է որոշել նրանց ազգակցական կապը: Սակայն մի բան հաստատ է, որ Ապոգանեմի որդի Թոռնիկը բյուզանդական Թոռնիկյան ընտանիքի նախնին է (19): X-XIV դարերի բյուզանդական ժամանակագրություններից հայտնի այդ անունը կրող բազմաթիվ անձինք պատկանում են նույն՝ Բագրատունիների տոհմի ներկայացուցիչ Տարոնի իշխան Թոռնիկի, ընտանիքին: Չկա և ոչ մի այլ ընտանիք, ո՛չ Հայաստանում, և ո՛չ Բյուզանդիայում, որը կրեր այդ անունը: Նախկին զորավար Թոռնիկը՝ Վարդաս Սկլերոսի կողմնակիցը, ժառանգներ չէր թողել, և նրա անունը կարող է բացատրվել միայն մի ենթադրությամբ, որ նրա մայրը Թոռնիկ Տարոնացու ընտանիքից էր:

Լևոն Թոռնիկից հետո հիշատակվում է մեկ այլ Թոռնիկ ևս, որպես Բարիի կատեպան՝ 1017 թվականին: Նա նույնպես կրում էր Լևոն կամ Կոնդոլեոն անունը: Ահա այդ բնագիրը.

1010 Obiit Curcua et descendit Basilius catepanus Marsedonici (var. Macedonia, Mesardoniti, Mascedoniti) mense Martii.

1017 (=1016?) Obiit in Butrunto Marcedonici catepanus et in mense Novembri interfectus est *Leo* frater Argiro.

Et in hoc anno <1017?> descendit *Turnichi* catepani mense Maii. Et fecit proelium cum Mele et Normannis Leo Patiano exubitus. Iterum in mense Iunii 22 die proelium fecit praefatus *Turnichi catepani*, et vicit Melem et Normannos et, mortuus est Patiano ibi:

et *Condoleo* descendit in ipso anno.

1018 Descendit *Basilius* catepanus qui et Bugianus et Abalanti patricius mense Desembris[2].

[«1010 Զոհվեց Կուրկուասը և <պաշտոնը> ստանձնեց Բասիլիոսը, Մարսեդոնիկի (տարընթերցումներ՝ Մակեդոնիա, Մեսարդոնիտի, Մասկեդոնիտի) կատեպանը, մարտ ամսին:

[1] De cerimoniis, I, p. 435.

[2] Lupus Protospatharius, M.G.H.SS., t. V, p. 57.



1017 (=1016?) Մակեդոնիկի կատեպանը վախճանվեց Բուտրունտում և նոյեմբեր ամսին սպանվեց Արգիրոսի եղբայր Լևոնը:

Նույն <1017> թվականին մայիս ամսին կատեպանի պաշտոնը ստանձնեց Տուրնիխիոսը: Սա ճակատամարտ տվեց Մելեսին և նորմանդացիներին, Լեո Պատիանոի էքսկուբիտոս լինելու ժամանակ: Ապա հունիսի 22-ին հիշյալ Տուրնիխիոս կատեպանը ճակատամարտեց և հաղթեց Մելեսին և նորմանդացիներին, և Պատիանոն զոհվեց այնտեղ:

Եվ նույն թվականին պաշտոնը ստանձնեց Կոնդոլեոնը:

1018 Պաշտոնը ստանձնեց Վասիլ կատեպանը, որը և Բուգիանոս է, և Աբալանտի պատրիկ՝ դեկտեմբեր ամսին»]:

Ըստ այս շարադրանքի Բարիում Կուրկուասին հաջորդել են չորս կատեպաններ. Բասիլիոս Մակեդոնիկոսը, որը մահացել է 1017 թ., կամ ավելի ճիշտ 1016 թ., Տուրնիխի(ոս)՝ [Թոռնիկը], Կոնդոլեոնն ու Բասիլիոսը:

1011 թ. նորից Կեդրենոսը հայտնում է, որ Վասիլ II կայսրը Մելեսի դեմ ուղարկել է Սամոսի ստրատեգոս Վասիլ Արգիրոսին և Կեֆալենիայի ստրատեգոս Կոնդոլեոնին[1]: Համաձայն նույն հեղինակի տեղեկությունների Վասիլ Արգիրոսը Վասպուրականի ստրատեգոս է նշանակվել 1016 թ., սակայն վատ կառավարելու պատճառով, փոխարինվել է Նիկեփորոս Կոմնենոսով[2]: Հայկական աղբյուրները Վասպուրականի բռնակցումը դնում են 1021 թվականին: Դա հաստատվում է Յահյայի հաղորդած տեղեկություններով: Հետևաբար Վասիլ Արգիրոսի նշանակումը Վասպուրական վերաբերում է 1021 թվականին: Դրանից հետևում է, որ Վասիլ Արգիրոսը չի կարող նույնացվել Վասիլ Մեսարդոնիտեսի հետ, որը մահացել է 1016 թ., ոչ էլ մյուս Վասիլի հետ, որը Բարի է եկել 1018 թվականին[3]: Կեդրենոսը նրան շփոթել է նրա եղբայր Լևոնի հետ, որը սպանվել է Մելեսի դեմ տարվող պատերազմում: Ինչ վերաբերում է Տուրնիխիոս-Թոռնիկին, ապա Լուպուս Պրոտոսպաթարը սխալվել է նրան տարբերակելով Կոնդոլեո-Կոնդոլեոնից: Աշխարհագործության 6527 = 1019-ով թվագրված մի գրություն ակնառու կերպով ապացուցում է, որ Թոռնիկը հենց Կոնդոլեոնն է. Ἐπὶ Τορνικίου πρωτοσπαθαρίου καὶ κατεπάνου γεγονότος Ἰταλίας τοῦ Κοντολέοντος [«Թոռնիկ Կոնտոլեոնի պրոտոսպաթար և Իտալիայի կատեպան լինելու ժամանակ»][4]: Չնայած իր հաղթանակին Թոռնիկը ետ է կանչվել Իտալիայից:

[1] Cedrenus, II, p. 457.

[2] Ibid., p. 464.

[3] Jules Gay, L'Italie méridionale (20), p. 410 կարծում է, որ Վասիլ Մեսարդոնիտեսը նույնանում է Վասիլ Արգիրոսին. նույնը G. Schlumberger, II, p. 562:

[4] M. Psellos, Chronographie, II, p. 14. հրատարակիչը՝ E. Renauld Ἐξανέψιος-ը բարգմանում է որպես «երկրորդ կարգի զարմիկ մորական կողմից», իսկ ἀνεψιός-ը որպես «զարմիկ» (նույնը, էջ 16): Zonaras, III, p. 625 ասում է. ὃς μητρόθεν κατὰ γένος προσῆκε τῷ

Նրա հետագա ճակատագիրը անհայտ է, եթե իհարկե նա չի նույնանում հռչակավոր ապստամբ Լևոն Թոռնիկին:

Լևոնը, որ 1047 թ. ապստամբել էր Կոստանդին IX Մոնոմախ կայսեր դեմ, պատկանում է Թոռնիկյան ընտանիքին: Այդ նույն՝ Լևոն Թոռնիկ, անունը կրող երեք անձինք հավանաբար ազգականներ էին, սակայն ինչպիսին է նրանց ազգակցական կապը՝ մենք չգիտենք:

Միքայել Պսելլոսը, որը ճանաչում է ապստամբ Թոռնիկին, ասում է, որ նա Մոնոմախի ազգականն էր: Սակայն մի հատվածում Լևոնը Կոստանդին Մոնոմախի ἐξανέψιος ἐκ μητρικης ῥίζης՝ [«մորական կողմից երկրորդ կարգի զարմիկ»] է, իսկ մեկ այլ հատվածում Կոստանդին Մոնոմախի քույրը՝ Եվպրեպիան, նրան անվանում է իր ἀνεψιός: Բյուզանդացի հեղինակների մոտ ἀνεψιός-ը հիմնականում նշանակում է «զարմիկ»: Սակայն քանի որ Կոստանդին Մոնոմախը և Եվպրեպիան ունեին միայն մեկ քույր Հեղինե անունով, և քանի որ Լևոնը նրա որդին չէր, ապա նա չէր կարող Եվպրեպիայի զարմիկը լինել, ոչ էլ Կոստանդինի զարմիկի որդին: Պետք է ենթադրել, որ Պսելլոսը այն օգտագործում է այդ բառի հին իմաստով՝ քեռորդի: Եվպրեպիան Թոռնիկին մտերմաբար քեռորդի է կոչում, մինչդեռ նա ἐξανέψιος էր թե՛ իր, թե՛ իր եղբայր Կոստանդին կայսեր համար, այսինքն «զարմիկի որդի»: Դա նշանակում է, որ Թոռնիկի մայրը Կոստանդինի և Եվպրեպիայի մորաքույրն էր: Եթե նա նրանց հորաքույրը լիներ, ապա պատմիչը առիթը բաց չէր թողնի ասելու, որ Լևոնը մորական կողմից պատկանում էր Մոնոմախների ընտանիքին[1]:

Լևոն Թոռնիկի կյանքը մինչև ապստամբությունը բոլորովին անհայտ է: Պսելլոսը գրեթե ոչինչ չգիտի նրա կյանքի այդ շրջանի մասին: Ըստ Ատտալիատեսի Կոստանդին կայսրը բարեհաճ վերաբերմունք է ունեցել Լևոնի նկատմամբ, որպես իր ազգականի, «նրան արժանացրել է պատրիկի և, այնուհետև, վեստեսի պատվաստիճանի և հաճախ նրան է վստահել զինվորական և քաղաքացիական պաշտոններ». τῷ τῶν πατρικίων, εἶτα καὶ τῶν βεστῶν ἀξιώματι περίβλεπτον ἀποδείκνυσι, στρατηγίας συχνὰς καὶ δημαγωγίας ἐμπιστεύων αὐτῷ[2]:

Ըստ Պսելլոսի Թոռնիկը վարում էր Վիրքի կառավարչի պաշտոնը, երբ նրա կողմնակիցները ապստամբում են՝ նրան կայսր հռչակելու նպատա-

αὐτοκράτορι [«որը մորական կողմից ազգական էր ինքնակալին»]. Attaliotes, p. 22, συγγενία κεκτημένος ὁ βασιλεὺς ἐκ τῆς 'Αδριανουπόλεως Λέοντα [«կայսրը Ադրիանուպոլսեցի Լևոնի կողմից ազգակցական կապեր ձեռք բերեց»] :

[1] Attaliotes, p. 22.

[2] Ibid.



կով: Ատտալիատեսը, հակառակը, ասում է, որ 1047 թ. գարնանը, երբ բռնկվել էր ապստամբությունը, նա Մելիտենեի ստրատեգոսն էր:

Պատմիչների տարակարծությունը զարմանք է հարուցում հատկապես այն պատճառով, որ նրանք այդ իրադարձությունների ժամանակակիցներ են: Համաձայն Կեդրենոսի տեղեկությունների 1045-1047 թթ. Վիրքի կառավարիչն էր Միքայել Իաքիտեսը և նա գործում էր ընդդեմ Անիի թագավորության, իսկ նրան օգնում էր Նիկողայոս Կաբասիլասը: Պսելլոսի տեղեկությունը չի հաստատվում և Ատտալիատեսինը գերադասելի է թվում: 1043 թ. Մելիտենեի ստրատեգոսը Լևոն Լամպրոսն էր: Մոնոմախի վարչապետ Ստեփանոս Սեբաստոկրատորը միտք է հղացել նրան գահ բարձրացնելու, սակայն անհաջողության է մատնվել: Կարող է պատահել, որ Թոռնիկը եղել է Լևոն Լամպրոսի հաջորդներից մեկը Մելիտենեում՝ 1047 թվականին[1]:

Մենք լավատեղյակ չենք ապստամբության իրական շարժառիթներին: Ըստ Պսելլոսի Թոռնիկն ապրում էր Ադրիանուպոլսում և «մակեդոնական զոռոզության» տեր էր: Միաժամանակ խելացի, եռանդուն և հռչակավոր ծագում ունեցող մարդ լինելով, Թոռնիկը վայելում էր բոլորի և, հատկապես, իր մակեդոնացի հայրենակիցների համակրանքը: Հասարակական կարծիքը համարում էր, որ նա արժանի էր կայսերական թագի: Այս պատմության մեջ որոշ դեր են հատկացնում կայսեր քրոջը՝ Եվպրեպիային, որն առանձնապես չէր հարգում իր եղբորը, սակայն անկեղծորեն կապված էր Թոռնիկի հետ: Կոստանդին կայսրը, վախենալով նրանց բարեկամությունից, վճռել է նրանց բաժանել և Թոռնիկին ուղարկել է Վիրք կամ, ավելի շուտ, Մելիտենե որպես կառավարիչ: Քիչ անց անպատեհ լուրերին վերջ տալու համար նա ստիպել է Թոռնիկին վանք մտնել:

Թոռնիկի մակեդոնացի բարեկամները վրդովվելով նման վարվելակերպից՝ նրան փախցնում են մայրաքաղաքից և 1047 թ. սեպտեմբերի 14-ին հասցնում Ադրիանուպոլիս: Ապստամբությունն է սկսվում: Թոռնիկը զորքն առաջնորդում է դեպի մայրաքաղաք: Նա արդեն պետք է գրավեր մայրաքաղաքը, երբ Արևելքի զորքը օգնության է հասնում կայսրին: Մատթեոս Ուռհայեցին, ձայնակցելով բյուզանդացի հեղինակներին, ասում է, որ Թոռնիկը նահանջում է քրիստոնյաների արյունը զուր տեղը չթափելու համար: Նա իր գործը տանուլ է տալիս, զորքը ցրվում է, իսկ իրեն տանում են մայրաքաղաք, ուր կայսրը կուրացնում է նրան 1047 թ., Ծննդյան տոնի օրը:

Առանց Թոռնիկի ապստամբության մանրամասների մեջ խորանալու,

[1] Պետք չէ մտածել, որ Ատտալիատեսը շփոթել է Լևոն Լամպրոսին և Լևոն Թոռնիկին՝ վերջինին Մելիտենեի ստրատեգոս դարձնելով:

անհրաժեշտ ենք համարում նկատել, որ ապստամբության իրական պատճառը Մոնոմախի վատթար կառավարումն էր, որ համընդհանուր դժգոհություն էր առաջացնում: Դա չարաբաստիկ մի անձ էր և մեկն էր այն մարդկանցից, որոնք առավելագույնս նպաստել էին կայսրության անկմանը, համաձայն Ստրատեգիկոնի բանիմաց հեղինակի կարծիքի[1]: Պսելլոսը խոստովանում է, որ ինքը գրում էր Կոստանդին Մոնոմախի պատմությունը ոչ թե ճշմարտության բարեկամը լինելու նպատակով, այլ նրան գովաբանելու[2]: Հասարակական վրդովմունքի հաջորդական պոռթկումներ են 1042 թ. Մանիակեսի ապստամբությունը, 1043 թ.՝ Լևոն Լամպրոսինը, 1047 թ.՝ Լևոն Թոռնիկինը, 1052 թ. Ռոմանոս Վոյիլասի դավադրությունը, որի պատմությունը Պսելլոսը զավեշտի է վերածել, նախանձելով կայսեր մոտ նրա վայելած հաջողությանը: Եվ եթե Մոնոմախը հաղթել է, ապա, ինչպես ասում է Արիստակեսը, ոչ թե այն պատճառով, որ Աստված գթացել է նրան, այլ որովհետև Աստված ցանկացել է փրկել կայսերական գահի հեղինակությունը:

Լևոն Թոռնիկի ընտանիքին էր պատկանում, անկասկած, նաև Պետրոս Թոռնիկը, որն իրեն մակեդոնացի էր կոչում նույն այն պատճառով, որով Թոռնիկն էլ էր իրեն այդպես կոչում: Միքայել VII Դուկասի թագավորության ժամանակ գահին տիրանալու համար նշանավոր զորավարները ապստամբել են մեկը մյուսի հետևից: 1078 թ. հոկտեմբեր ամսին Նիկեփորոս Վրիեննիոսը իրեն կայսր է հռչակել: Նիկեփորոս Վոտանիատեսը նույն բանն է արել մի քանի օր անց: Ալեքսիոս Կոմնենոսը և Կատակալոնը Վոտանիատեսի կողմն են անցել և արշավել են Վրիեննիոսի դեմ, որը պարտություն է կրել և սպանվել: Նույն տարին մի երրորդ ապստամբ ոտքի է կանգնել Վոտանիատեսի դեմ: Դա Վասիլակես զորավարն էր, որի անունը նույնպես Նիկեփորոս էր: Նա Հայաստանի Թեոդոսուպոլիս քաղաքի նախկին դուքսն էր[3]: Նա մասնակցել էր Մանազկերտի արշավանքին, գերի ընկել, հետո ազատվել: Ալեքսիոս Կոմնենոսը, որը շարունակում էր Վոտանիատեսի կողմից հանդես գալ, Վասիլակեսի դեմ արշավելու հրաման է ստանում: Ալեքսիոսի ճամբարում էր καὶ τις ἀνὴρ Μακεδών, Πέτρος τοΰνομα Τορνίκιος τὸ ἐπώνυμον, εἰσέλασας μέσον τῶν πολεμίων κατέβαλε τούτων συχνούς [«այր ոմն մակեդոնացի, Պետրոս անունով և Թոռնիկիոս մականունով, որը,

[1] "Strategikon", § 250.

[2] **Psellos**, ch. CLXI (éd. E. Renauld, II, p. 50).

[3] **Bryennius**, IV, 24, p. 153; **Anna Comnena**, I, 8, p. 45, օրինակում է Վրիեննիոսին և դա մեզ թույլ է տալիս ուղղել Վրիեննիոսի բնագրի հետևյալ նախադասությունը. ἡ φάλαγξ εἴτε ἀγνοοῦσα τὰ δρώμενα [«երբ գունդը, չիմանալով, թե ինչ է կատարվում»] ուր εἴτε [«երբ»] պետք է սրբագրել իբրև εἴπετο [«ասում են»], ինչպես Աննայի մոտ է:



<ճին> վարելով թշնամիների մեջտեղը, հետ շպրտեց դրանց մեծ մասը»]: Վասիլակեսը տանուլ է տվել իր ձեռնարկումը և կուրացվել[1]:

Պետրոս Թոռնիկը Ադրիանուպոլսում հաստատված Թոռնիկի ընտանիքից էր, որի անդամներն իրենց Մակեդոնացի էին անվանում իրենց բնակության վայրի անունով:

1071 թ. Մանազկերտի հռչակավոր արշավանքին մասնակցած զորականների շարքում կար մի Թոռնիկ, որը կրում էր նաև Կոտերծես անունը: Ճակատամարտի օրը «ուզերի մի գունդ, որի առաջնորդն էր Տամես [«կոչեցյալը»], <դավաճանել> և անցել է <սուլթանի> (բառացի՝ «հակառակորդի») կողմը: Այդ գունդը մտնում էր Թոռնիկ Կոտերծեսի գլխավորած զորաբանակի մեջ». μοῖρα τις Οὐζική, ἔξαρχον ἔχουσα Ταμῆν οὕτως ὀνομαζόμενον ὑπὸ Τορνικίῳ τῷ Κοτέρτζῃ ταττόμενον, τοῖς ἐναντίοις προσσερύη[2]:

Կոտերծեսի անունը դարձյալ հայտնվում է Մանուել I Կոմնենոսի ժամանակ մոտ 1146 թվականին: Իր թագավորության սկզբում Մանուելը արշավել է թուրքերի դեմ և սնափառությունից դրդված իր երիտասարդ կնոջ առջև իրեն փառավորելու համար մի սխրանք է գործել: Նա հեռանում է ճամբարից զինվորների երկու խմբի ուղեկցությամբ, որոնց նա թաքցնում է մի հովտում, իսկ ինքը միայնակ առաջ է անցնում որևէ արկածի հանդիպելու հույսով: Քանի որ կայսրը ուշանում էր, ապա հովտում պատսպարված զինվորները Կոտերծեսին՝ հռչակավոր մի մարդու, ուղարկում են կայսերը գտնելու[3]:

Դժվար է ասել՝ արդյո՞ք այդ Կոտերծեսը նույնպես պատկանում էր Թոռնիկի ընտանիքին, ինչպես և նրա համանունը, որը հիշատակվել է վերը:

[1] N. A. Mušmov-ը մի կնիք է հրատարակել, որը կրում է հետևյալ արձանագրությունը. **Βαρλάκιῳ πρωτοπροέδρῳ** [«Վարլակիոսին պրոտոպրոեդրոսին»]. **N. Banescu** («Byzantion», X, fasc. 2(1935), pp. 728-729) հրավացի է **Βασιλακίῳ** [«Վասիլակիոսին»] կարդալով, սակայն նա սխալվում է անվան տիրոջ հարցում: Կնիքը պատկանում է Վասիլակեսին, կամ Վասիլակիոսին, որն իսկապես πρωτοπρόεδρος էր (Skylitzes, p. 739):

[2] **Skylitzes**, p. 695; **Attaliotes**, p. 157, տեղյակ է **Ταμῖς**-ի դավաճանությանը, սակայն Թոռնիկ Կոտերծեսի անունը չի տալիս:

[3] **Cinnamus**, pp.48 et sqq. Անունը պարթևական ծագում ունի: Պարթևների դրամների վրա կարելի է կարդալ **Γωτερξης** կամ **Γωτερζης**, արքա, որը թագավորել է Ք. հ. 41-51 թթ. (**J. de Morgan**, Manuel de Numismatique orientale, I, p. 163): Հայերի մոտ Գոտերզը Արծրունյաց տոհմին պատկանող մի իշխան էր (**Ղազար Փարպեցի**, Դ, էջ 5, 26, Թիֆլիս, 1904). «զԳոտեր զեղբայր իւր» (**Թովմա Արծրունի**, էջ 82) «զԳոտերզ եղբայր իւր»-ի փոխարեն: Դիոնիսիոս Թրակացու քերականության հայերեն թարգմանության մեջ *Գողերձական*-ը հայտնվում է որպես ցեղանուն (**Н. Адонц, Дионисий Фракийский и его армянские толкователи, Библиотека армено-георгика. 4, СПб., 1915, с. 20**): Սա հիշեցնում է հների **Κοταρζήνη**-ն, որին համապատասխանում է Կղարջ-ք, Կլարջ-եթի-ին: XI դարի կեսերին մի Գողերժ հայտնի էր Կախեթում որպես իշխանաց իշխան: Նրա որդի Գուրամը, որը Բցիս-ցիխեի (=Բժնի) տերն էր, գերեվարվել է Լիպարիտի կողմից Անի քաղաքի դարպասներից մեկի մոտ (**M. Brosset**, Histoire de la Géorgie, I, p. 320):

Նույնը կարելի է ասել Նիկողայոս Կոտերծեսի դեպքում, որն ապրել է Հովհաննես III Դուկաս Վատացեսի (1221-1254) ժամանակ և որին հանձնարարվել է կայսեր կողմից Թրակիայի Գանոս լեռան վրա վերակառուցված ամրոցի պահպանությունը[1]:

XII դարի երկրորդ կեսին Թոռնիկի ընտանիքը վերստին ասպարեզ է գալիս և նշանակալից տեղ գրավում XIII դարի պատմության մեջ և հետագայում:

Միքայել Ակոմինատեսի (21) մի նամակ մեզ ծանոթացնում է այդ ընտանիքի երեք աչքի ընկնող անդամների հետ: Նամակը հասցեագրված է Դեմետրիոս Թոռնիկին և պարունակում է հետևյալը.

Τῷ μεσάζοντι αὐτοῦ τῷ Τορνίκῃ κῦρ Δημητρίῳ.

... Ἐγὼ δὲ τὸν μεγαλοθέτην τὸν θεῖον Τορνίκην εὖ εἰδὼς ἐν πάσῃ δικαιοσύνῃ πολιτευσάμενον καὶ ἐν κλήρῳ τῶν ἁγίων τεταγμένον, ᾤμην οὐδένα κληρονόμον τῆς ἐκείνου ἀρετῆς καταλελοιπέναι.

Τοῦ λαμπροτάτου ἐπάρχου καὶ θαυμαστοῦ κῦρ Κωνσταντίνου τοῦ ὄντος κόσμου τῶν βασιλειῶν καὶ εἰκόνος ἐμψύχου τῆς ἐκείνου ἀρετῆς, ὢ τῶν ἐμῶν κακῶν, ἔργον γενομένον Σκυθῶν, τοῦ δ᾽ αὖ ἀρχιποίμενος τῶν Παλαιῶν Πατρῶν καὶ ἄλλου ὑπερφέροντος κόσμου τῆς ἱερᾶς συνόδου οὐκ οἶδ᾽ ὅπως καὶ αὐτοῦ γενομένου ἐκ μέσου...

Ἐπεὶ δὲ φήμη τις ἀγαθὴ περιεβόμβησε μου τὰς ἀκοὰς ὡς ἔκγονός τις τοῦ μεγάλου Τορνίκου παρὰ τῷ ἁγίῳ βασιλεῖ τῷ Λάσκαρι μέγα δύναται καὶ τῆς ἀρετῆς τῆς πατρικῆς καὶ παππῴας κατ᾽ ἴχνη πορεύεται, ἐπάνῆλθον εἰς ἑαυτόν.

Χαῖρε μοι φίλη κεφαλή, ὡς νῦν γὰρ πρῶτον σὲ ὁρῶ καὶ κατασπάζομαι καὶ περιπτύσσομαι ὡς εἰκόνα τοῦ θαυμασίου κῦρ Κωνσταντίνου καὶ κῦρ Δημητρίου οἷς καὶ γίνου ὅμοιος, ἵνα καὶ οἱ μὴ φθάσαντες τὸν γονέα καὶ τὸν πρόγονόν σου ἰδεῖν ὀφθαλμοῖς αὐτοῖς λέγωσιν ἀληθῶς αἵματος ἀγαθοῦ εἶναι σε ἀπορροήν.

[«Նույն *միջնորդ* (մեսազոն) Թոռնիկին՝ տեր Դեմետրիոսին:

... Ես, լավ ճանաչելով աստվածանման մեծ Թոռնիկին իբրև արդարությամբ կյանք վարողի և սրբերի ժառանգորդների թվին դասվողի, մտածում էի, որ նա իր առաքինության որևէ ժառանգ չի թողել:

Հրաշալի տեր Կոստանդինը, ամենափայլ էպարքոսը, մայրաքաղաքի զարդը և նրա (իմա՝ Դեմետրիոս Ավագի) առաքինության շնչավոր պատկերը (օ՜հ մեր չարիքների <բազմության>, որ գործեցին սկյութացիները), որը նաև Հին Հայրերի արքիհովիվն էր և սուրբ սինոդի մեկ այլ ևս գերազանց

---

[1] Acropolites, p. 55.



զարդը, չգիտեմ, թե ինչպես նույնպես վերացավ...

Բայց երբ մի բարի լուր թնդաց լսողությանս մեջ՝ որ մեծ Թոռնիկի թոռներից մեկը հույժ կարողներից է սուրբ թագավոր Լասկարիսի մոտ և ընթանում է հորենական և պապական առաքինության հետքերով, ես ուշքի եկա:

Ողջույն, սիրեցյալ անձ, այժմ նոր եմ տեսնում քեզ և գրկում, և փաթաթվում, իբրև զարմանահրաշ տեր Կոստանդնի և տեր Դեմետրիոսի տիպարի, որոնց և նմանվիր <այսուհետ>, որպեսզի նրանք, ովքեր չհասցրեցին սեփական աչքերով տեսնել քո ծնողին և քո պապին, ասեն, որ դու իրոք բարի արյան արտահոսք ես»] [1] (22):

Նամակի հասցեատերը՝ Դեմետրիոս Թոռնիկը, ներկայանում է որպես չափազանց ազդեցիկ մի մարդ Թեոդորոս I Լասկարիսի (1204-1222) արքունիքում: Նա հետևում էր «իր հոր՝ Կոստանդնի, և պապի՝ Դեմետրիոսի, օրինակին: Հռչակավոր և հոյակապ Կոստանդինը թագավորության զարդն էր և իր հոր՝ Դեմետրիոսի, առաքինությունների պատճենը»: Վերջինս ապրել է առաքինի կյանքով և արժանացել է սրբերի շարքը դասվելու պատվին: Երեք Թոռնիկները՝ հայրը, որդին և թոռը, հայտնի են նաև այլ աղբյուրներից: Առաջինը հավանաբար այն Դեմետրիոս Թոռնիկն է, որը հիշատակված է Նիկետաս պատմիչի կողմից որպես «բարձի երեք դատավորներից» մեկը, ἐκ τῶν τοῦ βήλου κριτῶν, որոնց Անդրոնիկոս կայսրը 1138 թ. հանձնարարել էր դատել Մանուել կայսեր այրի և Ալեքսիոս թագաժառանգի մայր Մարիամ կայսրուհուն: Դատավորներ Դեմետրիոս Թոռնիկը, Լևոն Մոնաստերիոտեսը և Կոստանդին Պատրենոսը քիչ էր մնում իրենց կյանքով վճարեին այն հանդգնության համար, որ նրանք ցուցաբերել էին հարցնելով «թե արդյո՞ք դատարանը հավաքվում է Ալեքսիոսի հրամանով»[2]:

Խալքի վանքի մի ձեռագիր պարունակում է երկու նամակ, որոնք Դեմետրիոս Թոռնիկը գրել է Հռոմի պապին, մեկը՝ Իսահակ կայսեր անունից, մյուսը՝ պատրիարքի.

Τοῦ Τορνίκη κυρίου Δημητρίου εἰς τὸν ἁγιώτατον πάπαν Ῥώμης, ὡς ἐκ προσώπου τοῦ βασιλέως Ἰσαακίου.

Τοῦ αὐτοῦ κυρίου Δημητρίου τοῦ Τορνίκη εἰς τὸν ἁγιώτατον πάπαν Ῥώμης, ὡς ἐκ προσώπου τοῦ πατριάρχου[3].

[«Թոռնիկ տեր Դեմետրիոսից Հռոմի սրբազնագույն պապին,

---

[1] Հրատարակվել է՝ **Ф. И. Успенский**, Образование второго Болгарского царства, сс. 74-75, прим. 1:

[2] **Nicetas Choniates**, p. 44 (= **Sathas**, VII, p. 329).

[3] **A. Papadopulos-Kerameus**, Documents grecs pour servir à l'histoire de la IV croisade, dans la «Revue d'Orient Latin», 1893, p. 542.

թագավոր Իսահակիոսի անունից:

Նույն տեր Դեմետրիոսից Հռոմի սրբազնագույն պապին, պատրիարքի կողմից»] :

Իսահակ կայսրը Իսահակ II Անգելոսն (Հրեշտակ) է, որը թագավորել է բռնապետ Անդրոնիկոսից հետո, 1185-1195 թվականներին: Հետևաբար նամակների հեղինակ Դեմետրիոսը նույնանում է վելումի՝ «բարձի» դատավորին, որն ապրում էր հենց այդ ժամանակաշրջանում: Ըստ Լամբրոսի տեղեկությունների՝ այդ Դեմետրիոսը վարում էր դրոմոսի ավագ լոգոթետեսի և կանիկլիոնի պրեպոզիտոսի պաշտոնները և մահացել է 1198 թվականին[1]:

Նրա որդի Կոստանդին Թոռնիկը մայրաքաղաքի պրեֆեկտն էր, ὁ τῆς πόλεως ἔπαρχος Κωνσταντῖνος ὁ Τορνίκης [«քաղաքի էպարքոս Կոստանդին Թոռնիկ»] Ալեքսիոս III-ի (1195-1203) թագավորության ժամանակ: Նիկետասը հիշատակել է նրան 1201 թ. քաղաքում բռնկված խռովության կապակցությամբ: «Ոստիկանության պետը»՝ τῆς τοῦ πραιτωρίου φρουρᾶς, ոմն Հովհաննես Լագոս, հնարամիտ և անսովոր հանցագործություն էր կատարել. գիշերով նա բանտից ազատ էր արձակում այնտեղ պահվող հանցագործներին, որպեսզի նրանք տներ թալանեին և բանտ վերադառնալով իր հետ կիսեին ավարը: Ավազակախումբը բացահայտվել է և գազազած ամբոխը պատրաստ էր հոշոտել հանցագործին: Վրա է հասել կայսերական անձնազորի գլուխն անցած Կոստանդին Թոռնիկը, խաղաղեցրել է ապստամբներին և վերականգնել կարգն ու կանոնը[2]:

Երբ լատինացիները գրավում են Կոստանդնուպոլիսը, Կոստանդինը դրոմոսի լոգոթետես էր և նա տիհաճությամբ է ծառայության անցնում Բոդուենի մոտ: Ադրիանուպոլսի ճակատամարտից հետո, երբ Բոդուենը գերեվարվում է, Կոստանդին Թոռնիկը գնում է բուլղար թագավոր Իոաննիկեսի մոտ: Նախկինում, լինելով կայսրերի պատվիրակ, նա առիթ էր ունեցել ծանոթանալու նրա հետ և հույս ուներ օգտագործել այդ բարեկամությունը: Սակայն հաղթանակ տարած թագավորը նրա հետ դաժանաբար է վարվել. երկար ժամանակ որպես գերի պահելուց հետո նրան սպանել են մոտ 1206 թվականին[3]:

Նա Դեմետրիոս անունով մի որդի է թողել, որին μεσάζων [«միջնորդ»] էին կոչում և որին նամակ էր գրել Միքայել Ակոմինատեսը: Նա կարևոր դեր է խաղացել Նիկեի արքունիքում՝ ոչ միայն Թեոդորոս Լասկարիսի, այլև նրա փեսա և հաջորդ Հովհաննես Վատացեսի (1221-1254) թագավորության ժամանակ: 1242 թ. բուլղարների դեմ արշավանքի ժամանակ Դեմետրիոս Թոռնիկը ուղեկցում էր Հովհաննես Բատացեսին, ὁ Τορνίκης Δημήτριος τὰ κοινὰ διέπων καὶ μεσιτεύων ταῖς ὑποθέσεσι [«Թոռնիկ Դեմետրիոսը զբաղվում էր հասարակական խնդիրներով և միջնորդում էր գործերում»][1]: μεσιτεύων [«միջնորդ, հաշտարար»] մակդիրը վկայում է, որ խոսքը μεσάζων Դեմետրիոսի մասին է:

[«Մեծ քարտուղար»] μέγας χαρτουλάριος Թեոդորոս Պետրալիփասը և [«մեծ դոմեստիկոս»] μέγας δομέστικος Անդրոնիկոս Պալեոլոգոսը նույնպես մասնակցել են բուլղարական արշավանքին: Առաջինը Դեմետրիոս Թոռնիկի դստեր ամուսինն էր՝ γαμβρὸς τοῦ Τορνίκη Δημητρίου τοῦ Κομνήνου, ὃς τὰ κοινὰ διέπων ἦν τῷ βασιλεῖ 'Ιωάννῃ, παρ' αὐτοῦ πάνυ φιλούμενος καὶ τιμώμενος· ἀδελφὸν γὰρ αὐτὸν ἐν τοῖς γράμμασιν ἀπεκάλει [«Թոռնիկ Դեմետրիոս Կոմնենոսի փեսան էր, հասարակական գործեր էր վարում Հովհաննես կայսեր մոտ, շատ սիրված և գնահատված էր նրանից, քանի որ նրան (իմա՝ Թեոդորոս Պետրալիփասի) եղբայր էր անվանում իր նամակներում... »][2]:

«Հովհաննես կայսրը» Վատացեսն է, որի բարեկամն ու «եղբայրն» էր Դեմետրիոսը: Այստեղ Դեմետրիոսը կրում է նաև Կոմնենոս անունը՝ հավանաբար այդ երկու ընտանիքների խնամիական կապերի հետևանքով, ինչպես որ եղել է Ալեքսիոս Հրեշտակի դեպքում, որին նաև Կոմնենոս էին կոչում, և Միքայել Պալեոլոգոսի՝ ὁ Κομνηνὸς Μιχαήλ-ի, պարագային[3]: Դեմետրիոսի կինը τοῦ μεγάλου δομεστίκου πρωτεξαδέλφιν [«մեծ դոմեստիկոսի առաջին զարմուհին»] էր: Դոմեստիկոս ասելով նկատի ունեն Միքայելի հայր Անդրոնիկոս Պալեոլոգոսին[4]: Հետևաբար Դեմետրիոս Թոռնիկի կինը Միքայել Պալեոլոգոս կայսեր հոր զարմուհին էր: Դեմետրիոսը մահացել է մոտ 1251 թվականին[5] :

Դեմետրիոսի որդին իր պապի՝ Կոստանդնի, անունն էր կրում: Նա աչքի է ընկել Հովհաննես Վատացեսի, նրա որդի Թեոդորոս Լասկարիսի և Միքայել Պալեոլոգոսի թագավորության ժամանակ: Հովհաննես Վատացեսը նրան արժանացրել է μέγας πριμικήριος [«թագավորական պալատի մեծ սպա»]-ի պատվաստիճանին[6]: 1256 թ. նա գտնվում էր Սերեսում որպես մի զորաբանակի զորավար և միացել էր Թեոդորոս II Լասկարիս կայսերը, երբ վերջինս արշավել է բուլղարների դեմ[7]: 1260 թ. Կոստանդինը Հովհաննես Պալեոլոգոսի և Ալեքսիոս Ստրատեգոպուլոսի հետ զորքն առաջնորդել

[1] L. Petit, в сб. «Известия Русского института в Константинополе», VI, c. 141.
[2] Nicetas, p. 696.
[3] Ibid., p. 848.

[1] Acropolites, p. 71.
[2] Ibid., p. 97.
[3] Gregoras, p. 72.
[4] Acropolites, p. 100.
[5] Ibid., p. 97.
[6] Acropolites, p.120 (=Sathas, VII, p. 515).
[7] Ibid., p.165.

է Միքայելի՝ Էպիրոսի բռնատիրոջ, դեմ[1]: Միքայել կայսրը նրան սեբաստոկրատոր է կոչել[2]: Միքայել կայսեր եղբայր Հովհաննես Պալեոլոգոսը կնությամն էր առել Կոստանդին Թոռնիկի դստերը՝ τὸν δὲ πενθερὸν αὐτοῦ (sc. 'Ιωαννοῦ) τὸν Τορνίκον Κωνσταντῖνον [«իր (իմա՝ Հովհաննեսի) աներոջը, Թոռնիկ Կոստանդինին»][3]: Կոստանդնի մյուս դուստրը կնության էր տրված Կոստանդին Էպիրացու որդուն՝ Հովհաննեսին[4]: 1265 թ. Կոստանդինը Կոստանդնուպոլսի պրեֆեկտն էր[5]: Նրա արժանիքներից մեկն այն էր, որ նա նպաստել էր Արսենիոս պատրիարքի վերստին գահ բարձրանալուն[6]:

Երրորդ Դեմետրիոսը, որը մատովակ էր, հիշատակված է 1358 թ. Աթոս լեռան Փրկչի վանքին նրա կնոջ՝ Աննայի, մատուցած նվիրատվության կապակցությամբ[7]: Նրա անունը թույլ է տալիս ենթադրելու, որ նա սեբաստոկրատոր Կոստանդին Թոռնիկի որդին էր:

Միքայել Թոռնիկն այդ Դեմետրիոսի ժամանակակիցն էր, սակայն մենք չգիտենք՝ արդյո՞ք նա ևս սեբաստոկրատորի որդին էր, թե՞ ոչ: Դա մեզ հայտնի չէ: Թեոդորոս Մետոխիտեսի նախանձախնդիր բարեկամ Միքայելն իր ընկերոջ հետ վճռական դեր են խաղացել Անդրոնիկոս III-ի ճակատագրում 1320 թվականին, նրան պաշտպանելով Անդրոնիկոս II-ից[8]:

Բացի այդ, հայտնի է նաև մի Թեոդորոս Թոռնիկ, որը 1261 թ. Միքայել Պալեոլոգոսի կողմից Կոստանդնուպոլսի ետ գրավման ժամանակ հիվանդ էր և մահամերձ վիճակում, և որին պատմիչները մի գուշակություն են վերագրում թուրքերի կողմից մայրաքաղաքի ապագա նվաճման վերաբերյալ: Արդյոք նա 1251 թ. վախճանված Դեմետրիոս Մեսազոնի եղբա՞յրն էր:

Առաջին Դեմետրիոս Թոռնիկի ժամանակակիցներն էին երկու այլ Թոռնիկներ՝ Գեորգը, որին μαΐστωρ τῶν μαΐστρων [«մագիստրոսների մագիստրոս»] էին կոչում և որը դառնում է Եփեսոսի միտրոպոլիտը, և նրա զարմիկ Եվթիմիոսը՝ Ս. Սոֆիայի սարկավագը 1204 թ., որը հետագայում դարձել է Παλαιῶν Πατρῶν [«Հին հայրերի»]-ի եպիսկոպոսը[9]:

---

[1] **Nicetas**, I, p. 72.
[2] **Acropolites**, p.184.
[3] Ibid. = **Gregoras**, I, p. 72; **Pachymeres**, I, p. 97.
[4] **Pachymeres**, I, pp. 243 et 483.
[5] Ibid., III, p. 225.
[6] **Acropolites**, p. 188 (=**Sathas**, VII, p. 549).
[7] **Ed. von Muralt**, Essai de chronographie byzantine.
[8] **Cantacuzenus**, I, p.54. 'Ο μέγας κονοσταῦλος μητρόθεν μὲν κατὰ γένος προσήκων τῷ πρεσβυτέρῳ τῶν βασιλέων [«Մեծ կոնեստաբլը մորական կողմից ազգակից էր թագավորներից ավագին»]: Սա հաստատում է, որ Դեմետրիոս Թոռնիկը († 1198 թ.) ամուսնացել էր Կոմնենոսների ընտանիքին պատկանող մի կնոջ հետ:
[9] **L.Petit, в сб. «Известия Русского института в Константинополе», VI, с. 141.** Հայտնի է մի նամակ, որը հասցեագրված է τῷ Τορνίκῃ τῷ Κομνηνῷ [«Թոռնիկ Կոմնենոսին»]. մի երկրորդ նամակ, որը թվագրված է IV ինդիկտիոնով = 1215/6 թվականով: Հայտնի է նաև մի նամակ τοῦ σοφωτάτου μαΐστορος τῶν ῥητόρων Γεωργίου τοῦ Τορνίκῃ [«հռետորների մեծիմաստ մագիստրոս Գեորգիոս Թոռնիկի»], որը հասցեագրված է Գեորգիոս II Քսիփիլինոս պատրիարքին (1192-1199): **Aug. Heisenberg**, Programm des Alten Gymnasiums zu Würzburg, 1906-1907, SS. 7 և 11. K. **Krumbacher**, 2-te Aufl., S. 472:



Բյուզանդական կնիքագիտությանը հայտնի են Թոռնիկի ընտանիքին պատկանող երեք կնիքներ, որոնք կրում են հետևյալ արձանագրությունները. ΝΙΚΗΤΟΝ ΤΟΡΝΙΚΗΝ [«Նիկետաս Թոռնիկին»], ΑΝΤΟΝΑ ΤΟΡΝΙΚΗΩ [«Անտոն Թոռնիկին»][1]. երրորդի վրա կարդացվում է. 'Ετερον σιγιλλίδιον γραφὴ τοῦ περιποθήτου ἀνεψιοῦ τοῦ κραταίου καὶ ἁγίου ἡμῶν βασιλέως κυρίου Κωνσταντίνου Κομνηνοῦ τοῦ Τορνίκη [«Երկրորդ փոքր կնիք՝ գրությամբ (բառացի՝ «գրություն») մեր զորեղ և սուրբ թագավորի՝ շատ սիրեցյալ զարմիկ տեր Կոստանդին Կոմնենոս Թոռնիկի կողմից»][2]:

Քանի որ նրա մայրը հավանաբար ծագումով Կոմնենոսների ընտանիքից էր, կնիքի տերը յուրացրել է Կոմնենոս անունը: Այն կայսրը, որի զարմիկն է ինքն իրեն անվանում կնիքի տերը, պետք է որ նույնպես Կոմնենոս լիներ: Այդ Կոստանդին Թոռնիկ Կոմնենոսը չի կարող նույնանալ Կոստանդին սեբաստոկրատորին, որովհետև վերջինիս մայրը Պալեոլոգոսների ընտանիքին պատկանող արքայադուստր էր. Միքայել կայսեր հոր՝ Անդրոնիկոսի, զարմուհին էր և նրա քեռին կայսր չէր: Մենք տեսանք, որ Կոստանդնի հայրը՝ Դեմետրիոս «միջնորդը», արդեն կրում էր Կոմնենոս անունը: Պետք է ենթադրել, որ կնիքը ավելի շուտ պատկանում էր Դեմետրիոս «միջնորդի» հայր, մայրաքաղաքի պրեֆեկտ Կոստանդնին: Դա ստիպում է մեզ պնդելու, որ նրա հայրը՝ առաջին Դեմետրիոսը, որը «քարձի» դատավոր էր, ամուսնացել էր Կոմնենոսների ընտանիքին պատկանող մի օրիորդի՝ Մանուելի կամ Հովհաննեսի դստեր, հետ:

Ավարտելուց առաջ ասենք, որ Նիկեում կար Թոռնիկի անունը կրող մի վանք, ուր թաղվել էր Թեոդորոս Մուզալոնը 1294 թվականին[3]: Արկադիայում հայտնի է մի գյուղ, որը կրում է τὰ Τορνίκη անունը[4]:

Այն ամենը, ինչ մենք ասացինք, կարելի է ներկայացնել հետևյալ աղյուսակով.

---

[1] **G.Schlumberger**, pp. 708-709.
[2] **L. Petit, «Известия», VI, с. 123.**
[3] **Pachymeres**, II, p. 193.
[4] **«Византийский временник», XXI (1914), с. 200.**






# ԴԻՏԱՐԿՈՒՄՆԵՐ ՏԱՐՈՆԱՑԻՆԵՐԻ ՏՈՀՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

## Պատասխան Գերաշնորհ Հայր Վ. Լորանին

Գերաշնորհ հայր Վ. Լորանը վերջերս հրատարակել է Թեսաղիայի Ս. Ստեփանոս վանքում պահպանված XIV դարի ձեռագրում զետեղված ապահարզանի փաստաթղթի մի հատված, որն արժեքավոր տեղեկություններ է պարունակում Բյուզանդիայում հաստատված առաջին Տարոնացիների խնամիական կապերի վերաբերյալ: Այստեղ մենք վերարտադրում ենք այդ պատառիկը.

Μιχαὴλ μάγιστρος ὁ ῥαίκτωρ δύω θυγατέρας ἀπογεννήσας Ἑλένην καὶ Σοφίαν, διέζευξε τὴν μὲν Ἑλένην πατρικίῳ Παγκρατίῳ τῷ Ταρωνίτῃ, ἥτις ἔτεκεν τὴν Ἀγάθην, ἀφ᾽ ἧς ἐτέχθη παῖς ἡ Θεωφανώ, ἡ δὲ ἑτέρα θυγατὴρ τούτου ἡ Σοφία συνῆλθε πρὸς γάμον Κωνσταντίνῳ πρωτοσπαθαρίῳ τῷ Ῥαδηνῷ καὶ ἀπὸ τούτου τὴν Ἄνναν ἔτεκεν, ἥτις συναφθεῖσα Ἰωάννῃ πρωτοσπαθαρίῳ τῷ Παρσακουντινῷ γεννᾷ τὴν Θεωφανώ.

Ὁ δὲ Ταρωνίτης γεννᾷ παῖδας, τόν τε εἰρημένον Παγκράτιον τὸν τῆς Ἑλένης ἄνδρα καὶ Γρηγόριον τὸν γεγονότα μάγιστρον ὅστις γεννᾷ τὴν Εἰρήνην· ἡ δὲ συνοικήσασα Ῥωμάνῳ πατρικίῳ τῷ Ταρωνίτῃ τὸν ἐγκαλοῦντα Θεοφύλακτον ἔτεκεν. Ἔγημε τοίνυν οὗτος ὁ Θεοφύλακτος τὴν Θεωφανώ, τὴν ἐκ τῆς Σοφίας τῆς θυγατρὸς τοῦ ῥαίκτωρος καταγομένην καὶ προεγγόνην ἐκείνου τυγχάνουσαν

[«Միքայել մագիստրոսը և ռեկտորը (1) ծնելով երկու դուստր՝ Հելենե և Սոֆիա, պատրիկ Բագրատ Տարոնացուն կնության տվեց Հելենեին, որը և ծնեց Ագաթեին, որից ծնվեց զավակ՝ Թեոփանո: Նրա երկրորդ դուստրը՝ Սոֆիան, ամուսնացավ պրոտոսպաթար Կոստանդինոս Ռադենոսի հետ և նրանից ծնեց Աննային, որը, կնության տրված պրոտոսպաթար Հովհաննես Պարսակունտինոսին, ծնեց Թեոփանոյին:

Տարոնացին ծնեց զավակներին՝ նշյալ Բագրատին, Հելենեի ամուսնուն և Գրիգորիոսին, որը մագիստրոս եղավ. սա ծնեց Իրենեին. այս վերջինը, կենակցելով պատրիկ Ռոմանոս Տարոնացուն, ծնեց Թեոփիլակտոս կոչեցյալին: Այս Թեոփիլակտոսը կնության վերցրեց Թեոփանոյին, որը սերում էր

Սոֆիայից, ռեկտորի դուստրից և այս վերջինի ծոռն էր»][1]:

Զարմանալի է, որ հրատարակիչը չի ցանկացել ընդունել, որ այս հետաքրքիր վավերագիրը լիովին հաստատում է մեր վարկածներից մեկը (նա այն դյուրաբեկ է անվանում), որը նա փոխարինում է միանգամայն կամայական ենթադրություններով:

Այն Տարոնացին, որի մասին խոսվում է վավերագրում, Տարոնի վերջին իշխան Աշոտն է († 968 թ.), որը երկու որդի ուներ՝ Գրիգոր և Բագրատ: Գրիգորը, արժանանալով մագիստրոսի պատվաստիճանին, ստանձնել է Թեսաղոնիկեի դուքսի պաշտոնը և զոհվել բուլղարական պատերազմի ժամանակ 995 թվականին: Նրա որդի Աշոտի ռոմանտիկ պատմությունը բավականաչափ հայտնի է: Ըստ մեզ հետաքրքրող վավերագրի, Գրիգորն Աշոտից բացի ուներ նաև դուստր Իրենե անունով, որը կնության էր տրվել Ռոմանոս Տարոնացուն, որ հայտնի է որպես Վարդաս Սկլերոսի առաջին կողմնակիցներից մեկը:

Գրիգորի եղբայր Բագրատը նույնպես մասնակցել է Սկլերոսի ապստամբությանը, սակայն ի վերջո անցել է կայսերական ծառայության: Մենք ոչ մի տեղեկություն չունենք նրա հետագա ճակատագրի մասին: Նորագյուտ փաստաթուղթը մեզ տեղեկացնում է, որ նա ամուսնացել էր մագիստրոս և ռեկտոր Միքայելի դուստր Հելենեի հետ և այդպիսով մուտք էր գործել բյուզանդական բարձր խավը: Միքայելն իսկապես Քրիստափորի՝ Ռոմանոս Լեկապենոսի որդու, ուստրն էր: Խնդրո առարկա անձինք և խնամիական կապերը ներկայանում են հետևյալ կերպ.




[1] «Echos d'Orient», t. XXXVII, n°. 189-190, Paris, p. 129.



Խնդիրն այն է, որ պետք է որոշել Իրենեի ամուսնու՝ Ռոմանոս Տարոնացու ինքնությունը:

Հելենեի հետ Բագրատի ամուսնությունից առաջ Լեկապենոսների կայսերական ընտանիքի հետ կնքվել է մեկ այլ ամուսնություն. Աշոտի († 967) եղբայր Բագրատը ամուսնացել էր Ռոմանոս Լեկապենոսի ազգական Թեոփիլակտոս մագիստրոսի քրոջ հետ: Քանի որ մագիստրոսը կրում էր Լեկապենոսի հոր անունը, ապա դա վկայում է նրանց միջև գոյություն ունեցող ազգակցական կապի սերտության մասին: Նշված ամուսնությունը տեղի է ունեցել Ռոմանոս Լեկապենոսի թագավորության ժամանակ և անկասկած նրա թույլտվությամբ: Հնարավոր է, որ նա եղել է այդ ամուսնության նախաձեռնողներից մեկը: Տարոնացիներին նվիրված մեր հոդվածում[1] Տարոնացի իշխանի անունը՝ Ռոմանոս, մեզ ստիպել է մտածել այդ ամուսնության մասին: Մեզ հանգիստ չէր տալիս այն միտքը, որ միգուցե նա ծնվել էր բյուզանդացի իշխանուհուց՝ Բագրատի կնոջից, և կարող է նրան Ռոմանոս էին անվանել Ռոմանոս Լեկապենոսի պատվին:

Այժմ, հայր Վ. Լորանի հրատարակած վավերագրից մենք իմանում ենք, որ Ռոմանոս Տարոնացին մի որդի է ունեցել, որը կրում էր Թեոփիլակտոս, այսինքն՝ իր ենթադրյալ քեռու, անունը: Դա մի ծանրակշիռ փաստարկ է մեր ենթադրության օգտին: Սակայն հայր Վ. Լորանը կարծում է, թե կարող է հակադրվել այդ ակնհայտ փաստին հենվելով կանոնական թելադրանքների վրա: Նրա կարծիքով, եթե Ռոմանոս Տարոնացին Թեոփիլակտոսի փեսա Բագրատի որդին էր, ապա նա չէր կարող ամուսնանալ Իրենեի հետ, որն իր հորեղբոր թոռն էր: Իսկ ինչո՞ւ: Այն պատճառով, որ այդ դեպքում գոյություն կունենար հինգ պորտի խոչընդոտը, մինչդեռ կանոնական օրենքները ամուսնության հարցում շատ խիստ էին: Սակայն հայր Վ. Լորանի այդ պատճառաբանության դեմ մենք կարող ենք, միայն հիշողությամբ, թվել մեկից ավելի դեպքեր, երբ կանոնական կարգադրագրերն անտեսվել են: Հերակլիոս կայսրը չէ՞ր արդյոք, որ ամուսնացել էր հարազատ զարմուհու՝ իր քույր Մարիայի դուստր Մարտինայի հետ: Նրա որդի Կոստանդինը նույնպես չէր պահպանել կանոնական օրենքը՝ ամուսնանալով Հերակլիոսի քեռորդի Նիկետասի դստեր հետ. այս դեպքում վեց պորտի հարց կար: Չմշկիկը Նիկեփորոս Փոկաս կայսեր զարմիկն էր, սակայն մենք գիտենք, որ 969 թ. դեկտեմբերի հեղաշրջումից հետո բոլորը սպասում էին, որ նա կամուսնանա իր հորեղբոր կնոջ և գործակից Թեոփանոյի հետ: Եթե ամուսնությունը չկայացավ, ապա լոկ այն պատճառով, որ Պոլիևկտոս պատրիարքը պահանջեց արտաքսել հանցագործ կայսրուհուն, սակայն

[1] N. Adontz, Les Taronites en Armenie et à Byzance, «Byzantion», t. XI (1936), p. 22.

ազգակցական կապի հանգամանքն այդ գործում ոչ մի դեր չի խաղացել: Հայր Վ. Լորանի կանոնական դիտողությունը հեռու է համոզիչ լինելուց մեկ այլ տեսակետից ևս: Բյուզանդական եկեղեցական իրավունքը վկայակոչելուց առաջ նախ պետք է ապացուցել, որ Ռոմանոս Տարոնացին Իրենեի հետ իր միությունը կնքել է Բյուզանդիայում և հունական ծեսի օրենքներով, իսկ դա դժվար է ապացուցել: Ռոմանոսը հայտնվում է պատմական ասպարեզում մի ակնթարթով 979 թ. և իսպառ անհետանում է: Եթե նա, ինչպես կարծում.ենք մենք, 940 թ. մահացած Բագրատի որդին է, ապա նրա ամուսնությունը պետք է որ տեղի ունեցած լիներ 978 թվից շատ առաջ և այդ դեպքում հասկանալի է, որ Ռոմանոս Տարոնացին Բյուզանդիա չէր գնացել իր հորեղբորորդի Գրիգոր Տարոնացու դստերը փնտրելու և նրա հետ ամուսնանալու համար: Մենք իրավունք ունենք կարծելու, որ նրա ամուսնությունը կնքվել է Հայաստանում՝ Տարոնում, հայկական ծեսի օրենքներով: Ուստի բյուզանդական օրենքներին դիմելու փոխարեն պետք է դիմել հայոց եկեղեցու ամուսնական օրենքներին, կնքված ամուսնության օրինականությունը և կամ կրոնական արգելքի առկայությունը որոշելու համար:

Պետք է ասել, որ հայոց եկեղեցին, համենայն դեպս այդ ժամանակաշրջանում, բավականաչափ հանդուրժող էր ամուսնությունների հարցում: 1183 թ., հենց այն ժամանակ, երբ Անդրոնիկոս կայսրը թույլտվություն էր խնդրում բացառության կարգով իր ապօրինի դուստր Իրենեին իր հորեղբորորդի Մանուելի ապօրինի որդի Ալեքսիոսի հետ ամուսնացնելու համար (այդ մասին խոսում է հայր Վ. Լորանը), հայ վարդապետ Մխիթար Գոշը գրում էր իր հռչակավոր Դատաստանագիրքը, ուր այլ հարցերի հետ մեկտեղ նա քննարկում է նաև ամուսնության հարցը և բավականին լայնախոհ կերպով: Հին օրենքների հետ կանոնական կարգադրագրերը համեմատելուց հետո, հայ գիտնական կանոնագետը թույլատրելի է համարում միությունները այն մարդկանց միջև, որոնց արյունակցական կապը հինգ և վեց պորտի է հասնում: Ինչ վերաբերում է չորրորդ աստիճանի միություններին, ապա դրանք արգելված են բացառությամբ այն դեպքերի, երբ խոսքը համառ մարդկանց և իշխանների մասին է, նրանց ապաշխարանք պարտադրելուց հետո:

Հեղինակը խոստովանում է, որ այդ կարգադրագրերի մեջ կան այնպիսիք, որոնք չեն համապատասխանում կանոններին, սակայն որոնք ներկայացնում են իրերի իսկական վիճակը: Այդ իրավիճակը հատկապես վառ էր արտահայտված հայ ավատատերերի միջավայրում. սրանք այդքան կարգապահ չէին եկեղեցու օրենքները հարգելու համար, իսկ եկեղեցին, իր հերթին, ի զորու չէր զսպելու հզորների կրքերն ու քմահաճույքները: Ուստի Դատաստանագրքի հեղինակը ստիպված է ընդունելու, որ իշխանների ամուսնական հարցերի նկատմամբ պետք է ավելի հանդուրժող լինել, քան այլոց



խնդիրների նկատմամբ, հուզումներից խուսափելու համար[1] (2): Դժվար չէ հասկանալ մեր հեղինակի մտահոգությունները, եթե հիշենք Սմբատ II Բագրատունու արքայի (977-989) դեպքը, որի արյունապիղծ կապը արգահատանքով դատապարտում է նրա ժամանակակից պատմիչը. Սմբատը կենակցում էր իր զարմուհու՝ իր հարազատ քրոջ դստեր հետ[2]:

Այդպիսին էր իրավիճակը X դարում, այն ժամանակաշրջանում, երբ ապրում էին մեզ հետաքրքրող Տարոնացի իշխանները: Ռոմանոս Տարոնացու ամուսնությունն Իրենեի հետ՝ հինգերորդ աստիճանի ամուսնություն, բնավ արտառոց բան չէր և միանգամայն համապատասխանում էր այդ դարաշրջանի Հայաստանի սովորություններին: Սա է հայր Վ. Լորանին հուզող խնդրի ռացիոնալ լուծումը: Այն հանդուգն վարկածները, որոնք նա առաջ է քաշում, անիմաստ են: Մեր Ռոմանոս Տարոնացուց բացի մեկ այլ Ռոմանոս Տարոնացու գոյությունը ենթադրելը նույնքան կամայական է, որքան Ταρωνίτης-ը Σαπωνίτης-ով ուղղելը:

Ակնհայտ է, որ Ռոմանոս Տարոնացին Թեոփիլակտոսի քրոջ որդին է և Թեոփիլակտոս Տարոնացու հայրը. անունների նմանությունը նշանակալից է:

Պետք չէ կարծել, որ հայերը, հատելով կայսրության սահմանը, անմիջապես կորցնում էին իրենց ազգային նկարագիրը և հույն էին դառնում: Հայր Վ. Լորանը կարծո՞ւմ է արդյոք, որ Բագրատունիները, որոնք դարեր շարունակ պաշտպանում էին իրենց տիրույթները և պայքարում էին խալիֆայության և ամիրաների դեմ, երազում էին ազատվել իրենց ունեցվածքից, այն հանկարծակի կերպով կայսրությանը նվիրելով:

Քննարկվող տեքստը հաստատում է մեր ենթադրությունը մեկ այլ հարցում ևս, իսկ հրատարակիչն այդ բանը չի էլ նկատել: Մենք ենթադրել էինք, որ Բյուզանդիայի Տարոնացիները, այսինքն 1040 թ. ապստամբած Գրիգորը և Միքայել պանհիպերսեբաստոսն իր որդիների և զարմիկի հետ երկու եղբայրների՝ Գրիգորի և Բագրատի, ժառանգներն էին: Ուստի Բագրատի աներոջ Միքայել անունը ինքնին բացատրում է պանհիպերսեբաստոսի անվան ծագումը և լուսաբանում նրա ժառանգորդությունը: Հետևաբար Միքայել Տարոնացին պատկանում է Բագրատի սերունդներին և նա անվանվել է ի հիշատակ Միքայել Լեկապենոսի: Միքայելի որդիներից մեկի անունը Հովհաննես էր: Կասկածից վեր է, որ նրան այդպես էին անվանել իր մորական պապ Հովհաննես Կոմնենոսի պատվին: Մյուս որդին կրում էր Գրիգոր անունը, որը հավանաբար նրա հայրական պապի անունն էր: Այդ դեպքում

[1] Մխիթար Գոշ, Դատաստանագիրք Հայոց, գլ. 109, Վաղարշապատ, 1880, հրտ. Վ. Բաստամյանց:

[2] Ասողիկ, Գ, գլ. 29:

ապստամբ Գրիգորը կարող էր Հովհաննեսի և Գրիգորի պապը լինել և, համապատասխանաբար, Միքայել Տարոնացու հայրը:

Հայր Վ. Լորանը համարում է, որ Բյուզանդիայի Տարոնացիների նախնին չի կարող Գրիգորը կամ Բագրատը լինել, ինչպես մենք էինք ընդունել, որ նրանց նախնիները պետք է համարվեին Կրիկորիկը կամ Դավիթ-Արքայիկի որդի Աշոտը: Այս սխալ տեսակետը դժվար չէ ժխտել: Աշոտն իսկապես հեռացել էր իր հայրենիքից Բյուզանդիա գնալու համար, սակայն մենք ոչինչ չգիտենք նրա հետագա ճակատագրի վերաբերյալ և ցանկացած ենթադրություն նրա վերաբերյալ ոչ մի արժեք չունի:

Ինչ վերաբերում է Կրիկորիկին, ապա նա երբեք չի ծառայել կայսրությանը: Այն տիտղոսները, որ Լևոն VI-ը տվել է նրան, ինչպես նաև այն նպաստը, որ նա ստացել է, նրան չեն դարձրել կայսրության հպատակը, իսկ Տարոնի իշխանությունը դրանով բյուզանդական բանակաթեմ չի դարձել: Լևոն կայսրը իր հաճույքի համար Կրիկորիկին Տարոնի ստրատեգոս է անվանել, որովհետև նա ցանկանում էր նրան այդ որակում տեսնել: Իրականում Կրիկորիկը մնացել էր, ինչպես և նախկինում, Տարոնի ἄρχων և հենց այդ պատվաստիճանով է նա հանդես գալիս կայսերական արքունիքի արարողակարգում[1]: Մագնավրա պալատում տեղի ունեցած ընդունելության ժամանակ նրան անվանում են մագիստրոս և արխոնտ: Դեռևս Կոստանդին Ծիրանածնի ժամանակ Տարոնը Հայաստանի տասներկու իշխանություններից մեկն էր և նրա իշխանը միշտ որակվել է որպես արխոնտ: Սա մի պատվաստիճան է, որ կայսերական արքունիքը տալիս էր այլազգի անկախ իշխաններին[2]:

Նույնիսկ Կրիկորիկի կայսերական նպաստը նրան չէր պարտադրում այլ բան, քան Բյուզանդիային հավատարիմ մնալը և Բյուզանդիայի ու խալիֆայության միջև երկիմաստ դեր չխաղալը, ինչում որ Լևոն կայսրը իրավացի թե հանիրավի կերպով մեղադրում էր նրան: Հարևան տերությունների իշխանապետները՝ Վասպուրականի իշխանը, Աշոտ II արքան, Վիրքի կյուրոպաղատը Կրիկորիկի նկատմամբ կայսեր բարեհոգությունը ընկալում էին որպես մատուցած կամ մատուցելիք ծառայությունների վարձատրություն: Ցանկանալով արժանանալ նույն շնորհին, նրանք ասում էին կայսերը. «Ինչո՞վ է Կրիկորիկը առավել ծառայություն մատուցում կայսրությանը, քան մենք»:

Եթե նպաստ ստանալը նշանակեր ենթարկվել, եթե այն տաներ դեպի հպատակություն, ապա հարևան իշխանները, անկասկած, դրան հետամուտ չէին լինի որպես մի շնորհի: Կայսրությունն իր հերթին նրանց խնդրանքը չէր մերժի, եթե այդքան հեշտ ձևով՝ դրամով, կարելի լիներ ընդարձակել սեփական տիրույթները:

X դարի հայ պատմիչ Ասողիկը, որը ծագումով Տարոնից էր, այս հարցին մոտենում է այլ կերպ, քան հայր Վ. Լորանը: Նրա կարծիքով կայսեր բարեհոգությունն ընդամենը ազնիվ արարք էր, որը չէր պարունակում և ոչ մի նվաստացուցիչ պայման և այդ պատճառով գովեստի խոսքեր է ասում այդ բարեհոգության կապակցությամբ. «Լևոն, որ թագավորեաց ամս *իզ*,- ասում է նա,- այր խաղաղարար և բարեխորհ ամենայն երկրի, առատաձեռն ի տուրս, և ի բաշխելն ոչ որպէս զՀոռոմ ռիշտ,- զի չէ սովորութիւն Հոռոմոց առատ լինել, և ոչ իւրեանց լեզու ասի առատ - այլ նա որդի Հայու էր, և առաւել քան զՀայ առատատուր»[1] (3):

Պատմիչն այդքան հանդիսավոր բառերով չէր փառաբանի կայսեր առատաձեռնությունը, եթե այն վնաս հասցներ հայրենի երկրի քաղաքական վիճակին: Կրիկորիկն իրականում իր դիրքը պահպանել էր այնպիսին, ինչպիսին որ այն եղել էր մինչ բյուզանդական արքունիքի հետ կապեր հաստատելը, և Տարոնը բռնակցվել է կայսրությանը ավելի ուշ՝ 968 թ. Կրիկորիկի որդի Աշոտի մահից հետո: Հենց այդ Աշոտի Բյուզանդիա գաղթած որդիներից է, որ սկսվում է Տարոնացիների հայ-բյուզանդական ընտանիքը:

Հայր Վ. Լորանը հիշեցնում է, որ Ταρωνίτης-ը հիմնականում հունական ձև ունեցող պատրոնիմ է, սակայն պետք է իմանալ, որ դա հայկական *Տարոնացի* ձևի թարգմանությունն է. այդպես էին հայերը կոչում Տարոնի Բագրատունիներին՝ նրանց Շիրակի Անիում թագավորող Բագրատունիներից տարբերակելու համար[2]:

[1] De administrando imperio, ch. 43, p. 185.
[2] De cerimoniis, I, cap. 24 et II, cap. 48.



[1] Ասողիկ, Գ, գլ. 3:
[2] Շապուհ Բագրատունի, Պատմութիւն, Էջմիածին, 1921, էջ 55 և 56:

## ԹԵՈՓԻԼԱԿՏՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԸ ԵՎ ՏԱՐՈՆԱՑԻՆ

Բուլղարիայի արքեպիսկոպոս Թեոփիլակտոսի նամականիի մեջ կա չորս նամակ, որոնցից երկուսը հասցեագրված են Գրիգոր Տարոնացուն՝ Τῷ Ταρωνίτῃ κυρίῳ Γρηγορίῳ, մեկը Գրիգոր Տարոնացի պրոեդրոսին՝ Τῷ Ταρωνίτῃ προέδρῳ κυρίῳ Γρηγορίῳ, և վերջինը Սկոպիայի դուքս Տարոնիտոպուլոսին՝ Τῷ Ταρωνιτοπούλῳ δουκὶ Σκοπίων[1]:

Նամակների ոճը բավական յուրօրինակ է, ծանրաբեռնված հռետորական արդուզարդով, և դա դժվարացնում է իմաստի ընկալումը, իսկ այն ինչ հաջողվում է հասկանալ, վատ է համակցվում պատմական այն փաստերի հետ, որոնք կարծես թե քաջ հայտնի են:

Առաջին նամակում[2] Թեոփիլակտոսը[3] գրում է Գրիգորին, թե վերջինս արժանի է այն գովեստներին, որ նամակագիրը շռայլում է նրա հասցեին, թե նա իր գործողություններով ապացուցում է, որ այդ գովաբանությունը «ճարտասանի սոփեստական շողոքորթություն չէ, այլ մեղեդին է մի հոգու, որը գիտի օրհնել առաքինությունը»: Նա երջանկության պահեր է ապրել, տեղեկանալով այն զարմանալի նորությանը, որ Գրիգորն իր հաղթանակներով գետին է տապալել երկու ժողովուրդների զորությունն ու միաժամանակ ի չիք է ցրել «պարսկական ցնորքի աշտարակը և ֆրանկների ցնորքի բարձունքը»: Տանեսման [ամիրան] (հրատարակված տեքստի τὰ Νεσμάν-ը), որը սովորություն էր դարձրել Տանայիսի և Մեոտիս լճի (Ազովի ծով) միջև ընկած հունական քաղաքներն ասպատակելը, է՛լ չենք ասում Կողքիսի, Փոքր Հայքի և ամբողջ Հայաստանի, ինչպես նաև մարիանդինների, գալատների և կապադովկիացիների մասին, սանձվել է, քանի որ Գրիգորի սուրը հատել է նրա բազուկները: Պիղծ թուրքը, որը դեռ երեկ «երազում էր ոչնչացնել ցամաքն ու ծովը», պարտված և նվաստացած մտածում է միայն խաղաղության մասին: Այժմ դաշինքը նա գերադասում է սրին, իսկ խաղաղության գավազանը՝ աղեղին:

[1] Հրատարակված տեքստի ընթերցանությունը Τῷ Τορνωσοπούλῳ τῷ Δοκισκοπίων ուղղել է Ф. Успенский, Образование второго Болгарского царства, с. 45:

[2] Migne, P.G., t. CXXVI, Epistula XXVI, ed. Meursius, col. 409-416.

[3] Տիկին Ա. Լըրուա-Մոլինգենը նախապատրաստում է նոր հրատարակություն (1), որը պարունակում է Թեոփիլակտոսի նամականու թարգմանությունը, ուստի և մենք սահմանափակվում ենք մեզ հետաքրքրող չորս նամակների բովանդակության վերլուծությամբ:



Ինչ վերաբերում է «երկաթյա պարանոցով ֆրանկին, ապա նա դարձել է ավելի փափուկ, քան տաք զմուռսը» և ծնկաչոք կանգնած է Տարոնացու առջև: Նա, որ սովոր էր պախարակելու, «այժմ խոնարհ՝ Տարոնացու իշխանության ներքո է և այն աստիճանի նվաստության է հասել, որ կայսերը իր փրկագինը վճարելու հաճույքն է պատճառում, այն կայսերը, որը պատրաստ էր ցանկացած գումար վճարելու, որպեսզի որպես ստրուկ գնի այն մարդուն, որն իրեն ամբողջ Արևելքի ազատարարն էր երևակայում և որի հավակնություններն այնքան հեռու էին գնում, որ նա չէր ցանկանում բավարարվել կայսրից հետո նույնիսկ առաջին տեղով»:

Թեոփիլակտոսը շնորհակալություն է հայտնում Տարոնացուն այս ամենի համար և կարծում է, որ «նրանից շնորհակալ կլինեն բոլոր նրանք, ովքեր կրում են քրիստոնյայի անունը և որոնց համար թանկ է Հռոմեական կայսրության բարգավաճումը»: Նա համոզված է, որ կայսրը վարձահատույց կլինի իրեն հատուկ առատաձեռնությամբ: Միապետը գիտի ընտրել իր մարդկանց և լիովին վստահում է Գրիգորին:

Արքեպիսկոպոսն ավարտում է իր նամակը ափսոսալով, որ դրա ծավալն իրեն հնարավորություն չի տալիս ավելի մանրամասնորեն կանգ առնելու Գրիգորի սխրանքների վրա և իր պերճախոսությունը ծավալելու նրան գովաբանելու համար:

Երկրորդ նամակը[1] գրվել է Գրիգորին, վերջինիս Կողքիսից վերադառնալու կապակցությամբ: Այդ իրադարձությունն արքեպիսկոպոսին և՛ հրճվանք, և՛ տխրություն է պատճառում: Հրճվանք, որովհետև Գրիգորը Թեոփիլակտոսին ավելի մոտ կլինի և որովհետև մայրաքաղաքը կվերականդանանա «նրա ներկայության զարունից, նրա բացակայության ձմեռից հետո», ինչպես նաև այն բանից, որ կայսրը ի դեմս նրա արքմնի պահակ, նվիրված բարեկամ և խորհրդատու կունենա: Իսկ մյուս կողմից տխրությունն է համակում արքեպիսկոպոսին, երբ նա մտածում է Պոնտոսի քաղաքների մասին, որոնք Գրիգորի հեռանալուց հետո կհայտնվեն քաոսային վիճակում և կվերադառնան այն դրությանը, որն առկա էր Գրիգորի կառավարումից առաջ՝ երբեմն տիրող դժբախտություններին ու խռովություններին, որոնք դժվար էր հանդարտեցնել: Գրիգորի այնտեղ եղած ժամանակաշրջանի երջանկությունից հետո այն դժբախտությունները, որոնց զոհը կդառնա Պոնտոսը, անկասկած ավելի զգալի կլինեն: Վիճակն էլ ավելի է ծանրանում այն պատճառով, որ հեղինակը չգիտի, թե ո՞վ կարող է փոխարինել Գրիգորին: Նա հիանում է Գրիգորի ռազմական տաղանդով, նրա ծուժկալությամբ, որ նախանձելի է նույնիսկ անապատական վանականներ-

[1] Migne, P. G., t. CXXVI, Epistula XXXVII, ed. J. Meursius, col. 437-440.

րի համար, և կղերականության հանդեպ նրա տածած հարգանքով: Մայրաքաղաքը երջանիկ կլինի վայելելու նման մարդու ներկայությունը: Արքեպիսկոպոսը կարծում է, որ ինքն անձամբ առավել քան որևէ մեկը արժանի է դրան և խնդրում է իր նամակի հասցեատիրոջը՝ իրեն ավելի հաճախ գրել և իր նամակներով լավ և հաճելի լուրեր հաղորդել: «Երբ ես որևէ նորություն եմ ունենում քեզնից,- գրում է նա,- ես կլանում եմ այն այնպես, ինչպես պապակ հողն է կլանում անձրևը»: Նամակը գրելու պահին նա մխիթարվում էր այն լուրերով, որ ստացել է ոմն Թեոդոսից, որը հյուրընկալվում էր իր մոտ և իրեն պատմում էր Գրիգորի սխրանքների մասին:

Թեոփիլակտոսի նամակներում Գրիգոր Տարոնացին ներկայանում է բոլորովին նոր լույսի ներքո: Տանեսմանը Դանիշմանդն է՝ Սեբաստիայի և նրա շրջակայքի ամիրան (2): «Թուրքը» և «Ֆրանկը» համապատասխանաբար Դանիշմանդն ու Բոհեմունդն են: Օքրիսի արքեպիսկոպոսը ռազմական հաջողություններ է վերագրում Գրիգորին այդ երկու անձանց նկատմամբ և կարծում է, որ նա ինչ-որ դեր է խաղացել գերությունից Բոհեմունդի ետ գնման հարցում:

Հայտնի է, որ երբ Դանիշմանդը հարձակվել է Մելիտենե քաղաքի վրա, քաղաքի հայ իշխան Գաբրիելը (3) ստիպված է եղել օգնություն խնդրել Անտիոքի իշխան Բոհեմունդից: Դանիշմանդը, տեղեկանալով, որ Բոհեմունդն արշավում է իր դեմ՝ դադարեցնում է Մելիտենեի պաշարումը և գնում թշնամուն ընդառաջ: Ճակատամարտը տեղի է ունենում Մարաշի մոտ, ուր և պարտված Բոհեմունդը իր զարմիկ Ռիշարի հետ միասին գերի է ընկնում: Ըստ Միքայել Ասորու ճակատամարտի վայրը կոչվում է Գաֆինա:

Հաջորդ տարի Գանգրայի մոտ Դանիշմանդը հաղթում է խաչակիրներին, որոնց առաջնորդն էր Տուլուզի և Սեն-Ժիլի կոմս Ռայմոնդը: 1102 թ. նույն ամիրան, սովորականի պես Ռումի ամիրա Ղլիճ-Արսլանի հետ դաշնակցելով, Իկոնիայի մոտ պարտության է մատնել Նևերի կոմս Գիյոմի բանակը: Նույն այդ տարում մի երրորդ բանակ, որն առաջնորդում էր Պուատյեի կոմս Գիյոմը[1], նույնպես պարտություն է կրել և ցրվել՝ դարձյալ Իկոնիայի շրջակայքում:

1103 թ., երկու տարի բանտում անցկացնելուց հետո, Բոհեմունդն ազատ է արձակվել: Ալբերտ դ'Էքսը պատմում է, որ Ալեքսիոս կայսրը, որը ամենևին էլ չէր սիրում Բոհեմունդին, այլ վախենում էր նրանից, վճռում է

[1] Մատթեոս Ուռհայեցին (Երուսաղեմ, էջ 351) նրան անվանում է Պետևին և ասում է, որ կայսրը նրան ընդունել է պատվով և թանկարժեք *պօտոռմ* է կազմակերպել: Հայ հրատարակիչը, ինչպես նաև ֆրանսիացի թարգմանիչը չեն հասկացել այդ բառի իմաստը, որը hippodrome կամ ավելի շուտ ἱπποδρομία՝ «մարտակառքերի մրցավազք», բառի զանհկացված գրությունն է:



նրան պահել իր ձեռքի տակ: Նա դիմում է Դանիշմանդին և խնդրում իրեն զիջել Բոհեմունդին երկու հարյուր վաթսուն հազար ոսկե դրամ փրկագնի դիմաց: Ղլիճ-Արսլանը իր դաշնակից Դանիշմանդից պահանջում է գումարի մի մասը և, բացասական պատասխան ստանալով, խզում է կապերը ու սկսում ասպատակել նրա հողերը: Բազմաթիվ պարտություններից հուսահատված Դանիշմանդը ի վերջո զիջում է իր բանտարկյալի ցանկությանը: Վերջինս խնդրում էր նրան իրեն ազատել ավելի համեստ փրկագնով, որն ինքն էր պարտավորվում վճարել: Բացի այդ նա առաջարկում է Դանիշմանդին միասին պայքարել Ղլիճ-Արսլանի և Ալեքսիոս կայսեր դեմ[1]:

Մյուս կողմից հայ պատմիչ Մատթեոս Ուռհայեցին պնդում է, որ Բոհեմունդն իր փրկագնով պարտական էր Քեսունի շրջանի հայ իշխան Գող Վասիլին: Նա բանակցել էր Դանիշմանդի հետ բանտարկյալին հարյուր հազար ոսկե դրամով փրկագնելու մասին: Վասիլը վճարել է տասը հազար և քանի որ Անտիոքի իշխան Տանկրեդը՝ Բոհեմունդի զարմիկը, հրաժարվել է իր վրա վերցված պարտավորությունը կատարելուց, ապա նա ստիպված է եղել վճարելու ամբողջ գումարը: Բացի այդ Գող Վասիլը հարկադրված հավելյալ ծախսեր է կատարել ազատագրված գերուն և նրա ընկերներին ընծաներ մատուցելու համար: Բոհեմունդն իրեն հայտարարում է Վասիլի հոգեզավակը և մեկնում Անտիոք: Համաձայն նույն պատմիչի տեղեկությունների Ալեքսիոս կայսրը փրկագին է վճարել Բոհեմունդի զարմիկ Ռիշարի համար[2]:

Մատթեոս Ուռհայեցու պատմածը նախապատվելի է, քան Ալբերտինը: Դանիշմանդն իսկապես ընդհարվել էր իր դաշնակից Ղլիճ-Արսլանի հետ փրկագնի՝ 260 000 ոսկեդրամի մի մասը նրան չզիջելու պատճառով: Զարմանալի է, որ նույն իշխանը բավարարվում է մինչև հարյուր հազար ոսկե դրամ նվազած փրկագնով, որ նրան առաջարկում է Բոհեմունդը: Եթե նա այդքան ժուժկալ էր, ապա ինչու՞ չէր ցանկացել իր դաշնակցին զիջել երկու հարյուր վաթսուն հազար ոսկե դրամի մի մասը և պահպանել նրա բարեկամությունը: Այդ դեպքում նա միևնույն է ավելի մեծ գումար կստանար, քան թե այն գումարը, որ նրան առաջարկում էր Բոհեմունդը: Կարծես թե երկու հարյուր վաթսուն հազար ոսկե դրամ կազմող փրկագնի պատմությունը զուտ առասպել է: Հնարավոր է, որ կայսրը մտադրություն է ունեցել Բոհեմունդին փրկելու, սակայն իրականում նա ետ է գնել միայն Ռիշարին:

Թեոփիլակտոս արքեպիսկոպոսը ավելի է խճճում այդ հարցը՝ բեմահարթակ հանելով Գրիգոր Տարոնացուն: Նա նրան է վերագրում τὸν τῆς

[1] Albert d'Aix, p. 610.
[2] Մատթեոս Ուռհայեցի, Վաղարշապատ, 1898, էջ 294:

περσικῆς ἀπονοίας πύργον καὶ τὸ τῆς φραγγικῆς ἀπονοίας ὕψωμα [«պարսկական ցնորքի աշտարակը և ֆրանկների ցնորքի բարձունքը»]. հաղթելու արժանիքը: Միգուցե դա հռետորական չափազանցությո՞ւն է, որով հեղինակն ակնարկում է, որ Գրիգորը կարող էր ազատել Բոհեմունդին Դանիշմանդի բանտից: Սակայն ո՛չ Ալբերտը, ո՛չ Մատթեոսը այդ բանը չեն նշում: Արդյո՞ք Գրիգորը հանձնարարություն չէր ստացել կայսեր կողմից Դանիշմանդի հետ բանակցելու Բոհեմունդի վերաբերյալ:

Բուլղարիայի արքեպիսկոպոսը, այնուամենայնիվ, սխալվում է, եթե լրջորեն հավատում է, որ Գրիգորը ծնկի էր բերել թուրք ամիրային կամ էլ, որ Բոհեմունդը նվաստացել էր այն աստիճան, որ կայսերը քախանձագին խնդրել էր փրկագնել իրեն: Ալբերտ դ'Էքսը հակառակը, ասում է, որ Բոհեմունդը համաձայն չէր, որպեսզի կայսրը իրեն փրկագնով ազատեր: Թեոփիլակտոսը բավականաչափ տեղյակ չէր այն ամենին, ինչ տեղի էր ունենում հեռավոր արևելքում: Նրա թյուր պատկերացումը Դանիշմանդի իշխանության սահմանների մասին, որոնք, նրա կարծիքով, տարածվում էին մինչև Տանայիս գետը և Մեովտիս լիճը (Ազովի ծով), դրա վառ ապացույցն է:

Սակայն մենք չենք կարող Թեոփիլակտոսին մեղադրել իր նամակի հասցեատիրոջը հաճոյանալու համար կանխամտածված կեղծիքներ գրելու մեջ: Միգուցե Գրիգորը մասնակցե՞լ էր Բոհեմունդի ազատագրման համար տարվող բանակցություններին: Սակայն այս հարցում ևս մենք բախվում ենք ժամանակագրական կարգի դժվարությունների: Ըստ Աննա Կոմնենայի որոշակի վկայության Գրիգորի նշանակումը Տրապիզոն և նրա ապստամբությունը վերաբերում են XII ինդիկտիոնին՝ ἐπινεμήσεως παριπευούσης δωδεκάτης [«երբ անցնում էր տասներկուերորդ տարեդարձը»], այսինքն՝ 1103 թվականին: Մինչդեռ Բոհեմունդը փրկագնի դիմաց ազատ էր արձակվել 1103 թ. գարնանը, այսինքն՝ Գրիգորի Տրապիզոն ժամանելուց առաջ[1]: Ինչպե՞ս կարող էր այդ դեպքում Գրիգորը միջամտել Բոհեմունդի ազատագրմանը:

Իսկ մյուս կողմից, եթե Գրիգորը Տրապիզոն հասնելուն պես ապստամբել էր կայսեր դեմ, շրջայակապ վիճակում տարվել մայրաքաղաք, ապա ինչպե՞ս բացատրենք Թեոփիլակտոսի գովեստներով լի նամակները, որոնցից մեկը Գրիգորին է գրվել այն ժամանակ, երբ նա Տրապիզոնում էր, իսկ մյուսը՝ մայրաքաղաք վերադառնալուց հետո: Առաջինում Գրիգորը որակված է որպես հաղթանակ տարած զորավար, մեծ արժանիքների տեր մարդ,

[1] Ըստ արևմտյան հեղինակների Զատկի տոնի նախօրեին՝ մարտի 29-ին: Gesta francorum (= *Historiens de Croisades*, t.*III*), p. 564; **Guillaume de Tyr** (ibidem, *I*) X, 26: circa veris initium («մոտավորապես գարնան սկզբին»), **Albert d'Aix**, IX, 38 (ibidem, IV), p. 614 et Chronique de l'histoire du Royaume de Jérusalem, «Revue de l'Orient latin», 1909, p. 73 et sqq.



որը կայսեր համար τεχνικώτατος ἰατρός [«հմտագույն բժիշկ»], κυβερήτης [«նավավար»] է եղել բախտորոշ պահերին: Նա հույս ուներ արժանանալու կայսեր պարգևին իր εὐβουλία καὶ γενναιώτης [«ողջամտության և ազնվության»] համար: Երկրորդ նամակը գրված է նույն ոճով: Գրիգորի վերադարձը մայրաքաղաք այնտեղ դիտվում է որպես դժբախտություն Կողքիսի և երջանկություն մայրաքաղաքի և կայսեր համար, որը ի դեմս նրա φρουρὸς ἄγρυπνος, γνησιώτατος σύμβουλος [«անքուն պահապան, իսկական խորհրդական»] կունենար: Այսուհետ կայսրը կարող էր հանգիստ քնել: Այս ոճով չէ որ խոսում են ապստամբած պաշտոնյայի հետ: Թեոփիլակտոսի հեղինակությունն այս դեպքում հակասության մեջ է մտնում Աննա Կոմնենայի հեղինակության հետ: Այս երկու հեղինակների տեղեկությունները համաձայնեցնելու համար պետք է ենթադրել, որ Բուլղարիայի արքեպիսկոպոսը այստեղ նկատի ունի Գրիգորի առաջին ժամանումը Տրապիզոն, որը նախորդել է 1103-1104 թթ. և կարող է կապվել Բոհեմունդի գործի հետ: Սակայն Աննա Կոմնենան չի հաստատում այս ենթադրությունը: Նա Բոհեմունդի գերեվարության վերաբերյալ լռություն է պահպանում: Դա առավել ևս զարմանալի է, եթե հաշվի առնենք, որ մատենագիր արքայադուստրը չէր սիրում Բոհեմունդին, իսկ նրա նվաստացուցիչ վիճակը թուրքական բանտում կարող էր սնել նրա ատելությունը: 1103-1104 թթ. Գրիգորին Տրապիզոն նշանակելու մասին նա ասում է. Ὁ ἤδε ῥηθεὶς Γρηγόριος ἀποστασίαν πάλαι ὠδίνων [«նշյալ Գրիգորը վաղուց պատրաստվում էր ուրացության (բառացի՝ երկնում էր ուրացությամբ)»][1], մինչդեռ նախորդ գլուխներում Գրիգորի մասին հիշատակություն չկա: Հղումը վկայում է, որ նա ասելիք ուներ Գրիգորի մասին, և միգուցե այդ ասելիքը կապված էր Բոհեմունդի ճակատագրի հետ, սակայն ցրվածության պատճառով մոռացել է դա ասել: Այս ամենն ընդունելի է, եթե մենք չենթադրենք, որ հեղինակի աշխատությունը բացթողում ունի և կամ, ինչպես դա կտեսնենք, եթե նա մեր Գրիգորին չի շփոթում մեկ այլ Գրիգորի հետ:

Հրատարակված բնագրում Թեոփիլակտոսը Գրիգորին պրոեդրոս է կոչում: Նա նրան գրում է որոշակի ընդմիջումից հետո: Սակայն նրա զգացմունքները Գրիգորի նկատմամբ չեն փոխվել: Գրիգորը նրա համար մնում է «անպարտելի ոգի ունեցող և աննման քաջության տեր» մարդ և այդ հատկանիշները մարմնի հավասարակշռվածության և մտավոր կարողությունների ներդաշնակության նշան են: «Նա ունի բազուկների կարիքը չզգացող բանականություն և բազուկներ, որոնք անում են այն, ինչ չէր համարձակվի նույնիսկ երևակայել բանականությունը»: Արքեպիսկոպոսն ի դեմս Գրիգո-

[1] **Anna Comnena**, XII, 7, p. 162.

րի տեսնում է վկայությունն այն բանի, որ մարդկային ցեղը ո՛չ ծեր է, ո՛չ զառամյալ, ո՛չ էլ անկարող է հերոսներ ծնելու: Գրիգորը որքան որ հիացնում է իր ռազմական տաղանդով, նույնքան էլ կառավարելու շնորհքով: Նա «շտեմարանն է բոլոր դրական հատկանիշների», նա նորօրյա Պրոմեթևսն է մարդկանց լուսավորելու համար: Նրա հաջողությունները բոլոր բնագավառներում ապացուցել են բարբարոսներին, որ հին հռոմեացիների առաքինությունները չեն մեռել նրա մեջ: Թեոփիլակտոսը նրան խնդրում է գրել իրեն, քանի որ միայն մեկ նամակով նա «ոսկով կլցնի իր տունը»[1]:

Պրոեդրոսի պատվաստիճանը, որը կարծես թե կրում էր Գրիգորը, մեզ մտածել է տալիս, և դա բնական է, որ այդ նամակը գրվել էր առաջին երկու նամակներից հետո, այսինքն՝ Տրապիզոնից վերադառնալուց հետո: Արքեպիսկոպոսի կողմից նրա կառավարելու ունակությանն ուղղված գովեստները հնարավորություն են տալիս ենթադրելու, որ Գրիգորը Կողքիսից վերադառնալուց հետո նշանակվել էր ինչ-որ քաղաքացիական պաշտոնի: Սակայն այդ ժամանակաշրջանում Գրիգորը, որպես ապստամբ դիտվելով՝ չուներ այլևս իր նախկին վարկը: Այս հարցը փաստորեն հանգուցալուծել է տիկին Ս. Լըրուա-Մոլինգենը[2]:

Ծանոթանանք վերջապես Թեոփիլակտոսի չորրորդ և վերջին նամակին[3]: Այն հասցեագրված է Տարոնիտոպուլոսին՝ Սկոպիայի դուքսին, որը նրան նամակով եպիսկոպոսական թափուր աթոռի համար թեկնածություն էր առաջարկել, սակայն պատասխան չէր ստացել: Տարոնիտոպուլոսին հաղորդել էին, որ Թեոփիլակտոսը արհամարհել էր նրան և չէր պատասխանել: Իրականում Տարոնիտոպուլոսի նամակը արքեպիսկոպոսին չէին հանձնել: Դրանով է պայմանավորված Թեոփիլակտոսի նամակի բովանդակությունը: Նա պաշտպանվում է այն մարդկանցից, որոնք իրեն զրպարտել էին իր հասցեատիրոջ աչքում: Ի միջի այլոց նա գրում է, որ ինքը խելքը դեռ չի թոցրել և շատ լավ տեղյակ է իր բարեկամի բարձր դիրքին, որի շնորհիվ նա «վերահսկում է ամեն ինչ» և արքեպիսկոպոսը թախանձագին խնդրում է «նրա սուրբ մոր անունից», որպեսզի հետաքննություն կատարվի և պարզվի, թե ո՞ւմ էր հանձնվել Տարոնիտոպուլոսի նամակը և պարզվի թե ճի՞շտ է արդյոք այն լուրը, որ ինքն այդ նամակը պատասխանի արժանի չի համարել: Ինչ վերաբերում է Տարոնիտոպուլոսի խնդրանքին, արքեպիսկոպոսը պատասխանում է, որ բոլոր աթոռները ներկայումս զբաղված են, բացի Վիդինի եպիսկոպոսական աթոռից: Սակայն քանի որ նա կարծում է, որ

[1] Migne, P.G., t. CXXVI, Epistula IV, ed. J. Meursius, col. 364-365.

[2] Տե՛ս նրա հոդվածը, էջ 589-592: Ձեռագրում այս πρόεδρος տիտղոսը չկա: Դա թյուր ընթերցում է:

[3] Migne, P.G., t. CXXVI, Epistula XIII, ed. J. Lamius, col. 524-525.



այդ աթոռը պետք է զբաղեցներ վերին աստիճանի կրթված և զարգացած մարդ, ապա արքեպիսկոպոսըստիպված է մերժել իր նամակագրին և ակնարկում է, որ վայել չէ աստվածային պաշտոնները բաժանել ըստ որևէ մեկի բարեհաճության:

Ո՞վ է այդ Տարոնիտոպուլոսը: Նամակի ոչ այնքան գովաբանական բնույթը մեզ թույլ չի տալիս նրան նույնացնելու Գրիգոր Տարոնացու հետ: Արքեպիսկոպոսը նամակում ակնարկում է նրա մոր սուրբ հիշատակը և դա վկայում է նրա մոր բարձր ծագման մասին ու մտածել է տալիս Մարիամի՝ Ալեքսիոս կայսեր քրոջ և Միքայել Տարոնացու կնոջ, մասին: Ըստ երևույթին խոսքը Հովհաննեսի՝ Միքայելի որդու և Գրիգորի քեռորդու, մասին է: 1054 թ. Միքայելը գտնվում էր Թրակիայում՝ Բերիայում: Հնարավոր է, որ հետագայում նրան նշանակած լինեին Սկոպիայի դուքսի պաշտոնին:

Ոմն [Հովհաննես] Սերվլիասի՝ Ἰωάννῃ τῷ Σερβλίᾳ[1], հասցեագրված նամակում Թեոփիլակտոսը վերադառնալով Վիդինի աթոռի հարցին ի միջի այլոց գրում է. Ἐγὼ δὲ ὁ μάταιος καὶ ἄλλο σε ἠξίουν, τὸ ἐπειδ᾿ ἂν τὸ περὶ τῶν Βυδίνων ψήφισμα γένηται, ἐμφανίσαι τοῦτο τῷ κυρῷ Γρηγορίῳ τῷ Ταρωνείτῃ καὶ παρ᾿ ἐκείνου πιττάκιον αἰτῆσαι πρὸς τὸν ἐν Βερροίᾳ διενεργοῦντα τὸ ποιητέον αὐτῷ ὑποτιθέμενον. «Ես՝ նվաստս, մի խնդրանք ևս ունեմ: Երբ կլուծվի Վիդինի հարցը, այդ մասին հայտնիր Գրիգոր Տարոնացուն և նրանից մի նամակ խնդրիր Բերիայի կառավարչի համար, ուր նա կգրի թե ի՞նչ է պետք անել»[2]:

Գրիգորի հիշատակումը այն հարցում, որը հետաքրքրում էր Տարոնիտոպուլոսին կարող է նրանց նույնացման պատճառ դառնալ: Սակայն դա չպետք է անել: Նախ, ինչպես եզրակացնում ենք նամակից, Գրիգորը ապրում էր մայրաքաղաքում, մինչդեռ Տարոնիտոպուլոսը կատարում էր Սկոպիայի դուքսի պարտականությունները: Բացի այդ, եթե Տարոնիտոպուլոսը Գրիգորն էր, ապա հավանական չէ, որ Թեոփիլակտոսը մի կողմ նետելով Տարոնիտոպուլոսի խորհուրդը Վիդինի հարցում, հետագայում հնարավոր համարեր դիմելու Գրիգորի հեղինակությանը կամ առաջարկելու դիմել նրան: Այսպիսով ավելի հավանական է, որ Տարոնիտոպուլոսը Հովհաննեսն է՝ Գրիգորի քեռորդին:

Հովհաննես Սերվլիասը 1094 թ. հիշատակված է որպես կայսեր քարտուղար. Ἰωάννης βασιλικὸς νοτάριος τοῦ σεκρέτου τοῦ γενικοῦ ὁ Σερβλίας: Թվում է թե սա նույն այն մարդն է, որին Կոստանդին Մոնոմախի († 1054) թագավորության ժամանակ հանձնարարվել էր Վիրքի աշ-

[1] Այս Սերվլիասի վերաբերյալ տե՛ս V. Laurent, Les Bulles métriques dans la sigillographie byzantine, t. VII (1934), p. 291.

[2] Migne, P.G., t. CXXVI, Epistula VIII, ed. B. Finetti, col. 321.

խարհագիրը և որը ցրել էր տեղացիներից կազմված զորքը, զինապարտությունը հարկատվությամբ փոխարինելու համար[1]:

Բերիայի «դուքսը», որին Սերվլիասը պետք է ուղարկեր Գրիգոր Տարոնացու հանձնարարական նամակը ոչ այլ ոք էր, եթե ոչ «Կոստանդինը՝ սեբաստոկրատորի որդին», և Թեոփիլակտոսի մի նամակի հասցեատերը. Κωνσταντίνῳ τῷ σεβαστῷ καὶ δουκὶ Βερροίας, τῷ υἱῷ τοῦ σεβαστοκράτορος[2]:

«Սեբաստոկրատոր»-ը Ալեքսիոս կայսեր եղբայր Իսահակի տիտղոսն էր: Կոստանդինը նրա որդիներից մեկն էր: Մյուս երկու որդիները՝ Հովհաննեսն ու Ալեքսիոսը, հերթով կառավարել են Դյուրաքիոնի դքսությունը: Հովհաննեսից առաջ Դյուրաքիոնի դուքսն էր Հովհաննես Դուկասը՝ կայսեր աներորդին: Նա այդ պաշտոնին էր նշանակվել 1085 թ. Դյուրաքիոնի վերստին գրավվելուց հետո: Ըստ Աննա Կոմնենայի տեղեկությունների նա այդ պաշտոնը վարել է տասնմեկ տարի, ուրեմն մինչև 1096 թվականը: Այս տարեթիվը չի հաստատվում, որովհետև նույն հեղինակը հայտնում է մեզ, որ 1091 թ. Դյուրաքիոնի դուքսի պաշտոնը զբաղեցրել է Հովհաննես Կոմնենոսը: Արքայադուստր հեղինակը պատմում է մի միջադեպ, ուր Հովհաննեսի՝ Դյուրաքիոնի կառավարչի, հավատարմությունը կասկածի տակ է առնվում: Միայն նրա հոր՝ Իսահակի, միջամտությունն էր իբր փրկել մեղավորին պատժից: Բուլղարիայի արքեպիսկոպոսը այդ գործում այնքան էլ գովելի դեր չէր խաղացել: Կայսրը արշավանք էր կազմակերպել սերբերի թագավոր Բոդինի դեմ: Նա ճանապարհին էր, երբ հասնելով Ադրիանուպոլիս արքեպիսկոպոսից ստացել էր մի նամակ, ուր վերջինս Հովհաննեսին մեղադրում էր դավաճանության մեջ. καὶ γράμματα δεξάμενος τοῦ τηνικαῦτα ἀρχιεπισκόπου Βουλγαρίας χρηματίζοντος περὶ τοῦ δουκὸς Δυρραχίου ᾿Ιωάννου τοῦ υἱοῦ τοῦ σεβαστοκράτορος διαβεβαιούμενα ἀποστασίαν ἐκεῖνον ὠδίνειν [«Եվ ստացել է այդ ժամանակվա Բուլղարիայի արքեպիսկոպոսի նամակը, որում նա զեկուցում էր Դյուրաքիոնի դուքս սեբաստոկրատոր Հովհաննեսի որդու մասին և հավաստում, որ վերջինս պատրաստվում է դավաճանելու»][3]:

Արքեպիսկոպոսը Թեոփիլակտոսն է: Այն նամակները, որ նա գրել է սեբաստոկրատորին, այսինքն Հովհաննես Կոմնենոսին, անպայմանորեն նախորդում են միջադեպին: Հովհաննես Կոմնենոսը հաջորդել էր Հովհաննես Դուկասին Դյուրաքիոնում և քանի որ վերջինս ետ էր կանչվել Ալեքսիոսի կողմից 1092 թ. և ուղարկվել Ծախասի դեմ, ապա Հովհաննես Կոմնենոսի Դյուրաքիոն նշանակվելը թվագրվում է 1091 կամ 1092 թվականով[1]: Հնարավոր է, որ հենց նույն ժամանակաշրջանում, այսինքն 1091-1092 թթ. նրա եղբայր Կոստանդինը նշանակվել է Բերիա: Նրա մյուս եղբայրը՝ Ալեքսիոսը, հիշատակված է որպես Դյուրաքիոնի դուքս 1106 թվականին[2]:

Վիդինի թեմի մասին Թեոփիլակտոսը Սերվլիասին գրել է, անկասկած, որպես կայսեր քարտուղարի: Նա այդ պաշտոնը վարում էր 1094 թվականին: Բերիայի դուքսը, ըստ իս Կոստանդին Կոմնենոսը, որի մասին խոսվում է Թեոփիլակտոսի՝ Սերվլիասին հասցեագրած նամակում, այդ պաշտոնը ստանձնել էր 1091-1092 թվականին: Կոստանդինն ըստ երևույթին հրահանգների կարիք ուներ, քանի որ նշանակման վայրը հասնելով նա տեղյակ չէր իրավիճակին: Հետևաբար որոշ հավանականությամբ մենք կարող ենք ենթադրել, որ Սերվլիասին գրված նամակը տեղադրվում է մոտ 1091-1092 թվականին:

Այդ ժամանակաշրջանում Գրիգոր Տարոնացին արքունիքում բարձր պաշտոն էր գրավում, պակաս բարձր չէր, հավանաբար, և նրա քեռորդի Հովհաննեսի (Տարոնիտոպուլոսի) դիրքը: 1093 թ. Ալեքսիոս կայսեր դեմ դավադրությունից հետո, որի մասնակցության մեջ մեղադրվել էր Միքայել Տարոնացին, նրա որդի Հովհաննեսը խուսափել է շնորհազրկությունից, և դա ապացուցում է, որ հակառակ Աննա Կոմնենայի տեղեկություններին նրա հոր մեղքը ապացուցված չէր:

Գրիգոր Տարոնացուն ուղղված Թեոփիլակտոսի նամակը, որը գրվել է Կողքիսից վերջինիս վերադարձից հետո, նույնպես անվստահություն է հարուցում այն ամենի նկատմամբ, ինչ հաղորդում է արքայադուստր պատմիչը նրա ապստամբության վերաբերյալ: Յա. Փ. Ֆալմերայերն այդ ապստամբությունը կապում է Գրիգոր Գաբրասի և ոչ թե Գրիգոր Տարոնացու անվան հետ[3]: Աննա Կոմնենայի մասին մի մենագրության հեղինակ տիկին Գ. Բուկլերը նույնպես վերջերս կարծիք է հայտնել, որ Աննա Կոմնենան Գրիգոր Գաբրասին շփոթել է Գրիգոր Տարոնացու հետ[4]: Այդ դեպքում ὁ ἤδε ῥηθεὶς Γρηγόριος [«հիշյալ Գրիգորը, և այլն»] մեջբերումը կհամապատասխանի իրադրությանը:

Սակայն Աննա Կոմնենայի վկայությունը որոշակի է: Նա անձամբ ճանաչում էր Գրիգոր Տարոնացուն, որն իր ամուսնու՝ Նիկեփորոս Վրիեննիո-

[1] Cedrenus, II, p. 608; Zacharia von Lingenthal, Jus graeco-romanum, I, p. 338, ed. 1931; Kekaumenos, Strategikon, § 50. բողոքում է Սերվլիասի ձեռնարկած միջոցներից համարելով, որ դրանք կսնանկացնեին Եվրոպան:

[2] Migne, P.G., t. CXXVI, Epistula LXVIII Meurs., col. 488-489.

[3] Anna Comnena, VIII, 7, p. 412.



[1] Anna Comnena, VII, 8, p. 367; IX, 1, p. 425.

[2] Id., XII, 4, p. 148.

[3] J. Ph. Fallmerayer, Geschichte des Kaisertums von Trapezunt, München, 1827, S. 16.

[4] G. Buckler, Anna Comnena : A Study, Oxford, 1929, p. 254.

սի, բարեկամներից էր: Մենք տեսանք, որ Վրիեննիոսը նույնիսկ միջամտել էր Գրիգորի՝ բանտում եղած ժամանակ նրա վիճակը բարելավելու համար: Եթե մենք չենք ցանկանում միանալ այն կարծիքին, որ անպատեհ շփոթություն է տեղի ունեցել Գաբրասի ու Տարոնացու պարագային, ապա մենք պետք է ընդունենք, որ Գրիգոր Տարոնացու ապստամբությունն այդքան լուրջ չէր, որքան ներկայացրել է արքայադուստրը: Բռնազավթիչ Ալեքսիոսը վախենում էր թագը կորցնել և անվստահությունը որպես անվտանգության միջոց վերածել էր համակարգի: Ամենուր նա տեսնում էր միայն խարդավանքներ, դավաճանություններ և դավադրություններ: Դրան պետք է ավելացնել նրա ծայրահեղ ագահությունը, որը դրդում էր նրան զոհեր փնտրելու նրանց ունեցվածքին դավաճանության պատրվակով տիրանալու համար: Աննա Կոմնենան իր աշխատության մեջ նկարագրում է ավելի քան տասնհինգ միջադեպ, երբ նրա հոր կյանքն իբր վտանգված էր: Որպես օրինակելի դուստր նա սիրում էր ցցուն դարձնել իր հոր հաջողությունները, ինչպես նաև չափազանցել այն վտանգները, որ սպառնում էին նրան: Այդ տասնհինգ դավադրությունների մեծ մասը երևակայական են և միտումնավոր. դրանց նպատակն է ցուցադրել նրա հոր՝ կայսեր, մեծահոգությունն ու մարդասիրությունը: Գրիգորի դեպքը նույն շարքից է, եթե նա մնում էր, ինչպես վկայում է Թեոփիլակտոսը, կայսեր նվիրված բարեկամն ու խորհրդատուն: Բացի այդ Աննա Կոմնենան ինքը խոստովանում է, որ իր հայրը Գրիգորին առավել մեծ պատվի է արժանացրել, քան այն պատիվը, որը նա վայելում էր մինչ մեղադրանքը: Այդուհանդերձ, նույնիսկ այս վարկածն ընդունելու դեպքում, մենք չենք կարող լուծել մեր առջև ծառացած հիմնական խնդիրը. ե՞րբ և ինչպե՞ս է Գրիգորը տապալել երկու «աշտարակները»՝ թուրքականը և ֆրանկականը, եթե նա Տրապիզոն է նշանակվել XII ինդիկտիոնում - 1103 թ. սեպտեմբեր - 1104 թ. սեպտեմբեր, այսինքն՝ 1103 թ. մարտի 29-ին Բոհեմունդին ազատ արձակելուց հետո: Արդյո՞ք Գրիգորն առաջին անգամ է ժամանել Կողքիս, և ի՞նչ պաշտոնով: Այդ պահի քաղաքական իրավիճակը թույլ չի տալիս մտածելու Դանիշմանդի հետ զինված ընդհարման մասին: Ղլիճ-Արսլանն ու Դանիշմանդն այդ ժամանակաշրջանում իրենց զգում էին Նիկեից մինչև Մելիտենե ընկած մեծ տարածքի լիարժեք տերերը: 1101 թ. նրանք գրավում են Մելիտենեն ու գերեվարում Բոհեմունդին ու Ռիշարին: Հաջորդ տարին նրանք երեք անգամ ջարդում են խաչակիրների զորքը: Միայն 1103 թ. նրանց բարեկամությունը խախտվում է Բոհեմունդի փրկագնի պատճառով: Դրան ավելացնենք, որ Ալեքսիոսի քաղաքականությունն այդ ժամանակ հակվում էր նրան, որ անհրաժեշտ էր պահպանել Ղլիճ-Արսլանի համակրանքը՝ հարկ եղած դեպքում նրա ուժերը խաչակիրների դեմ օգտագործելու համար: Այդ պայմաններում հարց չէր



կարող ծագել ռազմական գործողությունների մասին ո՛չ Ղլիճ-Արսլանի, ո՛չ էլ նրա դաշնակցի՝ Դանիշմանդի, դեմ: Եթե Գրիգորը Կողքիս էր ուղարկվել Բոհեմունդի ազատ արձակվելուց առաջ, ապա՝ միայն որպես երկրի դուքս: Եվ իսկապես, այն ամենը, ինչ նրան է վերագրում Թեոփիլակտոսը, բնորոշում է դուքսի՝ գավառի զինվորական առաջնորդի իրավասությունները: Որպես այդպիսին Գրիգորը վերջ է դրել Դանիշմանդի ասպատակություններին, նա խաղաղություն է հաստատել Կողքիսում, այն հեռու պահելով 1101-1103 թթ. փոթորիկներից: Նա ականատես է եղել Բոհեմունդի նվաստացմանը Դանիշմանդի կողմից: Հնարավոր է, որ նա այդ բանին նպաստել է գաղտնի կերպով: Նա տեսել է, թե ինչպես է Ղլիճ-Արսլանը զսպում Դանիշմանդին՝ հնարավոր է, որ դարձյալ իր դրդմամբ: Նա միջամտել է «արևելքի գոռոզ ազատագրողի» եռանդմանը: Դրանք հավանաբար գնահատելի արժանիքներ էին, որպեսզի Գրիգորի կամ նրա պատվիրակ Թեոդոսի կողմից չափազանցված տեսքով Օքրիս հասնելով՝ սնած լինեին Թեոփիլակտոսի հռետորական տաղանդը և բորբոքեին նրա ներբողիչ գրիչը: Այս ամենը մեզ բերում է այն ենթադրության, որ Գրիգորը Տրապիզոնի դուքսն էր XII ինդիկտիոնից առաջ և որ նրան հաջորդել է Գրիգոր Գաբրասը, որը նշանակվել է XII ինդիկտիոնին և ապստամբությունը նա է բարձրացրել: Նա էր [«Նշյալ Գրիգորը, որ վաղուց երկնում էր ուրացությամբ»] Ὁ ἤδε ῥηθεὶς Γρηγόριος ἀποστασίαν πάλαι ὠδίνων: Եթե Տարոնացին անցյալում ինչ-որ չափով վարկաբեկված լիներ, ապա Օքրիսի արքեպիսկոպոսը, որը շրջահայաց մարդ էր, անպայման կխուսափեր նրա հետ նամակագրական կապ պահպանելուց: Ուրեմն Աննա Կոմնենան շփոթել է այդ երկու անձանց: Սա շատ ուսանելի դրվագ է Աննա Կոմնենայի երկասիրության գիտաքննական գնահատման համար[1]:

[1] Այս նկատառումները պահպանում են իրենց արժեքը նույնիսկ այն դեպքում, եթե տիկին Ա. Լըրուա-Մոլինգենի՝ ճիշտ ընթերցանության վերականգնումից հետո ապացուցվի, որ J. Meursius-ի հրատարակած չորրորդ նամակը 1103 թ. հետո չի գրվել:

## ԹՈՌՆԻԿ ՎԱՆԱԿԱՆ

Հռչակավոր զորավար Թոռնիկի մասին տարբեր աղբյուրներից մեզ հասած տեղեկությունները համարժեք չեն: Թոռնիկն ու Դավիթ կյուրոպաղատը իրենց ուրույն տեղն են գրավել Բյուզանդիայի պատմության մեջ այն ծառայության շնորհիվ, որ նրանք մատուցել են կայսրությանը, նրա համար ճակատագրական մի պահի: Բյուզանդացի հեղինակները դրա մասին քիչ բան գիտեն, իսկ այն, ինչին մենք տեղեկանում ենք այլ աղբյուրներից, զերծ չէ խիստ վիճելի տարրերից:

Տեղին կլիներ անդրադառնալ այդ խնդրին՝ Դավիթ կյուրոպաղատի միջամտության բնույթն ու, հատկապես, Թոռնիկ Վանականի խաղացած դերը ճշգրտելու համար:

Վարդաս Սկլերոսի ապստամբության ժամանակ (1) Վիրքի իշխան Դավիթ կյուրոպաղատը անդամագրվել էր Վարդաս Փոկասի գործին (2): Կայսերական բանակին Լիկանդոսի Լապարայում և Ռագիե կոչվող վայրում ջախջախելուց հետո Սկլերոսը հանդգնաբար մոտենում էր մայրաքաղաքին: Այդ ճակատամարտերի ընթացքում նա գերեվարել էր Լևոն պրոտովեստիարիոս զորավարին և սպանել զորավար Պետրոս Փոկասին: Հենց այդ ժամանակ է, որ Վասիլ II կայսրը ետ է կանչում Վարդաս Փոկասին վանքից, ուր վերջինս քաշվել էր տարիներ առաջ, և ուղարկում ապստամբի դեմ:

Կեդրենոսի հաշվետվությունը նոր զորավարի ռազմական գործողությունների վերաբերյալ, չնայած շատ մանրամասն է, սակայն լավագույնը չէ: Համաձայն նրա տեղեկությունների Վարդաս Փոկասը գալիս է Կեսարիա: Այստեղից նա մեկնում է Ամորիոն, ուր տեղի է ունենում առաջին ճակատամարտը Սկլերոսի հետ: Փոկասը պարտություն է կրում և նահանջում Խարսիանոն: Սկլերոսը հետապնդում է նրան և գալիս ու բանակում Բազիլիկա Թերմայում: Սկսվում է ճակատամարտը և այս անգամ ևս հաղթում է Սկլերոսը: Հուսահատված Փոկասը շտապում է Վիրք Դավիթ կյուրոպաղատից օգնություն խնդրելու: Նա վերադառնում է վրաց օժանդակ զորամասերի հետ միասին և դիրք գրավում «Հալիս գետի մոտ Պանկալեա» դաշտում: Նա իր բախտն է փորձում երրորդ անգամ, սակայն հենց առաջին բախումից հետո վրացական զորքը նահանջում է՝ պատրաստ փախուստի: Այս պահին Փոկասն առաջ է գալիս և մարտահրավեր է նետում Սկլերոսին: Երկու ախոյաններն իրենց ուժերն են չափում կատաղի մենամարտում.



Պարտություն կրելով Սկլերոսը փախչում և ապաստան է գտնում Բաղդադի արքունիքում[1] (3):

Կեդրենոսի շարադրանքը, հանգամանալից լինելով հանդերձ, այնուամենայնիվ, կասկածանքի առիթ է տալիս: Վարդաս Փոկասին վերագրվող չափազանց անտրամաբան ուղերթը մտածել է տալիս, որ պատմիչն ինչ-որ բան խառնել է:

Եվ իսկապես, Լևոն Սարկավագի վկայությունից մենք գիտենք, որ Պանկալեան գտնվում էր Ամորիոնի մոտ՝ τῷ 'Αμορίῳ προσέγγιον, և ոչ թե Հալիս գետի ափին[2]: Այսինքն ստացվում է, որ Պանկալեայի և Ամորիոնի ճակատամարտերը նույնանում են: Յահյան հաստատում է այդ բանը: Նա քաջ ծանոթ է *Բնկալիի* ճակատամարտին, հայտնում դրա թվականը, որն է 978 թ. հունիսի 19-ը, և չի համարում, որ դա վերջին ճակատամարտն էր: Վճռական ընդհարումը տեղի է ունեցել 979 թ. մարտի 24-ից հետո, որն ավարտվել է Սկլերոսի պարտությամբ ու փախուստով[3]:

Կեդրենոսն, ուրեմն, սխալվել է երկու մասի բաժանելով հակառակորդ ճամբարների ձեռնարկած ճակատամարտերից մեկը: Նշանակալից զուգադիպություն կա: Ամորիոնի ճակատամարտը, ըստ Կեդրենոսի, ավարտվում է Վարդաս Փոկասի և Կոստանդին Գաբրասի՝ Վարդաս Սկլերոսի զորավարներից մեկի, մենամարտով: Մենամարտ, որից Փոկասը հաղթանակած է դուրս գալիս, իսկ Գաբրասը զոհվում է: Պանկալեայում նույն բանն է տեղի ունենում, սակայն այս անգամ մենամարտում են Փոկասն ու Սկլերոսը, և հաղթում է դարձյալ Փոկասը: Հավանաբար սրանք նույն սյուժեի երկու տարբերակներ են, և ի վերջո երկու ճակատամարտերը հանգում են մեկի: Այն տպավորությունն է ստեղծվում, որ Կեդրենոսն օգտագործել է ժողովրդական երգեր, ուր նույն իրադարձությունները ներկայացված են տարբեր ձևերով: Հնարավոր է նաև, որ նա հորինել է երկրորդ մենամարտը նպատակ ունենալով այդ ահեղ թշնամուն հաղթելու արժանիքը վերագրել բացառապես անձամբ Փոկասին և ոչ թե կյուրոպաղատի օգնությանը:

Համենայն դեպս կասկածից վեր է, որ վերջին ճակատամարտը տեղի է ունեցել Բազիլիկա Թերմայում և ոչ թե Պանկալեայում: Զարզմա վանքի պատին զետեղված վրացական արձանագրությունը հաստատում է այդ բանը, վկայելով, որ Սկլերոսը պարտություն է կրել *Խարսանայում* (Խարսիանոն) Սարվեն[4] կոչվող վայրում, այսինքն Աքվա Սարավենայում, որը

[1] Cedrenus, II, pp. 422-432.

[2] Leo Diaconus, p. 170.

[3] Яхья (= В. Розен, Василий Болгаробойца, с. 3).

[4] Е. Такайшвили, Зарзмский монастырь («Сборник материалов для описания местностей и племён Кавказа»), XXXV (1905), с. 19.

նույնանում է Բազիլիկա Թերմայի հետ: Այդ ճակատամարտի ժամանակ էր, որ Դավիթ կյուրոպաղատի ուղարկած զորքը 979 թ. մարտի 24-ին որոշել է քաղաքացիական պատերազմի ելքը:

Ո՛չ Լևոն Սարկավագը, ո՛չ Յահյան ոչինչ չգիտեն Դավթի միջամտության մասին: Ըստ Կեդրենոսի Դավիթը միջամտել է Փոկասի անձնական խնդրանքով: Նա գնացել է Դավթի մոտ διὰ ταχέως ἄνεισιν εἰς τὴν 'Ιβηρίαν, καὶ Δαβὶδ τῷ τῶν 'Ιβήρων ἄρχοντι προσελθὼν εἰς ἐπικουρίαν ᾔτει στρατόν [«որքան հնարավոր է շուտ Իբերիա հասնելու համար, և, գալով Իբերիայի իշխան Դավթի մոտ, խնդրել է օգնական զորք»]: Քանի որ Դավիթը «բարեկամական հարաբերությունների մեջ էր Փոկասի հետ, վերջինիս Խալդիկայի դուքս եղած ժամանակից ի վեր»՝ ἐπεφιλίωτο γὰρ τῷ Φωκᾷ ἐξ οὗ δοὺξ ἦν Χαλδίᾳ [1], նա ընդառաջում է իր բարեկամի խնդրանքին: Մենք գիտենք, որ, իսկապես, Վարդասը Խալդիկայի և Կոլոնիայի դուքսն է եղել, երբ եա է կանչվել Չմշկիկի կողմից և աքսորվել Ամասիա[2]: 968 թ. Մանազկերտի արշավանքը նրան է հանձնարարվել, անկասկած, որպես Խալդիկայի դքսի[3]: Հետևաբար Խալդիկա նրա նշանակումը այդ թվականից առաջ է տեղի ունեցել: Նշենք նաև, որ ըստ «Վրացական ժամանակագրության» Դավիթ կյուրոպաղատն Ադրանասեի [Ատրներսեհ] որդին էր: Ադրանասեն մահացել էր 983 թ. և, հետևաբար, նրա որդու իշխանությունը հաշվում են այդ թվականից: Դա չի արդարացվում: Դավիթը չի կարող այդ Ադրանասեի որդին լինել, քանի որ նա իշխել է 968 թվականից:

Նույն ժամանակագրության մեջ տեղեկություն կա, որ Դավթի օգնությանը դիմելու գաղափարը հղացել է անձամբ Վասիլ II կայսրը և ոչ թե Վարդաս Փոկասը, և հեղինակը մեզ ծանոթացնում է այդ խնդրանքի և պատասխան օգնության հանգամանքներին: Այժմ մեզ հայտնի է այն աղբյուրը, որից վերցվել են այդ տեղեկությունները: Դա Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքն է, որն այսօր մատչելի է դարձել գիտական աշխարհին պրոֆ. Պ. Պետերսի[4] լատիներեն թարգմանության շնորհիվ: Ահա թե ինչ ենք մենք այնտեղ կարդում:

Հովհաննեսը Դավիթ կյուրոպաղատի հպատակներից էր: Նա թողել էր աշխարհիկ կյանքը և վանական կարգ ընդունել Չորս Եկեղեցի կոչվող վանքում: Այդ վանքը գտնվում էր Ճորոխ (Ակամսիս) գետի ձախ ափին, Պերտեկրեկի մոտ և ներկայումս հայտնի է Դորդ-Քիլիսե (Չորս Եկեղեցի)



[1] Cedrenus, II, p. 431.
[2] Idem, II, p. 379.
[3] Ասողիկ, Գ, գլ. 8:
[4] «Analecta Bollandiana», t. XXXVI-XXXVII, տե՛ս նաև ֆրանսերեն թարգմանությունը «Irénikon» հանդեսում, t. VI (1929), nov.-déc. և t. VII (1930), janv.-févr.:

թուրքական անվամբ: Հետագայում Հովհաննեսը գնացել է Օլիմպոս լեռան վրա գտնվող մի վանք: Այդ ժամանակ կայսրը Դավթին է զիջում Վերին աշխարհը և պատանդներ պահանջում: Հովհաննեսի աներորդիները նրա որդի Եվթիմիոսին որպես պատանդ հանձնում են կայսերը: Հովհաննեսը ստիպված է լինում մայրաքաղաք գնալ իր որդուն ազատելու համար: Արքունիքում հարգանք վայելող իր աներոջ՝ Աբուհարբի, միջոցով Հովհաննեսը մուտք է գործում այնտեղ, կայսրը բարեհաճությամբ է ընդունում նրան և ընդառաջում նրա խնդրանքին: Հովհաննեսն իր որդու հետ վերադառնում է Օլիմպոս լեռը: Այնտեղից, դարձյալ իր որդի Եվթիմիոսի հետ միասին, նա գնում է Սուրբ Լեռ: Այնտեղ Ս. Աթանասի մայրավանքում մնում է երկու տարի և ծառայում որպես խոհարար:

«Այդ ժամանակ» մեծն Թոռնիկը վանական է դառնում «իր հայրենիքում» և գնում իր բարեկամ Հովհաննեսի մոտ՝ Օլիմպոս: Չգտնելով Հովհաննեսին Օլիմպոսում, գնում է Սուրբ Լեռ:

«Այդ ժամանակ» Վարդաս Սկլերոսը ապստամբության դրոշ է պարզում: Կայսրերը (Վասիլ II ու Կոստանդին VIII) և մայր կայսրուհին (4) փակվելով իրենց պալատում չգիտեին՝ ի՞նչ ձեռնարկել, և նրանց թվում էր, որ միայն Դավիթ կյուրոպաղատը կարող էր նրանց դուրս բերել այդ ծանր վիճակից: Սակայն նրանք ինչպե՞ս կարող էին լուր ուղարկել Դավթին, եթե ապստամբները գրավել էին ճանապարհները: Այդ ժամանակ հիշում են Հովհաննեսի և Թոռնիկի մասին, որոնք գտնվում էին Ս. Աթանաս մայրավանքում և կանչում նրանց արքունիք: Վասիլն ու Կոստանդինը չափահաս չէին և այդ պատճառով իրական իշխանությունը կայսրուհու ու պարակիմոմենոսի (5) ձեռքին էր: Հովհաննեսն ու Թոռնիկը ներկայանում են արքունիք: Վասիլն ու Կոստանդինը իրենց մոր հրահանգով նետվում են Հովհաննեսի ոտքերը: Նրանց մայրն ասում է Հովհաննեսին. «Հայր սուրբ, Աստված քեզ կհատուցի այն ամենի համար, ինչ որ դու կանես հանուն այս որբերի»: Թոռնիկը դժկամությամբ է համաձայնում: «Աղերսալի նամակներով» ծանրաբեռնված նա ճանապարհ է ընկնում Դավթի մոտ: Կյուրոպաղատը խոստանում է իր իսկ Թոռնիկի առաջնորդությամբ զորք ուղարկել: Թոռնիկը լուր է ուղարկում արքունիք իր առաքելության դրական արդյունքի մասին: Դավիթը նույնն է անում: Պայմանավորվում են, որ կայսրերը Դավթին պետք է զիջեին հունական երկրի վերին մասը որպես ցմահ տիրույթ, իսկ Թոռնիկը պետք է տիրանար պարտված հակառակորդի ռազմավարին: Պայմանավորվել էին նամակով:

Այդ ամենից հետո Դավիթը Թոռնիկին տրամադրում է տասներկու հազար ձիավոր և նրան ուղարկում ապստամբի դեմ: Թոռնիկին հաջողվում է ջարդել Սկլերոսին, որին հետապնդում է մինչև Պարսկաստան: Դավիթը

ջերմորեն ողջունում է հաղթողին: Հետո Թոռնիկը գնում է կայսրերի մոտ և արժանանում հաղթանակած զորավարին վայել ընդունելության: Դրանից հետո Թոռնիկը վերադառնում է Սուրբ Լեռ:

Պետք չէ գերագնահատել այս շարադրանքի պատմական արժեքը: Քիչ թե շատ ճշգրիտ տարեթվի բացակայությունը արդեն իսկ վատ նշան է: Շարադրանքի հեղինակը տեղյակ չէ, թե ե՞րբ և ի՞նչ պայմաններում են Հովհաննեսը, Եվթիմիոսն ու Թոռնիկը Սուրբ Լեռ գնացել: Նա աղոտ և շփոթ պատկերացում ունի պատանդների պատմության մասին: Նա այն կապում է տարածքային զիջման հետ, մինչդեռ հետագայում ասում է, որ տարածքային զիջումն արվել էր Դավթի ռազմական օգնության կապակցությամբ և որպես վարձատրություն դրա դիմաց: Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքի մեկ այլ տարբերակ ևս կա: Այդ վարկածում խոսք չկա պատանդ տալու մասին: Հովհաննեսը, որը ծագումով Տաոյից էր (Տայք), վեղար է դնում և Աթոս գնում, իր որդի Եվթիմիոսին թողնելով տատի ու պապի խնամակալության ներքո: Պապը Եվթիմիոսին տանում է Կոստանդնուպոլիս Նիկեփորոս կայսեր արքունիքը: Հովհաննեսը տեղեկանալով որդու ժամանման մասին՝ գալիս է մայրաքաղաք նրան իր մոտ տանելու համար: Պապն ընդդիմանում է, քանի որ չի ցանկանում բաժանվել երեխայից: Միջամտում է կայսրը և առաջարկում է հնարավորություն տալ երեխային ինքնուրույն ընտրություն կատարել: Երեխան ընտրում է հորը և նրա հետ մեկնում Սուրբ Լեռ[1]:

Ըստ այս տարբերակի Եվթիմիոսը որպես պատանդ Կոստանդնուպոլիս չի տարվել: Նա հորն ուղեկցել է Օլիմպոս լեռ՝ ուր 977-978 թթ. իրեն նվիրել է գրական աշխատանքի՝ փաստ, որ հայտնի է մի ձեռագրի հիշատակարանից: Պատանդների պատմությունը մեզ տանում է 991 թ., ինչպես կտեսնենք ավելի ուշ: Այն ոչ մի կապ չունի Եվթիմիոսի հետ:

Ըստ Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքի Եվթիմիոսը մահացել է 1028 թ. վաթսունհինգ տարեկան հասակում: Հետևաբար նա ծնվել է 963 թվականին: Սակայն 977-978 թթ. Եվթիմիոսն արդեն այն տարիքում էր, որ կարող էր թարգմանություններ կատարել Օլիմպոսում: Այս սխալները, անկասկած, չեն նպաստում մեր վավերագրի հեղինակությունը բարձրացնելուն:

Այն տեղեկությունները, որ վավերագիրը տալիս է Թոռնիկի մասին, պակաս վիճելի չեն: Թոռնիկը, ըստ վարքի, վանական դառնալով իր հայրենիքում, ճանապարհորդություն է ձեռնարկում դեպի Օլիմպոս, հետո գնում է Աթոս: Այդ տեղաշարժերի տարեթիվը նշված չէ: Համենայն դեպս, դրանք պետք է տեղի ունեցած լինեին 978 թ. առաջ, որովհետև 978 թ. հունիսի 19-ին Պանկալեայի ճակատամարտից հետո Թոռնիկին հանձնարարվել է օգնություն խնդրել Դավիթ կյուրոպաղատից: Սակայն այն ձեռագրերը, ուր պահպանվել է Թոռնիկի անունը, իրենց հիշատակարաններում նշում են, որ 977-978 թթ. նա դեռևս գտնվում էր Ոսկիքում՝ Տայքում[1]: Հիշատակարաններից մեկում Թոռնիկը գովեստով է հիշատակվում: Դրա հեղինակն է Դավիթ գրիչը, որը 977 թ. մի ձեռագիր ընդօրինակելիս լրացրել է բնագրի հիշատակարանը՝ այնտեղ ներմուծելով շատ հետաքրքիր մի նշում Թոռնիկի մասին: Հովհաննես Թոռնիկը դարձել է Հովհաննես Սինկելլոս: Նա հրաժարվել է երկրային փառքից այն պահին, երբ մեծության գագաթնակետին էր և վայելում էր սուրբ կայսրերի լիակատար համակրանքը, նա հրաժարվել է զինվորական կարիերայից վանականի վեղար հագնելու համար: Հռչակի և կայսերական համակրանքի նա արժանացել էր կայսրերին մատուցած մի ծառայության համար: Նա գնացել էր Դավիթ կյուրոպաղատի մոտ և նրա հրամանով ջարդել սուրբ կայսրերի չար հակառակորդին: Դավիթ գրիչը չի ասում, որ այդ ժամանակ Թոռնիկը Աթոս էր գնացել, չի ասում նաև, որ կյուրոպաղատի մոտ նրան ուղարկել էին կայսրերը: Այստեղ խոսք չկա ո՛չ կայսրուհու, և ո՛չ պարակիմոմենոսի մասին: Այն ժամանակ, երբ գրիչը շարադրում էր իր հիշատակարանը, Հովհաննես Թոռնիկն արժանացել էր սինկելլոսի կոչմանը (6), հավանաբար Սկլերոսի դեմ կատարած իր սխրանքի համար:

Այն ամենը ինչ մենք իմանում ենք Թոռնիկի մասին Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքից՝ հիմնվում է Դավիթ գրչի արժեքավոր հիշատակարանի վրա: Մեր կարծիքով այս ստեղծագործության հեղինակը ձեռագրի հիշատակարանից բացի այլ աղբյուրներ չի ունեցել: Նա ավելացրել է որոշ մանրամասներ, որոնք սակայն արդյունքն են սոսկ նրա ներշնչանքի: Դրանց թվին է պատկանում նաև այն տեսարանը, ուր պատանի կայսրերը ընկնում են Հովհաննես Թոռնիկի ոտքերը, կամ կայսրուհու և պարակիմոմենոսի աղաչանքների տեսարանը՝ միամիտ մտքի հնարանք, որը ոչ մի պատկերացում չունի կայսերական արքունիքի սովորությունների մասին: Այս երկրորդական տարրերը բացակայում են Դավթի մոտ, և դա նրան մերձեցնում է այս հարցում Կեդրենոսին: Դավիթ կյուրոպաղատին դիմել էր ոչ թե բյուզանդական արքունիքը, այլ Վարդաս Փոկասն իր նախաձեռնությամբ: Այդ ժամանակ վանական կարգ ընդունած Թոռնիկը գտնվում էր

[1] Այս տարբերակը գտնվում է Թիֆլիսի Եկեղեցական թանգարանի № 222 Հայսմավուրքում: Մ. Գ. Ջանաշվիլին այն նկարագրել է «Сборник материалов... Кавказа» ժողովածուում, էջ 158, ուր նա Հայսմավուրքը թվագրում է XI դարով: Մենք հաստատ չգիտենք, արդյո՞ք կայսեր անունը նշված է եղել ձեռագրում, թե՞ այն ավելացրել է Ջանաշվիլին:



[1] Այստեղ և հետագայում նշվող հիշատակարանների վերաբերյալ տե՛ս մեր «Թոռնիկի ընտանիքը» հոդվածը, որը հաջորդում է այս ուսումնասիրությանը:

Ոսկիք վանքում: Վարդասը նրան հանում է վանքից և ուղարկում Դավիթ կյուրոպաղատի մոտ: 979 թ. մարտի 24-ի ճակատամարտից հետո վանական-զորավարը թողնում է «երկրային փառքը» Աթոս գնալու համար. Հովհաննես Թոռնիկը դառնում է Հովհաննես Սինկելլոս:

Վրացական ավանդության մեջ ցավալի մի խառնաշփոթ է տեղի ունեցել: Վարդաս Փոկասը դավել էր Չմշկիկ կայսեր դեմ և աքսորվել Ամասիա: Ըմբոստ բնավորություն ունենալով, նա փախել էր մենաստանից և փորձել կրկին ապստամբություն բարձրացնել: Չմշկիկը «ստիպել էր նրան վեղար հագնել և հեռանալ Քիոս կղզին»՝ μόνον δὲ γενόμενον κληρικὸν ἐν τῇ νήσῳ Χίῳ ὑπερορίζει ὁ βασιλεύς[1]:

Երբ Վարդաս Սկլերոսը, հաղթելով կայսեր զորավարներին, սպառնում է մայրաքաղաքին, արքունիքում հիշում են հռչակավոր ճգնավորի մասին, նրան հանում են վանքից և զորքի գլուխ դնելով ուղարկում ապստամբի դեմ: Երկու հակառակորդներին՝ Փոկասին և Սկլերոսին իրար դեմ լարելու մտքի հեղինակը Պետեյնոս (Թռչուն) մականունով հայտնի պարակիմոմենոս Վասիլն էր: Նա հավասար նվիրվածությամբ ծառայել է չորս կայսրերի՝ Կոստանդին VII Ծիրանածնին, Ռոմանոս I Լեկապենոսին, Նիկեփորոս II Փոկասին ու Հովհաննես I Չմշկիկին, իսկ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում ուղղություն էր տալիս երիտասարդ կայսր Վասիլի առաջին քայլերին. ʿΟ δὲ παρακιμώμενος, ասում է պատմիչը, τοῖς ὅλοις ἀπορηθεὶς (ἤδη γὰρ ὁ Σκληρὸς ἐπλησίαζε τῇ βασιλίδι) μίαν ἐγνώκει βοήθειαν ἀποχρῶσαν, Βάρδαν τὸν Φωκᾶν μεταπέμψασθαι τῆς ὑπερορίας, μόνον ἀξιόμαχον οἰηθεὶς τοῦτον ἀντίπαλον ἔσεσθαι τῷ Σκληρῷ [«Պարակիմոմենոսը, բոլորովին ճարահատյալ, քանի որ Սկլերոսն արդեն մոտենում էր մայրաքաղաքին, օգտակար գտավ դիմել միայն մեկ միջոցի՝ ուղարկել Վարդաս Փոկասին, որն, իր կարծիքով, Սկլերոսի միակ արժանի հակառակորդը կարող էր լինել»][2]:

Վրացական ավանդությունն այնքանով, որքանով վերարտադրված է Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքում, ծանոթ չէ այդ կարևորագույն փաստին: Այն Սկլերոսի նկատմամբ տարած հաղթանակը վերագրում է անձամբ Թոռնիկին: Բյուզանդացի զորավարը ձուլվել է Թոռնիկի հետ և, եթե կարելի է այդպես արտահայտվել, կլանվել նրա կողմից երկու միանման փաստերի՝ երկու կոչերի, հետևանքով, որոնցից մեկը կայսերական արքունիքն ուղղել էր վանական Վարդաս Փոկասին, իսկ մյուսը Վարդաս Փոկասն ուղղել էր Թոռնիկ Վանականին: Վրացական վավերագիրն այդ

¹ Cedrenus, II, p. 392.
² Idem, II, p. 429.



կապակցությամբ պահպանել է հետաքրքիր մի մանրամասն: Այստեղ նշվում է այն դերը, որ խաղացել է պարակիմոմենոսը Վարդասին կանչելու գործում, սակայն միևնույն ժամանակ այնտեղ Վարդասին շփոթել են Թոռնիկի հետ. պարակիմոմենոսը կայսրուհու հետ աղաչում է Թոռնիկին կայսերական որբերին պաշտպանել ապստամբից:

Այդ երկու անձանց ձուլումը շատ վաղ է կատարվել: Հայ պատմիչ Ասողիկը ծանոթ է Թոռնիկի արկածին մի տարբերակից, ուր Վարդասի կերպարը դեռ լիովին չի ջնջվել: Ըստ այդ վարկածի Վասիլ կայսրը ինչ-որ կղզում գտնվող *բանտից* ազատում է Վարդաս Փոկասին, ուր նրան նետել էր Կյուռ Ժանը (Չմշկիկը) և ուղարկում է Սկլերոսի դեմ պայքարելու: Ասողիկը տեղյակ չէ, որ Վարդաս Փոկասն այդ ժամանակ վեղար էր կրում, սակայն նա գիտի, որ Թոռնիկը Սուրբ Լեռան վանականներից էր և որ Վասիլը նրան հանում է այնտեղից Դավթի մոտ ուղարկելու համար: Նա վկայում է նաև, որ Վասիլը «խոստանայ տալ նմա [Դավիթ Կյուրոպաղատին] զԽաղտոյառիճ Կղէսուրաւն, զՉորմայրի և զԿարին, զԲասեան և զՍևուկ բերդակ, որ է Մարդաղի, զՀարք և Ապահունիս, (զորս և ետ իսկ), որպէս զի զօր առաքեսցէ յօգնականութիւն նմա»[1]:

Վկայությունը որոշակի է, սակայն միևնույն է այն զգուշավորություն է պահանջում: Թվարկված գավառների մի մասը արդեն պատկանում էր Դավիթ կյուրոպաղատին, մյուս մասը չէր էլ գտնվում կայսեր տիրապետության ներքո և, համապատասխանաբար, նա չէր կարող դրանք նվիրել Դավթին: Հարքն ու Ապահունիքը Մանազկերտին՝ ներկայումս Մելազկերտ, հարող շրջաններն էին և ենթարկվում էին մահմեդական ամիրաներին: Սկլերոսի ապստամբության ժամանակաշրջանում դրանց տերն էր քուրդ Բադ իբն Դոստակը: Բադի մահից հետո Դավիթ կյուրոպաղատը պաշարել է Մանազկերտը և գրավել այն: Բադի ժառանգ ու զարմիկ իբն Մրվանը փորձել է ետ գրավել քաղաքը Ատրպատականի մահմեդական իշխանի օգնությամբ: 989 թ. նա հարձակվել է Մանազկերտի վրա, սակայն ետ է մղվել Դավթի կողմից:

Այս պատմությունը շարադրում է դարձյալ Ասողիկը՝ առանց նկատելու, որ ինքը հակասում է իրեն: Ինչպե՞ս կարող էր Վասիլ կայսրը Դավթին մի երկիր խոստանալ, որն իր իշխանության ներքո չէր: Կարինը (Թեոդոսուպոլիս) և Բասենը այդ ժամանակ կազմում էին Դավթի տիրույթների մի մասը: Խաղտոյառիճը (այսօր Կալդառիճ) և նրա կապանները (արդի Բռնակապան), ինչպես նաև Սևուկ բերդը[2] Կարնո շրջանում էին: Չորմայրին («չոր

¹ **Ասողիկ**, էջ 192:
² *Սևուկ բերդն այն ամրոցն է, որ Արիստակես Լաստիվերտցին Սև Քար է անվանում* (**Արիստակես Լաստիվերտցի**, գլ. Ժ):

անտառ», գտնվում է Ճորոխի ակունքի մոտ) մտնում էր Դավթի տիրույթ Տայքի կազմի մեջ: Թոռնիկի ընտանիքն իշխում էր Խաղտոյառիճի և Չորմայրիի շրջանում: Թոռնիկի եղբայրներն իրենց Խալդիկայի իշխաններ էին անվանում՝ այդ շրջանների և Խալդիկայի հարևանության պատճառով: Ասողիկի պնդումն այս տեսակետից ևս հնարավոր չէ պաշտպանել:

Ըստ Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքի՝ կայսեր խոստումը վերաբերում էր Վերին երկրին և նվիրատվությունը ցմահ էր: Դավիթն այդ նվիրատվությունը պետք է վայելեր իր կենդանության օրոք, իսկ նրա մահից հետո զիջած հողերը պետք է ետ վերադարձվեին կայսրությանը: Այստեղ շփոթել են Դավթի երկու միջամտություն: Հայտնի է, որ երկրորդ անգամ Դավիթը բռնել է Վարդաս Փոկասի կողմը 987-989 թթ. Վասիլի դեմ նրա ապստամբության ժամանակ: Երբ ապստամբը արշավում է մայրաքաղաքի վրա, Վասիլը ծովով Տրապիզոն է ուղարկում Տարոնացի մագիստրոսին՝ թշնամու վրա թիկունքից հարձակվելու համար: Այդ ժամանակ Վարդաս Փոկասն իր որդի Նիկեփորոս Կոշտվզին[1] ուղարկում է Դավթի մոտ ռազմական օգնություն խնդրելու համար: Խալդիկայի տիրակալ Բագրատի երկու որդիները Դավթի հրամանով հարձակվում են Տարոնացու վրա և խափանում նրա ծրագիրը: Քիչ անց Վարդասը պարտություն է կրում և զոհվում 989 թ. ապրիլի 13-ին:

Վասիլն այդքան մեծահոգի չգտնվեց, որ ների Դավթի՝ ապստամբի կողմն անցելը: Նա զորք է ուղարկում Դավթի դեմ ոմն Ջակրուս պատրիկի առաջնորդությամբ: Դա այն պատրիկն է, որին Ասողիկը Ժան Պատրիկ Պոռտեզ է կոչում, իսկ բյուզանդացի հեղինակները՝ Հովհաննես Խալդ: Ջակրուսը ճակատամարտ է տալիս Բագրատի որդիներին, որոնցից մեկը զոհվում է, իսկ մյուսը փախուստի է դիմում հայոց 439 թ. (= Ք. թ. 990-991 թթ.): Մարսափահար եղած Դավիթ կյուրոպաղատը ներում է խնդրում և, բավականին ծեր լինելով ու ժառանգ չունենալու պատճառով, խոստանում իր տիրույթները կտակել կայսերը: Նա նույնիսկ պատրաստակամություն է հայտնում իր ներկայացուցիչներին մայրաքաղաք ուղարկելու, որոնք պատրաստ կլինեին իր մահից հետո կատարելու իր կամքը:

Հիանալով Դավթի արարքից, կայսրը նրան շնորհում է կյուրոպաղատի պատվաստիճան և ճոխ զգեստներ նվիրում: Դավիթն ընդունում է նվերներն ու հրամայում ամենուրեք աղոթել կայսեր համար: Հետո նա Կոստանդնուպոլիս է ուղարկում վրաց կաթողիկոսին բազմաթիվ պատվարժան մարդկանց ուղեկցությամբ: Կայսրը նրանց ընդունում է փառավոր կերպով և ետ

[1] Նիկեփորոս Փոկասի մականունն ավելի շուտ Ծանրվիզ էր: Nicéphore au col-roide («Byzantion», t. VIII, fasc. 1, 1933, p. 210) հոդվածում (7) բաց է թողնվել Ցահյայի մեկ այլ հատված, ուր կարելի է կարդալ al-ma'-waǧǧ ar-raqaba (В. Розен, Василий Болгаробойца, с. 63):



ուղարկում իրենց երկիրը[1]: 991 թ. սկսած Դավիթ կյուրոպաղատի տիրույթները դառնում են ցմահ սեփականություն: Վրացական վավերագիրն արտացոլում է իրերի այդ դրությունը, երբ խոսում է Դավթին տրված ցմահ նվիրատվության մասին: Վավերագիրը սխալմամբ այդ իրադարձությունը տեղադրել է 979 թ. և կապել է Թոռնիկի մատուցած ծառայության հետ: Հետևաբար դրա նշանակությունը մեզ հետաքրքրող հարցում հավասարվում է զրոյի:

Այնուամենայնիվ պետք չէ տառացիորեն ընդունել այն ամենը, ինչ ասվեց Դավթի հրաժարականի մասին: Վասիլը Դավթի նկատմամբ բռնություն էր գործադրել, և դա ակնհայտ է: Արդյոք իսկապե՞ս Դավիթը խոստացել էր մահից հետո նրան զիջել իր տիրույթները: Այդ դեպքում ինչպե՞ս բացատրել այն հավաստի փաստը, որ հետագայում նա ռազմական գործողություններ է ծավալել իր իշխանության տարածքը ընդլայնելու համար, փորձելով իրեն ենթարկել ոչ միայն Մանազկերտը, այլև Խլաթը, այսինքն՝ Հայաստանի մեծ մասը: Ոչ ոք այդքան դյուրահավատ չէ կարծելու համար, որ նա զուր իր զինվորների արյունն էր թափում հանուն կայսրության և որ դա անում էր լոկ մեծահոգությունից դրդված, որն անկասկած այդ դարաշրջանի առաքինություններից չէր: Ճիշտ չէ նաև այն, որ նա ժառանգորդ չուներ: Իսկապես Դավիթը չուներ ո՛չ որդի, ո՛չ էլ եղբայրներ, դա այդպես է, սակայն ժառանգորդներ նա ուներ և բավարար քանակով: Այս պատմության մեջ ինչ-որ կասկածելի բան կա, որը լուսաբանման կարիք է զգում:

Այսպիսով, ինձ թվում է, որ իրադարձությունների ընթացքն ու այն շրջադարձը, որ ընդունել է Դավթի մահից հետո ժառանգորդության հարցը, թույլ են տալիս ենթադրելու, թե ինչ էր խնդիրն իրականում: Վասիլը Կիլիկիայի Տարսոնում էր, երբ տեղեկանում է Դավթի մահվան մասին, որը վրա էր հասել 1000 թ. մարտի 31-ին: Նա ժամանեց «ի քաղաքն Ուխթեաց, և զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով, զհաւատարիմս կարգեալ ի նոսա, և զմնացեալ ազատսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան՝ բնակեցուցեալ յաշխարհին Յունաց: Եւ դարձաւ նա ընդ Կարին ընդ Խաղտոյառիճ ի Կոստանդնուպոլիս»[2]:

Վրաց արքա Գուրգենն անմիջապես իր իրավունքն է հռչակում Դավթի ժառանգության նկատմամբ, ինչպես նաև հայտարարում այդ իրավունքը զենքով պաշտպանելու պատրաստակամության մասին: Անտիոքի դուքս Նիկեփորոս Ուրանոսը կայսեր հրամանով ժամանում է Վիրք: Ամբողջ տարին անցնում է բանակցությունների մեջ և 1001 թ. ձմեռնամուտին գործն

[1] Яхья, с. 27 (В. Розен, Василий Болгаробойца).
[2] Ասողիկ, Գ, գլ. 43:

ավարտվում է փոխադարձ համաձայնությամբ: Այդ համաձայնության պայմանների մասին մեզ ոչինչ հայտնի չէ: Ամեն դեպքում այդ վեճը դեռևս երկու տասնամյակների ընթացքում պետք է խաթարեր խաղաղությունը: Արիստակես Լաստիվերտցին վկայում է, որ 1022 թ. վրաց արքաները շարունակում էին պահանջել մինչև Խաղտոյառիճ ընկած հողերը՝ ասելով, որ դրանք ժամանակին պատկանել էին Դավիթ կյուրոպաղատին: Հայ պատմիչն ավելացնում է, և դա անկասկած բյուզանդացիների առարկությունն է, որ Դավիթն այդ երկրին տիրել է ոչ թե որպես տոհմական կալվածքի, այլ որպես նվիրատվության, որը նա ստացել էր կայսրից իր անկեղծ հպատակության համար, և որ Դավիթն էլ իր կողմից խոստացել էր իր տիրույթները թողնել կայսերը[1]:

Լաստիվերտցին չի ասում, որ տարածքային նվիրատվությունն արվել էր Թոռնիկի ծառայության համար վարձահատույց լինելու նպատակով, չնայած այդ մասին նա ծանոթ է Ասողիկի տեղեկություններից: Արիստակեսն ավելի շուտ ակնարկում է այն իրադարձությունը, որ տեղի էր ունեցել 991 թվականին: Վասիլը ցանկանում էր պատժել Դավթին ապստամբ Վարդաս Փոկասին օգնելու համար: Հանգամանքները նպաստում էին այդ տարածքները Դավթից խլելու գործին: Ի դեպ այդ շրջանների համար կայսրությունը վեճի մեջ էր Տայքի իշխանների հետ Աշոտ կյուրոպաղատի († 954 թ.) կառավարման ժամանակաշրջանից ի վեր: Դրանք Կարինը (Թեոդոսուպոլիս) շրջապատող տարածքներն էին՝ Բասենը, Կարինը մինչև Խաղտոյառիճ՝ Դերջանի և Չորմայրիի սահմանների մոտ: Դրանք Տայքի սարահարթին չէին պատկանում և մարտավարական նշանակություն ունեին բյուզանդական բանակաթեմերի՝ Խալդիկայի և Կոլոնիայի պաշտպանության համար:

Սակայն այդ ժամանակ պատերազմ է սկսվում բուլղարական ճակատում և զգացվում է Դավթի դեմ գործող բանակի կարիքը: Գործը կարգավորվում է այնպես, որ վիճելի տարածքները մնում էին մեծահասակ Դավթի իշխանության ներքո, իսկ նրա մահից հետո դրանք պետք է անցնեին կայսրությանը: Դավթի այսպես կոչված պարտավորությունը վերաբերում էր վիճելի տարածքներին և ոչ թե Տայքի բոլոր շրջաններին:

Այսպիսով, քանի որ վրացական ավանդության մեջ երկրորդ միջամտության հիշողությունը լիովին ջնջվել է, սակայն պահպանվել է դրա արդյունք հանդիսացող տարածքային խնդրի աղոտ վերհուշը, ապա այդ խնդիրը կապվել է առաջին միջամտության և համապատասխանաբար Թոռնիկի անվան հետ: Սա է Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքում պահպանված խառնաշփոթ ավանդության ակունքը:

[1] Արիստակես Լաստիվերտցի, գլ. Գ:



Վերադառնանք Ասողիկին: Կարևոր է նշել, որ Ասողիկն այցելել է Դերջան, ուր նա որոշ ժամանակ հյուրընկալվել է Խլաձորի վանքում, ինչպես ինքն է վկայում իր աշխատության մեջ (8): Դերջանը՝ դասական հեղինակների Դերքսենեն, սահմանակից էր Կարնո գավառին Խաղտոյառիճ-Կալդարիկ գյուղով: Դերջանում հյուրընկալվելիս է, որ Ասողիկը, մեր կարծիքով, վանական միջավայրում ծանոթացել է այն ամենին, ինչ նա իր գրքում պատմում է Թոռնիկի և Տայքի խնդրի մասին: Դերջանի նրա այցելության տարեթիվը հայտնի չէ: Այն կարելի է որոշել մոտավոր ճշտությամբ: Ասողիկը միակ հեղինակն է, որը գիտի Դավիթ Կյուրոպաղատի մահվան օրը: Դա 1000 թ. մարտի 31-ն է՝ Զատկի տոնի օրը: Նա միակն է, որ գիտի Վասիլի երթուղին իր մանրամասներով՝ Մելիտենեից մինչև Տայքի Օլթին: Նա նշում է այն օրը, երբ կայսրը հասել է Հաշտյանքի սահմանին գտնվող Կոհեր լեռանը: Դա Վարդավառի (Պայծառակերպության) տոնի օրն էր: Նա թվարկում է այն իշխաններին, որոնք եկել էին կայսերը ներկայանալու, երբ նա անցնում էր Հայաստանի տարածքով: Նա նույնիսկ տեղյակ է այն ամենին, ինչ տեղի էր ունեցել կայսերական ճամբարում, օրինակ ռուս և վրացի զինվորների միջև տեղի ունեցած միջադեպին:

Այս մանրամասն տեղեկությունները մտածել են տալիս, որ պատմիչը հեռու չէր կայսերական ճամբարից և որ կայսեր Տայք գալու պահին նա հյուրընկալվում էր Դերջանում: Մի՞գուցե նա թողել էր իր հայրենիքը՝ Տարոնը, Դերջանով Անի գնալու համար, ուր 1000-1005 թթ. ընթացքում նա պետք է գրեր իր պատմական աշխատությունը Սարգիս [Ա Սևանցի] կաթողիկոսի հանձնարարությամբ:

Ինչպես Ս. Հովհաննեսի և Ս. Եվթիմիոսի վարքի հեղինակը, այնպես էլ Ասողիկը անտեղյակ են 991 թ. պայմանավորվածությանը: Դա է պատճառը, որ նա սխալմամբ տարածքային հարցը տեղափոխել է Թոռնիկի ժամանակաշրջանը: Նա վերարտադրել է այն վարկածը, որը տարածված էր Տայքի շրջանում: Այն պահին, երբ վիճարկվում էր Դավթի ժառանգությունը, վրացական միջավայրը ոչ մի շահ չուներ հիշելու 991 թ. իրադարձությունները, որոնք որոշակիորեն հակառակ էին նրա շահերին: Այդ միջավայրի շահը պահանջում էր վերակենդանացնել Թոռնիկի և կայսրությանը նրա մատուցած ծառայության հիշատակը: Թոռնիկը Դավիթ կյուրոպաղատի հպատակներից մեկն էր: Նրա ընտանիքի տիրույթը գտնվում էր վիճելի տարածքում: Դրանից կարելի է ենթադրել, որ այդ տարածքը պատկանում էր Դավթին: Անհրաժեշտության դեպքում կարելի էր այդ հողերը դիտել որպես ժամանակին Դավթին մատուցած այդքան արժեքավոր ծառայության դիմաց ստացած վարձ:

Կայսրությունը, հակառակը, իր հավակնություններն արդարացնելու

համար կառչած էր մնում 991 թ. ստորագրված պայմանագրին: Ցահյան, որ մեզ է հասցրել այս պատմությունը, տեղեկություններ է քաղել հավանաբար այդ գործը հանձն առած Անտիոքի դուքս Նիկեփորոս Ուրանոսի շրջապատից:

Թոռնիկը ծագումով Կարինից էր: Ս. Հովհաննեսի և Ս. Եվքիմիոսի վարքի հեղինակն ասում է, որ Թոռնիկը վանականի վեղար էր հագել «իր հայրենիքում»: Պրոֆ. Պ. Պետերսին թվացել է, թե դա նշանակում է, որ Թոռնիկը ծագումով Վիրքից չէր[1]: Մի վրացական ձեռագիր, որը կրում է Թոռնիկի անունը, գրվել է Կարնո շրջանում: Ահա այստեղ է նրա հայրենիքը: Դա կատարելապես հաստատվում է մի արժեքավոր հուշարձանով, որը գտնվել է Կարինի մոտ: Ղարարծ գյուղի մոտ հայտնաբերված մի խաչքար կրում է հետևյալ արձանագրությունը.

**<Յ>անուն Աստուծոյ ես Յովանէ... որդի Չորտվանէկի կանգնեցի զխաչս զայս ի ժամանակին Վասիլէ (կարդալ Վասիլ եւ) Կոստանդին...**[2]

Ոչ մի կասկած չկա, որ դրա տերը Հովհաննես-Թոռնիկն է՝ Չորտվանելի որդին: Բացթողումը հավանաբար թաքցնում է նրա երկրորդ՝ Թոռնիկ, անունը: Պետք է կարդալ. ***<ովհանէ<ս Թոռնիկ>:*** Ղարարծ գյուղը թուրքական արտասանությամբ (Ղարա-արծ) պահպանել է իր հին անունը՝ Արծն, բյուզանդացի հեղինակների "Αρτζη-ն, և գտնվում է Կարին (Էրզրում) քաղաքից մոտ տասը կիլոմետր դեպի հյուսիս: Ժամանակին դա ծաղկուն քաղաք էր:

Թոռնիկի հայրը՝ Ջուրքանել-Չորտվանելը, ուղարկվել էր մայրաքաղաք Թեոդոսուպոլսի և Բասենի հարցը կարգավորելու համար: Աշոտ կյուրոպաղատի († 954) ընտրությունը հեշտությամբ է բացատրվում: Չորտվանելը, որպես վիճելի երկրի ծնունդ, անհարմար թեկնածու էր այդ հարցով զբաղվելու համար: Թոռնիկի եղբայր Բագրատին և նրա որդիներին Ցահյան անվանում է Խալդիկայի իշխաններ: Այստեղ խոսքն անկասկած ոչ թե Խալդիկա բանակաթեմի, այլ դրան հարող երկրամասի մասին է, ուր գտնվում էին Թոռնիկի ընտանիքի տիրույթները: Այդ հարևանության շնորհիվ է, որ Վարդաս Փոկասը՝ Խալդիկայի դուքսը, մոտիկից ծանոթացել էր Թոռնիկի ընտանիքի և դրա միջոցով՝ կյուրոպաղատի հետ: Նա ի շահ իրեն էր օգտագործել Դավթի բարեկամությունն ու դիմել նրա օգնությանը, ինչպես 979, այնպես էլ 989 թվականին:

[1] «Analecta Bollandiana», t. L, fasc. 3-4, p. 370.

[2] Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ, 1864, էջ 79:





Թոռնիկը դառնալով վանական զգալի նպաստ է բերել վրաց գրականությանը՝ ընդօրինակելով կամ արտագրել տալով մեծ քանակությամբ աստվածաբանական երկասիրություններ: Հետագայում գրիչները, օրինակելով Թոռնիկի պատվիրած ձեռագրերը, սրբությամբ պահպանել են դրանց բնագրերի հիշատակարանները, որոնք վերաբերում էին Թոռնիկին և նրա մերձավոր ազգականներին: Ռոբերտ Բլեյկը վերջերս վրացական ձեռագրերի ցուցակում ամբողջությամբ հրատարակել է այդ հիշատակարաններից շատերը:

Մեզ հետաքրքրող հարցը մասամբ քննարկվել է հայր Պ. Պետերսի[1] և հայր Ն. Ակինյանի[2] կողմից: Մենք շահեկան ենք համարում կրկին անդրադառնալ հիշատակարանների այդ հավաքածուին այն հույսով, որ կկարողանանք ավելի ճշգրիտ կերպով կազմել Թոռնիկի ընտանիքի ցանկը:

Նախևառաջ վերարտադրում ենք մեր ուսումնասիրության առարկա հիշատակարանները:

1. Մոսկվայում պահվող հունարեն ձեռագրին կցված վրացերեն մի թերթի հիշատակարան.

«Ես, Հովհաննեսս, նախկինում Թոռնիկ, երանելի տեր Չորտվանելի որդին, աշխատել ու գրել եմ այս մատյանը, որ կոչվում է Գանձ... Դուք, որ կկարդաք այս մատյանը, հիշեցեք ինձ ձեր աղոթքներում... Հիշատակեցեք նաև նրանց, ում ես եմ հիշում. նախ՝ իմ ուսուցիչ Հովհաննես Աբուլհերիթին և իմ եղբայր Հովհաննես Վարազվաչեին և մեր հոգևոր և մարմնական որդիներին՝ Միքայելին ու եկուսովիտ Չորտվանելին, Բագրատ պատրիկին, և Չորտվանելին, և փոքր Թոռնիկին, ինչպես նաև հիշեցեք իմ ծնողներին և բոլոր հարազատներիս...

Այս գիրքը գրվել է Կարնո գավառում աշխարհագործության 6500 թ., 201 քրոնիկոնին՝ նվաստ Միքայել գրչի ձեռքով և հենց իմ Ստեփանոսիս ձեռքով էլ կազմվել է: Աղոթեցեք մեզ համար:

Իսկ ես՝ Հովհաննես Սինկելլոսս, նվիրեցի այս սուրբ մատյանը... Աթոս լեռանը, երբ այնտեղ վանականի վեղար հագա»[3]:

2. Իվերոնի մի ձեռագրի հիշատակարան.

«Ես, Հովհաննեսս՝ նախկինում Թոռնիկ, և իմ եղբայր Հովհաննես Վարազվաչեն օրհնյալ Չորտվանելի որդիներս ձեռք ենք բերել և օրինակել այս

[1] P. Peeters, Un colophon géorgien de T'ornik le Moine, «Analecta Bollandiana», t. L, fasc. 3-4.

[2] Ն. Ակինյան, «Հանդէս Ամսօրեայ», 1934, մարտ-ապրիլ և հջ.:

[3] P. Peeters, op. cit.

սուրբ մատյանը, որ կոչվում է Դրախտ… որպես աղոթք և ի գովեստ նախ և առաջ հզոր և աստվածավախ Դավիթ կյուրոպաղատի: Ապա… որպես աղոթք հենց մեզ համար. նախ՝ նախկինում Հովհաննես Թոռնիկի, իսկ այժմ սուրբ կայսրերի ողորմածությամբ Հովհաննես Սինկելլոսի, որն Աստծու սիրուց դրդված լքել է երկրային փառքը և գտել երկնայինը, հանուն որի, իր պատվի և սուրբ կայսրերի ողորմածության գագաթնակետին լինելով, նա շտապել է զինվորական համազգեստը փոխարինել վանականի վեղարով և դրա ներքո մեծապես և ազնվորեն ծառայել կենաց ծառին և սուրբ կայսրերին: Երբ հույների երկրում հայտնվեց անհավատ և անօրեն մի մարդ, որը հակառակվեց սուրբ կայսրերին, ինքը (Թոռնիկը) շտապով գնաց իր հզորությամբ և անհաղթելիությամբ բոլորին հայտնի Դավիթ կյուրոպաղատի մոտ և նրանից հրամանով ոչնչացրեց այդ [մարդու] մտադրությունը և ամրապնդեց սուրբ կայսրերի <իշխանությունը>: Հետո՝ <որպես աղոթք> Հովհաննես Վարազվաչեի, նրա կնոջ և որդիներ Միքայելի, Չորտվանել զորավարի համար, Չորդլողիի համար, Թոռնիկի համար, իմ եղբոր որդիներ Չորտվանելի և Բագրատ պատրիկի համար:

Եվ որպես աղոթք Բագրատ մագիստրոսի և իմ ծնողներ Չորտվանելի և Մարիամի, իմ եղբայրներ Բագրատի, Աշուշայի և Աբուհարբի, մեր հորեղբոր Աբուհարբիի և Աշուշայի, և մեր տան բոլոր հանգուցյալների հոգիների համար:

Այս սուրբ գիրքը գրվել է Ոսկիքի հռչակավոր մայրավանքում, Ս. Մկրտչի ոստանում, վանահոր Սաբայի օրոք, թո՛ղ Աստված օրհնի նրան, Ստեփանոս երեցի ձեռքով, և նույն նրա ձեռքով կազմվել է, թո՛ղ Աստված օրհնի նրան, Զատկական շրջանի 197-րդ տարում: Այս պարտավորությունը գրել եմ ես՝ անարժան Դավիթս, հայր Միքայել Մողրեկելիի քրոջ որդին: Եթե տգիտության հետևանքով ինչ-որ սխալ եմ թույլ տվել, ապա ներեցեք ինձ»[1]:

3. Բարսեղ Մեծի երկասիրությունները պարունակող ձեռագրի հիշատակարան.

«Ո՜վ Քրիստոս, փառաբանիր այժմ հայր Հովհաննեսին և նրանց (իր) հոգևոր որդի Եվթիմիոսին՝ այս գրքի թարգմանչին, և ողորմած եղիր իմ՝ խեղճ Սաբայիս նկատմամբ, որ օրինակել եմ այս գիրքը:

Ես՝ Հովհաննեսս, արժանի համարվեցի ձեռք բերելու այս սուրբ գիրքը, որ իմ որդի Եվթիմիոսը թարգմանեց հունարենից: Մենք մեծ աշխատանք ենք կատարել այս գրքի վրա մեր հոգիների փրկության համար: Այսպիսով, ո՛վ դուք, թո՛ղ Աստված ներշնչի ձեզ հիշատակելու մեզ. ինձ՝ Հովհաննեսիս, իմ հոգևոր և մարմնական եղբայր Հովհաննեսին՝ նախկինում Թոռնիկին, իմ որդի Եվթիմիոսին, որը թարգմանել է սա, մեր հոգևոր եղբայրներ Արսենին, Թեոդորոսին և Գրիգորին: Գրված է Աթոսում Ս. Հովհաննես Ավետարանչի վանքում VI ինդիկտիոնին, աշխարհագործության 6485 թվականին»[1]:

4. Աթոսի Հին Կտակարանի մի մատյանում զետեղված բազմաթիվ հիշատակարաններ՝

- «Ողորմեա հայր Հովհաննեսին, որը նախկինում Թոռնիկ էր» (Հոբի գրքից հետո),
- «Թոռնիկ պատրիկը և Միքայել գրիչը» (Եսայիի գրքից հետո),
- «Թոռնիկ պատրիկը իր որդիների հետ» (Եզեկիայի գրքից հետո),
- «Թոռնիկ Սինկելլոսը և նրա որդիները» (Թագավորությանց Գ գրքից հետո),
- «Թոռնիկ Հովհաննեսը» (Թագավորությանց Դ գրքից հետո),
- «Թոռնիկ Սինկելլոսը և նրա որդիները, և Հովհաննեսը՝ Գելասի որդին: Այս մատյանը գրվել է Ոսկիքում. ողորմեա Վարազվաչեի որդի Միքայելին: Ո՜վ Սուրբ Լեռան հայրեր, հիշեցեք գրչին»,
- «Հայր Թոռնիկ Հովհաննեսն իր ուսուցիչների, եղբայրների և իր որդիների հետ» (Իմաստության գրքից հետո),
- «Թոռնիկ պատրիկին իր որդիների հետ» (Մաղաքիայի գրքից հետո),
- «Ես՝ Հովհաննեսս, նախկինում Թոռնիկ, օրհնյալ Չորտվանելի որդին… իմ, իմ եղբայրների, իմ որդիների և իմ հանգուցյալների համար: Գրիչներ Միքայել, Գևորգ, Ստեփանոս. գրված Զատկական շրջանի 198-րդ տարում»[2]:

5. Հիշատակարան, որը պատկանում է Հովհաննու հայտնության մեկնության մի ձեռագրի, որը թարգմանել է Ս. Եվթիմիոսը և որը գրվել է «Օլիմպոս լեռան Կրանիա մայրավանքում Վասիլ և Կոստանդին կայսրերի թագավորության և Անտոնիոս պատրիարքի հայրապետության օրոք, Վարդասի ապստամբության ժամանակ, աշխարհագործության 6582 թ., Զատկական շրջանի 198-րդ տարում, գրիչներ Իոանե և Սաբա Չմոգել»[3]:

Այստեղ թվարկված բոլոր հիշատակարաններն էլ խիստ կասկածելի են. դրանցից և ոչ մեկը չի կարող հավակնել իսկության և դիտվել որպես այն մարդկանց ինքնագրեր, որոնց դրանք վերագրվում են: Եվ իսկապես, աշխարհագործության 6500 թ. ( - 5508) = 992 թ. չի համապատասխանում քրոնիկոնի տարվա (կամ Զատկական շրջանի) 201(+ 780) = 981թվականին:

[1] «Revue de l'Orient chrétien», VIII (XXVIII), (1931-1932), p. 338.

[1] Ibidem, IX (XXIX), (1933-1934), p. 155.
[2] «Harvard Theological Review», t. XXII (1929), p. 32-53.
[3] M. Brosset, Histoire de la Géorgie, t. I, p. 294.

Երկրորդն իբր գրվել է 977 թ., սակայն այնտեղ հիշատակվում է Թոռնիկի սխրանքը, որը կատարվել է 979 թ. և այսպիսով ինքն իրեն հերքում է: Երրորդը թվագրված է աշխարհագործության 6485 թ. ( - 5508) = 977 թ., որ համապատասխանում է IV ինդիկտիոնին և դա ճիշտ է, սակայն հեղինակը, եթե դա Եվթիմիոսի հայր Հովհաննեսն է, չէր սխալվի և չէր փորձի Թոռնիկին ներկայացնել որպես իր եղբայր:

Չորրորդը գրվել է Ոսկիքում 198 ( + 780) = 978 թ., սակայն այստեղ հիշատակվում է Աթոս լեռը:

Եվ վերջապես, հինգերորդ հիշատակարանի թվականը կարծես թե ապահովված է համաժամանակությամբ, սակայն աշխարհագործության 6582 թ. դժվարություններ է հարուցում: Մենք համոզված չենք, թե 198 (+780) = 978 թ. վրացական <տոմարի սկզբնական տարեթիվը՝> 5604 թ. արդյո՞ք արդեն հայտնի էր, որպեսզի հնարավոր լիներ հաշվել 6582 (-5604) = 978 թ., թե՞ պետք է հաշվել 6585 (-5508) = 1077 թվականին: Դա հիշեցնում է մեկ այլ ձեռագիր, որը գրվել է Ռոմանոս Դիոգենեսի թագավորության ժամանակ, IX ինդիկտիոնին, աշխարհագործության 6500 թվականին[1]: IX ինդիկտիոնը տալիս է 1070-1071 թթ. Դիոգենեսի թագավորության վերջին տարին, սակայն աշխարհագործության 6500 (-5508) = 991-992 թթ. կարծես թե ձեռագրի նախագաղափարի գրչության տարեթիվն է:

Մեզ հետաքրքրող հիշատակարաններում ժամանակավրիպությունները ու համաժամանակությանը վերաբերող սխալները իրենց բացատրությունն են ստանում նրանով, որ ընդօրինակված և նախագաղափար ձեռագրերի տարեթվերը խառնվել են: Հին վրացական ձեռագրերի թվագրման եղանակները առհասարակ հատուկ ուսումնասիրություն է պահանջում, և մենք հույս ունենք բարեպատեհ առիթով վերադառնալ այդ հարցին: Մեր նյութի կապակցությամբ բավական է նշել, որ մեր հիշատակարաններում զետեղված տեղեկությունների որոշ մասը վերցված է այն ձեռագրերի հիշատակարաններից, որոնցից դրանք ընդօրինակվել են: Նույն աղբյուրներից են գալիս Թոռնիկի ընտանիքի վերաբերյալ և՛ ճշգրիտ, և՛ սխալ տեղեկությունները:

«Գանձում» և «Դրախտում» զետեղված առաջին երկու հիշատակարաններից մենք հասկանում ենք, որ Թոռնիկը ամուսնացած չէր, քանի որ այնտեղ չեն հիշատակվում ո՛չ նրա կինը, ո՛չ զավակները: Նրա եղբոր՝ Վարազվաչեի, կինն ու զավակները հիշատակված են: Ակնհայտ է, որ եթե Թոռնիկն այդ ժամանակ կին ու զավակներ ունենար, ապա նրանք հիշատակված կլինեին[1]: Այսպիսով չորրորդ հիշատակարանում հանդիպող բազմաթիվ հիշատակումները Թոռնիկի որդիների մասին մեզ զարմանք են պատճառում: Սակայն քանի որ նրանց անունները չեն նշվում, ապա մենք իրավունք ունենք դրանց չհավատալու: Ուղղակի գրիչը ենթադրել է, որ նախկին զորավար Թոռնիկը պետք է որ կին ու զավակներ ունեցած լիներ:

Հովհաննես Աբուլհերիթը՝ Եվթիմիոսի հայրը, Թոռնիկի ուսուցիչն էր, մինչդեռ երրորդ հիշատակարանում նա դարձել է Թոռնիկի եղբայրը: Վերջինս ընդամենը Հովհաննես Աբուլհերիթի կնոջ քեռորդին էր:

Առաջին երկու հիշատակարանները տալիս են Թոռնիկի ընտանիքի անդամների համարյա ամբողջական ցանկը: Այդ հիշատակարանները համընկնում են, երբ խոսքը ընտանիքի ողջ-առողջ անդամների մասին է:

Ըստ առաջինի Թոռնիկը եղբայր ուներ՝ Հովհաննես Վարազվաչե, իսկ վերջինիս որդիներն էին՝ Միքայելը, եկուսովիտ Չորտվանելը (Բագրատ պատրիկը և Չորտվանելը) և կրտսեր Թոռնիկը:

Ըստ երկրորդի Թոռնիկն ուներ մի եղբայր՝ Հովհաննես Վարազվաչե, որի կինը դեռ ողջ էր և նրանց որդիներն էին՝ Միքայելը, Չորտվանել զորավարը, Չոլորոդին և Թոռնիկը: Թոռնիկ վանականը, բացի այդ, հիշատակում է իր եղբոր որդիներ Չորտվանելին և Բագրատ պատրիկին: Այս եղբայրը Վարազվաչեն չէ, ինչպես հայտնում է առաջին հիշատակարանի գրիչը, նրանց սխալմամբ դասելով Վարազվաչեի որդիների շարքը[2]: Այստեղ խոսքը մեկ այլ եղբոր մասին է:




Սրանք ընտանիքի ողջ-առողջ անդամներն են: Ինչ վերաբերում է հանգուցյալ անդամներին, ապա առաջին հիշատակարանում դրանք թվարկված են, սակայն առանց անունները նշելու. «իմ ծնողների, եղբայրների և բոլոր մերոնց հոգիների համար»: Երկրորդ հիշատակարանում տրված են

[1] «Revue de l'Orient chrétien», IX (XXIX), (1933-1934), p. 150.

[1] Ինչ վերաբերում է Վարազվաչեի որդուն, ապա ասված է՝ «մեր հոգևոր և մարմնական որդիները», սակայն դա չի նշանակում, որ թվարկված զավակների մեջ կային Թոռնիկին պատկանող զավակներ: Այդ հատվածի ճիշտ իմաստն այն է, որ դրանք Վարազվաչեի մարմնական որդիներն էին, իսկ Թոռնիկի՝ հոգևոր:

[2] Չորտվանել եկուսովիտը՝ ἐξκούβιτος, նույնանում է Չորտվանել զորավարին (ստրատեգոս): Խորհրդավոր Չոլոր(ո)դի անունը համապատասխանում է Մցիրի (փոքր) անվանը և կարծես թե աղավաղված հայերեն բառ է, որը պարունակում է -որդի բառը:

նրանց անունները. «իմ ծնողների՝ Զորտվանելի և Մարիամի, իմ եղբայրների՝ Բագրատի, Աշուշայի և Աբուհարբի, իմ հորեղբայրների՝ Աբուհարբի և Աշուշայի, հոգիների համար»: Նա ավելացնում է ոմն Բագրատ մագիստրոսի առանց նշելու նրա ազգակցական կապը:




Բագրատ մագիստրոսի ով լինելը դեռևս պետք է պարզվի: Այդ Բագրատը կարծես թե ոչ այլ ոք է, եթե ոչ Թոռնիկի երկրորդ եղբայրը. այն եղբայրը, որի երկու որդիները հիշատակված են ողջերի շարքում, իսկ նրանց հայրը հիշատակված չէ, քանի որ այդ ժամանակ նա արդեն մահացած էր: Բագրատ մագիստրոսը նույն այն Բագրատն է, որը հիշատակված է Աշուշայի և Աբուհարբի հետ: Բացի այդ, մենք գիտենք, որ Բագրատն իսկապես երկու որդի ուներ՝ Զորտվանել և Բագրատ: Թոռնիկի ընտանիքի ցանկը ներկայանում է հետևյալ կերպ.




Նշյալ անձանցից ոմանց վերաբերյալ մենք նաև պատմական տեղեկություններ ունենք: Թոռնիկի հայրը իսկապես Զորտվանել անունն էր կրում: Դա Աշոտ կյուրոպաղատի Ζουρβανιήλ ազատն էր, որը հայտնի է 950 թ. Կոստանդին Ծիրանածնի մոտ կատարած իր առաքելությամբ: Այդ կայսեր «Բանակաթեմերի մասին» աշխատության ձեռագրի լուսանցքում մի նշում կա, որն արձանագրում է, որ Ζουρβανέλη Թոռնիկի հայրն էր. οὗτος δὲ Ζουρβανέλη ὁ πατὴρ τοῦ Τορνίκη τῆς <μονῆς τῶν 'Ιβήρων> 'Αβ<β>ᾶ,



τοῦ ἀρτίως συγκέλλου [«այս Զուրբանելը Թոռնիկի, Իվերների վանքի վանահայր, վերջերս՝ սինկելլոսի հայրն է»][1]:

Այն օգնական զորքը, որ Դավիթ կյուրոպաղատը ուղարկել է Վարդաս Փոկասին 987-989 թթ. նրա ապստամբության ժամանակ, գտնվում էր Բագրատի երկու որդիների՝ Խաղդիկայի իշխանների և պատրիկների, հրամանատարության ներքո[2]: Յահյայի այս վկայությունը հաստատվում է 1364 թ. Տրապիզոնի միտրոպոլիտ Հովհաննես Լազարոպուլոսի կողմից, որը նույնիսկ հայտնում է մեզ պատրիկների անունները. Στέλλονται τοίνυν πρέσβεις παρ' αὐτοῦ Φωκᾶ πρὸς τοὺς τῆς Περσαρμενίας στρατάρχας τὸν τε Παγκράτιον φημι καὶ τὸν Τζουρβαλέλην (կարդալ Τζουρβανέλην), συνήθεις ὄντας αὐτοῦ καὶ φίλους τότε [«Փոկասը պատվիրակներ է ուղարկում Պարսկահայաստանի ստրատարքոսների՝ հրամանատարների, մոտ. ես նկատի ունեմ Պանկրատիոսին (Բագրատին) և Զուրբանելեին (Զուրբանելեսին), իր ազգականներին և այն ժամանակ՝ բարեկամներին»][3]: Դրանք են Զորտվանելն ու Բագրատ պատրիկը՝ Թոռնիկի եղբայր Բագրատի որդիները, ինչպես նշված է մեր ցանկում: Ասողիկը ճանաչում է Զորտվանելին (9): Նա Թոռնիկի «եղբաւրորդին» է և Վարդաս Փոկասի կողմնակիցը, որը Վարդասի մահից հետո շարունակել է դիմադրել կայսրությանը և զոհվել 990 թ. Դերջանում տեղի ունեցած ճակատամարտի ժամանակ: Նրա եղբայր Բագրատը լքել էր Փոկասին վերջինիս պարտությունից առաջ: Համաձայն հիշատակված հեղինակի տեղեկությունների Տրապիզոնի նահատակ Ս. Եվգենիոսը իբր Բագրատին համոզել էր հրաժարվել Փոկասի նախաձեռնությանը մասնակցելուց, որովհետև այն ի սկզբանե անհաջողության էր դատապարտված: Բագրատը ետ էր կանգնել այդ գործից:

Հայոց 447 թ. = 998 թ. Դավթի բանակը պարտություն է կրել Խլաթ քաղաքի մոտ և «Թոռնիկ վանականի որդի Բագրատ մագիստրոսը» զոհերի շարքում էր: Այս անձնավորությունն ու Զորտվանելի եղբայր Բագրատը նույնանում են. երկուսն էլ Դավթի զորավարներից են և ժամանակակից: Նրանց նույնացմանը ոչինչ չի խանգարում: Ասողիկի մոտ նա անվանված է Թոռնիկի որդի. պետք է կարդալ «եղբաւրորդի»: Ինչպես մենք տեսանք, Թոռնիկը ամուսնացած չէր:

Ասողիկին հայտնի է մեկ այլ Զորտվանել ևս: Սա գերեվարվել է հուլիսի 19-ի ճակատամարտի ժամանակ, որի ընթացքում զոհվել է բանակի զորա-

---

[1] De Thematibus, p. 373. Այդ բառը համարվել է Թոռնիկի կնոջ անունը: Դա անհեթեթություն է: Հարկավոր է վերականգնել շարադրանքն այնպես, ինչպես մենք ենք արել:

[2] Яхья (в кн. В. Розен, Василий Болгаробойца), с. 24 и 27.

[3] А. Пападопулос-Керамевс, Сборникъ источников по истории Трапезундской империи, с. 82.

վար Դամիանոս Դալասենոսը: Նա այս Չորտվանելին համարում է «Թոռնիկի եղբաւրորդի»: Դիմելով մեր ցանկին կարող ենք նրան նույնացնել Թոռնիկի զարմիկի՝ Թոռնիկի եղբայր Վարազվաչեի որդի Չորտվանելի, հետ: Ասողիկը հիշատակում է մի երրորդ Չորտվանել ևս: Այս մեկը սպանվել է 1000 թ. ռուս և վրացի զինվորների միջև տեղի ունեցած ընդհարման ժամանակ: Մեր հեղինակը նրան ներկայացնում է որպես Աբուհարբի թոռ: Մեր ցանկում երկու Աբուհարբ կա. մեկը Թոռնիկի հորեղբայրն է, մյուսը՝ Թոռնիկի եղբայրը: Մենք Չորտվանելին համարում ենք Թոռնիկի հորեղբոր թոռը: Այդ հորեղբոր դուստրը ամուսնացած էր Հովհաննես Աբուլհերիբի՝ Եվթիմիոսի, հոր հետ:




Չորտվանել անունը երաշխիքն է այն բանի, որ Աբուհարբը պատկանում էր այն նույն ընտանիքին, ինչ և Թոռնիկը:

Եվս մեկ Չորտվանելի մենք ծանոթանում ենք արաբ հեղինակ Քեմալ-ադ-Դինի միջոցով[1]: Ըստ այդ հեղինակի՝ Վարդաս Փոկասի Հալեպ քաղաքի դեմ ուղղված մի արշավանքի ժամանակ իր զորքի առաջագնդի հրամանատարն էր վրաց արքա Տարճյարիլը՝ ترطياريل: Սա Չորտվանել անվան աղավաղված ձևն է: Այս դեպքում մենք կմտածեինք այն Չորտվանելի մասին, որը Վարդաս Փոկասի բարեկամն ու դաշնակիցն էր և որն իր մահկանացուն կնքել էր 990 թ., եթե արաբ հեղինակն ասած չլիներ, որ Տայճարիլը սպանվել էր 983 թվականի սեպտեմբերի 28-ին: Նա չի կարող Թոռնիկի հայրը՝ Ζουρβανέλη, լինել, որովհետև վերջինս հավանաբար մահացել է 979 թ. առաջ: Մնում է ճշտել արաբ հեղինակի Տարճյարիլի մահվան թիվը:

Վարազվաչեն կարծես թե մի արձանագրություն է թողել, որն ունի նույն բնույթը ինչ և նրա եղբայր Թոռնիկի թողած արձանագրությունը Քարար-

[1] Մեջբերված է В. Розен, Василий Болгаробойца, с. 163.



զում: Այն գտնվել է Անիում Ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցում[1]:

*+ յանուն ա̅ծ̅ յ*
*ես յովան կ վա*
*ր լին վանէ որդ*
*ի չորտվանե*
*կի կանգնեցի*
*զխաչս զա̅ծ̅ յս*

Վերծանությունը դժբախտաբար վստահելի չէ (10). կարդում են ***կվարլինվանէ***, իսկ դա իմաստ չունի: Հայր Ն. Ակինյանը առաջարկում է կարդալ ***Վարազվաչէ***: Այդ դեպքում արձանագրության տիրոջը կարելի է նույնացնել Թոռնիկի եղբորը, որը կրում էր այդ անունը:

Անիի Ս.Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին, որը հայտնի է իր եզակի որմնանկարներով, պատկանում էր քաղկեդոնական ծեսին հարած հայերին: Նրա հիմնադրի արձանագրությունը, որը մինչ օրս պահպանվել է, մեզ տեղեկացնում է, որ այն կառուցվել է 1215 թ. Ս. Աստվածածնին նվիրված մատուռի տեղում: Հովհաննեսի խաչը պահպանվել է նախկին մատուռից, որը հավանաբար քաղկեդոնիկների սեփականությունն է եղել: Հովհաննես Վարազվաչեի այնտեղ թողած հիշատակը նշանակալից է, քանի որ Թոռնիկի ընտանիքը ծագումով հայկական լինելով վրացական էր դարձել իր հավատքով[2]:

[1] Արձանագրությունը մեզ ծանոթ է Շ. Տեքսյեի արած պատճենից. Description de l'Arménie, de la Perse et de la Mésopotamie, Paris, 1842. վերարտադրված է Ղ. Ալիշան, Շիրակ, էջ 80:

[2] P. Peeters, op. cit., pp. 370-371.

## [ՀՈՎՀԱՆՆԵՍ Ի] ՉՄՇԿԻԿԻ ՆԱՄԱԿԸ ԱՇՈՏ [III] ԱՐՔԱՅԻՆ

Այս վավերագիրը քաջ հայտնի է: Խոսքն այն նամակի մասին է, որը Հովհաննես I Չմշկիկ կայսրը (969-976) հասցեագրել է հայոց արքա Աշոտ III Բագրատունուն (953-977), 975 թ. արաբների դեմ իր հայտնի արշավանքի ժամանակ: Այն մեզ է հասցրել Մատթեոս Ուռհայեցին (1): Նամակը գիտական աշխարհին հայտնի է դարձել Էդ. Դյուլորիեի ֆրանսերեն թարգմանությամբ[1]: Այն թարգմանվել է նաև ռուսերեն՝ Լազարյան ճեմարանի հայոց լեզվի դասախոսներից մեկի (2) կողմից[2]:

Հարկ կա՞ արդյոք նշելու, որ այս վավերագրի իսկությունը անառարկելի է: Այն չի պարունակում և ոչ մի հանգամանք, որ չհամապատասխաներ այն ամենին, ինչ մենք գիտենք Չմշկիկի այդ արշավանքի մասին: Անհանգստացնել կարող է միայն մի բան. լավ չի հասկացվում հայոց արքային կայսեր դիմելու պատճառը: Նամակն այնպես, ինչպես այն թարգմանված է ֆրանսերեն ու ռուսերեն, հնարավորություն չի տալիս այդ պատճառը գուշակելու: Թարգմանիչները չեն հասկացել վավերագրի վերջին մասը: Մեկն այն պարզապես կրճատել է, իսկ Դյուլորիեն սխալ է ներկայացրել:

Մատթեոս Ուռհայեցին պատմում է, որ զորավար Մելիասի (Մլեհի) արշավանքի (նա առաջին հաղթանակից հետո պարտություն էր կրել Ամիդի մոտ և ընկել թշնամու ձեռքը) աղետալի վախճանի լուրն առնելուն պես Չմշկիկ կայսրն արշավել է արաբների դեմ՝ բանակի պատիվը փրկելու համար[3]: Նախևառաջ նա ուղևորվել է Հայաստան, մտել Տարոն ու բանակել Այծյաց բերդի դիմաց, Մուշ քաղաքի հարևանությամբ: Բյուզանդական բանակի անսպասելի գալուստը անհանգստացրել է հայ իշխաններին: Այդ

[1] E. Dulaurier, Chronique de Matthieu d'Edesse, Paris, 1868. Հայերեն բնագիրը հրատարակվել է մեկ տարի անց Երուսաղեմում: Երկրորդ՝ Էջմիածնի հրատարակությունը լրացրել է առաջինի որոշ, երբեմն շատ կարևոր, բացթողումները, սակայն այն նույնպես հեռու է քննական հրատարակություն լինելուց:

[2] Տե՛ս «Византийский временник», т. X (1903), с. 19 (3):

[3] Մատթեոս Ուռհայեցին Մելիասին կոչում է *դեմեսլիկոս* (կարդալ *դոմեսլիկոս*), այսինքն՝ դոմեստիկոս: Նա հենց այդ պաշտոնն էր զբաղեցնում, սակայն Արևելքի սխոլերի: Կար նման մի պաշտոն Արևմուտքի համար: Այդ բաժանումն առաջին անգամ ի հայտ է գալիս մոտ 960 թ. Ռոմանոս II-ի ժամանակ: Նիկեփորոս Փոկասը զբաղեցնում էր ἐν τῇ ἑῴᾳ՝ [«արևելքի»], իսկ նրա եղբայր Լևոնը τῆς δύσεως՝ [«արևմտքի»] դոմեստիկոսի պաշտոնը (Theoph. Cont., p. 472): Նիկեփորոսը նույնպես հանդես է գալիս որպես τῆς 'Ανατολῆς՝ [«արևելքի»] դոմեստիկոս՝ Const. Porph., De cerim., էջ 433:



պատճառով նրանք իրենց զորքերի հետ շտապել են հավաքվել Աշոտ III արքայի մոտ, ցանկացած անակնկալի պատրաստ լինելու համար:

Սակայն կայսրը երկրի նկատմամբ թշնամաբար չէր տրամադրված: Նա բանակցություններ է սկսում Աշոտ արքայի հետ, դաշինք կնքում, խնդրում է նրանից օժանդակ տասը հազար զինվոր, պարեն է վերցնում ու հեռանում արշավանքը շարունակելու համար: Կայսրը հաղթանակներ տանելով ամենուր՝ հասնում է մինչև Երուսաղեմ և, ավարտին հասցնելով իր արշավանքը, Աշոտին է ուղարկում մեզ հետաքրքրող նամակը, ուր նա պատմում է իր սխրանքների մասին: Այդ նամակի վերջում նա անդրադառնում է Այծյաց բերդի հարցին (4), ու մենք հասկանում ենք, որ այդ հարցը կայսեր Տարոնում եղած ժամանակ վեճի առարկա է եղել նրա և Աշոտի միջև նրանց վարած բանակցությունների ընթացքում: Նամակի հենց այդ հատվածն է, որ դժվարություններ է առաջացնում: Ռուսերեն թարգմանիչն այն բաց է թողել, որպես Աշոտին հասցեագրված նամակին չպատկանող անհարազատ գրություն: Դյուլորիեն այն թարգմանել է բառացիորեն, առանց նկատելու, որ հայերեն տեքստը աղավաղված է և հասկանալի դառնալու համար այն պետք է ուղղվի:

Ահա հայերեն տեքստը.

«Յանափոռտէն պռտաւսպաթրին Դերջնայ Լեւոնի եւ Տարօնոյ զօրավարին (ողջոյն եւ ի տէր խնդալ): Արդ գիտացաք որ զԱյծեաց բերդն որպէս յանձին կալար՝ չես տուեալ. եւ այժմ գրեցաք առ զօրավարդ մեր, որ ոչ զբերդն առնու եւ ոչ զջորեանն՝ զոր պայմանեցեր. զի այժմ չեղեւ առ մեզ պէտք. բայց զքառասուն հազար ոսկւոյն զոր յուղարկեցաք, տուր տանել առ զօրավարն մեր, զի առաքէ առ թագաւորութիւնս մեր...»[1]:

Իսկ Էդ. Դյուլորիեն թարգմանել է այսպես.

«Դերջանի պրոտոսպաթար Անափորտենին, Տարոնի զինվորական կառավարիչ Լևոնից ողջույն և ի Տեր խնդալ: Մենք իմացանք, որ դու չես հանձնել Այծյաց բերդը, ինչպես որ խոստացել էիր: Մենք գրել ենք մեր զորավարին, որ նա այն չգրավի և քո խոստացած ջորիները չվերցնի, որովհետև դրա կարիքն այլևս չունենք: Բայց քառասուն հազար օբոլը, որ մենք ուղարկել ենք, տանել տուր մեր զորավարին, որն այն կուղարկի Մեր Թագավորությանը»[2]:

Երևում է, որ թարգմանիչը այս հատվածը դիտում է որպես առանձին գրվածք, որը հասցեագրված է ոմն պրոտոսպաթար Անափորտենի:

Սակայն այդ ենթադրյալ անունը ոչ թե տրական այլ բացառական հո-

[1] Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1869, էջ 32-33:

[2] Matthieu d'Edesse, trad, E. Dulaurier, ch. 16, pp. 23-24.

լովով է տրված և անիմաստ կլինի այդ անունը փնտրել որևէ լեզվի անվանաբանությունում: Ավելին, մեզ ներկայացված թարգմանության մեջ դժվար է ըմբռնել այս հատվածի ճշգրիտ իմաստը: Մենք գիտենք, որ Տարոնը 966 թ. այդ գավառի իշխան Աշոտի մահից հետո բռնի կերպով կցվել է կայսրությանն ու Դերջանի (Derxene) հետ միասին կազմել մի վարչական միավոր, որը ղեկավարվում էր զինվորական կառավարչի կամ ստրատեգոսի՝ զորավարի, կողմից: Լևոն պրոտոսպաթարը հենց այն զորավարն էր, որն իրականացնում էր այդ գործառույթը: Այն մարդը, որին նամակում կոչում են «մեր զորավար» ոչ այլ ոք է, եթե ոչ Լևոնը: Ուստի ակնհայտ է, որ խոսք չի կարող լինել Լևոնին հասցեագրված նամակի մասին, քանի որ նամակում խոսքը հենց նրա մասին է՝ և երրորդ դեմքով: Բնագիրը, այնպես, ինչպես հասկացվել ու թարգմանվել է Դյուլորիեի կողմից, ակնհայտ անհեթեթության է հանգում:

Հետևաբար, մենք կարծում ենք, որ առեղծվածային *յանափոռտէն*-ը հատուկ անուն չէ: Այն պետք է կարդացվի *յանափոռաէն*, որը կտա մի բառի բացառական հոլովը և ուր մենք հեշտությամբ կճանաչենք հունարեն ἀναφορά՝ «զեկույց», բառը՝ յ-ἀναφορά-էն[1]: Իրականում նախադասությունը պետք է թարգմանվի հետևյալ կերպ. «Դերջանի պրոտոսպաթար ու Տարոնի զորավար Լևոնի զեկույցից մենք իմացանք, որ դու (այսինքն՝ Հայոց արքան) չես հանձնել Այծյաց բերդը: Այժմ մենք գրել ենք մեր ստրատեգոսին (այսինքն՝ Դերջանի ու Տարոնի ստրատեգոս Լևոնին) չգրավել ամրոցը և չվերցնել ջորիները, որոնք դու խոստացել էիր տալ»:

Այս մեկնաբանության միակ խոչընդոտն այն է, որ մի կողմ է մնում «ողջոյն եւ ի տէր խնդալ» արտահայտությունը: Սակայն մեզ թվում է, որ այդ բառերը տեղաշարժվել են. բնագրում դրանք պետք է գտնվեին *յանափոռաէն* բառից առաջ, կայսեր քաջագործությունների նկարագրությունից հետո:

Վավերագրի վերջին մասը կարծես թե հետգրություն է: Իր հաղթանակները նկարագրելուց հետո կայսրը իր թղթակցին ցանկանում է «ողջոյն եւ ի տէր խնդալ», իսկ հետո վերադառնում է Այծյաց բերդի հարցին, ինչպես նաև այլ պարտավորությունների, որոնք դրվել էին Աշոտ արքայի վրա, որոնք սակայն, ըստ կայսերական ստրատեգոսի զեկույցի, չէին կատարվել: Հենց այդ հարցերի կապակցությամբ էլ կայսրը նամակ է գրել Աշոտի III-ին:

Մենք տեսնում ենք, որ Տարոնի հարցը դեռևս լուծված չէր: Բռնակցումը

[1] Այս բառը հայերենում գործածական չէր: Որքան ինձ հայտնի է, այն հանդիպում է, մեր բնագրից բացի, ընդամենը մեկ անգամ, VII դարի հայերեն մի վավերագրում, ուր այն նշանակում է ուղերձը, որը 649 թ., Լատերանի եկեղեցական ժողովից հետո Մարտինոս Ա պապը հղել էր Կոստանդ II կայսրին միակամության խնդրի կապակցությամբ («Անանուն ժամանակագրություն», էջ 77):



հայտարարված էր, սակայն կարևոր ռազմավարական մի կետ՝ Այծյաց բերդը, դուրս էր մնացել շրջանի զինվորական կառավարչի վերահսկողությունից: Աշոտը խոստացել էր այն հանձնել կառավարչին, սակայն, ըստ վերջինիս զեկույցի, այն դեռևս իր ձեռքում չէր: Կայսրը հայտարարում է, որ ինքը պատրաստ է հրաժարվել այդ զավթումից: Այս ամենը կարծես թե լիովին համապատասխանում է իրականությանը: Իրենց ունեցվածքից զրկված Տարոնի իշխաններ Գրիգորն ու Բագրատը դեռևս իրենց երկրում էին Սկլերոսի 976 թ. բարձրացրած ապստամբության ժամանակ և առաջիններից էին, որ միացան ապստամբին:

Կայսրը խնդրում է Հայոց արքայից իր զորավարին հանձնել նաև այն քառասուն հազար օբոլը, որ ինքն ուղարկել էր: Օբոլը՝ դրախմեի մեկ վեցերորդ մասը, մեր դրամի՝ [ֆրանկի] տասնհինգ սանտիմի արժեքն ունի. հետևաբար քառասուն հազար օբոլը կազմում է վեց հազար ֆրանկ: Եթե նույնիսկ ենթադրենք, որ այդ արժեքի դրամը սովորական էր Բյուզանդիայի դրամաշրջանառության համար, ապա գումարը չափազանց չնչին էր բանակցության նյութ դառնալու համար: Այստեղ սխալ կա: Ինչպես նշված է հայերեն հրատարակության հղումներում, ձեռագրում գրված է *«զխռովուլան»*: Տհաճ սխալի հետևանքով –խռ- տառերը դիտվել են որպես թվեր (Խ-40, Ռ-1000): Ճիշտ ընթերցվածը *«զխռուսովուլան»* է, որն է χρυσόβουλλον: Հայոց արքային խնդրում են նույն զորավարին հանձնել կայսեր ուղարկած խրիսովուլը՝ [«ոսկե կնիքը»], այն Կոստանդնուպոլիս ուղարկելու համար: Պարզ չէ, թե խոսքն ինչի մասին է: Արդյոք կայսերական կնիքի մասի՞ն է, որը կայսրն ուզում է, որ հետ ուղարկեն Կոստանդնուպոլիս, թե՞ խրիսովուլով հաստատված ինչ-որ վավերագրի: Նամակի վերջին մասը կարծես կրճատված լինի. այնտեղ ինչ-որ բան պակասում է:

Այս հոդվածն արդեն գրված էր, երբ մենք հնարավորություն ունեցանք ծանոթանալու Սմբատ Սպարապետի «Տարեգրքին»: XIII դարի այս հեղինակը մեզ է թողել Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» կրճատ վերապատումը, որը մեզ հնարավորություն է տալիս որոշ չափով վերահսկելու նրա աղբյուրի շարադրանքը: Խնդրահարույց հատվածը նա ներկայացրել է հետևյալ կերպ.

*«Գրեաց (կայսրը) եւ ի Պռոթոսպաթարն եւ ի Տարօնոյ զօրավարն զի տացեն առ Թագաւորն Հայոց Աշոտ* **զխռոսաֆուլն** *եւ դեկան ոսկի երեսուն հազար եւ ծառայս երկու հազար, ձի տասն հազար եւ ճորի հազար վասն սիրոյն եւ միաբանութեանն զոր արար ընդ նմա»*[1]:

Մեր ենթադրություններից մեկը (խրիսովուլը) այսպիսով հաստատվում

[1] Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, Փարիզ, 1859, էջ 36:

է: Սակայն Սմբատը սխալվում է Դերջանի պրոտոսպաթարին ու Տարոնի զորավարին երկու տարբեր մարդիկ համարելով: Ինչպես ասացինք Դերջանն ու Տարոնը կազմում էին մեկ ստրատեգիա: Վարդաս Փոկասի մահից հետո նրա կողմնակիցներից մեկը՝ Չորտվանել Մագիստրոսը, Ասողիկի վկայությամբ[1], զավթել է այդ շրջանները: Ուրեմն 990 թ. դրանք վերամիավորված էին:

Բացի այդ, մենք տեսնում ենք, որ, ըստ Սմբատի տվյալների, Տարոնի զորավարին հանձնարարված էր Աշոտին հանձնել խրիսովուլն ու թվարկված ընծաները, որոնց մասին ոչ մի խոսք չունի Մատթեոս Ուռհայեցին: Աղավաղվա՞ծ է արդյոք Մատթեոսի շարադրանքը, թե՞ Սմբատը ուրիշ աղբյուր էլ է օգտագործել: Առաջին ենթադրությունը ավելի արժանահավատ է: Սմբատը, անկասկած, իր տրամադրության ներքո ունեցել է մեր պատմիչի աշխատության ավելի ճշգրիտ օրինակ, քան մեր այժմ ունեցածը: Այն մեզ թույլ է տալիս վերականգնելու սկզբնական շարադրանքը հետևյալ տեսքով. «բայց խրիսովուլը (երեսուն հազար դեկան ոսկին, երկու հազար գերիները, տասն հազար ձիերը և հազար ջորին), որ մենք ուղարկել ենք տանել ենք տվել (*տանել տուր*-ի փոխարեն, ուրեմն պետք է ***տուր***-ը ուղղել և փոխարինել ***տուաք***-ով) մեր զորավարին, որպեսզի նա դրանք հանձնի Ձեր (և ոչ թե Մեր, այլ Ձեր) Թագավորությանը»:

Այս թեթևակի ուղղումները բավական են Մատթեոսի շարադրանքը կարգի բերելու ու ճիշտ իմաստը վերականգնելու համար: Ուրեմն նամակի հեղինակը գրում է Հայոց արքային, որ ինքը մնացած ընծաների հետ միասին նրան է ուղարկում մի ոսկյա բուլլա, որով հաստատում է վեճի առարկա դարձած ամրոցի զիջումը:

Սա հիշեցնում է հայ իշխաններ Վասակի, Գրիգորիկի, Պածունեսի, Իսմայիլի և Մելիասի դեպքը. սրանք Լևոն VI կայսրից պահանջել ու նրանից ստացել էին Լիկանդոսի շրջանում իրենց գրավելիք տիրույթների [ճանաչման] խրիսովուլները[2]:

[1] Ասողիկ, Գ, 27, էջ 251:

[2] Մելիասի խրիսովուլը իր հետքն է թողել ակրիտական դյուցազներգության մեջ: «Դիգենիս Ակրիտաս» վիպերգում (Trépizonde, v. 1540 sqq.) Ռոմանոս Լեկապենոսը հերոսին պարգևում է իր նախնուց քռնագրավված ունեցվածքի կրկնակին, այդ բանը վավերացնելով ոսկե բուլլայով: Պարոն Ա. Գրեգուարը Լեկապենոսի այդ պարգևի մեջ ճանաչում է Մելիասի խրիսովուլը և նույնիսկ Դիգենիսին նույնացրել է Մելիասի հետ («Revue des Etudes grécques», t. XLVII, 1933, p. 63 sqq.): *Բյուզանդական դյուցազներգության քիչ թե շատ երևակայական հերոսների* շարքում հայ Մելիասը ներկայանում է որպես միակ պատմական անձնավորությունը և որպես անհերքելի ակրիտական հերոս: Նա ակրիտ է որպես Լիկանդոսի՝ ակրիտական բանակաթեմի տեր և միևնույն ժամանակ՝ երկածին էր որպես բյուզանդահայ: Պարոն Ա. Գրեգուարը շատ լավ է գիտակցել այդ անձնավորության կարևորությունն առանց, այնուամենայնիվ, նրան արժանին մատուցելու (5):



Իբերիայի կյուրոպաղատն իր իրավունքն է բանեցրել Փասիանե [երկրամասի] և Ավնիկ ամրոցի նկատմամբ հավակնելով, որ ինքը դրանց տերն էր, քանի որ ուներ խրիսովուլներ, սակայն ստուգումից հետո այդ հայտարարությունը հերքվել էր[1]: Լևոն VI-ը Տարոնի իշխանին էր տվել «բարբարոսի տունը» Կոստանդնուպոլսում՝ χρυσοβουλλίου χωρίς «առանց ոսկյա բուլլայի», որի հետևանքով Ռոմանոս Լեկապենոսը նրա ժառանգներին զրկել էր դրանից[2]:

Խրիսովուլը, որի մասին խոսում է Հովհաննես Չմշկիկը, ուներ, ըստ երևույթին, նույն նշանակությունը և, հետևաբար, Մատթեոս Ուռհայեցու աղավաղված հատվածը պետք է ուղղվի դրան համապատասխան:

[1] Const. Porph., De adm., p. 202.

[2] Ibid., p. 185 sqq.

## ԴԱՎԻԹ ԿՅՈՒՐՈՊԱՂԱՏ
### († 31-ը մարտի 1000 թ.)
### [1. Դավիթ կյուրոպաղատի տոհմաբանությունը]

Կյուրոպաղատի տիտղոսը, որը Լևոն V Հայկազն կայսրը շնորհել էր Կղարջքի իշխան Աշոտ Բագրատունուն, ի սկզբանե, որոշակի առումով, դարձել էր ժառանգական: Աշոտը, Աշոտ [Կույր] պատրիկի († 761) որդի Վասակի թոռն էր: 775 թ. Հայաստանում բռնկված ապստամբության անհաջողությունից հետո Վասակը պատսպարվել է Տայքում և դարձել Բագրատունիների վրացական ճյուղի նախահայրը:

Աշոտ կյուրոպաղատն ունեցել է երկու որդի՝ Բագրատը և Ատրներսեհը: Բագրատը ժառանգել է կյուրոպաղատի տիտղոսը, որն այնուհետև անցել է նրա հետնորդներին: Ատրներսեհը պահպանել է ազգային մամփալ(իս) տիտղոսը, որը հատուկ է վրացական ավագ ֆեոդալներին: Դավիթ կյուրոպաղատը, որին վերաբերում է խոսքը, սերում էր կյուրոպաղատների տոհմից, այն է՝ պատկանում էր Բագրատ կյուրոպաղատի ընտանիքին: Վրացական և հայկական սկզբնաղբյուրներն այս հարցում համերաշխ են:

Հանգուցյալ Յո. Մարկվարտը, հենվելով Կոստանդին Ծիրանածինի վկայության վրա, հակված է եղել ապացուցելու, որ Դավիթ կյուրոպաղատը սերվում էր մամփալների ճյուղից, այսինքն՝ Ատրներսեհի տնից[1]: Այդուհանդերձ, այն երկու գլուխների մանրազնին քննությունը, որոնք կայսր հեղինակը նվիրել է վրաց Բագրատունիներին, որևէ բան դրանցում չի բացահայտում, որը, ի հեճուկս ազգային ավանդության, կարող էր ապացուցել Մարկվարտի տեսակետը: Ստորև ներկայացնում ենք Դավիթ կյուրոպաղատի ավանդական տոհմաբանությունը:

[1] [Յո. Մարկվարտ, Վրական Բագրատունյաց ծագումը, Վիեննա, 1913]:



### ԿՅՈՒՐՈՊԱՂԱՏՆԵՐԻ ՃՅՈՒՂԸ[1]




### ՍԱՄՓԱԼՆԵՐԻ ՃՅՈՒՂԸ[2]




[1] «Histoire de la Géorgie depuis l'antiquité jusqu'au XIXᵉ siècle». Traduite du géorgien par M.Brosset, 1ʳᵉ partie, S.-Pétersbourg, 1849, p. 280, 284 (այսուհետև՝ M. Brosset):
[2] Ibid., p. 271-272, 283-284.

Ինչպես տեսնում ենք, Դավիթ կյուրոպաղատն Ատրներսեհ թագավորի չորս որդիներից մեկի՝ Սմբատի թոռն է: Մարկվարտը գտնում է, որ այս չորս եղբայրները ոչ թե Ատրներսեհ թագավորի († 923) որդիներն են, այլ մեկ ուրիշ Ատրներսեհի († 945), որը հետագայում դարձել է վանական Վասիլ անունով: Այսպիսով, ազգային ավանդույթը կարող էր մամփալյան տոհմի Ատրներսեհին շփոթել թագավոր և կյուրոպաղատ Ատրներսեհի հետ: Նա կարծում է, որ Կոստանդին Ծիրանածինի մոտ գտել է իր տեսակետի հավաստումը: «*De administrando Imperio*» [գրվածքի] 46-րդ գլխում է, որ կայսր հեղինակը, քննարկելով Արտանուջի[1] հարցը, որոշ արժեքավոր տեղեկություններ է հաղորդում իբերական իշխանների մասին:

Արտանուջ քաղաքը Կղարջք կոչվող գավառի՝ վրաց Բագրատունիների օրրանի, վարչական կենտրոնն էր: Այստեղից նրանք առաջ են ընթացել դեպի հյուսիս և գրավել Ացարան՝ ժամանակակից Աջարիան, որը գտնվում է [Ճորոխի]՝ ճախկին Ակամսիսի, վտակի վրա: Այնուհետև՝ նրանք տարածվել են դեպի հարավ ու դարձել Տայքի և անգամ Բասենի տերն ու տնօրենները:

Բագրատունիների առաջընթացը դեպի Սև ծով բավական անհանգստացնող փաստ էր բյուզանդական իշխանությունների համար, որոնց ավանդական քաղաքականությունը միտում ուներ ապահովելու կայսրության գերիշխանությունը ծովի ամբողջ ավազանում կամ, համենայն դեպս, այն պահպանելու իր ազդեցության ոլորտում: Ուստի, Գուրգեն իշխանը († 941), որը X դ. առաջին կեսին իշխում էր Աջարիայում, մեծարվել է մագիստրոսի տիտղոսով և արժանացել նաև այլ առանձնաշնորհումների, որպեսզի, անկասկած, կայսրության հետ իրեն ավելի կապված զգա:

Արտանուջը, որը գրեթե անառիկ ամրոց էր, այս դարաշրջանում միջազգային առևտրի խիստ կարևոր հանգույց էր, որը հրապուրում էր Տրապիզոնի, Իբերիայի, Աբազգիայի, ինչպես նաև Հայաստանի ու Սիրիայի առևտրականներին: Միաժամանակ, Արտանուջում իբրև հույժ կարևորություն ունեցող ռազմավարական կետում, գտնվում էր Իբերիայի, Աբազգիայի և Միսխիոնի բանալին: Կայսրությունը փափագում էր տիրել այդ ամրոցին և հետամուտ էր այն ձեռք բերելու հնարավորությանը:

Արտանուջի պատմությունն ուրվագծելու համար Կոստանդին Ծիրանածինը թվարկում է այն իշխաններին, որոնք IX դ. վերջերից մինչև իր ժամանակները հաջորդաբար այն իրենց տիրապետության ներքո են ունեցել:

Արտանուջի առաջին տեր ու տնօրենը Սմբատն էր, որին հեղինակը ներկայացնում է իբրև Մեծ: Նա ուներ երկու որդի՝ Բագրատը (Պանկրատիոսը) և Դավիթը: Բագրատը ժառանգել է Արտանուջը, իսկ Դավիթը նրա տիրույթների մյուս մասը: Բագրատն Արտանուջը թողել է Գուրգենին (Կուրկենիոսին)՝ իր երեք որդիներից (Ատրներսեհ, Գուրգեն և Աշոտ, որի մականունը Կիսկաս էր) մեկին: Գուրգենից Արտանուջն անցել է նրա եղբորը՝ Աշոտ Կիսկասին, իսկ այնուհետև՝ վերջինիս փեսային, որի անունը ևս Գուրգեն էր և որը հեղինակի օրոք մագիստրոս էր: Գուրգենի մահից հետո մի քանի իշխաններ, ներառյալ Աշոտը, որը հեղինակի ժամանակաշրջանում կյուրոպաղատ էր, պայմանավորվածություն են ձեռք բերել քաղաքը Սմբատի որդի Դավթի որդի Սմբատին զիջելու շուրջ: Այս իշխանների տոհմաբանությունը ներկայանում է հետևյալ կերպ:




Այս տոհմաբանությունը կատարելապես համընկնում է այն տոհմաբանությանը, որը մենք անվանեցինք մամփալների ճյուղ: Քաղաքի վերջին տիրակալ Սմբատը՝ Դավթի որդին է: Սակայն ո՞վ էր կյուրոպաղատի տիտղոս կրող Աշոտը, նա, որը միջամտել էր բանավեճերին՝ դրանք Սմբատի օգտին վճռելու համար: Ակնհայտորեն, Սմբատի ազգականը: Մեր հեղինակը հայտարարում է, որ Սմբատի հայր Դավթի մայրը և Աշոտ կյուրոպաղատի հայր Ատրներսեհ կյուրոպաղատի մայրը՝ երկու եղբայրների դուստրեր էին, այսպիսով՝ հարազատ զարմուհիներ. *τοῦ Δαβὶδ ἡ μήτηρ καὶ τοῦ ᾿Αδρανασὲ τοῦ κουροπαλάτου, τοῦ πατρὸς τοῦ ἀρτίως ᾿Ασωτίου τοῦ*

[1] Կոստանդին Ծիրանածինն այն անվանում է ᾿Αδρανούτζη և τὸ ᾿Αδρανούτζι(ν). վրացական տերմինն է «Artanouj», հայկականը՝ «Artanouč», թուրքականը՝ «Ardanouj»: Նախընտրելի է «Artanouj» ձևը:

*κουροπαλάτου, ὑπῆρχον δύο ἀδελφῶν παιδία, ἤγουν ἐξαδέλφαι*[1]: Այլ կերպ ասած, Սմբատի տատը և Աշոտի տատը հարազատ զարմուհիներ էին: Հարցն այն է, թե ո՞վ էր Աշոտ կյուրոպաղատի հայր Ատրներսեհ կյուրոպաղատը: Մարկվարտը սխալմամբ նրան նույնացնում է *Ἀδρανασέρ*-ի հետ, որը տոհմաբանության մեջ մատնանշվում է իբրև Դավթի զարմիկ: Կոստանդին Ծիրանածինը հստակորեն զանազանում է այս երկու անձանց. մեկն անվանվում է *Ἀδρανασέρ*, մյուսը՝ *Ἀδρανασέ*. վերջինս կյուրոպաղատն է, մինչդեռ առաջինը կյուրոպաղատ չի եղել: Եթե խոսքը վերաբերեր մեկ և միևնույն անձնավորությանը, հեղինակի համար ավելի դյուրին կլիներ ասել, որ Դավթի զարմիկը նա է եղել՝ առանց նեղություն կրելու փնտրել ազգակցություն մայրական կողմից: Թեև այդ ազգակցությունն ինքնին չէր կարող ունենալ մեծ հավանականություն, քանզի միավորում է և՛ հորը, և՛ որդուն երկու եղբայրների դուստրերի հետ: Հարկ է «Վրաց ժամանակագրության» հետ մեկտեղ ընդունել, որ Ատրներսեհ կյուրոպաղատը ոչ այլ ոք է, եթե ոչ կյուրոպաղատների ճյուղից սերված նույնանուն իշխանը, որն ընդունել էր թագավորի տիտղոս, սակայն բյուզանդացիների համար շարունակել էր մնալ կյուրոպաղատ: Այդ նա է, որ [Ռոմանոս] Լեկապենոսի օրոք, 922 թ., այցելել է մայրաքաղաք: Տարոնի իշխաններին վերաբերող նախորդ գլուխներից մեկում խոսելով նրա մասին, մեր հեղինակը ենթադրում է, որ նա արդեն հայտնի էր, առանց դա ճշգրտելու կարիքն ունենալու: Ի դեպ, այս Ատրներսեհի ինքնությունը բացահայտվում է հետևյալ պատումով: Կայսր Ռոմանոս Լեկապենոսը հանձնարարել էր նավատորմիղի դրունգար պատրիկ Կոստանդինին, որն այդ ժամանակաշրջանում միայն պրոտոսպաթար ու մանգլավիտ էր՝ տանելու *ἱμάτιον μαγιστράτου πρὸς τὸ ποιῆσαι τὸν Κουρκένιον τὸν Ἴβηρα μάγιστρον* [«մագիստրոսության զգեստը՝ Գուրգեն Իբերացուն մագիստրոս ճանաչելու համար»]:

Ճանապարհին, Իբերիայից եկող Ագապիոս վանականից, Կոստանդը տեղեկանում է, որ *ὁ πατρίκιος Ἀσώτιος, ὁ καὶ Κισκάσης καλούμενος* [«Աշոտ պատրիկը, որը նաև Կիսկաս է կոչվում»] պատրաստ է կայսրին հանձնելու Արտանուջ ամրոցը, որպեսզի այն չթողնի իր փեսա Գուրգենին, որի հետ հաշտ հարաբերությունների մեջ չէր: Կայսրը, որին տեղեկացրել էին Ագապիոսի առաքելության մասին, հրաման է տալիս Կոստանդինին՝ ամրոցը ձեռք բերելու համար շտապփույթ գնալ պատրիկ Աշոտ Կիսկասի մոտ:

Ժամանելով Խաղտիք, Կոստանդը վերցնում է 300 զինված մարդուց բաղկացած ուժեղ պահակախումբ և մտնում Իբերիա: *Ὁ μακάριος Δαβίδ,*

[1] Constantinus Porphyrogenitus, De administrando Imperio, Recognovit Immanuel Bekkerus., Bonnae, 1840, p. 207.



*ὁ ἀδελφὸς Ἀσωτίου, τοῦ ἀρτίως κουροπαλάτου* [«երանելի Դավիթը՝ վերջերս կյուրոպաղատ <դարձած> Աշոտի եղբայրը»] կանգնեցնում է կայսեր բանագնացին: Նրա շքախումբը խիստ բազմանդամ էր, կասկած հարուցելու համար, թե արդյո՞ք նա Գուրգենին՝ Ատրներսեհ կյուրոպաղատի մահից հետո կյուրոպաղատի տիտղոս շնորհելու առիթով էր եկել: Ատրներսեհ կյուրոպաղատի որդիները նախանձում էին իրենց հորեղբոր որդուն՝ *οἱ τοῦ Ἀδρανασὲ τοῦ κουροπαλάτου παῖδες, τοῦ πατρὸς αὐτῶν τελευτήσαντος, φιλονεικίας τινὰς ἔσχον μετὰ τοῦ ἐξαδέλφου αὐτῶν* [«Ատրներսեհ կյուրոպաղատի զավակները հոր վախճանից հետո սկսեցին գժտվել իրենց հորեղբոր որդու հետ»]: Նրանք լավ գիտեին, որ Գուրգենը դիմել էր կայսրին, նրան հարուստ նվերներ ուղարկել՝ կյուրոպաղատի կամ մագիստրոսի տիտղոս ստանալու համար: Ուստի, չորս եղբայրները՝ *οἱ τέσσαρες ἀδελφοὶ, ἤγουν τοῦ Ἀδρανασὲ τοῦ κουροπαλάτου παῖδες* մտահոգված էին, տեսնելով միևնույն նպատակով ժամանած Կոստանդինին: Սակայն բանագնաց Կոստանդը նրանց բացատրել է, որ ինքն այդպիսի շքախմբով է ժամանել միայն Գուրգենին մագիստրոսի տիտղոս շնորհելու համար, և որ ինքն այնուհետև պետք է գնա Դավիթ մագիստրոսի մոտ, *εἰς τὸν Δαβὶδ τὸν μάγιστρον*, քանի որ նրա համար ևս կայսերական ուղերձ ուներ. *καὶ πρὸς τὸν Δαβὶδ κέλευσιν ἀπὸ τοῦ βασιλέως καὶ ξένια* [«նաև Դավթին <ուղղված> թագավորի հրամանը և նվերները»]: Կոստանդը հիրավի մեկնում է Գուրգենի երկրամաս և նրան շնորհում մագիստրոսի տիտղոս. այնուհետև՝ նա գնում է Արտանուջում գտնվող Աշոտ Կիսկասի ամրոցը և նրան հանձնում կայսերական ուղերձը, *καὶ δέδωκεν αὐτῷ τὴν πρὸς αὐτὸν τοῦ βασιλέως κέλευσιν*, որն Արտանուջի հարցին չէր վերաբերում, բայց այլ գործ էր: Այդուհանդերձ, բանագնացը չի մոռանում վերհանել Արտանուջի հարցը: Պատրիկ Աշոտ Կիսկասը պատրաստակամություն է հայտնում իր ամրոցը նրան հանձնելու համար: Կոստանդն Արտանուջի պարսպի վրա բարձրացնում է կայսերական դրոշը՝ ծանուցելու համար, որ բերդամրոցն այդուհետև պատկանում է կայսրությանը: Ինչ վերաբերում է Դավիթ Մեծին, ավելացնում է հեղինակը, նա չի համաձայնել իր երկրամասը կայսրին հանձնելու, թեպետ այն գտնվում էր Ակամփսի տուրմայի և Մուրգուլի [գետի] հարևանությամբ. *ὁ οὖν Δαβὶδ, ὁ μέγας, τὴν ἑαυτοῦ χώραν οὐκ ἐδίδουν τὸν βασιλέα, κἂν τάχα συνορῇ τὴν τούρμαν τοῦ Ἀκαμψῆ καὶ τῇ Μουργούλῃ*: Հստակորեն տեսանելի է, որ երեք իշխանների՝ Գուրգենի, Աշոտ Կիսկասի և Դավիթ Մեծի համար Կոստանդն ունեցել է երեք հանձնարարություն: Դա նույն Դավթին է, որին Կոստանդը պարտավոր էր այցելել Աշոտ Կիսկասից հետո և որն այնտեղ ներկայացվում է իբրև մագիստրոս, իսկ այստեղ՝ Մեծ: Այս Դավիթը մերժել է Կոստանդի խնդրանքը և

իր տիրույթը չի զիջել կայսրին: Այդ էր այն *κέλευσις*-ը, որ Կոստանդը բերել էր նրա համար:

Իր առաքելության արդյունքների մասին Կոստանդը պատրաստել է երկու զեկուցագիր և դրանք հղել կայսրին: Դրանցից մեկում նա ասում է, որ Գուրգենը երախտագիտությամբ է ընդունել այն մեծարանքը, որին արժանացել էր, մյուսում՝ որ Կիսկասն Արտանուջը հանձնել է [կայսրությանը]: Նա նաև հայտնել է, որ նրա ու նրա փեսա Գուրգենի միջև գոյություն ունի անհամաձայնություն, և Արտանուջի համար օգնական ուժեր է խնդրել, եթե հնարավոր է, սխոլերի դոմեստիկոսի հետ:

Իբերները՝ *ὅ τε μάγιστρος Κουρκένιος καὶ ὁ μάγιστρος Δαβὶδ, ὁ ἀδελφὸς τοῦ κουροπαλάτου ᾽Ασωτίου* [«և՛ Գուրգեն մագիստրոսը, և՛ Դավիթ մագիստրոսը՝ Աշոտ կյուրոպաղատի եղբայրը»] գրավոր բողոքներ են ուղարկել կայսրին՝ սարակինոսներին միանալու սպառնալիքներով հանդերձ, եթե կայսրը ջանար բռնազավթել իրենց երկիրը և հայտարարել են, որ պատրաստ են նրանց հետ կայսրության և Արտանուջի դեմ ուղղված համաձայնության գալու՝ վերջինս վերագրավելու համար: Կայսրը հարկադրված է եղել հրաժարվել իր հրամաններից և գրել իբերական իշխաններին, որ Կոստանդն իրավասու չի եղել անելու այն, ինչն արել է և որ նրա արարքն անգզույշ նախաձեռնության հետևանք է: Անձամբ Կոստանդը կայսերական հրաման է ստացել իբերների երկիրը թողնելու և իր հետ *᾽Ασώτιον, τὸν υἱὸν τοῦ τελευτηκότος ᾽Αδρανασὲ, τοῦ κουροπαλάτου* [«վախճանված Ատրներսեհ կյուրոպաղատի որդուն՝ Աշոտին»] մայրաքաղաք տանելու մասին՝ նրան հորենական կյուրոպաղատի տիտղոս շնորհելու համար:

Կոստանդն Արտանուջը վերադարձրել է Աշոտ Կիսկասին և գնացել «Դավիթ Մեծի մոտ [և նրան է հանձնել իր մոտ եղած հրամանը]» *πρὸς τὸν Δαβὶδ τὸν μέγαν, καὶ ἐπιδέδωκεν αὐτῷ ἥνπερ εἶχεν πρὸς αὐτὸν κέλευσιν:* Այստեղից նա շրջվել և մտել է Իբերիա ու այնտեղ՝ նույն վայրում միավորված տեսել Գուրգեն մագիստրոսին և Դավիթ մագիստրոսին՝ Աշոտ կյուրոպաղատի եղբորը: Հարկ է այս Դավիթ մագիստրոսին չշփոթել վերոհիշյալ Դավիթ Մեծի հետ: Վերջիններս Կոստանդի վրա նախատինքներ են տեղացել՝ նրա վարքագծի համար: Նա նրանց անհրաժեշտ բացատրություններ է տվել և հեռացել՝ տանելով իր հետ Ատրներսեհ կյուրոպաղատի որդի Աշոտին:

Մենք արդեն վերը տեսանք, որ հետագայում Գուրգեն մագիստրոսն Աշոտ Կիսկասից խլել է Արտանուջի բերդամրոցը և փոխարենը նրան տվել Տյուրոկաստրոն ամրոցը՝ Աջարիայի հովտի հետ, որը Κώλωρις-ի մոտակայքում սահմանակից է բյուզանդական տարածքներին: Արազգիայի թագավոր Գեորգին, որի քույրը Աշոտ Կիսկասի կինն էր, փորձել է պաշտպանել իր աներորդու իրավունքը, բայց նրա ջանքերն ապարդյուն են անցել: Գուրգենի մահից հետո Գեորգի թագավորը, Աշոտ կյուրոպաղատը և նրա եղբայր Բագրատ մագիստրոսը պայքարի մեջ են մտել նույն բերդամրոցի պատճառով և համաձայնության հանգել այն Դավթի որդի Սմբատին զիջելու շուրջ:

Այնուհանդերձ, այս պատումը թույլատրում է ճշգրտել Ատրներսեհ կյուրոպաղատի ինքնությունը: Համաձայնելով «Վրաց ժամանակագրության» հետ, մեր հեղինակն ընդունում է, որ նա ունեցել է չորս որդի: Երեքը հիշատակվում են իրենց անուններով՝ Դավիթ, Աշոտ և Բագրատ: Չորրորդի՝ Սմբատի անունը մեզ հայտնի է նույն երկասիրությունից: Նրանց հայրը՝ Ատրներսեհ կյուրոպաղատն արդեն մահացել էր, երբ Լեկապենոսի բանագնացը՝ պրոտոսպաթար Կոստանդը, ժամանել է Իբերիա: Նրա ժամանման տարեթիվը ճշգրտված չէ, բայց, համենայն դեպս, այն նախորդում է Լեկապենոսի գահընկեց լինելուն՝ 945 թ. դեկտեմբերին, Գուրգենի մահվանը՝ 941 թ., Կիսկասի մահվանը՝ 939 թ. և Դավթի մահվանը՝ 937 թ., այն իշխանների, որոնց հետ Կոստանդը գործ է ունեցել: Մամփալների Ատրներսեհը հազել է վանական սքեմ և մահացել 945 թվականին: Այսպիսով, նա դեռևս կենդանի էր Կոստանդի ժամանման պահին և, հետևաբար, ոչ մի կերպ չի կարող լինել իր հայրը, որը մահացել է մինչ 937 թվականը: Մյուս Ատրներսեհը, որը կյուրոպաղատ էր և թագավոր, մահացել է 923 թ. և այդ նրան է, որ «Վրաց ժամանակագրությունը» ներկայացնում է իբրև չորս եղբայրների հայր: Դրա նկատմամբ կասկածելու պատճառներ չկան: Իր վարկածը պաշտպանելու համար Մարկվարտը հարկադրված է եղել կասկածի ենթարկելու Ատրներսեհ Վանականի մահվան տարեթիվը: Թագավոր Ատրներսեհը, ըստ նրա, ուներ միայն մեկ որդի՝ Դավիթ, և, հետևաբար, չորս եղբայրները կարող են լինել ոչ թե նրա, այլ Ատրներսեհ Վանականի որդիները: Այդուհանդերձ, Հովհաննես [Դրասխանակերտցի] Կաթողիկոսը Ատրներսեհ թագավորին է վերագրում մեկից ավելի որդի, քանզի նրա մոտ խոսքը վերաբերում է Ատրներսեհ թագավորի ավագ որդուն («զերէց որդի»)[1]: Ըստ Վարդանի, Գուրգեն թագավորը († 992) Ատրներսեհ թագավորի որդի Դավթի եղբոր որդին էր (իմա՝ թոռը)[2]: Նա ընդունում է, այսպիսով, որ Ատրներսեհ թագավորը Դավթից բացի ունեցել է այլ որդիներ:

Գուրգեն մագիստրոսը՝ Կիսկասի փեսան, Կոստանդին Ծիրանածինը անվանում է չորս եղբայրների *ἐξάδελφος*. Իրականում, Գուրգենը նրանց

[1] Հովհաննէս Կաթողիկոս, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 208:
[2] Վարդան, Հաւաքումն պատմութեան, Վենետիկ, 1862, էջ 82:

զարմիկն էր մոր կողմից, որը, համաձայն Հովհաննես Կաթողիկոսի աներկբայելի վկայության, նրանց հոր՝ Ատրներսեհ կյուրոպաղատի և թագավորի քույրն էր[1]: Գուրգենը «քեռորդին» է՝ Ատրներսեհի քրոջ որդին: Եթե չորս եղբայրները Ատրներսեհ Վանականի որդիներն էին, նրանց ազգակցությունը Գուրգենի հետ կարող է հանգել մեկ եղբոր ծոռների ազգակցությանը՝ մեկ այլ եղբոր թոռների հետ: Նման ազգակցությունն այդուհանդերձ *ἐξάδελφος* ազգակցություն չէ:

Բանազնաց Կոստանդը, ի դեպ, Դավթի համար ստացել էր մի հանձնարարություն: Ո՞վ էր այս Դավիթը: Բրոսսեն և Մարկվարտը կարծել են, թե խոսքը Դավիթ մագիստրոսի՝ Աշոտ կյուրոպաղատի եղբոր մասին է: Ինքնության նման նույնացումը որևէ ձևով չի արդարացվում և այն իրականության հետ որևէ աղերս չունի: Մեր սկզբնաղբյուրը նրանց հստակորեն զանազանում է. Դավիթ մագիստրոսը միշտ նշվում է իբրև կյուրոպաղատի եղբայր, այնժամ, երբ մյուս Դավիթը երկու անգամ անվանվում է Դավիթ Մեծ և մեկ անգամ՝ Դավիթ *τὸν μάγιστρον*, մի բան, որը կարող է լինել *τὸν [μέγιστον]*-ի սխալ տարընթերցումը[2]: Դավիթ Մեծն Արտանուջն ստացած այս Սմբատի հայրն է և Աշոտ Կիսկասի հորեղբայրը: Բյուզանդական իշխանությունները հետամուտ էին ոչ միայն Արտանուջի, այլև Դավթի բաժնի ձեռքբերման Արտանուջի տարածաշրջանում, այն է՝ Կղարջքում: Մենք տեսանք, որ Սմբատ մամփալն իր հողերը բաժանել էր երկու որդիների միջև, որոնցից Բագրատը ստացել է Արտանուջը, իսկ Դավթին [«այլ երկիր վիճակվեց»]՝ *ἔλαχεν ἕτερα χώρα*, այն է՝ միևնույն Կղարջքի տարածաշրջանի մեկ այլ մասը, ուր գտնվում էր Արտանուջը: Կոստանդը հետամուտ էր ոչ միայն Կիսկասի Արտանուջին, այլև հավասարապես Դավթի տիրույթին, որը սահմանակից էր Ակամսիսի տուրմային և Մուրգուլի [գետին]: Ժամանակակից Մուրգուլ-սու գետը թույլատրում է այս տուրման տեղադրել Կուրի ձախ ափին՝ Կղարջքի հյուսիսային մասի հանդիպակաց կողմում: Այս տարածաշրջանի հարավային կողմն Արտանուջի հետ պատկանում էր մեկ եղբորը, իսկ նույն տարածաշրջանի հյուսիսային կողմը մյուսին՝ Դավթին: Իրականում, երբ կայսրի հրամանով Կոստանդն Արտանուջը հանձնել է նրա տիրոջը՝ Կիսկասին, գնացել է Դավիթ Մեծի մոտ՝ կայսերական հանձնարարականը նրան փոխանցելու համար: Այնուհետև, նա «վերադարձել [և մտել է Իբերիա»] *ὑπέστρεψε, καὶ εἰσῆλθεν εἰς Ἰβηρίαν*, ուր գտել է Գուրգենին և Դավիթ մագիստրոսին միասին: Այդ նշանակում է, որ Կոստանդն Արտանուջից մեկնել էր դեպի հյուսիս՝ Դավթի տիրույթը և այնտեղից բռնել վերադարձի ճանապարհը՝ Իբերիա մտնելու համար, մի անվանում, որի ներքո նկատի ունեն կյուրոպաղատի տիրույթը Տայքում: Դավիթ Մեծ ավագը հրաժարվել էր զիջել իր հողերը. *τὴν ἑαυτοῦ χώραν οὐκ ἐδίδου*. Գուրգեն մագիստրոսը և Դավիթ մագիստրոսն ընդդիմացել են Արտանուջի նկատմամբ կայսեր ունեցած հավակնությանը: Գուրգենը պատժել է Աշոտ Կիսկասին Արտանուջի հարցում նրա ուխտադրուժ քաղաքականության համար՝ նրանից հետ վերցնելով այդ նույն ամրոցը: Նրա մահից հետո, 941 թ., Գեորգի Աբազգացին և Բագրատ մագիստրոսը համաձայնության են հանգել քաղաքը Սմբատին զիջելու հարցում: Ո՛չ Դավիթ Մեծը, որն այս Սմբատի հայրն է, և ո՛չ Դավիթ մագիստրոսը՝ կյուրոպաղատի որդին, այլևս ի հայտ չեն գալիս հարցի վերջնական կարգավորման ժամանակ, ինչից հարկ է եզրակացնել, որ նրանք վախճանվել էին: Առաջինը մահացել է 943 թ., իսկ երկրորդը՝ 937 թ., և քանի որ Բագրատի մահը վրա է հասել 945 թ., հարկ է Արտանուջը՝ Սմբատին զիջելու տարեթիվը սահմանել մինչ 945 թ. և 943 թ. հետո, ասենք՝ 944 թ., այսպիսով, դեռևս Լեկապենոս կայսեր կենդանության օրոք:

Աշոտ կյուրոպաղատն իր եղբայրների հետ դեռևս հիշատակվում է Կոստանդին Ծիրանածինի միևնույն աշխատության մեկ այլ գլխում, կյուրոպաղատի տիրույթների և կայսրության միջև սահմանի շուրջ վիճաբանության հարցում: Լևոն VI [Իմաստասերի] տիրապետությունից ի վեր կայսրությունը ջանում էր ձեռք բերել *Κετζέον* բերդամրոցը, կարևոր մի կայան, որը թույլ կտար խոչընդոտել Թեոդոսուպոլսի մատակարարումը և հարկադրել քաղաքի արաբական կայազորին անձնատուր լինել սովի սպառնալիքով: Այդուհանդերձ, նույնիսկ Թեոդոսուպոլսի գրավումից հետո այն կրկին իր անօրինության տակ վերցնելու պայմանով, կյուրոպաղատը համառում էր վերոհիշյալ ամրոցը զիջելու շուրջ: Այնուամենայնիվ, ամեն անգամ, երբ կայսրությունը հակառակորդից զավթում էր որևէ ամրոց, իբերները միջամտում էին դրանք պահանջելու համար: Նրանք հավակնում էին ամրագրելու իրենց իրավունքը Լեկապենոսի և անձամբ Կոստանդին Ծիրանածինի կողմից տրված «ոսկե կնիքներով» [խրիսովուլներով]: Կյուրոպաղատի ազատներից մեկը՝ *Ζουρβανέλης*-ը, «ոսկե կնիքը» ներկայացրել է Կոստանդին կայսրին: Լեկապենոսի «ոսկե կնիքը» կազմված էր այնպես, որ կյուրոպաղատը հավատարմության երդում էր տալիս կայսրությանը և նրա շահերին՝ Արևելքը կայսեր տիրապետության տակ ներգրավելու ուղղությամբ գործելու խոստումով հանդերձ: Ռոմանոս Լեկապենոսը փոխարենը պարտավորվում էր մեկընդմիշտ վավերացնել կյուրոպաղատի տիտղոսը և իշխանությունը նրա ու նրա հետնորդների համար. *ὑπεσχέθη ... ἵνα ... διαμείνῃ ἀμετασάλευτος καὶ αὐτὸς καὶ οἱ τοῦ γένους αὐτοῦ ἐν τῇ τούτου*

[1] Հովհաննէս Կաթողիկոս, էջ 310: Այս Գուրգենին չպետք է շփոթել այն Գուրգենի հետ, որն Աշոտ թագավորի եղբոր՝ Աբասի (1) քրոջ ամուսինն էր (նույն տեղում, էջ 145):
[2] De administrando Imperio, p. 210, 211, 213.

*ἀρχῇ καὶ ἐξουσίᾳ:* Կյուրոպաղատի տիրույթները կմնան անձեռնմխելի, իսկ այն, ինչը նա կարող է զավթել թշնամուց՝ կամ առանձին, կամ կայսերական զորքերի հետ, կամ եթե գրավի ու ավերի Թեոդոսուպոլիսը, կպատկանի կայսրությանը:

Կոստանդինի «ոսկե կնիքն» ավելի բարեհաճ էր կյուրոպաղատի համար: Դա կյուրոպաղատին և նրա զարմիկ (*ἀνεψιός*) Ատրներսեհին թույլատրում էր իբրև լիիրավ սեփականություն օգտագործել այն ամենը, ինչը նա կարող էր արաբներից կորզել իր սեփական ուժերով: Այդուհանդերձ, իբերներին երբևէ չի հաջողվել գրավել Թեոդոսուպոլիս քաղաքը, ոչ էլ Բասենում գտնվող Ավնիկ և Մաստատոն բերդամրոցները: Նրանք չէին ցանկանում վտանգի ենթարկել իրենց բարեկամական հարաբերությունները անհավատների հետ: Դրանք բյուզանդական ուժերն էին, որոնք զորավար Հովհաննես Արաքոնիտեսի կամ պատրիկ Թեոփիլոս Կուրկուասի հրամանատարությամբ ասպատակել են Թեոդոսուպոլսի տարածաշրջանը և հարկադրել Ավնիկի ամիրային ճանաչելու կայսրության գերիշխանությունը: Ինչ վերաբերում է Մաստատոնին, այն գրավվել է Հովհաննես Կուրկուաս մագիստրոսի կողմից Թեոդոսուպոլսի պաշարման ժամանակ և դրվել պրոտոսպաթար Պետրոնաս Վոյիլասի հրամանատարության ներքո: Սակայն, քանի որ Բագրատ մագիստրոսը սատարել էր բյուզանդական զորավարին Թեոդոսուպոլսի համար մղվող պայքարում, նա իրեն իրավասու էր համարում պահանջելու Մաստատոն ամրոցը: Բայց ստանալուց հետո նա այն հանձնել է Թեոդոսուպոլսի ամիրային: Երբ Թեոդոսուպոլիս քաղաքը բյուզանդացիների կողմից վերագրավվել է, իբերները կրկին կյանքի են կոչել իրենց հավակնությունները Մաստատոնի նկատմամբ: Կայսրը դրանք հավանության չի արժանացրել, բայց, հաշվի առնելով կյուրոպաղատի հավատարմությունը, համաձայնել է, որ Բասենում իբրև սահման ծառայեն Արաքսը կամ Փասիսը, այնպես որ, դեպի Իվիրիա [Աղորի աշխարհ] ձգվող ձախ ափը պատկանի իբերներին, իսկ դեպի Թեոդոսուպոլիս ձգվող աջ ափը՝ կայսրությանը:

Հովհաննես Կուրկուասի ձեռնարկած՝ Թեոդոսուպոլսի պաշարման տարեթիվը հայտնի չէ, այն նախորդում է միևնույն քաղաքի գրավմանը Թեոփիլոս Կուրկուասի կողմից: Ասողիկը նշում է, որ սխոլերի դոմեստիկոս Չմշկիկը քաղաքը գրավել է հայոց թվարկության 398 թ. (949 թ.): Յահյան հավաստում է և ճշգրտում այդ տարեթիվը՝ մատնացույց անելով 949 թ. սեպտեմբեր ամիսը[1]: Ըստ Ասողիկի, «երիտասարդ Հովհաննեսը՝ Չմշկիկի

¹ Histoire de Yahya-ibn-Saïd d'Antioche, éd. et trad. en français par G.Kratchkovsky et A.Vasiliev. – "Patrologia Orientalis", t. XVIII, Paris, 1924, p. 768.



թոռը», այդ պատերազմում է նշանավոր դարձել[1], մի բան, որը հավաստում է, թե հայ պատմիչը դոմեստիկոս Չմշկիկ ասելով նկատի ունի ոչ թե Հովհաննես Կուրկուաս մագիստրոսին, այլ նրա եղբայր Թեոփիլոսին, որի թոռը հիրավի երիտասարդ Հովհաննեսն էր, այն է՝ ապագա կայսր Չմշկիկը: Նա միայն սխալվել է նրան վերագրելով դոմեստիկոսի տիտղոս, որը պատկանում էր Թեոփիլոսի եղբայր Հովհաննեսին:

Ասողիկը մեզ տեղեկացնում է, որ Համդանյանը [Սայֆ ալ-Դաուլան] հայոց 388 թ. (939-940 թթ.), հզոր բանակով մտել է Կոլոնիա և նահանջել: Հավանաբար այդ ներխուժմանը հակազդելու համար է, որ Հովհաննես Կուրկուասը հարձակման է անցել և հիջրայի 389 թ. (941 թ. սեպտեմբեր – 942 թ. սեպ[տեմբեր]), զավթել Ազզենը, Դարան, Մծբինն ու Մայաֆարկինը[2]: Յահյան նշում է հիջրայի 331 թ. (942 թ. սեպ[տեմբեր] – 943 թ. սեպ[տեմբեր])[3], որը նախընտրելի է, եթե հաշվի առնենք, որ 941 թ. Կուրկուասը գտնվում էր բալկանյան ռազմաճակատում, որտեղից 941 թ. սեպտեմբեր ամսին՝ XV ինդիկտիոնի, նա հետ է մղել ռուսներին: Ձեռնարկելով 942 թ. արշավանքն արաբների դեմ, Կուրկուասը մտել է Հայաստան և յոթ ամիս շարունակ պաշարել Թեոդոսուպոլիս քաղաքը՝ առանց ի վիճակի լինելու այն գրավել: Այդ ժամանակ է, որ նա գրավել է Մաստատոն բերդամրոցը և մեկնել Միջագետք: 943 թ. մայիսի 18-ին նա գտնվում էր Դարայում: Մաստատոնի զիջումը Բագրատ մագիստրոսին՝ ակնհայտորեն վերաբերում է 942 թվականին: 949 թ. Թեոդոսուպոլսի գրավման ժամանակ Բագրատն այլևս կենդանի չէր, քանի որ նրա մահը վրա էր հասել 945 թվականին: Նրա որդի Ատրներսեհը և Աշոտ կյուրոպաղատը պահանջել են Մաստատոն բերդամրոցը, որը Բագրատ մագիստրոսը հանձնել էր Թեոդոսուպոլսի ամիրային և որը Թեոփիլոս Կուրկուասը հենց նոր էր վերագրավել: Լեկապենոսի «ոսկե կնիքը» տրվել էր մինչ 942 թ., Կոստանդին Ծիրանածինինը՝ Բագրատի մահվան տարեթվից՝ 945 թ. հետո, մինչև 949 թվականը: Չորտուանելի առաքելությունը կայացել է 949 թ. և 952 թ. միջև, երբ Կոստանդինը գրել է իր աշխատությունը:

Աշոտ կյուրոպաղատը մահացել է 954 թվականին: Նրա հայր Ատրներսեհը մահացել էր 923 թվականին: Ըստ *«Վրաց ժամանակագրության»* Ատրներսեհին հաջորդել է նրա որդի Դավիթը, որը 937 թ. մահկանացուն կնքած մագիստրոսն է: Տարօրինակ է, որ կայսրը կյուրոպաղատի տիտղոսը

¹ [«Ուր բազում գործս արութեան ցուցեալ Կիւռ-Ժան թոռն Չմշկայ, ի մանկութեան տիս գոլով յայնժամ», տե՛ս Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Ս.Պետերբուրգ, 1885, էջ 179]:

² G. Weil, Geschichte des Chalifen. Nach Handschriftlichen, grosstentheils noch unbenutzen Quellen. Bd. II. Mannheim, 1846, S. 689.

³ Yahya, p. 730.

շնորհել է ոչ թե Դավթին, այլ Աշոտին: Կարելի է ենթադրել, որ Ատրներսեհի մահից հետո բյուզանդական իշխանությունները կյուրոպաղատությունը նրա հաջորդին չեն շնորհել այն դիմադրության պատճառով, որ նրա որդիները ցուցաբերել են կայսրին մինչև Կոստանդի առաքելության ավարտը: Դժբախտաբար, մեզ հայտնի չէ իբեր իշխանների մոտ Կոստանդի ժամանման տարեթիվը, որպեսզի կարողանանք ճշգրտել, թե ե՞րբ է Աշոտը նշանակվել կյուրոպաղատ: Թվում է, թե մինչ այդ Դավիթն իշխել է իբրև մագիստրոս, առանց հաստատվելու կյուրոպաղատի տիտղոսում: Մովսես Կաղանկատվացին մեզ տեղեկացնում է, որ «հույների Դավիթ մագիստրոսը» թագավորական թագ է ուղարկել Աղվանքի իշխան Հովհաննես-Սենեքերիմին[1]: Այս Դավիթը, որի ինքնությունը դեռևս չի պարզվել, հնարավոր է, որ լինի մեր Դավիթ մագիստրոսը: Հովհաննես-Սենեքերիմը Գրիգորի թոռն էր, որին իր հոր՝ Սահակ Սևադայի, հետ կուրացրել է Աշոտ [II Երկաթ] թագավորը մոտավորապես 918 թվականին[2]: Նրա հոր անունն էր Իշխանիկ: Նա ապրում էր միևնույն ժամանակաշրջանում ինչ Դավիթը, և մենք նրա մասին հիշատակության ենք հանդիպում դեռևս 958 թվականին[3]: Հայոց թագավոր Սմբատ [I]-ը († 913) Ատրներսեհ կյուրոպաղատին թագադրել է 899 թվականին: Վերջինս նույն բանն է արել Աշոտ Երկաթի՝ Սմբատի որդու և հաջորդի համար: Միևնույն եղանակով Դավիթ մագիստրոսը՝ Ատրներսեհի որդին, թագադրել է Աղվանքի իշխանին: Դա նշանակում է, որ Դավիթը ներկայանում է իբրև Տայքի տեր ու տնօրեն, Ատրներսեհի հաջորդ, կյուրոպաղատ և թագավոր: «Վրաց ժամանակագրությունը» նրան իրավամբ դասել է Տայքի կյուրոպաղատ-թագավորների շարքը:

Աշոտ կյուրոպաղատին հաջորդել է նրա չորրորդ եղբայրը՝ Սմբատը, որը իշխել է 954-958 թթ. և իշխանությունը թողել իր եղբայր Բագրատի որդի Ատրներսեհին: Այնուհետև իշխանությունն անցել է Սմբատի որդուն, որի անունը ևս Ատրներսեհ էր: Վերջինս մահացել է 983 թվականին՝ «թողնելով Դավիթ անունը կրող մի երիտասարդ որդու»[4]: Դա մեզ հետաքրքրող Դավիթ կյուրոպաղատն է: «Վրաց ժամանակագրությունը» կտրական է այս հարցում: Չնայած նրա պարբերական հավաստիացումներին[1], հարկ կա դրանում կասկածել: Հիրավի, եթե 983 թ. Ատրներսեհի մահվան պահին նրա որդի Դավիթը դեռևս երիտասարդ էր, ինչպե՞ս կարելի է բացատրել, որ Դավիթը ներկայանում է իբրև կյուրոպաղատ արդեն 978 թ. Վարդաս Սկլերոսի ապստամբության ժամանակ, այն է՝ իր հոր կենդանության օրոք: Այնուհետև՝ 983 թ. կարծեցյալ երիտասարդ Դավիթն իր մահվան պահին՝ 1000 թ., չէր կարող դիտվել իբրև «այր ծեր եւ անցեալ զաւուրբք», ինչպես այդ հավաստում է ժամանակակից պատմիչ Ասողիկը[2]:

Թվում է՝ տեղի է ունեցել շփոթմունք: Սմբատի հաջորդ Ատրներսեհ կյուրոպաղատն իր օրերի ավարտին է հասել 961 թ. մի վանքում, ուր նա վտարվել էր իր երկու որդիների՝ Բագրատի և Դավթի կողմից: Այս Բագրատը՝ էրիսթավների էրիսթավը, մահացել է 966 թ. և նրա եղբայր «Դավիթ կյուրոպաղատը **դարձել է Մեծ**», ինչպես նշում է «Վրաց ժամանակագրությունը»[3]:

Նշումն այն մասին, որ Դավիթը դարձել է Մեծ, ստիպում է կարծել, որ այդ նա է նշանավոր Դավիթը և ոչ թե Սմբատի թոռ Դավիթը:




էրիսթավների էրիսթավի տիտղոսի արժանացած Բագրատը մահացել է 966 թվականին: Նրա եղբայր Դավթի (որը դարձել է Մեծ) մահվան տարեթիվը նշված չէ, մի բան, որն արժանի է ուշադրության[4]: Թուրքիայի մոտ գտնվող Օշկի վանքում կա վրացերեն մի արձանագրություն, որը փորագրված է արտաքին դռան վերին մասում, որտեղ հիշատակված են Ատրներսեհ կյուրոպաղատը, էրիսթավների էրիսթավ Բագրատը և Դավիթ մագիստ-

[1] Մովսէս Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, գիրք Գ, գլուխ ԻԳ, Մոսկվա, 1860, էջ 273-274 [«Ի նոյն ամի և որ Յունացն էր մագիստրոս Դաւիթ կոչեցեալ անուն, թագ զարմանազան և ծիրանիս թագաւորական առաքէր ի պատիւ և ի գովեստ աստուածայաջող առնն այնորիկ»]:

[2] Տե՛ս N. Adontz, Ašot Erkat ou de fer, roi d'Arménie de 913 à 929, "Annuaire de l'institut de Philologie et d'Histoire Orientales", t. III, Bruxelles, 1935:

[3] Նրա մասին հիշատակություն կա Անանիա [Ա Մոկացի] կաթողիկոսի նամակներում, «Արարատ», 1897, մարտ, [տե՛ս «Տեառն Անանիայի Հայոց կաթողիկոսի յաղագս ապստամբութեան տանն Աղուանից որ ընդ ժամանակս լեալ իցէ ծնոնդադրութիւնն արտաքոյ Սուրբ Լուսաւորչի Աթոռոյն»]:

[4] M. Brosset, p. 285.

[1] M. Brosset, p. 297, 291.

[2] [Ասողիկ, էջ 270]:

[3] M. Brosset, p. 284-285.

[4] Չեռագրերից մեկի համաձայն Բագրատը մահացել է 969 թ., իսկ Դավիթը՝ 966 թ., տե՛ս M. Brosset, p. 285, ծանոթագրությունը:

րոսը[1]: Մենք կարծում ենք, որ ի դեմս նրանց խոսքը վերաբերում է Ատրներսեհ կյուրոպաղատին, որը թագավորել է 958-961 թթ. և նրա երկու որդիներին՝ Բագրատին և Դավթին: Բագրատն այստեղ կրում է այն տիտղոսը, որը նրան է վերագրում «Վրաց ժամանակագրությունը»: Այդ միակ Բագրատն է, որը հայտնի է իբրև էրիսթավների էրիսթավ տիտղոսակիր: Արձանագրությունը թվագրվում է, այսպիսով, 958 թ. մինչև 961 թվականը: Դավիթն այնժամ մագիստրոս էր: Կյուրոպաղատի տիտղոսը նրան է անցել իր հոր մահից հետո՝ 961 թվականին: Այդ նա է նշանավոր Դավիթ կյուրոպաղատը, որը կարող էր իշխել գրեթե 40 տարի՝ 961 թ. մինչև 1000 թվականը: Այս պարագային նա կարող էր 978 թ. լինել բավական ազդեցիկ՝ Վարդաս Փոկասի մոտ իր վարկը բարձրացնելու համար և 1000 թ. կարող էր, հավանաբար, լինել խիստ տարեց:

## 2. ԿՅՈՒՐՈՊԱՂԱՏԻ ՏԻՐՈՒՅԹԸ

Դավիթն, ինչպես և իր նախորդները, իշխում էր Տայքում, այն է՝ Ոլթիի տարածաշրջանում: Հայ պատմիչները նրան անվանում են Տայքի իշխան կամ կյուրոպաղատ: Ըստ «Վրաց ժամանակագրության», Դավթի «տիրապետության ներքո էին գտնվում Բասենը, Տայքը և հարակից տարածքները»: [Կոստանդին Ծիրանածինի] «Արար[ողությունների մասին]» գիրքը նրան անվանում է [Իբերիայի՝] *'Ιβηρίας* կյուրոպաղատ և նշում, որ նա իր շուրջն ունեցել է չորս [«այլ»] իշխանություններ՝ [«Բերիասախ՝ Իբերիա, Կարնատախ՝ Իբերիա, Կուել՝ Իբերիա, Աճարա՝ Իբերիա»]. *ἔχει δὲ περὶ αὐτὸν ὁ κουροπαλάτης ἑτέρας ἐξουσίας δ'. ... τοῦ Βεριασάχ, 'Ιβηρία· ... τοῦ Καρνατάης, 'Ιβηρία· ... τοῦ Κούελ, 'Ιβηρία· ... τοῦ 'Ατζαρᾶ, 'Ιβηρία:*

Այս իշխանությունները կյուրոպաղատին ենթակա չէին: Դրանք անկախ էին, համենայն դեպս ճանաչվել էին իբրև այդպիսիք բյուզանդական արքունիքի կողմից: Նշված իշխանությունները ուղղակի հարաբերություններ ունեին բյուզանդական արքունիքի հետ՝ միևնույն հիմունքներով, ինչ և կյուրոպաղատը:

*'Ατζαρᾶ*-ն համապատասխանում է այսօրվա Աջարիային, տեղադրվում է միևնույն անունը կրող գետի ավազանում:

Կուելն, իհարկե, այն ամրոցն է, որը վրացերեն անվանվում է «Քվելիսցիխե»՝ «Պանրաբերդ», ըստ Կոստանդին Ծիրանածինի՝ *Τυρόκαστρον*. Մենք վերը տեսանք, որ այս ամրոցն, Աճարայի հովտի հետ, պատկանում

[1] Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր և Մեծ Հայս, Վենետիկ, 1864, էջ 88:



էր Գուրգեն մագիստրոսին, որը և նա փոխանակել է Արտանուջի հետ: Այստեղ Կուելը և Աճարան միանգամայն զանազան երկու իշխանական տիրույթներ են:

*Καρνατάης*-ը «Վրաց ժամանակագրության» Տաոս-Կարին է: Ճշգրիտ ձևն է «Կարնի-Տաչս», որը նշանակում է «Տաոյի (Տայքի) դուռ», որն, այսպիսով, միանգամայն նույնն է: Այս բնակավայրն իբրև գյուղ պահպանվում է մինչ մեր օրերը և հարևան երկու գավառների՝ Տայքի ու Կղարջքի սահմանագծում՝ 2520 մ բարձրության վրա գտնվող լեռնանցքի կողքին է: Կարնի-Տաչսը, որն այլ կերպ կոչվում է Ստորին Տայք, մեր հեղինակի ժամանակաշրջանում կազմում էր Կղարջքի, Լմերքսևի գետի հովտի մի մասը՝ Արտանուջ նշանավոր ամրոցի հետ:

Կարնի-Տաչսի կամ Տաոս-Կարի գծի հարավում ձգվում էին կյուրոպաղատի տիրույթները և ընդգրկում էին Ոլթիի գետի ամբողջ ավազանը, այն է՝ գրեթե ամբողջ Տայք երկրամասը: Ըստ Հայկական «Աշխարհացոյց»-ի, Տայքն ընդգրկում էր ութ գավառ. 1) Կող, 2) Բերդաց փոր, 3) Պարտիզաց փոր, 4) Ճակատք, 5) Բոխա, 6) Ազորդաց փոր, 7) Արսեաց փոր, 8) <Ոքաղե>[1]: Արսեաց փորը գտնվում էր Կուրից այն կողմ, Վասքարի լեռների վրա և կյուրոպաղատի տիրույթից դուրս էր մնում: Վանանդի հարևանությամբ գտնվող Ճակատք գավառը պատկանում էր հայ Բագրատունիներին[2]: Բայց Բասենի հյուսիսային մասը, որը եզերվում էր Արաքսի հոսանքով, պատկանում էր կյուրոպաղատին:

Ինչ վերաբերում է *Βεριασάχ*-ին, իմա՝ *Βερασχα*, հայերեն՝ «Վերնաշխարհ», դրա ներքո նկատի ունեն այն երկրամասը, որը տեղադրված է Սամցխեից և Ջավախքից դեպի արևելք, Կուր գետի վրա մինչև Տփղիս, ինչպես այդ ճշգրտորեն մատնացույց է անում Հայկական «Աշխարհացոյց»-ը՝ այն անվանելով «Վերին աշխարհ»[3]: «Վրաց ժամանակագրությունը» Տփղիսի երկրամասը մինչև Տաբիս-Կարնի և Վանավար անվանում է «Զեդասափելի», այսինքն՝ Վերին աշխարհ[4]:

[1] Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1904, էջ 145: Ոքաղեն «Գիտլիկ և Վարդաշէն» գյուղերի տարածաշրջանն է: Այս վայրերը մինչ մեր օրերը պահպանել են իրենց անունները Նիքաղեի մոտ, որը բավական հստակորեն հիշեցնում է Ոքաղե անունը և տեղադրվում է Թորթում գետի ակունքի մոտ:

[2] 953 թ. հայոց Աբաս թագավորի մահից հետո նրա երկու որդիները բաժանել են երկիրը և Մուշեղը թագավորել է Վանանդում՝ Կարսում: Նրա եղբայր Աշոտ [III-ը] բռնագրավել է Ցատիկ ամրոցը Ճակատքում, որը պատկանում էր Մուշեղին և որը Աշոտը հարկադրված է եղել նրան վերադարձնել Դավիթ կյուրոպաղատի ճնշման ներքո, տե՛ս Ասողիկ, էջ 188:

[3] [Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ, յաւելուածովք նախնեաց, Վենետիկ, 1881, էջ 28:]

[4] Տաբիս-Կարին կամ Տաբիս-Կարնին մեծապես մտահոգել է Բրոսսեին: Վախուշտին գրում է Տաչի-Կարի կամ Տաչիս-Կարի: Բրոսսեն կարծում է, թե դա քարարերեն «տաշ»՝

Բայց ո՞վ էր *Βεριασάχ*-ի ἄρχων-ը՝ [«իշխանը»] Լեկապենոսի և Կոստանդինի օրոք: Կարելի է կարծել՝ Աբխազիայի թագավորը, բայց վերջինս, բացի այդ, հիշատակվում է *ἐξουσιαστής 'Αβασγίας* [Աբխազիայի իշխան] անվամբ: Հովհաննես Կաթողիկոսն այս տիտղոսն արտահայտում է «ավագ» բառով: [Կոստանդնուպոլսի] պատրիարք Նիկողայոսը [Հայոց] կաթողիկոսին հղած իր նամակում ակնարկում է կյուրոպաղատին և «ավագին»[1], որը բյուզանդական արարողակարգում համապատասխանում է աբազգ տիրակալին վերապահված *ἐξουσιαστής* տիտղոսին: Սակայն թվում է, թե Հովհաննես Կաթողիկոսի «ավագն» ավելի շուտ վերարտադրում է «Թէր» անվանումը, որն Ասողիկի մոտ կրում է աբազգների թագավորը[2]: Այն իշխանները, որոնց շնորհվում էր կյուրոպաղատություն, վրացիները անվանում էին նաև թագավոր: Ատրներսեհից († 923) հետո թագավորներ այլևս չեն հիշատակվում մինչ Սմբատ թագավորը († 958): Այս ժամանակաշրջանում աբխազների թագավոր Գեորգի II-ը († 955) հիրավի գրավել է այն երկրները, որոնք պատկանում էին Վրաստանի թագավորին և իբրև իշխան այդտեղ նշանակել է նախ՝ իր որդի Կոստանդինին, իսկ այնուհետև՝ Լևոնին: Հավանաբար, *Βεριασάχ*-ի ἄρχων-ի ներքո նկատի ունեն վրացական երկրում գտնվող Գեորգիի կուսակալին:

Գեորգիին մեկը մյուսի ետևից հաջորդել են նրա երեք որդիները՝ Լևոնը († 967), Դեմետրեն († 975) և Թեոդոսը, որին 985 թ. փոխարինել է նրա զարմիկ (նրա քույր Գուրանդուխտի որդի) Բագրատը: Այս ամբողջ ժամանակաշրջանում, այն է՝ Ատրներսեհի մահից († 923) մինչև 985 թ., Աբխազիան պահպանում էր իր գերիշխանությունն այն երկրների նկատմամբ, որոնց նախկին տիրակալները կրում էին թագավորի տիտղոս: Այդուհանդերձ, Ատրներսեհի չորս որդիները, առնվազն մինչ Աշոտ կյուրոպաղատի († 954) մահը, որը Կոստանդին Ծիրանածինի ժամանակակիցն էր, բավական հզոր էին, որպեսզի խոնարհվեին Աբխազիայի տիրակալի առջև: Նրանց տիրույթ-

«ապառած» բառն է (M. Brosset, p. 22): «Վրաց ժամանակագրությունը» նշում է, որ Մցխեթոսը ստացել է այն երկրամասերը, որոնք գտնվել են սկսած Արագվիից և Տփղիսից մինչ Տարիս-Կար ու Հանավար (Ibid., p. 23), իսկ Օձըրխոսը՝ Մցխեթոսի եղբայրը՝ «այն երկրամասը, որը ձգվում է Տարիս-Կարից մինչ ծով», որտեղ «նա կառուցել է Օձըրխե և Թուխարս ամուր քաղաքները» (Ibid., p. 22): Տարիս-Կարը տեղադրված էր Թուխարսի ու Տփղիսի միջև ու քանի որ Մցխեթոսի բաժինը՝ Արագվիից Տարիս-Կար ներառում է «Վերին աշխարհը»՝ «Ջեդա սոփելին» և որ այս երկրամասերն ընդգրկվում էին Սամցխեի և Թիֆլիսի ու Ջավախքի միջև ... (2), որը կազմում էր Գոգարենի մասը, հետևաբար, Տարիս-Կարը հարկ է որոնել Սամցխեից և Ջավախքից դեպի արևելք: Սա մեզ օգնում է ճիշտ տեղադրելու Տարիս-Կարը, այն է Տաշիրի դուռը կամ մուտքը, որը համապատասխանում էր այս երկրամասի տեղանքին, սակայն չէր ընդգրկվում «Վերին աշխարհում», թեև դրան սահմանակից էր:

[1] [«Ավագն Ափխազաց» (տե՛ս Հովհաննես Կաթողիկոս, էջ 267, 268)]:

[2] Ասողիկ, էջ 171-173:



ները գտնվում էին Տայքի սահմաններում և հիրավի անկախ էին աբազգներից: Բագրատունիների ընտանիքին պատկանող՝ խնդրո առարկա իշխանությունների տարածքային հենքն ավելի լավ ըմբռնելու համար շահեկան կլինի հետևել նրանց գերիշխանության ներքո գտնվող տարածքի հետագա ծավալմանը:

Վրաց Բագրատունիների օրրանը Կղարջքն էր կամ Կլարջեթը: Համաձայն «Վրաց ժամանակագրության» վերհանած ավանդույթի, առաջին Բագրատունին (3) եկել հաստատվել է այստեղ: Նրա որդի Ատրներսեհը հանդես է գալիս Արչիլի ու սրա որդի ու ժառանգ Ջուանշերի օրոք: Նա հայտնի է իբրև ավատատեր, որն արդեն տիրում է Կլարջեթին, Շավշեթին, Աջարային, Նիգալին, Արսեաց-փորին, Արտանին և Ստորին Տայքին: Այս Ատրներսեհի որդի Աշոտն իշխում էր այն հողերի վրա, որոնք ձգվում էին «Կլարջեթից մինչև Կսան»[1]: Այդուհանդերձ, Աշոտը հարկադրված է եղել նահանջելու արաբական ուժերի առջև: Նա հիմնավորվել է Կլարջեթում, կառուցել Արտանուջը, հարևան գյուղերը գնելու միջոցով ընդլայնել իր հողերը, գրավել Շավշեթը: Կայսրը ճանաչել է նրա իշխանությունը և նրան շնորհել կյուրոպաղատի տիտղոս[2]: Այս ամենն, ըստ էության, պատմական հիմք ունի և հաստատվում է Վարդան պատմիչի ստույգ վկայությամբ, համաձայն որի, «Աշոտ տիրեաց ի Կղարջաց մինչեւ ի Տփղիս, լեռնակողմամբ հանդերձ»[3]: Վրացական ավանդույթն Ատրներսեհին է վերագրում այն, ինչը փաստորեն պատկանում էր նրա որդի Աշոտին: Վերը թվարկված երկրներն Ատրներսեհի տիրապետության ներքո չէին գտնվում: Այդ Աշոտն էր, որ դրանք ուներ իր տիրապետության ներքո. Կլարջեթից Կսան կամ Տփղիս ձգվող երկրամասերը, ներառյալ Ջավախքը, սրանք հենց այն երկրամասերն են, որոնք վերագրում են Ատրներսեհին: Արաբների դիմադրությունն Աշոտին անտեղի էր: Աշոտի գործունեությունը ծավալվել է ոչ այնպես, ինչպես ներկայացվում է «Վրաց ժամանակագրության» կողմից: Նա սկսել է Կլարջեթից, ծավալել իր տիրույթները դեպի հյուսիս և արևելք: Հետևաբար, «Իսմայելի իշխանը Վրաց երկիրը տալիս է Աշոտին՝ Հայոց իշխան Աշոտի որդի Վասակի, նրա որդի Ատրներսեհի որդուն», ինչպես հավաստում է նույն Վարդանը, ավելացնելով, որ կայսրն իր կողմից նրան արժանացրել է կյուրոպաղատի պատվին[4]:

Աշոտն իր տիրույթները բաժանել է երկու որդիների՝ Ատրներսեհի և

[1] M. Brosset, p. 269.

[2] Ibid., p. 264.

[3] Վարդան, էջ 78:

[4] Նույնը, էջ 77. [«Եւ տայր իշխանն Իսմայելի Աշոտի որդւոյ Ատրներսեհի որդւոյ Վասակայ, որդւոյ Աշոտոյ Հայոց իշխանի՝ զերկիրն Վրաց. որոյ երբեալ հնազանդեցուցանէ ինքեան, եւ կայսրն առաքէ նմա պատիւ կիւրոպաղատութեան»]:

Բագրատի միջև: Առաջինին բաժին է հասել Կլարջեթը, Շավշեթը, Աջարան՝ այն երկրամասերը, որոնք, ինչպես տեսնում ենք, նրա հետնորդների կամ մամփալների ճյուղի տիրույթներում էին: Այս Ատրներսեհի երկու որդիներից Սմբատ մամփալը († 889) հիշատակվում է իբրև Արտանուջի, ․իսկ Գուրգեն մամփալը († 891)՝ Շավշեթի և [Աջարայի] տիրակալ: Հիրավի, Ռոմանոսի և Կոստանդինի օրոք մենք տեսնում ենք նրանց թոռներին՝ համապատասխանաբար Աշոտ Կիսկասին († 939) և Գուրգեն մագիստրոսին († 941)՝ մեկին իբրև Արտանուջի, մյուսին՝ Աջարայի տիրակալի:

«Վրաց ժամանակագրությունը» չի հիշատակում Աշոտ կյուրոպաղատի մյուս որդու՝ Բագրատի (որին անվանում է թագավոր), ինչպես նաև նրա որդի Դավթի († 881) ու նրա թոռ Ատրներսեհի († 923) տիրույթների մասին: Սակայն, քանի որ Աշոտ կյուրոպաղատն իր տիրապետության ներքո ուներ Կղարջքից Տփղիս ձգվող երկրամասերը, Բագրատի բաժինը կարող էր լինել այն, ինչը մնացել է այդ տարածքից դուրս, որոնք բաժին էին հասել նրա եղբայր Ատրներսեհին, այսինքն՝ այն տարածաշրջանները, որոնք տեղադրված են Կղարջքից և Աջարայից արևելք մինչև Տփղիս: Հարկ է նաև ավելացնել Ստորին Տայքը, որը, համաձայն «Վրաց ժամանակագրության», ընդգրկվում էր Աշոտ կյուրոպաղատի տիրույթների մեջ: Ստորին Տայքը՝ Տայքի՝ Ստորին Օլթիի և Կլարջեթի միջև գտնվող մի մասն է, այսպիսով, բուն Տաոս-Կարիի տարածաշրջանը, որն ավելի ուշ, ինչպես մենք տեսանք, կկցվի Կլարջեթին: Այս ժամանակաշրջանում Տայքը դեռևս պատկանում էր հայ Բագրատունիներին: Ըստ Վարդանի, Աշոտ Մսակերը (Կանիվորը) (4) և նրա եղբայր Շապուհը՝ Աշոտ կյուրոպաղատի ժամանակակիցները, «գրաւեցին յինքեանս զՇիրակ եւ զԱշոցք, եւ զգաւառն Տայոց»[1]: Աշոտ Մսակերն այնտեղ [վերա]կառուցել է Կա[լ]մախ ամրոցը: Այս Շապուհի որդի Աշոտն իշխում էր սույն տարածաշրջանում, կայսր Թեոփիլոսի օրոք իբրև նստավայր ունենալով Սպեր [գավառի Բաբերդ] քաղաքը: [Կայսեր] արևելյան արշավանքի ժամանակ, 837 թ. շրջանում, նրան շնորհվել է *πατρίκιος καὶ ἀνθύπατος*-ի [«պատրիկի և փոխհյուպատոսի»] տիտղոս[2]: Միքայել [III] կայսեր օրոք, 850 թ. շրջանում, ոմն Գրիգոր, որին տրվել էր Իշխանիկ մականունը[3], Սպերի տեր ու տնօրենն էր: Ամեն ինչ վկայում է այն մասին, որ Տայքը մնացել է հայ Բագրատունիների ձեռքին ամբողջ IX դ. ընթացքում և X դ. սկզբում մինչև Սմբատ թագավորի մահը († 913): Վրաց Բագրա-

[1] Վարդան, էջ 76:

[2] Առողիկ, էջ 144:

[3] Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն Տանն Արծրունեաց, ի լոյս էած Ք. Պ., Ս. Պետերբուրգ, 1877, էջ 194: «Գաղաբար իշխանիկը» պետք է ուղղվի ոչ թե [«Գայլաբար» կամ] «Գաղտաբար», ինչպես առաջարկում է Մարկվարտը [տես Յռ. Մարկվարտ, Հայ Բագրատունյաց ճյուղագրությունը, Վիեննա, 1913, ծանոթագրություն 3], այլ «Գրիգոր Իշխանիկ»:



տունիներն Աշոտ կյուրոպաղատից հետո մեծ հաջողություններ չեն ունեցել: Այն, ինչ «Վրաց ժամանակագրությունն» է պատմում արաբական ուժերի առջև Աշոտ կյուրոպաղատի նահանջի մասին, իրականում վերաբերում է նրա հաջորդներին, որոնք Կլարջեթի իրենց տիրույթներն են նահանջել ավելի նվազ արաբական ուժերի ճնշման ներքո, քան երկու մրցակից՝ աբխազական և հայկական պետությունների ուժերն էին, որոնք, ինչպես հավաստիացնում է «Վրաց ժամանակագրությունը», «վիճարկում էին Քարթլին», այն է՝ Աշոտ կյուրոպաղատի արևելյան տիրույթները: Քարթլիի համար մղվող այս պայքարի արդյունքում հայ Բագրատունիները առաջացել են մինչև Սամշվիլդե ու Սաքուրեթի, դառնալով Տաշիրի, Վրաց դաշտի, Աշոցքի տեր ու տնօրենը և X դ. վերջին, հարակից երկրամասերի ընդգրկմամբ, դրանից ստեղծել մի իշխանություն: Աբխազները գրավել են Կուր գետից դեպի այն կողմ ձգվող Վրաստանը: Տփղիսը և նրա արվարձանները գտնվում էին արաբ ամիրայի ենթակայության ներքո: Կյուրոպաղատների ճյուղի վրաց Բագրատունիներին մնացել են միայն Սարաքսեթին ու Արտանը (Արդահանը) և Տայքի կամ Տաոս-Կարիի մի մասը: Մամփալները շարունակում էին տիրել Կլարջեթի իրենց տիրույթներին Աջարայում: Կյուրոպաղատյան տունը տեսնելով, թե ինչպես է ինքը սեղմվում Արևելքից, իր սահմաններն ընդլայնում է դեպի հարավ: Ատրներսեհ կյուրոպաղատը՝ Աշոտ կյուրոպաղատի երրորդ հաջորդը, թվում է՝ առաջինն է հատել Տաոս-Կարիի գիծը՝ Բանա ամրոցը (ժամանակակից Պանենը) Տայքում կառուցելու համար[1]: Ատրներսեհը, Հայոց թագավոր Սմբատ [I]-ի բարեկամը և դաշնակիցն էր, որը նրան թագադրել էր իբրև [Վրաստանի] թագավոր: Հավանաբար Սմբատի մահից հետո էր՝ 913 թ., և այն դժվարին պայմաններում, որոնցում գտնվում են նրա որդին ու հաջորդը՝ Աշոտ Երկաթը, որ Ատրներսեհը ոտնձգություն է կատարել Տայքի նկատմամբ: Փոքր անց ժամանել են նրա անվեհեր որդիները՝ ամբողջ Տայքն իրենց ենթակայության ներքո դնելու և կայսրությունից Բասենը վիճարկելու համար: Չորս եղբայրներից Աշոտ կյուրոպաղատն († 954) ու Դավիթ մագիստրոսը († 937) ժառանգներ չեն թողել [տես տոհմածառը]:

[1] M. Brosset, p. 270.




«Վրաց ժամանակագրությունը» Բագրատի որդի Ատրներսեհի մասին նշում է, որ նա կյուրոպաղատ էր, և որ նրա որդի Բագրատը մահացել է 969 թ., և որ էրիսթավների էրիսթավ Դավիթը՝ այս Բագրատի եղբայրը, մահացել է 968 թվականին[1]: Սակայն համաձայն մեկ այլ մեկնակերպի, Ատրներսեհը «թողել է երկու որդի՝ Բագրատին և էրիսթավների էրիսթավ Դավթին: Այս Բագրատը, էրիսթավների էրիսթավը՝ Ատրներսեհ կյուրոպաղատի որդին, մահացել է 966 թ. և նրա եղբայր Դավիթ կյուրոպաղատը դարձել է Մեծ»[2]: Մենք գիտենք, որ 978 թ. Վարդաս Փոկասը դիմել է Դավթին՝ Վարդաս Սկլերոսի դեմ իրեն օգնական ուժեր ուղարկելու համար: Այս պարագային Ասողիկը նրան անվանում է կյուրոպաղատ, մինչդեռ [Գեորգիոս] Կեդրենոսը նրան բնութագրում է իբրև *ἄρχων*, բայց անվանում կյուրոպաղատ այն հատվածում, որտեղ խոսքը վերաբերում է նրա ժառանգությանը: Այդուհանդերձ, եթե 978 թ. նա կյուրոպաղատ էր և ամեն դեպքում ակնառու իշխան, նա չէր կարող լինել Ատրներսեհ կյուրոպաղատի որդին, որը 978 թ. դեռևս ողջ էր, և այսպիսով, այդ նրան է, որ Վարդասը պետք է դիմեր և ոչ թե նրա որդուն: Փոխարենը՝ ընդունելով, որ նա եղել է մյուս Ատրներսեհ կյուրոպաղատի († 961) որդին և հաջորդել է իր եղբայր Բագրատին († 969) ու «դարձել Մեծ», կարելի է ավելի դյուրին ձևով մեկնաբանել այն ամենը, ինչ մենք գիտենք այս անձնավորության մասին: Այն մեծ հեղինակությունը, որը նա վայելում էր, նրա տարեց հասակը 998 թ., ինչպես հավաստում է Ասողիկը, հակում է կարծելու, որ նա իշխել է բավական երկար, և այսպիսով, նրա իշխանության սկիզբն ավելի համապատասխանում է 969 թ., քան 983

[1] M. Brosset, p. 280.
[2] Ibid., p. 284.



թվականին: Բացի այդ, այս պարագային ոչնչով չի կարելի առարկել այն փաստը, որ Վարդասը դիմել էր նրան: Ըստ «Վրաց ժամանակագրության»՝ Սմբատին († 958) հաջորդել է նրա որդի Բագրատ Հիմարը, որը և թագավորել է մինչև 994 թվականը: Նա, այսպիսով, Դավիթ կյուրոպաղատի ժամանակակիցն էր: Եթե նա այս Բագրատի զարմիկն էր, որը թագավորական տիտղոս էր կրում, ապա դժվարություններ կառաջանան Դավթի կատարյալ անկախ դիրքորոշումը մեկնաբանելու հարցում: Բագրատի մահից հետո նա չի հավակնում նրա գահին: Սա դրդում է կարծելու, որ նա ավելի հեռավոր ազգակցական կապ և օրինական առանձին տիրույթներ ուներ: Նրան ներկայացրել են իբրև Բագրատ Հիմարի թոռ Բագրատի առավել մերձավոր ազգական՝ ավելի լավ ամրագրելու համար նրա իրավունքները կյուրոպաղատի ժառանգության նկատմամբ: Իրականում, նա Դավթի հորեղբոր թոռը չէր, այլ Դավթի պապի ծոռը:

Դավիթ կյուրոպաղատի տիրույթների կենտրոններն Օլթի և Նամրվան (ըստ թուրքական քարտեզների՝ Նարիման) քաղաքներն էին (5):

...Այն, ինչ թվում է, թե հավաստում է Հովհաննես [Միաննն] և Եվթիմիոս ս[րբեր]ի վարքը՝ ցմահ հիմունքներով տարածքային զիջման շուրջ, որը 979 թ. [Վասիլ II] կայսեր կողմից արվել է Դավիթ [կյուրոպաղատին], իրականում արտացոլում է միայն 991 թ. համաձայնության լայնահուն վերհուշը, ըստ որի Դավթի տիրույթները վերածվում էին ցմահ ավատների:

Դա մի բռնի արարք էր, որը վրիժառու տիրակալը կատարել է Դավիթ կյուրոպաղատի նկատմամբ: Իհարկե, պետք չէ որևէ հավատ ընծայել այն բանին, որ վերջինս ժառանգներ չի ունեցել և կամ կարող էր իր տիրույթները զիջել կամովին: Ժառանգների պակասը չէր, որ նա զգում էր: Ի դեպ, համաձայն «Վրաց ժամանակագրության», նա իբրև ժառանգ մատնանշել էր իշխան Բագրատին՝ իր հեռավոր ազգականին, աբազգների թագավորին և Վրաստանի գահի ժառանգորդին, որն այդ ժամանակաշրջանում զբաղեցնում էր նրա հայր Գուրգենը: Թվում է, թե ո՛չ Դավիթը, ո՛չ էլ նրա շրջապատը, լրջորեն չէին վերաբերվում կատարված գործարքին և այն դիտում էին իբրև անցողիկ խոստում՝ հանդարտեցնելու համար կայսեր զայրույթը: Իրականում, Դավիթն այդ պահից ի վեր վարել է զավթողական քաղաքականություն: Կարո՞ղ էր արդյոք նա խորհել նոր նվաճումների մասին, եթե նրա տիրույթների վախճանը կանխորոշված էր կամ եթե նա հավատում էր իր պարտավորությունների անիրագործելիությանը: Մանազկերտի քուրդ իշխան Բատը մահացել է 991 թ., այսինքն՝ այն տարին, երբ Դավիթն իր տիրույթները կայսրությանն էր կտակում: Բատին հաջորդել է զարմիկը Աբու Ալի Հասան իբն-Մրվանը: Դավիթն իր զորքերն անմիջապես առաջնորդել է դեպի Մանազկերտ քաղաքը և գրավել այն: Այդ իսկ պահից նրա և մահ-

մեղական ամիրաների միջև սկիզբ է առել երկարատև պայքար: Մրվանյանը նեցուկ է գտել ի դեմս Ատրպատականի Սամլան ամիրայի՝ Աբու-լ-Հայջա-Ռավվադյանի որդու: Դավթի դաշնակիցներն էին քրիստոնյա թագավորներ Գագիկ Անեցին, Աբաս Կարսեցին, Բագրատ Իբերացին: Երկու կողմերը հանդիպել են Բագրևանդում գտնվող Վաղարշակերտ [քաղաքում]: Մահմեդականները չեն համարձակվել ճակատամարտի մեջ ներքաշվել և նահանջել են: Քանի որ Բագրատը մահացել է 994 թ., ապա այդ միջադեպը կարող էր տեղի ունենալ 991 և 994 թվականների միջև:

Իբն ալ-Ասիրը հաղորդում է, որ բյուզանդական կայսրը [Ռումի թագավորը] մտել է Հայաստան և հիջրայի 382 թ. (9-ը մարտի 992 թ. – 25-ը փետրվարի 993 թ.) պաշարել Խլաթը, Մանազկերտն ու Արճեշը, չի հանդիպել որևէ դիմադրության ու Աբու Ալի Հասան իբն-Մրվանի հետ տասը տարով հաշտություն կնքելուց հետո հեռացել է այդտեղից[1]: Քանի որ այդ թվականին Վասիլն Արևելքում չի գտնվել[2], իրավամբ ընդունելի է համարվել, որ խոսքը վերաբերում է Դավթի այն արշավանքին, որի մասին հիշատակում է Ասողիկը[3]: Արաբները նրան նայում էին իբրև կայսեր գործակալի:

Մի քանի տարի անց՝ 998 թ., Դավիթ կյուրոպաղատը Խլաթի մոտ հայտնվել է Մումահիդ ալ-Դաուլա Աբու Մանսուր Սաիդի՝ Աբու Ալի Հասան իբն-Մրվանի եղբոր դեմ հանդիման: Քանի որ [վերջինը] 997 թ. սպանվել էր Ամիդում, նրա եղբայրը և հաջորդը խախտել էր հաշտությունը: Դավիթը մարտի է բռնվել հայոց 447 թվականին, զատկի օրը՝ 998 թ. ապրիլի 17-ին և կորուստներ կրելով նահանջել: Բագրատ մագիստրոսը՝ Թոռնիկի [եղբոր] որդին զոհվել է ճակատամարտի դաշտում, իսկ իշխանաց իշխան «զԲակուրանն ու զայլս բազումս» գերի են ընկել թշնամու ձեռքը:

Հաջորդ տարի Դավիթը վերջին ընդհարումն է ունեցել Ատրպատականի մահմեդական Սամլան ամիրայի հետ, որը Հայաստան էր ներխուժել ստվար բանակի գլուխ անցած: Ամիրայի փառամոլությունը հասնում էր այնտեղ, որ նա երազում էր գրավել Հայաստանն ու Վրաստանը, իսկ Մանազկերտի ավերման դիմաց ծրագրում էր առնվազն Տայք երկրամասի ապատակումը: Դավիթը նրա դեմ է դուրս եկել իր և իր դաշնակիցների՝ Հայաստանի թագավորի, Կարսի թագավորի ու Վրաստանի թագավորի զորքերով: Ճակատամարտը տեղի է ունեցել Ծմբո գյուղի մոտ՝ Ապահունիքի կամ

[1] [Ibn el-Athiri, Chronicon quod perfectissimum inscribitur, ed. C. J. Tornberg, Lugduni Batavotum, 1851-1876, p. ???.]

[2] **В. Р. Розен, Император Василий Болгаробойца, СПб., 1883, с. 247.**

[3] **Ասողիկ**, էջ 269:



Մանազկերտի տարածաշրջանում, հայոց 448 (998) թ.[1], չհանգեցնելով վճռական արդյունքի (6): Դա նշանակում է, որ [Մանազկերտ] քաղաքը մնացել է Դավթի տիրապետության ներքո: Մի փոքր անց Դավիթը մահացել է, և կայսրը ժամանել է իր ժառանգությունը ստանալու համար: Եգիպտոսի Ֆաթիմյան ամիրապետ Ալ-Ազիզի որդին և նրա հաջորդը՝ Ալ-Հակիմ բեն-Ամրիլլահ Մանսուրն (996-1020) արշավանք է ձեռնարկել Անտիոքի տարածաշրջան և 998 թ. հունվարի 19-ին ճակատամարտել դուքս Դամիանոս Դալասենոսի դեմ՝ սպանել նրան, նրա որդուն և գերեվարել պատրիկ Չորտվանելին: Սա հարկադրել է Վասիլ [II] կայսրին արշավելու Արևելք: 999 թ. սեպտեմբերի 20-ին նա արդեն գտնվում էր Անտիոքի մոտ, իսկ դեկտեմբերի 6-ին՝ Տրիպոլիում: Ասողիկը նշում է, որ Ասորիքում նա մնացել է Խաչվերաց տոնից Ծննդյան և Աստվածահայտնության օրը, այսպիսով՝ 999 թ. սեպտեմբերի 14-ից 1000 թ. հունվարի 6-ը: Այնուհետև՝ նա անցել է Տարսոն, ուր, ըստ Յահյայի, մնացել է վեց ամիս, այսպիսով՝ 1000 թ. հունվարի 6-ից հուլիսի սկիզբը: Տեղեկանալով կյուրոպաղատի վախճանի մասին, Վասիլը թողնում է Տարսոնը՝ Դավթի տիրույթները գնալու համար: Վերջինս, համաձայն Ասողիկի, մահացել էր, հայոց 449 թ. Զատկի օրը[2], որը համապատասխանում է 1000 թ. (և ոչ թե 1001 թ., ինչպես այդ մատնացույց է անում «Վրաց ժամանակագրությունը») մարտի 31-ին: Վասիլը հուլիսի սկզբին թողել է Կիլիկիան Մելիտինե գնալու համար, հատել Եփրատը, Հանձիթի տարածաշրջանը, Բալուն, Պայծառակերպման տոնին (1000 թ. հուլիսի 7-ին) անցել Կոհեր լեռը և կանգ առել Արշամունիքում գտնվող Երիզայում: Նփրկերտի (Մուֆարկինի) ամիրան՝ Բատի զարմիկը, այն է՝ Աբու Մանսուր Մրվանյանը ներկայացել է կայսրին, արժանացել մեծարանքների և նշանակվել Արևելքի դուքս՝ մագիստրոսի տիտղոսով:

Այնուհետև՝ նա ճանապարհ է ընկել ու հասել Հավճիչ լեռը և համանուն քաղաքը: Բագրատը՝ աբազգների թագավորը, և նրա հայր Գուրգենը՝ իբերների թագավորը, եկել են նրան դիմավորելու. առաջինը մեծարվել է իբրև կյուրոպաղատ, իսկ Գուրգենը՝ մագիստրոս:

Կայսրը շարունակել է ճանապարհը և ողջունել հայոց թագավորների՝ Վանանդի Աբասի ու Վասպուրականի Սեներքերիմի ժամանումը: Կայսրը գնացել է Մանազկերտ և շրջվել դեպի Բագրևանդում գտնվող Վաղարշակերտ, որտեղ սպասել է հայոց Գագիկ [I] թագավորի (Անեցու) ժամանմանը,

[1] **Ասողիկ**, էջ 271: Ասողիկը հիշատակում է 448 (998) թ. Արեգի մեկը, երեքշաբթի օրը, որը ճշգրտորեն համապատասխանում է 998 թվականին: Սակայն Պողոսի Թղթերի ընդօրինակողն իբրև այս ճակատամարտի տարեթիվ նշում է 448 (998) թվականը, տես Ղ. Ալիշան, Հայապատում, հատ. Բ, Վենետիկ, 1901, էջ 155:

[2] **Ասողիկ**, էջ 275 [«վախճանեցաւ յաւուր մեծի փրկական Զատկին, ի ՆԽԹ թուականին»]:

բայց նա չի բարեհաճել ներկայանալ (7): Այդտեղից կայսրը գնացել է Օլթի և իր տիրապետության տակ վերցրել Տայքի բոլոր դղյակներն ու բերդամրոցները, այնտեղ նշանակել հավատարիմ մարդկանց ու իր հետ տարել Տայքի ազատների մյուս մասին և նրանց տեղավորել բյուզանդական երկրում: Այս ամենից հետո նա վերադարձել է Կ[ոստանդնու]պոլիս:

Կայսրի մեկնումից հետո պոռթկացել է Գուրգենի դժգոհությունը՝ կապված Դավթի տիրույթների ռազմակալման հետ, և նա վճռել է դրանք վերագրավել ուժի միջոցով: Առանց հաջողության հասնելու նա պաշարել է Օլթին և ճամբարել Նամրվանի (այսօր՝ Նարիմանի) կիրճում[1]: Այս լուրը ստանալուն պես Վասիլն Անտիոքի դուքս Նիկեփորոս Ուրանոսին կարգադրել է շուտափույթ գնալ Գուրգենի դեմ: Նա եկել է միևնույն ճանապարհով, ինչ կայսրը, և հայոց 450 (1001) թ. դիրքեր գրավել Բասենում: Ձմեռը վրա հասնելուն պես Նիկեփորոսը բանակցություններ է սկսել Գուրգենի հետ և նրան հավաստիացրել, որ կայսրը, հավանաբար, հակված է հարգելու նրա պահանջները: Բասենում գտնվող Մեկոք լեռան մոտ՝ Ս. Թեոդորոս գյուղում տեղի ունեցած բանակցությունների ընթացքում հաշտություն է կնքվել: Գուրգենի կողմից իր իրավունքների պահանջը ներկայացնելու տարեթիվը՝ 1001 թ., Արիստակես [Լաստիվերտցին] շփոթել է այն տարեթվի հետ, երբ Դավթի վախճանից հետո կայսրը 1000 թ. ամռան վերջին ձեռք է բերել նրա տիրույթները[2]: Սա ևս, հավանաբար, այն սխալի պատճառն է, որը թույլ է տրվել «Վրաց ժամանակագրության» կողմից և վերաբերում է Դավթի մահվան ու նրա տիրույթները կայսրությանը զիջելու տարեթվին (Բագրատի մահվանից հետո, որը 1014 թ. միավորել էր իր հոր՝ Գուրգենի թագը աբազգների թագի հետ, նրան հաջորդել է նրա որդի Գեորգի [I]-ը): Գուրգենը հանդգնություն է ունեցել հակադրվելու կայսրության կողոպտչական քաղաքականությանը և ստացել Դավթի տիրույթների մեծ մասը: Նա մահացել է 1008 թ. և նրա որդի Բագրատը, որն այդժամ աբազգների թագավորն էր, ստացել է իր հոր ժառանգությունը՝ ներառյալ կյուրոպաղատյան տիրույթները: «Վրաց ժամանակագրությունը» հնարավորություն է ընձեռում պնդելու, որ Դավիթը, զավակ չունենալով, որդեգրել էր այս Բագրատին[3]: Այդուհանդերձ, իմաստ ունի դրանում կասկածել: Միևնույն փաստաթուղթը վկայում է, որ քանզի Դավիթը զավակներ չի ունեցել, նրա տիրույթներն ավերածությունների են ենթարկվել: Նրա վասալները դրանք հանձնել են

¹ Ըստ Վարդանի, Դավիթը Վասիլին էր կտակել Օլթին, Նամրվանը, ինչպես նաև Մանազկերտ քաղաքը, տես Վարդան, էջ 93:

² Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ, Թիֆլիս, 1912, էջ 3:

³ M. Brosset, p. 292, 295.



Վասիլին: Դավթի իսկական ժառանգորդը Բագրատը չէր, այլ վերջինիս հայր Գուրգենը՝ Վրաստանի թագավորը: Հիրավի, այդ նա է, որ իր իրավունքները պահանջելու համար դիմել էր զենքի և հաջողության հասել: «Վրաց ժամանակագրությունն», ի դեպ, խոստովանում է, որ Գուրգենի մահվամբ Տայքն անցել է Բագրատի տիրապետության ներքո[1]: Այսպիսով, այդ Գուրգենն է և ոչ թե Բագրատը, որ ճանաչվել էր իբրև Դավթի ժառանգորդ: Ըստ «[Վրաց] ժամանակագրության», Դավիթը հայտարարել է, որ «Բագրատը Տայքի, Քարթլիի և Ապքասրեթի ժառանգորդն է»[2]: Դա ակնհայտորեն հետագա փաստի արտածումն է, երբ Բագրատն այդպիսին էր դարձել, շնորհիվ իր հոր՝ Գուրգենի՝ կայսրությանը ցուցաբերած քաջարի դիմադրության:

Դավիթը սխալվել է զինված առճակատում ունենալով աբազգների թագավոր Բագրատի հետ: Համաձայն Ասողիկի, Բագրատի պապ Բագրատ Ռեգվեն [Հիմարն] ամուսնացել է ևս մեկ անգամ և կնոջ ազդեցության ներքո ցանկացել իր որդի Գուրգենին զրկել ժառանգությունից[3]: Աբազգների թագավոր Բագրատն այդժամ միջամտել է իր հոր՝ Գուրգենի իրավունքը պաշտպանելու համար: Ռեգվենը դիմել է Դավիթ կյուրոպաղատին: Վերջինս օգնություն է խնդրել Անիի թագավոր Սմբատ [II]-ից, որն իր զորքերն առաջնորդել է եղբոր՝ Գագիկի, Կարսի թագավոր Աբասի և Սյունիքի ու Աղվանքի իշխանների հետ. կյուրոպաղատին միանալու են եկել նաև Վասպուրականի զորքերը: Հենց որ այս ուժերը հայտնվել են Ջավախքի Դլիվեկ գյուղում, Բագրատն ու նրա որդի Գուրգենը հաշտություն են խնդրել և նահանջել: Իբրև ցուցաբերած օգնության դիմաց փոխհատուցում, Սմբատը ստացել է Սակուրեթ [Սկվիրեթ] ամրոցը[4]: Դա տեղի է ունեցել հայոց 437 (988) թվականին:

«Վրաց ժամանակագրությունն» այս առճակատումը ներկայացնում է փոքր-ինչ այլ երանգներով: Միջադեպի պատճառ է դարձել իշխանաց իշխան Ռատը, որն իշխում էր Թրիալեթի, Մանգլիսի ու Սկվիրեթի տարածաշրջանում և հրաժարվում էր ենթարկվել աբազգների թագավոր Բագրատին: Վերջինս առաջ է ընթացել դեպի անհնազանդ իշխանը: Այդ մասին տեղեկացրել են Դավիթ կյուրոպաղատին, ասելով, որ ներխուժումն ուղղված է նրա դեմ և հետապնդում է նրան կործանելու նպատակ: Ներխուժողի հայր Գուրգենը նրան օգնության է շտապել: Դավիթը համախմբել է Հայաստանի բոլոր թագավորներին: Բագրատ Հիմարը՝ Քարթլիի թագավորը, ևս անցել է

¹ M. Brosset, p. 298.

² Ibid., p. 294.

³ [Ասողիկ, էջ 252:]

⁴ Նույն տեղում:

Դավթի կողմը, «որովհետև երկյուղում էր, որ իր որդի Գուրգենը կարող էր իրեն զրկել թագավորությունից»: Զինված ընդհարումը տեղի է ունեցել Դլիվեկում, ուր Գուրգենը պարտություն է կրել և նահանջել: Թրիալեթից եկող նրա որդի Բագրատը տեղեկացել է, որ ի վիճակի չէ դիմակայելու Դավթի գերազանց ուժերին, անձամբ հաշտություն է խնդրել ու հավաստիացրել Դավթին, որ ինքը նրա դեմ ոչինչ չի ունեցել, այլ հետապնդել է միայն մեկ՝ անհնազանդության համար Ռատին պատժելու նպատակ: Խաղաղությունը վերականգնվել է: Փոքր անց, Բագրատն այնուամենայնիվ վտարել է Ռատ իշխանին:

Դժվար է ըմբռնել այս առճակատման բուն իմաստը: Եթե Թրիալեթի իշխանն անհնազանդ էր, այդ Բագրատ Հիմարը՝ Վրաստանի թագավորն է, որն իրավասու էր նրան սանձահարելու և ոչ թե Աբազգիայի թագավորը, քանզի Թրիալեթը գտնվում էր Վրաստանի թագավորի տիրույթների սահմաններում: Այս միջադեպն, այնուամենայնիվ, մտացածին չէ: Սակուրեթի՝ Ասողիկի հիշատակումը լինելով համանման՝ «[Վրաց] ժամանակագրության» Սկվիրեթի՝ Ռատի տիրույթի հետ, հակում է կարծելու, որ Ռատի հետ կապված միջադեպը հայտնի է եղել նաև հայ պատմիչին: Եթե [աբազգների թագավոր] Բագրատը ցանկանում էր խոհեմ դարձնել անհնազանդ իշխանին, Բագրատ Հիմարը՝ իշխանի տեր ու տնօրենը, պետք է զոհ լիներ և ոչ թե սանձահարողի դեմ զենք վերցներ: Հարկադրված ենք ընդունել, որ գահին տիրելու համար Գուրգենն անհամբերությամբ էր սպասում հոր մահվանը և հավանաբար որդու հրահրմամբ դավադրություն էր կազմակերպել նրա դեմ:

Այդուհանդերձ, կյուրոպաղատը ոտքի է ելել երկու իշխանների՝ իր հավանական ժառանգորդների դեմ, հանուն արդարության կամ հավանաբար քաղաքական հավասարակշռության շահից ելնելով:

977 թ. հայոց թագավոր Սմբատ [II]-ն իր հորեղբայր Մուշեղից՝ Կարսի թագավորից, զավթել է Ծատիկ ամրոցը Ճակատք գավառում: Դավիթը չի հապաղել միջամտել՝ գործադրված բռնության դիմաց արդարությունը վերականգնելու համար[1]:

Դավիթը մեր աղբյուրներում ներկայանում է իբրև օրինակելի իշխան, որի հեղինակությունը նրան դարձնում էր դատավոր և միջնորդ իր շրջապատում գտնվող խռովարար իշխանների միջև տեղի ունեցող վիճաբանություններում: «Վրաց ժամանակագրությունը» նրան որակում է իբրև «գթասիրտ, բարեգութ՝ աղքատների նկատմամբ, կարեկից, խոնարհ և համեստ՝ վշտահարների հանդեպ, մեծահոգի, մարդկային, բարեհամբույր՝ ամենքի

[1] Ասողիկ, էջ 188:



համար և օժտված ամեն կարգի առաքինություններով»[1]: Ըստ Ասողիկի, նա «էր այրն հեզ և հանդարտ, առաւել քան զամենայն թագաւորս, որ ի ժամանակս յայս: Եւ եղև նա պատճառ խաղաղութեան, և շինութեան ամենայն արևելայց, մանաւանդ Հայոց եվ Վրաց. զի զգոռ պատերազմաց յամենայն կողմանց դադարեցոյց նա, յաղթող եղեալ ամենայն շուրջանակի ազգաց, և ամենայն թագաւորք կամաւ հնազանդեցան նմա»[2]: Արիստակես [Լաստիվերտցին] նրան բնութագրում է մեծարանքի խոսքերով: «էր այր հզօր եւ աշխարհաշէն, մեծապարգեւ եւ աղքատասէր, որ էր արդարեւ սահման խաղաղութեան, քանզի յաւուրս նորա հանգչէր ամենայն մարդ, ըստ մարգարէութեանն, ընդ որթով իւրով եւ ընդ թզենեաւ»[3]: Այն, ինչ պատմում է Մատթեոս Ուռհայեցին «սուրբ եւ արդար իշխանին Դաւթայ» բռնի մահվան մասին[4], պատմական տեսակետից հիմնազուրկ է (8): Դա առասպել է, որը հավանաբար ամփոփում է Ռատի տարածած ասեկոսեների արձագանքը, այն է՝ աբազգների թագավոր Բագրատը ծրագրում էր սպանել մեծ իշխանին: Հայր Իլարիոնի տված թույնի միջոցով՝ նրա մահվան մանրամասները բացարձակապես մտացածին են… (9):

3. [ԴԱՎԻԹ ԿՅՈՒՐՈՊԱՂԱՏԻ ՄԵՐՁԱՎՈՐՆԵՐԸ]

ԱՊՈՒՔԱՊԻ – ʼΑποκάπης ԸՆՏԱՆԻՔԸ

Թոռնիկի հորեղբայրը և նրա եղբայրներից մեկը կրում էին Ապուքապ անունը: Նրա հորեղբայր Ապուքապի աղջիկն ամուսնացել էր Հովհաննես-Աբուլհարիթի հետ: Այս զույգից ծնվել է Եվթիմեոսը: Վրաց մետրոպոլիտ Տիմոթեն, որը 1755 թ. այցելել է Աթոս լեռան վրա գտնվող իբերական վանքը, Եվթիմեոսին համարում է Թոռնիկի քրոջ որդի: Նա, այսպիսով, Թոռնիկի զարմուհուն շփոթել է նրա քրոջ հետ[5]:

Հովհաննես և Եվթիմեոս սրբերի վարքում ասված է, թե Հովհաննես Աբուլհերիթը տեղեկանալով, որ իր որդի Եվթիմեոսը [Դավիթ կյուրոպաղատի կողմից] պատանդ էր տրվել [կայսրությանը], նրան փրկելու համար գնացել է կայսեր մոտ: Նա այդ առթիվ հանդիմանել է Ապուհարպին, վերջինիս ուղղելով հետևյալ խոսքերը: «Դուք խնայում եք ձեր որդիներին, որովհետև նրանք ձերն են և պատանդ եք հանձնում զրեթե որբ իմ որդուն»:

[1] M. Brosset, p. 294.

[2] Ասողիկ, էջ 275: [Հմմտ. էջ 188]:

[3] [Արիստակէս Լաստիվերտցի, էջ 3:]

[4] [Մատթէոս Ուռհայեցի, էջ 37:]

[5] M. Brosset, Additions et éclairsissements à l'histoire de la Géorgie depuis l'antiqueité jusqu'au 1469 de J.-C., S.-Pétersbourg, 1851, p. 190.

Սրանից հետևում է, որ Ապուհարպն իր դստրից՝ Հովհաննեսի կնոջից բացի, ուներ նաև որդիներ: Նա, ով նրան ներկայացրել էր կայսրերին, այդ նույն Ապուհարպն էր, որը ճանաչված էր արքունիքում:

Հիշենք այս երկու փաստերը. Ապուհարպը որդիներ ուներ և նրան ճանաչում էին կայսրերը: Հայտնի է մի «Չորտվանել՝ Ապուհարպի թոռ», որը հիշատակվում է այն ընդհարման զոհերի թվում, որ տեղի է ունեցել Վասիլի բանակի ռուս զինվորների և Դավիթ կյուրոպաղատի մարդկանց միջև 1000 թվականին:

Սակայն թվում է, թե այս Ապուհարպը Թոռնիկի հորեղբայրն է, այսինքն՝ նրա հայր Չորտվանելի եղբայրը.




Վասիլի ժամանակաշրջանում, նրա շրջապատում գտնվող բազմաթիվ ավատատեր [ընտանիքների] թվում կա մեկը, որն իր անունով և ծագմամբ մեծապես հիշեցնում է Ապուհարպին: Դա Ապոկապես ʼΑποκάπης հանրահայտ ընտանիքն է, որի մեկից ավելի անդամները աչքի են ընկել կայսրության մատուցած ծառայություններով: Մենք անվարան այդ ընտանիքի ծագումը կապում ենք Ապուհարպի ընտանիքի հետ (10):

Այս ընտանիքի մասին առաջին անգամ խոսվել է 1019 թվականին: Երբ Վասիլ [II]-ը Դյուրաքիոնի գրավումով վերջին հարվածն է հասցրել Բուլղարիային և ազատել բուլղարների մոտ գտնվող բոլոր հույն գերիներին, նա առաջարկել է բոլոր նրանց, ովքեր այդ ցանկանում էին, մնալ տեղում, իսկ նրանց, ովքեր այդ չէին ցանկանում, հետևել իրեն: Կեդրենոսի[1] այս վերջին բառերից հետո – τοῦ δὲ λοιποὺς ἕπεσθαι προστάξας, Դևոլի եպիսկոպոսն ավելացնում է. *καὶ τῶν ἁλόντων ποτὲ στρατιωτῶν ἦσαν γὰρ πολλοὶ ἔκ τε ʼΡωμαίων καὶ ʼΑρμενίων ἔν τε Πελαγονίᾳ καὶ Πρέσπᾳ καὶ τῇ ʼΑχρίδι*

[1] Cedrenus, Historiarum compendium. Ioannis Skylitzae ope ab Immanuele Bekkero, t. II, Bonnae, 1839, p. 474, 477.



*ὑπὸ Σαμουὴλ κατῳκισάμενοι, ὧν ἐπισημότατοι οἱ Βασιλείου τοῦ ʼΑποκάπη παῖδες, Γρηγορᾶς καὶ* (ջնջված տառեր) *ἦλθεν* [«ժամանակին գերեվարված զինվորների թվում շատերը կային հռոմայեցիներից և հայերից, որոնց Սամուել <թագավորը> բնակեցրեց Պելագոնիայում, Պրեսպայում և Օքրիսում. նրանցից ամենանշանավորներն էին Վասիլ Ապոկապեսի զավակները՝ Գրեգորասն ու … եկան»][1]: Այսպիսով, գերիների թվում ամենանշանավորներն Ապոկապեսի որդի Վասիլի երկու որդիներն էին:




Ապոկապեսը և Վասիլը բյուզանդական պատմության մեջ հանրահայտ անձնավորություններ են: Ապոկապեսը մասնակցել է Ռոմանոս կայսեր 1030 թ. սիրիական արշավանքին, որը նույն տարվա օգոստոսի 10-ին (XIII ինդ[իկտիոնի], աշխարհի [արարչագործության] 6538 թ.) ավարտվել է պարտությամբ: Այն լավագույն զորավարների թվում, որոնց Ռոմանոսն իր հետ տարել է, Կեդրենոսը հիշատակում է բանակի երեք հրամանատարների՝ պատրիկ Հովհաննես Խալդին, էքսկուբիտոսների զորավար Լևոն Քեբրոսպակտին և պատրիկ Կոստանդին Դալասենոսին[2]: Մատթեոս Ուռհայեցին հիշատակում է Ապոկապեսի անունը, այսինքն՝ չորրորդ հրամանատարի, «որն անցյալում եղել էր Դավիթ կյուրոպաղատի սենեկապետը»[3]: Այդ նա է, որը փրկել է Ռոմանոսի կյանքը՝ նրան նախազգուշացնելով վերջինիս զորավարների կողմից հյուսվող դավադրության մասին: Կայսրը բանակի կողմից սիրված չէր իր քինոտ բնավորության պատճառով: Արաբները նրա զորքերի նկատմամբ հաղթանակ են տարել և նրանց փախուստի մատնել: Կայսրը նահանջել է Կուրիս և այնուհետև հասել մայրաքաղաք: Ռոմանոսի շրջապատը նրա դեմ ակնհայտորեն թշնամաբար էր տրամադրված: Իբն-ալ Ասիրը հաստատում է հայ պատմիչի վկայությունը: Դավադրության հրահրիչը, ըստ նրա, եղել էր դուքսի որդին, հավանաբար Կոստանդին Դալասենոսը: Նա հավաստում է, որ զորավարներից մեկը կայսրին հայտնել է նրա

[1] Տե՛ս B. Prokič, Die Zusätze in der Handschrift des Johannes Skylitzes, München, 1906.
[2] Cedrenus, p. 491 և այլն:
[3] [Մատթեոս Ուռհայեցի, էջ 57:]

դեմ նախապատրաստվող դավադրության մասին: Կայսրը համակվել է սարսափով, ճողոպրել Կուրիս, իսկ այնտեղից՝ Կոստանդնուպոլիս[1]: Արաբ պատմիչը չի հայտնում զորավարի անունը, բայց հավաստի է, որ խոսքը վերաբերում է միևնույն Ապոկապեսին: Ռոմանոսը, որին որևէ մեկը չէր դավաճանել, ստիպված է եղել նահանջել, իսկ նրա ճամբարը կողոպտվել է: Երբ ավարով ծանրաբեռնված հաղթողները ժամանել են Թելուշ և պահանջել անձնատուր լինել, Թելուշի թեմի ստրատեգոս Գեորգի Մանիակեսը գրոհել է արաբների վրա և հափշտակել կողոպտած իրերը: Իբրև այդ սխրանքի դիմաց փոխհատուցում՝ Ռոմանոսը նրան նշանակել է [«Ստորին Մարաստանի վրա»] *κατεπάνω τῆς κάτω Μηδίας*[2]:

Հաջորդ տարի՝ 1031 թ., Մանիակեսը դարձել է Եդեսիայի տեր ու տնօրենը: Ըստ Յահյայի, դա տեղի է ունեցել հոկտեմբեր ամսին:[3] Այդ պահին է, որ Մանիակեսը նշանակվում է եփրատյան քաղաքների պրոտոսպաթար և ստրատեգոս ու բնակվում Սամոսատում. *Γεώργος πρωτοσπαθάριος ὁ Μανιάκης, ὁ Γουδελίου τοῦ Μανιάκη υἱός, τῶν παρεφρατιδίων στρατηγῶν πόλεων καὶ ἐν Σαμοσάτῳ τὰς οἰκήσεις ἔχων*[4]: 1034 թ. (III ինդիկտիոնին, աշխարհի [արարչագործության] 6543 թ.) այս նույն տարեգիրը հաղորդում է, որ *μεταστέλλεται δ'ἐξ 'Εδέσσης καὶ Γεώργιον πατρίκιον τὸν Μανιάκην, καὶ τοῦτον μὲν ἄρχειν ἐκπέμπει τῆς ἄνω Μηδίας τῆς καὶ [Βοα]σπρακανίας, ἐν 'Εδέσσῃ δὲ πέμπει Λέοντα τὸν Λεπενδρηνόν* [«տեղափոխվում է նաև Գեորգիոս Մանիակես պատրիկը Եդեսիայից, որին <կայսրը> ուղարկում է կառավարելու վերին Մարաստանը, որը և Բոասպրականիան է, իսկ Եդեսիա ուղարկում է Լևոն Լեպենդրինոսին»][5]:

Այդուհանդերձ, պատմելուց հետո այն պայմանների մասին, որոնցում Մանիակեսը գրավել է Եդեսիան և այն ջանքերի մասին, որոնք նա ներդրել է այն արաբներից պաշտպանելու համար, Մատթեոսը հաղորդում է, ոչ առանց որոշակի դառնության, որ «Ռոմանոսը նրան հեռացրել է և քաղաքը հանձնել Ապոկապեսին՝ Դավիթ կյուրոպաղատի սենեկապետին»[6]:

Այսպիսով, Կեդրենոսը և Մատթեոսը ունեն տարաձայնություններ, որոնց միջև հաշտության եզրեր որոնելը դժվար է: Մեկն իբրև Եդեսիայում Մանիակեսի հաջորդի ընդունում է Լևոն Լեպենդրինոսին, մյուսը՝ Ապոկա-

[1] **Մատթեոս Ուռհայեցի**, էջ 57-58: Իբն-ալ Ասիրը և Քեմալ-ադ-Դինը, որոնց հղում է Վ. Ռոզենը, տես В. Р. Розен, նշվ. աշխ., էջ 314 և այլն:

[2] **Cedrenus**, p. 494.

[3] **Yahya** (**Розен**, նշվ. աշխ., էջ 72):

[4] **Cedrenus**, p. 500.

[5] **Ibid**., p. 512.

[6] **Մատթեոս Ուռհայեցի**, էջ 64:



պեսին: 1030 թ. օգոստոս ամսից հետո արաբների դեմ գործած իր սխրանքի ժամանակ Մանիակեսը Տլուքի ստրատեգոսն էր: 1030 թ. հոկտեմբեր ամսին նա գրավել է Եդեսիան, և ըստ Մատթեոսի ու Արիստակեսի, այդ պահին բնակվում էր Սամոսատում, մի բան, որը հավաստվում է Կեդրենոսի վկայությամբ, այն է՝ եփրատյան քաղաքների կառավարումը նրան տրվել է ի փոխհատուցում նրա սխրանքի: *Κατεπάνω τῆς κάτω Μηδίας* [«Ստորին Մարաստանի վրա»] և *τῶν παρεφρατιδίων στρατηγῶν πόλεων* [«եփրատյան քաղաքների ստրատեգոս լինելը»] երկու արտահայտությունները մատնացույց են անում միևնույն տիրապետությունը[1]: Եդեսիայի գրավումից հետո Մանիակես պրոտոսպաթարն արժանացել է պատրիկի տիտղոսի և իր տիրապետությանը միացրել գրավված քաղաքը: Նա զբաղեցրել է այդ պաշտոնը 1030 թ. հոկտ[եմբերից] մինչև 1034 թ.՝ իր տեղն այնուհետև Լևոն Լեպենդր[ինո]սին զիջելու համար: Տարեգիրը մեկ անգամ ևս նշում է. *Γεωργίου δὲ πατρικίου τοῦ Μανιάκη ἐξ 'Εδέσσης, ὡς εἴπομεν, μετατεθέντος καὶ τοῦ Λεπενδρηνοῦ ἄρχειν ἐν αὐτῇ ταχθέντος* [«Երբ, ինչպես ասացինք, Գեորգիոս պատրիկ Մանիակեսին, տեղափոխել են Եդեսիայից, և այնտեղ կարգել են իշխելու Լեպենդրինոսին»], արաբները շարժվել են դեպի քաղաք և այն ենթակա էր գրավման, եթե Կոստանդինը՝ կայսեր եղբայրը և Անտիոքի դուքսը, օգնական ուժեր չուղարկեին: Կայսրը Կոստանդինին է վստահել սխոլերի դոմեստիկոսի պաշտոնը[2]: 1038 թ.

[1] Ժ. Լորանը (**J. Laurent**, Byzance et les Turcs Seldjoucides, “Annales de l’Est”, 1913-1919, p. 32, note V) զուր է առարկում այս երկու արտահայտությունների համանմանության դեմ, որոնք ընդունվել են Ֆինլեյի կողմից (**G. Finlay**, Hist., t. 1, p. 474 (11); **L. Bréhier**, Maniakès, p. 3 (12); **G. Schlumberger**, L’épopée Byzantine à la fin du dixième siècle, Paris, 1905, p. 89): Նա կարծում է, որ Մանիակեսը եղել է նախ՝ Տլուքի թեմի ստրատեգոսը (**Cedrenus**, p. 454, տող 1), այնուհետև՝ Ստորին Մեդիայի կատեպանը (նույն տեղում, տող 23): Միայն **երկու կամ երեք տարի** անց է, որ նա դարձել է եփրատյան քաղաքների ստրատեգոս՝ նստավայր ունենալով Սամոսատը (նույն տեղում, էջ 500, տող 17): Մեր կողմից ընդգծված բառերը ճշգրիտ չեն: Կեդրենոսի երկում խոսք չկա «երկու կամ երեք տարվա մասին»: Այն, ինչ պատմում է Կեդրենոսը (էջ 500, տող 17), վերաբերում է աշխարհի [արարչագործության] 6540 թ. (1031-1032 թթ.): Դա Եդեսիայի գրավման տարեթիվն է (1031 թ. հոկտեմբերին): Այդ ժամանակաշրջանում Մանիակեսն արդեն եփրատյան քաղաքների ստրատեգոսն էր: Կեդրենոսը նշում է, որ հետագայում նա նշանակվել է Ստորին Մեդիայի կատեպան՝ ի փոխհատուցումն Տլուքի մոտ արաբների դեմ գործած իր սխրանքի: Այսպիսով, ակնհայտ է, որ այդ միևնույն պաշտոնն է, որ նա անվանում է եփրատյան քաղաքների ստրատեգոս: Պետք չէ ἡ κάτω Μηδία [«Ստորին Մարաստան»] շփոթել ἡ ἄνω Μηδία՝ [«Վերին Մարաստան»-ի] հետ. այս վերջինը համընկնում է Վասպուրականի տարածաշրջանին, մինչդեռ առաջինի համար նա նկատի ունի Սամոսատի տարածաշրջանը: Բյուզանդական տարեգիրը խուսափում է Հայաստան բառի գործածումից և փորձում այն փոխարինել Մեդիայով՝ շահարկելով Արևելքի աշխարհագրության իր իմացությունը: Եթե այնպիսի բուն հայկական երկրամասը, ինչպիսին է Վասպուրականը, դարձել է Վերին Մեդիա, ինչո՞ւ Եփրատի երկարությամբ ձգվող կիսահայկական երկրամասը չէր կարող կոչվել Ստորին Մեդիա:

[2] **Cedrenus**, p. 515.

(աշխարհի [արարչագործության] 6546 թ., VI ինդիկտիոնին) ի հայտ է գալիս մեկ այլ անձնավորություն՝ պրոտոսպաթար Βαρασβατζέ-ն, այն է՝ Վարազվաչեն, որը բռնագրավել է Եդեսիայի իշխանությունը: Քաղաքը գրավելու համար արաբները հղացել են մի նենգ ծրագիր: Տասներկու արաբ, որոնց հետևում էին 500 հեծյալ և նույնքան էլ ուղտ, որոնց վրա բարձված էր հազար սնդուկ, մուտք են գործել Եդեսիա, հայտնելով, որ իրենց բեռը բաղկացած է նվերներից, որոնք տանում են կայսեր համար: Իրականում, սնդուկներից յուրաքանչյուրում գտնվում էին երկու զինվոր, որոնք գիշերը վրա հասնելուն պես պետք է դուրս գային ու գրավեին քաղաքը: Մի աղքատ հայ, որը ողորմություն խնդրելու համար գնացել էր արաբների մոտ, սնդուկներից մեկից ձայն է լսել, որն իր հարևանից հարցնում էր, թե իրենք որտե՞ղ են գտնվում: Նա այդ մասին տեղեկացրել է Վարազվաչեին և բոլոր թաքնված մարդիկ կոտորվել են[1]: Վարազվաչեն, ինչպես և Ապոկապեսն ու նույնիսկ Լևոն Լեպենդրինոսը, ինչպես մենք այդ անմիջապես կտեսնենք, իբերներ էին: Հնարավոր է, որ Մանիակեսից կամ Լեպենդրինոսից հետո ընկած ժամանակահատվածում Ապոկապեսը ստացել է միևնույն պաշտոնը կամ եղել է կառավարչի պրոեքսիմոսը[2]: 1065 թ. դանուբյան ռազմաճակատից իր որդի Վասիլի վերադարձի ժամանակ Ապոկապեսը դեռևս բնակվում էր Եդեսիայում:

Ապոկապեսի որդի Վասիլը աչքի է ընկել Մանազկերտում [սելջուկ]-թուրքական բանակի կողմից այդ քաղաքի պաշարման ժամանակ, որը անձամբ գլխավորում էր Տուղրիլը: Ավելի քան մեկ ամիս նա կատաղի դիմադրություն է ցուցաբերել և դիմակայել քաղաքը գրավելու՝ թշնամու բոլոր գրոհներին, բոլոր ջանքերին[3]: Դա տեղի էր ունեցել հայոց 508 (1054) թվականին: Վասիլն այդ ժամանակաշրջանում պատրիկ էր: Արժանանալով մագիստրոսի տիտղոսի, նա ուղարկվել է Դանուբի ափ, որտեղ Նիկեփորոս Վոտանիատես մագիստրոսի հետ մասնակցել է երկրամասի կառավարմանը: Նրա նշանակման տարեթիվն անհայտ է: Դա այդուհանդերձ 1065 թ. էր (աշխարհի [արարչագործության] 6573 թ., III ինդիկտիոնին և հայոց 514 թվականին): Այդ տարում ուզեր կոչվող նոր բարբարոսների հորդաները հատել են [Դանուբ] գետը և հարձակվել [Բալկանյան] թերակղզու վրա՝ ամայացնելով մինչև Թեսաղոնիկե, նույնիսկ Հելլադա ընկած տարածքները: Վասիլի և Նիկեփորոսի ուժերը պարտվել են և երկու զորավարները գերի

[1] Cedrenus, p. 520.

[2] Մենք գիտենք, որ քաղաքի դուքս Նիկոլա Ռեջնիտեսը 1065 թ. ունեցել է մի պրոեքսիմոս՝ Լևոն Դավատանոսը, որը և 1077 թ. շրջանում դարձել է նրա հաջորդներից մեկը (տես Մատթեոս Ուռհայեցի, էջ 142-144):

[3] Նույն տեղում, էջ 122:



են ընկել ասպատակիչների ձեռքը: Կայսր Կոստանդին Դուկասը փորձել է կաշառել բարբարոսների բարձրագույն հրամանատարներին: Չմեռը և բարբարոսների ճամբարում տարածված ժանտախտը՝ ավելի, քան կայսր Կոստանդին Դուկասի ջանքերը, ամայացրել են բարբարոսների շարքերը, որոնց մի մասը ջախջախվել է բուլղարների և Վատզինակեսի կողմից:

Ըստ Մատթեոսի, կայսրը պատրաստ էր գնելու գերիներին, սակայն ուզերի պահանջած փրկագինը նրան բարձր է թվացել: [Բարբարոս] զորավարներից մեկը Վասիլի հետ համաձայնության է հանգել ու գերիներին գաղտնաբար Կոստանդնուպոլիս ուղեկցել և կայսրից փոխհատուցում ստացել: Այս կերպ փրկված Վասիլը գնացել է Եդեսիա՝ իր հոր մոտ: Նա դեռևս այդտեղ էր գտնվում 1077 թ., երբ հարաբերություններ է հաստատել հայ իշխան Փիլարտոսի հետ, ոտքի հանել բնակիչներին դուքս Լևոն Դավատանոսի դեմ (ըստ բյուզանդական հեղինակների՝ Διαβατηνός [«Դիաբատենոս»]) և գրավել քաղաքը: Նա իշխանության ղեկի մոտ է եղել մինչև 1083 թ.՝ իր մահվան տարեթիվը[1]:

1068 թ. նոյեմբեր ամսին (VI ինդիկտիոնին) [Ռոմանոս IV] Դիոգենես [կայսրն] իր առաջին արշավանքի ընթացքում մահմեդականներից հետ է վերցրել Եփրատի վրա գտնվող Հիերապոլիս քաղաքը, վերականգնել դրա միջնաբերդը և այնտեղ կայազորի պետ նշանակել Փարեսման Ապոկապեսին[2]: Դա միևնույն ընտանիքի մեկ այլ անդամն է, որին հարկ չկա շփոթելու Վասիլի հետ, ինչպես պատահականորեն վարվել է պ. Ժ. Լորանը[3]:

Վասիլին Կեդրենոսն անվանում է *Βασίλειος πατρίκιος ὁ 'Αποκάπης* [«Վասիլ պատրիկ Ապոկապես»] (էջ 591) կամ *ὁ 'Αποκάπης* [«Ապոկապես»] (էջ 592); (*Attal., p. 46*); *τῶν 'Ρωμαίων ἡγεμὼν Βασιλείος, οὗτος ὁ ἐπικεκλημένος 'Αποκάπης* [«հռոմայեցիների առաջնորդ Վասիլը, որը հորջորջվել է Ապոկապես»] (*p. 83*); *τοῦ τε μαγίστρου Βασιλείου* (ըստ տպագ[իր] բնագրի՝ *βασιλέως* [«թագավորի»]) *τοῦ 'Αποκάπη = (Skylitzes, p. 654); τοῦ μαγίστρου Βασιλείου τοῦ 'Αποκάπου* (*Attal., p. 116*) [«Վասիլ մագիստրոս Ապոկապեսի»]; *καὶ στρατηγὸν ἐπίστησας Φαρασμάτιον* (հմմ՛ *Φαρεσμάνιον*) *ἐκεῖνον βέστην τὸν 'Αποκάπην (Skylitzes, p. 675)* [«և զորավար կարգելով այն Փարասմատիկին, <որը> վեստ <է> Ապոկապես <անունով> »] *; τὸν Φαρεσμάνην ἐκεῖνον βέστην τὸν 'Αποκάπην* (և ոչ թե *'Αποκάπης*՝ ըստ տպագիր բնագրի) [«այն Փարասմանին, <որը> վեստ <է> Ապոկապես <անունով>»]: Բյուզանդացիների համար, ինչպես տեսնում ենք, *'Αποκάπης*-ը ավելի շուտ մականուն է, քան անուն: Միայն Մատթեոսն

[1] Մատթեոս Ուռհայեցի, էջ 216, 223:

[2] Attaliotes, p. 116; Skylitzes, p. 675.

[3] J. Laurent, p. 43.

է այն ներկայացնում իբրև նրա հոր անուն: Հայերեն ձևը համապատասխանում է *'Αποκάπης* ձևին, որն իր հերթին արտահայտում է արաբական Աբուկապ ابو كاب անունը: Սակայն նման անուն արաբերենում գոյություն չունի: Ապոկապեսը Դավիթ կյուրոպաղատի բազմաթիվ ազատներից էր և նրա սենեկապետը: Նրա անունը հիշեցնում է Ապուհարպ անունը, իսկ վերջինը հռչակավոր իշխան էր, նույնքան փառապանծ Դավթի արքունիքում, որքան և կայսր Վասիլի մոտ: Այդ նրա միջամտության շնորհիվ էր Հովհաննես Աբուլհարիբը՝ Ս. Եվթիմեոսի հայրը, կարողացել ներկայանալ կայսրին, ինչպես վերը տեսանք: Նա Չորտվանելի-Ջուրբանիելի՝ 950 թ. շրջանում Կոստանդնուպոլսում՝ Աշոտ կյուրոպաղատի հանրահայտ բանագնացի եղբայրն էր: Դա նաև միևնույն Ապուհարպն է, որի թոռ Չորտվանելը, ըստ Ասողիկի վկայության, զոհվել է 1000 թվականին: Երկու անունների նմանությունը որոշակի է. ինչ վերաբերում է դրանց կրողներին, դա այլ հարց է: Մեր Ապոկապեսը, ինչպես և նրա որդի Վասիլը, մահացել են շատ տարեց հասակում: 1019 թ. Վասիլն արդեն ընտանիքի հայր էր և մահացել է 1083 թվականին: Նրա հայր Ապոկապեսը 1019 թ. պետք է, որ լիներ առնվազն 40-ից 45 տարեկան, քանի որ այդ ժամանակաշրջանում նա արդեն պապ էր, այսպիսով, նա պետք է, որ ծնված լիներ 970-975 թթ. շրջանում: Քանի որ 1065 թ. նա դեռևս կենդանի էր, ապա և ոչ մի կերպ չէր կարող ծնված լինել մինչ 970 թվականը: Սա հնարավորություն չի ընձեռում նմանեցնելու Ապոկապեսին Ապուհարպի՝ Չորտվանելի եղբոր հետ, որը պետք է ծնված լիներ 970 թ. շատ ավելի առաջ: Այնուամենայնիվ, նա պատկանում է նրա ընտանիքին. նա հավանաբար նրա թոռն է, իր պապի անունը կրողը.




Ապոքսանեսը Դավթի սենեկապետն էր: Այդուհանդերձ, Դավթի մահվան պահին՝ 1000 թ., Ապոքսանեսը, եթե նույնիսկ ընդունենք, որ կարող էր մահացած լինել 1065-1066 թթ., կարող էր լինել ընդամենը 25 տարեկան, որը կասկածի տակ է դնում տեղեկությունն այն մասին, թե նա սենեկապետ էր եղել, եթե ընդունում ենք, որ այդ պաշտոնն Ապոկապեսի ընտանիքում եղել է



ժառանգական: Ինչ վերաբերում է Չորտվանել, «շաղրուվան-էլ» բառերին, ապա Արիստակեսն իբրև վրան օգտագործում է «շատրուա» բառը: Ժամանակակից պարսկերենում «շադրուվան» նշանակում է տան զարդարանքներ, գորգեր: Նախնական իմաստը պետք է մոտ լինի այն իմաստին, որն արտահայտվում է «դադիր կամ չադիր» բառով:

### ԼԵՊԵՆԴՐԻՆՈՍ

1034 թ. Եդեսիայում Գեորգի Մանիակեսի հաջորդը, ինչպես մենք այդ տեսանք վերևում, անվանվում էր Լևոն Λεπενδρηνός: Դավիթ կյուրոպաղատի իշխաններից մեկը, նա, որը 998 թ. Մամլան ամիրայի դեմ ուղարկված զորքերի հրամանատարն էր, կրում էր Ոչոպենդրայի որդի Գաբրիելի անունը: Նա մի եղբայր ուներ՝ Հովհաննեսը. նրանք զոհվել էին 1000 թ., դառնալով Դավթի ազատների և բյուզանդական բանակի ռուս վարձկանների միջև ծայր առած ընդհարումների զոհը: Թվում է, թե տարօրինակ «Ոչոնպընտրեայ» անունը կարող էր լինել Օլոպենդրայի սխալ ընթերցումը: Այս պարագային նրան կարելի է նույնացնել Լեպենդրինոսի հետ: Թվում է, թե վերջինս ունի աշխարհագրական ծագում և մատնացույց է անում նրան, ով ծագումով Լեպենդրիայից է: Կարարզից ոչ հեռու կա մի գյուղ, որի «Էլփիլհինդ» անունը բացահայտում է որոշակի նմանություն Լեպենդրիայի հետ[1]: «Օ» սկզբնատառը չի կարող հարուցել և ոչ մի բարդություն. *Φέρσης* անունը՝ «Վրաց ժամանակագրությունում»՝ Փերիզը, հայերենում ունի «Օփերս» ձևը:

Ցավալի պատահարից հետո Վասիլ կայսրը կարող էր ծառայության մեջ ընդգրկել երկու սպանված եղբայրներից մեկի որդուն՝ Լևոնին, որը նշանակում է ստացել Եդեսիայում, որտեղ գտնվում էին նրա հայրենակիցներ Ապոկապեսը, իսկ մի փոքր անց՝ Վարազվաչեն:

[1] Ն. Սարգիսյանն իր քարտեզի վրա նշում է «Էպիլիհինդի»: Այն նշված է նաև Հ. Կիպերտի քարտեզի վրա որպես «Էրիլինդի»:

Այս իշխանը, Դավիթ կյուրոպաղատի ստորականերից մեկը, առաջին անգամ ի հայտ է գալիս 979 թվականին: Այդ նրա հրամանատարությամբ է, որ Դավիթ կյուրոպաղատն իր ուժերն օգնության է ուղարկել Վարդաս Փոկասին՝ Վարդաս Սկլերոսի դեմ[1]: Նրա որդի Փերսը 998 թ. Մամլան ամիրայի դեմ ուղղված արշավանքի ընթացքում գլխավորում էր իբերական զորքերը[2]: Երկուսն էլ իշխանների իշխան՝ «իշխան իշխանաց» էին (վրացերեն՝ «էրիսթավների էրիսթավ»):

Երբ Վասիլ կայսրը մեկնել է Իբերիա՝ Դավիթ կյուրոպաղատի ժառանգությունը ստանալու և երբ հարցը կարգավորելուց հետո այնտեղից գնացել է Փյունիկե (Phénice), ի թիվս այլ իշխանների, նա իր հետ տարել է նաև Թևդատ և Փերս երկու եղբայրներին. *ἄπεισεν εἰς Φοινίκην ἔχων μεθ' ἑαυτοῦ καὶ τοὺς ἐν τῇ κατ' αὐτὸν 'Ιβηρίᾳ κατὰ γένος πρωτεύοντας, ὧν ἦσαν κορυφαῖοι ὁ Πακουριάνος καὶ Φευδάτος (կարդա՝ Θευδάτος) καὶ Φέρσης οἱ αὐτάδελφοι, οὓς καὶ εἰς τὸν τῶν πατρικίων ἀνεβίβασε θῶκον* [«մեկնել է Փյունիկե, իր հետ ունենալով նաև այդ ժամանակ Իբերիայում եղած մեծատոհմիկներին. նրանցից գլխավորներն էին Պակուրիան, Թևդատ և Փերս հարազատ եղբայրները, որոնց և մտցրեց պատրիկների շարքը»][3]:

Նախ և առաջ՝ հարկ է ուղղել տարեգրի՝ իրադարձությունների հաջորդականության հարցում թույլ տրված սխալը: Դավթի պարագային Վասիլն Իբերիա է ժամանել Փյունիկեից և ոչ թե հակառակը, ինչպես կարծում է տարեգիրը: Այնուհետև՝ Վասիլը վերադարձել է Բյուզանդիա, այսինքն, եթե նա տարել էր իբերական իշխաններին, ապա նրանց տարած կլիներ Բյուզանդիա և ոչ թե Փյունիկե:

Պակուրիանը չի պատկանում Ջոջիկի ընտանիքին. *ὁ Πακουριάνος*-ը միանգամայն տարբերվում է *Φευδάτος* (sc. *Θευδάτος*) *καὶ Φέρσης οἱ αὐτάδελφοι* [«Թևդատ և Փերս հարազատ եղբայրներ»]-ից: Միայն այս երկու վերջիններն են եղբայրներ: Փերսը ներկայացվում է իբրև Ջոջիկի որդին: Այսպիսով, Թևդատը ևս նրա որդին է: Նիկեփորոս Փոկասի և Նիկեփորոս Քսիֆեսի ապստամբության ժամանակ Փերսը գտնվում էր իր հայրենիքում և ծառայում էր Գեորգի թագավորին: Ապստամբներն իրենց կողմն էին գրավել թագավոր Գեորգիին՝ Դավիթ կյուրոպաղատի ժառանգությունը նրան հանձնելու խոստումով: Փերսին հանձնարարված էր նրանց օգնու-

[1] Ասողիկ, էջ 193:

[2] Նույն տեղում, էջ 270:

[3] Cedrenus, p. 447.



թյան հասնել: 1022 թ. օգոստոսի 15-ին Փոկասի զոհվելուց հետո Փերսը բռնվել և մահապատժի է ենթարկվել իր փեսա Անդրոնիկոսի հետ[1]:

Թևդատն ուներ Ցիցիկիոս անունով մի որդի, որը Ջոջիկի հունարեն ձևն է: 1016 թ. նա Դորոստոլի ստրատեգոսն էր, որտեղից Վասիլ կայսրին հայտնել է, որ [բուլղարացիների ցար] Իվան Վլադիսլավը պեչենեգների օգնությամբ հարձակման էր նախապատրաստվում[2]: Գտնում են նաև, որ նա ունեցել է մեկ կամ երկու զարմիկ: Կոստանդին Դիոգենեսի կողմից Ռոմանոս կայսեր դեմ հյուսված դավադրության մասնակիցների թվում ընդգրկված էին *Γεώργιός τε καὶ Βαραζβατζέ ὁ ἐν τῷ ὄρει τῷ "Αθῳ τὴν τῶν 'Ιβήρων μονὴν συστησάμενος, οἱ τοῦ πατρικίου Φευδάτου ἀνεψιοί* [«Գեորգիոսը և Վարազվաչեն, որը Աթոս լեռան վրա հիմնեց «Իբերների մենաստանը»՝ Թևդատ պատրիկի զարմիկները»][3]: Թևդատի զարմիկները կարող էին լինել նրա եղբայր Փերսի որդիները: Բնագիրը Վարազվաչեին ներկայացնում է իբրև Աթոսում գտնվող իբերների վանքի հիմնադրի, մի բան, որը խնդիրը բարդացնում է, քանզի բավական հավաստի տեղեկությունները այդ պատիվը վերապահում են Գեորգիին: Ս. Եվթիմիոսը, որն իր հորը հաջորդել էր վանահոր պաշտոնում, 14 տարի այն վարելուց հետո պաշտոնը զիջել է Գեորգիին՝ նվիրվելու գրական աշխատանքների: Այս Գեորգին մասնակցել է Կոստանդին Դիոգենեսի դավադրությանը և արտաքսվելով՝ մահկանացուն կնքել աքսորում: Այսպիսով, նա նույնանում է Վարազվաչեի հետ հիշատակված՝ միևնույն անունը կրող անձնավորության հետ: Սակայն վրացական վավերագրերում հենց այս Գեորգին է, որ կրում է «մաշեներելի» տիտղոսը, որը նշանակում է «շինարար»: Գեորգիի մարմինը տեղափոխվել և տեղադրվել է դամբարանում, որը կենդանության օրոք անձամբ ինքն էր կառուցել: Նրա հիշատակը նշվում էր հուլիսի 29-ին, համաձայն այն ծեսի, որն ի պատիվ շինարարների (մաշենեբելթաների) գոյություն ուներ վանքում. նա անվանվել է «Գեորգի մագիստրոս»[4]: Երբ նրա հաջորդներից մեկը՝ Գեորգի Հագիորիտեսը, 1066 թ. հունիսի 29-ին մահացել է, նրա նշխարները տեղադրվել են «Գեորգի Շինարարի» (մաշենեբելիի) անջրպետում[5]: Վերջապես, անձամբ Գեորգիի կողմից վանքի պա-

[1] Cedrenus, p. 478; Արիստակես Լաստիվերտցի, էջ 22; P. Peeters, La vie de S. Georges l'Hagiorite [trad. latine], "Analecta Bollandiana", t. XXXVI– XXXVII, §13.

[2] Cedrenus, p. 465. Τζιτζικίου τοῦ υἱοῦ τοῦ Θευδάτου τοῦ "Ιβηρος [«Ցիցիկիոսի՝ Թևդատ Իբերացու որդու»]:

[3] Ibid., p. 488:

[4] ცხოვრებაი ნეტარისა მამისა ჩუენისა იოანესა და ეფთჳმესი. – "ათონის ივერიის მონასტრის 1074 წ. ხელნაწერი აღაპებით, [ტფილისი, 1901], გვ. 240.

[5] P. Peeters, § 97-98. Գեորգին մահացել է Պողոս և Պետրոս առաքյալների տոնի օրը, այսպիսով, հունիսի 29-ին, իսկ նախօրեին՝ հունիսի 28-ի օրը, եղել է չորեքշաբթի: Դա 1066

տին փորագրված արձանագրություններից մեկում նշված է. *ἐγὼ ἐστερέωσα τοὺς στύλους αὐτῆς καὶ εἰς τὸν αἰῶνα οὐ σαλευθήσεται. Γεώργιος μοναχός, ὁ Ἴβηρ καὶ κτήτωρ* (այսինքն՝ *κτίτωρ*) [«Ես եմ ամրացրել այս <եկեղեցու> սյուները, և թող առհավետ չսասանվեն: Գեորգիոս Մենակյաց, իբերացի և հիմնադիր»][1]: Այսպիսով, Գեորգին արժանացել էր [մաշենեբելիի] պատվավոր տիտղոսին՝ *κτίτωρ*, եկեղեցու սյուները վերականգնելու կամ ամրացնելու համար: Տարեգրի *ὁ ἐν τῷ ὄρει τῷ Ἄθῳ τὴν τῶν Ἰβήρων μονὴν συστησάμενος* [«որը Աթոս լեռան վրա կազմակերպեց «Իբերների մենաստանը»] բառերը համապատասխանում են ավելի շուտ Գեորգիին, քան Վարազվաչեին, որին դրանք վերագրվում են: Դրանք լուսանցքներում արված նշումների տեսք ունեն, որոնք այնուհետև թափանցել են բնագրի մեջ և տեղ զբաղեցրել *Βαραζβατζέ*-ից հետո, մինչդեռ վերաբերում էին *Γεώργιος*-ին: Հանրահայտ է Թոռնիկին վերաբերող համանման մի պարզաբանում «De administrando Imperio»-ի ձեռագրում: Գեորգիի աքսորին վերաբերող դատավճռից փոքր անց հանդիպում ենք մի *Βαραζβατζέ*-ի, որն իբրև ստրատեգոս 1038 թ. (VI ինդիկտիոնին, աշխարհի [արարչագործության] 6546 թ.) գտնվում էր կայսեր ծառայության մեջ Եդեսիայում[2]: Այս անունն այնքան հազվադեպ է, որ այլևս ի հայտ չի գալիս բյուզանդացիների մոտ և իրավացի կլինենք, եթե նրան նույնացնենք Գեորգիի եղբոր հետ: Ռոմանոսի հաջորդը կարող էր նրան ներել և նշանակել Եդեսիայի կառավարիչ:

Այդուհանդերձ, Սմիրնակիսը նշում է, որ XI դ. մի «ոսկե կնիք» է տրվել Միքայել Պափլագոնացու կողմից, որտեղ *Γεώργιος ἐπωνυμεῖτο Βαραζβατζέ* [«Գեորգիոսը կրել է Վարազվաչե անունը»] և Եվթիմիոսից հետո եղել է վանահայր[3]: Եթե դա ճիշտ է, Կեդրենոսի բնագիրը պետք է ուղղվի, մի բան, որն արել է Պ.Պետերսը՝ երկու եղբայրներին դարձնելով երկու անուն կրող մեկ անձնավորություն: Ի դեպ, խնդիրը բարդանում է նրանով, որ միևնույն հեղինակը Հովհաննես Աբուլհարիթին ներկայացնում է Հովհաննես Վարազվաչե անվամբ: Սա սխալ է կամ տեղի է ունեցել շփոթ՝ կապված Թոռնիկի եղբոր հետ, որը հիրավի անվանվում էր Հովհաննես Վարազվաչե: Սմիրնակիսը նմանապես հիշատակում է մեկ այլ՝ 1032 թ. I ինդիկտիոնով թվագրված փաստաթուղթ, որի ներքո ստորագրողների թվում կարելի է կարդալ

թվականին էր (և ոչ թե 1065 թ.): Հունիսի 28-ը համապատասխանում է 1066 թ. չորեքշաբթի օրվան (և 1065 թ. երեքշաբթի օրվան):

[1] G. Smyrnakis, Ἅγιος Ὄρος, p. 467.

[2] Cedrenus, p. 520.

[3] G. Smyrnakis, Ἅγιος Ὄρος, p. 478.



իբեր վանական Գեորգիի անունը[1]: Համաձայն այն ամենի, ինչ մեզ պատմում է Կեդրենոսը, Գեորգին պետք է, որ դատապարտված լիներ նախքան 1032 թվականը: Դավադրության կազմակերպիչ Կոստանդին Դիոգենեսը նախ և առաջ արգելափակվել է աշտարակում, այնուհետև՝ նրան այդտեղից դուրս են բերել, որպեսզի 1031 թ. (աշխարհի [արարչագործության] 6539 թ., XIV ինդիկտիոնին), Ստուդիոնի վանքում դարձնեն վանական: Հաջորդ տարի նրան կասկածել են մի նոր մեքենայության մեջ. նրան ձերբակալել են Վլախեռնի ապարանքում, որտեղից 1032 թ. նա փորձել է ճողոպրել և ընկնելով պարսպից՝ կնքել իր մահկանացուն[2]: Դժվար է ընդունել, որ Գեորգին կարող էր դատապարտված լինել Դիոգենեսի մահվանից հետո, և որ 1032 թ. նա դեռևս ազատության մեջ էր՝ ստորագրելու համար մի փաստաթուղթ: Այս ամենը թելադրում է որոշակի վերապահությամբ վերաբերվելու Սմիրնակիսի հղումներին և պնդումներին՝ ներառյալ խնդրո առարկա փաստաթղթերի հրապարակումը:

Թե քանի որդի ուներ իշխան Փերսը՝ մեկ կամ երկու, մնում է առնվազն տարակուսելի: Մենք վերը հիշատակեցինք Դավիթ կյուրոպաղատի՝ Մամլանի դեմ ձեռնարկած արշավանքը, որին մասնակցել է Փերսը: Համաձայն միևնույն արշավանքին վերաբերող պատումի մեկ այլ մեկնակերպի, Փերսը միայնակ չէր: Դավթի բանակն ուներ երեք զորահրամանատար՝ Վաչեն, Թևդատը և Օփերսը: Վերջին երկու անունները մեզ ծանոթ են: Վաչեն մեծապես հիշեցնում է Βαραζβατζέ-ին, որը հայերեն հնչում է Վարազ-Վաչե: Այն փաստը, որ Վաչեն ուղեկցում է երկու եղբայրներին, մատնացույց է անում, որ նա նրանց հետ սերտ կապի մեջ էր. մասնակցե՞լ էր նա պատերազմին, թե ոչ, այնքան էլ կարևոր չէ: Կարելի է նրան ընդունել իբրև Փերսի որդու: Այդ նա է՝ Գեորգի վանականը, նույն ինքը՝ Վարազվաչեն կամ նրա եղբայր Վարազվաչեն: Քանի որ Թևդատի որդի Ցիցիկոսը, Փերսի որդի (կամ որդիներ) Գեորգի-Վարազվաչեն Վասիլի կողմից 1000 թ. տարվել էին Բյուզանդիա, Գեորգի-Վարազվաչեն՝ նախքան վանականի սքեմ հագնելը, արժանացել էր մագիստրոսի տիտղոսի և պատկանում էր, այսպիսով, բարձր աստիճանավորների կարգին, որտեղից էլ սկիզբ էին առնում նրա հարաբերությունները արքունիքի հետ և նրա աղետալի վախճանը:

[1] Smyrnakis, p. 42.

[2] Cedrenus, p. 487, 497-498.

Այն հատվածում, ուր Կեդրենոսը խոսում է Լիպարիտի մորը հասցված վիրավորանքի մասին, հարկ է առանձնացնել հետևյալ դրվագը. *ἦν δὲ ὁ Λιπαρίτης υἱὸς τοῦ ἐπὶ βασιλέως Βασιλείου ἐν τῷ πρὸς τὸν Γεώργιον πολέμῳ ἀναιρηθέντος Ὁρατίου τοῦ Λιπαρίτου* [«Լիպարիտը Օրատիոս Լիպարիտի որդին էր, որ զոհվել է Վասիլ թագավորի օրոք բռնկված Գեորգիոսի դեմ պատերազմում»][1]:

Այդուհանդերձ, Ὀράτιος-ը հիշատակված չէ Գեորգիի և Վասիլի միջև տեղի ունեցած պատերազմին վերաբերող պատումի մեջ, այն ճակատամարտի ընթացքում, որը հետևում է 1022 թ. սեպտեմբերի 11-ին (VI ինդիկտիոնին, աշխարհի [արարչագործության] 6531 թ.) πίπτει μὲν ὁ Λιπαρίτης (οὗτος γὰρ ἦν ἀρχιστράτηγος τῷ Γεωργίου) καὶ σὺν αὐτῷ πᾶν τὸ κρατιστεῦον ἐν Ἀβάσγοις [«զոհվում է Լիպարիտը (նա եղել է արքիստրատեգոս Գեորգիոսի <դեմ պատերազմում>), և նրա հետ միասին՝ Աբազգիայի բոլոր առաջնորդները»][2]: Բյուզանդացի տարեգիրը շփոթում է իրադարձությունները և անձանց:

Առաջին զինված ընդհարումը Գեորգիի հետ Վասիլ կայսրն ունեցել է 1021 թ., համաձայն Արիստակես [Լաստիվերտցու]՝ Պաղակացիս լճի շրջանում, ըստ Սամուել [Անեցու]՝ Շիրակի հարթավայրում, ճահճի («մորատ», հարկ է կարդալ՝ «մորուտ») մոտակայքում: Ըստ «Վրաց ժամանակագրության»՝ ճակատամարտը տեղի է ունեցել Շիրիմ գյուղում[3]: Հենց այդտեղ, այդ ճակատամարտում է, որ համաձայն Արիստակեսի, սպանվել է Ռատը՝ Լիպարիտի որդին, և «Վրաց ժամանակագրությունն» ավելացնում է ոմն Խուրսի անունը: Բյուզանդացիներն այն վերածել են Օրատիոսի:

Վասիլն այնուհետև նահանջել է դեպի Տրապիզոն, այնտեղ անցկացրել ձմեռը: Հաջորդ տարի բռնկվել է Նիկեփորոս Փոկասի և Քսիփեսի ապստամբությունը, որոնք պայմանավորվածություն ունեին Գեորգիի հետ: Վասիլին հաջողվել է ճնշել ապստամբությունը. 1022 թ. օգոստոսի 15-ին Նիկեփորոս Փոկասը սպանվել է Քսիփեսի կողմից, իսկ փոքր անց Քսիփեսն ընկել է կայսեր ձեռքը: Ահարկու ապստամբներից ձերբազատված Վասիլը շարժվել է Գեորգիի դեմ և նրա հետ [ճակատամարտել] Բասենում՝ Սալքորա գյուղի մոտակայքում՝ Ստպա տեղանքում: Կեդրենոսի երկում խոսքը վերաբերում է այս ճակատամարտին, որը և նա թվագրում է 1022 թ. սեպտեմբերի 11-ով:

[1] **Cedrenus**, p. 572.
[2] Ibid., p. 478.
[3] **Արիստակէս Լաստիվերտցի**, էջ 13, հմմտ. **Սամուէլ Անեցի**, էջ 105; **M. Brosset**, p. 306:



«Վրաց ժամանակագրությունը» հիշատակում է Ռատի եղբայր Զվիադի՝ իբրև Գեորգիի բանակի զորավարի[1]: Սամուելը նրան անվանում է Զուատ (Զվատ) և նշում, որ նա գերեվարվել է, իսկ այնուհետև՝ փրկագնվել Գեորգի թագավորի կողմից[2]: Յահյան ևս ճանաչում է իբերական բանակի այս հրամանատարին, որի անունը բարոն Ռոզենի հրատարակության մեջ կարդացվում է Ռ-ֆադ-էս՝ Զ-ֆադ-էս-ի փոխարեն և որը սխալմամբ այն ընդունել է իբրև Լիպարիտի անվան ձևափոխված տարբերակ[3]: Յահյայի խոսքերով Ռ-ֆադ-էս-ը (Զվիադը) հաշտության կնքման պատրվակով հրապուրելով կայսրին՝ նրան բերել է երկրի ներքին նահանգները և նենգորեն հարձակվել նրա վրա: «Վրաց ժամանակագրությունը» նշում է, որ Գեորգի թագավորը Զվիադին հանձնարարել է «հաշտության բանակցությունների ընթացքում» պատրաստ լինել յուրաքանչյուր շրջադարձի: Զվիադը մտել է Բասեն և ճամբարել: «Եթե կայսրը ցանկանում է հաշտություն,- ասում է նա,- թող այն կայանա. եթե նա ցանկանում է մարտնչել, նախապատրաստություններ տեսնենք»: «Վրաց ժամանակագրությունը» նենգության մեջ Զվիադին մեղադրում է ավելի նվազ չափով, քան թագավորի ազնվականներին առհասարակ, որոնք «լինելով կրկնակի նենգ, թագավորին խորհուրդ չէին տալիս հաշտություն կնքել»: Նրանք քայլում էին Վասիլի կողքին, բայց թագավորին խորհուրդ էին տալիս հենվել զենքի վրա: Կայսրը նրանց էր սպասում, ենթադրելով, որ նրանք ունեին խաղաղասիրական մտադրություններ: Սա հավաստում է, որ Յահյայի Ռ-ֆադ-էս-ը հիրավի «[Վրաց] ժամանակագրության» Զվիադն է:

Ըստ Կեդրենոսի, *Λιπαρίτης*-ը զոհվել է 1022 թ. սեպտեմբերի 11-ի ճակատամարտում: Նա ենթադրում է, որ խոսքը Լիպարիտի «որդու» մասին է: Վերջինս ուներ երկու որդի՝ Ռատը և Զվիադը: Բյուզանդացի տարեգիրը որոշ բաներ շփոթել է: Զվիադն էր, որ սեպտեմբերի 11-ին ընկել էր Վասիլի ձեռքը, իսկ այնուհետև՝ ազատ արձակվել և ոչ թե սպանվել: Նրա եղբայր Ռատը սպանվել էր այն ճակատամարտում, որը տեղի էր ունեցել նախորդ տարում՝ 1021 թ. Պաղակացիսի մոտ և ոչ թե 1022 թ. սեպտեմբերի 11-ի ճակատամարտում: Փերսի՝ Գեորգիի մեկ այլ իշխանի հանգամանքը մասնավոր է: Իբրև Նիկեփորոս Փոկասի կողմնակցի՝ նրան գլխատել են 1022 թ. օգոստոսի 15-ին՝ խռովության ճնշումից հետո:

[1] **M. Brosset**, p. 308.
[2] **Սամուէլ Անեցի**, էջ 105:
[3] **Yahya**, նշվ. աշխ., էջ 65, 381 (ծանոթագրությունը): **Ե. Հոնիգմանը** հավաստարապես սխալվում է նույնացնելով Ռ-ֆադ-էսին Փերսի հետ, տե՛ս **E. Honigmann**, Die Ostgrenze des Byzantinischen Reiches von 363 bis 1071 nach griechischen, arabischen, syrischen und armenischen Quellen, Bruxelles, 1935, S. 164):

## ՄԽԻԹԱՐՆԵՐԻ ԿՆԻՔՆԵՐԸ

Գ. Շլյումբերժեի «Բյուզանդական կայսրության կնիքագիտություն» աշխատության մեջ հրատարակված բազմաթիվ կնիքների պատկանելությունը բացահայտված չէ: Դրանց թվում են հետևյալ արձանագրությունները կրող երկու կնիք.

1. ΣΦΡΑΓΙ(ς) ΝΙΚΗΤΑ ΤΟΥ ΜΑΧΗΤΑΡΙ [«Նիկետասս Մախետարի կնիքը»]

2. Θ(εοτο)ΚΕ ΒΟΗΘΕΙ ΤΩ ΣΩ ΔΟΥΛΩ ΒΑΣΙΛ(ειω) ΒΕΣΤ(η) ΚΡΙΤ(η) (καὶ) ΚΑΤΕΠ(ανω) ΜΕΛΙΤ(ηνης) (καὶ) ΛΙΚΑΝΔ(ου) ΤΩ ΜΑΧΗΤ(α)Ρ[1] [«Աստվածածին, օգնիր Քո ծառա Վասիլին՝ վեստեսին և կրիտեսին (դատավորին) և Մելիտենեի ու Լիկանդոսի կատեպան Մախետարին»]:

Ուստի, առաջին կնիքը պատկանում է Նիկետաս Մախետարին, իսկ երկրորդը Մելիտենեի ու Լիկանդոսի վեստիտոս, դատավոր և կատեպան Վասիլ Մախետարին: Հնարավոր է, որ Նիկետասն ու Վասիլը եղբայրներ են, ոմն Մախետարի որդիներ:

Մինչդեռ Մախետարը այլ բան չէ, եթե ոչ հայկական անուն՝ **Մխիթար**, որն ինչպես և ***մխիթարիչ*** բառը «Սուրբ Հոգի» իմաստն ունի[2]: Մխիթարի որդիներից մեկը՝ Վասիլը, ինքն իրեն կոչում է Մելիտենեի ու Լիկանդոսի կատեպան և դա մտածել է տալիս, որ այդ ընտանիքը ծագումով Եփրատի շրջանից է:

Մենք չենք վարանում Մխիթարին նույնացնելու մի հայ ավատատիրոջ հետ, որը հիշատակված է Մատթևոս Ուռհայեցու աշխատության մեջ: Այս հեղինակը մեզ հասցրել է հետաքրքիր մի ավանդություն, ըստ որի Հովհաննես Չմշկիկը գահ բարձրանալով մեծ հարգանք է ցուցաբերել թագաժառանգների նկատմամբ, ինչպես և նրա նախորդ Նիկեփորոս Փոկասը, և «զորդիս Ռոմանոսի թագաւորին փախոյց ի յանօրէն թագուհւոյն ի Վասակաւան ի Յանձիք գաւառին. տարան զՎասիլն և զԿոստանդինն առ Սպրամիկն՝ մեծ Մխիթարայ մայրն, զի մի՛ դեղ մահու տացէ նոցա թագուհին և սպանանիցէ զնոսա»[3]:

Ըստ նույն հեղինակի տեղեկությունների, Չմշկիկը մտածում էր վանք մտնելու մասին, «և մինչդեռ զայս ամենայն զմտաւ ածէր, խորհեցաւ բարի խորհուրդս, որ ըստ կամացն Աստուծոյ էր, և յուղարկեաց ի Վասակաւանն, ի

¹ G. **Schlumberger**, Sigillographie, pp. 675 et 282.

² Հայր Վ. Լորանը կարծում է, որ կարող է վիճարկել Գ. Շլյումբերժեի հայտնաբերած այս անվան հայկական ծագումը և ապարդյուն աշխատում է այն արտածել հունարեն մի բառից, որի գոյությունն ավելի քան կասկածելի է, տե՛ս «Echos d'Orient», 1932, p. 348, n. 2:

³ **Մատթէոս Ուռհայեցի**, էջ 7:



գաւառն Յանձքայ և բերել տայր զՎասիլ և զԿոստանդին զորդիսն Ռոմանոսի թագաւորին, զորս փախոյց առ Սպրամիկն ի յահէ անօրէն թագուհւոյն, վասն զի չարաբարոյ էր յոյժ»[1]:

Ինչպե՞ս է ծագել այս առասպելական պատմությունը և ինչի՞ վրա է այն հիմնվում: Այդ բանը մեզ հետաքրքրում է ոչ միայն այս առիթով: Մեզ համար կարևորն այն է, որ այդտեղ հիշատակված է Մխիթար անունը: Ուրեմն Չմշկիկ կայսեր ժամանակ Վասակավանում Մխիթար անունով մի հայ ավատատեր էր ապրում, որն այնքան մեծ համարում ուներ, որ հայտնի էր նույնիսկ կայսերական արքունիքում: Ինչպիսին էլ լինի այս պատմության ճշմարտացիության աստիճանը, մենք չենք կարող կասկածել, որ Սպրամիկն ու Մխիթարը նույնքան պատմական անձինք են, որքան Վասիլն ու Կոստանդինը (1):

Վասակավանը հիշեցնում է Վասակի՝ այն իշխաններից մեկի, անունը, որոնք Լևոն VI-ի թագավորության ժամանակ իրենց ավատները փոխանակեցին Լիկանդոսի շրջանում գտնվող հողերի հետ: Հնարավոր է, որ Մխիթարը Վասակավանի տերն էր, որպես Վասակի տան սերունդ: Երիտասարդ թագաժառանգներին վստահել էին մեծ Մխիթարի մորը և ոչ թե կնոջը: Հայերեն շարադրանքը թույլ է տալիս «մեծ» բառը վերագրել ավելի շուտ Սպրամիկին, քան Մխիթարին և դրան տալ «ծեր», «տարիքն առած» իմաստը: Համենայն դեպս ծեր տիկին Սպրամիկը իր վայելած հարգանքով կարծես թե պարտական էր իր որդի Մխիթարի համարումին: Պետք է ընդունել, որ Հովհաննես Չմշկիկն անձամբ ճանաչել է Մխիթարին, քանի որ ծնվել էր նույն տարածաշրջանում: Ավելին, Մխիթարը պետք է որ բարձրաստիճան պաշտոնյա լիներ, քանի որ նրա որդիներն իրենց ճանաչել տալու համար օգտագործում են նրա անունը:

Ինչ վերաբերում է Վասիլի կատեպան լինելուն կամ նրա կնիքի թվականին, ապա դա որոշելու համար պետք է հիշել, որ Լիկանդոսի բանակաթեմը կազմակերպվել է քաջարի զորական և դրա առաջին ստրատեգոս Մելիասի (Մլեհ) կողմից, որը և վարել է այդ պաշտոնը մինչ իր մահը, որը վրա է հասել 934 թվականին: Մեկ այլ Մելիաս սխոլերի դոմեստիկոսի պաշտոնում ղեկավարել է Չմշկիկի առաջին արշավանքի զորաշարժերը և զոհվել 973 թվականին Ամիդ քաղաքի մերձակայքում: Նա նույն ընտանիքից էր և անկասկած Լիկանդոսի բանակաթեմի հիմնադրի որդին: Կայսեր ընտրությունը, որը նրան զորավար էր նշանակել, բացատրվում է այն բանով, որ այդ ժամանակ նա Լիկանդոսի ստրատեգոսն էր: Դա ակրիտական բանակաթեմ էր, որի հրամանատարներն առավել ընդունակ էին հարևան երկրներում ռազմական գործողությունները ղեկավարելու: Նույն պատճառով էր, որ Ռոմանոս Դիո-

¹ **Մատթէոս Ուռհայեցի**, էջ 29:

ցենեսը 1071 թ. այդ՝ սխոլերի դոմեստիկոսի, պաշտոնը վստահել էր հռչակավոր հայ իշխան Փիլարտոսին[1], որն այդ պահին բավականաչափ հզոր էր կայսեր ուշադրությանը արժանանալու համար: Հայտնի էր նաև Գեորգ Մելիասը, որը մի կնիքով իրեն պրոթոսպաթար է կոչում և որը, հնարավոր է, երկրորդ Մելիասի որդին է, եթե իհարկե չի նույնանում նրա հետ[2]:

Լիկանդոսի կառավարումը Մխիթարի ընտանիքին անցած պետք է լիներ Մելիասի [Մլեհի] ընտանիքի մարելուց հետո: Մխիթարի որդի Վասիլի կատեպանությունը պետք է որ վերաբերի մի ժամանակաշրջանի, որն ընկնում է 973 թ.՝ Մելիասի մահից, հետո: Իսկ մյուս կողմից մենք գիտենք, որ XI դարի կեսերին Մելիտենեի կատեպանը ոմն *Կրինոտես* էր: Միքայել Ասորին հաղորդում է, որ 1377 թ.= 1065 թ. երեք հարյուր հոգուց կազմված հայկական մի զորագունդ հարձակվել էր Մելիտենեի շրջանում գտնվող Կղաուդիա երկրի վրա ու սպանել *Կրինոտես* կատեպանին[3]:

Կրինոտեսը Կրինիտեսի աղավաղված ձևն է: Դա Բյուզանդիայում շատ հայտնի հայկական ընտանիք էր, որի օրրանը պետք է փնտրել Հանձիթի շրջանում. այդ բանը մենք մտադիր ենք ապացուցելու մեկ այլ հոդվածում (2): Մենք գիտենք նաև, որ 1043 թ. Մելիտենեի ստրատեգոսը Լևոն պատրիկն էր՝ Լամպրոսի որդին[4]: Վասիլը պետք է որ կատեպան եղած լիներ Լևոնից առաջ, քանի որ նրա հայրը՝ Մխիթարը, Չմշկիկ կայսեր ժամանակակիցն էր: Հետևաբար Վասիլի կատեպանության ծայրակետային ժամկետները պետք է լինեին 973-1034 թվականները: Լիկանդոսի բանակաթեմը, որն իր ստեղծման պահին բավականին ընդարձակ էր, հետագայում զրկվել է տարածքի մի մասից, որը 1016 թվականին զիջվել է Վասպուրականի թագավոր Սենեքերիմին: Հնարավոր է, որ հենց այդ էր պատճառը, որ նախկին բանակաթեմ-ստրատեգիան իջել էր կատեպանության կարգավիճակի: Եթե Գեորգ Մելիաս պրոտոսպաթարը չի նույնանում 973 թ. Մելիասի հետ, այլ նրա որդին և հաջորդն է, ապա նրա կառավարումը պետք է տեղադրվի 973 և 1016 թթ. միջև և, համապատասխանաբար, Վասիլի կատեպանության տարիները՝ 1016 և 1043 թթ. միջև:

Մենք գիտենք, որ Բուլղարիայի արքեպիսկոպոս Թեոփիլակտոսի նամակներից մեկը հասցեագրված է ոմն Մխիթարի՝ τῷ Μαχιτάρῃ: Միքայել Դուկաս կայսեր (1071-1078) հորդորանքով Թեոփիլակտոսը թողել էր իր աթոռը Կոստանդնուպոլիս տեղափոխվելու համար, քանի որ նրան էր վստահված կայսեր որդի Կոստանդնի կրթությունը: Մխիթարին հասցեա-

[1] **Anna Comnena**, VI, 9, p. 299.
[2] **Տե՛ս H. Grégoire**, «Byzantion», t. VIII (1933), p. 79 sqq.
[3] **Michel le Syrien**, trad. Chabot, III, p. 164.
[4] **Cedrenus**, II, p. 550.



գրված նամակը նախորդում է 1078 թ., քանի որ այն գրվել է Թեոփիլակտոսի Բուլղարիայում եղած ժամանակ: Այդ վավերագրի ոճը հետաքրքրական է. δόξαν, οἶμαι, τῷ ἀληθινῷ Παρακλήτῳ τὴν πρὸς ἡμᾶς ἔτι κατάβασιν ἀναβάλλεσθαι, ἵν' ἢ δοκιμάσῃ τὸν πόθον, ἢ δείξῃ μὴ ἀξίους τῆς αὐτοῦ χάριτος [«կարծում եմ, որ փառք <է հասնում> իսկական Մխիթարիչին, <որն> առայժմ հապաղում է իջնել, որպեսզի կամ <ըստ արժանվույն> գնահատի տենչանքը, կամ մատնանշի նրանց, ովքեր արժանի չեն իր շնորհին»][1]: Կարո՞ղ ենք արդյոք դա դիտել որպես ակնարկ հասցեատիրոջ անվանը՝ Մխիթար, որն, ինչպես ասացինք, նշանակում է παράκλητος:

Ինչպես ենթադրում է հայր Վ. Լորանը[2], Թեոփիլակտոսի այս նամակի հասցեատերը պետք է որ Պսելլոսի նամակների հասցեատեր վիզլայի դրունգար Μαχιτάριος-ը լինել (տե՛ս Βραχάμης և Βραχάμιος, Κουρτίκης և Κουρτίκιος): Պսելլոսի՝ նրան հասցեագրված նամակը[3] այնքան շոյիչ է, որ մենք ստիպված ենք նրան դիտել որպես ազդեցիկ ու մեծ համբավի տեր մի մարդու: Հայր Լորանը հիշատակել է մի քանի անձ ևս, որոնք կրել են այդ անունը և որոնք, անկասկած, պատկանել են նույն ընտանիքին: Դրանցից երկուսը՝ 1082 թ. պրոտոանթիպատոս և կայսերական նոտար Գեորգն ու 1087 թ. վեստարքես Միքայելը, կարծես թե Թեոփիլակտոսի ու Պսելլոսի նամակների հասցեատիրոջ որդիներն են: Նրանց ապրած ժամանակաշրջանն ու այն գրական կրթությունը, որն անհրաժեշտ էր այդ պաշտոնները վարելու համար, թույլ են տալիս նրանց որդիներ համարել այդ բարձրաստիճան մարդու, որ այդքան հարգված էր նրա ժամանակակից երկու գիտնականների կողմից: Մյուս երկուսը՝ Հովհաննեսն ու Լևոնը, որոնք ապրել են XII դարում, ժամանակագրական առումով շատ մերձ են այն խնդրո առարկա անձանց, որպեսզի մենք վերջիններիս չկապենք դրանց հետ: Կայսերական գրասենյակի մի հոգևորական, որը հայտնի է եղել 1361 թ. ու 1383 թ., և որը, հայր Լորանի կարծիքով, կարող է նույնանալ XIV դարում պատրիարքի գրագիր ու նոտար Ալեքսիոսի հետ, կարծես թե այդ ընտանիքի վերջին շառավիղն է:

Ավարտելուց առաջ ասենք, որ մի Մխիթար հիշատակված է Հալեպի ամիրա Թութուշի որդու՝ Ռադվանի բանակում: Նա մասնակցել է ամիրայի՝ արշավանքին ընդդեմ Եդեսիայի, որի կառավարիչն այդ ժամանակ հայ իշխան Թորոս կյուրոպաղատն էր: Այդ Մխիթարը կրում էր պատրիկի պատվաստիճան[4], և դա վկայում է այն մասին, որ նա նախապես ծառայել էր Բյուզանդիային: Հնարավոր է, որ նա նույնպես պատկանում էր մեզ հետաքրքրող ընտանիքին, որովհետև այդ պատվանունը բնորոշ չէ հայ ավատական միջավայրին:

[1] **Migne, P. G.**, CXXVI, col. 312.
[2] «Echos d'Orient», 1932, p. 348.
[3] **C. Sathas, Μεσαιωνικὴ Βιβλιοθήκη**, V, p. 352.
[4] **Մատթեոս Ուռհայեցի**, էջ 251:

## ԲՈՒԼՂԱՐՆԵՐԻ ԱՐՔԱ ՍԱՄՈՒԵԼ ՀԱՅԿԱԶՆԸ

Վասիլ II կայսեր դեմ Սամուել Կոմսաձագի մղած հերոսական պայքարն այնպես, ինչպես մեզ է հասցրել Կեդրենոս-Սկիլիցեսը, բազմաթիվ կարևոր հարցերում վեճերի տեղիք է տալիս:

Ուսումնասիրողները գերագնահատել են բյուզանդացի ժամանակագրին ի վնաս այլ արժեքավոր աղբյուրների: Արաբ պատմիչ Ալ-Մաքինը (գիտական աշխարհին մատչելի է դարձել XVII դարից սկսած)[1] մեծ վստահության չի արժանացել, չնայած այն արժեքավոր տեղեկություններին, որ նա հաղորդել է: Սա XIII դարի բանաքաղ է, այսինքն ապրել է Կեդրենոսից շատ ավելի ուշ, սակայն, ինչպես մենք արդեն գիտենք, նա իր տեղեկությունները քաղել է գերազանց մի աղբյուրից՝ Յահյա իբն Սաիդ իբն Յահյա ալ-Անտաքիի[2] երկից: Բուլղարական պատերազմի մասին վերջինիս հաղորդած տեղեկությունները իսկական հայտնություններ են թե՛ նյութի հարստության, թե՛ ժամանակագրական ճշգրտության առումով: Այդուհանդերձ ուսումնասիրողները շարունակել են ծայրահեղ վստահությամբ ընդունել Կեդրենոսի հաղորդած տեղեկությունները համարյա բոլոր այն դեպքերում, երբ դրանք հակասում էին Յահյայի հաղորդած տեղեկություններին:

Հայ պատմիչ Ասողիկին դիտել են ոչ ավելի բարյացակամորեն. շարունակ նույն արհամարհանքը, նույն թերահավատությունը մի հեղինակի նկատմամբ, որը, այնուհանդերձ, եղել է թե՛ Վասիլի և թե՛ Սամուելի ժամանակակիցը: Ասողիկի աշխատությունը հրատարակվել է 1859 թ.[3], սակայն դրանից առաջ Մ. Չամչյանը ի մի է բերել բուլղարական դեպքերի վերաբերյալ նրա հաղորդած տեղեկություններն իր «Հայոց պատմության» մեջ (1), որը լույս է ընծայվել Էդ. Գիբբոնի «Հռոմեական կայսրության անկման և կործանման պատմությունը» աշխատության հետ գրեթե միաժամանակ (2):

Այստեղ մենք նպատակ չունենք կանգ առնելու մեզ հետաքրքրող հարցի շուրջ գոյություն ունեցող հարուստ գրականության վրա (3): Գ. Շլյումբերժեն սպառիչ կերպով օգտագործել է ձեռքի տակ եղած բոլոր աղբյուրներն իր հիմնարար աշխատության մեջ[1]: Հոյակապ շարադրող, նա հավասար բարյացակամությամբ է ընդունել անհավասար արժեք ունեցող նյութերը, առանց առանձնապես մտահոգվելու հակասությունները կամ տարամիտությունները համաձայնեցնելու մասին: Եթե նույնիսկ երբեմն միջամտում է քննադատական խոսք ասելու համար, ապա միշտ՝ Կեդրենոսի օգտին, որովհետև, նրա կարծիքով, անտիոքյան ծագում ունեցող հեղինակը, ինչպիսին էր Յահյան, չէր կարող Կեդրենոսի պես տեղյակ լինել այն ամենին, ինչ տեղի էր ունենում բուլղարական ճակատում: Բայց որտեղի՞ց է ուրեմն գալիս անտիոքցի հեղինակի անթերի ժամանակագրությունը: Արդյոք ժամանակագրական ճշգրտությունը չէ՞ այն լավագույն չափանիշը, որով կարելի է դատել պատմիչի մասին:

Բուլղար հռչակավոր պատմաբան՝ հանգուցյալ Վ. Զլատարսկին[2], իր կարեցածն է արել, որպեսզի համաձայնեցնի հակասություններն ու հաղթահարի այն դժվարությունները, որոնք առաջացնում են մեր աղբյուրները, բայց նա այդ գործն արել է այլևայլ կանխակալ մոտեցումներով, այնպես որ մենք չենք կարող կիսել նրա տեսակետները բազմաթիվ հարցերի վերաբերյալ: Հայտնի աղբյուրների ուսումնասիրությունը, որ մենք կատարել ենք համեմատական մեթոդով, առանց որևէ կողմնապահության, մեզ բերել է այլ արդյունքի: Կոմսաձագերի ծագման հարցին անցնելուց առաջ, հետևենք ռազմական իրադարձությունների ընթացքին և ավարտենք Սամուելի դուստրերի պատմությամբ:

### I

### ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ ՃՇԳՐՏՈՒՄ

Նախ՝ պետք է պարզել թե ե՞րբ են հայտնվել Կոմսաձագ եղբայրները:

Ըստ Կեդրենոսի տվյալների Ռոմանոս II կայսեր մահից՝ 963 թ. մարտի 15-ից հետո բուլղարների արքա Պետրոսը, որը կորցրել էր կնոջը, երկարաձգում է կայսրերի հետ իր պայմանագիրը՝ նրանց որպես պատանդ հանձ-

[1] **Al-Makin** (=El-Macine), Historia saracenica, trad. latine par Thomas Erpenius, Leyden, 1625; L'histoire Mahométane de Macine, trad. par Pierre Vattier, Paris, 1657.

[2] Հատվածներ Յահյա Անտիոքցու ժամանակագրությունից տե՛ս բարոն **Виктор Р. Розен**, Василий Болгаробойца, СПб., 1883, աշխատության մեջ, ուղեկցված բանիմացությամբ աչքի ընկնող ծանոթագրություններով: «Patrologia Orientalis»-ի 18 և 23-րդ հատորներում զետեղված է երկասիրության արաբերեն բնագիրը և դրա ֆրանսերեն թարգմանությունը (Ի. Կրաչկովսկու և Ա. Ա. Վասիլևի աշխատությամբ):

[3] **Ասողիկ** (Ստեփանոս Տարոնացի), Պատմութիւն տիեզերական, հրտ. Կ. Շահնազարյանցի, Փարիզ, 1859: Քննական երկրորդ հրատարակությունը Ստ. Մալխասյանցի, Ս. Պետերբուրգ, 1885: Մ. Էմինի ռուսերեն թարգմանությամբ՝ Մոսկվա, 1864, Հ. Գելցերի և Ա. Բուրկհարդի գերմաներեն թարգմանություն, Լայպցիգ, 1907: Տե՛ս նաև Է. Դյուլորյեի (Ա, Բ գրքեր, հեստմահու հրտ.) 1883 և Ֆ. Մակլերի (Գ գիրքը), Փարիզ, 1917 ֆրանսերեն թարգմանությունը:

[1] G. Schlumberger, L'épopée byzantine I, Basile II, Paris, 1900.

[2] **В. Н. Златарски, История на Българската държава, т. 1, часть 2, [София, 1918].**

նելով իր որդիներ Բորիսին ու Ռոմանոսին: Քիչ անց Պետրոսը մահանում է, և նրա որդիները ետ են ուղարկվում հայրենիք Կոմսաձագ եղբայրների հավակնություններին դիմագրավելու[1]:

Կայսրերն էին Վասիլն ու Կոստանդինը: Հետևաբար, պայմանագիրը կնքվել էր նրանց մոր կարճատև խնամակալության ընթացքում՝ մարտի 15-ից մինչև Նիկեփորոս Փոկասի գահակալությունը՝ 963 թ. օգոստոսի 16-ը: Իրական խնամակալը համբավավոր պարակիմոմենոս Հովսեփոս Բրինգասն էր: Պայմանագրի գաղափարը նա էր հղացել և նա էր պահանջել, որպեսզի բուլղար արքայազունները հանձնվեին որպես պատանդ, որոնցից մեկին՝ Ռոմանոսին, նրա հրամանով ներքինացրել են: Նիկեփորոս Փոկասը, գահ բարձրանալով, վտարում է Բրինգասին, որը, վանք աքսորվելով, մահանում է երկու տարի անց[2]: Այսպիսով, ճիշտ 963 թ. էր, որ Բորիսն ու Ռոմանոսը պատանդ էին հանձնվել:

Ինչ վերաբերում է նրանց վերադարձին, ապա դրա մասին Կեդրենոսը հայտնում է նրանց հոր՝ Պետրոսի, մահն արձանագրելուց հետո: Հետևաբար Վ. Զլատարսկին կարծում է, որ նրանք ետ էին ուղարկվել 969 թ. հունվարի 29-ին մահացած Պետրոսին հաջորդելու համար[3]: Նրանց վերադարձի տարեթիվը կարելի է մի քիչ առաջ բերել: 967 թ. հունիս ամսին Նիկեփորոս կայսրը Թրակիա է մեկնում, որտեղից նա գրում է Պետրոսին, որ նա չպետք է թույլ տա, որ «թյուրքերն» (4) անցնեն Իստրոս (=Դանուբ) գետը՝ երկիրն ասպատակելու: Պետրոսը որոշակիորեն մերժում է կայսեր առաջարկը, ասելով, որ երբ այդ բարբարոսները հարձակվել էին իր երկրի վրա, կայսրը իրեն չէր օգնել, իսկ այժմ ինքը խաղաղության դաշինք է կնքել նրանց հետ և ոչ մի շահ չունի կայսեր համար նրանց դեմ կռվելու[4]: Եթե նրա որդիներն այդ ժամանակ դեռևս գտնվեին Կոստանդնուպոլսում, Պետրոսը, անկասկած, ավելի զուսպ կերպով կպատասխաներ կայսերը՝ պատանդների կյանքը չվտանգելու համար: Հնարավոր է, որ Նիկեփորոսը նրանց ազատած լիներ 966 թ. սիրիական արշավանքից հետո[5]:

[1] Cedrenus, II, p. 347.

[2] Ibid., pp. 435 et 351. S. Runciman, A History of the first Bulgarian Empire, p.217, սխալվում է ասելով՝ «ե՞րբ է Ռոմանոսը գերեվարվել և ե՞րբ է ամորձատվել, անհայտ է»:

[3] В. Н. Златарски, op. cit., c. 592 (ըստ Иор. Иванов, Български старини из Македония, с. 83).

[4] Cedrenus, II, p. 372; Leo Diaconus, p. 62; Zonaras, p. 513.

[5] Cedrenus, II, p. 361, τὸ δεύτερον ἔτος τῆς αὐτοῦ βασιλείας ἐν μηνὶ Ἰουλίῳ [«նույնի թագավորության երկրորդ տարվա հուլիս ամսին»] չի համապատասխանում ἰνδικτιῶνος ζ'-ին: VII ինդիկտիոնի հուլիս ամիսը = 964 թ. հուլիս ամսին: Նիկեփորոսի թագավորությունը սկսվել է 963 թվականի օգոստոսի 18-ին: Հետևաբար 964 թ. հուլիս ամսին մենք նրա թագավորության դեռևս առաջին տարում ենք և ոչ թե երկրորդ: IX ինդիկտիոնի գարունը = 966 թ. համապատասխանում է նրա թագավորության երրորդ տարվան, ինչպես ճիշտ նշում է Կեդրենոսը,



Համենայն դեպս, արքայազունների վերադարձը, լինի դա 969 թ., թե ավելի վաղ, ոչ մի կապ չունի Կոմսաձագ եղբայրների հետ:

Այս հարցում Կեդրենոսը սխալվել է: Ընդ որում, քիչ անց, նա ուղղել է իր սխալը, նկարագրելով Բորիսի և Ռոմանոսի պայքարն ընդդեմ ռուսների և ոչ թե Կոմսաձագերի:

Ինչպես մենք տեսանք, Նիկեփորոս Փոկասը 967 թ. Պետրոսից օգնություն էր խնդրում «թյուրքերի» դեմ պայքարելու համար: Ուրեմն կայսերն անհանգստացողները թյուրքերն էին և ոչ թե բուլղար ապստամբները: Պետրոսը մերժել է այնպիսի կտրականությամբ, որ կարելի է կարծել, որ նա ոչ միայն հաշտության, այլև բարեկամության դաշինք էր կնքել կայսրության թշնամի թյուրքերի հետ: Նիկեփորոսը ստիպված է եղել դաշնակցելու ռուսների հետ բուլղարների և նրանց դաշնակից թյուրքերի դեմ պայքարելու համար և դրդել նրանց ներխուժել Բուլղարիա: 968 և 969 թթ. ռուսները ներխուժել են Բուլղարիա, ասպատակել և, գերեվարելով Բորիսին և Ռոմանոսին (Պետրոսն արդեն մահացել էր), պատրաստվում էին այնտեղ մնալ[1]:

Ըստ Յահյայի, բուլղարներն ասպատակել էին կայսրության գավառները Նիկեփորոսի արևելքում եղած ժամանակ: Նա չի հիշատակում թյուրքերին, սակայն նրա շարադրանքից զգացվում է, որ բուլղարներին օգնում էին նոր դաշնակիցները[2]: Ըստ նույն հեղինակի, Նիկեփորոսն արշավում է նրանց դեմ և ջախջախում, իսկ հետո դաշինք կնքում ռուսների հետ և համոզում նրանց արշավելու բուլղարների դեմ: Ռուսները հաղթում են, գրավում Դորոստոլը ( = T. Isïrä) քաղաքը, գերեվարում նաև Բուլղարիայի արքա Սամուելի երկու որդիներին, որոնք այնտեղ էին գտնվում[3]:

Հովհաննես Չմշկիկը՝ Փոկասի հաջորդը, հաղթել է ռուս զավթիչներին և ստիպել է նրանց հեռանալ Բուլղարիայից: Գերիների թվում էին Բորիս արքան, նրա կինն ու երեխաները: Ռոմանոսը չի հիշատակվում, սակայն, ինչպես վկայում է Յահյան, նա իր եղբոր հետ էր[4]: Բորիսին զրկում են արքայական պատվից, փոխարենը տալով մագիստրոսի պատվաստիճան:

Այսպիսով, այս իրադարձությունների կապակցությամբ Կոմսաձագ եղ-

էջ 363 և 364: Ժամանակագիրը շփոթել է արշավանքի սկիզբը՝ VII ինդիկտիոն = 964 թ., ավարտի հետ՝ երկրորդ տարվա հուլիսի = 965 թ. (տե՛ս Յահյա, էջ 796, Մոպսուեստիա քաղաքի գրավումը 965 թ. հուլիսի 13-ին):

[1] Cedrenus, II, pp. 372 et 383.

[2] Ըստ Zonaras-ի, III, pp. 512-513. Τῶν δὲ Τούρκων, τῶν Οὔγγρων δηλαδή, τὰ Θρακῷα ληιζομένων [«Թյուրքերից, այսինքն՝ հունգարներից, որոնք կողոպտում էին Թրակիան»]:

[3] Yahya = Patrologia orientalis, p. 813. Պետք է նկատել, որ Յահյան չգիտի Պետրոսի անունը և նրան միշտ Սամուել է անվանում: Իսկ իրական Սամուելը նրա մոտ միշտ հայտնվում է Կոմսաձագ անվամբ:

[4] Leo Diaconus, p. 78; Cedrenus, II, p. 396. Yahya = Patrologia orientalis, p. 833. Չմշկիկն ազատեց «Սամուելի (հմմ՛ Պետրոսի) երկու որդիներին»:

բայրները չեն հիշատակվում: Նրանք չեն գործում ո՛չ հօգուտ, և ո՛չ ի վնաս գահաժառանգ եղբայրների: Ակներևաբար, այդ ժամանակաշրջանում նրանք դեռևս ասպարեզ չէին իջել: Կեդրենոսի համապատասխան հատվածը հերքվել է հենց իր՝ հեղինակի կողմից[1]:

Ըստ Կեդրենոսի՝ Կոմսաձագերը հայտնվում են Չմշկիկի մահից հետո. τῶν δὲ Βουλγάρων ἅμα τῇ τελευτῇ τοῦ βασιλέως ʼΙωάννου ἀποστατησάντων, ἄρχειν αὐτῶν προχειρίζονται τέσσαρες ἀδελφοί [«երբ բուլղարները Հովհաննես կայսեր մեռնելուն պես անջատվեցին, նրանց ջանացին իշխել չորս եղբայրները»], այսինքն՝ Հովհաննես Չմշկիկի մահից հետո բուլղարները թշնամացել էին, և չորս եղբայրները հափշտակել էին իշխանությունը: Արքայական ընտանիքից մնացել էին միայն Բորիսն ու Ռոմանոսը, սակայն նրանք գտնվում էին Կոստանդնուպոլսում: Քիչ անց մեր ժամանակագիրը գրում է. ἐπεὶ συνέβη τὸν βασιλέα ʼΙωάννην ἀποθανεῖν, ἐκεῖθεν ἀποδιδράσκουσιν καὶ τὴν Βουλγαρίαν φθάσαι ἠπείγοντο [«երբ պատահեց Հովհաննես կայսեր մահը, նրանք փախան այնտեղից և շտապեցին հասնել Բուլղարիա»][2]: Թվում է, պատմիչն ինքն իրեն հակասում է: Եթե Բորիսն ու Ռոմանոսը փախուստի էին դիմել Չմշկիկի մահից հետո, ապա ինչու՞ պետք է իշխանությունն անցներ չորս եղբայրներին և ոչ թե գահաժառանգներին: Բարեբախտաբար Դևոլի եպիսկոպոս Միքայելը ճշտում է դեպքերը. ἐπεὶ συνέβη τὸν βασιλέα ʼΙωάννην ἀποθανεῖν <καὶ τὸν Σκληρὸν ἀποστατῆσαι τοῦ βασιλέως καὶ συγγενοῦς αὐτῶν Βασιλείου εἰς τὰ ἐπὶ Θρᾴκην χωρία ἐξιόντος>, ἐκεῖθεν ἀποδιδράσκουσιν καὶ τὴν Βουλγαρίαν

[1] S. Runciman (op. cit., p. 218) պնդում է, որ Կեդրենոսի համապատասխան հատվածը ընդմիջարկված է: Սակայն քանի որ այդ հատվածը ունի նաև Զոնարասը (III, p. 495), մենք կարծում ենք, որ դա թյուրիմացություն է, որի պատճառը Բորիսի և Ռոմանոսի առաջին և երկրորդ ազատագրման շփոթությունն է:

Վ. Զլատարսկին (op. cit., p. 218) ընդունել է Կեդրենոսի սխալը առանց այն ուղղելու, ուստի և Կոմսաձագերի ասպարեզ իջնելը թվագրել է 969 թ., Բուլղարիայի արևմտյան մասում անկախ պետության գոյության Մ. Դրինովի խնդրահարույց տեսությանը համապատասխան: 973 թ. Օտտոն կայսրը որդու հետ եկել է Քվեդլինբուրգ և այնտեղ ապրիլի 23-ին տոնել Զատիկը: Այլ պատվիրակությունների հետ միասին նրան այցելել է նաև բուլղարների մի պատվիրակություն՝ venerunt ad eos legati Graecorum, Beneventorum, Ungariorum, Bulgariorum, Danorum, Sclavorum cum regiis muneribus [«եկան նրանց մոտ հույների, Բենեվենտի բնակիչների, հունգարների, բուլղարների, դաների և սլավոնների պատվիրակները թագավորական ընծաներով»] (Pertz, Monumenta Germaniae Historicae Scriptores, t. III, p. 62): Ըստ Վ. Զլատարսկու, op. cit., p. 641, բուլղարական պատվիրակության առաքելությունն էր կայսրը տեղեկացնել, որ արևմտյան Բուլղարիան վերականգնել է իր անկախությունը: Սակայն շարադրանքը հնարավորություն չի տալիս նման հեքադրություններ անելու: Սխալ կլիներ «վկայակոչել» այդ հատվածը, ուր օտարերկրյա բարեկամների «թվարկումը» ընթանում է որոշ հռետորական չափազանցություններով:

[2] Cedrenus, II, pp. 434-435.



φθάσαι ἠπείγοντο[1] [«երբ պատահեց Հովհաննես կայսեր մահը <և Սկլերոսի անջատումը թագավորից, և նրանց ազգակից Վասիլը մեկնեց Թրակիայի տարածքները>, նրանք փախան այնտեղից և շտապեցին հասնել Բուլղարիա»]:

Անկյունավոր փակագծերի մեջ առնված բառերը Միքայել եպիսկոպոսինն են: Դրանք ճշգրտում են բուլղար թագաժառանգների փախուստի ժամանակը, այն տեղադրելով ոչ միայն Չմշկիկի մահից, այլև Սկլերոսի ապստամբությունից հետո, այն ժամանակ, երբ Վասիլ կայսրը մեկնել էր Թրակիա: Վասիլի առաջին արշավանքը բուլղարների դեմ տեղի է ունեցել 968 թվականին: Հետևաբար սա է Բորիսի և Ռոմանոսի փախուստի ճշգրիտ թվականը:

Բանտարկյալների փախուստի վարկածին մենք չենք վստահում: Վասիլը նրանց հատուկ ազատ էր արձակել՝ Կոմսաձագ եղբայրներին հակադրելու և Բուլղարիայում ներքին պատերազմ հարուցելու համար: Ճշմարտությունը բացահայտվում է Կեդրենոսի բնագրում անհաջող տեղադրված[2] մի հատվածից, որի մասին մենք խոսել ենք վերը և ուր ուղղակիորեն ասվում է, որ «Պետրոսի որդիները ետ ուղարկվեցին՝ [«հորենական թագավորությունը վերագրավելու և խանգարելու Կոմսաձագերի առաջխաղացումը»] ἐπέμφθησαν ἐφ᾽ ᾧ τῆς πατρῴας ἀντίσχεσθαι βασιλείας, καὶ τοὺς Κομητοπούλους ἀπείρξουσι τῆς πρόσω φορᾶς: Այս տեղեկությունը մեր բանաքաղը վերցրել է մի երկրորդ աղբյուրից, բայց, տեսնելով դրա անհամապատասխանությունն իր օգտագործած գլխավոր հեղինակի հետ, այն անհաջող կերպով տեղադրել է մի համատեքստում, ուր այն անելիք չունի:

Բորիսին սպանել է մի բուլղար՝ նրան հույնի տեղ դնելով: Ռոմանոսը փախուստի է դիմել, նրան ընդունել են յուրայինները և արքա հռչակել, ինչպես մենք կտեսնենք, Սիմեոն անվան ներքո:

Կոմսաձագ եղբայրները չորսն էին. Դավիթը, Մովսեսը, Ահարոնն ու Սամուելը: Մի վալախ սպանել է Դավթին Καλαὶ δρύς [«Գեղեցիկ կաղնիներ»] կոչվող վայրում[3], Մովսեսը վախճանվել է Սերրե քաղաքի պաշարման ժամանակ, իսկ Ահարոնին սպանել է Սամուելը Ռամետանիցայում:

Սամուելը, դառնալով երկրի միակ տերը և օգտվելով այն հանգամանքից, որ բյուզանդական բանակը զբաղված էր Սկլերոսի ապստամբությունը

[1] V. B. Prokič, Die Zusätze in der Handschrift des Ioannes Skylitzes, München, 1906.

[2] Կեդրենոսն այն անպատեհ կերպով տեղադրել է Նիկեփորոս Փոկասի մահից հետո (Cedrenus, II, p. 347):

[3] Կաստորիայի և Պրեսպայի միջև գտնվող այս վայրը մեր կարծիքով համապատասխանում է Κολυδρός-ին (Καλοδρύς-ի փոխարեն), որի պաշտպանությունը վստահված էր Դեմետրիոս Տեյքոնասին, ըստ Միքայել Դևոլացու. դրա որտեղ լինելը Վ. Պրոկիչը չի կարողացել պարզել:

ճնշելով, ասպատակել է «ամբողջ արևմուտքը, ոչ միայն Թրակիան, Մակեդոնիան և Թեսաղոնիկեի շրջանը, այլև Թեսալիան, Հելլադան և Պելոպոնեսը: Նա գրավեց բազմաթիվ ամրոցներ, դրանց թվում նաև Լարիսան՝ ամենակարևորը, որի բնակիչներին նա քշեց Բուլղարիա և ստիպեց մտնել իր բանակը Բյուզանդիայի դեմ կռվելու համար»:

Մեր *ժամանակագիրն այստեղ հավաքել է տարբեր ժամանակներին* վերաբերող իրադարձություններ: Վասիլի բուլղարական արշավանքը նշանակետ կծառայի այդ իրադարձությունների թվականները ճշգրտելու հարցում: Այս արշավանքի տարեթիվը հստակ է. դա 986 թվականն է[1]: Այս թվականի օգտին կարելի է ավելացնել մեկ փաստարկ ևս: 985 թ. կայսրը Անտիոքի դուքս է նշանակում մագիստրոս Լևոն Մելիսենոսին: Մեկ տարի անց նա նրան փոխարինում է Վարդաս Փոկասով, վերջինիս սխալների դոմեստիկոսի պաշտոնից ազատելուց հետո: Հիջրայի 376 թ. Անտիոքի նոր դուքսը հաշտություն է կնքում Հալեպի իշխան Մա'ալի-իբն-Համդանի հետ[2]: Հիջրայի 376 թ. սկսվում է 986 թ. մայիսի 13-ին: Ինչպես երևում է, կնքված դաշնագրով արևելքում խաղաղություն վերահաստատելուց հետո, հիջրայի 376 թ. սկզբին Վասիլը զենքն ուղղում է բուլղարների դեմ: Նա Բուլղարիա է ներխուժում օգոստոս ամսին:

Ըստ Կեդրենոսի կայսրն անցնում է παρὰ τῇ ʽΡοδόπῃ καὶ τῷ ποταμῷ ʽΈβρῳ [«Ռոդոպական <լեռներով> և Հեբրոս գետով»], իր թիկունքում է թողնում Լևոն Մելիսենոսին՝ կապանը պահելու, իսկ ինքը հովիտներով ու անտառներով շարժվում է դեպի Տրիադիցա՝ նախկին Սարդիկե (այսօրվա Սոֆիա) քաղաքը և բանակում Ստոպանիոն կոչվող վայրում: Սամուելը, որն ամրացել էր շրջակայքի լեռներում, չէր համարձակվում իջնել դաշտավայր և աշխատում էր կայսերը ծուղակը գցել: Վասիլը պատրաստվում էր պաշարել Տրիադիցան, երբ Կոնստանտինոսը հայտնում է նրան, որ Լևոն Մելիսենոսը լքել է իր պահակետը և բռնել մայրաքաղաքի ճանապարհը, այնտեղ իրեն կայսր հռչակելու նպատակով: Այդ լուրից անհանգստացած կայսրը շտապ նահանջում է դեպի Փիլիպպուպոլիս: Սամուելը օգտվում է կայսերական բանակի անկանոն նահանջից և հարձակվում: Նա ջախջախում է բյուզանդական բանակը և գավթում կայսեր ճամբարն ու բեռները:

[1] Հետազոտողները վերջապես հրաժարվել են 981 թվականից՝ Ալ-Մաքինի, Յահյայի և Ասողիկի տված ճշգրիտ թվականի օգտին: Վ. Վասիլևսկին նույն թվականին (986) էր հանգել ելնելով «Ստրատեգիկոնի» մի հատվածից («Журнал министерства народного просвещения», 1881, հուլիս, էջ 122-125):

S. Runciman-ն ընդունել է ճիշտ թվականը իր «A History of the first Bulgarian Empire», 1930, p. 224, աշխատության մեջ, սակայն իր «Byzantine civilisation» (1933, p. 49), աշխատության մեջ անուշադրության պատճառով պահպանել է հին թվականը:

[2] Яхья ( =В. Розен, Василий Болгаробойца), с. 20.



Փիլիպպուպոլիս հասնելով, կայսրը Մելիսենոսին գտնում է իր պաշտոնում, որը նա կատարում է հավատարմությամբ: Զրպարտիչը պատժվում է, իսկ արշավանքը՝ ձախողվում: Այս ամենը տեղի է ունեցել 986 թ. օգոստոսի 17-ին:

Այս պատմությունը չափից ավելի միտումնավոր է: Կոնստանտինոսի միջամտությունը հորինվել է Սամուելի կողմից պարտություն կրած կայսեր ինքնասիրությունը խնայելու համար: Արդեն Ա. Հիլֆերդինգն[1] այն կասկածի է ենթարկել: Նույն պատճառով թաքցվել է Վասիլի պարտությունը Տրիադիցայի մոտ: Հետևաբար փոխվել է նաև արշավանքի ուղերթը՝ համոզելու համար, որ կայսրը Տրիադիցա չէր հասել, այլ կանգ էր առել Ստոպոնիոնում և որ նա այդտեղ էր եկել Փիլիպպուպոլսից: Դա չի համապատասխանում իրականությանը: Մենք գիտենք, որ Լևոն Մելիսենոսը պաշտոնավարում էր Սերրեում և ոչ թե Փիլիպպուպոլսի ճանապարհին: Ասում են, որ «Մովսեսը սպանվել է Սերրե քաղաքից նետված քարի հարվածից, այն ժամանակ, երբ ինքը պաշարել էր այդ քաղաքը»՝ Μωσῆς δὲ τὰς Σέρρας πολιορκῶν λίθῳ ἀπὸ τοῦ τείχους βληθεὶς ἐτελεύτησε: Միքայել Դևոլացին ավելի ճշգրիտ է. «ձիուց վայր ընկած Մովսեսին խողխողել է զորավար Լևոն Մելիսենոսի զինվորներից մեկը»՝ συμπεσόντος αὐτῷ τοῦ ἵππου ὑπὸ τινος τῶν ὑπὸ τὸν δοῦκα Μελισσηνὸν ἀποσφάττεται[2]: Լևոն Մելիսենոսը Անտիոքից ետ էր կանչվել բուլղարական արշավանքին մասնակցելու համար և հենց այդ կապակցությամբ նա 986 թ. գտնվում էր Սերրեում, իսկ հաջորդ տարի նա Փոկասի ապստամբության պատճառով արդեն Փոքր Ասիայում էր: Լևոն Սարկավագը տարբերակում է կայսեր հարձակման և նահանջի ճանապարհները, առանց դրանք ճշտելու[3]: Կեդրենոսն իրավացի է, երբ ասում է, որ կայսրը հարձակվել էր Փիլիպպուպոլսով, սակայն սխալվում է նրան նույն ճանապարհով ետ ուղարկելիս: Հնարավոր է, որ նրա հետդարձի ճանապարհը անցնում էր Մեստայով և Ստրումայով[4]:

Մի բան կասկածից վեր է. Մովսեսը սպանվել է 986 թ. Սերրեի պարիսպ-

[1] А. Гильфердинг, История сербов и болгар. Произведения, I, с. 208, см. В. Розен, op. cit., с. 172.

[2] Cedrenus, II, p. 455 = V. Prokič, Die Zusätze, S. 8.

[3] Leo Diaconus, p. 171.

[4] Cedrenus, II, p. 436, ասում է՝ կայսրը մտել է Բուլղարիա «Ռոդոպիի և Հեբրոսի մոտակայքում գտնվող շրջանով» և որ նա հասել է Ստոպոնիոն τὰ μεταξὺ Τριαδίτζης ... στενὰ καὶ τὰς λόχμας [«մինչև Տրիադիցա ընկած խնձահովիտներով և անտառներով»]: Այս վերջին բառը ցույց է տալիս այն վայրը, որը Լևոն Սարկավագը կոչում է λόχμη, «Տրիադիցայից մեկ օրվա ճանապարհի վրա», հետևաբար 30-35 կմ հեռու, մինչդեռ Ստոպոնիոնը գտնվում է այս նույն քաղաքից 50 կմ հեռու, Իխտիման գյուղի մոտ (В. Златарски, նշվ. աշխ., էջ 670): Ուրեմն λόχμη-ն գտնվում էր Տրիադիցայի (Սոֆիա) և Ստոպոնիոնի և ոչ թե Ստոպոնիոնի և Փիլիպպուպոլսի (Պլովդիվ) միջև: Կայսրը այնտեղ է եկել Տրիադիցայից և ոչ թե Փիլիպպուպոլսից:

ների տակ: Ահարոնի սպանությունն ավելի ուշ է տեղի ունեցել, քանի որ նա մասնակցել է այդ պատերազմին և հետապնդել խուճապահար փախչող կայսերական բանակը. ὁ δὲ Σαμουὴλ καὶ ʼΑαρὼν σὺν τῷ ʼΡωμανῷ τὴν ἀσύντακτον ἀναχώρησιν φυγὴν ὡς εἶναι ὑποτοπάσαντες ἐπιπεσόντες... [«իսկ Սամուելն ու Ահարոնը Ռոմանոսի հետ միասին, հենց հասկացան, որ անկանոն նահանջը վերածվեց փախուստի ... և այլն»][1]: Նա սպանվել է Ռամետանիցայում հուլիսի 14-ին, սակայն որ թվականին է դա տեղի ունեցել, մենք չգիտենք: Այս մութ խնդրի վրա լույս սփռելու համար կարող է օգտակար լինել հայ պատմիչ Ասողիկը:

Վասիլի պարտությունը լուրջ արձագանք է ունեցել արևելքում: Բաղդադի բանտարկյալ Վարդաս Սկլերոսը շտապ մեկնել է Մելիտենե: 987 թ. փետրվարին նա արդեն այնտեղ էր: Նույն տարվա ապրիլ ամսին Վասիլը Անտիոքի դուքս Վարդաս Փոկասին վերահաստատում է իր նախկին` սխոլերի դոմեստիկոսի պաշտոնին և ուղարկում ապստամբի դեմ: Սակայն, քիչ անց, սեպտեմբերի 14-ին[2] դոմեստիկոսն ինքն է զենքն ուղղել կայսեր դեմ: Կայսերական թագը վտանգված էր: Հարկավոր էր ամեն գնով լուծել բուլղարական խնդիրը: Ուստի նման իրավիճակում էր, որ Վասիլը Սեբաստիայի եպիսկոպոսին հանձնարարում է գնալ Բուլղարիա և խաղաղության դաշինք կնքել: Բուլղարները, փոխադարձաբար, խաղաղության դիմաց պահանջել էին կայսեր քրոջ ձեռքը: Եպիսկոպոսը համաձայնել էր, սակայն արքայադստեր փոխարեն Բուլղարիա էր ուղարկել նրա աղախիններից մեկին, որը նմանում էր տիրուհուն: Բուլղարները հասկացել են խաբեությունը, և բանակցությունները ձախողվել են:

Ամենայն վստահությամբ կայսեր դեսպանի ներքո կարելի է ճանաչել Թեոդորոսին` Սեբաստիայի եպիսկոպոսին, որը, համաձայն Սկիլիցեսի վկայության, գրել է Վասիլի թագավորության պատմությունը: Ըստ երևույթին եպիսկոպոսին հաջողվել էր գրավել Ահարոնի համակրանքը կայսերական տան հետ խնամիանալու հրապուրիչ հեռանկարով և կամ Բուլղարիայի թագը նրան խոստանալով: Այսպես թե այնպես եպիսկոպոսին հաջողվել էր գժտեցնել Ահարոնին և Սամուելին, ինչը և հանգեցրել է Ահարոնի սպանությանը 987 թ. հուլիսի 14-ին` եթե եպիսկոպոսի առաքելությունը տեղի է ունեցել Սկլերոսի խռովությունից հետո, կամ էլ 988 թ., եթե այն տեղի է ունեցել Փոկասի ապստամբությունից հետո: Բուլղարների գործում ձախողվելուց հետո Վասիլը դիմել է ռուսներին, որոնցից և օգնություն է ստա-

[1] Միքայել Դեվոլացին (տե՛ս V. Prokič, Die Zusätze) սխալմամբ կարծում է, որ խոսքը Ահարոնի որդու մասին է:

[2] Яхья = Розен, 22, և ոչ թե օգոստոսի 15-ին, ինչպես Cedrenus-ի մոտ, II, p. 438:



ցել, փոխարենը իր քրոջը կնության տալով իշխան Վլադիմիրին[1]:

Ամեն դեպքում ստույգ է այն, որ Մովսեսը սպանվել է 986 թ., իսկ Ահարոնը` 987 կամ 988 թվականին: Ուսումնասիրողները նրանց մահը տեղադրում էին 976 թ., հիմնվելով Կեդրենոսի վերը բերված հատվածի վրա, ուր ասվում է, որ Սամուելը μόναρχος` Բուլղարիայի միապետ դառնալով և օգտվելով Սկլերոսի խռովությունից` ասպատակել է «ամբողջ արևմուտքը` Թրակիան, Մակեդոնիան, Թեսաղոնիկեն, Հելլադան և Պելոպոնեսը և այլ ամրոցների թվում գրավել նաև Լարիսան»:

Ենթադրվում էր թե խոսքը Սկլերոսի առաջին ապստամբության (976-979) մասին է և դրանից եզրակացվել էր, որ Սամուելի եղբայրները մահացել են 976 թ., որի հետևանքով Սամուելը դարձել է μόναρχος և թվարկված շրջաններն է ներխուժել 976-979 թվականներին: Բայց ըստ «Ստրատեգիկոնի» Լարիսան Նիկոլիցայից առնվել է 986 թվականին: Սամուելի արշավանքը դեպի Հելլադա և Պելոպոնես Թեսալիայի տարածքով տեղի է ունեցել 998 թ., երբ Նիկեփորոս Ուրանոսը հասել է նրան Սպերխեյոսի ափին, պարտության մատնել և ետ մղել դեպի իր սահմանները: Եվ վերջապես, Թեսաղոնիկեն և «արևմուտքը» Սամուելն ասպատակել էր Նիկեփորոս Փոկասի ապստամբության (987-988) ժամանակ: Ահա թե ինչ է ասում Յահյան. «Այն ժամանակ, երբ Վասիլը զբաղված էր Փոկասի բարձրացրած ապստամբությամբ, բուլղարները` առիթից օգտվելով, հույների դեմ բազմաթիվ արշավանքներ կազմակերպեցին, երկիրը մինչև Թեսաղոնիկե ասպատակելու և արևմուտքի հունական նահանգները ներխուժելու համար»[2]:

Եթե մենք չենք ցանկանում մեղադրել Կեդրենոսին հակասությունների, կամ սխալ տեղեկություններ հաղորդելու մեջ, ապա պետք է համաձայնենք,

[1] Ասողիկ, Գ, գլ. 23: Մենք չենք հասկանում թե ինչու՞ են ուսումնասիրողներն այդքան միահամուռ մերժել հայ պատմիչի շարադրանքը. անշուշտ ռուս Վլադիմիրը` «մի սկյութացի և կռապաշտ», ավելի արժանի չէր բյուզանդական իշխանուհուն, քան բուլղար քրիստոնյա իշխանը, ընդ որում, երբ ռուսական օգնությունը հարցականի տակ էր, իսկ բուլղարական սպառնալիքը` շատ իրական: Անկասկած, շարադրանքն ունի որոշ առասպելական մանրամասներ, ինչպես եպիսկոպոսի նախատակությունը, որին, իբրև թե, ողջակիզել էին: Դա մի հորինվածք է, որը ներշնչված է այդ պրելատի նկատմամբ հայերի տածած ատելությամբ: Հայերը նրան մեղադրում էին հայ վարդապետ Գաբրիել Սեբաստացու տանջալի մահվան, նաև հանդիմանում էին երկու հայ եպիսկոպոսների` Սիոն Սեբաստացու և Հովհաննես Լարիսացու, դավանափոխության համար: Խաչիկ [Ա Արշարունեցի] կաթողիկոսին գրված նախատական նամակում, նա մոլեռանդորեն հարձակվում էր Հայոց եկեղեցու վրա: Խաչիկի պատասխանը զետեղված է Ասողիկի աշխատության մեջ (Գ, գլ. 21): Չէ՞ որ բյուզանդացիներն էլ իրենց հերթին հորինել էին, որ Վասիլը կուրացրել էր տասնհինգ հազար բուլղար գերիների: Սա էլ է թելադրված ատելությամբ: Մի կողմ թողնենք Ասողիկի շարադրանքի առասպելական մանրամասները, սակայն պահպանենք շարադրանքի պատմական հիմքը` Սեբաստիայի եպիսկոպոսի առաքելությունը բուլղարների մոտ:

[2] Яхья = Розен, op. cit., c. 27.

որ տվյալ դեպքում նա խոսում է Սկլերոսի երկրորդ ապստամբության մասին, որը համընկել է Վարդաս Փոկասի ապստամբության հետ (987-988), և որ 987 թ. հուլիսի 14-ին Սհարոնի սպանությունից հետո μόναρχος դարձած Սամուելը նշված շրջաններում ռազմական գործողություններ է իրականացրել երկու զորավարների բարձրացրած ապստամբության ժամանակ: Իսկ Կեդրենոսը կանխում է նույնիսկ այն իրադարձությունները, որոնք տեղի են ունեցել 998 թվականին:

Այստեղ խոսք անգամ չի կարող լինել Սկլերոսի առաջին ապստամբության մասին այն պարզ պատճառով, որ Կոմսաձագերն այդ ժամանակաշրջանում դեռևս ասպարեզ չէին եկել: Առաջին անգամ նրանք հայտնվում են Լարիսայի և Հելլադայի ստրատեգոս Կեկավմենոսի կառավարման ժամանակ (980-983)[1]:

[1] В. Н. Златарски, op. cit. c. 646 и след., մեծ ճիգեր է գործադրել ապացուցելու համար, որ Կեկավմենոսը կառավարել է 976-979 թթ., իսկ Նիկոլիցան՝ 980-983 թվականներին, ուստի և Լարիսան պետք է առնված լիներ 983 թվականին: Սամուելը պետք է որ Թեսալիայի վրա հարձակված լիներ, իսկ Մովսեսը Սերրեն պաշարած լիներ 976-979 թթ. ընթացքում:

Նշանավոր բուլղար պատմաբանի սխալն այն է, որ նա շփոթել է Կեկավմենոսին հաջորդած Նիկոլիցային, նույն Կեկավմենոսին նախորդած մեկ այլ Նիկոլիցայի հետ: Լարիսայում երկուսն էլ նույն պաշտոնն էին վարում:

Պետք է տարբերակել երեք Նիկոլիցա. մեկը «Ստրատեգիկոնի» հեղինակի ժամանակակիցն է և ապրել է Ռոմանոս Դիոգենեսի ժամանակ, և նրանից հետո. մյուսը, նախորդի հայրը և Լարիսայի ստրատեգոսը 983-986 թթ., որն անցել էր կայսեր կողմը, դավաճանել նրան երկու անգամ և զոհվել մոտավորապես 1018 թվականին: Երրորդ Նիկոլիցան Լարիսայի և Հելլադայի ստրատեգոսն էր սկսած Ռոմանոս II-ի ժամանակից (959-963) մինչև 980 թվականը: Իր թագավորության չորրորդ տարում, հետևաբար 980 թ., Վասիլը մի նամակ է գրում Նիկոլիցային ֆրանկ իշխան Պետրոսի վերաբերյալ, ուր ասում է. ἀπὸ τοῦ μακαρίου μου πατρὸς ἔχεις τοῦτο (իր պաշտոնը) διὰ χρυσοβούλλου [«սա (իմա՝ պաշտոնը) դու ունես հորիցս <տրված> խրիսովուլով»] (Strategikon, § 244): Նույն պարբերությամբ հեղինակը վկայում է, որ այդ Նիկոլիցան τὴν ἐξουσίαν ταύτην εἶχεν ἀδιάδοχον διὰ χρυσοβούλλου [«այս իշխանությունը ստացել է ոչ որպես ժառանգորդ, <այլ> խրիսովուլով»]: Վ. Զլատարսկին անտեսել է այն փաստը, որ Նիկոլիցան Լարիսայի և Հելլադայի ստրատեգոս էր նշանակվել ցմահ, և քանի որ նա այդ պաշտոնին էր դեռևս 980 թ., ապա ակնհայտ է, որ Կեկավմենոսը չէր կարող լինել նրա նախորդը 976-979 թվականներին:

Վ. Զլատարսկին իրավացիորեն կարծում է, որ այն ստրատեգոսը, որը հաջորդել է Կեկավմենոսին և որը Լարիսան հանձնել է Սամուելին, եղել է Նիկոլիցան, սակայն դա մեկ այլ Նիկոլիցա է, հնարավոր է, որ առաջինի որդին և անկասկած վերջին կամ երրորդ Նիկոլիցայի հայրը: «Ստրատեգիկոնի», հեղինակը նրա անունը չի տալիս, սակայն 168-րդ պարբերությունից կարելի է եզրակացնել, որ խոսքը հենց Նիկոլիցայի մասին է, քանի որ նա զգուշացնում է որդուն, որ իրեն պատահելու է այն, ինչ պատահել էր իր ժամանակակից Նիկոլիցայի ծնողներին, եթե նա չհետևի իր խորհրդին (§ 168): Հետո նա պատմում է, թե ինչպես էր Կեկավմենոսը կարողացել Լարիսան պաշտպանել Սամուելի հարձակումներից (§ 169), մինչդեռ նրա հաջորդը երեք տարի անց ստիպված է եղել այն զիջել Սամուելին (§ 170): Հետևաբար այս հաջորդը նույնանում է [«Լարիսայի Նիկոլիցայի ծնողներ<ին>»] οἱ γονεῖς τοῦ Νικουλίτζα εἰς Λάρισσαν (§ 168):

Լարիսան գրավվել է 986 թ., ուրեմն Նիկոլիցան կառավարել է 983-986 թթ., իսկ նրա նախորդը՝ Կեկավմենոսը, 980-983 թթ. առաջին Նիկոլիցայի մահից հետո, որը, ինչպես կարելի



Վասիլը 980-ից մինչև 986 թվականը գտնվում էր Ասորիքում: Բուլղարական ճակատում պարտություն կրելուց հետո, նա ստիպված էր դիմագրավել Սկլերոսի և Փոկասի խռովություններին: 989 թ. Փոկասը սպանվում է, իսկ Սկլերոսը զենքը վայր դնում: Փոկասի վերջին կողմնակիցը՝ Չորտվանելը, 990 թ. ջախջախվում է Հովհաննես Վատացեսի կողմից Դերջանի Բագառիճում[1]: Վասիլը պատժում է նաև Փոկասի դաշնակիցներ Տայքի կյուրոպաղատ Դավթին և Բագրատի որդիներին՝ Խաղդիկայի իշխաններին: Նույն այդ զորավար Հովհաննես Վատացեսը սպանում է Բագրատի որդիներից մեկին և փախուստի մատնում մյուսին: Դավիթը ներում է խնդրում և պարտավորվում մահից հետո իր տիրույթները թողնել Վասիլին[2]:

Ազատվելով Արևելքի հետ կապված բոլոր հոգսերից, կայսրն այսուհետ կարող էր խորհել արևմուտքում վրեժխնդիր լինելու մասին: 991 թ. սկզբին նա արշավում է Բուլղարիա[3]: Պատերազմը տևում է չորս տարի, ուրեմն մինչև 995 թ. սկիզբը: 995 թ. ապրիլ ամսին կայսրն արդեն Անտիոքում էր: Ըստ Յահյայի, արշավանքի հիմնական արդյունքն է եղել բուլղար արքայի գերեվարումը, որին վերադարձնում են այն բանտը, որտեղից նա փախել էր: Ուրեմն Ռոմանոսը Բուլղարիայի թագավոր էր հռչակվել 986 թվականին: Կեդրենոսը խուսափել է հաղորդել այս տեղեկությունը, բայց այդ բանն արել է անուղղակի կերպով, ասելով, որ Ռոմանոսն իր անունը փոխել դարձել էր Սիմեոն: Դա նշանակում է, որ նա թագավորել է իր պապի անվան ներքո:

Բյուզանդացի ժամանակագիրը ոչինչ չի ասում պատերազմի տևողության մասին: Նա չգիտե, որ Բերրիա քաղաքը գրավված էր, ինչպես հաղորդում է Ասողիկը (կամ առնված և ավերված, ըստ Յահյայի, քանի որ կայսրը հույս չուներ այն պահելու): Կեդրենոսը սահմանափակվում է ասելով, որ

է եզրակացնել, տեղի է ունեցել 980 թվականին: Այսպիսով «Ստրատեգիկոնի» տվյալները հաստատում են Լարիսայի գրավման տարեթիվը, որն է 986 թ., և որն, իր հերթին, հաստատում է այդ տվյալների ճշտությունը:

Վ. Զլատարսկին ցանկացել է իր վարկածի համար օգտագործել մի հատված Ալ-Մաքինի երկասիրությունից, ուր ասվում է, որ հիջրայի 376 թ. Սամուելի (իմա՝ Պետրոսի) երկու որդիները փախել էին, և որ դա նրանց բանտարկության ութերորդ տարին էր: Երբ 376 թ. = 986 թ. ութերորդ տարին էր, ապա նրանք բանտարկվել էին 978 թ., իսկ դա անհնարին է: Վ. Զլատարսկին կարծում է, որ հատվածն աղավաղված է և որ պատմիչը ցանկանում էր ասել, թե նրանք ութ տարի բանտարկված են եղել, այսինքն, որ նրանք փախել են (972 + 8 =) 980 թվականին: Ենթադրությունը բռնազբոսիկ է և հակասում է Ալ-Մաքինի տված տարեթվին՝ հիջրայի 376 թ. = 986 թվականը:

Ալ-Մաքինը, որը բառացիորեն կրկնում է Յահյային, ըստ երևույթին շփոթել է արքայազունների փախուստը Սկլերոսի փախուստի հետ, որը Բաղդադից փախել էր ութ տարվա արգելափակումից հետո:

[1] Ասողիկ, Գ, գլ. 27:

[2] Яхья = Розен, с. 27.

[3] Նույնը, էջ 28. Սկլերոսը մահացել է 991 թ. մարտի 6-ին՝ արշավանքի սկզբից մի քանի օր անց:

կայսրը ἔξεισιν οὖν εἰς τἀπὶ Θρᾴκης καὶ Μακεδονίας χωρία [«դուրս է գալիս, որպեսզի շարժվի Թրակիայի և Մակեդոնիայի տարածքով»], հետո գնում է Թեսաղոնիկե, այնտեղ թողնում Գրիգոր Տարոնացի մագիստրոսին՝ Սամուելի հարձակումները ետ մղելու համար և վերադառնում մայրաքաղաք[1]:

Ժամանակագրի այդքան հակիրճ լինելը փաստում է, որ պատերազմի արդյունքը մեծ չէր եղել, դեռևս անհրաժեշտ էր դարմանել 986 թվականի պարտության վերքերը:

Կեդրենոսի համաձայն, Վասիլը Բուլղարիայից վերադառնալուց հետո գնաց Իբերիա: Դավիթ կյուրոպաղատը նոր էր մահացել և իր բոլոր տիրույթները կտակել էր կայսրին: Հասնելով Իբերիա, Վասիլը տիրանում է Դավթի ժառանգությանը, իսկ Ներքին Իբերիայի թագավոր Գեորգիին պարտադրում բավարարվել իր ունեցածով՝ առանց այլոց ունեցվածքի նկատմամբ հավակնություններ տածելու: Գործը կարգավորելով, կայսրը պատանդ վերցրեց Գեորգիի որդուն և շարժվեց Փյունիկե, իր հետ տանելով իբերական մի քանի իշխանների, որոնց գլխավորներն էին Պակուրիանը և Փևղատոս ու Փերսես եղբայրները: Տրիպոլիի, Դամասկոսի, Տյուրոսի, Բերիտի (= Բեյրութ) ամիրաներն ապստամբել էին Անտիոքի դուքսի դեմ. սպանվել էր Դամիանոս պատրիկը, և վրդովվել՝ անդորրը: Կայսրը նրանց ընկճեց և պատանդների ընկերակցությամբ վերադարձավ մայրաքաղաք[2]:

Սա մի հաշվետվություն է, որը տարբեր ժամանակաշրջաններին վերաբերող իրադարձությունների խառնիճաղանջ կուտակում է. իրադարձություններ, որոնք տեղադրվում են 990-1022 թվականների միջև: Դավիթն իր տիրույթները կտակել է 990 թ., մահացել 1000 թ. ապրիլին (5) (և ոչ թե 1001 թ.), նույն տարվա հուլիսին կայսրը Իբերիա է ժամանել իր իրավունքը հաստատելու, և ժամանել՝ Փյունիկեից և ո՛չ թե Կոստանդնուպոլսից: Դամիանոս Դալասենոսը սպանվել է 998 թ. հուլիսի 19-ին. հետևաբար Ասորիքի ամիրաների ռազմական գործողությունները նախորդել և ոչ թե հաջորդել են կայսեր այցելությանը Իբերիա: 998 թ. Պակուրիանը դեռևս Դավթի մոտ էր, քանզի ապրիլի 17-ին Խլաթի մերձակայքում կռվել է մահմեդական մի ավատապետի դեմ: 998 թ. հոկտեմբերի 18-ին Մանազկերտի մոտ Փերսեսը առաջնորդում է Դավիթ կյուրոպաղատի զորքը Ատրպատականի ամիրա Մամլանի դեմ: Պակուրիանին, Փերսես ու Փևղատոս եղբայրներին Վասիլը մտցրել է իր շքախմբի մեջ կյուրոպաղատի գործն ավարտելուց հետո՝ 1000 թվականին: Գեորգիի որդին պատանդ էր տրվել 1022 թ. սեպտեմբերի 11-ին

[1] Cedrenus, II, p. 447. Ասողիկը, Գ, գլ. 33, նույնպես հիշատակում է Գրիգորին և նրա հետ Հանձիտցի (Հանձիթ = <անտիկ հեղինակների> Անձիտենե) Սահակին:
[2] Cedrenus, II, p. 447-448.



Սալքորայի մոտ տեղի ունեցած ճակատամարտից հետո: Վրաց Գեորգի արքան մասնակցել էր Վարդաս Փոկասի և Նիկեփորոս Քսիֆիասի 1022 թ. ապստամբությանը:

Այս հատվածն ուսանելի է, քանի որ ցուցադրում է Կեդրենոսին հատուկ ոճը. նա, առանց պահպանելու ժամանակագրական կարգը, իրար գլխի է կուտակում տարբեր իրադարձություններ:

Իրադարձությունների ճիշտ ընթացքը վերականգնելու համար հարկ է դիմել Յահյային:

995 թ. սկզբին Վասիլը թողնում է բուլղարական ճակատը՝ Ասորիք մեկնելու համար: Այստեղ կատաղի պայքար էր ծայր առել Համդանյան իշխանի և Եգիպտոսի խալիֆային ենթակա Դամասկոսի կառավարչի միջև: Խալիֆայի հրամանով, Բանջուտեկինը նկրտում էր Համդանյան իշխան Աբուլ-Մա'ալից խլել Հալեպ քաղաքը: Անտիոքի դուքս Միքայել ալ-Բուրջին = <Միքայել> Բուրցեսը միջամտում է հօգուտ Համդանյան իշխանի: Կայսրը նրան օգնության է ուղարկում Լևոն Մելիսենոս մագիստրոսին: Երկու զորավարները Բանջուին ճակատամարտ են տալիս Օրոնտոս գետի ափին՝ Արվաջում, սակայն պարտություն են կրում և Միշել ալ-Բուրջիի զարմիկը երկու հազար հեծյալների հետ ընկնում է թշնամու ձեռքը[1]: Այս ամենը տեղի է ունեցել 994 թ. սեպտեմբերի 15-ին: Հաղթանակողը պաշարում է Հալեպը: Համդանյանը դիմում է կայսրին, որն անմիջապես ժամանում է և հարկադրում դադարեցնել պաշարումը: Բանջու(տեկինը) հեռանում է Քեննեշրին: Դժգոհ մնալով Միքայել Բուրցեսից՝ Վասիլը պաշտոնանկ է անում նրան, իսկ նրա փոխարեն նշանակում Դամիանոս Դալասենոսին: Հետո նա բռնում է մայրաքաղաքի ճանապարհը, ուր և հասնում է 996 թ. ապրիլի 12-ից առաջ, որովհետև այդ օրը նա Կոստանդնուպոլսի պատրիարք է կարգում Սիսիննիոս մագիստրոսին: Հետևաբար պատերազմը տևել է ուղիղ մեկ տարի՝ 995 թ. ապրիլից մինչև 996 թ. ապրիլը[2]:

Վերադառնալով մայրաքաղաք՝ Վասիլն առանց հապաղելու վերստին

[1] Միքայել Բուրցեսի առաջին զինված ընդհարումը Բանջու(տեկինի) հետ տեղի ունեցավ հիջրայի 382 թ. = 992 թ.՝ Ապամեայի մոտ: Բանջու(տեկինը) պաշարեց Բուրցեսի կալվածը՝ Իմմ դղյակը, և գրավեց (Yahya, pp. 29-30): Նույնը վկայում է Քեմալ-ադ-Դինը, ավելացնելով, որ Իմմ դղյակը պաշարվել էր այն պատճառով, որ այնտեղ էր պատսպարվել Բուրցեսի զարմիկը (= քրոջ որդին) (Яхья=В. Розен, с. 249): Ըստ Ասողիկի (Գ, գլ. 35), Ռոմանոս Սկլերոսը Եգիպտոսի խալիֆայի բանակի դեմ կռվեց 994 թ. ճակատամարտից առաջ: Պարտվելով՝ Սկլերոսը նահանջեց լեռները: Ակներևաբար, խոսքը Իմմ դղյակի մասին է, որը տեղադրվում է լեռներում, Անտիոքի մոտ: Ուստի Բուրցեսի զարմիկը Ռոմանոս Սկլերոսն էր: Որևէմն, Ռոմանոսի հայրը՝ հռչակավոր Վարդաս Սկլերոսը, Բուրցեսի քրոջ ամուսինն էր: Այս իրողությունը ավելի լավ է բացատրում Բուրցեսի 976 թ. Սկլերոսի ապստամբության հարելը:
[2] Yahya, op. cit. pp. 29-33. *Cedrenus*, *II*, *pp.* 448-449, Սիսինոսի գահակալության համար տալիս է աշխարհագործության 6503 թ. և VIII ինդիկտիոնի = 995 թվականը, որը սխալանք է:

սկսեց զբաղվել բուլղարական խնդրով: Լսելով, որ իր բացակայության ժամանակ Սամուելը հարձակվել է Թեսաղոնիկեի դուքս Գրիգոր Տարոնացի մագիստրոսի վրա, սպանել նրան և գերեվարել վերջինիս որդի Աշոտին, կայսրը նրա դեմ է ուղարկում Ուրանոս մագիստրոսին, որպես πάσης δύσεως ἄρχων [«ամբողջ արևմուտքի արքոնտ»], այսինքն՝ սխոլերի դոմեստիկոս, ինչպես նրան անվանում է Յահյան[1]: Ուրանոսից առաջ և Գրիգորի մահից հետո այդ պաշտոնին էր նշանակվել պատրիկ Հովհաննես Խալդը: Նրան փոխարինել է Ուրանոսը, քանի որ պատրիկը գերի էր ընկել Սամուելի ձեռքը: Եվ իսկապես, Միքայել Դևոլացու հավելումներից մեկից մենք տեղեկանում ենք, որ Սամուելը τὸν δοῦκα Θεσσαλονίκης ᾿Ιωάννην πατρίκιον τὸν Χάλδον ἐξώγρησεν [«Թեսաղոնիկեի դքսին՝ Հովհաննես Խալդ պատրիկին, գերեվարեց»][2]: Կեդրենոսը, առանց որևէ բան ասելու Հովհաննես Խալդի Թեսաղոնիկեի դուքս նշանակվելու մասին, հաղորդում է, որ 1018 թ., քսաներկու տարի Սամուելի մոտ գերի լինելուց հետո, նա ազատ է արձակվել: Դա նշանակում է, որ նա գերեվարվել է 996 թվականին: Հետևաբար Ուրանոսի նշանակումը հարկ է տեղադրել 997 թվականին:

Գրիգոր Տարոնացու և Հովհաննես Խալդի դեմ տարած հաղթանակներից ոգևորված Սամուելը ներխուժում է Թեսալիա, արշավում մինչև Բեով-

---

[1] Cedrenus, II, p. 449. **Яхья = Розен**, c. 34, al-k.t.l.s. տիտղոսը, որ նրան տալիս է Յահյան, κανίκλειον [«քանաքաման, դիվանատուն»] բառի աղավաղումն է, ինչպես այլուր բացատրել ենք՝ հենվելով Ասողիկի ցուցմունքի վրա:

[2] B. Prokič, Die Zuzätze, § 119, նկատելով, որ Հովհաննես Խալդի վերաբերյալ ծանոթությունը գալիս է ինդիկտիոնի XV = 1001-1002 թվին տեղադրված պատահարների վերջում, կարծել է, թե այն չի պատկանում Միքայել եպիսկոպոսին, այլ մի անորոշ ծագման ընդմիջարկություն է:

V. **Zlatarski**, *op. cit, p. 726, իրավացիորեն մերժել է այս կարծիքը, բայց այլ սխալ է թույլ* տվել՝ գտնելով, թե Կեդրենոսը 996 թ. Աշոտի բանտարկությունը շփոթել է Հովհաննես Խալդի բանտարկության հետ, որը ըստ իր կարծիքի, տեղի է ունեցել 1004 թվականին:

Երկու պատմաբաններն էլ անտեսել են, որ Հովհաննես Խալդ պատրիկը Ասողիկի Պռոտեզ անվանված Ժան պատրիկն է և Յահյայի Ղակրոս Ժան (=Հովհաննես) պատրիկը, որ սպանեց Փոկասի կողմնակից Չորտվանել մագիստրոսին՝ 990 թվականին: Ըստ Յահյայի (էջ 27), Ղակրոսը՝ Վասիլ կայսեր հրամանով արշավեց Դավիթ կյուրոպաղատի և Խաղդիկայի տիրակալ Բագրատի երկու որդիների վրա, որոնցից մեկը սպանվեց, իսկ մյուսը դիմեց փախուստի: Այլ աղբյուրից գիտենք, որ Բագրատի որդիներն անվանվում էին Ջուրքանել (= Չորտվանել) և Բագրատ (**И. Лазаропулос, в кн.**: "Сборник источников по истории Трапезундской империи", изд. А. Пападопуло-Керамевс, СПб., 1897, с. 82):

Հետևաբար, Ժանի, Ղակրոսի և Հովհաննես Խալդի նույնությունը ակներև է: Ասողիկը (Գ, գլ. 34) Գրիգորի և Աշոտի պատմությունը ավանդելուց հետո ավելացնում է, որ Վասիլ կայսրը Ժանին կանչեց Արևելքից և նրան ուղարկեց Մակեդոնիա՝ բուլղարների դեմ: Այստեղ Ժանը նշանավորվեց բազմաթիվ հաջող մարտերում, բայց հետո պարտություն կրեց և ընկնելով հակառակորդի ձեռքը՝ Աշոտի և Սահակի նման արգելափակվեց մի ամրոցում: Այս ամբողջ պատմությունը մեզ բերում է այն եզրակացության, որ Ժան (=Հովհաննես) Խալդ պատրիկի անվանումը շրջանառության մեջ է հայտնվել Սամուելի պարտությունից հետո, և ուրեմն նրա բանտարկությունը տեղի է ունեցել 996 թվականին:



տիա, Ատտիկե և նույնիսկ Կորնթոսի պարանոցն անցնելով թափանցում Պելոպոնես: Դոմեստիկոս Ուրանոսը հարձակվում է ընդդեմ Սամուելի, շարժվում Թեսալիա, գույքերը թողնում Լարիսայում, հասնում Փարսալոսի դաշտը, անցնում է Ապիդանոս գետը և բանակում Սպերխեյոս գետի ափին: Սամուելը գտնվում էր գետի մյուս ափին և իրեն անվտանգ էր զգում անձրևներից վարարած գետի պաշտպանությամբ: Սակայն բյուզանդացի զորավարին հաջողվում է գետն անցնել ծանծաղուտով և հարձակվել ոչինչ չկասկածող, քնած թշնամու վրա: Սամուելն ահավոր պարտություն է կրում, իր որդի Ռոմանոսի հետ փախուստի է դիմում դեպի Էտոլիայի լեռները և, Պինդոսի լեռն անցնելով, հասնում իր երկրի սահմանները: Հաղթանակողը ավարով բեռնված և ազատագրված գերիների հետ միասին վերադառնում է Թեսաղոնիկե[1]:

Ըստ Յահյայի Ուրանոսը Կոստանդնուպոլիս էր ուղարկել հազար կտրած գլուխ և տասներկու հազար գերի: Կոմսաձագը ( = Սամուելը) հուսահատվել էր և պատրաստ էր զենքը վայր դնել ու կայսրից ներում աղերսել, երբ նրան հայտնում են, որ Կոստանդնուպոլսում արգելափակված բուլղար արքան մահացել է: Կոմսաձագն իրեն արքա է հռչակում և վճռում շարունակել դիմադրությունը: Նիկեփորոս Ուրանոս մագիստրոսը Վասիլի հրամանով կրկին արշավում է Կոմսաձագի դեմ: Առանց դիմադրության հանդիպելու նա թափանցում է երկրի խորքը և մնում է այստեղ երեք ամիս, հրի ու սրի է մատնում ամեն ինչ և վերադառնում Կոստանդնուպոլիս[2]:

Որպես Արևմուտքի սխոլերի դոմեստիկոս, Ուրանոսը Թեսաղոնիկեում մնացել է մինչև 999 թ., երբ նա կայսեր հետ միասին մեկնել է Ասորիք, ուր հենց նույն տարին նա ստանձնել է Անտիոքի դքսի պաշտոնը: Կեդրենոսը գիտե, որ τὸν μάγιστρον Νικήφορον τὸν Οὐρανὸν ὁ βασιλεὺς ἄρχοντα ᾿Αντιοχείας ἐκπέμπει [«կայսրը Նիկեփորոս Ուրանոս մագիստրոսին ուղարկեց իբրև Անտիոքի արքոնտ»], սակայն նա սխալմամբ այդ բանը հիշատակում է XII ինդիկտիոնին վերաբերող եղելությունների շարքում, այսինքն 1000-1001 թվականին[3]:

997 թ. աշնանը, կամ 998 թ. գարնանը (եթե դատենք գետի վարարման փաստից) տեղի ունեցած Սպերխեյոսի ճակատամարտին հաջորդող իրադարձությունները Կեդրենոսի շարադրանքում ներկայանում են որպես ժամանակավրիպությունների մի շարան, որոնք հարկ է ուղղել:

Նախ Կեդրենոսը նկարագրում է Սամուելի դստեր և գերի Աշոտի ամուսնության պատմությունը, նրանց փախուստը Կոստանդնուպոլիս, որին

---

[1] Cedrenus, II, pp. 449-450.

[2] **Яхья = Розен**, c. 34.

[3] **Яхья = Розен, c. 41; Cedrenus, II, p. 454.**

հետևում է Դյուրաքիոնի ազնվապետ Խրիսելիոսի փախուստը: Հետո մենք իմանում ենք, որ թեսաղոնիկեցի մի ազնվականի՝ Պավլոս Բոբոս մագիստրոսին, և իր պերճախոսությամբ հռչակված Մալակենոս պրոտոսպաթարին[1] կասկածում են բուլղարների հանդեպ համակրանք տածելու մեջ. առաջինին աքսորում են Թրակիա, իսկ երկրորդին տանում Կոստանդնուպոլիս: Այդ ժամանակ Ադրիանուպոլսում կարևոր վարչական պաշտոններ զբաղեցնող որոշ քաղաքացիներ նույն պատճառով անցնում են թշնամու կողմը՝ օրինակ, Վատացեսն ընտանյոք հանդերձ և Վասիլ Գլաբասը: Կայսրը ձերբակալում է վերջինիս որդուն, սակայն երեք տարի անց ազատ է արձակում:

Աշոտի ամուսնությունը և, հատկապես, բյուզանդական պաշտոնյաների դասալքությունը պետք է որ կապվեն Սամուելի ծաղկման, այսինքն Սպերխեյոսի պարտությանը նախորդող ժամանակաշրջանի հետ. պարտություն, որը զգել է նրա վարկը, մինչդեռ Աշոտի փախուստը պետք է որ դրվի այդ պարտությունից հետո: Պրոտոսպաթար Լուպուսը այն դնում է 1005 թվականի ներքո: Մենք այս հարցին դեռ անդրադառնալու ենք:

Շարունակելով իր շարադրանքը՝ Կեդրենոսն ասում է, որ Վասիլը Բուլղարիա է ներխուժել Փիլիպպուպոլսի ճանապարհով, որի պաշտպանությունը նա վստահել էր Թեոդորոկան պատրիկին, ավերել Տրիադիցայի հարևանությամբ գտնվող մի քանի ամրոց և վերադարձել Մոսինուպոլիս:

Աշխարհագործության 6508 թ., XIII ինդիկտիոնին (999 թ. սեպտեմբեր - 1000 թ. սեպտեմբեր) Թեոդորոկանը՝ պրոտոսպաթար Նիկեփորոս Քսիֆիասի ուղեկցությամբ և կայսեր հրամանով հարձակվել է Հեմոս լեռան այն կողմը գտնվող բուլղարական ամրոցների վրա, գրավել Մեծ և Փոքր Պրեսլավները, Պլիսկան և վերադարձել առանց որևէ կորուստների:

Այս հարձակումները կասկածանքի առիթ են տալիս հատկապես թվականի հարցում: 999 թ. սկզբից մինչև 1000 թ. վերջը Վասիլն արևելքում էր: Արևելք մեկնելուց առաջ նա դեռ կարող էր անցնել Փիլիպպուպոլիս, ասենք 998 թ., բայց քիչ հավանական է, որ Վասիլը հեռավոր Իբերիայից նման ռազմական հրաման ուղարկած լիներ. նա չէր սիրում նախաձեռնությունը թողնել իր զորավարներին, հատկապես, երբ ոչինչ նրան չէր ստիպում շտապ հրաման արձակելու դանուբյան ճակատի վերաբերյալ, քանի որ Սամուելի ուժերը կենտրոնացած էին Օքրիսի շրջանում:

[1] Սա նույն Μαλακηνός-ն է, որի մասին խոսվում է «Նիկոն Մետանոյիտեսի վարքը» երկասիրության մեջ, ուր ասվում է, թե նա διεβλήθη ὑπὸ τινων κακοθελῶν ἀνδρῶν [«զրպարտվել է որոշ չարակամ մարդկանց կողմից»]: *Նիկոնի վարքի* բնագիրը հրատարակել է Ս. Լամպրոսը Νέος Ἑλληνομνήμων-ում, հատ. III, 1906: Հիշատակված հատվածը մեջբերել է Վ. Զլատարսկին, նշվ. աշխ., էջ 846: Մենք դեռ առիթ կունենանք անդրադառնալու Մալակենոսի անձին և այն ամբաստանություններին, որ առաջ էին քաշել նրա դեմ:



Հաջորդ տարի՝ այսինքն 1000-1001 թթ., Վասիլն անձամբ արշավում է բուլղարների դեմ Թեսաղոնիկեով: Բերրիայի պարետ Դոբրոմիրը նրան է հանձնում քաղաքը, փոխարենը ստանալով անթիպատոսի պատվաստիճան: Սերվիայի պարետը՝ Նիկողայոսը կամ Նիկոլիցան, դիմադրում է, սակայն կայսրն այնուամենայնիվ գրավում է ամրոցը, գերեվարում պարետին և նրա հետ վերադառնում Կոստանդնուպոլիս, որտեղ նրան պատվում է պատրիկի տիտղոսով: Նիկոլիցան փախչում է և Սամուելի հետ փորձում վերագրավել Սերվիան: Կայսրը նորից է հայտնվում քաղաքի պարսպի տակ, գերում փախստականին և շղթայակապ ուղարկում Կոստանդնուպոլիս:

Վասիլը Սերվիայից անցնում է Թեսալիա, վերանորոգում ավերված ամրոցները, վերագրավում այն բերդերը, որոնք վերցրել էր Սամուելը, բուլղար բնակիչներին տեղափոխում Վոլերոն և մեկնում Վոդենա՝ Օստրով լճի ափին զառիվեր ժայռի վրա տեղադրված մի ամրոց: Վոդենան կայսրը գրավում է գրոհով, իսկ բնակիչներին տարագրում Վոլերոն:

Կայսրը վերադառնում է Թեսաղոնիկե: Վոդենայի պարետ Դրաքսանոսը թույլտվություն է խնդրում բնակություն հաստատելու Թեսաղոնիկեում: Այստեղ նա ամուսնանում է Ս. Դեմետրիոսի եկեղեցու [«պրիվատարիոսների պետի»]՝ τοῦ πρώτου τῶν πριβαταρίων դստեր հետ[1]: Բայց դա չի խանգարում նրան երեք անգամ դավաճանելու և Սամուելի կողմն անցնելու: Առաջին երկու անգամը նրան ներում են, բայց երրորդ անգամ ցցահան են անում:

Հետո Կեդրենոսն անցնում է Ասոտիքի գործերին: Քանի որ Նումերյաններն ու Աքաֆյանները ներխուժել էին Կոյլեսիրիա, կայսրը Նիկեփորոս Ուրանոսին նշանակում է Անտիոքի դուքս, իսկ նրա փոխարեն Թեսաղոնիկեի դուքս է նշանակում Դավիթ Արիանիտես պատրիկին: Նիկեփորոս Քսիֆիաս պրոտոսպաթարը Թեոդորոկան պատրիկին փոխարինում է Փիլիպպուպոլսում: Ուրանոսը երկու-երեք անգամ հանդիպում է արաբ զորավար Κιστρινίτης-ին և, ի վերջո, խաղաղությունը վերականգնվում է[2]:

Այստեղ ևս Կեդրենոսը նույն թվականի ներքո միացրել է այնպիսի իրադարձություններ, որոնք կամ ավելի երկար են տևել, կամ էլ այլ թվականի են վերաբերում: Նիկոլիցայի կրկնակի փախուստի և, հատկապես, Դրաքսա-

[1] Այս խոսքերը, որոնք առեղծվածային էին թվում անցյալի մեկնիչներին և բառարանագիրներին, նշանակում են «Ս. Դեմետրիոսի եկեղեցու հյուրանոցային անձնակազմի ղեկավար»: πριβατάριοι կարելի է համեմատել անցյալի παραβαλανεῖς-ների հետ, քանի որ πριβᾶτον նշանակում է «բաղնիք»: Տե՛ս Դիոկղետիանոսի հրամանագրի privatarius balneator, «Byzantion», XIII, pp. 283-285:

[2] Cedrenus, II, pp. 452-454.

նոսի եռակի դավաճանության համար մեկ տարուց ավելի ժամանակ էր անհրաժեշտ: Իր վերջին փախուստի ժամանակ Դրաքսանոսն արդեն չորս զավակների հայր էր, հետևաբար նրա վերջին արկածը հարկ է տեղադրել ամենաուշը 1005 թվականին:

Նիկեփորոս Ուրանոսը, ինչպես տեսանք, Անտիոք էր նշանակվել 999 թ., և ոչ թե 1000-1001 թվականին: Նումերյանների և Աքաֆյանների գործը վերաբերում է 1004-1007 թվականներին:

Ըստ Յահյայի, հիջրայի 395 թ. (1004 թ. հոկտեմբերի 18 - 1005 թ. հոկտեմբերի 7) ոմն ալ - Ասֆար՝ մի մոլեռանդ ու խռովարար մարդ, Հալեպի շրջանում ապստամբություն է բարձրացնում, կոչ անելով մահմեդական ազգաբնակչությանը սրբազան պատերազմ սկսել Բյուզանդիայի դեմ: Մի շարք քաղաքներում ունեցած հաջողությունները նրան քաջալերում են հարձակվելու Անտիոքի վրա, բայց, պարտվելով ստրատեգոսից, փախչում է Եդեսիայի մոտ գտնվող Սարուջ բնակավայրը: Ուրանոս մագիստրոսը գետանցում է Եփրատը և պաշարում այն քաղաքը, ուր պատսպարվել էր ապստամբը: Վերջինիս հաջողվում է փախչել, սակայն նրա կինն ընկնում է Ուրանոսի ձեռքը: Նումայիր և Քիլաբ ցեղերը համախմբվում են Սարուջ քաղաքի ամիրա Վաքաբ իբն-Ջաֆարի հրամանատարության ներքո Ուրանոսի դեմ կռվելու համար, սակայն վերջինս ջարդում է նրանց և պահանջում իրեն հանձնել ալ - Ասֆարին: Վաքաբ իբն-Ջաֆարը մերժում է, բայց կողմերը համաձայնում են ապստամբին հանձնել Հալեպի Լուլու ամիրային 397 թ. շաբան ամսին (1007 թ. 22 ապրիլի - 20 մայիսի)[1]:

Հետևաբար, Կեդրենոսի Νουμερῖται banu Numairi-ներն են: Ինչ վերաբերում է ʼΑταφῖται, ապա բարոն Ռոզենը նրանց նույնացրել է banu Kilab-ին առանց կարողանալու բացատրել բառի ծագումը: Մեր կարծիքով ʼΑταφῖται ցեղանվան ներքո թաքնված է Վաքաբ անունը և, համապատասխանաբար, նշանակում է Վաքաբի մարդիկ[2]: Քիլաբ ցեղախումբն այսպես էր անվանվել կամ այն պատճառով, որ Վաքաբը նրանց ցեղային առաջնորդն էր, կամ՝ որ նա ղեկավարում էր նրանց Ուրանոսի դեմ պայքարում: Վաքաբն իր անունը տալով ցեղախմբին, հայտնվում է Κιστριvίτης անվան ներքո: Այս տարօրինակ անունը, որը մնացել է առեղծված, «Քեներինի մարդ»-ից բացի այլ բան չի նշանակում. սա մի քաղաք էր, որը գտնվում էր Հալեպի շրջակայքում, ուր ընթանում էին հուզումները և որտեղի բնիկն էր, թերևս, Վաքաբը:

Հետևենք մեր ժամանակագրի պատմությանը: XV ինդիկտիոնին (1001-

[1] Яхья = Розен, с. 43-44.

[2] Սկզբնատառ Վ-ն ընկել է, ինչպես և ʼΑσπουρακάν-ում՝ Վասպուրական հայերեն ձևի փոխարեն:



1002 թթ.) Վասիլն արշավում է Վիդին քաղաքի դեմ և ութ ամիս պաշարման մեջ պահելուց հետո գրավում այն: Այդ ժամանակ Սամուելը հանդուգն մի երթ է կատարում, հասնում է մինչև Ադրիանուպոլիս, Ս. Աստվածածնի ննջեցման տոնի օրը հարձակվում քաղաքի վրա և ետ վերադառնում հարուստ ավարով: Վասիլն ամրացնում է Վիդինը և ողջ ու առողջ վերադառնում մայրաքաղաք: Հետդարձի ճանապարհին նա ավերում է մի քանի բուլղարական բերդեր և, հասնելով Սկոպիա քաղաքին, տեղեկանում է, որ Սամուելը բանակել է Վարդար - ʼΑξιός գետի մյուս ափին: Օգտվելով Սամուելի անհոգությունից, որը վարարած գետի պաշտպանության ներքո իրեն անվտանգ էր զգում, կայսրը իր զորքի հետ միասին մի ծանծաղուտով անցնում է գետը, հարձակվում թշնամու վրա և նրան փախուստի մատնում: Սկոպիայի պարետը՝ Ռոմանոսը, Բորիսի եղբայրը և Պետրոսի որդին, որը Սիմեոն անունն էր վերցրել, նրան է հանձնում քաղաքը, փոխարենն ստանալով պատրիկի և պրեպոզիտոսի (τῶν κουβικουλαρίων?) պատվաստիճանները, և Աբիդոսի ստրատեգոսի պաշտոնը: Այստեղից կայսրը ուղղվում է դեպի Պերնիկ, փորձում է գրավել այն, սակայն հանդիպում է Կրակրասի կատաղի դիմադրությանը և, հաջողության չհասնելով, գնում է Փիլիպպուպոլիս, իսկ այնտեղից Կոստանդնուպոլիս[1]:

Այս պատմությունը շատ տեսակետներից քիչ հավանական է թվում: Արշավանքի ուղերթը, ինչպես նաև Վարդարի ճակատամարտը իրենց չեն արդարացնում, եթե հաշվի առնենք այն ամենը, ինչ մենք գիտենք պատերազմող կողմերի ընդհարումների և պատերազմի թատերաբեմի վերաբերյալ: Մոսինուպոլիսը այն հենակետն էր, որտեղից գործում էր կայսերական բանակը թե՛ Փիլիպպուպոլսի և թե՛ Թեսաղոնիկեի ուղղություններով, նպատակակետ ունենալով մի կողմից Տրիադիցա ամրոցը, իսկ մյուս կողմից՝ Վոդենան, որը Սամուելի մայրաքաղաք Օքրիսի բանալին էր: Տրիադիցան, հակառակ Կեդրենոսի համառ հավաստիացումներին այն գրավելու, ավերելու կամ վերանորոգելու մասին, իրականում կայսրությանն է անցել միայն Սամուելի պետության անկումից հետո: Մինչ այդ այն մնացել է Սամուելի առաջատար պահակակետը, իսկ քաղաքից արևելք ընկած ամբողջ տարածքը, Չմշկիկի նվաճումներից ի վեր պատկանում էր Բյուզանդիային: Ոչինչ չի գալիս ապացուցելու այն բանը, որ Սամուելի իշխանությունը երբևէ տարածվել է Փիլիպպուպոլիս-Տրիադիցա գծից այն կողմ, հակառակ բուլղար պատմաբանների, որոնք կարծում են, թե նրա իշխանությունը տարածվել է ամբողջ Արևելյան Բուլղարիայի վրա[2]:

[1] Cedrenus, II, pp. 454-456.

[2] G. Schlumberger, op. cit., p. 58. նույնպես ասում է, թե «ամբողջ Բալկանյան թերակղզին ենթարկվում էր Սամուելին»:

Նման պարագայում քիչ հավանական է, որ Վասիլը, թիկունքում թողնելով սպառնալից ամրոցը, հասներ հեռավոր Վիդին, այնտեղից անծանոթ երկրով իջներ Սկոպիա՝ Վարդար գետի ափը, այնտեղ Սամուելին ճակատամարտ տալու համար: Ուղիղ գծով 1000 կիլոմետրանոց երթուղու վրա պատմագիրը չի կարողանում նշել և ոչ մի կայան, նա չգիտի նաև թե ո՞վ է եղել Վիդինի քաջարի զորավարը, որն ութ ամիս շարունակ դիմադրել է Վասիլին: Ի՞նչ կարելի է ասել Վարդարի ճակատամարտի մասին: Այն երևակայության արգասիք է: Ռոմանոսը Սկոպիայի պարետը չէր: Եթե նա հասարակ պարետ լիներ, ապա անկասկած կարիք չէր ունենա անունը փոխելու և իր պապի անունը վերցնելու: Ըստ Յահյայի որոշակի տեղեկության Ռոմանոսը արքունի է հռչակվել 986 թ. իր փախուստից անմիջապես հետո, իսկ Սպերխեյոսի ճակատամարտի ժամանակներին նա արդեն մահացել էր (997 կամ 998 թթ.), քագը թողնելով Սամուելին: Իսկ ինչ վերաբերում է Վարդարի հաղթանակի հանգամանքներին, ապա դրանք Սպերխեյոսի ճակատամարտի մանրամասների պարզ կրկնություններ են և զուրկ են իրական հիմքից: Սամուելի նման անհերքելի ռազմական տաղանդի և փորձառության տեր մի մեծ զորական թույլ չէր տա, որ նրան երկու անգամ նույն ծուղակը գցեին, հատկապես, որ Վ. Զլատարսկու վկայությամբ Սկոպիայի մոտ Վարդարի խորությունն անիմաստ է դարձնում պիտանի որևէ ծանծաղուտ գտնելու ցանկացած փորձ[1]: Անհանգստացնում է նաև այն, որ կայսրը կարծեցյալ հաղթանակից հետո չի շարժվում դեպի Սամուելի մայրաքաղաքը, որը գտնվում էր 100 կմ հեռու, այլ թեքվում է արևելք, անցնում 300 կմ ճանապարհը՝ Փիլիպպուպոլիս վերադառնալու համար: Ավելին, տարիներ շարունակ, մինչև 1014 թ. նա հանգիստ է թողնում Սամուելին: Կեդրենոսը խոստովանում է, որ Վասիլի Վիդին կատարած արշավանքի ընթացքում, Սամուելը հարձակումներ էր գործում բյուզանդական տարածքների վրա, հասնելով մինչև Ադրիանուպոլիս, մի բան, որ պատիվ չէր բերում Վասիլի ընտրած ռազմավարությանը: Հարց է ծագում, թե այս պարագայում արդյոք կայսեր անճարակությունը քողարկելու համար չէ՞, որ այդպիսի երևակայական թափ է տրվում մի արշավանքին, որն իրականում, ինչպես և նախորդները, նպատակաուղղված է եղել գրավելու Տրիադիցայի շրջանը:

Արշավանքի թվականը (1002 թ.) ստույգ չէ, ինչպես նաև դրան նախորդող իրադարձությունների թվականները: Շարադրանքի թեթևակի ուղղումները թույլ են տալիս ավելի գոհացուցիչ կերպով վերականգնել ժամանակա-

[1] **В. Н. Златарски**, op. cit., с. 723. Նկատել է Վիդինի արշավանքի հակասությունները, սակայն համապատասխան հետևություններ չի արել, որովհետև ցանկացել է օգտագործել այն իր սիրած թեզը պաշտպանելու համար, թե իբր Սամուելը նվաճել էր նաև Արևելյան Բուլղարիան և որ Վասիլի նպատակն էր այն նրանից խլելը:



գրությունը, հետևաբար, այդ արշավանքը թվագրել 1006-1007 թթ., իսկ նախորդները 1001-1005 թվականներով[1]:

Մեր քննարկած արշավանքից հետո մինչև 1014 թ. բուլղարական պատերազմի մասին Կեդրենոսը ոչինչ չունի ասելու, բացի սովորական հավաստիացումներից, թե կայսրը չէր դադարեցրել թշնամու տարածքի թալանն ամենամյա հարձակումներով:

Հոգնած և ուժասպառ Սամուելը, ըստ մեր պատմիչի, այլևս չէր համարձակվում ճակատամարտում իր ուժերը չափել կայսեր հետ և որդեգրել էր պաշտպանական մարտավարություն, պատսպարվելով իր կառուցած երկար պարսպի ետևում, որը նա լցրել էր զինվորներով, որպեսզի այն փակեր Կիմբալոնգու և Կլեյդիոն կապանների ճանապարհը, որտեղից կայսերական բանակը սովորաբար ներխուժում էր Բուլղարիա:

1014 թ. Վասիլը հայտնվում է այդ անցակետի մոտ, սակայն չի կարողանում հաղթահարել: Ապարդյուն ջանքերից հետո, նա մտածում էր արդեն նահանջել, երբ Փիլիպպուպոլսի ստրատեգոս Նիկեփորոս Քսիֆիասը մի ճարպիկ ռազմահնարքով փրկում է կացությունը. նա կայսրին խորհուրդ է տալիս մնալ տեղում թշնամու ուշադրությունը գրավելու համար, իսկ ինքը զորաշարժ է կատարում և, շրջանցելով Կլեյդիոնից հարավ գտնվող Բելասիցա (Բալաթիստա) կոչվող լեռը, թիկունքից հարձակվում է բուլղարների վրա: Վերջիններս անակնկալ հարձակումից հանկարծակիի գալով նահան-

[1] Վիդինի արշավանքը թվագրված է ինդիկտիոնի ιε' = 1002 թվականով: Եթե այն ուղենք և դարձնենք ε' = V, ապա մենք կունենանք 1006-1007 թվականը, որը կհամապատասխանի Մատթեոս Ուռհայեցու վկայությանը, որը բուլղարների դեմ վերջին արշավանքը դնում է Կիմբալոնգուի ճակատամարտից առաջ, հայոց 445 թ., = 1006 թ. մարտ - 1007 թ. մարտ: Կեդրենոսը XV ինդիկտիոնից (III, էջ 454) անցնում է VIII ինդիկտիոնին, աշխարհագործության 6518 թ. = 1009-1010 թթ., մինչդեռ ընդունելով մեր ենթադրությունը՝ փոքրացնում ենք երկու տարեթվերի միջև ընկած ժամանակամիջոցը: Նույնը կլինի 1002-1014 թթ. միջև ընկած ժամանակամիջոցի հետ, երբ կայսրը վերսկսում է բուլղարական գործերը: Կեդրենոսի առկա շարադրանքը կայսերը անգործության է մատնում բուլղարական խնդրում՝ ամբողջ տասներկու տարիների ընթացքում: Մեր ճշտման համաձայն նա պատերազմել է մինչև 1007 թ., հետո գալիս է Երուսաղեմի հարցը 1009-1010 թթ., որին հետևում է Լոմբարդիայի խնդիրը, որը կլանում է կայսեր ուշադրությունը և նրան թույլ չի տալիս մինչև 1014 թ. վերադառնալու բուլղարական թատերաբեմ:

Մենք կարծում ենք, որ հնարավոր է համապատասխանաբար ուղղել ինդիկտիոն ιγ'-ը (999 – 1000 թթ.) γ'-ով և աշխարհագործության ,Ϛφη'-ն ,Ϛφιγ'-ով (1004 – 1005 թթ.) (Cedrenus, II, p. 452): Այսպիսով մենք կվերականգնենք Յահյայի (էջ 42) նշած ճիշտ թվականը: Պատմիչն ասում է, որ կայսրը վերսկսեց պատերազմը Հակիմ խալիֆայի հետ հաշտության պայմանագիր կնքելուց հետո՝ 1000 թ. վերջին կամ 1001 թ. սկզբին և, որ պատերազմը տևել է չորս տարի, ուրեմն մինչև 1005 թվականը: Յահյան սխալվել է պատերազմի տևողության հարցում: 991 թ. արշավանքը տևել է չորս տարի: Այս անգամ կայսրը բուլղարներով զբաղվել է 1001-1007 թվականներին: Այսպիսով Կեդրենոսը կքավի իր թույլ տված կոպիտ սխալը, ըստ որի Տրիադիցայի, Պրեսլավի և Պլիսկայի դեմ արշավի տարեթիվը XIII ինդիկտիոնն է = 999–1000 թթ., մինչդեռ այդ տարիներին կայսրը գտնվում էր արևելքում:

ջում են, կայսրն անցնում է կիրճը, հետապնդում խուճապահար փախչող հակառակորդին և տասնհինգ հազար գերի վերցնում: Այս ամենը տեղի է ունեցել XII ինդիկտիոնի (1014 թ.) հուլիսի 29-ին: Սամուելին հաջողվում է իր որդու հետ փախչել և պատսպարվել Պրիլապոն (Պրիլեպ) ամրոցում: Վասիլը կուրացնել է տալիս գերի զինվորներին, յուրաքանչյուր հարյուրի մեջ թողնելով մեկ միակնանի, որպեսզի վերջիններս մնացածներին ուղեկցեին Սամուելի մոտ: Բուլղար արքան չդիմանալով նման բարբարոսական տեսարանին վշտից ու սարսափից մահանում է:

Սամուելին հաջորդում է որդին՝ XIII ինդիկտիոնի (1014 թ.) հոկտեմբերի 15-ին: Մեկ տարի հազիվ էր անցել, երբ որսորդության ժամանակ նա զոհ գնաց Ահարոնի որդի Հովհաննես-Վլադիսլավի խարդավանքին, որի կյանքը ժամանակին նա փրկել էր[1]:

Ըստ այս շարադրանքի պատերազմը պետք է որ ավարտված լիներ: Ամենևին: Կեդրենոսը վերսկսում է իր պատմությունը մեզ հաղորդելու համար այն ամենը, ինչ տեղի էր ունեցել այդ ժամանակ Թեսաղոնիկեի ճակատում: Սամուելը, անձամբ կայսրին Կլեյդիոնում ընդառաջ գնալով, Նեստորիցեսի հրամանատարությամբ զորախումբ է ուղարկում Թեսաղոնիկե քաղաքի դեմ: Քաղաքի դուքս Թեոփիլակտոս Վոտանիատեսն իր որդու՝ Միքայելի, աջակցությամբ ետ է մղում Նեստորիցեսին և միանում կայսերական բանակին: Կիրճն անցնելուց հետո կայսրը արդեն գնացել էր Ստրումպիցա: Այնտեղից նա հասնում է մոտակա Մացուկիոն ամրոցը: Կայսրը Թեոփիլակտոս Վոտանիատեսին հանձնարարում է առաջ շարժվել և Ստրումպիցայի լեռներն անցնելով հակառակորդի զորքից մաքրել Թեսաղոնիկեի ճանապարհը, ուր ցանկանում էր գնալ կայսրը: Զորավարը հաջողությամբ կատարում է կայսեր հրամանը, սակայն վերադարձի ճանապարհին բուլղարները հարձակվում են նրա վրա, ցրում զորքը, իսկ իրեն սպանում: Կայսրն այլևս չի հանդգնում առաջանալ Թեսաղոնիկեի ուղղությամբ: Նա թեքում է ճանապարհը, իր անցած կիրճով հասնում Զագորա, ուր գտնվում էր Մելենիկոս (Մելնիկ) ամրոցը, իսկ այնտեղից էլ գնում Մոսինոպոլիս: Այնտեղ հոկտեմբերի 24-ին նրան է հասնում Սամուելի մահվան լուրը[2]:

Փորձենք ավելի ուշադիր քննել Կլեյդիոնի և Թեսաղոնիկեի ռազմական գործողությունները: Ճակատամարտերի տեղագրությունը բավականաչափ ծանոթ է: Բուլղար գիտնականներն այն ուսումնասիրել են: Եվ այդուհանդերձ նրանք սխալվել են պնդելով, որ կայսերական բանակը շարժվել է Մոսինոպոլսից և, հետևաբար, Բուլղարիա է մտել ներկայիս Սերեսի և Դեմիր-

[1] Cedrenus, II, pp. 457 - 459.
[2] Ibid., II, pp. 459 - 460.



Հիսարի ճանապարհով: Այսպիսով Կիմբալոնգուն նրանք նույնացնում են Բուտկովո և Տաքինոս լճերի միջև գտնվող հարթավայրին[1]:

Մեր կարծիքով Վասիլը եկել է հյուսիսից՝ Փիլիպպուպոլիս քաղաքից, այդ քաղաքի դուքս Նիկեփորոս Քսիֆիասի ուղեկցությամբ: Նա բանակել է Մելնիկի և Պետրիչի շրջակայքում, այժմյան Բուլղարիայի հարավարևմտյան ծայրակետում:

Կիմբալոնգու[2]՝ «երկար դաշտ» և ոչ թե դաշտավայր է, այլ ավելի շուտ՝ սարահարթ, որը ձգվում է Պետրիչից արևմուտք և հասնում Κλειδίον կիրճին, որը գոյանում է Բելասիցա և Օգրայդեն լեռներից և որով հոսում է Ստրումպիցա գետը: Մենք տեսանք, որ Վոտանիատեսի պարտությունից հետո կայսրը նահանջել է դեպի Մելնիկ և ո՛չ Սերես և սա ապացուցում է, որ նրա ելակետը եղել է հենց Մելնիկը և ոչ թե Սերեսը:

Քսիֆիասի զորաշարժը կայանում էր նրանում, որ նա շարժվել է կենտրոնի ուղղությամբ, հետո թեքվել դեպի արևմուտք և, Բելասիցա լեռնաշղթայի երկայնքով առաջանալով, հայտնվել հակառակորդի դիրքերի թիկունքում:

Վոտանիատեսի պատմությունը մտորումների տեղիք է տալիս: Ասվում է, որ Նեստորիցեսին ետ մղելով նա շտապում է Վասիլի մոտ, πολιορκοῦντι τὸ ἐν τῇ κλεισούρᾳ τοῦ Κλειδίου δέμα [«որը զբաղված էր կլեյսուրայում <գտնվող> Կլեիդիոնի կապանի պաշարմամբ»], որից ենթադրում ենք, որ կիրճը դեռևս գրավված չէր: Բայց եթե Վոտանիատեսն իսկապես հաղթահարել էր Նեստորիցեսի դիմադրությունը, ապա նրա համար ավելի հեշտ կլիներ գնալ և թիկունքից ուղղակի հարձակվել Սամուելի վրա, այսինքն՝ անել այն, ինչ ստիպված էր իր վրա վերցնել Քսիֆիասն ավելի լուրջ վտանգի ենթարկվելով: Հետո Վոտանիատեսը կայսեր հետ անցնում է կիրճը, հասնում է Ստրումպիցա, իսկ այնտեղից էլ Մացուկիոն, որտեղից և կայսեր հրամանով գնում է թշնամուց Թեսաղոնիկեի ճանապարհը ազատելու: Նա դա անում է, բայց, կայսեր մոտ Մացուկիոն վերադառնալիս, հարձակման է ենթարկվում և զոհվում:

Կեդրենոսը սխալվել է Մացուկիոն տեղադրելով «Ստրումպիցայի մոտ», τὸ καλούμενον Ματζούκιον, τῇ Στρουμπίτζῃ δὲ προσεγγίζον: Մացուկիոնի բերդը գտնվում էր Վարդար գետի ափին՝ Դոյրան լճից դեպի հարավարևմուտք, Ստրումպիցայից Թեսաղոնիկե տանող համարյա կեսճանա-

[1] И. Ивановъ, Бъласицката битка, "Изв. ист. д-во", кн. III (1911). В. Н. Златарски, История, II, с. 730.
[2] Κίμβα λόγγου (կամ λόγγος) լատինական campus longus-ի վալախական կամ ռումինական ձևն է՝ câpu lungu, ինչպես ցույց է տվել Յո. Իվանովը (В. Н. Златарски, ibidem):

պարհին և մինչ օրս էլ կոչվում է Մաչուկովո[1]:

Կեդրենոսի սխալը կարծել է տալիս, որ Վոտանիատեսի պատմության մեջ շատ երևակայական տարրեր կան և որ նրա գնալ-գալը հորինվել է նրա պարտության թողած ծանր տպավորությունը մեղմելու համար: Թերևս, իրոք, նա ետ է մղել Նեստորիցեսի հարձակումը և գնացել կայսրին միանալու, սակայն, հասնելով Մացուկիոն, հարձակման է ենթարկվել բուլղարների կողմից և ոչնչացվել իր ամբողջ զորքի հետ միասին:

Զոնարասը, որը կրկնօրինակում է Սկիլիցես-Կեդրենոսին, իր շարադրանքից հանել է Վոտանիատեսի ամբողջ դրվագը՝ իհարկե, կայսեր սխրագործությունները չստվերելու համար[2]: Արդի պատմաբանները նույնպես խոսում են Կիմբալոնգոսի Վասիլի փայլուն հաղթանակի մասին, բայց իզուր: Ճիշտ է, կայսրին հաջողվել էր գրավել հայտնի կապանը: Կասկածից վեր է, որ դա հաջողություն էր: Սակայն ճիշտ է նաև այն, որ այդ հաջողությունը զրոյի է հավասարվել Վոտանիատեսին պատահած դժբախտության պատճառով: Հաղթանակած կողմը ետ է շպրտվել իր ելակետը: Արշավանքի միակ շահը հանգում է տասնհինգ կամ տասնչորս հազար զինվորների գերեվարմանը, որոնց նկատմամբ այդքան բարբարոսական վերաբերմունքը մենք համարում ենք մտացածին, որը սակայն բնորոշ է այն ատելությանը, որ հույները տածում էին բուլղարների նկատմամբ, նրանց անկոտրում դիմադրության պատճառով[3]:

Մի խոսքով, Վասիլ կայսրը չէր կարող պարծենալ Սամուելի հանդեպ տարած հաղթանակով: Վերջինս մնացել է անսասան և մահացել զենքը ձեռքին առանց տեղի տալու իր համառ հակառակորդին:

Վասիլը Մոսինոպոլսում էր, երբ ստացավ Սամուելի մահվան լուրը: Բազում տարիներ նրան հետապնդող մղձավանջը ցրվեց: Վերջապես նա կարող էր ազատ շունչ քաշել: Նա անմիջապես թողնում է Մոսինոպոլիսը Բուլղարիա մեկնելու համար: Նա հասնում է մինչև Պելագոնիա՝ Բուտելիոնի շրջանում կամ էլ ժամանակակից Մոնաստիրը: Բուտելիոնում նա այրում է Սամուելի որդի և ժառանգ Գաբրիելի դղյակը, զորք է ուղարկում Պրիլապոն և Ստիպիոն (Պրիլեպ և Ստիպ) ամրոցների դեմ և 1015 թ. հունվարի 9-ին Վոդենայով վերադառնում Թեսաղոնիկե:

[1] Н. В. Златарски, op. cit., с. 737.

[2] Zonaras, XVII, 9, p. 564; Mich. Attaliotes, pp. 231 et sqq., իհարկե փառաբանում է Միքայել Վոտանիատեսին՝ Նիկեփորոս կայսեր հորը, և նրան ներկայացնում որպես մարտիրոս:

[3] Cedrenus, II, p. 458, այդ դաժանության հեղինակին նշավակելու փոխարեն Կեդրենոսը հեգնանքով մեղադրում է Սամուելին այն բանում, որ արիության պակասի պատճառով չի դիմացել իր կուրացված զինվորներին պատահած դժբախտությանը՝ καὶ τὸ πάθος οὐκ ἐνεγκὼν νεανικῶς καὶ εὐψύχως (!) [«և այս դաժանությունը չի կարողացել տանել պատշաճ քաջությամբ ու արիությամբ»]:



Գարնանը Վոդենայում բռնկված ապստամբությունը ճնշելու համար Վասիլը վերադառնում է Բուլղարիա: Նա գրավում է քաղաքը և բնակիչներին գերում, նրանց տարագրելով Վոլերոն: Նիկեփորոս Քսիֆիասը և Կոստանդին Դիոգենեսը՝ Թեսաղոնիկեում Վոտանիատեսի հաջորդը, հրաման են ստանում արշավելու Մոնաստիրի շրջանում գտնվող Մոգլենա (= Մոգիլո՝ Ցեռնա գետի ափին) քաղաքի վրա: Քիչ անց կայսրը հետևում է նրանց: Քաղաքը գրավվում է և նրա պարետ Իլիցեսը հանձնվում է հաղթողին: Դոմետիանոս Կաուկանոսը՝ ազդեցիկ մի այր, Գաբրիել թագավորի խորհրդականը, նույնպես անձնատուր է լինում:

Այդ պահին Ահարոնի որդի Վլադիսլավից նամակ է ստացվում այն մասին, որ ինքը Պետրիսկոնում սպանել է Գաբրիել թագավորին և որ ինքը՝ երկրի նոր տերը, պատրաստ է հպատակվելու կայսրին[1]:

Սա ոճիր էր, որ Վլադիսլավը գործել էր իր վաղեմի ազատարարի նկատմամբ և միաժամանակ ճակատագրական սխալ՝ կործանման շեմին կանգնած իր հայրենիքի հանդեպ: Այդպիսի բախտորոշ պահին թագավորին աջակցելու (թագավոր, որի քաջությամբ հիանում էր նույնիսկ Վասիլի պաշտոնական պատմագիրը), ազգային ուժերը նրա շուրջը համախմբելու փոխարեն, Վլադիսլավն իր դավաճանությամբ հայրենիքին վատ ծառայություն է մատուցել: Մենք դեռ կվերադառնանք նրա ոճիրի շարժառիթներին: Այսուհետ Բուլղարիայի ճակատագիրը վճռված էր և նրա աղետալի անկումը՝ մոտալուտ: Ամփոփենք այդ վերջին օրերի իրադարձությունները:

Վլադիսլավն իրեն պղծել է մեկ այլ ոճիրով ևս՝ սպանելով «Տրիմալիայի» և «Սերվիայի» իշխան Վլադիմիրին՝ Սամուելի մտերիմներից մեկին, որի ազգակցական կապի աստիճանը մենք կճշտենք ավելի ուշ, և ցանկացել տիրանալ նրա իշխանության ներքո գտնվող Դյուրաքիոն քաղաքին: Վասիլը գնում է Օքրիս՝ Բուլղարիայի գահանիստ քաղաքը, և մտադրվում Դյուրաքիոն մեկնել, սակայն նրա երկու զորավարների՝ Գեորգիոս Գոնիցիատեսի և Օրեստես Գերու (Այխմալոտոսի), կրած պարտությունը նրան զրկում է այդ հնարավորությունից: Նա վերադառնում է Թեսաղոնիկե, այնտեղից էլ գնում Մոսինոպոլիս և մայրաքաղաք վերադառնում 1016 թ. հունվար ամսին (= աշխարհագործության 6524 թ.)[2]:

Նույն տարին Վասիլն արշավում է Տրիադիցայի դեմ, պաշարում Պերնիկ ամրոցը և ութսունութ օր տևող պաշարումից հետո չի կարողանում

[1] Պետրիսկոնը գտնվում է նույն անունը կրող լճի մոտ, Օստրովո լճի հարևանությամբ, ինչպես մենք դա տեսնում ենք Հաշետի քարտեզի վրա: Այսօր դա Եդեսսա-Մոնաստիր երկաթուղու կայարաններից մեկն է: Պետրեսկոնը հիշատակված է «Ստրատեգիկոնում» Պետրիսկոն ձևով, § 181: Վ. Վասիլևսկին չի կարողացել դրա տեղադրությունը պարզել:

[2] Cedrenus, II, p. 463.

գրավել: Ավելի վաղ նույն տեղում անհաջողության էր մատնվել նաև զորավար Նիկեփորոս Քսիֆիասը:

1017 թ. գարնանը կայսրը վերսկսում է պատերազմը և պաշարում Կաստորիա քաղաքը, սակայն ապարդյուն: Վլադիսլավի հետ դաշնակցած պածինակների (6) արշավանքի մասին Դորոստոլի ստրատեգոս Ցիցիկիոսի (Ջիջիկի) հաղորդած լուրը նրան ստիպում է նահանջել, բայց պարզվում է, որ տեղեկությունները չէին համապատասխանում իրականությանը, և նա վերադառնում ու կողոպտում է Սամուելի պալատը Սետենայում: Թեսաղոնիկեի դուքս Կոստանդին Դիոգենեսն ուղարկվում է Վլադիսլավի դեմ: Այն պահին, երբ Վլադիսլավը պատրաստվում էր հարձակվել դուքսի վրա՝ կայսրը շտապ կերպով օգնության է գալիս վերջինիս: Սարսափահար բուլղարները գոչում են. «βεζεῖτε, ὁ Τζαῖσαρ [«Փախե՛ք, սա կայսրն է»]»: Այս հաղթանակից հետո, 1018 թ. հունվարի 9-ին (աշխարհագործության 6526 թ.)[1], Վասիլը վերադառնում է Կոստանդնուպոլիս:

Հետագայում մենք ականատես ենք լինում, թե ինչպես է Վլադիսլավը պայքարում Դյուրաքիոնի ստրատեգոս Նիկետաս Պեգոնիտեսի դեմ այդ քաղաքի պարիսպների տակ: Ըստ Միքայել Դեվոլացու և Միքայել Պսելլոսի տեղեկությունների, նա մենամարտում է Պեգոնիտեսի հետ և զոհվում՝ երկու տարի և հինգ ամիս թագավորելուց հետո[2]:

Վլադիսլավի հետ և նրա մեղքով մարում է նաև Բուլղարիայի անկախությունը: Զարմանալի արագությամբ՝ ծայրից ծայր տիրում է երկրի դիմագիծը ստորացնող բարոյալքությունը: Սամուելի քաջարի զորավարները, նրա համառ և հերոսական պայքարի փորձությունների բովում թրծված զինակիցները, մեկը մյուսի հետևից զիջում են իրենց դիրքերը երեկվա կատաղի հակառակորդին, նրան են հանձնում այն բերդերը, որոնք նրանք այդքան տարիների ընթացքում և այդքան արիաբար պաշտպանել էին:

Վասիլի Ադրիանուպոլիս հասնելուն պես Պերնիկի պարետն իր որդու հետ ընդառաջ են գալիս նրան և հանձնում քաղաքը: Կայսրը Մոսինոպոլսով գնում է Սերես, ուր Պերնիկի պարետի եղբայր Կրակրասը նրան է հանձնում երեսունհինգ ամրոց: Դրագոմուզոսը հանձնում է Ստրումիցան և Հովհաննես Խալդի հետ ներկայանում կայսրին: Դավիթ եպիսկոպոսը (կամ ըստ Միքայել Դեվոլացու՝ Հովհաննեսը) բերում է Մարիամ թագուհու ուղերձը, ուր նա խոստանում է հեռանալ երկրից որոշակի պայմաններ բավարարելու դեպքում: Բոգդանը՝ ներքին ամրոցների պետը, որը սպանելով աներոջը

[1] Cedrenus, II, pp. 464 et sqq. Աշխարհագործության 6526 թ. չի համընկնում ιε' = XV ինդիկտիոնի հետ, որը պետք է ուղղվի հետևյալ կերպ՝ α' = 1: Հետո համաձայնեցումը վերականգնվում է, էջ 475, աշխարհագործության 6527, II ինդիկտիոն:

[2] Տե՛ս «Byzantion», t. XII, p. 285:



արդեն ապացուցել էր իր հավատարմությունը, գործած ոճրին որպես վարձատրություն ստանում է պատրիկի պատվատիճան: Սկոպիայում Սամուելի լավագույն զորաջոկատներն իրենց հրամանատար երիտասարդ Նիկոլիցեսի գլխավորությամբ անցնում են կայսեր կողմը, և Դավիթ Արիանիտեսն հաստատվում է այնտեղ որպես Բուլղարիայի կատեպան: Կայսրը հասնում է Օքրիս՝ Բուլղարիայի մայրաքաղաքը, կողոպտում այն, զավթում բոլոր գանձերն ու քաղաքի կառավարիչ նշանակում Եվստաթիոս Դափնոմելոսին: Այստեղ այրի թագուհի Մարիամն իր ամբողջ ընտանիքով՝ երեք որդի, վեց դուստր, ինչպես նաև Գաբրիելի երկու դուստրերը և հինգ որդիները, ներկայանում են կայսրին: Քաջարի Նեստորիցեսը, Լազարիցեսը և Բերրիա քաղաքը Վասիլին հանձնողի որդին՝ երիտասարդ Դոբրոմիրը, զենքը վայր են դնում:

Վլադիսլավի մնացած երեք որդիները փորձում են կազմակերպել և շարունակել դիմադրությունը, սակայն, երկրի ավագների մոտ համակրանք չգտնելով, ստիպված են լինում ենթարկվելու: Միայն Իվացեսը փորձում է շարունակել դիմադրությունը, սակայն զոհ է գնում Դափնոմելոսի նենգության, որը նրան կուրացնում է և որպես վարձատրություն ստանում Դյուրաքիոնի կառավարչությունը:

Ծերունի Նիկոլիցան մեկ անգամ ևս փորձում է ապավինել կայսեր ողորմածությանը, սակայն վերջինս նրան շղթայակապ ուղարկում է Թեսաղոնիկեի բանտը: Եվ վերջապես, Կաստորիայում նրա ձեռքն են ընկնում Սամուելի երկու դուստրերը: Կայսրն իր առաքելությունը համարում է ավարտված և ուղևորվում է Աթենք: Սպերխեյոսում հիանում է Ուրանոսի հաղթական ճակատամարտում զոհված բուլղարների ոսկորների կույտերով, Ս. Աստվածածին եկեղեցում իր երախտագիտությունն է հայտնում Աստծուն իրեն պարգևած հաջողությունների համար և մեծ շուքով վերադառնում Կոստանդնուպոլիս: Կայսրը մայրաքաղաք մտավ ոսկե թագը գլխին, գերիները, իշխան-իշխանուհիները՝ Մարիամ թագուհու գլխավորությամբ, ռազմակառքի առջև գցած, իսկ ժողովուրդը նրան ողջունում է Բուլղարասպան կոչումով: Դա 1019 թ. էր (II ինդիկտիոն, աշխարհագործության 6527 թվականը)[1]:

Այսպիսին է Բուլղարիայի պատմության հերոսական մի էջի ողբերգական ավարտը: Բուլղարասպան կոչումը վայել է Վասիլին, բայց պատմությունը պիտի զլանա նրան շնորհելու բուլղարացիներին հաղթողի անունը: Մեծ կայսրության տեր, իր տրամադրության ներքո հզոր բանակ, անսահման միջոցներ ունեցող Վասիլը երեսուն տարի պատերազմելուց հետո չի

[1] Cedrenus, II, pp. 467-475.

կարողացել ընկճել Բերրիայից Տրիադիցա և Սերեսից Դյուրաքիոն տարածվող մի փոքրիկ պետության դիմադրությունը: Քանի-քանի անգամներ է Վասիլի պատմագիրը մեզ հայտնել, թե նա գրավել է այս կամ այն քաղաքներն ու բերդերը և այնուամենայնիվ վերջում ստիպված է եղել խոստովանելու, ի զարմանս բոլորիս, որ նույնիսկ սահմանային այն բերդերը, որոնք ամենամեծ վտանգի էին ենթարկվում, այնպիսիք, ինչպիսիք էին Սերվիան և Տրիադիցան, չէին առնվել բուլղարներից, և որ դրանք մյուսների հետ հանձնվել էին կայսրին միայն Բուլղարիայի անկախության ոչնչացման պահին: Մարտական կրքերն ու ռազմական փառասիրությունն անկասկած բավարար չեն հաղթանակներ շահելու համար: Դրա համար առաջին հերթին անհրաժեշտ է ռազմական տաղանդ: Վասիլն այն ուներ, սակայն այդ տաղանդն աչքի ընկնող չէր: Մենք նրան չենք կարող վերագրել և ոչ մի քիչ թե շատ փայլուն հաղթանակ: Սպերխեյոսի և Կլեյդիոնի հաջողությունները պետք է վերագրել նրա զորավարներ Ուրանոսին և Քսիֆիասին: Ամեն պարագայում նա հասել է իր դաժան քաղաքականության նպատակին և սպանել Բուլղարիան, սակայն նա այդ բանն արել է այն ժամանակ, երբ Բուլղարիան արդեն մահացած էր, իսկ նա այդպիսին էր Բուլղարիայի ազատության կերտող և պաշտպան Սամուելի մահվան պահից ի վեր: Ո՞վ էր Սամուելը:

## II

## ՍԱՄՈՒԵԼԻ ԾԱԳՈՒՄԸ

Երկար ժամանակ Սամուելի ծագման վերաբերյալ սխալ կարծիք է տիրապետել, որը հետևանք է փաստագրական կեղծ տվյալների և, որոնց հիման վրա էլ նրան աշխատել են ներկայացնել որպես Բուլղարիայի արքա Շիշմանի որդի:

Այդ փաստաթղթերն են Պինցիուսի Խարտիան և Զոգրաֆի Արքայացանկը:

Առաջինը 994 թ. վավերագիր է, ուր ասվում է, թե այդ թվականին Բուլղարիայում թագավորում էր Ստեփանոս անունով մի արքա, որի հայրն էր ոմն Շիշման: Փորձ է կատարվել Սամուելին նույնացնելու Ստեփանոսի հետ և նրան դարձնելու Շիշմանի որդին:

Մյուս վավերագիրը Բուլղարիայի արքաների գահացուցակն է, ուր Պետրոսից հետո գալիս են Բորիսը, Ռոմանոսը, Շիշմանը, Դավիթը և Սամուելը: Դրանից ենթադրել են, որ Շիշմանը Սամուելի հայրն է:

Այս վավերագրերը կորցրեցին իրենց արժեքը, երբ հայտնաբերվեց Սամուելի արձանագրությունը, ուր գրված է նրա հոր իսկական անունը՝ Նիկողայոս: Քննադատներն առանց վարանելու ընդունեցին ինչպես Խարտիայի, այնպես էլ Գահացուցակի կատարյալ արժեզրկումը. առաջինը չէր կարող 994 թ. փաստաթուղթ լինել, քանի որ հորինվել էր XVI դարում, իսկ երկրորդը նույնպես չէր կարող ստեղծվել 1502 թ., այլ հորինվել էր XVIII դարի վերջում - XIX դարի սկզբում, և Շիշման անունը հեղինակի կողմից այնտեղ ներմուծվել էր կամայականորեն: Հարցն ուրեմն լուծված է վերջնականապես[1]:

Կեդրենոսի վկայությունները Սամուելի ծագման վերաբերյալ ստույգ չեն: Նրա կարծիքով Սամուելը Կոմսաձագ կոչվող չորս եղբայրներից մեկն է՝ բուլղարների հզոր «կոմսի» որդին. ἑνὸς τῶν παρὰ Βουλγάροις μέγα δυνηθέντων κόμητος [«բուլղարների հզորներից մի կոմսի»]: Դրանից անպայմանորեն չի հետևում, թե կոմսը՝ նրա հայրը, ծնունդով բուլղարացի պետք է լիներ: Այս անորոշությանը հայ պատմիչ Ասողիկը հակադրում է մի շատ հստակ հայտարարություն. «Զի էին նորա երկու եղբարք, որ Կոմսաձագքն կոչէին, անուն երիցուն Սամուէլ, յազգէս Հայոց, ի գաւառէն Դերջանայ, զոր ընդ գունդս սաղարացն տարեալ էր զնոսա թագաւորն Վասիլ ի Մակեդոնիա պատերազմել ընդ Բուլղարացն, որոց ի դիպող ժամու ապստամբեալ ի թագաւորէն Յունաց՝ գնացին առ թագաւորն Բուլղարաց, որ էր կուրտ, և ըստ քաջութեան իրեանց մեծացան յաչս նորա:

Եւ ապա յետ այսորիկ թագաւորն Յունաց Վասիլ ի պատերազմի կալաւ զթագաւորն Բուլղարաց զկուրտ ներքինին: Իսկ Կոմսաձագքն տիրեալ ի վերայ աշխարհին Բուլղարաց՝ ընդդէմ կացին խիստ մարտիւք թագաւորին Յունաց»[2]:

Ասողիկի բնագիրն առաջին հրատարակությամբ լույս է տեսել 1859 թ. Փարիզում: Երկրորդ լրացված հրատարակությունը եղավ 1885 թ. Ս.Պետերբուրգում, Մ. Էմինի ռուսերեն թարգմանությամբ՝ 1864 թ. Մոսկվայում: Սակայն Սամուելին վերաբերող հատվածը հայտնի էր դեռևս Մ. Չամչյանի հիմնարար աշխատությունից, որը հրատարակվել է 1786 թ. (7), իսկ գիտական հասարակայնությանը մատչելի է դարձել 1828 թ. Հովհաննես Ավդալի անգլերեն թարգմանության շնորհիվ (8):

Բյուզանդագետները ծանոթ չէին Ասողիկի բանկագին վկայությանը,

[1] Ցավալի է տեսնել, թե ինչպես են հին ու փորձված բյուզանդագետները Շ. Դիլն ու Ն. Յորգան նպաստում մի սխալի հարատևմանը՝ «կոմս Շիշմանին» համարելով Կոմսաձագերի հայրը. մեկն իր վերջերս հրատարակած «Histoire du Moyen Age», t. III, pp. 470-477 (Histoire générale de GLOTZ, Paris, 1936), իսկ մյուսը «Histoire de la Vie Byzantine», II, p. 197 (1934) աշխատության մեջ: Պինցիուսի Խարտիան (D. Farlati, Illyricum Sacrum, III, p. 111) և Զոգրաֆ [վանքի] գահացուցակը ուսումնասիրվել են Վ. Զլատարսկու կողմից Սոֆիայի համալսարանի տարեկան հանդեսում (1919-1920) և «Բուլղարական թագավորության պատմության» մեջ, հատ. 2, էջ 638, ծան. 1 (բուլղարերեն):

[2] Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, հրատ. Ստ. Մալխասյանց, Ս.Պետերբուրգ, 1885, Գ, գլ. 22:

իսկ նրանք, ովքեր ի վերջո ծանոթացան, դիտեցին այն անհիմն կասկածամտությամբ[1]: Սակայն հայ պատմագիրն արժանի է ավելի մեծ հարգանքի: Նա Սամուելի ժամանակակիցն է, միակ ժամանակակիցը, որը խոսել է նրա մասին: Նա իր տեղեկությունները հավաքել է տեղում՝ Դերջանում, Սամուելի հայրենիքում: Դերջանը Եփրատի ջրերով ոռոգվող շրջաններից է, ընկած է Էրզրումից դեպի արևմուտք և իր հին անունը պահպանել է մինչ մեր օրերը: Ասողիկն առիթ է ունեցել այցելելու Դերջան ու որոշ ժամանակ եղել Խլաձորի վանքում, որի հիմնադրին և առաջին առաջնորդին՝ Սիոնին, ճա-

[1] **G. Schlumberger**, Epopée byzantine, I, pp. 599, 648; II. p. 55, հայտարարել է, որ Ասողիկի, Մատթեոսի և Սամուել Անեցու վկայությունները սխալ են, հատկապես Սամուելի և Ռոմանոսի անձի վերաբերյալ: Այս կարծիքը հիմնված է Մատթեոս Ուռհայեցու երկասիրության՝ Դյուլորիեի թարգմանությանն ուղեկցող սխալ ծանոթագրությունների վրա, էջ 383: Ամեն դեպքում Ասողիկը մեղք չունի. *Կուրա*-ը հատուկ անուն չէ, այլ նշանակում է թլպատած, ինչպես բացատրել է Ստ. Մալխասյանցը Ասողիկի իր հրատարակության մեջ:

Մատթեոս Ուռհայեցու շարադրած փաստերը ճշգրիտ են: Բայց Մատթեոսի սխալն այն է, որ նա Ալուսիանոս է անվանում և՛ Ռոմանոսին և՛ Հովհաննես-Վլադիսլավին: Մենք գիտենք, որ Ալուսիանոսը վերջին բուլղար թագավորի՝ Հովհաննես-Վլադիսլավի, որդիներից մեկն էր: 1040 թ. նա Հայաստանի Թեոդոսուպոլիս քաղաքի ստրատեգոսի պաշտոնակատարն էր: Ալուսիանոսից հետո այդ անունը հայտնի է դառնում, և Մատթեոսն այն օգտագործում է որպես ազգանուն՝ բուլղար արքաներին նշելու համար (9): Ալուսիանոսի (Հովհաննես-Վլադիսլավ) մահվան տարեթվի մեջ գրչական սխալ կա. հայոց տոմարի *ՆԿ* (= 460 թ.)-ի փոխարեն պետք է լինի *ՆԿԵ* (= 465 թ.), եթե դատելու լինենք դրան հետևող *ՆԿԷ* (= 467 թ.) տարեթվից: Նախորդ տարեթիվը *ՆԾԲ* (= 452 թ.) նույնպես թյուրընթերցում է *ՆԾԹ* (= 459 թ.)-ի փոխարեն: Դա ըստ **Cedrenus**, II, p. 456, 1011 թ. տեղի ունեցած երկրաշարժի տարեթիվն է:

Ինչ վերաբերում է Սամուել Անեցի պատմիչին, ապա նա Ասողիկից և Մատթեոսից բացի այլ աղբյուրներ չունի: Ասողիկը թլպատված (*կուրա* և ոչ թե *կույր*) արքային (= Ռոմանոսին) նույնացրել է Ալուսիանոսին, կրկնելով Մատթեոսի սխալը: Վասիլի սպանած բուլղար վերջին արքային, որի կնոջը և զավակներին կայսրը գերեվարել էր, նույնպես անվանում է Ալուսիանոս, դարձյալ կրկնելով Մատթեոսի սխալը, սակայն այդ արքան թլպատվածը (Ռոմանոսը) չէ, այլ Հովհաննես-Վլադիսլավը:

Տարօրինակ է, որ **H. Gelzer**, Abriss der Byzantinischen Kaisergeschichte; **А. Васильев, История Византийской империи**; **S. Runciman**, A History of the first Bulgarian Empire լիովին անտեսել են Ասողիկի երկասիրությունը: Հարկ եղավ սպասել մինչև 1925 թ., որպեսզի վերջապես մի ձայն բարձրանար ի նպաստ հայ պատմագրի: Յորդան Իվանովը, **Произходъ на царь Самуиловия родъ, Сборник въ честь на В. Н. Златарски**, 1925, ընդունել է Սամուելի հայկական ծագումը, բայց նրա Բուլղարիա գալը տանում հասցնում է Կոստանդին Կոպրոնիմոսի և Լևոն Խազարի ժամանակաշրջանը, մի բան, որն անընդունելի է: Պրուսիանոս, Ալուսիանոս, Դելեանոս, Տրայանոս անունները հայկական չեն, ինչպես կարծում է նա:

Վ. Ն. Զլատարսկին քաջածանոթ է Ասողիկի գործին, սակայն ոչ մի նշանակություն չի տալիս Սամուելի ծագման վերաբերյալ նրա վկայությանը, ինչպես դա երևում է Ասողիկին մեջբերելու նրա եղանակից. **«Тѣ били двама братя, които били наречини комсадцаги; името на по-стария било Самаель... императоръ Василий ги бѣ довелъ съ наемнитѣ войски въ Македония...»** («История на първото Българско царство», часть II, с. 658):

Բուլղարացի հմուտ պատմաբանը նույնիսկ հարկ չի համարել վերարտադրել Ասողիկի ամբողջ հատվածը և զանց է առել Սամուելի հայկական ծագմանը վերաբերող բառերը: Եվ դա՝ Յո. Իվանովի հոդվածից հետո, որին նա ծանոթ է:



նաչել է անձամբ, ինչպես նաև նրա երկու հաջորդներին՝ Պետրոսին ու Բարսեղին: Վերջինս վանքի վանահայրն էր, երբ մեր պատմիչը պասի ժամանակ այցելել է վանքը ու վայելել նրա հյուրընկալությունը, և իր երախտագիտությունն է արտահայտել իր աշխատության մեջ՝ որոշ նոթեր թողնելով վանքի մասին[1]:

Այդ վանքում է, որ նա քաղել է իր տեղեկությունները Սամուելի ծագման մասին: Վանականները լավատեղյակ էին իրենց գավառից սերված Սամուելի ծագմանը, և դրա մասին տեղեկացրել են իրենց պատվավոր հյուրին:

Ասողիկի տեղեկությունները չեն պարունակում բացառապես ոչինչ, որ կարող էր շփոթեցնել նույնիսկ ամենաբծախնդիր բյուզանդագետին: Նա չի գրել Սամուելի պատմությունը, այլ նրա մասին ընդամենը մի քանի նշում է արել: Ասողիկը հայտնում է, որ Սամուելը Կոմսաձագ էր և ուներ մի եղբայր, մյուս երկու եղբայրները հայկական հետևակային զորագնդի հետ կայսեր կողմից նախապես ուղարկվել էին բուլղարների դեմ կռվելու: Վասիլը չէր, որ նրանց բերել էր տվել Դերջանից, ինչպես նաև նա չէր, որ կազմակերպել էր հայկական հետևակային զորագունդը: Բնագրում ասվում է, որ Վասիլ կայսրը դերջանցի եղբայրներին հետևակային զորախմբի հետ ուղարկել է բուլղարների դեմ: Դա նշանակում է, որ եղբայրները արդեն ծառայում էին կայսրությանը, և նրանք արդեն հետևակի կազմի մեջ էին, երբ նրանց ուղարկել են բուլղարական ճակատ: Ասողիկը շատ լավ գիտեր, որ հայկական հետևակային զորագունդը գոյություն ուներ դեռևս Չմշկիկի ժամանակաշրջանից, այսինքն՝ մինչև Վասիլը:

Քիչ անց Ասողիկն ասում է, որ Կոմսաձագերը հարմար առիթ են ընտրում բուլղար արքայի (այսինքն՝ բուլղարների) կողմն անցնելու համար, և որ նրանք ծառայում են արքային, որը ներքինի էր, իսկ նրա գերեվարումից հետո զավթում են գահը:

Պատմիչին մեղադրելու որևէ առիթ չկա: Վերը մենք տեսանք, որ Ռոմանոսը արքա է հռչակվել 986 թ., երբ փախել է Կոստանդնուպոլսից, և մնացել գահի վրա մինչ իր երկրորդ գերեվարումը 991-995 թթ. Վասիլի արշավանքի ժամանակ: Սամուելը շարունակել է նրան ճանաչել որպես արքա, քանի դեռ չի ստացել նրա մահվան լուրը: Դրանից հետո է միայն, որ նա 997-998 թթ. յուրացրել է արքայի տիտղոսը: Այս ամենը հակասում է Կեդրենոսի հաղորդած տվյալներին, սակայն համընկնում է Յահյայի տեղեկություններին: Մեր կարծիքով անգամ կասկած չի ծագում, թե որ վարկածը պետք է հիմք ընդունել:

[1] **Ասողիկ**, Գ, գլ. 7:

Ամենաանհանգստացնող հանգամանքն այն է, որ հայ պատմիչը ճանաչում է Կոմսաձագ երկու եղբայրների և ոչ թե չորս, ինչպես Կեդրենոսը: Բարեբախտաբար այս պարագայում դատավորն ինքը Սամուելն է: Տեսնենք, թե նա ինչ է ասում իր հուշակավոր արձանագրության մեջ:

<ъ> имя отьца и сь-
ина и с¯таго доуха а-
зъ Самоилъ рабъ бж<и>
полагаю памятъ <отъц>-
у и матери и брат<у> <н>-
а кръстъх си<хъ. Се>
имена усъпъш<ихъ: Ни>-
кола рабъ б¯жи <Рифими>-
ъ Дав<ы>дъ. Написа<ся въ>
лъто сътв<орения миро>-
у ζ : φ̄ : α¯инъди<кта ѕ>.

«Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, ես Աստծու ծառա Սամուելս կանգնեցնում եմ այս խաչն ի հիշատակ իմ հորը, իմ մորը և իմ եղբորը: Սրանք են հանգուցյալների անունները՝ Աստծու ծառա Նիկողայոս, Հռիփսիմե և Դավիթ: Գրված է աշխարհագործության 6501 թ., VI ինդիկտիոնի (992-993)»[1]:

Ուրեմն, Սամուելը հավերժացրել է հոր, մոր և Դավիթ եղբոր հիշատակը: Իսկ ինչու՞ չեն հիշատակվել նրա մյուս երկու եղբայրները՝ Ահարոնն ու Մովսեսը: Ահարոնին սպանել էր ինքը՝ Սամուելը և այդ պատճառով նա կարող էր բաց թողնել նրա անունը: Բայց 986 թ. Մովսեսն ընկել էր ռազմի դաշտում Սամուելի կողքին թշնամու դեմ պայքարելիս: Ինչու՞ էր Սամուելը մերժել նրան Դավթին տրված պատիվը: Բարդություն, որն Ասողիկի որոշակի վկայության ստուգման համար առաջ է քաշում մի խնդիր. Կոմսաձագ եղբայրները երկու՞սն էին, թե՞ չորսը:

Պատասխանելուց առաջ նշենք Սամուելի արձանագրության տվյալները հաստատող այլ վկայություններ: Արձանագրությունը թվագրված է 992-993 թթ. և Սամուելն այնտեղ որակված է պարզապես որպես Աստծու ծառա, առանց որևէ արքայական տիտղոսի: Տպավորիչ զուգադիպություն, որը փաստում է, որ 993 թ. Սամուելը դեռևս թագավոր չէր՝ ճիշտ համաձայն Ասողիկին և Յահյային, որոնք նրա գահակալությունը թվագրում են 997-998 թթ., Ռոմանոսի մահից հետո:

[1] Տե՛ս Ф. Успенскій, «Извъстія Русс. арх. института», IV (1899) և Иор. Ивановъ, Български старини изъ Македония, София, 1931, с. 25.



Ըստ արձանագրության Սամուելի հոր անունն էր Նիկողայոս: Մոր անունից մնացել է միայն վերջին - ъ տառը: Միքայել Դևոլացին, վկայելով, որ Սամուելի հոր անունն էր Նիկողայոս, իսկ մոր անունն էր ʼΡιψιμή, հնարավորություն է տալիս այն վերականգնելու: Սա հաստատում է Ասողիկի իրավացիությունը շատ կարևոր մի հարցում՝ Սամուելի հայկական ծագման մասին: Հռիփսիմեն, հակառակ իր առեղծվածային ծագմանը, բացառապես հայկական անուն է, այն անունն է Հայոց եկեղեցու մեծ սրբուհու: Հռիփսիմե անունն էր կրում Դիոկղետիանոսի հալածանքների ժամանակ Հայաստան փախած այն կույսը, որն իր ամբողջ հետևորդների խմբի հետ նահատակվեց Տրդատ թագավորի կողմից: Նրա մարտիրոսությունը վկայված է հայ պատմիչ Ագաթանգեղոսի երկասիրության մեջ: Այդ ժամանակից ի վեր մինչև այսօր Հռիփսիմե անունը դարձել է ամենատարածված հայկական անուններից մեկը: Բյուզանդիայի Տարոնացի իշխանների նախահոր՝ Բագարատի քույրը, կրում էր այդ անունը (IX դար): Սամուելի մայրը՝ Նիկողայոսի կինը, ամեն դեպքում հայուհի էր: Յո. Մարկվարտն այդ ընդունել է, սակայն վարանել է Նիկողայոսին ևս այդ նույն ծագումը վերագրելու հարցում, քանի որ նրա անունը հայկական չէր: Սակայն Նիկողայոսը բուլղարական անուն էլ չէ և այդ նույն պատճառով կարելի է մերժել նաև նրա բուլղարական ծագումը: Բյուզանդիայում ապրող հայերը արդյո՞ք զուտ հայկական անուններ էին կրում: Կեկավմենոսը բնավ էլ հայկական անուն չէ, սակայն այն կրում է ազգությամբ հայ՝ Հայաստանից նոր արտագաղթած մի անձնավորություն: Բյուզանդիային ծառայության անցնելիս հայերը փոխում էին, կամ էլ հիմնականում հունական երկրորդ անուններ էին ընդունում, ինչպիսիք էին Վարդան-Փիլիպպիկոս, Ալեքսիոս-Մուզելե (Մուշեղ), Կոստանդին-Մանիակես (Մանակի փոխարեն), Թոմաս-Արտավան, Հովհաննես-Արտավազդ, Միքայել-Կուրտիկ և այլն:

Նիկողայոսը միգուցե Սամուելի հոր անհայտ հայկական անվանն ավելացված անունն է, ինչպես եղել է Կեկավմենոսի պարագայում, որի հայկական անունը չի պահպանվել: Բոլորին հայտնի է թվաբանական աշխատության հեղինակ ὁ Νικόλαος ʼΑρταβάζδος-ը, որի ձեռագիրը գտնվում է Փարիզի Ազգային գրադարանի հունական ֆոնդում № 2428, էջ 194: Սա հայ է Արտավազդ անունով, որն ընդունել է հունական Նիկողայոս անունը: Մեկ այլ հայ Արտակաս (= Արտակ) անունով վերցրել է նույն Նիկողայոս անունը[1]: Նիկողայոս անունը կարող էր Սամուելի հոր մականունը լինել: Բացառված չէ նաև, որ դա կարող էր նրա իսկական անունը լինել: Այս անունը նշանավոր սքանչելագործ եպիսկոպոսի պաշտամունքի հետ դարձել է

[1] K. Κωσταντόπουλος, Βυζαντιακὰ Μολυβδόβουλλα, n° 381.

քրիստոնյա ժողովուրդների սեփականությունը: Այս անունը հունարեն և վրացերեն լեզուներով փորագրված է Էրզրումի շրջանում գտնվող Ագարակ գյուղի եկեղեցու պատին: Գյուղը հայկական է: Սա ապացուցում է, որ գոնե հայ քաղկեդոնիկների միջավայրում Նիկողայոս անունը տարածված էր:

Եվ վերջապես, հիշեցնենք, որ Տարոնացի իշխանի որդին՝ Թոռնիկը, որը որոշակի դեր է խաղացել 945-963 թթ. իրադարձություններում և որը, համապատասխանաբար, Սամուելի հոր ժամանակակիցն էր[1], նույնպես կրում էր Նիկողայոս անունը: Ամեն դեպքում մեզ ոչինչ չի ստիպում կասկածի ենթարկելու Ասողիկի վկայությունների ճշմարտացիությունը: Նա չի ասում, թե Սամուելը միայն մոր կողմից էր հայ, այլ որ նա ազգությամբ հայ էր, այսինքն՝ հոր կողմից ևս հայ էր:

Հռիփսիմե անունը ստիպում է մտածել, որ Նիկողայոսը նրա հետ ամուսնացել էր իր հայրենիքում՝ Դերջանում, քանի որ Բյուզանդիայում հայուհիներն իրենց անունները ավելի հեշտությամբ էին փոխում, քան տղամարդիկ: Նիկողայոսի որդիների անունները՝ Սամուել և Դավիթ, շատ բնորոշ են: Դրանք աստվածաշնչական անուններ չեն, ինչպիսիք են Մովսեսն ու Ահարոնը, քանի որ դրանք շատ վաղ շրջանում ընդունվել են հայ ավատատերերի կողմից և նրանց շրջանում մեծ տարածում են ստացել: Փավստոս Բուզանդի հերոսներից մեկի՝ Մամիկոնյան իշխանի, անունը արդեն IV դարում Սամուել էր: Դավիթ Սահառունին 641 թ. եղել է կյուրոպաղատ և Հայաստանի բյուզանդական մասի կառավարիչը: Հնարավոր է, որ Դավիթն ու Սամուելը ծնվել են Դերջանում:

Սակայն վերադառնանք Մովսեսի և Ահարոնի ով լինելուն: Կեդրենոսը Դավթին ու Սամուելին եղբայրացնելով հակադրվում է ոչ միայն Ասողիկին և Յահյային, որը որոշակիորեն տարբերակում է Սամուելի տոհմը Ահարոնի տոհմից կամ, ավելի ճիշտ, Կոմսաձագերի տոհմը թագավորականից, այլև Սամուելի արձանագրությանը:

Յահյան Սամուելին միշտ հիշատակում է Կոմսաձագ անվան ներքո, մինչդեռ Սամուել անունն օգտագործվում է Պետրոս թագավորին և նույնիսկ Ռոմանոսին նշելու համար, ըստ երևույթին Սամուել և Սիմեոն անունները շփոթելու հետևանքով[2]: Այս վերջին անունը իսկապես եղել է Պետրոսի հոր և Ռոմանոսի պապի անունը, որի անվան ներքո է Ռոմանոսը թագադրվել:

---

[1] **N. Adontz**, Les Taronites à Byzance, տե՛ս «Byzantion», XI (1936), p. 30: Հիշեցնենք, որ մի Նիկողայոս՝ Խալդիկայի հարկահավաքը, որը հայտնի էր 914 թ. (այն Նիկողայոսը, որը փախել է արաբների մոտ) ծագումով կարծես թե այդ երկրից էր: Լևոն Իմաստասերի ժամանակաշրջանում ապրող մեկ այլ Նիկողայոս հետերիարքոս է եղել: Նրա որդին ամուսնացել է հռչակավոր Ստիլիանոս Հայկազնի դստեր՝ Զոե կայսրուհու քրոջ հետ:

[2] **G. Schlumberger**, op. cit., p. 143, նույն սխալն է թույլ տվել ասելով, որ Ռոմանոսը վերցրել է *Սամուել* անունը:



Անունների շփոթությունից բացի այլ բարդություն չկա: Փախստական երկու եղբայրները (Սամուելի=) Պետրոսի որդիներն են, իսկ Կոմսաձագն ընդամենը փախստական իշխանի (=Ռոմանոսի) օգնական է՝ ghulam-ը: Ռոմանոսը արքա է հռչակվում, իսկ Կոմսաձագը գլխավորում է նրա բանակը: Արքայի գերեվարումից հետո Կոմսաձագն իր վրա է վերցնում պետության կառավարումը և, գերի թագավորի մահվան լուրն առնելուն պես, իրեն արքա է հռչակում: Ինչ վերաբերում է Կոմսաձագի որդու (Գաբրիել-Ռոմանոսի) սպանությանը, ապա Յահյան ասում է, որ նրան սպանել է բուլղար առաջնորդներից մեկը՝ Ահարոնի որդին, որովհետև *Ահարոնը պատկանում էր այն տոհմին, որը թագավորել էր Բուլղարիայում*[1]: Ուրեմն, Սամուելը բռնազավթիչ էր, իսկ Ահարոնը թագավորական հարստության օրինական ժառանգը: Այս ամենը նոր լույս է սփռում երկու ընտանիքների բախումների վրա և հասկանալի է դարձնում այնպիսի ողբերգությունների շարժառիթները, ինչպիսիք էին Ահարոնի սպանությունը Սամուելի կողմից, Սամուելի որդի Գաբրիելի սպանությունը Հովհաննես-Վլադիսլավի՝ Ահարոնի որդու կողմից, Սամուելի ազգական Վլադիմիրի սպանությունը նույն այդ Հովհաննես-Վլադիսլավի կողմից և հասնում ենք մինչև Գաբրիել-Ռոմանոսի որդի Պետրոս Դելիանոսի ընդհարումը Հովհաննես-Վլադիսլավի որդի Ալուսիանոսի հետ, շատ նշանակալից մի ընդհարում, ուր Պետրոսը «կասկածում էր <Ալուսիանոսին> դավաճանության մեջ» προδοσίαν ὑποπτεύων, ճիշտ այնպես, ինչպես Սամուելը մեղադրում էր Ահարոնին որպես [«հռոմայեցիների <հաջողությունների> մասին հոգացող»] τὰ ῾Ρωμαίων φρονοῦντα և կայսեր օգնությամբ τὴν ἀρχὴν εἰς ἑαυτὸν σφετεριζόμενον [«իշխանությունը յուրացնող»][2], ապա ամեն ինչ պարզ է դառնում:

Մովսեսի ու Ահարոնի պատկանելությունն արքայական ընտանիքին այլևս ենթադրական չի լինի, եթե մենք մտաբերենք Պետրոս արքայի բախումն իր երկու եղբայրների՝ Միքայելի և Հովհաննեսի, հետ, որոնցից յուրաքանչյուրն իր հերթին մի խումբ կողմնակիցների գլուխն անցած դավում էին նրա դեմ: Հովհաննեսի դավադրությունն ավելի վտանգավոր էր, որովհետև նրան հովանավորում էր Լեկապենոս կայսրը, անկասկած, երկրի արքային կախման մեջ պահելու նպատակով: Դավադրությունը բացահայտվում է, և մեղավորները պատժվում են: Պետրոսը ստիպում է Հովհաննեսին վանք մտնել: Բյուզանդական արքունիքին հաջողվում է նրան ազատել մենաստանից և տեղափոխել մայրաքաղաք: Լեկապենոսը նրան մեծ պատվով է ընդունում, ամուսնացնում է մի հայուհու հետ՝ καὶ γυναῖκα ἐκ τῆς

---

[1] **Яхья = Розен**, с. 58.

[2] **Cedrenus**, II, p. 435.

ἑαυτοῦ πατρίδος τῆς τῶν ᾿Αρμενιακῶν ὁρμωμένην [և կին, որ ծագում էր իր իսկ հայրենիքից՝ Արմենիակա <բանակաթեմից>][1] և բնակեցնում Կեսարիայում,: Դժբախտաբար մեզ ոչինչ հայտնի չէ Հովհաննեսի հետագա կյանքի մասին: Եթե ենթադրենք, որ Հովհաննես-Վլադիսլավը, ինչպես դա ընդունված էր, իր անվամբ պարտական էր իր պապին, ապա անպատշաճ չէր լինի, եթե մենք ենթադրեինք, որ այդ պապը եղել է Հովհաննեսը և, համապատասխանաբար, Մովսեսն ու Ահարոնը եղել են այդ նույն Հովհաննեսի որդիները: Վերջինիս կողմից իր եղբորից՝ Պետրոսից, թագը խլելու փորձը դրվում է 928 թվականին, ամուսնությունը նույնպես: Հնարավոր է, որ Պետրոսի մահից հետո, կամ, ավելի հավանական է, Չմշկիկի կողմից Բորիս և Ռոմանոս թագաժառանգներին գերեվարելուց հետո, Մովսեսն ու Ահարոնը վերադարձած լինեին հայրենիք՝ թագավորական գահը պահանջելու ճիշտ այնպես, ինչպես Ալուսիանոսը, որը 1040 թ. փախել էր Թեոդոսուպոլսից: Կոմսաձագ եղբայրները՝ Դավիթն ու Սամուելը, կարող էին նրանց համախոհները լինել, միգուցե նրանք ողջունում էին նրանց հավակնությունները: Սակայն օրինական ժառանգ Ռոմանոսի անսպասելի վերադարձը փոխում է իրադրությունը: Սամուելը բռնում է Ռոմանոսի կողմը ընդդեմ Ահարոնի, որը և դառնում է սեփական հավակնությունների և դավադիր գործողությունների զոհը:

Մովսեսն ու Ահարոնը Կոմսաձագերի ընտանիքից չէին: Խառնաշփոթի պատճառն առաջին հերթին գալիս է այս երկու ընտանիքներին բնորոշ մի ընդհանուր առանձնահատկությունից. Դավիթն ու Սամուելը հայեր էին, իսկ Մովսեսն ու Ահարոնը հայեր էին մորական գծով: Այդ առանձնահատկությունն ինքնըստինքյան դրդել է նրանց միավորելու: Կա մեկ այլ առանձնահատկություն ևս՝ բազմամյա համագործակցությունը նույն գաղափարի համար: Պետք չէ մոռանալ, որ Սկիլիցես-Կեդրենոսը, որը խոսում է Կոմսաձագ չորս եղբայրների մասին, իր աշխատությունը գրել է եղբայրների թատերաբեմ իջնելուց գրեթե հարյուր տարի անց: Ավելացնենք նաև, որ բյուզանդացիները հիմնականում բոլորովին էլ չէին հետաքրքրվում իրենց օտար հակառակորդների տոհմաբանությամբ: Նրանք ճշգրիտ պատկերացում էլ չունեին Բուլղարիայի թագավորական ընտանիքի վերջին անդամների ինքնության մասին, չնայած այն բանին, որ նրանք Բյուզանդիա տարվելով բարձր դիրքի էին հասել: Սկիլիցես-Կեդրենոսի համար Ալուսիանոսը՝ ὁ τοῦ ᾿Ααρὼν δεύτερος υἱός [«Ահարոնի երկրորդ որդին է»][2], մինչդեռ նա Հովհաննես-Վլադիսլավի որդիներից մեկն էր: Նույն սխալին ենք հանդիպում

[1] Theoph. Contin., p. 419.
[2] Cedrenus, II, p. 531.



Պսելլոսի մոտ չնայած այն բանին, որ նա անձամբ ճանաչում էր Ալուսիանոսին և հիանում էր նրա աչքի ընկնող հատկանիշներով[1]: Հովհաննես-Վլադիսլավի դուստր Կատարինեն՝ Իսահակ Կոմնենոսի կինը, ներկայացվել է որպես Սամուելի դուստր[2]: Բոլորը կարծում էին, որ Տրայանոսի դուստրը, որն ամուսնացած էր Անդրոնիկոս Դուկասի՝ Հովհաննես Կեսարի եղբոր, հետ Սամուելի եղբոր դուստրն էր, այնինչ նա Հովհաննես-Վլադիսլավի որդու դուստրն էր[3]: Այլևս ինչ ասենք Պսելլոսի մասին, որը չարաշահելով իր պերճախոսությունը մեզ համոզում է, որ Դելիանոսը (որի անունը նա ձևափոխում և դարձնում է Դոլիանոս, որպեսզի այն սերի δόλος [«խարդախություն»] բառից) ոչ այլ ինչ է, եթե ոչ «բավականին ստոր ծագում ունեցող ինքնակոչ անձ, թագավորական ընտանիքի ոչ թե օրինական ժառանգ, այլ ապօրինի զավակ», հակադրելով նրան Ալուսիանոսին, «թագավորական ընտանիքի օրինական ժառանգին»[4]: Բարեբախտաբար Միքայել Դևոլացու միջամտության շնորհիվ մենք գիտենք, որ Պետրոս Դելիանոսը իրականում եղել է Գաբրիել-Ռոմանոսի առաջին կնոջ՝ հունգար թագավորի դստեր, որդին, այսինքն՝ նա թագավորական ծագում ուներ թե՛ հոր և թե՛ մոր կողմից:

Այսպիսի օրինակներից հետո Մովսեսի ու Ահարոնի նույնացումը Կոմսաձագ եղբայրների հետ արտառոց չպետք է թվա:

Κομητόπουλος՝ Կոմսաձագ մականունը նույնպես կարող է վեճի առարկա դառնալ ինչպես իր ծագման, այնպես էլ իրական իմաստի տեսակետից: Ըստ մեր ժամանակագրի եղբայրները «կրում էին այդ անունը, որովհետև նրանք բուլղար ամենաազդեցիկ առաջնորդներից մեկի, մի κόμης-ի որդիներն էին». ἑνὸς τῶν παρὰ Βουλγάροις μέγα δυνηθέντων κόμητος ὄντες παῖδες καὶ διὰ τοῦτο Κομητόπουλοι.

Այս զուտ ստուգաբանական բնույթ ունեցող բացատրությունը մեզ ոչինչ չի ասում խնդրո առարկա եղբայրների հայրը հանդիսացող այդ նշանավոր անձի իշխանության էության մասին: Բուլղար գիտնականները գերագնահատել են Կեդրենոսի այս հատվածի նշանակությունը, պնդելով, որ խոսքը ազգային մի հաստատության՝ kmet - ի, մասին է: Սա սլավոնական ծագում ունեցող բառ է, որը տարբերվում է լատինական comes բառից[5]: Այդ բանը հաստատելու համար նրանք հղում են Հինկմարի Տարեգրության մի հատված, ուր խոսվում է Բորիս արքայի դեմ ուղղված բուլղար առաջնորդ-

[1] Psellos (éd. E. Renaud), I, p. 79.
[2] Bryennios, p. 19.
[3] Ibid., p. 106.
[4] Psellos (éd. E. Renaud), I, pp. 76, 77, 80.
[5] N. Van Wijk, Slavia, IV (1925) p. 209 իր վրա է վերցրել այդ դժվարին խնդրի լուծումը: В. Златарски, op. cit. c. 635:

ների ապստամբության մասին, որի պատճառը նրա դարձն էր: Ահա այդ հատվածի էական մասը. proceres sui moleste ferentes, concitaverunt populum adversus eum, ut illum interficerent. Quotquot igitur fuerunt intra decem *comitatus* adunaverunt se circa palatium eius; ille vero cum quadraginta tantum octo hominibus... profectus est contra illam omnem multitudinem... Rex autem ex proceribus qui populum maxime adversus eum incitaverunt, interfecit numero quinquaginta duos, reliquam autem populum inlaesum abire permisit [«ազնվատոհմիկները, դժգոհելով, գրգռում էին ժողովրդին նրա դեմ, որպեսզի սպանեն նրան: Եվ որքան որ մարդ եղավ տասը կոմսերի <հրամանատարության> ներքո, բոլորը հավաքվեցին նրա պալատի շուրջ. իսկ նա ընդամենը քառասունութ զինվորներով ... գրոհեց այսքան բազմության վրա ... Թագավորն այն ազնվատոհմիկներից, ովքեր առավել գրգռում էին ժողովրդին իր դեմ, սպանեց հիսուներկու մարդ, իսկ մնացածներին թողեց հեռանալ անվնաս»][1]:

Comitatus բառը մեկնաբանվել է որպես КЪМЕТСТВО՝ կոմսություն, և եզրակացրել են, որ Բուլղարիայում գոյություն են ունեցել տասը կոմսություններ, որոնցից մեկը պետք է որ պատկանած լիներ Կոմսաձագ եղբայրների հորը: Սակայն պետք չէ գերագնահատել Հինկմարի հեղինակությունն ու նրա վարքագրական պատմության նշանակությունը: Առանց քննական մոտեցման այն հնարավոր չէ օգտագործել որպես պատմության սկզբնաղբյուր: Կեդրենոսը նույնպես տեղյակ է, հավանաբար, վարքագրական մի աղբյուրից, բուլղար պարագլուխների (τοῦ ἔθνους ἄρχοντες՝ «ազգի իշխանավորներ»)[2] ապստամբությանը, բայց չի խոսում «տասը կոմսությունների» մասին: Հինկմարի մոտ comitatus բառը չի կարող նշանակել КЪМЕТСТВО՝ «կոմսություն». այդ ժամանակաշրջանում այդ եզրը դեռևս չուներ կոմսություն իմաստը, որն այն ստանալու էր միայն XI դարի վերջում: Հինկմարը օգտագործում է comitatus բառը պարզապես «շրջան», «գավառ» իմաստով: Ամեն պարագայում մենք չենք կարող հիմնվելով Հինկմարի շարադրանքի վրա պնդել, որ comitatus բառը նշանակում է վարչական միավոր, որը ենթարկվում էր comes - ի իշխանությանը: Ճիշտ է, որ որոշ դեպքերում հիշատակվել են բուլղար comites-ներ, բայց դա եղել է ավելի վաղ շրջանում: Մի κόμης հիշատակված է Ադրիանուպոլսի գերիների պատմության մեջ, որոնք 836-837 թթ. ապստամբեցին Դանուբի շրջանում: Օքրիսի արքեպիսկոպոս Թեոփիլակտոսն իր «Տասնհինգ մարտիրոսների վարքը» երկասիրության մեջ խոսում է ոմն Ταριβῆνας comes-ի մասին՝ Բորիս-Միքայելի թագավորու-

[1] G. H. Pertz, Monum. Germ. Historica Scriptorum, t. I, pp. 473 - 474.

[2] Cedrenus, II, p. 153.



թյան, և մեկ այլ՝ Δίστρος comes-ի մասին՝ Սիմեոն թագավորի օրոք[1]: Վերջինիս անվանը մենք հանդիպում ենք նաև 904 թ. մի վիմագիր արձանագրության մեջ, որը հայտնաբերվել է 1898 թ. Թեսաղոնիկեին մերձ Նարիշ գյուղի մոտ[2]: Սա ստիպում է մտածելու, որ Թեսաղոնիկեին սահմանակից մի շրջան կար, որի առաջնորդը որոշ ժամանակ կրել է comes տիտղոսը: Սակայն Թեսաղոնիկեի և Ստրումպիցայի շրջանները Վասիլի դեմ Սամուելի մղած պայքարի թատերաբեմն էին և շատ տարօրինակ կլիներ, եթե մի քանի սերունդների կյանքի ընթացքում մղված այդ ռազմական գործողությունների մասին պահպանված ստվար պատմական աղբյուրները մեզ ոչինչ չասեին այդ առաջակետի comes-ի մասին, եթե, անշուշտ, այդպիսի տիտղոս ու պաշտոն այդ ժամանակաշրջանում գոյություն ունենային:

Ամեն դեպքում Սամուելի թագավորության ժամանակաշրջանում մենք չենք հանդիպում ո՛չ comes - КЪМЕТ, ո՛չ էլ КЪМЕТСТВО տիտղոսին: Վասիլի դեմ մղվող ազգային-ազատագրական պայքարին մասնակցել են շատ հայտնի առաջնորդներ, այնպիսիք, ինչպիսիք էին Կրակրասը, Դրագոմուզոսը, Բոգդանը, Նեստորիցեսը, Զարիցեսը, Դոբրոմիրը, Դոմետիանոս և Թեոդորոս եղբայրները, Տեյքոնեսը, ի վերջո Նիկոլիցան և շատ ուրիշներ: Դրանցից և ոչ մեկը չի ներկայանում որպես comes-ի տիտղոսակիր: Եվ վերջապես, եթե այդ տիտղոսի միակ կրողը եղել է Սամուելի հայրը, ապա մենք կիմանայինք նրա անունը և որևէ կերպ նրա հիշատակը պահպանված կլիներ: Այս ամենը չի նպաստում անվիճելի համարվող տեսությանը:

Ի դեմս այս անորոշության մենք մեզ թույլ ենք տալիս առաջ քաշել մի ենթադրություն հիմնվելով Ասողիկի տեղեկությունների վրա:

Մենք տեսանք, որ Կոմսաձագ-Comitopoulos եղբայրները հայկական վարձու զորագնդի մեջ էին: Այս զորագնդի գոյությունը վկայված է Հովհաննես Չմշկիկի և նույնիսկ նրա նախորդ Նիկեփորոս Փոկասի ժամանակաշրջանից: Այն մեծ ծառայություններ էր մատուցել 971 թ. Չմշկիկին ռուսական արշավանքի ժամանակ և 986 թ. Վասիլին, երկուսին էլ փրկելով շատ ծանր իրավիճակներում[3]: Ավելի ուշ, 1030 թ. Ռոմանոս Արգիրոս կայսրը Սիրիական արշավանքի ժամանակ նույնպես օգտվել է հայկական զորագնդի ծառայություններից, որը, արաբ պատմիչի վկայությամբ, շրջապա-

[1] Migne, P. G., CXXVI, col. 201 et 213.

[2] Ф. Успенский, «Известия Русского института в Константинополе», т. III, с. 184; V. Beševliev, Prvoblgarski Nadpisi, pp. 52 et 147; В. Златарски, op. cit., с. 340. Այս արձանագրության կապակցությամբ տե՛ս Անրի Գրեգուարի ծանոթագրությունը, «Bulletin de la Classe des Lettres de l'Académie», XXIII, (1937), pp. 83 sqq.:

[3] S. Runciman, The first Bulgarian Empire; p. 225, կարծում է, որ 986 թ. արշավանքի վերաբերյալ Ասողիկի հաղորդած մանրամասները հորինված են: Եթե նա նկատի ունի հայկական հետևակի միջամտությունը, ապա սխալվում է:

## III

## ԱՇՈՏԸ ԵՎ ՍՈՒՐԲ ՎԼԱԴԻՄԻՐԸ

Գրիգոր Տարոնացու որդի Աշոտի վիպական պատմությունը բավականաչափ հայտնի է: Սամուելը հարձակվում է Թեսաղոնիկեի կառավարիչ Գրիգոր Տարոնացու վրա և գերեվարում նրա որդի Աշոտին: Սամուելի դուստրը, որի անունն ըստ Միքայել Դեվոլացու Միրոսլավա էր, սիրահարվելով երիտասարդ բանտարկյալին, հորից թույլտվություն է խնդրում ամուսնանալու նրա հետ, մերժվելու դեպքում սպառնալով ինքնասպան լինել: Սամուելը հարկադրված է լինում հավանություն տալ ամուսնությանը: Նա տռնում է նրանց հարսանիքը և փեսային նշանակում Դյուրաքիոն ἐπὶ φυλακῇ τάχα τῆς χώρας [«իբրև երկրամասի պահապան»]: Երիտասարդ ամուսինները վճռում են փախչել Կոստանդնուպոլիս: Բյուզանդական մի նավ, որը խարսխել էր Դյուրաքիոնի ջրերում, վերցնում է նրանց և տանում մայրաքաղաք: Վասիլ կայսրը պատվով ընդունում է նրանց: Աշոտը ստանում է մագիստրոսի պատվաստիճան, իսկ նրա կինը՝ պատրիկուհու (ζωστή): Աշոտը բերել էր Դյուրաքիոնի ազնվապետի՝ Խրիսելիոսի, նամակը, որով հեղինակը խոստանում էր կայսերը հանձնել քաղաքը, փոխարենը խնդրելով պատրիկի պատվաստիճան իր և իր երկու որդիների համար: Առաջարկն ընդունվում է, իսկ քաղաքը հանձնվում Եվստաթիոս Դափնոմելոս պատրիկին[1]:

Կեդրենոսը՝ այս պատմության հեղինակը, չգիտե Սամուելի դստեր՝ Μιροσθλάβα (Միրոսլավա) անունը, որը մեզ է հասցրել Դեվոլի եպիսկոպոսը[2]: Նա չգիտե նաև, որ Խրիսելիոսը Միրոսլավայի մորենական մեծ հայրն է: Ըստ Կեդրենոսի Միրոսլավայի ամուսնությունը տեղադրվում է Սպերխեյոսի ճակատամարտից հետո. Ὁ Σαμουὴλ δὲ πρὸς τὰ οἰκεῖα ἀνασωθεὶς γαμβρὸν ἄγεται ἐπὶ τῇ αὑτοῦ θυγατρὶ Ἀσώτην [«Սամուելն էլ, անվնաս վերադառնալով սեփական տիրույթները, իբրև փեսա է <ունենում> Աշոտին, ամուսնացնելով նրան իր դստեր հետ»][3]: Բայց ո՞ր թվականին է տեղի ունեցել երիտասարդ ամուսինների և Խրիսելիոս եղբայրների փախուստը: Կեդրենոսի շարադրանքը կարող է կարծել տալ, որ բոլոր այն իրադարձությունները, որոնց մասին նա մեզ տեղեկացնում է, տեղի են ունեցել միաժամանակ:

Մենք արդեն նախազգուշացրել ենք, որ չպետք է շփոթության մեջ ընկնել, այլ հիշել, թե ինչ եղանակով է մեր ժամանակագիրը շարադրում նյութը: Ըստ մեկ այլ աղբյուրի Դյուրաքիոնը հանձնվել է 1005 թ. rediit Durachium in manus imperatoris per Theodorum [«Թեոդորոսի շնորհիվ Դյուրաքիոնը վերադարձավ կայսեր ձեռքը»][1]:

Այս Թեոդորոսը Խրիսելիոս ազնվապետի որդին էր, իսկ նրա երկրորդ որդու անունն էր Նիկողայոս: 1033 թ. Նիկողայոսը գրավում է Բերկրի ամրոցը արաբ Ալեյիմից, որն այն զիջում է կայսերը պատրիկի պատվաստիճանի դիմաց. Καὶ τὸ φρούριον μὲν παρειλήφει ὁ πατρίκιος Νικόλαος ὁ Βούλγαρος, ᾧ Χρυσήλιος τὸ ἐπώνυμον [«Եվ ամրոցը ստանում է Նիկողայոս Բուլղար պատրիկը, որի մականունը Խրիսելիոս է»][2]: Դժգոհ մնալով մայրաքաղաքում իր որդու հանդեպ կայսեր ցուցաբերած ոչ պատշաճ վերաբերմունքից՝ Ալեյիմը պաշարում է ամրոցը և վերագրավում: Վեց հազար զինվորից կազմված կայազորը սրի է քաշվում: Նիկողայոսն ամենայն հավանականությամբ զոհվում է մնացածների հետ միասին: Քիչ անց Նիկետաս Պեգոնիտեսը ամրոցը ետ է գրավում:

Նիկողայոսի եղբայր Թեոդորոսը հիշատակված է 1057 թ. ապստամբական իրադարձությունների կապակցությամբ. ὁ πατρίκιος Θεόδωρος ὁ Χρυσήλιος-ը [«Թեոդորոս Խրիսելիոս պատրիկը»] այլոց հետ երդվել էր հավատարիմ մնալ Միքայել VI կայսրին, սակայն բոլորի հետ միասին ապստամբ բանակի մոտենալուն պես նա նույնպես դրժում է երդումը[3]:

1005 թ. Դյուրաքիոնի հանձնումը, չնայած Լուպուսի որոշակի վկայությանը, այնքան էլ ճշգրիտ չի թվում: Կեդրենոսն ասում է, որ Խրիսելիոսի առաջարկն ընդունվել էր Եվստաթիոս Դափնոմելոսի կողմից: Հարց է ծագում. արդյո՞ք նա չի կանխում այն իրադարձությունը, որը տեղի է ունեցել ավելի ուշ՝ 1018 թ., երբ Եվստաթիոսը նշանակվել է Դյուրաքիոնի ստրատեգոս: Սամուելի վարած ամբողջ պատերազմի ընթացքում չի խոսվել ո՛չ այդ քաղաքի, ո՛չ էլ դրա ստրատեգոսների մասին: Դա շատ կարևոր պահակակետ էր, որին կարելի էր հենվել Սամուելի վրա թևերից հարձակվելու համար, եթե Վասիլն իսկապես դրա տերը լիներ: Մենք չենք տեսնում նաև

անունն ու աղանդը մեզ տեղափոխում են հայ պավլիկյանների միջավայրը: Եթե ընդունենք, որ Խրիսելիոսը ծագումով Կոլոնեայից էր և Սամուելի ամուսնության պահին դեռևս Դյուրաքիոնում չէր, ապա շատ բնական կլիներ ենթադրել, որ Դյուրաքիոնը գրավելու պահին նա արդեն Սամուելի աներհայրն էր և որպես այդպիսին նա իր փեսայից է ստացել այդ քաղաքը:

[1] Cedrenus, II, p. 451.

[2] V. Prokič, Die Zusätze, S. 29, § 14.

[3] Cedrenus, II, p. 451.

[1] Lupus Protospatharius, Monum. Germ. Hist. Scriptores, t. V, p. 57.

[2] *Cedrenus, II, p. 502. Περκρί-ն (Բերկրի)*՝ այսօր Բերկրի-կալա, հին ամրոց է, որը գտնվում է Վանա լճի հյուսիսային ծայրակետում: Կեդրենոսն այն նշում է որպես ἔγγιστα Βαβυλῶνος (!) [«շատ մոտ է Բաբելոնին»]:

[3] Cedrenus, II, pp. 635-636.

Սամուելի գործողություններն ուղղված իր թիկունքին սպառնացող այդ պահակակետի դեմ:

Իսկ մյուս կողմից՝ 1005 թ. և հետագայում, մինչև Սամուելի մահը, հակամարտող կողմերի միջև խաղաղություն էր տիրում, քանի որ Վասիլն ընդհատել էր իր հարձակումները: Պատերազմի ճակատագրական ավարտը դեռևս շատ հեռու էր: Ոչ մի ծանրակշիռ պատճառ չկար, որը կարող էր ստիպել Խրիսելիոսին դավաճանելու իր տիրակալին և քաղաքը վաճառելու չնչին գնով:

Ամեն ինչ փոխվում է Սամուելի մահից և նրա որդի Գաբրիել-Ռոմանոսի սպանությունից հետո: Փորձանքը գալիս է նաև Դյուրաքիոն: Քանի դեռ թագավորում էր Վլադիմիրը՝ «Տրիմալիային» և Սերվիային հարևան շրջանների իշխանը, ἠρεμίαν εἶχε τὰ ἐν Δυρραχίῳ [«Դյուրաքիոնի տարածքում խաղաղություն էր տիրում»]: Ինչու՞ նրա մահը պետք է ազդեր Դյուրաքիոնի ճակատագրի վրա: Գաբրիել-Ռոմանոսի սպանությունից հետո Վլադիմիրը ենթարկվել է Հովհաննես-Վլադիսլավին՝ Գաբրիելին սպանողին: Քիչ անց Հովհաննես-Վլադիսլավը սպանում է նաև Վլադիմիրին և բազմիցս հարձակվում Դյուրաքիոնի վրա: Ուրեմն Վլադիմիրն ինչ-որ կապ ուներ Դյուրաքիոնի հետ: Ի՞նչ կապ: Կեդրենոսի շարադրանքը լիովին պարզ չէ: Հարկավոր է այն լուսաբանել:

Վլադիմիրը «Սամուելի փեսան» էր՝ ὁ ἐπὶ θυγατρὶ τοῦ Σαμουὴλ κηδεστής [«ամուսնացած Սամուելի աղջկա հետ»]: Միքայել Դեվոլացին ուղղում է. ὁ ἐπὶ θυγατρὶ Θεοδωρίτου τοῦ Σαμουὴλ κηδεστής [«ամուսնացած Թեոդորիտոսի՝ Սամուելի <մերձավորի> աղջկա հետ»][1]: Վ. Պրոկիչը կարդում է Θεοδώρα (Θεοδωρίτου-ի փոխարեն), համարելով, որ դա Սամուելի ենթադրյալ դուստրն է: Սակայն Միքայել եպիսկոպոսի նշումն ինքնագիր է, և գերադասելի նրա շարադրանքը թողնել այնպիսին, ինչպիսին կա և Թեոդորիտոսը դիտարկել որպես Թեոդորոս՝ Դյուրաքիոնի տեր Հովհաննես Խրիսելիոսի որդի: Τοῦ Σαμουήλ որակումը ցույց է տալիս Թեոդորիտոսի ազգակցական կապը Սամուելի հետ, որի փեսան էր նա: Հենց այդ պատճառով նա «սամուելական» էր: Կեդրենոսը նույն կերպ է անվանում Իբերիայի թագավորին τὸν τοῦ κουροπαλάτου Δαβὶδ Γεώργιον [«Դավիթ կյուրոպաղատի Գեորգը»][2]: Գեորգիոսը Դավթի որդին չէր, այլ հեռավոր մի զարմիկ, այսպես ասած «կյուրոպաղատական»:

Ուրեմն Վլադիմիրը Սամուելի կողմնակիցն էր և դա էր պատճառը, որ Հովհաննես–Վլադիսլավը սպանել է նրան: Նրա մահվան հետևանքով Դյու-

---

[1] Cedrenus, II, p. 463.
[2] Ibid., II, p. 447.



րաքիոնի շուրջ ամպեր են կուտակվել: Դա պարզապես նշանակում է, որ նա դեռ քաղաքի տերը չէր և այն դեռ չէր անցել կայսեր ձեռքը: Խրիսելիոսի առաջարկի և Եվստաթիոս Դափնոմելոսի կողմից Դյուրաքիոնի գրավումը 1005 թվականով թվագրելն իրեն չի արդարացնում: Դյուրաքիոնի պատմությունն այլ կերպ է ներկայանում: Այն տպավորությունն է ստեղծվում, որ Գաբրիել–Ռոմանոսի սպանությունից հետո է, որ Խրիսելիոսը Դյուրաքիոնի կապակցությամբ բանակցություններ է սկսում Վասիլի հետ, գերադասելով այն հանձնել կայսերը և ոչ թե Հովհաննես-Վլադիսլավին: Վլադիմիրը պահանջել է քաղաքը և այն գրավել Խրիսելիոսի դաշալքությունից հետո: Նա ճանաչել է Հովհաննես-Վլադիսլավի իշխանությունը և այսպիսով ապահովել գրավված քաղաքի խաղաղությունը: Սակայն քիչ անց Հովհաննես-Վլադիսլավը դրժելով եպիսկոպոսի միջնորդությամբ տրված երդումը սպանել է Վլադիմիրին և եկել Դյուրաքիոնը գրավելու: Քաղաքն ընդվզում է իր իշխանին սպանողի դեմ: Օքրիսում գտնվող Վասիլը պատրաստ էր օգնության գալ քաղաքին և օգտագործել իր իրավունքը քաղաքի նկատմամբ, բայց Իվացեսի գործողությունները խանգարել են դրան: Հետագայում մենք տեսնում ենք, թե ինչպես է զորավար Նիկետաս Պեգոնիտեսը՝ «Դյուրաքիոնի ստրատեգոսը», պաշտպանում այդ քաղաքը Հովհաննես-Վլադիսլավից: Հովհաննեսի հետ նրա մենամարտն ավարտվում է վերջինիս մահով[1]: Վասիլը գալիս է Օքրիս, այնտեղ թողնում Եվստաթիոս Դափնոմելոսին որպես արխոնտ և մեկնում Դիաբոլիս: Եվստաթիոսը հաղթում է Իվացեսին, որը Հովհաննեսի մահից հետո ստանձնել էր երկրամասի պաշտպանությունը, նրան տանում է կայսեր մոտ և ի վարձատրություն նշանակվում Դյուրաքիոնի ստրատեգոս: «Իր ցանկացած ձևով կարգավորելով Դյուրաքիոնի, Կոլոնեայի և Դրյուինուպոլսի գործերը, դրանք զորքով և ստրատեգոսներով համալրելուց հետո», կայսրը մեկնում է Դիաբոլիսից: Զգացվում է, որ այստեղ խոսքը նոր նվաճված քաղաքների կյանքը կազմակերպելու մասին է, այդ թվում նաև Դյուրաքիոնի: Կեդրենոսի համապատասխան հատվածը, ուր նկարագրված է այդ քաղաքի հանձնումը Հովհաննես Խրիսելիոսի կողմից, չի համընկնում Լուպուսի վկայությանը, որը հանձնումը վերագրում է Թեոդորոսին: Կարծես թե Դափնոմելոսի հիշատակությունն այդ նույն հատվածում վերաբերում է նրա նշանակմանը 1018 թվականին:

Խրիսելիոս եղբայրները հեռացել են Դյուրաքիոնից 1015–1016 թթ. ուրիշ բուլղար առաջնորդների հետ միասին: Զենք կրելու ունակ բուլղարները տեղափոխվել են Հայաստան՝ Վասպուրական. τοὺς μὲν οὖν ὅπλα

---

[1] H. Grégoire, Sur Nicétas Pégonitès, «Byzantion», t. XII (1937), p. 285.

δυναμένους κινεῖν εἰς ᾿Ασπρακανίας ἐκπέμπει ὁ βασιλεύς [«զենք կրելու ունակներին թագավորը ուղարկեց Վասպուրական»][1]: Ամենայն հավանականությամբ Նիկողայոս Խրիսելիոսը այդ բուլղարների թվում էր և մենք նրան տեսնում ենք Բերկրիում 1033 թվականին:

Իրադարձությունների ընթացքը, այնպիսին, ինչպիսին ներկայացված է այստեղ, հաստատվում է Դիոկլեայի քահանայի շարադրանքով: Մեզ հատկապես հետաքրքրում է, թե նա ինչ է պատմում Վլադիմիրի մասին, որի կյանքն այս հեղինակի շարադրանքում զարմանալիորեն նման է այն ամենին, ինչ մենք գիտենք Աշոտի մասին:

Ահա Վլադիմիրի պատմությունը, որի եղերական մահը նրան դարձրել է սերբա-բուլղարական նշանավոր նահատակ:

Սամուելը՝ բուլղարների արքան, արշավում է Վլադիմիրի դեմ, որը չցանկանալով ենթարկվել նրան՝ հեռանում է դեպի mons Obliquus [«գահավեժ լեռ»]: Նրա զինակիցներից մեկը դավաճանում է Վլադիմիրին, ինչպես ժամանակին դա արել էր Հուդան, և ցանկանում նրան հանձնել Սամուելին: Վլադիմիրը հայտնում է իր մարդկանց, որ ինքը լավ հովվի նման պատրաստ է անձը զոհել իր գառների համար: Սամուելը գերի է վերցնում նրան և տանում գահանիստ Պրեսպա քաղաքը: Վլադիմիրը բանտում է: Հայտնվում է մի հրեշտակ և ավետում նրան մոտալուտ ազատագրման և նահատակության մասին:

Կոսարան՝ Սամուելի դուստրը, Սուրբ Հոգու ներշնչանքով, հորից թույլտվություն է խնդրում իր աղախինների ուղեկցությամբ գնալ բանտ և լվանալ կալանավորների գլուխները և ոտքերը:

Մանկամարդ աղջիկը բանտարկյալների մեջ տեսնում է Վլադիմիրին, որը նրան թվում է pulcher in aspectu humilis, mansuetus atque modestus, et repletus sapientia et prudentia Domini [«չքնաղ էր՝ խոնարհ երևալով, հեզ և համեստ, և լի Աստծո իմաստությամբ և ողջախոհությամբ»], և զրուցում է նրա հետ: Զգացված գերի պատանու տարիքից, նրա գեղեցկությունից՝ արքայադուստրը, իմանալով, որ նա թագավորական զարմից է, մտադրվում է նրան ազատել շղթաներից: Աղջիկը ծնկաչոք աղերսում է հորը. «Mi pater et domine, scio quia daturus es mihi virum sicut mos est, nunc ergo si tuae placet magnitudini aut des mihi virum Vladimirum regem quem tenes in vinculis aut scias me prius morituram quam alium accepiam virum» [«Հայր և տեր իմ, գիտեմ, որ տալու ես ինձ կնության, ինչպես <պահանջում է> սովորույթը, ուստի այժմ, եթե բարեհաճի մեծությունդ, կամ տուր ինձ իբրև ամուսին Վլադիմիր արքային, որին պահում ես կապանքներում, կամ իմացիր, որ ես

ավելի շուտ կմեռնեմ, քան կամուսնանամ այլ մարդու հետ»]:

Սամուելը Վլադիմիրին ազատում է բանտից, բաղնիք է ուղարկում, հագցնում թանկարժեք զգեստներ և տոնում նրա և Կոսարայի հարսանիքը: Նա Վլադիմիրին վերադարձնում է նրա թագավորությունը [«և տալիս է նրան իր հայրերի երկիրը և թագավորությունը և Դյուրաքիոնի ամբողջ տարածքը»]՝ dedit ei terram et regnum patrum suorum totamque terram Duracenorum: Միևնույն ժամանակ Սամուելը թույլ է տալիս Վլադիմիրի քեռուն՝ Դրագիմարուսին, տիրանալ *Տրիբունիայի հողերին*:

Վլադիմիրն իր կնոջ հետ ապրում է «սուրբ և առաքինի» կյանքով: Քիչ անց մահանում է Սամուելը և նրան հաջորդում է որդին Ռադոմիրը (= Գաբրիել–Ռոմանոսը): Վերջինս պայքարում է Վասիլի դեմ նույն արիությամբ, ինչ իր հայրը և գրավում «ամբողջ տարածքը մինչև Կոստանդնուպոլիս»: Հուսահատված Վասիլը միջոց է փնտրում Ռադոմիրին ոչնչացնելու համար: Նա հորդորում է Վլադիսլավին սպանել Ռադոմիրին, ինչպես Սամուելը սպանել էր նրա հորը: Վլադիսլավը կատարում է կայսեր ցանկությունը՝ Ռադոմիրին սպանելով որսորդության ժամանակ: Հետո մարդասպանն իր մոտ է հրավիրում Վլադիմիրին: Վերջինիս կինը՝ Կոսարան, անձամբ գնում է Վլադիսլավի մոտ նրա անկեղծությունը ստուգելու համար: Կոսարային ընդունում են մեծ քաղաքավարությամբ: Վլադիմիրը, սրտապնդվելով, գնում է Վլադիսլավի մոտ այն բանից հետո, երբ վերջինս երկու եպիսկոպոսների և մի ճգնավորի միջոցով խոստանում է նրան անվտանգություն: Այդուհանդերձ, Վլադիսլավը ճանապարհին մահափորձ է կատարում նրա դեմ: Հրեշտակը փրկում է Վլադիմիրին, սակայն երբ մայիսի 22-ին նա հասնում է Պրեսպա՝ Վլադիսլավի արքունիք, նրան սպանում են: Կոսարան նրա դին տեղափոխում է Կրաինա՝ իր բնակատեղի քաղաքը, և հողին հանձնում Ս. Մարիամ եկեղեցում:

Վլադիսլավն իր բանակն առաջնորդում է դեպի Դյուրաքիոն, որը կայսրը նրան էր խոստացել: Նա բանակել էր քաղաքի դիմաց, երբ հայտնվում է Վլադիմիրի կերպարանքով մի զինվոր, և Վլադիսլավը սկսում է բարձրաձայն գոչել. «Currite, *mei milites*, currite *et defendite me, quia Vladimirum occidere me vult; et haec dicens surrexit de solio suo ut fugeret, statimque percussus ab angelo corruit in terram et mortuus est corpore et anima»* [«Հասեք, զինվորներս, հասեք և պաշտպանեք ինձ, քանզի Վլադիմիրը ցանկանում է ինձ սպանել: Եվ այդ ասելով, <Վլադիսլավը> ցատկեց աթոռից, որ փախչի, բայց իսկույն հրեշտակից հարվածահար լինելով՝ ընկավ գետնին և մեռավ մարմնով և հոգով»]:

Վլադիմիրին հաջորդում է նրա քեռին՝ Դրագիմարը, որը ևս արժանանում է Վլադիմիրի ճակատագրին: Նրա այրի կինը գնում է իր մեծ հոր մոտ՝

[1] Cedreuus, II, p. 462.

Բոսնա, ուր մի ուստր է ունենում, որին Դոբրոսլավ է անվանում: Վերջինս ամուսնանում է Սամուելի թոռան հետ և նրանից հինգ ուստր ունենում՝ Գոյիսլավ, Միխալա, Սաանեկ, Ռադոսլավ և Պրեդիմիր: Վասիլը վերսկսում է պատերազմը Բուլղարիան, Ռասսան, Բոսնան և Դալմատիան նվաճելու համար: Դոբրոսլավն առերես ենթարկվում է կայսերը, սակայն ծածուկ գրգռում է իր հպատակներին բյուզանդական գերիշխանության դեմ: Ապստամբություն է բռնկվում, որի ժամանակ բոլոր հույն առաջնորդները սպանվում են:

Կայսրը Դոբրոսլավի դեմ է ուղարկում Արմենոպոլոս զորավարին. unum ex ducibus suis nomine Armenopolos [«Դուքսերից մեկը՝ Արմենոպոլոս անունով»]. Դոբրոսլավը հարձակվում է նրա վրա և սպանում. Gladio percussit atque de equo in terram proiecit [«Հարվածեց սրով և ձիուց վայր գցեց»]:

Կայսրը Կուրսիլիոս տոպարքոսի հրամանատարությամբ նրա դեմ է ուղարկում մեկ այլ զորք. Exercitum misit Durachium mandans cuidam *Cursilio* toparchae qui illis diebus Durachium totamque terram Duraccinorum tenebat [«Զորք ուղարկեց՝ Դյուրաքիոնը վստահելով ոմն Կուրսիլիոս տոպարքոսի, որն այդ օրերին <իր ձեռքին> ուներ Դյուրաքիոնը և դրան մերձակա ամբողջ տարածքը»]: Դոբրոսլավը նույն հաջողությամբ հաղթում է նրան և Կուրսիլիոսը ստացած վերքերից մահանում է փախուստի ճանապարհին. In quo loca posita est crux quae usque hodie crux Cursilio vocatur [«Որտեղ խաչ դրվեց, որը մինչ օրս կոչվում է *Կուրսիլիոսի խաչ*»][1]:

Այս պատմությունը խիստ ուշագրավ է, որովհետև ցուցադրում է, թե ինչպես էին բարեպաշտ վանականները երբեմն աղավաղում պատմությունը և ձևափոխում պատմական անձնավորություններին: Մենք պարզորոշ տեսնում ենք այն պատառիկները, որոնցից հյուսվել է այս կտավը՝ պատառիկներ, վերցված տարբեր տեղերից:

Պատմության հեղինակը Կեդրենոսի միջոցով գիտե, որ Վլադիմիրի կինը Սամուելի դուստրն էր: Սակայն նրա անունն ըստ բուլղար ուսումնասիրողների ոչ թե Կոսարա էր, այլ Թեոդորա: Մենք հիմա կտեսնենք, որ Կոսարան շատ հետաքրքիր անուն է, որը որոշ իմաստով, ինչպես լուսաբանելու ենք ստորև, իր մեջ թաքցնում է անվանակիր աղջկա ծագումը: Բոլոր դեպքերում Սամուելի դուստրը, որը սիրահարվել էր հոր բանտարկյալին,

[1] **Presbyteri Diocleatis**, Regnum Slavorum. De regno Dalmatiae et Croatiae, lib. VI, 1646. Նոր հրատարակությունը Ս. Շիշիչի աշխատությամբ. Srpska Kr. Akademija, pos. Izs. Knj. LXVII philos. i philol. Spisi , Knj. 18, Beograd-Zagreb, 1928, pp. 331 sqq. (բնագիրը); cf. pp. 121 sqq. ուսումնասիրություն Ս. Վլադիմիրի ավանդության աղբյուրների մասին: Ս. Շիշիչը կարծում է, որ այս շարադրանքի պատմական արժեքը չափազանց աննշան է: Նրա կարծիքով այն չի կարող նույնիսկ իսկական վարքագրական աղբյուր հանդիսանալ:



կրում էր Միրոսլավա անունը և ոչ թե Կոսարա, ինչպես նաև գերին Աշոտն էր և ոչ թե Վլադիմիրը: Աշոտն էր, որին իր կնոջ հետ ուղարկել էին Դյուրաքիոն Միրոսլավայի մեծ հոր մոտ: Սիրահարված օրիորդի ինքնասպան լինելու սպառնալիքին մենք ծանոթ ենք Կեդրենոսի շարադրանքից: Այն դրված է Միրոսլավայի խոսքի մեջ և վերաբերում է Աշոտին. ἡ παῖς ἐρωτικῶς διατεθεῖσα ἐξάξειν ἑαυτὴν ἠπείλει, εἰ μὴ νομίμως αὐτῷ συναφθείη [«աղջիկը, սիրահարվելով, սպառնացել է ինքնասպան լինել, եթե նրան օրինական ամուսնության չտան <տղային>»][1]:

Հանդգնություն կլիներ կարծել, որ երկու համանման դեպք, երկու նույնանման սիրային պատմություն տեղի ունեցած լիներ Սամուելի ընտանիքում. որ նրա երկու դուստրերը սիրահարված լինեին երկու տարբեր բանտարկյալների, ամուսնացած և իրենց ամուսինների հետ միասին ուղարկված միևնույն Դյուրաքիոն քաղաքը: Իրականությունը շատ ավելի պարզ է: Աշոտի սիրավեպն այնքան գեղեցիկ է նկատվել, որ նման մի պատմություն վերագրվել է մեկ այլ ժողովրդական հերոսի՝ Սամուելի մյուս փեսային՝ Վլադիմիրին[2]: Ուստի և հակամարտություն է հորինվել Սամուելի և Վլադիմիրի միջև, որի հետևանքով վերջինս դարձել է Սամուելի բանտարկյալը: Վլադիմիրը Տրիբունիայի և Սերվիայի իշխանն էր: Նրան դարձրել են նաև Դյուրաքիոնի իշխան, որպեսզի Աշոտի նմանությամբ ամուսնությունից հետո նրան տեղափոխեն այդ քաղաքը: Տրիբունիան (միգուցե նաև Սերվիան) անցել է Վլադիմիրի քեռուն:

Վլադիմիրը հրեշտակի կերպարանքով ներկայանում է իրեն սպանած Հովհաննես-Վլադիսլավին, և վերջինս սարսափից բղավում է. currite՝ «վազե՛ք (իմա՝ հասե՛ք)»: Անկասկած սա այն տեսարանի ձևափոխված տարբերակն է, ուր Վլադիսլավի զինվորները բղավում են. βεζεῖτε, ὁ Τζαῖσαρ! [«Փախե՛ք, սա կայսրն է»]:

Միակ պատմական փաստը Վլադիմիրի ողբերգական մահն է: Մնացածը հորինվել է Աշոտի և Միրոսլավայի սիրավեպի դրվագների հիման վրա՝ որոշ վարքագրական մանրամասների ներհյուսմամբ:

[1] **Cedrenus**, II, p. 451.

[2] Պարոն H. Grégoire արդեն 1935 թ. Շեքսպիրի «Փոթորիկ» պիեսի բուլղարական ծագման մասին իր ուսումնասիրության մեջ՝ «Bulletin de l'Institut archéologique bulgare», IX, p. 93 գրում էր. «Ի՞նչն է իրական այս հիասքանչ պատմության մեջ, որի թուլությունը կայանում է նրանում, որ այն շատ նման է Սամուելի մյուս դստեր՝ Միրոսլավայի, իր հոր մեկ այլ գերի հայ Աշոտի հետ սիրո և ամուսնության պատմությանը: Մենք դա չգիտենք»: Հիշեցնենք, որ պարոն Ա. Գրեգուարը այս սիրավեպը համարում է «*Փոթորիկի* և հատկապես Ֆերդինանդի և Միրանդայի (= Միրոսլավայի՞) սիրային պատմության» սկզբնաղբյուրը: Դիոկլեիայի քահանայի և Շեքսպիրի միջև միջանկյալ օղակը կարող էր լինել իտալական որևէ վեպ, որը սկիզբ կառներ պատմական որևէ աշխատությունից, ինչպիսին է **M. Orbini**-ի, Regno degli Slavi, (1601), որը Diocleas-ի [երկը] թարգմանել է իտալերեն:

Աշոտի և Խրիսելիոսի մասին հիշողությունը ամբողջովին չի ջնջվել Դիոկլեիայի քահանայի շարադրանքում:

Ուսումնասիրողների համերաշխ կարծիքով Դոբրոսլավ իշխանը՝ Վլադիմիրի հաջորդը, համապատասխանում է Ստեփան Վոիսլավի պատմական անձին: 1040 թ. Ստեփանն ապստամբում է բյուզանդական գերիշխանության դեմ, վտարում է Թեոփիլոս Էրոտիկոս ստրատեգոսին և հաղթում Գեորգիոս Պրիվատաս ներքինիի հրամանատարության ներքո գտնվող զորքին[1]: Կոստանդին [IX] Մոնոմախը հրամայում է Դյուրաքիոնի ստրատեգոս Միքայելին՝ Անաստաս լոգոթետեսի որդուն, գնալ և ետ շպրտել Սերբիայի հանդուգն իշխանին, քանի որ վերջինս սկսել էր ասպատակել կայսեր հպատակ հարևան երկրները: Սերբ իշխան Ստեփանը բյուզանդացի զորավարին ներքաշում է իր երկրի խորքը, կտրում նահանջի ճանապարհն ու ոչնչացնում նրա ամբողջ զորքը[2]:

Դիոկլեիայի քահանայի շարադրանքում Դոբրոսլավը ներկայացնում է Ստեփան Վոյիսլավին, սակայն պատմական անձինք հանդիսացող Թեոփիլոս, Գեորգիոս և Միքայել զորավարների փոխարեն, որոնց նա չի ճանաչում, հիշատակում է նրանց դերը կատարող երկու այլ զորավարների: Մեկի անունն է Արմենոպուլոս, մյուսինը՝ Կուրսիլիոս: Ո՞վքեր են դրանք: Զարմանալի է, որ ոչ ոք չի նկատել, որ առաջինը՝ Արմենոպուլոսը, Աշոտն է՝ «հայի որդի», իսկ երկրորդը՝ Կուրսիլիոսը, Խրիսելիոսն է՝ Դյուրաքիոնի տոպարքոսը, կամ πρωτεύων-ը [«առաջնորդը»]: Աշոտը և Խրիսելիոսը լքել էին Դյուրաքիոնը և անցել կայսեր կողմը: Դրանից հետո մեր հեղինակն իրավունք ունի նրանց համարելու բյուզանդացի զորավարներ և ուղարկելու Դոբրոսլավի՝ Վլադիմիրի քեռորդու, դեմ մարտնչելու: Աշոտին ու Խրիսելիոսին վերաբերող արժեքավոր վկայությունները Դիոկլեիայի քահանան անշուշտ քաղել է ժողովրդական մի զրույցից, որը պահպանվել է «Կուրսիլիոսի խաչի» շնորհիվ: Դա անտարակույս Խրիսելիոսների ընտանիքի անդամներից մեկի հիշատակը հավերժացնող հուշարձանն է: Ավելի ուշ այն համարել են Դյուրաքիոնի հռչակավոր տոպարքոս Կուրսիլիոսի գերեզմանը:

Աշոտի արժանիքներն ու բնորոշ հատկանիշները վերագրելով Վլադիմիրին, նրան բնականաբար տեղափոխել են մեկ այլ՝ Վոյիսլավի ժամանակաշրջանը:

Խրիսելիոս անվան Կուրսիլիոս ձևը մեզ կարող է բացատրել Վլադիմիրի կնոջ՝ Կոսարայի, անվան ծագումը: Կոսարան ոչ այլ ինչ է, եթե ոչ Կուրսիլիոս=Խրիսելիոս անվան իգական ձևը: Կոսարան առաջացել է Corsara – ից, ուր r հնչյունը առնմանվել է s-ի, իսկ ինքը Corsara-ն արտածված է Corsala-ից: Այս անունն ապացուցում է, որ Վլադիմիրը ամուսնացած էր ոչ թե Սամուելի, այլ Խրիսելիոսի դստեր հետ: Ուրեմն մեր ենթադրությունը, թե Միքայել Դեվոլացու Թեոդորիտոսը Թեոդորոս Խրիսելիոսն է՝ արդարացված է: Ժողովրդական ավանդությունը պահպանել է այդ փաստը, մինչդեռ մեր պատմության հեղինակն այն մասերում, ուր նա կախման մեջ է Կեդրենոսի շարադրանքից, Վլադիմիրի կնոջը ներկայացնում է որպես Սամուելի դուստր:

Վլադիմիրը հետագայում հայտնվում է Հովհաննես-Վլադիմիր անվան ներքո: Այս կրկնակի անվամբ նրան ճանաչում է Քիլենդարի Պաիսի վանականը[1]: Ո՞րտեղից է գալիս այս հավելյալ անունը: Դա անկասկած Հովհաննես-Վլադիսլավի հետ շփոթելու հետևանքն է: Եվ իսկապես, Պաիսին չի ճանաչում Հովհաննես-Վլադիսլավին, նրան նույնացնելով Վլադիմիրի հետ: Նա ևս մեկ շատ լուրջ սխալ է թույլ տվել. Սամուելի որդի Ռադոմիր-Գաբրիելին նա ներկայացնում է որպես երկու տարբեր անձ:

Ռադոմիրը սպանվել է կայսեր և ոչ թե Հովհաննես-Վլադիսլավի կողմից, նրան հաջորդել է Հովհաննես-Վլադիմիրը, մինչդեռ Գաբրիելին քշել էին բուլղարները և նրա փոխարեն դրել Ահարոնի որդի Հովհաննեսին: Պաիսին չգիտե, որ վերջինիս անունն էր Հովհաննես-Վլադիսլավ, և ըստ նրա վարկածի Հովհաննես-Վլադիսլավը չէր, որ սպանել էր Վլադիմիրին, այլ «նրա կինը, որը հելլենուհի էր, իր մագիստրոս հոր հետ միասին»: Այդ հանցագործները «ոչ մի գութ չունեին Վլադիմիրի նկատմամբ, որովհետև գաղտագողի հարել էին մի աղանդի, մինչդեռ Հովհաննես-Վլադիմիրը հայտնի էր իր առաքինի վարքով և ուղղափառությամբ»:

Սա հետաքրքիր ակնարկություն է Վլադիմիրի կնոջ, որը մեր հեղինակի կարծիքով Սամուելի դուստրն է, ինչպես նաև Աշոտ մագիստրոսի, օտար (հայկական) ծագման վերաբերյալ: Այս ամբողջ խառնաշփոթի պատճառն այն է, որ բարեպաշտ Պաիսին ցանկացել է Հովհաննես-Վլադիմիրին ներկայացնել որպես բուլղար արքա և ոչ թե սերբ: Այդ կապակցությամբ է նա տարակուսանքով նշում, որ Վլադիմիրի վարքի հունարեն տարբերակում նրան ներկայացնում են որպես սերբ արքաներից սերված անձ, մինչդեռ նա պատկանում էր բուլղարական թագավորական ընտանիքին: Նման զեղծարարությունը, նրա կարծիքով, կարող էր լինել միայն չար հույնի կամ սերբի գործ: Այսպես բարի վանականը մեղադրում է այլոց, առանց «տեսնելու գերանն իր աչքի մեջ»:

[1] Cedrenus, II, p. 526.
[2] Ibid., p. 543.

[1] Паисий Хилендарски, История Славяноболгарская, София, 1925, с. 28.

* * *

Հաճելի պարտականություն ենք համարում այստեղ շնորհակալություն հայտնել պարոն Անրի Գրեգուարին և պարոն Պոլ Օրժելին, որոնք ազնվություն ունեցան կարդալու այս աշխատության սրբագրության թերթերը և բազմաթիվ ուղղումներ կատարելու: Մեզ հատկապես օգտակար են եղել պարոն Պ. Օրժելի բանիմաց դիտողությունները:

Երախտապարտ ենք նույնպես Բելգիայի Թագավորական ակադեմիային ներկա աշխատությունը հրատարակելու համար [Ն. Ադոնց]:



## ԴԱԼԱՍԵՆՈՍՆԵՐ

Վաղուց հայտնաբերված և հրատարակված հունարեն մի արձանագրություն վրիպել է բյուզանդագետների ուշադրությունից: Այն հայտնաբերել է հայր Ներսես Սարգիսյանը 1843-1853 թթ. Հայաստանում եղած ժամանակ, սակայն հրատարակել է միայն 10 տարի անց՝ 1864 թվականին[1]: Արձանագրությունը փորագրված է Էրզրումում՝ հին Թեոդոսուպոլսում, քաղաքի չորս դարբասներից մեկի՝ Վրացական կոչվող, դարբասի պատի ներսի կողմում: Այնտեղ եղած երկու արձանագրություններից մեկը գրեթե ամբողջությամբ վնասված է. դրա միայն հետքերն են պահպանվել և այդ թվում նաև, բարեբախտաբար, տարեթիվը.

ω θεε ... κυριε
βοηθει... τω
δουλω...τω
ευκλε...
το βουρ
μηνυ
ετει ϛϙ
[«Ո՜վ Աստուած ... Տեր / օգնեա / ծառայի<ղ> / Եվկլե՟.../ բուռ՟ / ամսին/ 690 թվականին»]:

Արձանագրության տակ նշմարվում են ինչ-որ պատկերներ՝ նիզակով ձիավոր, հրեշտակ, Աստվածամայրը և նրանց դեմ հանդիման մի ընձառյուծ: Այդ պատկերների կողքին է գտնվում այն արձանագրությունը, որը հետաքրքրում է մեզ.

Κυριε βοηθη τον δουλον σου·
Ρωμανον τον Δαλασινον
κε κατεπανον της Ηβε(ρ)ιας
[«Աստված, ողորմեա ծառայիդ՝ Ռոմանոս Դալասենոսին և Իբերիայի կատեպանին»]:

Այսպիսով, արձանագրությունը պատկանում է ոմն Ռոմանոս Դալասե-

[1] Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, Վենետիկ, 1864:

նոսին: Նրա ինքնությունը պարզելու համար անհրաժեշտ է ուրվագծել նրա ընտանիքի պատմությունը:

Դալասենոսները պատվավոր տեղ են գրավում Վասիլ II կայսեր ժամանակաշրջանում պատմական ասպարեզում հայտնված հզոր ավատատիրական ընտանիքների շարքում (1): Նրանց նախնին պետք է համարվի Դամիանոս Դալասենոսը, որին Վասիլ II 995 թ. Անտիոքի դուքս է նշանակել Միքայել Բուրցեսի փոխարեն, որը 994 թ. սեպտեմբերի 15-ին կրած պարտությամբ վարկաբեկել էր իր ռազմական փառքը[1]: Դամիանոսը հաջողակ էր իր ռազմական ձեռնարկումներում, հատկապես կառավարման առաջին երկու տարիների ընթացքում՝ հակառակորդ երկիրն ասպատակելով նա հասնում է մինչև Աքքա և Տրիպոլի: 998 թ. հուլիսի 19-ին Ապամեայի մոտ նա մենամարտում է Դամասկոսի ամիրա Ջայիս-իբն-Շամամի հետ և առավելությունը իր կողմն էր, երբ սպանվում է նիզակի հարվածից: Նրա երկու որդիները գերեվարվում ու տարվում են Կահիրե: Նրանք ազատ են արձակվում միայն տասը տարի անց[2]: Ասողիկի տեղեկությունների համաձայն Դամիանոսը «մեռաւ եղբարբն և որդւովն»[3]: Կեդրենոսը տեղյակ է, որ Δαμιανὸν τε τὸν πατρίκιον ὃς ἦρχεν ᾿Αντιοχείας πολέμῳ συμβαλόντα τούτοις ἀνεῖλον [«և Դամիանոս պատրիկին, որը եկավ <մասնակցելու> Անտիոքի պատերազմին, սպանեցին նրանց հետ ընդհարվելու ժամանակ»][4], բայց նա չի հիշատակում ո՛չ թշնամու ձեռքն ընկած նրա որդիներին, և ո՛չ նրա հետ զոհված եղբորն ու որդուն: Շփոթե՞լ է արդյոք Ասողիկն ինչ-որ բան, թե՞ սպանվածներն ու գերի ընկածները տարբեր մարդիկ էին: Վերջին ենթադրությունն ավելի հավանական է թվում:

Դամիանոսի որդիների անուններն էին Թեոփիլակտոս ու Կոստանդին: Թեոփիլակտոսը որոշակի դեր է խաղացել Վասիլ II-ի դեմ 1022 թ. Նիկեփորոս Փոկաս-Ծռավզի և Նիկեփորոս Քսիֆիասի բարձրացրած ապստամբության ընթացքում: Հայտնի է, որ Քսիֆիասը նենգորեն սպանել է տվել իր դաշնակից Նիկեփորոս Փոկասին: Այդ լուրն ստանալուն պես πέμπεται Θεοφύλακτος ὁ Δαμιανοῦ τοῦ Δαλασσηνοῦ υἱὸς, καὶ Ξιφίαν συλλαβὼν ἐκπέμπει δέσμιον πρὸς τὴν βασιλίδα [«ուղարկվում է Թեոփիլակտոսը, Դամիանոս Դալասենոսի որդին, որը, բռնելով Քսիֆիասին, կապանքներով ուղարկում է նրան մայրաքաղաք»], որտեղից նրան մի վանք են աքսորում[5]:

---

[1] Яхья Антиохийский, см. В. Розен, Император Василий Болгаробойца, с. 31-33.

[2] Там же, с. 39.

[3] Ասողիկ, Գ, գլ. 37:

[4] Cedrenus, II, p. 448.

[5] Ibid., p. 477-478.



Ըստ Յահյայի տեղեկությունների Թեոփիլակտոսի առաքելությունն առավել անազնիվ էր. նա պետք է ձեռք առներ բոլոր միջոցները ապստամբների միջև տարաձայնություններ սերմանելու, նա նրանց պետք է պառակտեր ավելի հեշտությամբ կործանելու համար: Վասիլ կայսրը պրոտոսպաթար և դրունգար Թեոփիլակտոսին նշանակել է Անատոլիկոն բանակաթեմի ստրատեգոս Քսիֆիասի փոխարեն: Ապստամբներն ընդհարվել են ավելի վաղ, քան Թեոփիլակտոսը կհասցներ միջամտել: Նախանձելով Փոկասի վայելած ժողովրդայնությանը և նրան ընծայված համակրանքին, Քսիֆիասը սկսում է նրան դիտել ոչ որպես զինակցի, այլ որպես ախոյանի: Նա Փոկասին հրավիրում է իր մոտ և սպանել տալիս 1022 թ. օգոստոսի 15-ին: Հենց այդ ժամանակ է, որ Թեոփիլակտոսը հարձակվում է Քսիֆիասի վրա և գերեվարում[1]:

Թեոփիլակտոսի եղբայրը՝ Կոստանդին Դալասենոսը, ավելի մեծ հռչակ է ունեցել: Առաջին անգամ նա հիշատակվում է Վասիլ II-ի թագավորության վերջում՝ 1025 թվականին որպես Անտիոքի կատեպան[2]: Հայտնի չէ, թե որ թվականից էր նա զբաղեցնում այդ պաշտոնը: 1012 թ. Անտիոքի կառավարիչն էր ոմն Միքայել պատրիկ ալ-Կծանիոս մականունով, որն անծանոթ է բյուզանդացի ժամանակագիրներին: Յահյա Անտիոքցին, որը մեզ է հասցրել այս տեղեկությունը, Անտիոքի մի կատեպան է հիշատակում 1016 թ., բայց չի տալիս նրա անունը[3]: Հնարավոր է, որ դա հենց Կոստանդին Դալասենոսն է: Վասիլ II-ի մահից հետո նրա եղբայրն ու հաջորդը՝ Կոստանդին VIII-ը, 1026 թվականին պաշտոնանկ է արել Կոստանդինին և նրա պաշտոնը վստահել մի ներքինու, որի անունն էր Միքայել Սպոնդիլոս[4]:

Չնայած այդ վիրավորանքին, մահվան մահճին գամված Կոստանդին կայսրը ցանկանում էր Կոստանդին Դալասենոսին ետ կանչել Արմենիակների բանակաթեմում գտնվող նրա ավատից՝ ժառանգորդ հռչակելու համար: Վիգլայի դրունգար Սիմեոնին հաջողվել է կայսերը ետ պահել այդ մտադրությունից հօգուտ Ռոմանոս Արգիրոսի, որը պալատականի մտերիմ բարեկամն էր: Կոստանդին [Դալասենոսը] կարծես այդպես էլ չի ներել իր ախոյանին՝ Ռոմանոսին: 1030 թ. Ռոմանոսն արշավել է Ասորիք: Այդ արշավանքն ավարտվել է պարտությամբ և քիչ է մնացել, որ Ռոմանոս [III Արգիրոսն] այնտեղ կնքեր իր մահկանացուն: Մատթևոս Ուռհայեցին դրանում մեղադրում է որոշ նենգ ավատատերերի, որոնք դավեր էին նյութում կայսեր դեմ և ցանկանում էին նրան գահընկեց անել (2): Արաբ

---

[1] Яхья, в кн. В. Розен, Император Василий Болгаробойца, с. 63-64.

[2] Там же, с. 66.

[3] Там же, сс. 49 и 56.

[4] Cedrenus, II, pp. 481, 488.

պատմիչ Իբն-ալ-Աթիրը Ռոմանոսի պարտությունը վերագրում է «դքսի որդու» չարամտությանը, որը ցանկանում էր տիրանալ գահին և կործանել կայսերը: Բարոն Վ. Ռոզենն ապացուցել է, որ խոսքը Դամիանոսի որդու՝ Կոստանդին Դալասենոսի, մասին է, ելնելով այն բանից, որ արաբ պատմիչը մեկ այլ հատվածում Դամիանոսին պարզապես դուքս է անվանել, առանց տալու նրա անունը[1]: Կեդրենոսը արձանագրում է Դալասենոսի մասնակցությունը Ռոմանոսի արշավանքին, բայց ոչ մի ակնարկ չի անում որևէ խարդավանքի նրա մասնակցության մասին[2]:

Ռոմանոսի մահից հետո՝ 1034 թ., երբ հռչակավոր կուբիկուլարիոս Հովհաննեսին հաջողվում է գահը զավթել իր եղբայր՝Միքայելի համար, նրա առաջին մտահոգությունն է լինում ազատվել նրանցից, ովքեր հավակնում կամ ի զորու էին իր եղբորից թագը խլելու: Կոստանդին Դալասենոսը չէր թաքցրել իր վրդովմունքը Միքայելի՝ «այդ ստոր մարդու և անզգամի»՝ χυδαῖος καὶ τριωβολιμαῖος, գահակալության կապակցությամբ, երբ կային այլ մարդիկ, որոնք արժանի էին գահ բարձրանալու, թե՛ մատուցած ծառայություններով, և թե՛ իրենց հռչակավոր ծագումով: Հովհաննեսը խորամանկությամբ նրան մայրաքաղաք է հրավիրել ու զրկել գործելու հնարավորությունից, 1034 թ. օգոստոս ամսին նրան մի կղզի աքսորելով: Քիչ անց նրան, նրա փեսա Կոստանդին Դուկասին և շատ այլ նշանավոր անձանց արգելափակում են մի աշտարակում[3]:

1038-1039 թթ. (VII ինդիկտիոն) ավելի շուտ վախից, քան ատելությունից դրդված Հովհաննեսը վճռել է վերջ տալ Դալասենոսների ընտանիքին. նա արտաքսել է Կոստանդնի երկու եղբայրներին՝ Թեոփանեսին ու Ռոմանոսին, ինչպես նաև նրա զարմիկին՝ Ադրիանոսին, և մնացած մտերիմներին. ἐπιτείνων τὸ πρὸς τὸν Δαλασσηνὸν ἔχθος ὁ Ἰωάννης ὑπερορίζει καὶ Θεοφάνην πατρίκιον τὸν ἀδελφὸν αὐτοῦ, καὶ τὸν ἕτερον ἀδελφὸν αὐτοῦ τὸν πατρίκιον Ῥωμανόν, καὶ Ἀδριανὸν τὸν ἀνεψιὸν αὐτοῦ καὶ τοὺς λοιποὺς τοὺς κατὰ γένος αὐτῷ ἐγγίζοντας· ἔσπευδε γὰρ ἄρδην ἀφανίσαι τὸ γένος αὐτοῦ [«Դալասենոսի նկատմամբ անող թշնամությունից դրդված, Հովհաննեսն աքսորում է և Թեոփանես պատրիկին՝ նրա եղբորը, և նրա մյուս եղբորը՝ Ռոմանոս պատրիկին, և Ադրիանոսին՝ նրա զարմիկին, և նրա մնացած այս կամ այն մերձավորության ազգականներին. նա շտապում է ի սպառ ոչնչացնել նրա տոհմը»][4]:

Հետևաբար առաջին Դալասենոսը՝ Դամիանոսը, ուներ չորս որդի.

[1] В. Розен, op. cit., c. 314.
[2] Cedrenus, II, pp. 492-493.
[3] Ibid., pp. 506-512.
[4] Ibid., p. 521.



Թեոփիլակտոս, Կոստանդին, Թեոփանես, Ռոմանոս: Կոստանդնի զարմիկը՝ Ադրիանոսը, նրա եղբայր Թեոփիլակտոսի որդին էր: Ադրիանոսի դուստրը կնության է տրվել Ալեքսիոս Խարոնին, որից նա մեկ դուստր է ունեցել. Դալասինա կոչեցյալ հռչակավոր Աննան, որը դարձել է Հովհաննես Կոմնենոսի կինն ու Ալեքսիոս Կոմնենոսի մայրը. τούτου (Χάρωνος Ἀλεξίου) τὴν θυγατέρα γήμας ὁ Ἰωάννης Ἄνναν εἰς Δαλασηνοὺς τὸ γένος μητρόθεν ἀνέλκουσαν τοὺς Ἀδριανοὺς ἐκείνους καὶ τοὺς Θεοφυλάκτους [«Հովհաննեսը կնության է վերցրել նրա (իմա՛ Ալեքսիոս Խարոնի) դստերը՝ Աննային, որը մոր կողմից սերում էր այն <հռչակավոր> Ադրիանոսներից և Թեոփիլակտոսներից»][1]: Այսինքն՝ Աննայի մայրը Թեոփիլակտոսի որդու՝ Ադրիանոսի, դուստրն էր:

Կոստանդին Դալասենոսը մի դուստր ուներ, որը Կոստանդին Դուկասի կինն էր. ὁ ἐπὶ θυγατρὶ γαμβρὸς αὐτοῦ [«իր փեսան էր՝ դստեր կողմից»][2]:

Միքայել Պսելլոսը, որը մոտից ծանոթ էր Կոստանդին Դալասենոսին, ոչինչ չի ասում Կոստանդին VIII-ի մահից հետո գահը զբաղեցնելու նրա հավակնության մասին: Նա գովաբանում է Կոստանդնին ու համարում, որ բնությունը նրան ստեղծել էր թագի համար: Համենայն դեպս փաստն այն է, որ պալատի դռները փակվել էին նրա առջև. Միքայել Պափլագոնացին նրան բանտարկել է մի ամրոցում, իսկ Միքայելի հաջորդը՝ Միքայել Կալաֆատոսը, նրան ստիպել է վանականի վեղար հագնել: Սակայն Կալաֆատոսի մահից հետո (1042) էր, որ կայսրուհի Զոեն հույսեր էր կապում Կոստանդին Դալասենոսի հետ, ինչպես ժամանակին իր հայրը: Պալատ կանչվելով, նա այնքան հաստատակամ ու խիստ է պահել իրեն կայսրուհու ներկայությամբ, որ վերջինս հրաժարվել է նրան իր ամուսինը դարձնելու մտադրությունից: Ի միջի այլոց Պսելլոսն ասում է, որ οὔπω γὰρ δεκαέτης ἐγεγόνει καὶ ἡ φήμη τοῦτον εἰς τὴν κρείττω ἦρεν ὑπόληψιν: Ե. Ռընոյի թարգմանությամբ դա նշանակում է, որ «նա դեռ չէր բոլորել իր տասը տարին, իսկ հասարակական կարծիքը նրան արդեն կանխագուշակում էր փառապանծ ճակատագիր»[3]:

Սակայն մենք տեսանք, որ Կոստանդին Դալասենոսը ծնվել է 998 թ. առաջ, քանի որ նրա հայրը՝ Դամիանոս Դալասենոսը, սպանվել է այդ թվականին. հետևաբար նրա երիտասարդությունն անցել է Վասիլ II կայսեր թագավորության ժամանակ: Իսկ այդ ժամանակաշրջանում անգամ խոսք չէր կարող լինել այնպիսի շարժման մասին, որը կարող էր Դալասենոսին դեպի

[1] Bryen., p. 19; Anna Comn., I, p. 163: πρὸς Ἀδριανοὺς ἐκείνους τοὺς Δαλασσινούς [«Ադրիանոս Դալասենոսների այն <հռչակավոր տոհմից>»]:
[2] Cedrenus, II, p. 511.
[3] Psellos, Chronographie, éd. E. Rénauld, t. I, pp. 122-123.

գահ տանել: Այն հասարակական կարծիքը, որի մասին խոսում է Պսելլոսը, ինչ-որ իրական հիմք ունի և, անկասկած, վերաբերում է 1034 թ. տեղի ունեցած միջադեպին: Կեդրենոսի տեղեկությունների համաձայն Միքայել Պափլագոնացի կայսրը այդ տարի իր եղբորը՝ Նիկետասին, նշանակել է Անտիոքի դքսի պաշտոնին: Բնակիչները նրա առջև փակել են քաղաքի դարպասները, որովհետև շորթողական վարքագծի համար սպանել էին հարկահավաք Սալիբաս պաշտոնյային և վախենում էին պատժից: Նիկետասը նրանց կատարյալ ներում է խոստացել և ընդունվել քաղաքում: Սակայն նա դրժել է խոստումը ու բնակիչների հետ վարվել խստությամբ. բազմաթիվ պատվավոր քաղաքացիներ սպանվել են, իսկ մյուսները շղթայակապ ուղարկվել մայրաքաղաք: Միևնույն ժամանակ Նիկետասը հայտնել է իր եղբորը՝ ամենակարող նախարար ու կայսեր եղբայր Հովհաննեսին, որ անտիոքցիների խռովության պատճառը ոչ թե Սալիբասի չարաշահումներն էին, այլ պարզապես Դալասենոսի հանդեպ ունեցած համակրանքը. γράψας τῷ ἀδελφῷ ᾿Ιωάννῃ μὴ διὰ τὸν τοῦ Σαλίβα φόνον κωλυθῆναι αὐτῷ τῆς εἰς τὴν πόλιν εἴσοδον, ἀλλὰ διὰ τὴν εἰς τὸν Δαλασσηνὸν εὔνοιαν [«գրեց իր եղբորը, Հովհաննեսին, որ նրա՝ քաղաք մտնելն արգելվել է ոչ թե Սալիբասի սպանության, այլ Դալասենոսի նկատմամբ համակրանքի պատճառով»][1]:

Հովհաննեսը, որն առիթ էր փնտրում Դալասենոսին ձերբակալելու համար, օգտվել է դրանից և 1034 թ. օգոստոսի 3-ին նրան աքսորել է: Այսպիսով ակնհայտ է դառնում, որ Պսելլոսի ակնարկը տվյալ դեպքում վերաբերում է Անտիոքի «հասարակական կարծիքին», լինեն դա իրական, թե հորինված Նիկետասի կողմից իր եղբորը՝ Հովհաննեսին, հաճոյանալու համար: Հետևաբար Պսելլոսի տպագիրը պետք է ուղղել, եթե մենք ցանկանում ենք այնտեղ հղում գտնել շատ իրական փաստերի և ոչ թե մանկական չափազանցության, որը վայել չէ մեր հեղինակին: Սկզբում ես δεκαέτης-ի փոխարեն ցանկանում էի ընթերցել *δεκαετία* կամ *δεκαετηρίς*՝ «տասը տարվա ընթացքում», սակայն ավելի հեշտ է բնագիրը սրբագրել δέκα ἔτη: Հեղինակը ցանկանում է ասել, որ դեռ տասը տարին չէր լրացել, ինչ ժողովրդի ձայնը նրան կոչ էր անում գահ բարձրանալ: Եվ իսկապես Անտիոքի միջադեպից մինչ այն պահը, երբ բախտը երկրորդ անգամ է ժպտացել Դալասենոսին, անցել էր ընդամենը ութ տարի:

Ավելի ուշ մենք հանդիպում ենք այդ ընտանիքի երկու այլ անդամների՝ Դամիանոս II-ին և Կոստանդին II-ին: Առաջինը Միքայել Պարապինակեսի զորավարներից էր: Մոտ 1073 թ. սերբերը ներխուժել էին Բուլղարիա, և նրանց արքա Միքայելն իր որդուն՝ Բոդինոս մականունը կրող Կոստանդ-

[1] Cedrenus, II, p. 510.



ինին, թագադրել էր որպես բուլղարների թագավոր, որը իշխել է Պետրոս անվան ներքո: Բուլղարիայի դուքս Նիկետաս Կարանտենոսը, որը կառավարում էր այդ երկիրը կայսեր հանձնարարությամբ, «պատրաստվում էր քշել [ինքնակոչ թագավորին], երբ հայտնվում է մի փոխանորդ ի դեմս Դամիանոս Դալասենոսի». ῾Εν ὅσῳ δὲ οὗτος τὰ πρὸς τὸν πόλεμον ἐξήρτυεν, ἐπικατέλαβε διάδοχος αὐτοῦ Δαμιανὸς ὁ Δαλασσηνός: Դամիանոսն անմիջապես պայքար է ծավալում սերբերի դեմ, սակայն պարտություն է կրում և գերեվարվում բազմաթիվ սպաների հետ միասին[1]:

Մյուս Դալասենոսը, որի անունն էր Կոստանդին և որին պետք չէ շփոթել հռչակավոր Կոստանդնի հետ, հանդես է գալիս Ալեքսիոս Կոմնենոսի թագավորության ժամանակ: Սկզբում, մոտ 1086 թ. նա կառավարիչ էր Սինոպում: Սինոպն այդ ժամանակ գտնվում էր մի թյուրքի՝ Խարատիկեսի, իշխանության ներքո, որին կառավարիչ էր նշանակել սելջուկյան սուլթանը: Սուլթանը կայսեր մոտ էր ուղարկել ոմն Սիավուսի (Σιαούς)՝ կայսեր դստեր ձեռքը խնդրելու համար, փոխարենը խոստանալով նրան վերադարձնել ծովափնյա բոլոր շրջանները, որոնք գրավել էին թյուրքերը: Սուլթանի պատվիրակը, որի մայրը վրացուհի էր, հեշտությամբ գայթակղվում է կայսեր խոստումներով. նա քրիստոնեություն է ընդունում և, օգտվելով իր ձեռքին եղած սուլթանի գրավոր հրամանից, քշում է առափնյա բոլոր ամիրաներին և դրանց թվում Սինոպի ամիրա Խարատիկեսին ու այդ տարածքները ենթարկում կայսերական իշխանությանը: Կայսերական հրամանով Սինոպում Խարատիկեսի հաջորդ է նշանակվում Կոստանդին Դալասենոսը[2]:

Այս Դալասենոսը կայսրությանը մեծ ծառայություններ է մատուցել թյուրք բռնատեր Ծախասի (Τζαχᾶς) դեմ մղած պատերազմով: Նիկեայի տեր Սուլեյմանի մահից հետո, Ծախասը գրավել էր Զմյուռնիայի ու Միտիլենեի շրջանները, իրեն թագավոր հռչակել և սկսել ասպատակել արքիպելագի կղզիները: Պայքարը համառ էր. Կոստանդին Դալասենոսը բազմաթիվ ու ապարդյուն ծովային արշավանքներ էր ձեռնարկել տաճիկի դեմ: Վերջապես Ալեքսիոսին հաջողվել էր նրա դեմ լարել Սուլեյմանի որդի և հաջորդ Ղլիջ-Արսլանին (Κλιτζιασθλάν), որը մոտ 1092 թ. սպանում է իր փեսա Ծախասին[3]:

Բյուզանդական կնիքագիտությանը հայտնի է դիսհիպատոս և ստրատեգոս ոմն Նիկեփորոս Դալասենոս, որը հիշատակված չէ մատենագրական վավերագրերում: Պահպանվել է այդ ընտանիքին պատկանող երեք կնիք: Մեկը կրում է անթիպատոս և ստրատեգոս Թեոփիլակտոս Դալաս-

[1] Skylitzes, p. 716.
[2] Anna Comn., VI, 9, p. 303.
[3] Ibid., IX, 1 et 3, pp. 425 et 433.

նոսի անունը, որը, անկասկած, նույնանում է առաջին Դամիանոս մագիստրոսի նույն անունը կրող որդու հետ: Այն կնիքը, որի տերն է համարվում անթիպատոս և ստրատեգոս Դամիանոս Դալասենոսը, անկասկած, պատկանում էր այն Դամիանոսին, որն ապրում էր Միքայել Պափլագոնացու կայսեր ժամանակ և ոչ թե առաջին Դամիանոսին, որը շատ ավելի բարձր՝ մագիստրոսի, կոչում ուներ:

Չորրորդ կնիքը կրկնակի անուն է կրում: Կոստանդին Դալասենոս Դուկաս (ΓΡΑΦας ΣΦΡΑΓΙΖΩ ΚΩΝ(σταντινου) ΔΑΛΑΣΗΝΟΥ ΤΟΥ ΔΟΥΚΑ [«գրելով կնքեցի Կոստանտին Դուկասի <կնիքով>»]): Գ. Շլյումբերժեն ցանկացել է այս Կոստանդինին նույնացնել Ալեքսիոս Կոմնենոսի ժամանակ ապրած նույն անունը կրող անձի հետ, որն իր անունը հռչակել էր Ծախասի դեմ մղած պատերազմով[1]: Մենք գիտենք, որ Ջոեի փեսացուն համարվող Կոստանդին Դալասենոսի դուստրերից մեկն ամուսնացել էր Կոստանդին Դուկասի հետ և որ նա մահացել էր Դուկասի գահակալությունից (1059-1067) առաջ: Նա կարծես թե մի որդի էր թողել, որի անունն էր Կոստանդին: Կնիքը պատկանել է այդ Կոստանդինին, որը Խարոնի դուստր Աննա Դալասինայի պես պահպանել է իր մոր անունը հոր անվան կողքին, որտեղից և Դալասենոս Դուկաս:

Այժմ դառնանք այս հոդվածի սկզբում հիշատակված Ռոմանոս Դալասենոսին: Ինչպես քիչ առաջ տեսանք, ժամանակագիրները հիշատակում են Դալասենոսների ընտանիքին պատկանող միայն մեկ ներկայացուցիչ, որը կրում էր Ռոմանոս անունը: Հետևաբար մենք կարող ենք գրեթե կատարյալ վստահությամբ նրան նույնացնել արձանագրության մեջ հիշատակված անձի հետ: Սակայն ե՞րբ էր այդ Ռոմանոսը պաշտոնավարում որպես Իբերիայի կատեպան: Վնասված արձանագրության մեջ պահպանված 6500 թ., որը համապատասխանում է 992 թ., կապ ունի՞ արդյոք Ռոմանոսի արձանագրության հետ, թե՞ ոչ: Հնարավոր է, որ ոչ, քանի որ Դավիթ կյուրոպաղատը 990-991 թթ. իսկապես պարտավորվել էր մահից հետո իր տիրույթները թողնել կայսրությանը, բայց պակաս հավաստի չէ նաև այն, որ այդ ժամանակաշրջանում խոսք անգամ չէր կարող լինել Դավթի մոտ կայսերական կառավարիչներ նշանակելու մասին և փաստ է, որ դրանք չկային: Կյուրոպաղատը մահացել է 1000 թ. և Վասիլը շտապել է տիրանալու իր իրավունքին: Ըստ մի վկայության գործը կարգավորելուց հետո կայսրը նոր

[1] Anna Comn., VII, 8, p. 362, ասում է, որ Ալեքսիոսը, [«զինելով երկրորդ նավատորմիղը, դրա դուքս է նշանակել Կոստանդին Դալասենոսին, ռազմական գործում հույժ փորձված <մարդուն> և մորական կողմից՝ իր ազգականին»] ἕτερον ἐξοπλίζει στόλον, ἐπιστήσας δοῦκα τούτου Κωνσταντῖνον τὸν Δαλασσηνόν, ἄνδρα μαχιμώτατον καὶ μητρόθεν τούτῳ προσήκοντα.



մարզում հույն կառավարիչներ է նշանակել[1]: Սակայն այն իրադարձությունները, որոնք տեղի են ունեցել հետագայում, այնպիսիք էին, որ չէին կարող ապահովել կայսերական իշխանության կանոնավոր գործունեությունը այդ նոր գավառում: Կայսեր Իբերիայից հեռանալուն պես Գուրգեն թագավորը զենքը ձեռքին ետ է պահանջել կյուրոպաղատի ժառանգությունը: Բյուզանդական բանակի զորավար Նիկեփորոս Ուրանոս մագիստրոսը (Ասողիկի՝ *Կանիկլն*-ը) մեծ դժվարությամբ է կարողացել խաղաղությունը վերահաստատել[2]: Ըստ երևույթին կայսրը երկրի կառավարումը վստահել էր հենց Նիկեփորոսին: Սակայն [իբերական տիրույթների] հարցը շարունակում էր վիճելի մնալ. կայսրը կլանված էր բուլղարական պատերազմով, և Գուրգեն արքան ու նրա որդի և հաջորդ Բագրատը փաստորեն դառնում են այդ հողի տերը գալիք տարիների ընթացքում:

1018 թ. Վասիլը իրեն է ենթարկել բուլղարներին և շտապել դեպի արևելք: Վերսկսվել է պատերազմը վրացիների դեմ: Իրավիճակը բարդացել է Նիկեփորոս Փոկաս-Ծռավզի և Նիկեփորոս Քսիֆիասի ապստամբության հետևանքով: Ի վերջո կայսրը հաղթանակ է տարել և բարեհաջող կերպով վերադարձել մայրաքաղաք հիջրայի 414 թ. =1023 թ. մայիսի 26 - 1024 թ. մայիսի 14: Այդ պահից ի հայտ է գալիս մի նոր գավառ Իբերիա անվանումով, որը, սակայն, կազմված էր Թեոդոսուպոլիս քաղաքը շրջապատող այնպիսի հայկական շրջաններից, ինչպիսիք էին Բասենը, Կարինը, Դերջանն ու Տայքը: Վերը մենք տեսանք, թե ինչ դեր էր խաղացել Թեոփիլակտոս Դալասենոսը երկու Նիկեփորոսների ապստամբությունը ճնշելու հարցում: Վասիլը նրան նշանակել է Անատոլիկոն բանակաթեմի ստրատեգոս[3]: Նրա ավագ եղբայրը՝ Կոստանդինը, այդ ժամանակ Անտիոքի դուքսն էր[4]: Հետևաբար մենք կարող ենք կարծել, որ Թեոփիլակտոսը միայնակ չէր և որ նրա երրորդ եղբայրը՝ Ռոմանոսը, նույնպես օգնել էր կայսերը թե՛ վրացիների դեմ վարած պատերազմում, և թե՛ ապստամբ ստրատեգոսների դեմ: Ըստ երևույթին այդ ժամանակ էր, որ կայսրը Ռոմանոսին էր վստահել նոր գավառի՝ Իբերիայի, կառավարումը՝ 1023 թվականին: Վասիլի մահից հետո,

[1] Яхья (см. В. Розен, op. cit.), с. 41.

[2] Там же. Յահյայի Նիկեփորոս մագիստրոսը կրում է մի տիտղոս, որը կարդացվում է (الفتعلس) al-F-t-'l-s կամ (القيقلس) al-K-i-k-l-s և որը բարոն Վ. Ռոզենը համարում է βέστης բառի աղավաղումը: Ասողիկը նրան անվանում է «Կանիկլն մաժիստրոս» (Ասողիկ, Գ, գլ. 34) և դա ստիպում է արաբերեն բառը կարդալ al-k-n-i-k-l-s, այսինքն՝ κανίκλειος: Ուրեմն Նիկեփորոսը կանիկլիոնի՝ [դիվանատան] քարտուղարն էր. ի միջի այլոց ինքը Յահյան նրան որակում է որպես կայսեր քարտուղար այն հատվածում, ուր խոսում է նրա առաքելության մասին Բաղդադում:

[3] Там же, с. 64.

[4] Там же, с. 66.

որը վրա է հասել 1025 թ. դեկտեմբերի 15-ին, նրա եղբայրն ու հաջորդը՝ Կոստանդինը, ինչպես վկայում է Արիստակեսը, ոչ մի փոփոխություն չի մտցրել վարչական բաժանման մեջ, սակայն Վասպուրականի կառավարիչ Նիկեփորոս Կոմնենոսի ապստամբությունից հետո, որը համաձայնության գալով վրաց Գեորգի թագավորի հետ, ցանկանում էր արևելքում իր համար անկախ պետություն ստեղծել, կայսրը ստիպված է եղել փոխել վարչակազմը: Այսպիսով իր թագավորության երկրորդ տարում՝ 1027 թ., «առաքէ թագաւորն յարևելս վերակացու աշխարհին Նիկիտ ոմն ներքինի, որ եկեալ անցանէ ի գաւառն Վրաց և պատիր բանիւք զբազումս յազատաց աշխարհին հանէր ի հայրենեաց՝ առաքէ ի դուռն թագաւորին»[1]: Կեդրենոսն առավել խիստ է գնահատում կայսեր քաղաքականությունը՝ համարելով, որ վերջինս հեռացրել է արժանավոր մարդկանց և պատասխանատու պաշտոնները վստահել սենեկապասպասավորներին, որպիսիք էին Նիկողայոսը, Սիմեոնը, Եվստաթիոսը: Այդ ժամանակ էր, որ Կոստանդինը Միքայել «Սպոնդիլոս կոչեցյալ ներքինուն նշանակել է Անտիոքի, իսկ Նիկետաս Պիսիդացուն՝ Իբերիայի դուքս». προεβάλετο δὲ καὶ δοῦκα Ἀντιοχείας εὐνοῦχόν Σπονδύλην λεγόμενον, καὶ Ἰβηρίας Νικήταν τὸν ἐκ Πισιδίας[2]: Առաջինը պետք է փոխարիներ Կոստանդին Դալասենոսին՝ Անտիոքի դուքսին, իսկ երկրորդը նրա եղբորը՝ Ռոմանոսին՝ Իբերիայի ենթադրյալ դքսին: Այդ պահից Դալասենոսների ընտանիքը շնորհազուրկ է լինում: Կոստանդին կայսեր հաջորդներն իրենց ավելի թշնամաբար են դրսևորել նրանց նկատմամբ. Դալասենոսները այլևս չէին կարող հույս ունենալ որևէ վարչական պաշտոն զբաղեցնելու: Նրանք ստիպված էին մեկուսանալ իրենց գավառական տիրույթներում (3): Այս ամենը գալիս է հաստատելու այն ենթադրությունը, ըստ որի Ռոմանոսի Իբերիայի կառավարիչ կամ կատեպան լինելը անպայմանորեն պետք է տեղադրվի 1023-1026 թվականներին: Այն արձանագրությունը, ուր նա հիշատակվում է, թվագրված է համապատասխանաբար այդ ժամանակաշրջանով:

Պսելլոսը երկու հատվածներում վկայում է, որ Կոստանդին Դալասենոսը «ծագումով հայտնի Դալասա վայրից է». ὦ πατρὶς μὲν ἡ Δάλασσα, χωρίον ἐπισημότατον: Մեկ այլ տեղ Կոստանդին Դուկաս կայսեր մասին խոսելիս նա ասում է, որ նրա կինը Դալասենոսի դուստրն է. Κωνσταντίνου

[1] **Արիստակես Լաստիվերտցի**, գլ. 5: Տպագրի «Նիկիտոմ ներքինին» պետք է սրբագրել «Նիկիտ ոմն ներքինի»: Նման մի սխալի հանդիպում ենք նաև Ասողիկի մոտ, ուր «որ կոչի Դլիվենկն և մանուկ Արաս»-ի փոխարեն պետք է կարդալ «որ կոչի Դլիվ, եկն և մանուկն Արաս»: Դլիվը հայտնի մի վայր է (տե՛ս **M. Brosset**, I, p. 296): Մ. Բրոսսեն այդ սխալը կատարել է իր հրատարակության մեջ, ինչպես նաև Ֆ. Մակլերը Ասողիկի իր թարգմանության մեջ (**Asolik**, III, ch. 28):

[2] **Cedrenus**, II, p. 481.



γὰρ ἦν παῖς ἐκείνου, ὃν τὸ μὲν χωρίον ἡ Δάλασσα ἤνεγκεν, ἡ δὲ ῥώμη πανταχοῦ τῆς οἰκουμένης ἐκήρυξε [«նա այն Կոստանդինի զավակն էր, որը ծագել է Դալասա վայրից, իսկ իշխանությունը հռչակել ամբողջ աշխարհում»][1]:

Դժբախտաբար պատմիչը մեզ ոչինչ չի հայտնում Դալասա քաղաքի տեղադրության մասին: Այն հռչակավոր է կոչվել, անկասկած, այն պատճառով, որ ծնունդ է տվել «ամբողջ աշխարհում հայտնի» մի ընտանիքի:

Արդի պատմաբանները կարծում են, որ խոսքը այժմյան Թալաս գյուղի մասին է, որը գտնվում է Կեսարիայի մոտ: [Այդ անվանումը] Գ. Շլումբերժեն նույնիսկ գրում է Thalassa՝ Դալասայի հետ նմանությունն ընդգծելու համար:

Սակայն այդ նույնացումը մեզ շատ վիճելի է թվում: Թալասը, անկասկած, ոչ մի կապ չունի θάλασσα բառի հետ, և մենք հույս ունենք, որ Thalassa թվացյալ գրությունը ներշնչված չէ այդ նմանությամբ: «Թալասը» հին Μουταλάσκη-ի[2] աղավաղված ձևն է. Mutalaska > Mutalassa, իսկ հետո Talasse կամ Talas: Անվան ձևափոխումը չէր կարող ծայր առած լինել Պսելլոսի ժամանակաշրջանում և ոչ մի դեպքում Dalassa ձևով: Սկզբնատառ Տ-ի փոխարեն Դ-ի հայտնվելը անբացատրելի է, քանի որ բյուզանդական արտասանությունը ավելի հակված է հնչեղ բաղաձայնները խուլ բաղաձայնների փոխակերպելու, քան հակառակը: Բացի այդ Mutalaska-ն XI դարում Mutarasou(n) էր կոչվում: Մատթեոս Ուռհայեցու համաձայն, Գրիգոր Բ կաթողիկոսը օթևան էր գտել Մուտաղասու(ն)-ում Սենեքերիմի եղբայր Գուրգենի որդու՝ Գագիկ իշխանի, մոտ: Հետևաբար Տալաս ձևը ոչ մի դեպքում չի կարող հավակնել շատ մեծ հնության:

Ավելի ողջամիտ կլիներ Դալասան դիտել իբրև մի վայր, որը կոչվում էր Դալաշ (կամ Դալասա) և որը հիշատակված է 1018 թ. ընդօրինակված հայկական մի Ավետարանի հիշատակարանում: Ահա այդ հիշատակարանը.

***«Գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառի Կղաւտոյ ի վանս Տալաշայ ընդ հովանեաւ Աստուածածնիս եւ սուրբ Գէորգեայ, վերակացութեամբ հայր Պաւղոսի, ձեռամբ փցուն եւ ապիկար գրչի Յոհաննեսի ազիտի եւ մեղաւորի, ի թուականութեան հայոց :ՆԿԷ: (467) զոր ստացաւ տիկին Ծովակ աստուածասէր եւ բարեպաշտ իւր յիւրոց աշխատութեանց եւ ծնողաց իւրոց»***[3]:

[1] **Psellos**, t. I, p. 122 et II, p. 141, éd Rénauld.

[2] [Այս անվան ծագման վերաբերյալ տե՛ս **H. Grégoire**, «Bulletin de la Classe des Lettres de l'Académie royale de Belgique», 5e série, XXI (1935), p. 43] (4):

[3] **Ե. Լալայան**, Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի, պրակ Ա, Թիֆլիս, 1915, № 43, էջ 76:

Կղաուդիաս գավառը բավականին հայտնի է: Դա Հանձիթի դիմաց ու Մելիտենեից արևելք ընկած Եփրատ գետի կազմած լեռնային անկյունն է: Իր անվանումով այն պարտական է Κλαύδια քաղաքին, որը հայտնի էր Պտղոմեոսին և որը շարունակում էր գոյություն ունենալ դեռևս բյուզանդական ժամանակաշրջանում, ինչպես տեսնում ենք De Velitatione bellica-ում, ուր այն հիշատակված է որպես Καλούδια՝ Γερμανίκεια-ի, ʽΑδατᾶ-ի, Καησοῦν-ի, Δαουθᾶ-ի կողքին[1]: Միքայել Ասորին քաջ ծանոթ է Կղաուդիաս և Գուբբոս երկրամասերին: Վերջինս Կղաուդիասին հարում է հարավից և զբաղեցնում Կոպ լեռան (թուրքերի Կոպլի դաղ) սարահարթը ու պահպանել իր հին անունը: Երկու գավառները բաժանված էին գետի հովտով, որն այժմ կոչվում է Մամաս՝ ըստ այնտեղ ապրող քրդական ցեղախմբի անվան, կամ էլ Շիրո-սու: 752 թ. Կոստանդին V Կոպրոնիմոս կայսրը պաշարել է Մելիտենե քաղաքը և գերեվարել Կղաուդիասի ու Չորրորդ Հայքի բոլոր գյուղերի բնակիչներին[2]: 1065-1066 թթ. հայերի մի զորաջոկատ ներխուժել է Կղաուդիասի և Գուբբոսի գավառներն ու կողոպտել ասորական վանքերը: Մելիտենեի առաջնորդները բանակցություններ են սկսել ներխուժողների հետ, և համաձայնել նրանց զիջել Գուբբոսի և Կղաուդիասի տարածքների մի մասը: Նրանք նույնիսկ հասել են այն բանին, որ կայսրը խաղաղությունը վերականգնելու նպատակով խրախուսելով նրանց է զիջել շրջանի չորս գյուղեր[3]: Այդ «ավազակներն ու գողերը», ինչպես նրանց որակում է ասորի պատմիչը, ոչ այլ ոք էին, եթե ոչ Փիլարտոսի զինվորները, որն իր հաղթանակների շնորհիվ ստեղծելու էր մի ընդարձակ իշխանություն, որը պետք է տարածվեր Մելիտենեից մինչև Անտիոք և որը բնականաբար իր մեջ էր ներառելու Կղաուդիասն ու Գուբբոսը: Նա ամեն տեղ հայ իշխաններ է նշանակել, որոնցից շատերը գոյատևել են անգամ Փիլարտոսի անկումից հետո:

Հետևաբար Դալաշ(ա)ն գտնվում էր Կղաուդիաս գավառում: Միքայել Ասորին թվարկելով այդ գավառի ասորական վանքերը, որոնք թալանվել էին հայ «ավազակների» կողմից, նշում է Մաղիքը, Մարկուսը, Մար-Աայան, Բեյթ Շահդը, Սերգիսյեհը առանց հիշատակելու Տալաշա վանքը: Այստեղից պետք է եզրակացնել, որ Տալաշան հայկական կենտրոն էր, կարևոր մի վայր, որն ուներ վանք և Ս. Աստվածամորն ու Ս. Գևորգին նվիրված եկեղեցիներ: Մեր ձեռագիրը օրինակվել է Տալաշում հայկական թվագրու-

[1] De Velitatione bellica, ed. Bonn, p. 250 (cf.. **E. Honigmann**, Die Ostgrenze des byzantinischen Reiches von 363 bis 1071, Bruxelles, 1935, pp. 80-92) (5).

[2] **Michel le Syrien**, ed. Chabot, t. II, p. 518.

[3] Ibid., t. III, p. 164. Հռչակավոր Աբուլֆարաջ Բար Հեբրայոսը († 1268) Գուբբոսի, Լակաբինի և Հալեպի եպիսկոպոսն էր:



թյան 467 թ. = 1018 թ., այսինքն հայ «ավազակների» ներխուժումից շատ առաջ: Սխալ կլիներ կարծել, որ Կղաուդիասում հայկական տարրը հայտնվել է Փիլարտոսի նվաճումներից հետո: Բացի այդ Միքայել Ասորին վկայում է, որ հայերի գաղթը Եփրատից այն կողմ գտնվող երկրամասերը սկսվել է Վասիլ II-ի թագավորության ժամանակաշրջանից: Դա դեռ չի նշանակում, որ դրանից առաջ այնտեղ հայեր չեն եղել: Կղաուդիասի և Գուբբոսի սարահարթն իր տեղադրությամբ լինելով արաբա-բյուզանդական ռազմական ճանապարհներից դուրս, բավական ապահով ապաստան էր այն հայ ավատատերերի համար, որոնք մտադրություն չունեին հրաժարվելու իրենց ազատությունից ու անկախությունից:

Դալասենոսների ընտանիքը հաստատվել էր Դալասայում: Մեր վավերագրում այդ անվանումը գրված է Արևմտյան Հայաստանի բարբառներին հատուկ հնչյունաբանությամբ՝ Տալաշ, որը հատուկ է նաև Եփրատի հովտի բարբառներին: Կղաուդիասը նույնպես գրվում է Կղաուտիաս: Ճիշտ տառադարձությունը կլինի համապատասխանաբար Դալաշա և Կղաուդիա[1]:

Բյուզանդացիները Դալաշա անունը ներկայացրել են *Δάλασσα, Δαλασσηνοί* ձևերով: Հիշատակված կնիքների տերերն են միայն, որ իրենց անունը գրել են մեկ -σ-ով *Δαλασινηνός* կամ *Δαλασινός*, բացառությամբ Աննա Դալասինա կյուրոպաղատուհու, որն իր կնիքների վրա պահպանում է երկու -σ-ով գրությունը: Կրկնակի -σ-ը, անկասկած, ծառայում է բնագրի -շ- հնչյունը վերարտադրելու համար. հնում հաճախ այդ հնչյունը վերարտադրում էին -ξ- տառով:

Դալասենոսների ծագումը, այնպիսին, ինչպիսին այն մեզ ներկայացավ, իր մեջ ոչ մի արտառոց բան չի պարունակում: Հռչակավոր բյուզանդական ընտանիքները, որոնք ասպարեզ են եկել Վասիլ II-ի թագավորության ժամանակաշրջանում, ինչպես նաև այդ ժամանակաշրջանից առաջ, մեծ մասամբ ծագումով եփրատյան գավառներից էին: Բավական է նշել Բուրցեսների, Մանիակեսների, Վրախամիոսների, Կուրտիկիոսների և, վերջապես, Լեկապենոսների և շատ այլ ընտանիքներ: Մենք տեսնում ենք, թե ինչպես Կեկավմենոսների ընտանիքի մի ճյուղ հաստատվում է Դեզինենում կամ Տեկեսում, այն գավառում, որը թողել էր իշխան Մանուելը՝ իր չորս որդիների հետ միասին Լևոն Իմաստասերի թագավորության օրոք կայսրության տարածքն անցնելու համար:

Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ առաջին Դալասենոսը՝ Դալասայի տերը, լքել էր այդ վայրը Արմենիակների բանակաթեմ տեղափոխվելու համար, ինչպես որ վարվել էին Կուրտիկիոսը, Մանուելը, Վասա-

[1] Հայերեն շարադրանքում մեզ հետաքրքրող անունը սեռական հոլովով է դրված՝ Տալաշայ, ուղղականը պետք է լինի Տալաշ կամ Տալաշա:

կեսը և շատ ուրիշներ: Երբ Կոստանդին կայսրը մարդ է ուղարկել Կոստանդին Դալասենոսի ետևից, ապա նրան գտել են «իր տանը Արմենիակների բանակաթեմում». Κατὰ τὸν 'Αρμενιακὸν ἐν τῷ ἰδίῳ οἴκῳ σχολάζοντα[1]:

Վասիլ II-ը Դամիանոսին Անտիոքի դուքս էր նշանակել Բուրցեսից հետո, քանի որ նա հայտնի էր որպես Դալասայի խոշոր ավատատերերից մեկը: Նույն այդ պատճառով Անտիոքի բնակիչները ընդգծված համակրանք էին ցուցաբերում նրա որդու՝ Կոստանդին Դալասենոսի, նկատմամբ: Դամիանոսը հասել էր մագիստրոսի պատվաստիճանին, առանց անցնելու զինվորական ծառայության աստիճաններով. նա այդ պատվաստիճանն ստացել էր, երբ ծառայության էր անցել կայսրությանը, ինչպես Գրիգոր Տարոնացին կամ Սենեքերիմ արքան՝ «Ստրատեգիկոնի» հեղինակ Կեկավմենոսի վկայությամբ: Այն, ինչ հայտնում է Պսելլոսը Մանիակեսի առաջխաղացման մասին՝ կարելի է վերագրել Դամիանոսին՝ այսինքն, որ նա չուներ զինվորական ծառայության փորձ, քանի որ նա «բանակի սպասավորների դասից չէր» οὐκ ἀπὸ τῶν σκευοφόρων, «և առանց շեփորի <ձայնին> ծանոթ լինելու [այսինքն՝ առանց շարքային զինվոր ծառայելու]»՝ οὐδὲ τῇ σάλπιγγι χρώμενος, նա մի թռիչքով զինվորականստորակարգության գագաթին էր հասել: Դա նշանակում է, որ Մանիակեսը եղել էր Թելուկի ավատատերը դրա ստրատեգոսը դառնալուց առաջ: Նույնն է կատարվել Դամիանոսի, ինչպես նաև Տարոնացու և շատ ուրիշների դեպքում:

Ինչևիցե, պարզվում է, որ Դալասենոսները պատկանում են բյուզանդական այն ընտանիքների թվին, որոնք հայկական ծագում ունեն: Մի հայ հեղինակ՝ Մեսրոպ Երեցը, 967 թ. գրված իր աշխատության մեջ վերարտադրել է Գահնամակ կոչվող վավերագրի բավականին ծավալուն մի տարբերակ: Դա ավատական ժամանակաշրջանի հայ ընտանիքների մի ցուցակ է, ուր այդ ընտանիքները թվարկված են ըստ իրենց տեղի, այսինքն ըստ որոշակի կարգի, որը սահմանված էր այդ ընտանիքին թագավորական արքունիքում[2]: Այսպես, Մեսրոպ Երեցի ցուցակում մենք հանդիպում ենք լիկանդացիների և կղուդիացիների. «Լիկանդեանք և Կղունդիք» (6): Մեսրոպի աշխատությունը մեզ է հասել 1131 թ. ընդօրինակված մի ձեռագրով: X դարում Կղուդիասում հայտնի միակ ընտանիքը Դալասենոսների ընտանիքն էր: Մեսրոպն այն դիտում է որպես հայկական ընտանիք: Լիկանդացիների՝ հռչակավոր Մելիասի [Մլեհի] ընտանիքի, հիշատակումը վկայում է, որ Մեսրոպ Երեցը այդ հարցին քաջատեղյակ է:

[1] Cedrenus, II, p. 484.

[2] Այս վավերագիրը հրատարակվել է «Սոփերք»-ում (հատ. Զ, Վենետիկ, 1853) և վերարտադրվել է իմ «Армения в эпоху Юстиниана» աշխատության մեջ, ուր այն մանրակրկիտ քննության է ենթարկվել:



## ԹԵՈԴՈՐՈԿԱՆՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԸ

Վենետիկի Մխիթարյան միաբանության Մատենադարանն ունի մի հոյակապ Ավետարան, որը գրվել է Ադրիանուպոլսում 1007 թվականին: Այդ ձեռագրի մանրակրկիտ նկարագրությունը, որը կատարել է հայր Բ. Սարգիսյանը, զետեղված է Վենետիկի Մխիթարյան միաբանության Մատենադարանի ձեռագրացուցակում (1):

Ավետարանի հիշատակարանում, որը բարեբախտաբար պահպանվել է, գրված է. «Շնորհաւքն Աստուծոյ եւ ողորմութեամբ նորին սկսայ ես Կիրակոս երէց մեղաւոր և անարժան գրիչ, համարձակեցայ և գրեցի զՍուրբ Աւետարանս զայս ի թուականութեանն հայոց ՆԾԶ (456) ի գաւառին Մակեդոնոյ ի քաղաքին որ կոչի Անդռնապոլիս, ի թագաւորութեան Վասիլին որ ունի զաթոռն Կոստանդապոլսի: Արդ որ ընթեռնուք Սուրբ զԱւետարանս գրիչս յիշեցէք եւ խնդրեցէք մեղաց թող*ութիւն*»,

«Եւ ես Յովհաննէս՝ Պռոտուսպաթար թագաւորի եւ Պրոքսիմոս Դուկիս Թոքորակնիս ճորտս, որ գրել ետու զՍուրբ Աւետարանս իմ հոգեացս յիշատակ եւ իմ ծնողաց եւ ամեն ազգի…»,

«Արդ որք ընթեռնուն Սուրբ զԱւետարանս Պռոքսիմոսին մեղաց թողութիւն խնդրեցէք, որ Աստուած զնա երկնից արքայութեանն արժանի արասցէ…»,

«Եւ տիկնոջն Պռոքսիմոսին կնոջն մեղաց թողութիւն եւ իւր ծնողացն եւ իւր որդեացն որ ընթեռնուք մեղաց թողութիւն խնդրեցէք»[1]:

Այսպիսով ձեռագրի տերը ոմն Հովհաննես է, որն իրեն անվանում է Թոքորական դքսի պրոքսիմոս: Պրոքսիմոս նշանակում է «համհարզ»: 1066 թ. Եդեսիայի դուքսն էր Պիղավնիտեսը և նա ուներ պրոքսիմոս[2]: Այդ Պիղավնիտեսը Կեդրենոսի[3] Πηγονίτης ἄρχων՝ [Պիգոնիտես իշխանն] է: Տասը տարի անց Եդեսիայի դքսի պաշտոնը վստահվում է Լևոն Դավատինոսին և մի պրոքսիմոսի[4]:

[1] Տե՛ս Հ. Բարսեղ Սարգիսեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատ. Ա, Վենետիկ, 1914, № 116, էջ 510-518:

[2] Մատթէոս Ուռհայեցի, գլ. 91:

[3] Cedrenus, II, p. 503.

[4] Մատթէոս Ուռհայեցի, գլ. 116. Դա Սկիլիցեսի Լեոն Դիավատինոսն է (Λέων Διαβατηνός), Scilitzes, t. II, p. 743: Վիգլայի դրունգարը նույնպես պրոքսիմոս ուներ՝ Const. Porphyr., De cerim., p. 599:

*Թոքորականը Թեոդորոկան* անվան բարբառային ձևն է. հայոց լեզվի արևմտյան բարբառներին բնորոշ է ինչեղ *դ*-ի փոխակերպումը շնչեղ *թ*-ի: *Թոքորականի* սեռական հոլովի փոխարեն *Թոքորակնի* ձևը նույնպես բնորոշ է այդ բարբառներին: Այդ օրենքին հետևելով Կոստանդին Ծիրանածինը Գագիկ անունը գրում է Κακίκιος ձևով, Գրիգորը՝ Κρικορίκιος, Դավթուկը՝ Ταυτούκας և այլն: Արիստակես Լաստիվերտցին Թեոդորա անունը երկու անգամ ներկայացնում է որպես Թեոթուրա և մեկ անգամ՝ Թեոդոռ[1]:

Ո՞վ է Թոքորական կամ Թեոդորոկան դուքսը: Դա Բյուզանդիայի պատմության մեջ շատ հայտնի մի անձնավորություն է՝ Θεοδωροκάνος պատրիկը (2):

Հովհաննես Չմշկիկի մահից հետո Վասիլ II կայսրը ստիպված է եղել երեսուն տարի շարունակ (986-1018) պայքարել Բուլղարիան ավերակներից վերածնած Սամուել արքայի նվաճումները վերացնելու համար: 986 թ. նրա ձեռնարկած առաջին արշավանքը անհաջող է ընթացել: Նա խուսափել է մահից միայն հայկական հետևակի շնորհիվ, որը «ի մէջ առեալ զթագաւորն Վասիլ զկնի և յառաջոյ՝ ընդ այլ ճանապարհ լեռնագնաց տարեալ հանին ի Մակեդոնիա»[2]:

Հաջորդ տարիների՝ 987-989 թթ., ընթացքում Վասիլը ստիպված է եղել պայքարել Վարդաս Փոկասի ու Վարդաս Սկլերոսի բարձրացրած ապստամբության դեմ: Ճնշելով այդ ապստամբությունը՝ նա կրկին կարող էր մտածել Սամուել արքայից վրեժխնդիր լինելու մասին: 991 թ. նա մտնում է Թրակիա և Մակեդոնիա ու կանգ առնում Թեսաղոնիկեում: Այնտեղ նա որպես կառավարիչ է թողնում մի մարդու, որը Սկլերոսի ապստամբությանը մասնակցելուց հետո անցել էր կայսեր կողմը. դա Գրիգոր Տարոնացի մագիստրոսն էր: Վասիլը նրան օժանդակ զորք է տալիս, հրամայելով կասեցնել բուլղարների ներխուժումները: Ասողիկն ավելացնում է, որ Գրիգորին ուղեկցում էր մեկ այլ հայ իշխան՝ Աբելի որդի Սահակը, որը ծագումով Հանձիթից էր[3]: Կեդրենոսը պատմում է Գրիգորի որդի Աշոտի սիրային պատմությունը Սամուելի դստեր հետ, առանց ճշտելու թվականը և, դրան հետևող փաստերի շարքում, նշում է հետևյալը. ἐποιήσατο δὲ καὶ εἰσβολὴν ἐν Βουλγαρίᾳ διὰ Φιλιππουπόλεως ὁ βασιλεύς, ταύτην φρουρεῖν τάξας τὸν πατρίκιον Θεοδωροκάνον· καὶ πολλὰ τῶν ἐν Τριαδίτζῃ φρουρίων καταστρεψάμενος ἐπανῆλθεν εἰς Μοσυνόπολιν. Τῷ δὲ ,ϛϞη' ἔτει, ἰνδικτιῶνος ιγ', δύναμιν βαρεῖαν ἐκπέμψας ὁ βασιλεὺς κατὰ τῶν πέραν τοῦ Αἵμου Βουλγαρικῶν κάστρων, ἀρχηγοὺς ἔχουσαν τὸν πατρίκιον

[1] **Արիստակէս Լաստիվերտցի**, գլ. 9 և գլ.15:
[2] **Ասողիկ**, Գ, գլ. 23:
[3] Cedrenus, II, p. 447; **Ասողիկ**, Գ, գլ. 23:



Θεοδωροκάνον καὶ Νικηφόρον πρωτοσπαθάριον τὸν Ξιφίαν, τήν τε μεγάλην εἷλε Περσθλάβαν καὶ τὴν μικρὰν καὶ τὴν Πλίσκοβαν... [«Կայսրը ներխուժեց նաև Բուլղարիա՝ Փիլիպպուպոլիսի կողմից, կարգադրելով Թեոդորոկանոս պատրիկին պաշտպանել այն: Ապա, ավերելով բազում հենակետեր Տրիադիցայում, նա հասնում է Մոսինոպոլիս: 998 թ., XII ինդիկտիոնին կայսրը ծանրազեն զորք է ուղարկում Հեմոս լեռան մյուս կողմում գտնվող Բուլղարական զորակայանի դեմ, Թեոդորոկանոս պատրիկի և Նիկեփորոս Քսիֆիաս պրոտոսպաթարի գլխավորությամբ, և գրավում Մեծ Պերսթլաբան և Փոքրը, և Պլիսկովան»]:

Հաջորդ տարվա (τῷ δ' ἐπιόντι ἔτει) իրադարձություններին վերաբերող շարքում նույն պատմիչը հաղորդում է, որ Վասիլ կայսրն անձամբ գնացել է Բուլղարիա և ի թիվս այլոց փոխել Թեսաղոնիկեի ու Փիլիպպուպոլսի կառավարիչներին: Փիլիպպուպոլսի կառավարիչն էր Թեոդորոկանոսը. Ἐν δὲ Φιλιππουπόλει τὸν πρωτοσπαθάριον Νικηφόρον τὸν Ξιφίαν στρατηγεῖν ἔταξε, τοῦ Θεοδωροκάνου διὰ γῆρας παραιτησαμένου[1] [«Փիլիպպուպոլսում ստրատեգոս նշանակեց Նիկեփորոս Քսիֆիասին, քանի որ Թեոդորոկանոսը հետ կանչվեց ծերության պատճառով»] :

Աշխարհագործության 6508 թ. XIII ինդիկտիոնը համապատասխանում է 999 թ. սեպտեմբեր - 1000 թ. սեպտեմբերին: Ուրեմն հենց այդ ժամանակ էր, որ Թեոդորոկանոսին ու Նիկեփորոս Քսիֆիասին հանձնարարվել է գրավել այն ամրոցները, որոնք գտնվում էին Հեմոս լեռան այն կողմ: Հաջորդ տարին՝ 1000-1001 թթ. Թեոդորոկանոսը ցանկանում է թողնել ծառայությունը՝ այդ ցանկությունը պատճառաբանելով տարիքով: Անտիոքի դուքս Դամիանոս Դալասենոսի[2] պարտության և մահվան լուրը ստանալով, Վասիլ կայսրը գնում է արևելք: Ըստ Յահյա Անտիոքցու տեղեկությունների[3] 999 թ. սեպտեմբերի 20-ին կայսրն արդեն Ասորիքում էր: Ասողիկը հայտնում է, որ նա Ասորիքում մնացել է Խաչվերաց տոնից (սեպտեմբերի 14-ից) մինչև Հայտնության տոնը, այսինքն մինչև 1000 թ. հունվարի 6-ը: Ապա, ըստ Յահյայի, կայսրը գնացել է Կիլիկիայի Տարսոն քաղաքն ու այնտեղ է մնացել վեց ամիս, հետևաբար մինչև հունիս ամիսը: Այնտեղից նա մեկնել է Իբերիա, Հայոց 449 թ. = 1000 թ. մարտի 31-ին՝ Զատկի տոնին վախճանված, Դավիթ կյուրոպաղատի ժառանգությունը ստանալու համար: Հետևաբար

[1] Cedrenus, II, pp. 452 et 454.
[2] **Ասողիկ**, Գ, գլ. 37, Դալասենոսի մահը տեղադրում է հայոց 447 թ. = 998 թ. ( և ոչ թե 437 թ., ինչպես հրատարակության մեջ է, մի սխալ, որ շատ վաղուց նկատել էր Վ. Ռոզենը՝ **Яхья**, с. 247):
[3] **В. Розен**, **Император Василий Болгаробойца**, с. 40.

Թեոդորոկանոսի հրաժարականը կայսրն ընդունում է Կոստանդնուպոլիս վերադառնալուց հետո միայն:

Սակայն ե՞րբ էր նա Փիլիպպուպոլսի կառավարիչ նշանակվել: Ըստ Կեդրենոսի՝ կայսեր Բուլղարիա կատարած մի արշավանքի ժամանակ: Յահյա Անտիոքցին վկայում է, որ Վասիլը կռվում էր բուլղարների դեմ, երբ ստացել է Միքայել Բուրցեսի Աստրիքում կրած պարտության լուրը: Կայսրն իսկույն ևեթ մեկնել է Ասորիք և տեղ հասել 995 թ. մարտ ամսին[1]: Թեոդորոկանոսի նշանակումը պետք է տեղադրվի 995 թվից առաջ և 991 թվից հետո: Երբ ստացվում է Գրիգոր Տարոնացու մահվան լուրը, որը զոհվել էր Սամուելի հարձակման ընթացքում ցույց տված համառ դիմադրության ժամանակ, Վասիլը Նիկեփորոս Ուրանոս մագիստրոսին ուղարկում է Թեսաղոնիկե փոխարինելու Գրիգորին. Նիկեփորը որակված է որպես [«ամբողջ արևմուտքի արքոնտ»]՝ *πάσης δύσεως ἄρχων*, որ նշանակում է արևմուտքի սխոլերի դոմեստիկոս[2]: Հնարավոր է, որ Գրիգոր մագիստրոսը նույն պաշտոնն ուներ:

Նիկեփորոսից հետո Վասիլն անձամբ արշավում է Բուլղարիա, հավանաբար 994 թ., և հենց այդ ժամանակ է, որ նա Թեոդորոկանոսին է վստահում Փիլիպպուպոլսի պաշտպանությունը:

Գեորգ անունով մեկ այլ Թեոդորոկանոս կառավարում էր Սամոսը Կոստանդին VIII կայսեր ժամանակ: Արաբների նավատորմիղը հարձակվել էր Կիկլադների վրա: Սամոսի ստրատեգոս Գևորգը, Քիոսի ստրատեգոս Բերիբոեսի օգնությամբ հարձակվել էր նավատորմիղի վրա, գրավել էր 12 նավ, իսկ մնացած նավերը քշել էր. Ἐξῆλθεν οὖν καὶ στόλος Ἀγαρηνῶν κατὰ τῶν Κυκλάδων νήσων· οἷς συμπλακεὶς ὁ στρατηγὸς Σάμου Γεώργιος ὁ Θεοδωροκάνος, ἅμα Βεριβόῃ τῷ στρατηγοῦντι τῆς Χίου, ἐτρέψατο, καὶ δώδεκα μὲν αὔτανδρα εἷλε, τὰ δὲ λοιπὰ διεσκέδασεν[3] [«Հագարացիների նավատորմիղը դուրս եկավ Կիկլադների կղզիների դեմ. որոնց դիմագրավեց Սամոսի ստրատեգոս Գեորգիոս Թեոդորոկանոսը, Քիոսի ստրատեգոս Բերիբոեսի հետ համատեղ, և տասներկու նավ զորքով հանդերձ ոչնչացրեց, իսկ մնացածները ցրեց»]:

Այս վկայության հեղինակ Կեդրենոսը իրադարձությունը դնում է Կոստանդնի մահից առաջ՝ 653 թ., XII ինդիկտիոնի նոյեմբերի 9-ին, ուրեմն 1028 թվականին:

Ավելի շատ տեղեկություններ մենք ունենք այդ ընտանիքի մի երրորդ անդամի՝ Վասիլ Թեոդորոկանոսի, վերաբերյալ: Նա Լոմբարդիայի կատե-

[1] В. Розен, с. 32.
[2] Cedrenus, II, p. 449.
[3] Ibid., II, p. 484.





Յովհաննես պրոքսիմոսի դիմանկարը

պանն էր Իտալիայում 1038 թ., այն ժամանակ, երբ Մանիակեսը զորավար էր Սիկիլիայում: Չնայած այն հաջողություններին, որոնց հասել է Մանիակեսը գրավելով Մեսինան ու Սիրակուզը, նա զրպարտվել է Միքայել IV կայսեր փեսա Ստեփանոս Սեբաստոկրատորի կողմից: Նրան ձերբակալել են ու տարել մայրաքաղաք, ուր և բանտ են նետել: Այն տպավորությունն է ստեղծվում, որ Վասիլ Թեոդորոկանոսը նույնպես զրպարտության զոհ է դարձել ու արժանացել Մանիակեսի ճակատագրին. καὶ ὁ μὲν εὐθὺς δέσμιος εἰς τὴν βασιλίδα εἰσάγεται καὶ κατείργνυται σὺν Βασιλείῳ πατρικίῳ τῷ Θεοδωροκάνῳ, ἡ δὲ πᾶσα τῆς ἀρχῆς ἐξουσία ἐς τὸν Στέφανον μετατίθεται [«և ինքնին սրան կապանքներով տարան մայրաքաղաք և բանտ նետեցին պատրիկ Վասիլ Թեոդորոկանոսի հետ, իսկ հրամանատարությունն ամբողջությամբ փոխանցվեց Ստեփանոսին»][1]:

Միքայել Կալաֆատոսը բանտից ազատել է Մանիակեսին, իսկ Զոեն, նրան մագիստրոսի տիտղոս շնորհելով, դարձյալ ուղարկել է Իտալիա որպես զորահրամանատար՝ անկարող հաջորդների սխալներն ուղղելու[2]:

Սակայն արքունիքում նրա դեմ նյութվող խարդավանքներն ի վերջո 1042 թ. նրան դրդել են ապստամբության: Այդ ժամանակ Վասիլ Թեոդորոկանոսը Լոմբարդիայի կատեպանն էր և մասնակցել է Մանիակեսի դեմ մղվող պայքարին: Հնարավոր է, որ նրան ազատել էին Մանիակեսի հետ միաժամանակ և ուղարկել Իտալիա: Վասիլին հրամայել էին իր նավատորմիղով փակել Օտրանտոյի ջրանցքը՝ դեպի մայրաքաղաք Մանիակեսի ճանապարհը փակելու համար: Սակայն Մանիակեսին հաջողվել է դուրս գալ Օտրանտոյից և հասնել Դյուրաքիոն:

Հաջորդ տարին (1043 թ.) Վասիլն աչքի է ընկել ռուսների դեմ մղվող պատերազմում: XI ինդիկտիոնի հունիս ամսին ռուսական նավատորմիղը իշխան Վլադիմիրի գլխավորությամբ հասել է Բոսֆորին: Նա պատրաստվում էր գրոհել մայրաքաղաքը, երբ կայսրը, շտապ կերպով զինելով իր ձեռքի տակ եղած ռազմանավերը, դուրս է գալիս թշնամու դեմ: Կայսեր հրամանով երեք տրիրեմաներ Վասիլ Թեոդորոկանոսի հրամանատարությամբ առաջ են անցնում թշնամուն հետապնդելու համար: Վասիլ Թեոդորոկանոսը հանձնարարվածից ավելին է անում. նա, ցուցաբերելով նաև անձնական խիզախություն, հարձակվում է թշնամու նավատորմիղի վրա, հրկիզում յոթը նավ, երեքը կործանում: Հանկարծ հայտնվում է կայսրն իր նավատորմիղով: Ռուսները սարսափահար նահանջում են: Նրանք ցանկանում էին ցամաքով վերադառնալ, սակայն Վառնայի մոտ նրանց կանգնեցնում է

[1] **Cedrenus**, p. 523.
[2] **Ibid.**, p. 541 et 545.

Կատակալոնը և կոտորում շատերին: Միքայել Ատալիատեսը ասում է. *ἠρίστευσε δὲ τῶν λοιπῶν ἁπάντων στρατιωτῶν μεῖζον ὁ μάγιστρος* ἐκεῖνος Βασίλειος ὁ Θεοδωροκάνος. ᾽Ανὴρ ἐπίδοξος τὰ πολεμικὰ καὶ τὰς πράξεις ἐπιφανὴς κατά γε τὴν ἤπειρον [«Բոլոր մնացած զորականներին գերազանցեց այն մագիստրոսը՝ Վասիլ Թեոդորոկանոսը: Այս այրը հռչակված էր ռազմական <հմտությամբ> և երևելի էր սխրանքներով, հատկապես, մայր ցամաքում»][1]:

Այդ ժամանակ Վասիլը մագիստրոսի պատվաստիճան ուներ. μεταστειλάμενος ὁ βασιλεὺς τὸν μάγιστρον Βασίλειον τὸν Θεοδωροκάνον τρεῖς εἰληφέναι προστάττει τριήρεις δρομάδας...[2] [«փոխարենը կայսրը ուղարկել է Վասիլ Թեոդորոկանոս մագիստրոսին, կարգադրելով վերցնել երեք ճեպընթաց տրիեր (*ռազմանավ*)»]: Մադրիդի Ազգային գրադարանում գտնվող Սկիլիցեսի ձեռագրում պահպանվել է այն ճակատամարտի տեսարանը, ուր Վասիլը հաղթանակ է տարել ռուսների դեմ[3]:

Այս Վասիլը հիշատակված է նաև հետաքրքրական մի միջադեպի կապակցությամբ: 1040 թ. Պետրոս Դելիանոսի առաջնորդությամբ Բուլղարիան ապստամբել է կայսրության դեմ: Վերջին բուլղար թագավոր Հովհաննեսի որդին՝ Ալուսիանոսը, որը պատանի հասակից դաստիարակվել էր *Կոստանդնուպոլսում և որը պատրիկ էր ու Հայաստանում Թեոդոսուպոլիս* քաղաքի ստրատեգոսը (նրա եղբայր Ահարոնը հետագայում դարձել էր Վասպուրականի և Անիի ստրատեգոս), որոշել է փախուստի դիմել և ծառայել իր հայրենիքին: Հսկողությունից խուսափելու և իր փախուստը քողարկելու նպատակով «նա հայի տարազ է հագնում և ասում է, որ ինքը Վասիլ Թեոդորոկանոսի սպասավորն է և որ իրեն Թեսաղոնիկե կայսեր մոտ են ուղարկել». στολὴν λαβὼν ᾽Αρμενίων καὶ ὡς τάχα θεράπων τοῦ Θεοδωροκάνου Βασιλείου ἐς τὸν βασιλέα ἐς Θεσσαλονίκην ἀπιών [«և <իբրև> Վասիլ Թեոդորոկանոսի սպասավորը, հագնելով հայի պատմուճան, ամենայն արագությամբ գնաց կայսեր մոտ՝ Թեսաղոնիկե»][4]:

Սա վկայություն է Թեոդորոկանոսի հայկական ծագման մասին: Գեորգն ու Վասիլը, անկասկած, ծեր Թեոդորոկանոսի որդիներն են: Մենք ճանաչում ենք այդ ընտանիքի մեկ այլ ներկայացուցչի ևս՝ Կոստանդին Թեոդորոկանոսին, որն ասպարեզ է գալիս քիչ անց, Նիկեփորոս Վրիեննիոսի ապստամբության ժամանակ: Կոստանդինն առաջինն էր, որ հակադրվել է Վրիեննիոսի հավակնություններին 1077 թ., սակայն պարտություն կրելով,

[1] Mich. Attal., p. 21.
[2] Cedrenus, II, p. 552.
[3] Տեսարանը վերարտադրված է Գ. Շլումբերժեի երկում, III, էջ 473:
[4] Cedrenus, II, p. 531.



նա գերի է ընկել և կյանքն ավարտել աքսորավայրում՝ մակեդոնական քաղաքներից մեկում: Պատմիչը գովաբանում է Կոստանդինին, որը «հռչակ ուներ և աչքի էր ընկնում որքան իր ազնիվ ծագումով, նույնքան և իր վարած շքեղ կյանքով», և պախարակում է Վրիեննիոսին, որն աններբանկատ ու անարդարացի կերպով էր վարվել նրա հետ և նույնիսկ մտադրություն էր ունեցել նրան մարմնական պատժի ենթարկելու: Նա այդ սպառնալիքը ի կատար չէր ածել, սակայն իր բանտարկյալին աքսորել էր, որպեսզի նա այնտեղ մեռներ որպես անարժան մի անձ: Ահա այն տողերը, որոնք Կոստանդին Թեոդորոկանոսի ժամանակակից պատմիչը նվիրել է նրան.

Αἰχμάλωτος δὲ τηνικαῦτα ληφθεὶς ὁ πρόεδρος Κωνσταντῖνος ὁ Θεοδωροκάνος, ἀνὴρ ἔνδοξος καὶ γένους ἐπισημότητι καὶ βίου λαμπρότητι καταφανὴς καταγινωσκόμενος, οὐ καλῶς μὲν οὐδὲ δικαίως παρ᾽ αὐτοῦ προσεδέχθη καὶ ὡς εἷς τῶν ἀγενῶν παρωράθη, οὐ μὴν δὲ σωματικὴν τιμωρίαν ὑπέστη, καίτοι γε ταύτην ὑποπτεύων διὰ προηγησαμένας ἔχθρας καὶ μάχας κεφαλικάς· φυγαδευθεὶς δὲ πρός τινα τῶν Μακεδονικῶν πόλεων μετ᾽ οὐ πολὺ τῷ χρεὼν ἐλειτούργησεν· εἴτε φυσικῷ θανάτῳ εἴτ᾽ ἐξ ἐπιβουλῆς κερασθέντος, οὐδεὶς ἀκριβὸς ἐπίσταται [«Այդ ժամանակ գերեվարվել է պրոեդրոս Կոստանդին Թեոդորոկանոսը, *փառավոր մի այր*, որն ամենուրեք հայտնի էր թե՛ իր նշանավոր տոհմով և թե՛ փայլուն կյանքով: Սակայն նրա հետ վարվեցին ո՛չ գեղեցիկ և ո՛չ արդար կերպով, այլ դիտեցին իբրև աննշան ծագումով մի մարդ: Մարմնական պատժի նա, իհարկե, չենթարկվեց, թեև սպասում էր՝ նախկին թշնամանքի և ճակատամարտերի պատճառով, բայց աքսորվեց Մակեդոնիայի քաղաքներից մեկը, ուր ոչ երկար ժամանակ անց ի կատար ածվեց իր ճակատագիրը՝ բնական մահով թե դավադրության արդյունքում՝ ոչ ոքի ստույգ հայտնի չէ»][1] :

Մենք կարծում ենք, որ Կոստանդինը Վասիլ մագիստրոսի որդին է: Իր փայլուն առաջխաղացումով, որը նրան հասցրել է պրոեդրոսի կամ ծերակուտականի պատվաստիճանին, նա, հավանաբար, մասամբ պարտական է իր հոր՝ մագիստրոսի դիրքին: Հայտնի է Կոստանդնի մի կնիք, որը հրատարակել է Գ. Շլյումբերժեն և որը կրում է հետևյալ արձանագրությունը[2].

[1] Mich. Attal., p. 247. Skyltzes, p. 728 արտագրել է այս հատվածը սկսելով հետևյալ բառերով. ἀντεπεξελθὼν δὲ τισιν ὁ πρόεδρος Κωσταντῖνος ὁ Θεοδωροκάνος τῶν τοῦ Βρυεννίου ἁλίσκεται καὶ πρὸς αὐτὸν αἰχμάλωτος γίνεται, ἀνὴρ և այլն [«դիմագրավելով որոշ <մարդկանց>, պրոեդրոս Կոստանդին Թեոդորոկանոսը գերեվարվում է Վրիեննիոսի <սպասավորների> կողմից և նրա մոտ իբրև գերի է մնում, <փառավոր մի> այր և այլն»]:
[2] G. Schlumberger, *Sigillographie*, p. 707.

## ΘεοτοΚΕ ΒΟΗΘΕΙ ΤΩ ΣΩ ΔΟΥΛΩ ΚΩΝ (Κωνσταντίνῳ) ΤΩ ΘΕΟΔΩΡΟΚΑΝΩ

[«Աստվածածի՛ն, օգնե՛ա ծառայիդ՝ Կոստանդին Թեոդորոկանին»]։

Նույն գիտնականի հրատարակած մեկ այլ կնիք կրում է մի վանականի՝ Հովհաննես Թեոդորոկանոսի, անունը, որը հայտնի չէ պատմական գրականությանը (3)։

Հռչակավոր բյուզանդագետը կարծում է, որ կարող է այդ կնիքը թվագրել IX դարով։ Դա անհնարին է այն պատճառով, որ Թեոդորոկանոսների ընտանիքը, ինչպես մենք կտեսնենք, պատմություն է մուտք գործել Վասիլ II կայսեր ժամանակ։ Հովհաննեսի կնիքն ուրեմն չի կարող XI դարից շուտ թվագրվել։

Թեոդորոկանոսը հայկական անուն է, որը բաղկացած է *Թեոդորոս* անունից և *-ական* վերջածանցից։ Մատենագիրները դրան հունական տեսք են տվել *-ա-* հոդակապն *-ո-*ով փոխարինելով։ Պետք է գրել *Թեոդորական*, որն ածական ձևն է և նշանակում է «մարդ, որ պատկանում է Թեոդորին, կամ նրանից է սերում»։ Այն կազմվել է այնպես, ինչպես կազմվել են Կամսար-*ական* կամ Կամին-*ական* անունները, որոնք Հայաստանի իշխանական տների ազգանուններ են։ Այն փաստը, որ բուլղար Ալուսիանոսը հայկական տարազ էր ընտրել, որպեսզի նրան Վասիլ Թեոդորոկանոսի սպասավոր համարեին, հաստատում է Վասիլի հայկական ծագումը։ Առաջին Թեոդորոկանոսն իր անվամբ պարտական է եղել ոմն Թեոդորոսի, որի որդին է եղել նա, կամ, միգուցե, սպասավորը՝ այնպես, ինչպես Հովհաննեսը՝ Ավետարանի տերը, նրա ստորականն էր։ Այս իմաստով վերջինս կարող էր Թեոդորոկանոս համարվել, և մենք մեզ հարց ենք տալիս, թե չի՞ կարելի արդյոք նրան նույնացնել Հովհաննես վանականի հետ, մի վարկած, որ բնականաբար ծագում է մարդու մտքում, բայց որն ընդամենը ենթադրություն է։

Պրոքսիմոս Հովհաննեսը, նույնիսկ եթե նա Թեոդորոկանոս չէ, այնուամենայնիվ պակաս հետաքրքրական չէ։ Նրա պատվիրած ձեռագիրը հիասքանչ է, որքան գեղագրության տեսակետից, նույնքան և նկարազարդմամբ։ Ձեռագրում պահպանվել է Հովհաննեսի պատվերով ստեղծած իր դիմանկարը, որը մենք ներկայացնում ենք այստեղ մի լուսանկարով։ Այն մեզ է տրամադրել Մխիթարյան միաբանության անդամ հայր Վարդան Հացունին, որի համար նրան շնորհակալություն ենք հայտնում։

Դիմանկարի ներքևի մասի արձանագրությունն անհանգստություն է ներշնչում, քանի որ այնտեղ բացակայում է Հովհաննեսի անունը։ Մինչդեռ մանրանկարի վրա պատկերված է ձեռագրատերը՝ Հովհաննեսը, ձեռագիրը ձեռքին, որը նա նվիրում է նախորդ թերթի հակառակ երեսին պատկերված Աստվածամորը։ Արձանագրությունը հետևյալն է.



## ΘεοτοΚΕ ΒΟΗΘει ΤΟΝ ΣΟΝ ΔΟΥΛον ΦΩΤιον Δ\ΙΣΥΠΑΤον.

[«Աստվածածին, օգնեա՛ ծառայիդ՝ Փոտիոս դիսհիպատոսին»]

Ուստի տերը ոմն Փոտիոսն է (կամ Փոտինոսը), որը դիսհիպատոսի պատվաստիճան ունի։ Այդ պատվաստիճանը պրոտոսպաթարի պատվաստիճանից ցածր է։ Մեր լուսանկարի վրա δισύπατος բառը պատռված է, սակայն այն կարդացվում է վերը բերված ձեռագրի նկարագրության մեջ։ Այս անձնավորությունը ձեռագրի գնորդներից մեկն է, որը ցանկացել է Հովհաննեսի անունը փոխարինել իր անունով։ Հայր Բ. Սարգիսյանն ու հայր Վ. Հացունին պնդում են, որ հայերեն տառերով կատարված նախկին կրճատ գրանցման հետքերը դեռ նկատելի են, սակայն ջնջվելով անընթեռնելի են դարձել։ Տառերի գծագրությունը բացահայտում է մատյանի գրչի ձեռագիրը, և դա մեզ ստիպում է ենթադրել, որ գրված է եղել Հովհաննես պրոքսիմոսի անունը։ Մանրանկարի ձախակողմյան դաշտի վրա մեկ այլ արձանագրություն կա, որը գրված է շեղագրով և դժվար է ընթերցվում։ Ինձ թվում է, որ այն սկսվում է խաչով, որին հետևում է ալֆա՝ + α, հետո գալիս է σπα և խաչը, որը միացված է մի ալֆայի այնպես, որ կարելի է կարդալ πρωτοσπαθάριος. չորրորդ տողի վրա կարելի է տարբերել Θεοδωρ..., որ կարող է լինել Θεοδωροκάνος։ Դա հնարավորություն է տալիս ենթադրելու, որ նշումը ուղղված է Փոտիոսի կամ Փոտինոսի արձանագրության դեմ և որ դրա հեղինակը արձանագրում է, որ դիմանկարը ներկայացնում է Հովհաննես պրոտոսպաթարին՝ Թեոդորոկանոսի մարդուն։ Պարոն Անրի Գրեգուարը գտնում է, որ նման ընթերցումը հավանական չէ։ Ավելի որակյալ լուսանկար, կամ բնօրինակի զննումը թերևս կդյուրացնեն այս խնդրի լուծումը։

Հովհաննեսի դիմանկարն իր անհերքելի գեղարվեստական արժեքից բացի մասնավոր հետաքրքրություն ունի նաև պատկերված հագուստի տեսակետից։ Բյուզանդական հագուստների պատմությունը դեռևս ուսումնասիրված չէ։ Հանդերձանքի վերաբերյալ բյուզանդական հարուստ բառապաշարը տարազի առանձին տարրերի նկատմամբ անստույգ և շփոթեցնող է։ Հովհաննեսի երփներանգ հագուստը, այդքան ամբողջական և հետաքրքիր, շատ նպաստավոր են բյուզանդական հագուստը ուսումնասիրելու խնդրում։ Հովհաննեսի մազերը հարդարված են կենտրոնական բացվածքով, գլխարկը պարզ է, երիզված ժապավենով, որն անցնելով գլխարկի գագաթով խաչաձևվում է առջևի մասում և կապվում։ Ստորին տունիկան կարված է փիրուզե թեթև կտորից, թևքերը նեղ են։ Այն ավելի լայն է քան վերնազգեստը՝ հիմատիոնը, որը կարված է երկու տարբեր գույնի կերպասներից։ Գոտկատեղից մինչև ծնկները ընկած հատվածը կարված է կարմիր գույնի ծանր կերպասից, որը երիզված է մեկ այլ ոսկեհյուս կերպասով։ Այն երկու բացվածք ունի՝ առջևում և հետևի մասում, ազատ շարժվելու համար։ Միգուցե

սա ἱμάτιον δίσχυτον-ն է: Գոտկատեղից վեր այն կարված է կանաչ գույնի ու ավելի թեթև կերպասից, որն այնպես է ասեղնագործված, որ պատրանք է ստեղծվում, թե հագուստի վրայից բաճկոն՝ ἐπιλώρικον, և կամ դեկորատիվ κλιβάνιον կա: Հագուստի վրայից կապված է գոտի՝ նույն նախշերով: Թևքերը կարճ են և կարված են այն կտորից, որից կարված է հագուստի ստորին մասը: Ձախ ենթաղաստակից մանուշակագույն մի թաշկինակ է կախված, մի ἐγχείριον ἀπομύττειν καὶ ἀποπτύειν [«անձեռոցիկ քիթը մաքրելու և թքելու համար»]: Նախշազարդերով կանաչ տաբատը նեղ է, իսկ քղանցքները մտցված են անկրունկ դեղնավուն քղակոշիկների՝ ὑποδήματα մեջ:

Ընտրված գույները ճչացող չեն և ներդաշնակ են: Կարմիր փեշի դեղին եզրը երիզված է կանաչ ժապավենով երկու կանաչ շերտերի և բաճկոնի կանաչ օձիքի հետ համամասնություն կազմելու համար:

Մխիթարյան միաբանության հայրեր Բ. Սարգիսյանը[1] և Վ. Հացունին[2] համարում են, որ Հովհաննեսի հագուստը արևելյան բնույթ ունի և այն պետք է որ բնորոշ լիներ հատկապես հայ ազնվականությանը: Մենք տեսանք, որ Թեոդորոկանը մի սպասավոր ուներ, որը հայկական στολή էր հագնում և որին Ալուսիանոսը ցանկացել էր նմանակել վերազգեստավորվելիս: Ուստի մենք կարող ենք սկզբունքորեն ընդունել, որ ազգային հագուստ կրելը բացառված չէր Բյուզանդիայում, և Մխիթարյան հայրերը ընդհանուր առմամբ իրավացի են այս մանրանկարում ազգային հագուստ տեսնելով:

Սակայն այդ բանն ապացուցելը շատ դժվար է, քանի որ մեր գիտելիքներն այդ մասին անբավարար են: Այն ինչ մենք տեսնում ենք Անիում հայտնաբերված Գագիկ արքայի արձանի, Աղթամարում Գագիկ Արծրունու բարձրաքանդակի և ավելի ուշ ստեղծված հուշարձանների շնորհիվ, այդ ամենը նման չէ Հովհաննեսի հագուստին, մինչդեռ այն նմանությունը, որ կա բյուզանդական հագուստի հետ, կարծես թե ակնհայտ է, թեև այս հագուստի ամբողջությունը անծանոթ է բյուզանդական հնագիտությանը: Դժբախտաբար մենք ոչինչ չգիտենք բյուզանդական Հայաստանում հայկական հագուստների մասին: Հովհաննեսի այդքան հետաքրքիր հագուստի ծագումը պարզելու և դրա մասին կարծիք հայտնելու համար անհրաժեշտ կլիներ հատուկ ուսումնասիրություն կատարել:

[1] **Բ. Սարգիսեան**, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց, հատ. Ա, էջ 518:
[2] **Վ. Հացունի**, Պատմություն հին հայ տարազին, Վենետիկ, 1924, էջ 172:



## ՓԻԼԱՐՏՈՍԻ ԸՆՏԱՆԻՔԸ

Փիլարտոսն իր ժամանակի ամենաականավոր անձնավորություններից մեկն էր (1): Քաջ և շրջահայաց իշխանը[1] սելջուկների արշավանքներին համընկնող խառնաշփոթ ժամանակաշրջանում իր արտակարգ եռանդի շնորհիվ կարողացել է ստեղծել լայնածավալ մի իշխանություն, որն ընդգրկում էր Մելիտենեն, Անտիոքը, Մարաշն ու Եդեսիան: Այդուհանդերձ արդի պատմաբանները չեն դադարում ծայնակցելուց այն անարգանքներին ու զրպարտանքներին, որոնց զոհն է եղել նա միջնադարից ի վեր: Մի բյուզանդագետ գիտնական՝ պարոն Ժ. Լորանը, որը շատ է նպաստել բյուզանդական պատմության մեջ հայերի և Հայաստանի դերը լուսաբանելուն, Փիլարտոսին է նվիրել մի հատուկ աշխատություն, ուր նա արժանին է մատուցել նրա վաստակին[2]:

Սակայն նույնիսկ նա այդ իշխանի նկատմամբ չափից ավելի մեծ ջերմություն չի ցուցաբերել: Պարոն Լորանը կարծում է, որ Փիլարտոսը ինքնակոչ էր և, որպես այդպիսին, արհամարհված էր նույնիսկ իր հայ հայրենակիցների կողմից: Այդ կապակցությամբ նա մի հատված է մեջբերել Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրությունից»: Փիլարտոսը, հզորանալով, անցնում է Եփրատ գետը. «Նա դիմեց Սասունի տեր քաջ Թոռնիկին՝ (պահանջելով) հպատակություն հայտնել իրեն: Թոռնիկը՝ Մուշեղի որդին, նրա այդ անհեթեթ հրամանի վրա ծիծաղելով ասաց. «Ես նրան երբեք չեմ տեսել»[3]:

Դժբախտաբար ֆրանսերեն թարգմանությունը (3), որից օգտվել է պ. Լորանը, նրան թյուրիմացության մեջ է գցել: Բառերը, որոնք հայ պատմիչը դրել է Թոռնիկի բերանը, չունեն այն իմաստը, որ նրանց տվել է թարգմանիչը: Քննարկվող նախադասությունը գրված է միջին հայերենով. «որ բնաւ ես ոչ տեսանեմ զերեսս նորա» (*տեսանեմ* կամ *տեսանիցեմ տեսից*-ի փոխարեն), այսինքն՝ «ես ոչ մի ցանկություն չունեմ նրան տեսնելու»[4] (4): Սասունի

[1] **Anna Comnena**, VI, 9, p. 299, նրան անվանում է **περίβλεπτος ἐπ' ἀνδρείᾳ καὶ φρονήσει** [«երևելի էր քաջությամբ և ողջամտությամբ»]:
[2] «Revue des Etudes Arméniennes», IX (1929), pp. 61-72 (2).
[3] Ibid., p. 66.
[4] «Եւ կոչեաց զքաջն Թոռնիկ զտէրն Սասնոյ, գալ նմա ի հնազանդութիւն: Եւ լուեալ զայս Թոռնիկ որդին Մուշեղայ և ծիծաղեալ զանմիտ հրամանս նորա, և ասացեալ թէ՝ «Ահա որ բնաւ ես ոչ տեսանեմ զերեսս նորա», տե՛ս **Մատթէոս Ուռհայեցի**, Երուսաղեմ, 1869, էջ 248: Հմմտ.

իշխանները հայերի մեջ մեծ համբավ էին վայելում: Նրանց մասին հյուսվել էր «Դավիթ և Մհեր» դյուցազներգությունը, որը հայտնի է նաև «Սասունցի Դավիթ» անվամբ: Մեր պատմիչը, որը կիսում էր ժողովրդական զգացմունքները Սասունի իշխանների նկատմամբ, չէր հանդուրժում այն միտքը, թե Թոռնիկը որպես սասունցի իշխան կարող էր գլուխ խոնարհել նույնիսկ այնպիսի հզոր իշխանի առջև, ինչպիսին էր Փիլարտոսը:

Այստեղ և ոչ մի խոսք չկա և չի կարող լինել մի ինքնակոչի նկատմամբ ցուցաբերած արհամարհանքի մասին: Ինչպե՞ս կարող էր մի իշխան, որի ընտանիքը հայտնի էր առնվազն հարյուր տարուց ի վեր, դիտարկվել որպես ինքնակոչ: Փիլարտոսը իրականում պատկանում էր մի ընտանիքի, որին բյուզանդացի պատմիչները անվանում էին Βραχάμιος կամ Βαχράμης: Ինչպես վկայում են որոշ կնիքներ, այդ ընտանիքի բազմաթիվ անդամներ ծառայել էին կայսրությանը: Գ. Շլյումբերժեն հրատարակել է դրանք և փորձել թվագրել, սակայն նա չի բացահայտել մի շատ արժեքավոր վկայություն, որը մեզ ծանոթացնում է այդ ընտանիքի նախնիներից մեկի հետ և որը միևնույն ժամանակ մեզ տրամադրում է ժամանակագրական ելակետ:

Վրախամիոսի (5) ընտանիքը ներգրավվել էր Վարդաս Սկլերոսի ապստամբության մեջ: Կեդրենոսը մեզ հայտնում է, որ ճակատագրական մի պահի, երբ կայսերական բանակը շրջապատել էր Վարդաս Սկլերոսի զորքը ու փակել բոլոր ելքերը, հայտնվել է մի փրկիչ, որն օգնել է ապստամբին, ուղեկցել նրա զորքն ու գաղտնի արահետներով երեք օրում հասցրել Լապարայի պտղաբեր դաշտավայրը, ուր Վարդասը տարել է իր առաջին հաղթանակը:

Այդ փրկիչը, որ անցել է ապստամբի կողմը, կայսերական բանակը լքած մի զորավար էր: Նրա անունն էր Σαχάκιος τοὔνομα, Βραχάμιος τὴν προσηγορίαν [«Սախակիոս, Վրախամիոս մականունով»][1]:

Սկլերոսի ապստամբությունը տեղի է ունեցել 976 թվականին: Ուրեմն այդ ժամանակ՝ Փիլարտոսից մեկ դար առաջ, նրա ընտանիքն արդեն ճանաչված էր Բյուզանդիայում: Կեդրենոսը միակը չէ, որ ճանաչում է Սախակիոսին: Այս անվանը մենք հանդիպում ենք նաև վարքագրական մի վավերագրում[2]: Միլետի եպիսկոպոս Նիկեփորոսը, դժգոհ մնալով կայսերական հարկահավաքի կողմից մի եկեղեցու նկատմամբ ձեռնարկված բռնամիջոցներից, բողոքել էր Նիկեփորոս Փոկասին և գործը շահել: Այդ կայսեր մահվանից հետո հարկահավաքը վերադարձել էր իր առաջին որոշմանը: Եպիսկոպոսը ստիպված էր եղել գնալ մայրաքաղաք ու դիմել Հովհաննես Չմշկիկ կայսերը: Նրան ընդունել էր «չար ու մոլորված հոգի» ունեցող Սախակիոսը, որը կատաղի կերպով ընդդիմացել էր նրա խնդրանքին. διὸ καὶ πρὸς τὸν μέτ᾽ ἐκεῖνον τῆς βασιλείας δραξάμενον, ᾽Ιωάννης δ᾽ ἦν οὗτος, ᾧ Τζιμισκὴς τὸ ἐπώνυμον, τοῦ ὁσίου ἀπιόντος, συνεβάδιζεν αὐτῷ ὁ τὴν παρατροπὴν ἢ μᾶλλον εἰπεῖν τὴν κακίαν ἐπιβόητος Σαχάκιος, τοὺς λόγους τῆς δίκης τῶν κτημάτων ἀναδεξάμενος καὶ ἰσχυρῶς τῷ μεγάλῳ ἀντικαθιστάμενος [«Այդ պատճառով, երբ բարեպաշտը գնաց նրանից (այսինքն՝ Նիկեփորոս Փոկասից) հետո կայսրությանը տիրացածի մոտ (իսկ դա Հովհաննեսն էր, Չմշկիկ մականունով) նրան ուղեկցում էր Սախակիոսը, որը հայտնի էր իր զգուշավորությամբ, կամ, ավելի լավ է ասել, չարությամբ. նա ստանձնեց ունեցվածքին վերաբերող դատավարությունը և հույժ դիմադրեց մեծ այրին»][1]:

Ապա պատմվում է, որ Սախակիոսը փորձել է թունավորել Նիկեփորոս եպիսկոպոսին և միայն հրաշալի պատահականությամբ է վերջինս փրկվել: Պետք չէ հավատալ այն ամենին, ինչ առասպել է թվում, որը կոչված է ապացուցելու, որ այդ սուրբ մարդը պաշտպանված է եղել Նախախնամությամբ: Սախակիոսը մերժել էր եպիսկոպոսի խնդրանքը. ավելին պետք չէր նրան ստոր վարքագիծ վերագրելու համար: Առասպելի հեղինակը կարծես թե այլ պատճառ չուներ նրան այդքան բացասական լույսի ներքո ներկայացնելու համար:

Կեդրենոսը Սախակիոսին ներկայացնում է որպես մի զորավար, որը դասալքել էր կայսերական բանակը, մինչդեռ Նիկեփորոսի կյանքում նա ներկայանում է որպես կայսերը հասցեագրված դիմումներն ընդունող մի պաշտոնյա: Դա նշանակում է, որ Սախակիոսը ὁ ἐπὶ τῶν δεήσεων էր, այսինքն՝ բողոքների բաժնի վարիչ: Դա կարևոր պաշտոն էր, որը քաղաքի պրեֆեկտի ու քվեստորի հետ միասին պատկանում էր [«պատիվների յոթ մասերին»]՝ μέρη τῶν ἀξιῶν այսինքն՝ դատավորների դասին[2]:

Կարծես թե սա այն Սախակիոսն է, որն անցել էր Սկլերոսի կողմը: Վարդաս Սկլերոսի ապստամբությունը ինչ-որ չափով ներկայանում է որպես հայկական ապստամբություն այն իմաստով, որ ապստամբ զորքը գրեթե բացառապես հայերից էր կազմված: Վարդասը Միջագետքի բանակաթեմի ստրատեգոսն էր: Այդ բանակաթեմը չպետք է շփոթել բուն Միջագետքի հետ: Իրականում խոսքը հայկական տարածքի մասին է, որը բռնակցվել էր կայսրությանն ու որը գտնվում էր Եփրատ գետի և Տարոն

«Դիգենիս Ակրիտաս» դյուցազնավեպում (Trépizonde, v. 1496 sqq.) կայսերը փնտրելու առաջարկից հերոսի հրաժարվելը:

[1] **Cedrenus, II, p. 422.**

[2] **Vita S. Nicephori ep. Mileti, «Analecta Bollandiana», t. XIV (1895), pp. 133-161.**

[1] **Vita S. Nicephori ep. Mileti, p. 144. Այս հատվածը մեջբերել է** *Hase-ն* **իր Notae** *in* **Leonis Diaconi Historiam, p. 456՝ Նիկեփորոսի վարքի հրատարակությունից շատ առաջ:**

[2] De cerim., p. 714.

գավառի միջև: Վարդասի նստավայրն էր Խարբերդը և հենց այդտեղ էր, որ նա պարզել էր ապստամբության դրոշը: Այն հայ իշխանները, որոնք զրկվել էին իրենց տիրույթներից, առաջինն էին միացել ապստամբին՝ πρώτους προσχωρῆσαι τῷ ἀποστάτῃ[1]: Պատերազմն ընթացել էր Լիկանդոսի դաշտավայրում՝ այդ ժամանակ արդեն հայացված մի տարածքում: Սկլերոսի կողմը բռնելով, Սախակիոսն ընդամենն անցել էր իր հայրենակիցների կողմը:

Երրորդ մի վկայություն ամբողջությամբ հաստատում է այն ամենը, ինչ ասվեց: Յահյա Անտիոքացին հայտնում է մեզ, որ 969 թ. հոկտեմբերի 28-ին Անտիոքի գրավման ժամանակ «պարսպի վրա բարձրացողների թվում էին Միքայել ալ-Բուրջին ու Իսխակ իբն Բահրամը»: Դժվար չէ այս երկու անձանց մեջ ճանաչել Միքայել Բուրցեսին, որն ըստ Կեդրենոսի գրավել է Անտիոքը, և մեր Սախակիոս-Վախրամիոսին: Պատմիչը մեզ հայտնում է, որ այդ երկու զորավարները հետո գնացել ու բարի լուրը հաղորդել են կայսրին: Վերջինս «նրանց շնորհակալություն հայտնեց դրա համար և շատ նվերներ տվեց: Սակայն նա համակրանք չզգաց նրանց նկատմամբ, որովհետև ցավում էր, որ քաղաքն այրվել ու այդ ձևով էր գրավվել: Եվ երկուսն էլ քեն պահեցին կայսեր դեմ»: Հավանական է դառնում, որ Նիկեփորոս Փոկասի սպանությանը մասնակցած Հովհաննես Չմշկիկի կողմնակից ութ բարձրաստիճան պաշտոնյաների «շարքում էին, ըստ Յահյայի տեղեկությունների, Միքայել ալ-Բուրջին և Իսխակ իբն Բահրամը»[2]: Իսկ Կեդրենոսը դավադիրների շարքում նշում է Միքայել Բուրցեսին, Լեոն Բալանտիոսին, Ածիպոթեոդորոսին[3] καὶ ἕτεροι δύο [«և այլ երկուսին»][4]: Դրանցից մեկն անկասկած Սախակիոսն էր: Յահյան նույնպես վկայում է, որ Միքայել ալ-Բուրջին և Իսխակ իբն Բահրամը անցել էին Սկլերոսի կողմը: Երբ վերջինս գրավում է Մելիտենեն, նա այդ քաղաքի ամիրա Օբայդ-Ալլահին շնորհում է մագիստրոսի պատվաստիճան և նշանակում Անտիոքի կառավարիչ: Սակայն Օբայդ-Ալլահը շուտով դավաճանում է Սկլերոսին և Միքայել ալ-Բուրջին նրա դեմ է ուղարկում Իսխակ իբն Բահրամին[5]:

Ինչևիցե, մենք ունենք մեկը մյուսից միանգամայն անկախ տեղեկություններ, որոնք վկայում են, որ Վախրամիոսի ընտանիքը հայտնի էր Հովհաննես Չմշկիկ կայսեր թագավորության ժամանակաշրջանից ի վեր (969-976):

Մինչդեռ Սախակիոսը այդ ընտանիքի ամենահին ներկայացուցիչը չէ:

[1] Cedrenus, II, p. 426.
[2] «Patrologia Orientalis», XVIII, p. 822, 825, 829.
[3] Հմմտ. «Byzantion», IX, p. 411:
[4] Cedrenus, II, pp. 311-312.
[5] **В. Розен, Император Василий Болгаробойца, с. 4 и сноски.**



Գ. Շլումբերժեի հրատարակած կնիքներից մեկը կրում է Βαχράμης ὁ ἄρχων արձանագրությունը.

O A(γιος) ΘΕΟΔ(ωρος) [Սուրբ Թեոդորոս]
Դիմադարձը. ΒΑΧΡΑΜΗΣ Ο ΑΡΧΩΝ [Վախրամես իշխան][1] :

Ըստ երևույթին սա այն իշխանն է, որն իր անունն է տվել այդ ընտանիքին: Βαχράμης-ը հայկական Վահրամ՝ ժողովրդական Վախրամ, անվան ավելի ճիշտ և, համապատասխանաբար, ավելի հին ձևն է: Նշանակալից է, որ Βαχράμης և Σαχάκιος անունները բացահայտում են Մշո և Վանի բարբառներին հատուկ ժողովրդական արտասանությունը, ուր շնչեղ -հ- հնչյունը արտասանվում է որպես եռքիմքային -խ-, որը և տալիս է Վախրամ՝ Վահրամի փոխարեն և Սախակ՝ Սահակի փոխարեն: Վերջին անունը աստվածաշնչական Իսահակ անվան հայկական ձևն է: Ինչ վերաբերում է Վահրամ անվանը, ապա այն ավեստական Վերետրագնա[2] անվան բազմաթիվ տարբերակներից մեկն է: Վահրամը սղվելով դարձել է Վռամ: Βραχάμιος-ի փոխակերպումը Βαχράμιος-ի համեմատելի է Վռ(ա)համի փոխակերպմանը Վռամի և, կարծես թե, հունական միջավայրի ազդեցությամբ պատահած աղճատում չէ: Վախրամեսի կնիքը Գ. Շլումբերժեն թվագրել է XI դարով: Այդ թվականը պետք է տեղափոխվի Հովհաննես Չմշկիկի թագավորելուց առաջ:

Փարիզի Շքանշանների թանգարանին են պատկանում նույն ընտանիքի երկու կնիք ևս: Դրանցից մեկը կրում է Դեմետրիոս անունը.

[Θεοτοκ]Ε Β(οη)Θ(ει) [ΤΩ ΣΩ ΔΟΥΛΩ] ΔΗΜΗΤΡΙΩ
ΒΕΣΤΗ (καὶ) ΣΤΡΑΤΗΓΩ ΤΩ ΒΡΑΧΑΜΙΩ
[«Աստվածամայր, օգնեա՜ Քո ծառային Դեմետրիոս՝
վեստես և ստրատեգոս Վրախամիոսին»]:

իսկ մյուսը՝ Գեորգ անունը.
+ Κ(ύρι)ε Β(οη)Θ(ει) ΓΕΩΡΓ(ιω) ΣΤΡΑΤΗΓ(ω) ΤΩ ΒΡΑΧΑΜΩ (sic)
[«Տեր, օգնեա՜ Գեորգիոս ստրատեգոս Վրախամիոսին»]:

[1] **G. Schlumberger**, Sigillographie, pp. 311-312.
[2] Vertheragna-ն տվել է. 1) Vrthragn, որտեղից 'Αρτάγνης' Վրթանէս. 2) Varahragn, որտեղից Վահագն. 3) Varahran, որտեղից էլ Βαραράνης, որը կրճատվել դարձել է Vahran, Βαράνης, որն իր հերթին փոխվել և դարձել է Bahram, որտեղից էլ Վահրամ և Վռամ անունները (**F. Justi**, Altiranisches Namenbuch, S. 361, չի հիշատակել մեր Βαχράμης-ին):

Չորրորդ կնիքը պատկանում է ոմն Էլպիդիոսի.

Κ(ύρι)Ε ΒΟΗΘΗ ΕΛΠΙΔΙ(ω) ΚΟΥΡΟΠΑΛΑΤ(η) (καὶ) ΔΟΥΚ(η) ΚΥΠΡΟΥ Τ(ω) ΒΡΑΧΑΜΙ(ω)

[«Տեր, օգնեա՛ Ելպիդիոս կյուրոպաղատ և Կիպրոսի դուքս Վրախամիոսին»][1]:

Այս անձանց ինքնությունը դեռևս պարզված չէ: Մենք նույնիսկ չենք կարող ասել, թե Դեմետրիոսն ու Գևորգը ստրատեգոսնե՞ր էին արդյոք Լիկանդոսի շրջանում, թե՞ ոչ: Ինչ վերաբերում է Էլպիդիոսին, ապա Գ. Շլյումբերժեն կարծում է, որ նա Փիլարտոսի որդին է (6), մի բան, որ կասկածելի է թվում:

[1] G. Schlumberger, Sigillographie, pp. 714, 305.



## ՌՈՒԲԻՆՅԱՆՆԵՐԻ ՆԱԽԱՀԱՅՐԸ

Կիլիկիայի թագավորական հարստությունը սկսվում է Ռուբենից, որի կյանքի մասին մենք գրեթե ոչինչ չգիտենք: Այն ամենը, ինչ մենք կարող ենք իմանալ նրա մասին մեզ հասած մի քանի աղոտ տեղեկություններից, չափազանց կասկածելի են թվում:

Մատթեոս Ուռհայեցին, որը գրեթե Ռուբենի ժամանակակիցն էր, հիշատակում է նրա անունը, երբ խոսում է նրա որդու՝ Կոստանդնի, մասին խաչակիրների արշավանքների առիթով: Նա ասում է. «Ի թուականութեանս Հայոց ՇԽԶ՝ 546 (25 փետրվարի 1097 թ. - 24 փետրվարի 1098 թ.) և ի յաւուրս հայրապետացն Հայոց Տէր Վահրամայ և Տէր Բարսղի, և ի թագաւորութեանն Յունաց Ալէքսին, Հոռոմոց արքային, շարժեալ եղև բանակն Հոռոմայեցւոց և անհամար բազմութեամբ իբրև զբիւրս յիսուն: Զայս թողով ազդ արարեալ իշխանին Ուռհայոյ Թորոսի և մեծ իշխանին Հայոց Կոստանդին որդին Ռուբենայ, որ ունէր զՏորոս լեառն ի յաշխարհին Կոպիտառայի ի Մարապա, որ և բազում գաւառաց տիրեալ էր, և ի զօրացն Գագկայ էր»[1]:

Նույն հեղինակը տեղեկացնում է, որ հայոց 548 թ. «մեռաւ մեծ իշխանն Հայոց Կոստանդին՝ որդին Ռուբենայ, և մնաց իւր երկու որդի՝ Թորոս և Լևոն: Սորա տիրեալ էր բազում քաղաքաց և գաւառաց և ըմբռնեալ ունէր զմեծ մասն Տորոս լերինն, զոր առեալ քաջութեամբ իւրով ի զօրացն Պարսից. սա էր ի զօրացն Գագկայ Բագրատունւոյ՝ որդւոյ Աշոտոյ. սա մեռանէր յայսմ ժամանակիս. և եղև այս ինչ նշան ի տան նորա՝ վասն մահու նորա. և եղև ի միում աւուր մինչ կենդանի էր, լինէր ցոլումն հրոյ կայծականց, և ի բերդն, որ ասի Վահկայ, հարեալ կայծակն և ի սպասաւորաց տանն զարկեալ և զարծաթի սկուտեղքն զմին կողմն տարաւ ի ներքոյ հինգ սկուտեղան, և իմաստունքն ասացին, եթէ այս է վերջին տարին Կոստանդէի. և ի նմին ամին մեռանէր և թաղեցաւ ի վանքն, որ կոչի Կաստաղօն»[2]:

Կոստանդնի մահը ևս մեկ անգամ նշված է հայոց 549 թվին = 1100-1101 թթ. ներքո:

Կոստանդնի որդին՝ Թորոսը, վրեժխնդիր էր եղել Մանդալյան եղբայրներից՝ հայոց Գագիկ արքային սպանելու համար: Այս քաջագործության

[1] **Մատթէոս Ուռհայեցի**, Վաղարշապատ, 1898, էջ 257:
[2] Նույնը, էջ 269-270:

պատմությունը շարադրելուց հետո Մատթեոս Ուռհայեցին ավելացնում է. «և յայնժամ գոհանայր (Թորոսը – խմբ.) զԱստուծոյ, որ էառ զվրէժ արեանն Գագկայ Հայոց արքային, վասն զի հայր հօրն նորա Ռուբէն ի զօրացն [տարընթեր. <ի զաւակաց>] Գագկայ էր»[1]:

Կոստանդնի մահվան ավանդությունը թույլ է տալիս ենթադրելու, որ նա իշխել է յոթ տարի՝ ըստ սկուտեղների թվի, և որ նա վախճանվել է ութերորդ տարում: Եթե Կոստանդնի մահը տեղադրվում է 1099-1100 թթ., և կամ ըստ երկրորդ տեղեկության 1100-1101 թթ., ապա նրա ութամյա իշխանությունը պետք է որ սկիզբ առներ 1091 կամ 1092 թվին: Դրանից հետևում է, որ նրա հայր Ռուբենը, որին նա հաջորդել էր, մահացել էր 1091-1092 թվին: Ռուբենը երկու անգամ հիշատակվում է որպես Գագիկի զորքի անդամ՝ «ի զաւրաց», և մեկ անգամ որպես նրա սերունդ՝ «ի զաւակաց» (1): Այն հարցը, թե Ռուբենը նրա սպաների՞ց մեկն էր, թե՞ ազգականներից, մնում է առկախ: Ռուբենը իշխում էր Մարասպայի Կոպիտառ գավառում:

Մատթեոսից հետո ամենաարժանահավատ հեղինակը Սամուել Անեցին է, գեթ իր հնությամբ, քանի որ նա XII դարի հեղինակ է: Հայոց 525 թ. = 1076-1077 (և ոչ 575 թ., ինչպես տպագրված է) ներքո նա շարադրում է Մանդալյան եղբայրների կողմից Գագիկի սպանության պատմությունն ու ասում է, որ այս իրադարձությունից հետո «իշխանքն Հայոց և ամենայն զօրք նոցա լքան և յամենայն տեղիս ցրուեցան, յորոց իշխան մի արեանառու Գագկայ՝ Ռուբէն անուն, որ կալեալ ունէր զԿօպիտառայ բերդն. յորժամ լուաւ զմահն Գագկայ՝ յարուցեալ ամենայն զարմօք իւրովք և եկն ի կողմանս Փռիգիոյ՝ դիմելով ի գիւղ մի Կօլիմօզօլօ անուն. և անդ բնակեալ, յորում լերինն էին բնակեալ բազումք յազգէն Հայոց՝ զորս զամենեսեան զնոսա առ ինքն կալեալ մեծն Ռուբէն և նոքօք զօրացեալ էառ զլեռնային կողմանսն՝ զՀոռոմսն անտի ի բաց մերժեալ և զնոցա տեղիսն առեալ: Եւ Հ (70) ամաց լեալ բարեպաշտ կենօք՝ վերափոխեցաւ առ Քրիստոս. և թաղեցաւ ի սուրբ ուխտն Կաստաղոն թողեալ զիշխանութիւն յիւր հարազատ որդին ի Կոստանդին, որ և տիրեաց հռչակաւոր բերդին՝ որ Վահկայ կոչի, յորում տուն եդ ինքեան անդ և զաէրութիւն իւր հաստատեաց. և նուաճ բազում տեղիս էառ»[2]:

Սամուելը ծանոթ է Կոստանդնի մահվան առասպելական պարագաներին, բայց այնպես է դրանք ներկայացնում, որ առասպելը կորցնում է իր իմաստը: Նրա համաձայն, «ՌՃԲ (1102) ի ՇԽԹ թվին (հ.թ. 549 = 1100-1101) Կոստանդին որդին Ռուբէնի յաւուր միում նստեալ էր ի Վահկայն և



[1] Մատթեոս Ուռհայեցի, էջ 320-321:
[2] Սամուէլ Անեցի, էջ 116:

եղեալ կայր առաջի իւր արծաթի սկուտեղ մի և այն յանկարծակի թռեաւ և գնաց յանկիւնս տանն և ի մէջ այլ Է (7) սկուտեղացն՝ որք անդ կային՝ եմուտ, և զայն նշան ասացին մահուանն Կոստանդեայ՝ որ և մեռաւ իսկ և թաղեցաւ ընդ հօրն իւրում ի սուրբ ուխտն Կաստաղօն, և զիշխանութիւն նորա էառ անդրանիկ որդի նորա Թորոս ամս ԻԹ (29) կացեալ»[1]:

Մեր հեղինակը հարկ է համարում խոստովանել, թե «Գիտել պարտ է վասն իշխանացն Ռուբինեանց, որք յետոյ թագաւորեցին ի Սիս, զի զանազան կերպիւ պատմեն վիպասանքն զժամանակ և զթիւ ամաց նոցա: Որոց առաջինն է Ռուբէն, որ ի ՇԻԵ (525 = 1076) թվին ի սպանանելն Գագկայ՝ եկեալ ի գիւղն Կօռմօզօլօ՝ և առեալ զլեռնային կողմանսն՝ և զկնի սակաւ ամաց մեռանի. և որքանն չէ յայտ: Եւ զկնի Կոստանդին որդի նորա տիրէ Վահկային և այլոց բազմաց. մեռանի ի ՇԽԹ (549 = 1100) թվին. ընդ ինքն և ընդ հայրն կացեալք ամս ԻԴ (24): Եւ յերկու որդւոցն Կոստանդեայ՝ նստի անդրանիկն Թորոս՝ Պարոն՝ ամս ԻԹ (29) ... և մեռանի ի ՇՀԸ (578 = 1129) թվին .... Ըստ այլոցն,- շարունակում է Սամուելը,- Կոստանդին որդին Ռուբէնի մեռանի ի ՇԾԱ (551 = 1002) թվին, ընդ ինքն և ընդ հայրն կացեալք ամս ԻԶ (26) և զկնի՝ Թորոս ամս ԺԹ (19)՝ մեռանի ի ՇՀ (570 = 1121) թվին»[2]:

Սամուելը, ինչպես տեսնում ենք, բազմաթիվ կետերում հեռանում է Մատթեոսից: Բայց նախ շարունակենք մեր քննությունը:

Սմբատ Գունդստաբլը՝ բարձրաստիճան մի անձնավորություն, որը պատկանում էր իշխող ընտանիքին, պետք է որ քաջատեղյակ լիներ հարըստության ծագման հարցում: Սակայն նա մեզ հայտնում է միայն այն, ինչ կարդացել է Մատթեոսի երկում. «Ի թուին ՇԽԱ (541 = 1092),- ասում է նա,- յորժամ սպանաւ Գագիկ, նա եւ զօրքն եւ իշխանքն ցիր եւ ցան եղեն: Եւ մէկ մի յիշխանացն, զոր պարոն Կոստանդին աստէին, որդի պարոն Ռուբէնի, սա երեկ ի լեառն Տօրօս եւ քաջութեամբ խլեց զմեծ մասն լերինն, որ է առաջին բերդ Վահկայն: Ի թուին ՇԽԹ (549 = 1100) հանգեաւ ի Քրիստոս մեծ իշխանն պարոն Կոստանդին: Եւ յառաջ քան զմեռանելն նորա եղեւ զարմանալի նշան ի բերդն սորա Վահկայն. ցոլաց կայծակն ի մաժառոստանն, եզարկ արծաթի սինին եւ տարաւ ի տանն մէկ այլ կողմն, ու մտոյց եօթն սկուտեղի ներքեւ. յորում աստէին զայն գուշակումն մահուան պարոն Կոս-
տանդնի, որ և ի նոյն ամի մեռաւ եւ թաղեցաւ ի սուրբ ուխտն Կաստաղոն»[3]: Սմբատի շարադրանքը վերարտադրում է նաև Մատթեոսի այն հատվածը, որի համաձայն «Յայնժամ գոհացաւ պարոն Թորոս զԱստուծոյ, որ արժա-

[1] Սամուէլ Անեցի, էջ 121:
[2] Նոյնը, էջ 135-136:
[3] Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, Փարիզ, 1859, էջ 87-88:

նի արար զինքն առնուլ ի նոցանէ (իմա՛ Մանդալյան եղբայրներից – Ն. Ա.) զվրէժ արեանն Գագկայ, քանզի մեծ հայրն նորա Ռուբէն յիշխանացն Գագկայ էր»[1]:

Այնուհանդերձ, Սմբատը որոշ փոփոխություններ է մտցրել իր կարճառոտ շարադրանքի մեջ: Նա յուրովի է հասկացել Կոստանդնի մահվան առասպելը: Ափսեն, որը կայծակնահար է եղել, նրա մոտ սկուտեղ-սինի سینی է դարձել, առանձին էր գտնվում, իսկ կայծակն այն նետել էր մնացած յոթ սկուտեղների մոտ: Մատթեոսի «սպասավորաց տունը» արտահայտությունը նրա մոտ փոխարինված է հետաքրքիր մի բառով՝ *մաժառոստան*, որը կազմված է հունարեն μαγερεῖον՝ «խոհանոց», կամ μάγειρος՝ «խոհարար», բառից և *-ստան* հայկական վերջածանցից: Սմբատը մի կողմ է նետել «Մարապա երկրի Կոպիտառի գավառ» բառերը, ավելացրել «բարոն» տիտղոսը և, տարօրինակ մի բան, այնտեղ, ուր Մատթեոսը խոսում է Ռուբենի և Գագիկի ազգակցական կապերի մասին, Սմբատի շարադրանքում «ի զաւակացն»-ի փոխարեն կարդում ենք «յիշխանացն»: Այս պարագան ստիպում է կասկածել Մատթեոսի շարադրանքում զետեղված «ի զաւակացն»-ի իսկության վրա: Բոլոր դեպքերում Սմբատը չէր, որ պետք է կասկածի առներ իր նախնիների արքայական ծագումը:

Որքան էլ մեր հեղինակը սխալ է ներկայացրել Կոստանդնի մահվան առասպելը, այնուամենայնիվ նա շատ լավ է ըմբռնել դրա այլաբանական իմաստը, որը վերաբերում է Կոստանդնի իշխանության տևողությանը: Նրա մոտ Կոստանդինը հաջորդում է իր հորը հայոց 541 թ. (1092 թ.), այսինքն՝ նա վերագրում է նրան իշխանության ութ տարի՝ 1092 թվից մինչև 1100 թվականը:

Մյուս բոլոր հեղինակները, որոնք Սմբատի ժամանակակիցներն են, ընդունել են Սամուելի պատումը: Վահրամ Ռաբունին, Հեթում պատմիչը, Ռուբինյանների համառոտ պատմության Անանուն պատմիչը, Արքայական Ճաշոցի հիշատակարանը, որը գրվել է հայոց 735 թ. (1286 թ.), նույնիսկ Վարդանն ու Կիրակոսը, ինչպես նաև կիլիկյան թագավորների ցանկը Մշո վանքի ձեռագրերից մեկում[2], բոլորն էլ հետևել են Սամուելի տարբերակին:

Աղբյուրների համեմատական ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս արձանագրելու երկու տարբերակ: Առաջին և ամենահին տարբերակը առկա է Մատթեոս Ուռհայեցու աշխատության մեջ, մյուսը՝ Սամուելի մոտ: Դրանց տարբերությունը հետևյալն է:

Մատթեոսին ծանոթ է միայն Ռուբենի անունը: Նրա Կոստանդին որդին

[1] Սմբատ Սպարապետ, էջ 90-91:
[2] Գ. Սրվանձտյանց, Հնոց և նորոց, էջ 100 և հջ.:



1079 թ. իշխում էր Մարապայի Կոպիտառ գավառում և անդամակցում Գագիկի բանակին: Նա մահացել է 1099 կամ 1100 թվականին: Մանդալյան եղբայրների ամրոցը Գագիկի սպանության պատմության մեջ անվանվում է Կիզիստրա, իսկ Թորոսի վրիժառության պատմության մեջ՝ Կնդրոսկավի (Գնդրոսկավիս): Հեթում պատմիչը երկու դեպքերում նս այն անվանում է Կիզիստրա: Գագիկը սպանվել էր 1079 թվականին:

Երկրորդ տարբերակում Գագիկի մահը տեղադրվում է 1076 թ. և նույն թվականին էլ հայտնվում է Ռուբենը: Նա Գագիկի ազգականն է. նրա գահանիստ քաղաքը Կոզիտարանն (Գոզիտարա) է, հետագայում նա փոխադրվում է Կոլիմոզոլո կամ Կողմոզոլո: Նա մահանում է յոթանասուն տարեկան հասակում: Նրա և նրա որդի Կոստանդնի իշխանությունն ընդհանուր առմամբ տևել է քսանչորս կամ քսանվեց տարի: Կոստանդինը մահացել է 1100 կամ 1102 թվականին: Մանդալյանների ամրոցը կոչվում է Կանդրասկավի կամ Կանդրոսկավի:

Կոստանդնի մահվանը վերաբերող առասպելը կարող էր հիմք ծառայել նրա իշխանության տևողությունը ճշտելու համար, եթե այդ ենթադրությունը վարկաբեկված չլիներ Սմբատ Սպարապետի Շարունակողի կողմից, որը Կոստանդնին տալիս է տասնչորս տարվա իշխանություն: Մշո վանքի ձեռագրի Ցուցակը նրան հատկացնում է հինգ, իսկ նրա հորը՝ Ռուբենին՝ քսան տարի:

Մարդ ավելի է շփոթվում, երբ ծանոթանում է հարստության նախահորը վերաբերող դյուցազնավիպային բնույթ ունեցող մեկ այլ պատմության: Այն պահպանվել է Կիրակոս պատմագրի աշխատության մեջ: Ահա այդ պատմությունը ամբողջությամբ.

«Իսկ միւս Գագիկն[1] թագաւորեալ՝ յաւուր միում ելեալ էր յորս և էր արբեալ, և ի տօթ ժամու էջ յերիվարէն հանգչել ընդ հովանեաւ ծառոյն, և ոչ այլ ոք գոյր ընդ նմա, բայց միայն մանուկ մի փոքրիկ, զի այլ զօրքն ամենայն ցրուեալ էին զհետ որսոյ, և պատահեալ նմա արանց Յունաց, ծանեան զնա, և բարձեալ տարան զնա ի բերդ մի և իբրև սթափեցաւ ի գինւոյ անդի, եհաց զաչս իւր և ասէ՝ «ո՞ւր եմ ես», և ասեն հոռոմքն՝ «ո՞ւր է մետրապօլիտն մեր Մարկոս», և ընկեցին զնա անարգանօք ընդ պարիսպ բերդին և նա ջարդեալ մեռաւ: Իսկ զմանուկն՝ որ էր ընդ նմա, գնեաց ոմն վաճառական Հայ և արար իւր փեսայ: Եւ եղև յետ աւուրց, իբրև զարգացաւ մանուկն և եղև այր՝ գնացեալ ի սահմանս Կիլիկոյ արամբ միով որսալ կաքաւս, և էր անդ բերդ մի զոր Բարձրբերդ կոչեն, և էր անդ եպիսկոպոս մի Հոռոմ, և եղև ծանօթութիւն առն և եպիսկոպոսին, և եղին միմեանց սիրելիք, և բազում աւուրս

[1] Բնագրում խոսքը Գագիկ Կարսեցու մասին է և ոչ թե Գագիկ Անեցու:

ուտէին և ըմպէին ի միասին, և այրն ոչ հանէր ի մտաց իւրոց զիրսն, զոր գործեցին Հոռոմք ընդ թագաւորն Գագիկ, ընդ ազգական նորա: Եւ եղև օր մի զի ամենայն պաշտաւնեայք եպիսկոպոսին ելեալ էին արտաքս ի բերդէն ի պէտս ինչ գործոյ իւրեանց, և էր միայն եպիսկոպոսն և պատանի մի ընդ նմա, եկն այրն որսորդ հուպ առ բերդն որսալ կաքաւս, և տեսեալ զեպիսկոպոսն ի պարսպին, ձայնեաց առ նա գալ, և ի միասին ճաշակել: Իսկ եպիսկոպոսն զայրն հրաւիրէր գալ ի բերդ անդր, և նա ոչ հաւանէր: Ապա էջ առ նա եպիսկոպոսն առանց պաշտօնէի: Իբրև ետես այրն եթէ միայն գայ եպիսկոպոսն, ծանեաւ եթէ ոչ ոք կայ ի բերդին, ասէ ցայրն որ ընդ նմա էր. «այսօր ի դէպ է մեզ առնուլ զվրէժ արեան սպանման թագաւորին մերոյ, զոր գործեցին Հոռոմք, տե՛ս զուցէ առաքիցէ զքեզ եպիսկոպոսն ի բերդ անդր, ջանասջի՛ր առնուլ զնա և ինձ իմացուսցես ի ձևն նշանի ինչ, զի և ես սպանից զեպիսկոպոսն»: Եւ իբրև եկն եպիսկոպոսն, մտին ի ճաշել. և իբրև պակասեաց գինին, ասէ եպիսկոպոսն ցսպասավորն. «երթ ի բերդ անդր և բե՛ր մեզ գինի, զի ուրախասցուք ի միասին»: Եւ իբրև գնաց այրն, ետ զհրաման եպիկոպոսին սպասաւորի նորա, և իբրև նա խոնարհեցաւ ի կարաս անդր՝ զի հանցէ գինի, նա կալեալ զոտից նորա, դարձուցեալ ի վերայ գլխոյն՝ խեղդեաց զնա ի գինի անդր, և ելեալ ի պարիսպն՝ նշանակեաց տեառն իւրում, եթէ «առի զբերդս», և սա աստէն ի ներքոյ խեղդեաց զեպիսկոպոսն, և ինքն մտեալ ի բերդ անդր, բռնացաւ և առ սակաւ սակաւ աճեցոյց զկալուած իւր, զօ՛ր բռնութեամբ և զօ՛ր պատրանօք, մինչև տիրեաց նա և որդիք իւր, և թոռունք աշխարհին Կիլիկեցւոց, քաղաքաց և գաւառաց: Սա է նախնին թագաւորին Լևոնի...»[1] (2):

Սամուելը հետևելով Մատթեոսին՝ պատմում է, որ Գագիկին սպանել էին երեք հույն եղբայրներ, երբ նա վերադառնում էր Տարոնի հայ իշխան Աբլղարիբի մոտից, սակայն,- ավելացնում է նա,- «այլք ասեն թէ ի յորս կայր և ի քուն գտեալ Մանդալեանքն՝ տարան ի բերդն Կանդռօսկաւի և անդ սպանին»[2]:

Ինչպես տեսնում ենք, Սամուելը ծանոթ է Կիրակոսի դյուցազներգական պատմությանը: Մանդալյան մեղսագործ եղբայրները այս պատմության մեջ հանդես չեն գալիս, ինչպես նաև նրանց Կիզիստրա կամ Կանդռոսկավի դղյակը: Ռուբենի վրեժխնդրության զոհն է Բարձրբերդի տեր հույն եպիսկոպոսը:

Պատմությունը երևակայական է, բայց ակներև են պատմական տարրերը, որոնցով կազմվել է այն: Գագիկ թագավորի արյան վրեժը լուծել էր ոչ

[1] Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1909, էջ 94-96:
[2] Սամուէլ, էջ 116:



թե Ռուբենը, այլ նրա թոռ Թորոսը: Այդ Թորոսի եղբայրը՝ Լևոնը, պարտություն կրելով Հովհաննես Կոմնենոս կայսեր կողմից, գերեվարվել է և իր երկու որդիների հետ միասին տարվել մայրաքաղաք: Որդիներից մեկն այնտեղ մահացել է, իսկ մյուսը՝ Թորոս II-ը, փախել է բանտից, վերադարձել Կիլիկիա և վերստացել իր հոր ժառանգությունը: Իր տիրույթներում նրա վերահաստատվելու պարագաները ծնունդ են տվել տարբեր զրույցների: Պատմում են, որ Թորոսը փախել էր Կոստանդնուպոլսից և ոտքով Կիլիկիա էր հասել. նա ներկայացել էր ասորի հակոբիկների պատրիարք Աթանասին: Պատրիարքը նրան մի նժույգ և տասներկու մարդ տվեց, որոնք փախստականին տարել են Ամուդա ամրոցը, որտեղից նա ազատագրել է ամբողջ երկիրը:

Մեկ այլ պատմվածքի համաձայն Թորոսը մայրաքաղաքից ծովով ուղևորվել է Անտիոք, այնտեղից մտել է Կիլիկիա, գտել իր եղբորը՝ Ստեփանեին, այնուհետև նրանք խորամանկությամբ տիրացել են Ամուդային, իսկ հետո նաև ամբողջ երկրին:

Կա մի երրորդ պատում, որն ավելի վիպական բնույթ ունի և ուր գործող անձանց շարքում կա արքունի մի իշխանուհի, որը, սիրահարվելով բանտարկյալ հայ իշխանին, նրան միջոցներ է տրամադրել, որի շնորհիվ Թորոսը կարողացել է հասնել Վահկայի լեռան, ուր նա ծանոթացել է մի քահանայի հետ, որը չափազանց ուրախացել է նրա հայտնվելու կապակցությամբ և կարգել իր հոտերի նախրապան: Քահանան շտապել է նախազգուշացնել լեռներում բնակվող հայերին, որոնք կապ են հաստատել Թորոսի հետ և գրավել Վահկա բերդը, հետո երկիրը և այնտեղից վտարել հույներին ու նրանց գործակալներին[1] :

Եվ վերջապես, կա մի չորրորդ պատում, համաձայն որի Թորոսը, թփուտներում թաքցնելով տասը լավ զինված ռազմիկ, հանկարծակի մտել է Վահկա բերդը և գրավել այն[2]:

Ժողովրդական այդ ավանդությունները իրենց հետքն են թողել Ռուբենի մասին առասպելի վրա: Ռուբենն ուզում էր վրեժխնդիր լինել Գագիկին սպանողներից, սակայն առասպելում նրան սպանել են տալիս մի հույն եպիսկոպոսի, ընդ որում այս վերջինիս դղյակին տիրանալու համար: Այդ եպիսկոպոսը Թորոսի պատմության մեջ հանդես եկող եպիսկոպոսի կամ քահանայի վերհուշն է: Վաճառականի մոտ մանուկ Ռուբենի հայտնվելու և

[1] Սամուէլ, էջ 131: **Michel le Syrien**, III, p. 281 (trad. Chabot) ծանոթ է առաջին տարբերակին և Աթանասին անվանում է այդ վայրի մետրոպոլիտ: Նույնն է Միքայելի հայերեն թարգմանության մեջ, էջ 422 (1871 թ. հր.) և էջ 427 (1870 թ. հր.):
[2] **Jean Dardel**, Chronique d'Arménie, Hist. de Croisades, Doc. arm., II, ch. 8: Հեղինակը առասպելը վերագրում է Կոստանդինին՝ Ռուբենի որդուն, սակայն ակնհայտ է, որ խոսքը Թորոսի քաջագործություններից մեկի մասին է:

նրան փեսայանալու պատմությունը հիշեցնում է Թորոսի ու բյուզանդական իշխանուհու սիրավեպը: Հարստության հիմնադրի պատմական կերպարը ջնջվել է ժողովրդական հիշողությունից, ուստի և պատմիչները դիմել են մի առասպելի, որի հիմքն էին կազմում Թորոս I-ին և Թորոս II-ին վերագրվող գործերը, և դրանց մեջ համապատասխան փոփոխություններ մտցնելով հարմարեցրել են Ռուբենի անձին: Հետևաբար ավանդությունը ստեղծվել է Թորոս II-ի ապրած ժամանակաշրջանից († 1168 թ. դեկտեմբերի 2-ին) հետո: Ինչպիսին էլ որ լինի այս ավանդության գրական շահեկանությունը, նրա պատմական արժեքը չնչին է, եթե այդպիսին առհասարակ կա: Հետևաբար ո՛չ ավանդությունը, և ո՛չ պատմիչների տեղեկությունները չեն նպաստում Ռուբինյանների նախահոր կերպարը լուսաբանելուն և նրա իշխանության ժամանակաշրջանը ճշգրտելուն:

Այս պարագային Կեդրենոսի աշխատության մի հատված արժանի է մասնավոր ուշադրության:

1018-1019 թթ. (II ինդիկտիոնի, աշխարհագործության 6526 թ.), ջախջախելով բուլղարական թագավորությունը, Վասիլ II կայսրն ուղևորվում է Հունաստան՝ բուլղարների կրկնվող ասպատակություններից հետո, երկրի վիճակին ծանոթանալու համար: Նա անցնում է Զեթունիոնով և Թերմոպիլներով: Այդ կապակցությամբ պատմագիրն ասում է.

'Εν δὲ διιέναι τὸ Ζητούνιον τὰ ὀστᾶ τῶν πεσόντων ἐκεῖσε Βουλγάρων, ὁπηνίκα ὁ μάγιστρος Νικηφόρος ὁ Οὐρανὸς τὸν Σαμουὴλ ἐτρέψατο, θεασάμενος ἐθαύμασεν. 'Υπερηγάσθη δὲ καὶ τὸ ἐν Θερμοπύλαις γενόμενον τεῖχος, ὁ Σκέλος ἄρτι κατονομάζεται, εἰς ἀποτροπὴν τῶν Βουλγάρων παρὰ τοῦ 'Ρουπένη[1].

«Զեթունիոնով անցնելիս կայսրը (Վասիլը) հիացավ Սամուելի նկատմամբ Նիկեփորոս Ուրանոսի տարած հաղթանակի ժամանակ այդտեղ զոհված բուլղարների ոսկրակույտերով: Նա առավել հիացավ Թերմոպիլներում բուլղարների հարձակումները ետ մղելու համար Ռուպենեսի կառուցած պարսպով, որն այժմ Սկելոս է կոչվում»:

Παρὰ τοῦ 'Ρουπένη արտահայտությունը Կեդրենոսի լատիներեն թարգմանության մեջ ներկայացված է իբրև apud Rupenam [«Ռուպենայի մոտ»]: Ուրեմն Ռուպենեսն ընկալվել է որպես տեղանուն: Սակայն իրականում խոսքը մի անձի մասին է, որի անունն էր Ռուպենես: Ռուս հռչակավոր բյուզանդագետ Վ. Վասիլևսկին դեռ վաղուց նշել էր, որ լատիներեն թարգմանությունը սխալ է և որ տեքստում խոսքը ոմն Ռուպենի մասին է, որի անունը հիշեցնում է Կիլիկիայի հայկական հարստության հիմնադրի

[1] Cedrenus, II, p. 475.



անունը: Սակայն Վ. Վասիլևսկին՝ ընդունելով Թերմոպիլների Ռուպենեսի հայկական ծագումը, ժամանակագրական նկատառումներով խուսափել է հանձինս այդ Ռուպենեսի ճանաչելու Կիլիկյան թագավորության հիմնադրին: Նրա կարծիքով 1065 թ. (ըստ Կիրակոսի պատումի) հայտնված Ռուբինյանների նախնին չի կարող նույնացվել Թերմոպիլների պարիսպը կառուցողի հետ[1]:

Մենք չենք կիսում այդ տեսակետը և կարծում ենք, որ կկարողանանք փաստել, որ ազգային ավանդությունները որևէ կերպ չեն հակասում առաջարկված նույնացմանը:

Թերմոպիլներում ամրություններ կառուցելու պարտավորություն ստանձնած մարդը պետք է որ Հունաստանի ստրատեգոսը լիներ: Թորքումի շրջակայքում գտնվող Էգրեկ (Ագարակ) գյուղում շատ վաղուց հայտնի արձանագրության մեջ պահպանվել է ոմն Գրիգոր պատրիկի՝ Սմբատիոս պատրիկի որդու, անունը, որն իրեն կոչում է Լարիսայի և Մակեդոնիայի ստրատեգոս: Արձանագրությունը թվագրված է աշխարհագործության 6515 թ., ուրեմն՝ 1006-1007 թվականով[2]: Այդ թվականին Գրիգորը, անկասկած, այլևս այդ պաշտոնը չէր վարում, նա տուն էր վերադարձել և Ագարակում եկեղեցի էր կառուցում: Արևմուտքում նրա պաշտոնը բաժին էր ընկել Ռուպենեսին: Վասիլ կայսրը Կոստանդնուպոլիս է հասնում աշխարհագործության 6527 թ. II ինդիկտիոնին = 1018-1019 թվականին: Այդ ժամանակաշրջանում Ռուպենեսը Լարիսայի և Հունաստանի ստրատեգոսի պաշտոնակատարն էր, ինչպես Կեկավմենոսը, որը 980-984 թթ. [այն անձնավորությունն էր], «որ Լարիսայում իշխում էր Հունաստանի վրա»՝ ἐν Λαρίσσῃ τὴν ἀρχὴν ἔχων τῆς 'Ελλάδος[3]:

Մենք գիտենք այլ հայերի մասին, որոնք այդ ժամանակաշրջանում պատասխանատու պաշտոններ են վարել բալկանյան սահմանների վրա. օրինակ Գրիգոր Տարոնացին՝ Թեսաղոնիկեում, Թեոդորոկանը՝ Փիլիպպուպոլսում: Ոչ մի տարօրինակ բան չկա նրանում, որ Լարիսան սկզբում վստահված է եղել Գրիգորին, իսկ հետո Ռուպենեսին:

Որպես ստրատեգոս Ռուպենեսը պետք է որ նվազագույնը պրոտոսպաթարի պատվաստիճան ունենար և 1018 թ. պետք է որ 23-25 տարեկան լիներ: Հետևաբար անհնարին է, որ 1065 թ. նա մանուկ եղած լիներ, ինչպես

[1] «Журнал Министерства народного просвещения», июль, 1881, с. 116-117.

[2] Արձանագրությունը հայտնաբերել և հրատարակել է Մխիթարյան միաբանության անդամ հայր Ներսես Սարգիսյանը, «Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս», էջ 92, որի մասին Մ. Բրոսսեն հաշվետվություն է ներկայացրել՝ «Записки Имп. акад. наук», СПб., вып. VII, т. VIII, 1864:

[3] "Strategikon", § 169.

նշված է ավանդությունում, կամ էլ որ նա իշխած լիներ մինչև 1086 կամ 1092 թ., ինչպես պնդում են այլ աղբյուրներ: Սակայն ո՛չ առասպելը, և ո՛չ այն աղբյուրները, համաձայն որոնց նա ապրել է մինչև 1092 թ., որևէ արժեք չունեն: Մեր ձեռքի տակ եղած աղբյուրներից կարևորություն ունեն միայն Մատթեոս Ուռհայեցու վկայությունները, քանզի նա գրեթե ականատես է կամ ականջալուր վկա: Սակայն նա ոչ մի ծանոթություն չունի հարստության նախահոր ո՛չ ապրած ժամանակաշրջանի, ո՛չ էլ նրա կյանքի մասին: Ռուբենը հիշատակվում է նրա որդու՝ Կոստանդնի, մասին խոսելու առիթով : Այն ամենը, ինչ նա ասում է, գլխավորապես վերաբերում է Կոստանդնին և ոչ թե նրա հորը: «Կոստանդին որդի Ռուբինայ է, որ ունէր զՏօրօս լեառն ի յաշխարհին Կոպիտառայի ի Մառապա և ի զօրացն Գագկայ էր»: Սա էր, որ հաստատվեց Վահկա բերդում և «սա էր ի զօրացն Գագկայ Բագրատունոյ՝ որդւոյ Աշոտոյ»:Եվ միայն երրորդ գրքում է, որ տասը տարվա ընդմիջումից հետո նա հայտարարում է, թե Թորոսի «հոր հայրը» Գագիկի իշխաններից մեկն է եղել (համաձայն Սմբատի բնագրի և ոչ թե «ազգականն էր», ինչպես ներկայացնում է տպագիրը): Մատթեոսից մեկ դար հետո ապրած հեղինակներն այդ ամենը ցանկացել են վերագրել Ռուբենին մի պատճառով, որ պիտի տեսնենք:

Ռուբենն անկասկած կարող էր Գագիկի զորքից, կամ էլ նրա իշխաններից մեկը լինել: Բագրատունիների հարստությանը պատկանող վերջին արքան զրկվելով իր տիրույթներից օտարության մեջ է ապրել 1044-1079 թվականներին: Իրենց արքայի հետ միաժամանակ և կամ ավելի ուշ իրենց ավատներից զրկված հայ ավատատերերը օտարության մեջ շարունակում էին ճանաչել տարագիր արքայի հեղինակությունը: Գագիկը պահպանել է այդ առանձնաշնորհը մինչև իր մահը: Բյուզանդական աստիճանավոր Ռուբենը մեզ համար անհայտ մի ժամանակաշրջանում տեղափոխվել է արևելք՝ այն երկրամասը, ուր ապրում էին գաղթած իշխաններն ու ազգաբնակչությունը և հաստատվել Տավրոս լեռան վրա, թերևս հենց այնտեղ, ուր հետագայում մենք հանդիպում ենք նրա որդուն՝ Կոստանդնին: Այն ենթակարգումը, որը որպես կանոն գոյություն ուներ Բագրատունի արքայի նկատմամբ, կարելի է ընդունելի համարել նաև Ռուբենի համար: Սակայն նա ոչ մի ազգակցական կապ չուներ Բագրատունիների ընտանիքի հետ: Նրա անունը միայն, որն այնքան տարբերվում է Բագրատունիների ընտանիքում ընդունված անուններից և որն այդքան օտար է հայ ավատական միջավայրին, բավական է այդ ենթադրությունը մերժելու համար: Հին ծագում ունեցող ընտանիքների անհետացման հետ զուգահեռ հայտնվում էին նորերը, և հատկապես կայսերական ծառայություններն էր, որ ինքնահաստատման հնարավորություն էր տալիս նոր ընտանիքներին և նոր ազնվականությանը:



Ինչպես և շատ ուրիշներ, Ռուբենը նույնպես արժանացել է իր տոհմի նախահայրը դառնալու պատվին: Քանի որ նա Բյուզանդիայից վերադարձել էր հայկական միջավայր, ապա չի բացառվում, որ ծագումով նա հենց Հայաստանից էր: Ռուբենի ընտանիքում ընդունված Թորոս անունը շատ թեղադրական է: Այդ անունը կրող առաջին անձնավորությանը մենք հանդիպում ենք Վասիլ II-ի թագավորության ժամանակ. դա Հանձիթից արևելք տեղադրված Հաշտյանք գավառի իշխանն է: Հայոց 443 թ. = 994 թ. Անտիոքի դուքս Միքայել Բուրցեսը պարտություն է կրել եգիպտական զորքից. այլոց թվում նրա բանակում էր Թորոսը՝ Հաշտյանքի իշխանը, որը գերեվարվել է թշնամու կողմից: Նրա հետագա ճակատագիրը հայտնի չէ: Կարող է պատահել, որ Ռուբենը այս Թորոսի որդին լիներ[1]:

Քեմալ-ադ-Դինի երկում առկա է մի շահեկան ծանոթություն. «601 թ. մոհարրամ ամսին (1204 թ. օգոստոսի 29 - 1205 թ. օգոստոսի 17) Սայֆ-ալ-Դաուլայի ժամանակակից *Բարդաս-ալ-Ֆակկասի սերունդներից մեկը՝* հայոց արքա՝ Լառնի որդին, եկավ և հարձակվեց Անտիոքի վրա»[2]: Ճշմարտասեր պատմիչ Քեմալ-ադ-Դինը այս տեղեկությունը քաղել է մեզ անծանոթ մի աղբյուրից: Եթե Ռուբենը Փոկասի շառավիղներից լիներ, ապա նա կպահպաներ Փոկաս հայրանունը: Ըստ երևույթին խոսքը կանանց կողմից ազգակցության մասին է: Ռուբենի հայրը կարող էր խնամիական կապեր հաստատած լիներ Փոկասների ընտանիքի հետ: Բուրցեսի բարեկամ Թորոսը ժամանակին չի՞ եղել արդյոք Վարդաս Փոկասի կողմնակիցներից մեկը: Ամեն դեպքում Քեմալ-ադ-Դինի վկայությունը հաստատում և ոչ թե ժխտում է մեր ենթադրությունը Ռուբենի և Հաշտյանքի Թորոսի միջև գոյություն ունեցող հնարավոր կապի մասին:

Սակայն Սամուել Անեցու ավանդած զրույցը փորձում է Ռուբենին կապել վերջին Գագիկի տոհմի հետ: Նրա մահից հետո Ռուբենը Կազիտառից (Կոպիտառի փոխարեն) իբր գնացել է Կոլիմոզոլո և հիմնել իր իշխանապետությունը: Մատթեոսը Գագիկի մահը տեղադրում է *1079* թ., Սամուելը՝ 1076 թվականին: Առաջինը պատմում է, որ Գագիկը գնացել էր Տարսոն Աբլղարիբ իշխանի մոտ՝ զինակցության պայմանագիր կնքելու, անհաջողության էր մատնվել, և որ վերադարձի ճանապարհին նրան բռնել էին Մանդալյան եղբայրներն ու սպանել:

Վարդան պատմիչը, ընդհակառակը, վստահեցնում է, որ Գագիկի ծրա-

[1] Թորոսը Թեոդորոսի միջնադարյան ձևն է և բացատրվում է կրկնակի շեշտի ազդեցությամբ (բազմավանկ բառերի սկզբում և վերջում), որը և պատճառ է դառնում միջին վանկերի կրճատման և սղման: Դա հատուկ է Հայաստանի հարավային բարբառներին, այդ թվում նաև Հաշտյանքի:

[2] **Kemal-ad-Din**, Histoire d'Alep, «Revue de l'Orient latin», 1867, p. 41.

գրերը հաջողությամբ են պսակվել, և որ նա իր կրտսեր որդուն ամուսնացրել է Աբլղարիբի դստեր հետ, սակայն նա ավելացնում է, որ Գագիկի սպանությունից հետո Աբլղարիբը թունավորելով սպանել է իր փեսային: Սամուելը կարծես ծանոթ չէ Վարդանի վարկածին: Այս մտահոգող տարբերությունները այնպիսին են, որ կարող են որոշ չափով վարկաբեկել ամբողջ շարադրանքը և կասկածի ենթարկել նույնիսկ Գագիկի մահվան թվականը: Մենք հիմք ունենք կարծելու, որ Գագիկը, ինչպես և Գագիկ Կարսեցին և ուրիշ արքայազուն իշխաններ, բռնի կամ բնական մահով է մահացել Ռոմանոս Դիոգենեսի արշավանքի ժամանակ: 1065 թ. մահանում է Խաչիկ Բ կաթողիկոսը: Գագիկ Կարսեցի արքան օծել է տալիս Գրիգոր Մագիստրոսի որդի Գրիգորին: Գագիկ Անեցին համակրանք չուներ նորընծա կաթողիկոսի հանդեպ, նրա հոր՝ Գրիգոր Մագիստրոսի նկատմամբ պահպանած իր քենի պատճառով: Թագավորը, իրավամբ թե հանիրավի, Գրիգորին համարում էր իր թագավորության անկման պատասխանատուն (3): Քիչ անց՝ 1068 թ.[1] նա ընտրել է տալիս մի երկրորդ կաթողիկոս՝ Գևորգին: Շուտով երկու կաթողիկոսների միջև պայքար է ծայր առնում: Գործը հասնում է այնտեղ, որ Գրիգորը պաշտոնանկ է հայտարարում Գևորգին: Գևորգը հեռանում է (Սեբաստիայից կամ Թավբլուրից) Տարսոն, անկասկած Աբլղարիբ իշխանի մոտ, իսկ Գրիգորը գնում և հաստատվում է Գուրգենի որդի Գագիկի մոտ Մուտարասունում: Այս ամենը տեղի է ունենում հայոց 521 թ. = 1072 թվականին: Մենք ինքներս մեզ հարց պետք է տանք, թե ինչո՞ւ հակառակորդ կաթողիկոսները ապաստան չեն փնտրել իրենց հովանավորողների՝ երկու Գագիկների, մոտ: Պատասխանը պարտադրվում է ինքնըստինքյան. բանն այն է, որ այս ժամանակ երկու արքաներն էլ ավարտել էին իրենց երկրային ուղին: Կաթողիկոսների պառակտումը ինքնըստինքյան դժվար կլիներ բացատրել, եթե արքաները կենդանի լինեին[2]: 1071 թ. գարնանը, երբ Ռոմանոս

[1] Մատթեոս Ուռհայեցու երկասիրության 98-րդ գլուխը նվիրված է ՇԺԸ թվականին = հայոց 518 թ. = 1069 թ. իրադարձություններին: Քանի որ պատմիչը այդ թվականի ներքո է տեղադրում Ռոմանոսի գահակալությունը, ապա պետք է կարդալ ՇԺԷ = հ. տ. 517 թ. = 1068 թվական:

[2] Կաթողիկոսների վեճի պատճառը Մատթեոսը լրջմիտ կերպով չի բացատրում: Նրա կարծիքով Գրիգորը պայմանավորվել էր Գևորգի հետ, որ հրաժարվելու էր եկեղեցին ղեկավարելուց և վանք էր մտնելու ճգնավորի կյանք վարելու: Սակայն նա դրժել էր իր խոստումը և համաձայնել էր գրավել հայրապետական աթոռը: Գրիգորին այդ բանը վրդովել էր: Դա մեր պատմիչի ենթադրությունն է և հավատ չի ներշնչում: Նախ՝ Գևորգին ձեռնադրել էր ինքը Գրիգորը, հետո՝ նա անապատ չէր քաշվել, այլ ճանապարհորդություններ էր ձեռնարկել դեպի Կոստանդնուպոլիս, Հռոմ և Եգիպտոս, ուր նա ձեռնադրել էր ևս մի կաթողիկոս և վերադարձել Հայաստան իր մոր մոտ, գնացել էր Անի և վերջապես հաստատվել հզոր իշխան Գող Վասիլի մոտ Քեսունում, ուր և մահացել էր 1105 թվականին: Մեր բացատրությունը հենվում է այն փաստի վրա, որ Գրիգորը ընտրվել էր «հրամանաւ Գագկայ շահի՝ որդւոյ Աբասայ Կարսացւոյ» (գլ. 90), իսկ Գևորգը թագավորի, այսինքն՝ Գագիկ Անեցու կամքով (գլ. 99):



Դիոգենեսը հասավ Սեբաստիա, Գագիկը դեռ կենդանի էր: Մատթեոսը պատմում է, որ հույները գանգատվել են Սենեքերիմի որդիներից՝ Ատոմից և Աբուսահլից: Իշխանները կկործանվեին, եթե Գագիկը և հավատուրաց Կտրիճ ամիրան չմիջնորդեին ահարկու միապետի առջև: Կայսրը ներանց ներել էր, սակայն, ավելացնում է մեր պատմիչը, «սպառնացեալ սաստիկ երդմամբ եթէ ի դառնալն ի պատերազմէն Պարսից, բառնամ զհաւատն Հայոց»: Նման մի մոլեռանդի առջև միջնորդելու համար դժվար կլիներ ավելի անհամապատասխան մարդ գտնել քան Գագիկը, որը մոլեռանդորեն սպանել էր Կեսարիայի եպիսկոպոս Մարկոսին: Մատթեոսը, այնուամենայնիվ, լռությամբ է շրջանցում Սենեքերիմի երրորդ որդու՝ Կոստանդնի նկատմամբ կայսեր կիրառած դաժան պատիժը, որի մասին մենք տեղեկանում ենք այլ աղբյուրներից[1]: Այս ամենը մեզ դրդում է մտածելու, որ Գագիկը նույնպես զոհ է գնացել Ռոմանոսի վարած աղետալի քաղաքականությանն ու սպանվել նրա դրդմամբ Մանդալյան եղբայրների և կամ, միգուցե, Աբլղարիբի գործակիցների կողմից, եթե Մանդալյանների առեղծվածային պատմությունը լիովին հնարված առասպել չէ:

Սամուելը Գագիկի սպանությունը տեղադրում է 1076 թ., իսկ մենք տրամադրված ենք այդ տարեթիվը տեղափոխելու մինչև 1071 թվականը (4): Արդյոք Ռուբենն այդ թվականին դեռ ո՞ղջ էր, ինչպես վկայում է այդ նույն մատենագիրը, թե՞ ոչ: Շատ հնարավոր է, որ Ռուբենն ապրել է մինչև Գագիկի մահը: Մեկ այլ Գագիկ՝ Սենեքերիմի ավագ եղբայր Գուրգենի երեք որդիներից մեկը, դեռևս 1072-1073 թվականին ապրում էր Մուտարասունում: Այս Գագիկի հայրը՝ Գուրգենը, մահացել էր հայոց 452 թ. = 1003 թվականին[2]: Գագիկը ծնվել էր ոչ թե իր հոր մահից հետո, այլ դրանից շատ առաջ, այնպես որ 1072-1073 թթ. նա պետք է որ ութսունամյա լիներ: Նույնը կարելի է ասել Ռուբենի համար. ծնված լինելով X դարի վերջին, ինչպես մենք արդեն ենթադրել ենք, 1018 թ. 23-25 տարեկան լինելով, նա կարող էր ապրել մինչև 1071-1076 թվականը: Սամուելը նրան յոթանասուն տարվա կյանք է տալիս, և դա վկայում է նրա երկարակեցության մասին: Ուրեմն նա ապա-

[1] **Abulfarage Bar Hebraeus**, Chronicon Syriacum, p. 272 ( cf. «Byzantion», t. IX, fasc. 2, p. 640) Մատթեոսը կարծես թե ծանոթ է Կոստանդնի կուրացման պատմությանը: Սեբաստիայում թուրքերի կատարած ավերածությունների կապակցությամբ հայերի ճակատագրի մասին իր տխուր մտորումներում նա բողոքում է, որ հույները կործանել են «իրենց ապահովության դրախտը» (5), զրկել են իրենց քաջ իշխաններին, և հայերը մնացել են թշնամիներին դիմադրել անկարող բյուզանդացի ներքինիների հույսին. հետո կանխելով իրադարձությունները, նա ակնարկում է Ռոմանոս Դիոգենեսի ժամանակաշրջանը. հույները «ի Պարսից պատերազմէն յօժարութեամբ փախչին, և զամենայն ճշմարիտ հաւատացեալքս Քրիստոսի հաւատոյն ջանան խափանել և խախտել: Վասն զի յորժամ այր քաջ և զօրաւոր գտանէին, զաչսն խաւարեցուցանէին» (գլ. 84):

[2] **Ասողիկ**, Գ, գլ. 46:

րեզ էր իջել ոչ թե այդ թվականին, այլ, ընդհակառակը, այդ թվականը նշանավորում է նրա գործունեության ավարտը:

Բյուզանդական աստիճանավոր Ռուբենը պետք է որ թողած լիներ իր ծառայությունը և անցած լիներ արևելք: Հնարավոր է, որ նա նշանակված լիներ ողևէ շրջանի ստրատեգոս, ինչպես որ պատահում էր բազմաթիվ այլ հայ մարդկանց հետ: Բյուզանդիայի հայկական հարստության անկումից հետո ձևավորվում է վառ արտահայտված հակազդեցություն հայկական տարրի դեմ: Այն ավելի շեշտակի է դառնում Կոստանդին Մոնոմախի, Անդրոնիկոս Դուկասի և Ռոմանոս Դիոգենեսի թագավորության ընթացքում, իսկ խաչակրաց արշավանքների ժամանակաշրջանում ավարտվել է լիակատար խզումով: Ըստ երևույթին այդ անիմաստ հակազդեցության ժամանակ է, որ Ռուբենը հաստատավել է Տավրոսի զառիթափ լանջերին: Նրա նստավայրը հավանաբար գտնվում էր այնտեղ, ուր հետագայում մենք գտնում ենք նրա որդի և հաջորդ Կոստանդինին: Մատթեոսը այն տեղադրում է «Մառապայում» Կոպիտառի կամ Գոպիտառի շրջանում[1]: 1111 թ. ներքո նա պատմում է, որ թուրքերը մտել են Անազարբայի երկիրը և ասպատակել այն, ինչպես նաև «Մառպան» (Մառապայի կրճատ ձևն է):

Հետևելով այս հատվածին մենք պետք է Մառապան փնտրենք Անազարբայի շրջակայքում: Մեր կարծիքով տեքստը հակառակ իմաստ ունի, այսինքն հեղինակը Անազարբայի երկիրը հակադրում է Մառապային: Անազարբայի երկրի ներքո պետք է հասկանալ հարավային, դաշտային Կիլիկիան, մինչդեռ Մառապան նշանակում է նույն երկրի լեռնային մասը: Տավրոսում նման անուն կրող վայր անծանոթ է[2]:

Մառապան Տառապայի (կամ Դառապայի) եղծված ձևը չէ՞ արդյոք՝ Տառապայի փոխարեն Մառապա: Այդ դեպքում մենք այստեղ տեսնում ենք Կոստանդին Ծիրանածնի Τρύπια-ի համարժեքը՝ այն շրջանի, որը Լևոն Իմաստասեր կայսրը պարգևել է Լիկանդոսի հիմնադիր Մելիասին [(Մլեհ)]: Այդ բառը հնարամիտ կերպով նույնացվել է արաբերեն darb درب բառի հոգնակի durūb ձևին, որը նշանակում է «դուռ, անցում»: Արաբներն այդպես էին անվանում հատկապես Տավրոսյան լեռնաշղթայի կիրճերը, որոնք հույներն անվանում էին κλεισοῦρα, իսկ հայերը «կապան»: Լեռնային շրջանը արաբներն անվանում էին bilād-ad-durūb: Ուսաման իր ինքնակենսագրության մեջ գրում է. «Ռուբենի հետնորդները՝ հայեր Թորոսն ու Լևոնը,

[1] Ըստ Սմբատի, էջ 107, Գրիգոր Ե Քարավեժ կաթողիկոսը (1192-1194) զոհվել է Կոպիտառում: Միքայել Ասորին ծանոթ է այդ փաստին և վայրն անվանում է Գուրիտարա (Գ, էջ 413):

[2] Մենք չենք կարող այն նույնացնել Մարապա գյուղի հետ, որն ըստ քարտեզների տեղադրվում է Արլաստայի հյուսիսում:



Ալ-Մասիսայի, Անտարտուսի, Ադանայի և ադ-դուրուբ կապանների տերերն էին»[1]: Թորոսի եղբայր Մլեհին (1169-1175) արաբները անվանում էին իշխան կամ «կապանների տեր»՝ սահիբ-ադ-դուրուբ[2]: Հատկապես այդպես էին կոչում Ռուբենին: Ըստ երևույթին Ռուբինյանների օրրանը պետք է փնտրել Լիկանդոսի կողմերում[3]:

Հաջորդ սերնդի կողմից Ռուբենի կերպարը եթե մոռացության չի մատնըվել, ապա թողնվել է ստվերում: Այդ սերունդը նրա մասին շատ աղոտ հուշեր է պահպանել: Դա շատ հեշտ է բացատրվում: Այն ժամանակաշրջանում, երբ նա հանդես է եկել, բազմաթիվ հայ իշխաններ կային, որոնք, ցրված Սեբաստիայից՝ Անտիոք և Կիլիկյան Սելևկիայից մինչև Եդեսիա երկարող ամբողջ տարածքում պայքարում էին հանուն իրենց անկախության և մրցակցում առաջին տեղը գրավելու համար: Անիի, Կարսի, Վանի թագավորական հարստությունների կողքին կային այլ ծագում ունեցող բազմաթիվ ընտանիքներ: Բավական է հիշել Փիլարտոսի, Թորոս կյուրոպաղատի, Գաբրիել Մելիտենացու, Գող Վասիլի, Թաթուլ Մարաշեցու, Աբլղարիբ Տարսոնացու, Օշին Լամբրոնացու և բազմաթիվ այլ ընտանիքներ: Քանի դեռ կենդանի էին վերջին արտաքսված արքաները, ոչ ոք չէր էլ մտածում առաջին տեղը վիճարկելու մասին, քանի որ ծագումը դեռ պահպանում էր իր վարկը: Մոտ 1070 թ. ի հայտ է գալիս Փիլարտոսը որպես մի մեծ երկրամասի անկախ տեր, ուր և նա իշխում է մինչև 1092 թվականը: Նրա հավակնություններին պարարտ հող է մատուցել ոչ միայն Ռոմանոս Դիոգենեսի սարսափելի պարտությունը, այլև Գագիկ արքայի ենթադրյալ սպանության փաստը: Հենց այդ պատճառով Գագիկի մահը պետք է տեղադրել 1071 թվականին: Փիլարտոսից հետո նրա ստորականերից մեկը՝ Գող Վասիլը, ժառանգել է նրա հավակնություններն ու իշխել մինչև 1112 թվականը (6):

Այդ տարիների ընթացքում Ռուբենն ու նրա որդի Կոստանդինը զբաղված էին իրենց դիրքերն ամրապնդելով Տավրոսում, նպատակ ունենալով շարժվելու դեպի Կիլիկյան դաշտավայրի հարավային մասը: Նրանց գործունեությունը դեռ այնպիսին չէր, որպեսզի մեծ արձագանքի արժանանար և նպաստեր նրանց ժողովրդայնության աճին: Սակայն ամենահզոր իշխա-

[1] «Revue de l'Orient latin», 1894, p. 521.

[2] **Ibn Al Atîr**, Recueil des Hist. des Croisades. Hist. Orient., II, p. 307.

[3] Հեթում պատմիչը Լիկանդոսում է տեղադրում նույնիսկ Մանդալյանների ամրոցը՝ Կոնդրոսկավին (Recueil des Historiens des Croisades, I, p. 471): Սակայն այդ նշումը բացակայում է Հեթումի նոր հրատարակության մեջ (1933 թ. Արտավազդ արքեպ. Սյուրմեյանի հրատարակած Օշին արքայի Ժամագրքում): Ուրեմն դա ընդմիջարկություն է: Նշենք, որ Զեյթուն քաղաքը, որի հին ձևն է Զեթուն, հիշեցնում է վերը նշյալ Ζητούνιον-ը: Այս անունը ոչ մի կապ չունի «զեյթուն»՝ «ձիթապտուղ» բառի հետ: Արդյո՞ք Ռուբենի կողմից չէ ստեղծված Ζητούνιον-ի նմանությամբ:

նի՝ Գող Վասիլի, մահից անմիջապես առաջ լուրեր են տարածվում Կոստանդնի որդի Թորոսի սխրանքի մասին. որ նա վրեժխնդիր էր եղել Գագիկ արքայի սպանության համար: Այդ իրական կամ էլ մտացածին փաստը հետագայում պետք է ծառայեր նրա իշխանությունն ու հավակնությունները օրինականացնելու համար ոչ միայն Գող Վասիլին հաջորդելու, այլև Բագրատունյաց թագը ժառանգելու համար: Հետագայում կատարվելու էր ևս մի քայլ և տոհմի նախահայր Ռուբենը հայտարարվելու էր վերջին Գագիկ արքայի ազգականը:

Մենք մեկ պատճառ ևս ունենք պնդելու, որ Ռուբինյան առաջին իշխանները այնքան էլ հռչակված չէին, որքան կարծում են (7): Անիի թագավորության անկումից հետո կաթողիկոսի գահը սկսեց դեգերել վայրից վայր: Անիից այն տեղափոխվեց Սեբաստիա արտաքսված արքայի մոտ, ուր և երկու կաթողիկոսներ՝ Պետրոսն ու Խաչիկը կնքեցին իրենց մահկանացուն: 1065 թ., Խաչիկի մահվանից հետո, Գագիկ Կարսեցին որպես կաթողիկոս ընտրել տվեց Գրիգոր Բ Պահլավունուն: Գագիկ Անեցու հրամանով ձեռնադրվեց մեկ այլ կաթողիկոս: Եկեղեցու երկու առաջնորդները ընդհարվեցին և հեռացան, մեկը՝ Գուրգենի որդի Գագիկի, մյուսը՝ Աբլղարիբի, մոտ: Գրիգոր Բ կաթողիկոսի Փիլարտոսի մոտ տեղափոխվելու պատճառը, անկասկած, Գուրգենի որդի Գագիկի մահն էր: Փիլարտոսից Թոռնիկի մոտ առաքելությամբ ուղարկվելուց հետո, Գրիգորը չի կարողանում վերադառնալ Փիլարտոսի մոտ: Այդ ժամանակ, 1073 թ., իշխանն իր տիրույթների համար ընտրում է մի երրորդ կաթողիկոսի՝ Սարգսին և հաստատում նրան Ջահանի (Լիկանդոսի) շրջանի Հոնիում: Սարգիսը մահանում է 1077 թ. և նրան հաջորդում է Թեոդորոսը: 1085 թ. Փիլարտոսը կորցնում է Հոնին Մելիտենեի շրջանի հետ միասին և Թեոդորոսը չի կարողանում իր գահը տեղափոխել Մարաշ, ուր նրան հրավիրում էր Փիլարտոսը: Այս իշխանը չի վարանում ձեռնադրելու մի չորրորդ կաթողիկոսի՝ Պողոսին, որի գահը գտնվում էր Մարաշում: 1081 թ. Անիում ձեռնադրվում է հինգերորդ կաթողիկոսը՝ Բարսեղը (Վասիլ), իր եղբայրների պահանջով, քանի որ վերջիններս բավականաչափ հզոր էին իրենց սեփական կաթողիկոսն ունենալու համար: Բարսեղն ավելի մեծ վարչական շնորհք ուներ, քան Գրիգորը և մինչդեռ վերջինս ճանապարհորդում էր, և, հասնելով Եգիպտոս, տեղի հայկական համայնքի համար ձեռնադրում էր վեցերորդ կաթողիկոսին, Բարսեղը ձեռնամուխ է լինում վերստին կենտրոնացնել հոգևոր իշխանությունը: Նա, ստանալով սելջուկյան Մելիքշահ սուլթանի թույլտվությունը, գնում է Հոնի, հեռացնում Թեոդորոս կաթողիկոսին և մեկնում Եդեսիա: Մարաշի կաթողիկոս Պողոսը նույնպես ժամանում է Եդեսիա՝ Վարագի (Խաչի) Սուրբ Նշանը Բարսեղից պահանջելու համար, որը վերջինս վերցրել էր Թեոդորոսից, և մահանում



այնտեղ 1093 թվականին: Այն փաստը, որ Բարսեղը չի համարձակվում ձեռք տալ Պողոսին, որը գտնվում էր Փիլարտոսի հովանավորության ներքո, ստիպում է մտածել, որ Փիլարտոսն այդ ժամանակ դեռ Մարաշում էր և ողջ էր: Եդեսիայից Բարսեղը գնում է Քեսուն՝ Գող Վասիլի մոտ և հաստատվում այնտեղ: Իր ճանապարհորդությունից հետո այնտեղ է գալիս նաև Գրիգոր կաթողիկոսը:

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, հոգևոր իշխանության տեղաշարժերը և բաժանումը կապված էին այդ ժամանակաշրջանի առավել աչքի ընկնող քաղաքական իշխանությունների հետ: Եկեղեցու ղեկավարը փնտրում էր ամենահզոր իշխանի արքունիքը, իսկ վերջինիս կաթողիկոս էր պահանջվում նրա բարոյական հեղինակությանը հենվելու համար: Կաթողիկոսական գահի տեղաշարժը մի վայրից մյուսը՝ Սեբաստիա, Մուտարասուն, Տարսոն, Հոնի, Մարաշ, Եդեսիա, Քեսուն, լիովին համապատասխանում է քաղաքական գերազահությունը մի իշխանից մյուսին անցնելուն՝ արքայական իշխաններից Փիլարտոսին, հետո՝ Թորոս կյուրոպաղատին և, ի վերջո, Գող Վասիլին:

Ռուբինյան իշխանները գործող անձանց շարքում չեն. խոսք չկա նրանց մոտ գահակալող կաթողիկոսի մասին: Սա մի հաստատուն վկայություն է այն մասին, որ նրանք սկսել են կարևոր դերակատարություն ունենալ միայն Գող Վասիլի մահից հետո: Կաթողիկոսական աթոռը Քեսունից տեղափոխվում է Ռումկալե (Հռոմկլա)՝ Ռուբինյանների մոտ հաստատվելու փոխարեն, սակայն դա տեղի է ունեցել արդեն այլ պատճառով. կաթողիկոսներն իրավամբ վարանում էին Ռուբինյանների և նրանց հակառակորդ Հեթումյանների միջև:

Ամեն պարագայի, հայկական սկզբնաղբյուրների տեղեկությունները, զտվելով առասպելական տարրերից, ոչնչով չեն խանգարում Հունաստանի ստրատեգոս Ռուպենեսի և Կիլիկիայի Ռուբինյան հարստության նախահոր նույնացմանը (8):

## [ԼԱԶԻԿԱ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԻԱ]

Հայերից և իբերներից հետո կովկասյան ժողովուրդներից երկրամասի քաղաքական կյանքում և բյուզանդա-պարսկական փոխհարաբերություն-ների վրա ունեցած իրենց ազդեցությամբ առավել նշանակալից էին լազերը: Լազերը կազմված էին բազմաթիվ մանր ցեղերից, որ հնուց ի վեր բնակվում էին Կողքիսում: Նրանց հնագույն պատմությունը կապված է Կողքիսի ճակատագրի հետ, որը նախապես գտնվում էր Աքեմենյան[1], ապա՝ Միհրդատ Եվպատորի[2] թագավորությունների կազմում: Պոնտոսի թագավորության փլուզումից հետո Կողքիսը որոշ ժամանակ անկախություն էր վայելում[3], բայց շուտով հայտնվեց հռոմեացիների տիրապետության ներքո: Այն համարվում էր հռոմեական տիրույթ, բայց ինքնավար էր և ենթակա տեղական իշխողներին: Յուրաքանչյուր ցեղ ունեցել է իր սեփական իշխանը կամ արքան, և բոլորն էլ հռոմեացիներին որոշակի հարկ էին վճարում: Հետզհետե այլ ցեղերի միջից լազերը առաջ էին քաշվում և իշխող դիրք գրավում մյուս ազգակից ցեղերի նկատմամբ: Լազերի անունը տարածվում է ամբողջ բնակչության և իր իսկ՝ երկրի վրա, և վաղեմի Կողքիսը սկսեց անվանվել «Լազիկա»: Բյուզանդական դարաշրջանում այն հայտնի է հենց այս հորջորջմամբ (1):

Լազիկայի թագավորները լիովին անկախ էին: Նրանց կախվածությունը Բյուզանդիայից ձևական էր և կայանում էր նրանում, որ թագավորի մահվանից հետո թագաժառանգը գերագույն իշխանության նշանները ստանում էր կայսրից: Մնացած գործերում նրանք թողնված էին իրենց կամքին: Կայսրին նրանք հարկ չէին վճարում և առհասարակ ոչ մի պարտավորություն չէին կատարում: Հռոմեացիների հանդեպ միակ պարտականությունն այն էր, որ նրանք պաշտպանում էին հռոմեական տիրույթների սահմանները հարևան հոների ավերիչ ասպատակություններից: Այդ պարտականությունը նրանք կատարում էին սեփական ուժերով, առանց հռոմեացիներից որևէ ֆինանսական կամ ռազմական օժանդակություն ստանալու: Փոխարենը նրանց իրավունք էր տրվում չմասնակցելու հռոմեացիների՝ այլ երկրների դեմ մղվող ռազմական գործողություններին:

---

[1] [**Herod.**, III, 97; VII, 79.]
[2] [**Strab.**, XII, 3,1.]
[3] [Ibid.]

Լազիկան չափազանց աղքատ երկիր էր. բնական արտադրությամբ նա զգալիորեն զիջում էր Ստրաբոնի նկարագրած հին Կողքիսին[1]: Հողը չէր արտադրում ո՛չ խաղողի ողկույզ, ո՛չ հացահատիկ, ո՛չ էլ այլ պարեն. լազերը զրկված էին նաև աղից: Բնակչությունն ապրում էր ծայրահեղ աղքատության մեջ, սնվելով կորեկով՝ միակ հացահատիկով, որ աճում էր նրանց երկրում[2]: Ինչ որ նրանք վաստակում էին, ձեռք էին բերում առևտրի միջոցով, որ լայնորեն ծավալում էին հռոմեական առափնյա քաղաքներում: Փոխանակման գլխավոր առարկաներ էին մորթեղեն, կաշվեղեն և ստրուկներ[3]:

Չնայած երկրի անկախ դրությանը, այնուամենայնիվ, դա մի խայծ էր Բյուզանդիայի և Պարսկաստանի համար և մշտական կռվախնձոր նրանց միջև: Գտնվելով երկու տերությունների սահմանաեզրին, Լազիկան կարևորվում էր իբրև պատվար լեռնցիների արշավանքների դեմ: Հաստատվելով այնտեղ, կարելի էր կառավարել ռազմատենչ հոներին, և ոչ միայն պաշտպանվել նրանց ավերումներից, այլև, ըստ ցանկության, թողնել նրանց [արշավելու] թշնամական հողերի վրա: Գիտակցելով այս առավելությունը, երկու կողմն էլ աշխատում էր Լազիկան պահել իրենց ազդեցության և տիրապետության ներքո: Լազերը, ըստ հանգամանքների, միանում էին մե՛րթ մեկ, մե՛րթ մյուս տերությանը: Երկու պետությունների մրցակցությունը ստեղծել է «Լազերի հարցը», որ երբեք բավարար լուծում չէր ստացել՝ ո՛չ դիվանագիտական [ասպարեզում], ո՛չ էլ զենքի ուժով և մշտապես .... (2) նորանոր ընդհարումներով:

Լազերը, հանգամանքներին համեմատ, հարում էին մե՛կ Բյուզանդիային, մե՛կ Պարսկաստանին: V դարի երկրորդ կեսին նրանք վասալական կախման մեջ էին բյուզանդական կայսրերից: Ինչպիսին էր դրությունը դրանից առաջ, պատմական տվյալների բացակայության պատճառով՝ անհայտ է: Մարկիանոսի թագավորության օրոք [450-457] լազերի մեջ շարժում է նկատվում՝ հավանաբար, պարսկական տիրապետության օգտին: Դրան առնչվող կցկտուր տեղեկությունները, որոնք պահպանվել են Պրիսկոս Պանիացու [երկասիրության] հատակտորներում, թույլ չեն տալիս հստակ պատկերացում կազմել բուն իրադարձությունների մասին: 456 թ. հռոմեական զորքը մենք տեսնում ենք Լազիկայում, լազերի դեմ գործելիս[4]: Առաջին, ամենայն հավանականությամբ, անհաջող ճակատամարտից հետո, հռոմեական զորքը ետ է քաշվում և պատրաստվում նոր արշավանքի:

[1] [Strab., XI, 2, 17.]

[2] **Proc.**, Pers. I, 12, B. P., 58, II, 15, B. p. 217, 283-4, II.

[3] Ստրկավաճառության մասին հիշատակում է **Polyb.**, Hist., IV, 38; **Strab.**, XII, տե՛ս **L. Preller**, Über die Bedeutung des Schwarzen Meeres für den Handel und Verkehr der altes Welt. Dorpat, 1842.

[4] [**Prisc. Pan.**, B. P., 217.]



Լազերին այդ ժամանակ տիրում էր Գուբազը՝ իր որդու հետ միասին[1]: Օգնության համար նա դիմում է պարսից թագավորին, բայց Հազկերտ II-ը, որն այդ ժամանակ զբաղված էր հոն-կիդարիտների դեմ պատերազմով, մերժեց խնդրանքը: Գուբազը ստիպված էր դեսպաններ ուղարկել կայսեր մոտ՝ խաղաղության առաջարկով[2]: Եվթիմիոսի, officiorum մագիստրոսի խորհրդով, պատերազմի կասեցման պայման է դրվել կամ Գուբազի՝ գահից հրաժարվելը, և կամ՝ որպեսզի նա գահից զրկի իր որդուն: Այս պահանջի իմաստն անհասկանալի է: Հռոմեացիները հղում էին հին օրենքը, որը թույլ չէր տալիս, որ երկիրը միաժամանակ երկու արքաների կողմից կառավարվի: Անհասկանալի է, թե ինչու հռոմեացիներն այդպիսի նախանձախնդրությամբ էին հետևում լազերի ավանդույթների պահպանմանը[3]: Հնարավոր է, որ նրանք, Լազիկան դիտելով իբրև հյուսիսային պատվար, վախենում էին դրա պառակտումից, ուստի և արգելում էին բաժանումը[4]: Գուբազը կատարեց հռոմեական իշխանությունների պահանջը. հրաժարվեց արքայական իշխանության նշաններից և երկրի կառավարումը հանձնեց որդուն: Մարկիանոսը հրամայեց Գուբազին անցնել հռոմեական տարածք[5] և հաշվետվություն ներկայացնել իր արարքների համար: Վերջինս համաձայնեց, բայց վախենում էր Դիոնիսիոսի՝ Լազիկայում կայսեր նախկին լիազորի խարդավանքներից: Լազերի արքան խնդրել էր երաշխիքներ այնու, որ նա ոչ մի անախորժության չի հանդիպի: Ի պատասխան, Դիոնիսիոսն ուղարկվեց Լազիկա: Նրա ժամանելուց հետո, նույն Պրիսկոսի ասելով, բոլոր տարաձայնությունները հարթվեցին: Սակայն ի՞նչ պայմանով, անհայտ է: Գուբազի թագից հրաժարումը՝ հօգուտ որդու, հավանաբար, այդպես էլ չկայացավ: 465 թ., Լևոն I կայսեր օրոք[6] նրան հանդիպում ենք Կոստանդնուպոլսում: Նա եկել է այնտեղ Դիոնիսիոսի հետ միասին, պարսկական հանդերձով և թիկնապահների ուղեկցությամբ՝ մարական եղանակով: Արքունիքում դա

[1] Մատիտով՝ **Lebeau**, VI, p. 385:

[2] **Prisc. Pan.**, p. 155.

[3] Մատիտով՝ «Ըստ Զոնարասի, որդին էր, որ ապստամբեց հռոմայեցիների երկրամասերը»:

[4] Г. **Дестунис**, Приск Панийский, с. 92, прим. 118.

[5] Բնագրում՝ βασιλεὺς δὲ διαβαίνειν αὐτὸν εἰς τὴν 'Ρωμαίων ἐκέλευε, καὶ τῶν αὐτῷ δεδογμένων διδόναι λόγον, cap. 12, p. 155: Դեստունիսը թարգմանել է՝ "Маркиан велел приехать в Византию и дать отчет в своих намерениях", с. 84: Ավելի ճիշտ ἐς τὴν 'Ρωμαίων [արտահայտությունը] հասկացել է Lebeau-ն՝ „venire sur les terres de l'empire" [«ժամանել կայսրության տարածքը»] իմաստով (Le Bas-Empire, VI, p. 387): Muralt-ը հասկանում է [տեղին] նույնպես, ինչ և Գ. Դեստունիսը:

[6] Ըստ Պրիսկոսի, Գուբազը Կոստանդնուպոլիս է ժամանել Լևոն կայսեր օրոք տեղի ունեցած հրդեհից հետո: Հրդեհը պատահեց սեպտեմբերի 2-ին, Ս. Մամասի հիշատակման օրը, Chron. Pasch.:

դուր չեկավ և նույնիսկ հանդիմանության արժանացավ՝ իբրև նորամուծություն: Շուտով, սակայն, Գովազը փաստակեց պալատականների համակրանքը՝ իր բարեհամբույր վարքով և քրիստոնեական սրբությունների պաշտամունքով[1]: Գովազի ժամանումը կայսեր մոտ երբեմն կապվում է այն գժտությանը[2], որ լազերը սկսեցին հարևան սվանների հետ[3]: Երկու ազգակից ցեղերի միջև վեճ ծագեց սահմանակից ամրոցների շուրջ[4]: «Պարսիկները ցանկանում էին պատերազմել նրանց դեմ ամրոցների համար, ասված է .... սվանների .... մոտ, ուստի նրանք ուղարկեցին կայսեր մոտ՝ օգնություն հայցելու»[5]:

Պրիսկոսի բնագիրն այստեղ շատ է խաքարված, և կարելի է միայն կռահել, որ անձնավորությունը, որին վերաբերում է խոսքը, լազերի արքան է, հավանաբար՝ նույն Գովազը: Վիճարկվող ամրոցները գտնվում էին Լազիկայի և Իբերիայի սահմանին: Պարսիկները պահեցին սվանների կողմը՝ ընդդեմ հռոմեացիների հովանավորյալ լազերի: Կայսրը պաշտպան կանգնեց լազերին: Օգնություն խնդրելով՝ լազերի պատվիրակությունը ցանկություն հայտնեց, որպեսզի Լազիկա զորաբանակ ուղարկվեր ոչ թե Բյուզանդիայից, այլ այն զորամասերից, որ տեղակայված էին Հայաստանի հռոմեական մասում: Բանագնացների ցանկությունը երկու նպատակ ուներ. նախ՝ օգնության արագացում, և ամենակարևորը՝ միջոցների տնտեսում, քանի որ բյուզանդական զորքերի՝ Լազիկայում մնալու բոլոր ծախսերը հոգում էր ինքը երկիրը, նաև վտանգից ազատվելուց հետո նույն լազերը պարտավոր էին հատուցել դրանց վերադարձը: Դրանից առաջ տեղի է ունեցել հետևյալ դեպքը. պարսիկների և իբերների կողմից սպառնացող վտանգի պատճառով լազերի արքան հռոմեացիներից օգնություն խնդրեց: Վերջինները զորք ուղարկեցին Հերակլիոսի հրամանատարության ներքո: Հենց զորքը ժամանեց՝ հակառակորդը հանգիստ թողեց լազերին և հարձակվեց հարևան այլ ժողովուրդների վրա: Լազերը հռոմեացիներին ետ ուղարկեցին, առանց նրանց ծառայություններից օգտվելու, բայց մեծ գումարներ ծախսելով նրանց վրա: Որպեսզի այդ բանը չկրկնվեր, լազերը Լևոն I կայսրին խնդրեցին զորքը ուղարկել Հայաստանից: Կայսրը խոստացավ նրանց օգնության ուղարկել դուքսին (զորավարին): Արշավանքի արդյունքների մասին ոչինչ հայտնի չէ:

[1] Proc., p. 160.
[2] Lebeau, VI, p. 449.
[3] Թերևս, այս նկատառումով է բացատրվում այն հանգամանքը, որ սվանների մասին դրվագը Լըբոն վերագրում է 466 թ. (ibid.), Գ. Դեստունիսը՝ 468 թ. (Приск, с. 97), մինչդեռ Բոննի հրատարակության մեջ այն նշվում է 472 թ. ներքո:
[4] Սկանդա և Սարապանա:
[5] Prisc., p. 165.



Պատմագիրների հետագա տեղեկությունները լազերի մասին վերաբերում են 523 թ., լազերի Ծափիոս արքայի ժամանակներին[1]: Միջանկյալ տարիների պատմությունն անհայտ է, կան միայն միջնորդված տվյալներ այն մասին, որ Բյուզանդիան իր տիրույթը զիջել է Պարսկաստանին, և լազերի արքաներն իրենց իշխանության նշանների (ինսիգնիաների) համար դիմում էին ոչ թե Բյուզանդիային, այլ պարսից թագավորներին: Ծափիոսը Դամնազ արքայի որդին էր: Հոր մահվանից հետո նա որոշում է անջատվել պարսիկներից և ճանաչել կայսեր գերիշխանությունը: Գահ բարձրանալով, Ծափիոսը հարկ չհամարեց ներկայանալ Կավատ I-ին, որի հետ նա նույնիսկ բարեկամական հարաբերությունների մեջ էր, այլ իսկույն մեկնեց Կոստանդնուպոլիս: Այս արարքով նա խախտեց Կավատի, իբրև ավատիշխանի, իրավունքը, քանի որ, ինչպես հայտնում է Մալալասը, «երբ վախճանվում էր լազերի արքաներից որևէ մեկը, ապա պարսից արքայի կողմից որպես նրա ժառանգորդ նշանակվում և հաստատվում էր մի այլ անձնավորություն, [ծագումով՝] նույն լազերի ցեղից»: Գովազի օրոք այս իրավունքը կայսրինն էր: Դամնազը՝ Գովազի եթե ոչ թոռը, ապա գոնե մերձավոր ժառանգներից մեկը, արդեն պարսիկներին էր ենթակա: Նրա որդու՝ Ծափիոսի գահ բարձրանալուց ի վեր այդ իշխանությունը նորից անցնում է հռոմեացիներին: Թե՛ առաջին, և թե՛ երկրորդ տերության զուտ ձևական իշխանության պայմաններում այդքան հաճախ անցումները լրիվ հասկանալի են՝ դրանք պայմանավորված են եղել գլխավորապես իրենց՝ լազերի առաջնորդների տրամադրվածությամբ:

Ժամանակագիրների պատկերացմամբ, Ծափիոսի՝ պարսիկներից անջատվելու հիմքում ընկած էր նրա տածած ատելությունը պարսկական հեթանոսության հանդեպ: Թագը Կավատից ընդունելը կապված էր զոհաբերությունների հետ և ուղեկցվելու էր այնպիսի ծեսերով, որոնք գարշելի էին նրա հոգու համար: Այս տհաճ արարողություններից խուսափելու նպատակով է, որ նա մեկնում է Բյուզանդիա և, խոնարհվելով Հուստինոս I-ի առջև, խնդրում է նրան՝ իրեն ճանաչել իբրև արքա: Սիրալիր ընդունելություն գտնելով կայսեր կողմից, Ծափիոսն ընդունեց քրիստոնեություն և կնության վերցրեց Վաղերիանա կույսին, բարձրաստիճան մի պաշտոնյայի՝ նոմոսների պատրիկի, դստերը: Գերագույն իշխանության նշանները, որոնք լազերի արքաները սովորաբար ստացել են կայսրերից, այս անգամ չափազանց շքեղ էին և թանկարժեք. «թագավորական պսակ-վարսակալ՝ հռոմեական եղանակով, սպիտակ քղամիդ (թիկնոց)՝ ծիրանիի փոխարեն, մաքուր մետաքսից, թագավորներին հատուկ ոսկե երիզով, որի մեջտեղում նշմարվում էր մի

[1] Մատիտով՝ «Գովազ՝ 465, Դամնազ, պարսիկ, Ծափիոս»:

պատկեր, որն իր իսկ Հուստինոսի ճշգրիտ կերպարն էր, ապա սպիտակ պատմուճան՝ paragaudia, նույնպես զարդարված թագավորներին վայել ոսկեթել ասեղնագործությամբ, նույնպես կայսեր պատկերով: Ցափիոսի թիկնոցը, ինչպես և կոշիկը (σταγγία), որ նա բերել է հայրենի երկրից, պարսկական սովորությամբ պատված էին մարգարիտներով, դրանցով էր զարդարված նաև գոտին»[1]:

Ստանալով բազմաթիվ շքեղ նվերներ, Ցափիոսը և նրա կինը՝ Վաղերիանան բռնեցին Լազիկայի ճանապարհը: Կավատը դեսպան ուղարկեց Հուստինոս կայսեր մոտ և իր զարմանքը հայտնեց տեղի ունեցած իրադարձությունների առթիվ: Պարսից թագավորը տարօրինակ էր համարում, որ Հուստինոսը, չնայած իրենց միջև եղած խաղաղությանն ու բարեկամությանը, «գործում է իբրև թշնամի և իրեն է վերապահում լազերի արքայի թագադրության [իրավունքը], որը հպատակ է իրեն՝ [Կավատին], և հնուց ի վեր գտնվում էր ոչ թե հռոմեացիների, այլ պարսիկների իշխանության ներքո»[2]:

[1] στεφάνιον ῾Ρωμαικὸν βασιλικόν,

καὶ χλαμύδα ἄσπρον ὁλοσήρικον, ἔχον ἀντὶ πορφυροῦ ταβλίου χρυσοῦν βασιλικὸν ταβλίον, ἐν ᾧ ὑπῆρχεν ἐν μέσῳ στηθάριον ἀληθινόν, ἔχοντα τὸν χαρακτῆρα τοῦ αὐτοῦ βασιλέως ᾽Ιουστίνου

καὶ στιχάριον δὲ ἄσπρον παραγαύδιον,

καὶ αὐτὸ ἔχον χρυσᾶ πλουμία βασιλικὰ, ὡσαύτως ἔχοντα τὸν χαρακτῆρα τοῦ αὐτοῦ βασιλέως,

τὰ σταγγία, ἃ ἐφόρει, ἣν ἀγαγὼν ἀπὸ τῆς ἰδίας αὐτοῦ χώρας, ἔχοντα μαργαρίτας Περσικῷ σχήματι.

ὡμοίως δὲ καὶ ἡ ζώνη αὐτοῦ ὑπῆρχε διὰ μαργαριτῶν.

[diadema Regio more Romano

Chlamus alba holoserica, pro purpureo clavum aureum

Regium habens, cujus in medio sigillum fuit, imperatoris Justini expressam referens effigiem.

Tunica alba Paragaudia, aureis pro more Regio Clavis adornata, et ipsa etiam Imperatoris effigiem prae se ferens, Tzangae, ex regione sua secum adducta, more Persico, margaritis et zona distincta]

**Malalas**, p. 413. սրան համահունչ է **Chronicon Paschale**, այն տարբերությամբ միայն, որ վերջինի բնագրում [կոշիկները կարմիր են՝] τὰ τζαγγία ῥουσαῖα, p. 614: **Theoph.** նույնպես նշում է «կարմիր կոշիկ»՝ τὰ τζαγγία ῥούσια, իսկ [գոտին՝] ζώνη անվանում է [«ոսկե»՝] χρυσῆ, p. 260:

ἔχον ἀντὶ πορφυροῦ ταβλίου χρυσοῦν βασιλικὸν ταβλίον հատվածը Ա. Սեն-Մարտենը թարգմանում է իբրև «ոսկե երիզով, որի վրայով անցնում էր ևս մի ծիրանի երիզ»՝ «avec une bordure en or, surmontant une autre bordure de pourpre», **Lebeau**, VIII, p. 27, not. 4: Ավելի ճիշտ է հասկանում լատիներեն թարգմանիչը. pro purpureo clavum aureum Regium habens [«ծիրանի երիզի փոխարեն՝ ոսկե, թագավորական»], **Malalas**, ib.: Այդպես է ըմբռնել տեղին դեռևս Թեոփանեսը, որի մոտ պարզ երևում է, որ քղամիդն ունի միայն մեկ՝ ոսկե երիզ. χλανίδα βασιλικὴν ἄσπρην ἔχουσαν ταυλὶν χρυσοῦν [«թագավորական քղամիդը՝ սպիտակ, ոսկե երիզով»], **Theoph.**, p. 260, նաև Chron. Pasch., p. 613 «loco purpurae tabulam auream» (ոսկե երիզը ծիրանիի փոխարեն):

[2] **Malalas**, p. 414.



Հուստինոսը, զանց առնելով խնդրի քաղաքական կողմը, Կավատին բացատրություններ ուղարկեց, այն իմաստով, որ «իր մտքով անգամ չէր անցնում պարսիկներից որևէ մեկին իր կողմը գրավել, բայց Ցափիոսն ինքը եկավ Բյուզանդիա՝ հեթանոսական կրոնից փրկվելու համար՝ կրոն, որին բնորոշ են սրբապիղծ զոհաբերություններ և սատանայական մոլորություններ: Քրիստոնյա դառնալով, նա արժանանալու է հավիտենական Աստծու և ամենքի Արարչի շնորհին: Անշուշտ, նա [իմա՛ Հուստինոսը] չէր կարող խանգարել մարդու՝ լավագույն կյանքը փնտրելու և ճշմարիտ Աստծուն ճանաչելու ձգտումներին: Քրիստոնեությունն ընդունելուց և երկնային խորհուրդներին հաղորդվելուց հետո, Հուստինոսը Ցափիոսին թույլատրեց վերադառնալ հայրենիք»[1]:

Հուստինոսի պատասխանը, լոկ ձևական առումով բավարար, ըստ էության պարսիկներին հանգստություն ներշնչել չէր կարող: Նրանց համար լազերի մեջ քրիստոնեության տարածումը (3) հավասար էր երկրում պարսկական ազդեցության նվազման: Երկու տերությունների միջև հարաբերությունները սրվեցին: Ռազմական անակնկալները կանխելու նպատակով Հուստինոսը բանակցություններ վարեց հոների արքա Զիլգիբի հետ և արժեքավոր նվերների միջոցով ստացավ նրա խոստումը՝ պարսիկների դեմ պատերազմի դեպքում իրեն աջակցելու մասին: Հուստինոսից հետո Կավատը ևս դիմեց Զիլգիբին՝ նույն առաջարկով: Այդ ժամանակ հոների արքան, դրժելով կայսեր տված իր երդումը, անցավ պարսիկների կողմը և 20 հազարանոց զորքով գրոհեց հռոմեացիների վրա: Հուստինոս կայսրը, Զիլգիբի վարվելակերպից դառնացած, պատվիրակներ ուղարկեց Կավատի մոտ՝ հաշտություն առաջարկելու և, ի միջի այլոց, մերկացրեց հոների արքայի երդմնազանցությունը, զգուշացրեց նրան այն բանի համար, որ հոները հռոմեացիներից դրամ վերցրեցին, և, հավանաբար, վճռական պահին մտադիր են դավաճանելու պարսիկներին ևս: Հուստինոսը նույնիսկ Կավատին կոչ էր անում այսուհետ ապրել եղբայրության և բարեկամության սկզբունքներով, «որպեսզի այս շները մեզ ծաղր ու ծանակի չենթարկեն»: Կավատը հարցուփորձ արեց Զիլգիբին և, համոզվելով, որ Հուստինոսի խոսքը ճշմարիտ է, սկսեց նրան կասկածել խարդավանքի մեջ: Հոներից բարեհաջող ազատվելու համար Կավատը սպանեց Զիլգիբին, ապա գիշերը հարձակվեց նրա զինվորների վրա, որոնք, անակնկալի եկած, սրի քաշվեցին, և միայն քչերը փրկվեցին փախուստի դիմելով: Հուստինոսի անկեղծությունը ախորժելի էր Կավատին. նա հնարավոր գտավ շարունակել խաղա-

[1] **Malalas**, p. 414.

ղության մասին բանակցությունները և ի պատասխան Հուստինոսի, նրա մոտ ուղարկեց իր դեսպանին հրովարտակով հանդերձ[1]: Այդ հրովարտակում Կավատը խոստանում էր մոռանալ հռոմեացիների թույլ տված բոլոր անիրավությունները և հրաժարվել պատերազմից այն պայմանով, որ Հուստինոսը որդեգրելու է Խոսրով արքայազնին՝ թագաժառանգին[2]:

Կավատի արտառոց առաջարկը Հուստինոսի շրջապատում բազում տարակուսանքներ առաջացրեց: Կարծիքներ էին հնչում՝ միաժամանակ թեր և դեմ: Այդ ժամանակ Կավատից նոր ուղերձ ստացվեց՝ հաշտություն կնքելու համար բանագնացներ ուղարկելու խնդրանքով: Դրան հետևեց երկու կողմերի ներկայացուցիչների խորհրդակցությունը բուն սահմանագծի վրա՝ որդեգրման և խաղաղության այլ պայմանների համակողմանի քննարկման համար: Բանակցությունները, սակայն, ավարտվեցին անարդյունք: Բյուզանդական պատվիրակները քաղաքավարի մերժում էին Կավատի առաջարկները, իսկ պարսիկները վիճարկում էին բյուզանդացիների՝ Լազիկային տիրանալու իրավունքը, և պնդում, որ բյուզանդացիները պարզապես բռնի ուժով են գրավել տարածքները, որոնք վաղուց ի վեր պատկանում էին իրենց՝ պարսիկներին[3]: Ահա այս կետում էր գտնվում խնդրի գլխավոր կնճիռը: Երկարատև վեճերից հետո բանագնացները բաժանվեցին, ոչնչի չհանգելով:

Կավատն արդեն պատրաստվում էր ռազմական ուժով պաշտպանել Լազիկային տիրելու իր իրավունքը, բայց երկրի ներքին քաղաքական-կրոնական խժդժությունները որոշ ժամանակով նրան ետ պահեցին [այդ նախաձեռնությունից]: Ցափիոսի քրիստոնեությունն ընդունելուց հետո լազերի

[1] Malalas. p. 415; Chr. Pasch. διὰ Βροίου p. 616. Մալալասը դեսպանին անվանում է Λαβροιός, բայց նրա առաքելության նպատակը հստակ չի սահմանում: Պրոկոպիոսը նրա անունը չի հիշատակում: Նա, հավանաբար, գլխավորում էր այն «պատվիրակներին», որոնք թագավորի հրովարտակը հանձնեցին Հուստինոսին: Դեսպանի անունն աղավաղված է. երկու ձևերից նախընտրելի է, անշուշտ, Βροιός-ը, որը պարսկերեն է հնչում: λα վանկը, ըստ երևույթին, նախորդ διά [նախդրի] աղավաղված կրկնություն է:

[2] Ա. Սեն-Մարտենն իրավամբ կասկածի է ենթարկում Պրոկոպիոսի՝ այս որդեգրման մասին հաղորդած տեղեկությունների ըմբռնումը հռոմեական adoptio-ի իմաստով: Կավատն ուզում էր գահը փոխանցել իր կրտսեր որդուն, բայց, քանի որ պարսկական օրենքը դա արգելում էր, և կարող էին խոչընդոտներ առաջանալ, Կավատն աշխատում էր գահն իր որդու համար ապահովել կայսեր աջակցությամբ: Պրոկոպիոսի տեղեկությունները, այսպես ասած, խտացրած արձագանքն են բանակցությունների, որոնք վարում էին լոկ այն բանի համար, որ [պարսից] թագավորի մահվանից հետո [կայսրը] իր հովանավորությունը պարգևի թագաժառանգին (Lebeau. VIII, p. 38, not. 4, հմմտ. Г. Дестунис, Прокопий, I, с. 128, прим. 8):

[3] [«Եվ Կողքիս երկրին, որն այժմ անվանվում է Լազիկա և վաղուց ի վեր ենթակա էր պարսիկներին,- ասում էր Սեոսը,- հռոմեացիները տիրում են առանց որևէ պատրվակի, բռնի ուժով»]՝ καὶ γῆν δὲ τὴν Κολχίδα, ἣ νῦν Λαζικὴ ἐπικαλεῖται, Σεόσης ἔλεγε Περσῶν κατήκοον τὸ ἀνέκαθεν οὖσαν βιαζομένους λόγῳ οὐδενὶ Ῥωμαίους ἔχειν (Proc., I, p. 55):



խնդիրը պարսիկներին հետաքրքրում էր ոչ միայն քաղաքական, այլև կրոնական տեսակետից: Կրոնական կողմը պետք է առավել կարևորվեր այն պատճառով, որ մազդեզական շարժման շնորհիվ Պարսկաստանը փոթորկվել էր կրոնական անհանդուրժողականությամբ: Լազիկա արշավելուց առաջ Կավատը հալածեց քրիստոնեությունն Իբերիայում: Այս հալածանքները սերտորեն կապված էին լազական իրադարձությունների հետ և, անկասկած, նախապատրաստված էին պարսիկների վերոնշյալ կրոնական տրամադրությամբ: Դեպի Լազիկա տանող ճանապարհն անցնում էր Իբերիայի՝ իբրև հարևան երկրի միջով: Ցափիոսի դեմ նախատեսված ռազմական գործողությունների հաջող ելքի համար բնավ աննշան չէր Իբերիայի բնակչության բարեհաճությունը: Թեև Իբերիան վասալական կախվածության մեջ էր պարսիկներից, սակայն այն չէր կարող, իբրև քրիստոնեական երկիր, համակիր լինել գործողությունների, որոնք պարսիկները վարում էին նորադարձ Ցափիոսի դեմ: Մինչդեռ Կավատը ցանկանում էր Իբերիայում պարսից կրոնի տարածման շնորհիվ հասնել նույն այն նպատակներին, որոնց հասել է Բյուզանդիան Լազիկայում, որտեղ, Ցափիոսի՝ նոր կրոն ընդունելուց հետո, կայսեր հեղինակությունն ակնհայտորեն աճել էր: Այս նկատառումներից ելնելով, Կավատը խիստ միջոցներ ձեռնարկեց Իբերիայում՝ ընդդեմ քրիստոնեության: Նա Գուրգեն թագավորից (4) պահանջեց, որ «իբերներն ընդունեն պարսկական ծեսերը և, ի միջի այլոց, այլևս չթաղեն մեռյալներին, այլ գցեն ի կերակուր շանց և թռչնոց»[1]: Թե որքան էին պարսիկները խորշում մեռելաթաղից, երևում է այն բանից, որ դրանից առաջ Կավատը չխնայեց նույնիսկ Սեոսին՝ երկրի քաղաքական կարկառուն գործչին և իր իսկ բարեգործին, որին նա պարտական էր թե՛ կյանքով, և թե՛ գահով: Կավատը մահապատժի ենթարկեց Սեոսին այն բանի համար, որ նա, հակառակ պարսկական օրենքների, որոնք արգելում էին դիերը հանձնել հողին, թաղեց իր վախճանված կնոջը[2] (5): Իբերներն իբրև նախանձախնդիր քրիստոնյաներ, և, ըստ Պրոկոպիոսի, քրիստոնեական ծեսերի ավելի խիստ պահպանողներ, քան բոլոր այլ ժողովուրդները, հրաժարվեցին կատարել թագավորի պահանջը: Գուրգեն արքան անցավ Հուստինոսի հովանավորության ներքո և օգնություն հայցեց պարսից բռնության դեմ:

Հուստինոսը խոստացավ պաշտպան կանգնել իբերներին: Նա իր մարդկանց ուղարկեց Քերսոնեսի և Բոսպորի (Սևաստոպոլի և Կերչի) միջև ընկած տարածքում բնակվող հոների մոտ, և փորձում էր նրանց համոզել օգնության հասնել իբերներին: Դա նրան չհաջողվեց, և ստիպված էր

[1] Proc., Pers. I, 12, p. 57.
[2] Ibid

Լազիկա ուղարկել Պետրոս զորավարին մի քանի հոների հետ միասին՝ Գուրգենին օգնելու համար: Իբերների արքան, սակայն, անկարող էր այդքան չնչին օգնության պարագային որևէ բան ձեռնարկել ռազմական ահռելի ուժերի դեմ, որ Կավատն ուղարկել էր Իբերիա՝ «վարիզ» պաշտոնով պարսիկ Բոեսի հրամանատարությամբ[1]: Գուրգենը, կնոջ և զավակների հետ, որոնցից ավագը կրում էր Պերանիոս (Περάνιος) անունը[2], փախավ լազերի երկիր: Որոշ ժամանակ, տեղանքի դժվարանցանելիության շնորհիվ, Գուրգենը շարունակում էր ապաստանել Լազիկայում, բայց հետո՝ պարսիկների ճնշման ներքո, ստիպված էր թողնել երկիրը և հեռանալ Բյուզանդիա: Գուրգենի հետ մեկնեց և Պետրոսը, որը ետ կանչվեց կայսեր կողմից:

Նրանց հեռանալուց հետո լազերի վիճակը խիստ բարդացավ: Ճիշտ է, լեռնանցքները դանդաղեցրին Բոեսի՝ Գուրգենին հետապնդող զորքի առաջխաղացումը, բայց չկար և ոչ մի կասկած, որ պարսիկները կարող էին յուրաքանչյուր պահի ներխուժել երկիր: Հասկանալով թշնամուն դիմագրավելու իրենց անկարողությունը՝ լազերը տեղեկացրին կայսեր, թե իրենք հրաժարվում են երկրի պաշտպանությունից: Իբերիայի հետ սահմանի վրա լազերն ունեցել են երկու ամրոց, որոնք իրենք՝ լազերն էին պաշտպանում: Այդ ամրոցներից՝ իբրև խիստ կարևոր առաջավոր պատվարների, Հուստինոսը հեռացրեց լազերին և այնտեղ տեղակայեց հռոմեական պահակազոր: Դրա մասին պատմելով, Պրոկոպիոսն առաջ է ընկնում և հայտնում է, թե հետագայում հռոմեացիները ստիպված եղան լքել այդ ամրոցները, քանի որ լազերը հրաժարվեցին նրանց պարեն մատակարարել. ապա ամրոցներին տիրեցին պարսիկները: Բայց նա լռության է մատնում որոշ միջանկյալ փաստեր, որոնք վկայված են Մալալասի կողմից: Պրոկոպիոսը միայն նշում է, որ Հուստինոսը մտադիր էր զորք ուղարկել Լազիկա՝ Իրինեոսի հրամանատարությամբ[3]: Բայց բուն արշավանքի մասին նա ոչինչ չի հայտնում: Մինչդեռ Մալալասի երկում այս առթիվ հետաքրքիր տեղեկություններ ենք գտնում:

Մալալասն Իրինեոսի արշավանքը վերագրում է Հուստինիանոս I-ի թագավորության ժամանակներին և դնում նրա երկրորդ հյուպատոսության, այն է՝ 528 թ. ներքո: Ըստ Մալալասի, պարսիկները լազերին պատերազմ են հայտարարել Ցափիոսի՝ հռոմեացիների կողմն անցնելու պատճառով: Գուրգենի հետ ընդհարման վերաբերյալ կարելի է ասել, որ պարսկական զորքը Իբերիայից ուղղվեց Լազիկա՝ Ցափիոսին պատժելու համար: Լա-

[1] Πέρσην, Οὐαρίζην μὲν τὸ ἀξίωμα, Βόην δὲ ὄνομα, Proc., Pers. I, 12, p. 58.
[2] Տե՛ս F. Justi. * Teranios կամ պարս. Pīran:
[3] Proc., P. I, 12, p. 58.



զերի թագավորն օգնություն հայցեց Հուստինիանոսից: Կայսրը ուղարկեց Իրինեոսին և երկու այլ զորավարների (Հիլդերիխին և Կերյուկոսին) պատկառելի զորաբանակով հանդերձ: Սակայն զորավարների անհամերաշխության պատճառով հռոմեացիները զգալի կորուստներ կրեցին՝ փոխադարձ ատելությամբ լցված, նրանք գործում էին ակնհայտորեն ի վնաս միմյանց: Զայրացած Հուստինիանոսը ետ կանչեց նրանց, և այնտեղ ուղարկեց Պետրոսին, որին և վստահեց զորքը: Լազերի օգնությամբ Պետրոսը հաջողությամբ է վարում ռազմական գործողությունները, և ստիպում պարսիկներին նահանջել Լազիկայից[1]: Այդ ժամանակներից ի վեր հռոմեական իշխանությունները սկսեցին զորք պահել Լազիկայում (6):

[1] Malalas., p. 427; Pasch., p. 618; Theoph., p. 267. Պետրոսի հաղթանակների մասին խոսում է Chr. Pasch. և Theoph.: Վերջին հուշարձանների՝ Ցափիոսի մասին պատմության նմանությունը գալիս է, հավանաբար, Մալալասից: Տարբերությունը միայն զորավարների անուններում է. Chr. Pasch. Հիլդերիխի փոխարեն սխալմամբ նշում է Բելիսարիոսին, իսկ Theoph.՝ Բելիսարիոսին, Կերյուկոսին և Պետրոսին, առանց Իրինեոսին հիշատակելու: Մալալասի տվյալները նախընտրելի են (տե՛ս K. Hofmann, Zur Kritik der byzantinischen Quellen für die Römerkrige Kobades, Schweinfurt, 1877, S. 21):

## ՆԻԿԵՓՈՐՈՍ ԾՌԱՎԻՉ-ԾԱՆՐՎԻՉ

**Οὐδὲ τὸν Βάρναν φόβουμαι, οὐδὲ τὸν Νικηφόρον, οὐδὲ τὸν Βαρυτράχηλον**
**[«Չեմ վախենում ո՛չ Վարնասից, ո՛չ Նիկեփորոսից, ո՛չ էլ Վարիտրախիլոսից (Ծանրվզից)»]:**
**Պորփյուրիսի երգից**

Բյուզանդական վիպական երգերի՝ *տրաղուդիների,* ուսումնասիրությունը մեզ հարկադրեց, նախևառաջ, թվագրել դրանք, կամ, գոնե, դրանց այն սկզբնատիպերը, որոնցից, ուղղակիորեն կամ միջնորդաբար, արտածված են ժողովրդական վեպի նշխարները, որ մինչ օրս պահպանվել են մարդկանց հիշողության մեջ: Մեր նախաձեռնությունը հաճախ հանդիպում է որոշ տարակուսանքի՝ իրականում ոչ լուրջ, որը թերևս կարող է թույլ չտալ օգտագործել այս «անթվագիր» երգակները պատմության, կամ թեկուզ պարզապես գրականության պատմության համար: Բարեբախտաբար, պատկառելի քանակով «զուգադիպությունների» շնորհիվ մեզ հաջողվեց համոզել այնպիսի գիտնականի, ինչպիսին է Մ. Ֆ. Դյոլգերը, որ *տրաղուդիի* Անդրոնիկոսն ու Կոստանդինը նույնանում են Անդրոնիկոս և Կոստանդին Դուկասներին (X դարի սկիզբ): Սրանց սխրագործություններն ամենաճշգրիտ կերպով նկարագրել է «Բարսեղ Կրտսերի կյանքի» հեղինակը (X դարի կեսը): Ահա մի հաստատուն կետ. մնացածները ես առայժմ մի կողմ եմ դնում: Բայց անցնենք առաջ:

Մի քանի խոսք նման նուրբ նյութը ուսումնասիրելու մեթոդի մասին: Բանն այն չէ միայն, որ *տրաղուդիում* ներկայացված են պատմական այնպիսի անձինք, որոնց շնորհիվ միայն կարելի է այս *տրաղուդին* թվագրել: Խոսքը հռչակավոր, հանրածանաչ անունների մասին է, ինչպիսիք են, ասենք, Շարլեմանը (1) կամ Նիկեփորոս Փոկասը, [սակայն] վիպերգական արդյունքները, որ պարունակում են այդ անունները, կարող են լինել համեմատաբար նոր: Մյուս կողմից, կան անուններ, որ կրում են տարբեր անձնավորություններ: Բյուզանդիայի պատմության մեջ կա մեկից ավելի Նիկեփորոս: Նույնիսկ Նիկեփորոս Փոկաս անունը [կրողը] միակը չէ: Բայց եթե *տրաղուդիի* մեկ տողում, այսպես ասած՝ «մեկ շնչով» թվարկվում է երկու կամ երեք պատմական անուն, որոնց կրողներն ապրում էին միևնույն դարաշրջանում, այսպիսի «զուգադիպության» թվագրական հավաստիությունը բավականին բարձրանում է: Եվ եթե, ավելին, այդ անուններից մեկը քիչ հայտնի է, կամ առհասարակ անտեսված է բյուզանդական պատմագրության մեջ, ապա մենք մոտենում ենք հավաստիությանը: Այսօր ես կարող եմ, սույն հոդվածն ինձ հետ միասին ստորագրող պարոն Ն. Ադոնցի[1] (2), ինչպես և գերաշնորհ Պ. Պետերսի սիրահոժար գործակցության շնորհիվ (3), թվագրել ամբողջ բյուզանդական դարաշրջանի մատենագրության ամենահայտնի տողերը, ինչպես և դրանք պարունակող *տրաղուդին*:

Խոսքը «Անդրոնիկոսի որդի» [վիպերգի] երկտողի մասին է: Երիտասարդ հերոսը չի վախենում «ո՛չ Պետրոս Փոկասից, ո՛չ Նիկեփորոսից, և ո՛չ Պետրոտախիլոսից, որից վախենում է ամբողջ աշխարհը»: Այս տողերը հաճախ են կրկնվում *տրաղուդիներում* և ունեն բազմաթիվ տարբերակներ: Այսպես, Պորփյուրիսը ևս չի վախենում «ո՛չ Վարնասից (sic!), ո՛չ Նիկեփորոսից, ո՛չ էլ Վարիտրախիլոսից (Ծանրվզից)»[2]:

Այլուր ես ցույց եմ տվել, որ «Պորփյուրիոս»-ը՝ 913 թ. վախճանված Կոստանդին Դուկասի մականունն է: Ուստի այս երկու վիպերգակները բավական հին են, բայց դա չի նշանակում, որ մեջբերվող երկտողը՝ քիչ թե շատ կարծրացած բանաձևը, որ ներմուծվում է ամենուրեք, պատկանում էր երկու *տրաղուդիների* սկզբնաձևերին: Ընդ որում, մնում է որոշել նաև հիշյալ երկտողի սկզբնաձևը: Պետք է կարդալ «Պետրոս Փոկաս», թե՞ «Վարդաս»: «Պետրոտրախիլոս», թե՞ «Վարիտրախիլոս»: Ավելի ճիշտ՝ այս երկու ձևերից ո՞րն էր առկա հնագույն խմբագրության մեջ:

Կնճռոտ հարց է, որն ավելի է բարդանում «Պետրոս Փոկաս» - «Պետրոտրախիլոս», «Վարնաս» - «Վարիտրախիլոս» նմանահնչնությամբ: Ես կանխապես կենթադրեի, որ «Վարդաս – Նիկեփորոս – Վարիտրախիլոս» թվարկումը նվազ «աղճատված» է: Տեսնենք՝ արդյո՞ք հնարավոր է գտնել այս անձանց պատմական նախատիպերը: Վարդասներից ամենահայտնին, անշուշտ, այն բռնատիրողն էր, որը Փոքր Ասիայի զորքի մեծ մասով ապստամբեց երիտասարդ կայսրեր Վասիլ II-ի և Կոստանդին VIII-ի դեմ, պարտվեց և սպանվեց Աբիդոսում 989 թվականին: Գրեթե անկասկած է, որ սա՝ մեր Վարդասն է: Եվ իսկապես, նրա եղբայրը՝ Նիկեփորոս Կույրը, հայտնի հերոսներից երկրորդն է: Թեպետ Վարդաս Փոկաս – Նիկեփորոս զույգը հանդիպում է մի քանի անգամ ևս, օրինակ՝ Նիկեփորոս Փոկաս կայսրը եղել է Վարդաս կեսարի որդին: Սրանց զանազանելու համար պետք է պարզել երրորդ անձնավորության՝ Վարիտրախիլոսի, «Ծանրավզի», ինքնությունը:

---

[1] Իրականում նա է այս հոդվածի իսկական հեղինակը:
[2] Բավական է հղել C. Sathas - E. Legrand, Les Exploits de Digénis Akritas, pp. XLVII և CII:

Մինչդեռ բյուզանդական ժամանակագիրները չգիտեն ո՛չ Վարդախի-լոսին և ո՛չ էլ Պետրոտրախիլոսին: Կ. Սաքասն և Է. Լեզրանը գրում են. «Այս զորավարը ոչ մի կերպ չի հիշատակվում բյուզանդական ժամանակագրու-թյուններում, և պատմության լռությունը մեզ իրավունք է տալիս առավել զարմանալու, քանզի, եթե հավատ ընծայենք ժողովրդական բանաստեղծ-ներին, ապա այս անունը կրում էր մի հռչակավոր զորական, որն, ինչպես ասվում է, ստիպում էր դողալ ամբողջ աշխարհը»:

Սակայն, բախտբախտաբար, հայ և արաբ պատմագիրները լրացնում են բյուզանդական ժամանակագրությունների լռության [պատճառով առա-ջացած բացը]: Ըստ նրանց, 989 թ. ընդդեմ կայսրության ընդվզած Փոկաս-ները երկուսը չէին, այլ երեքը. Վարդաս Փոկասը, Նիկեփորոս Փոկաս Կույրը և Նիկեփորոս Փոկաս Ծռավիզը՝ Վարդասի որդին:

* * *

Այս վերջինը երկար պատմություն ունի: Բայց այն շարադրելու համար մենք ստիպված կլինենք գրեթե բացառապես արաբերեն և հայերեն վավե-րագրերին դիմել: Նախքան այս ռոմանտիկ կենսագրությունն ուրվագծելը, հակիրճ հիշեցնենք այն, ինչ մեզ հայտնի է Փոկասների ընտանիքի մասին (4):

Այս փայլուն տոհմի առաջին ներկայացուցիչը Նիկեփորոս Փոկասն էր[1], Վասիլ I-ի և Լևոն VI Իմաստասերի մեծ զորավարը: Նա երեք զավակ ուներ՝ Վարդաս, Լևոն (Սիմեոնի և Մանուելի հայրը) և Միքայել, որը վանա-կան է դարձել: Երեց Վարդաս I-ից, որը վախճանվեց մոտ 964 թ. զառամյալ հասակում իբրև կեսար, ծնվեց 1. Նիկեփոր II Փոկասը՝ կայսրը (963-969), 2. Լևոն II, որը եղբոր կողմից արժանացել է կյուրոպաղատի տիտղոսի, 3. Կոստանդինը, որը զոհվել է Հալեպում: Նիկեփորոսը մի որդի է ունեցել, որը մահացել է երիտասարդ հասակում՝ Վարդաս III Փոկաս:

Լևոն Փոկասը՝ կյուրոպաղատը, որի պատկերանկարը հայր Պ.Գ. դը Ժերֆանյոնը վերջերս հայտնաբերել է Կապադովկիայի մի եկեղեցում, իր եղբոր սպանությունից հետո, երեք որդիներով՝ Նիկեփորոս III, Վարդաս IV և Պետրոս կամ Պետրոնաս (որն ընտանիքում միակն էր նման անունով), 970 թվականին Հովհաննես Չմշկիկի [կարգադրությամբ] հեռացվեց արքու-նիքից: Չմշկիկն իրավացի էր, երբ զգուշանում էր հմուտ զորականների այդ երամից:

Վարդաս IV-ն առաջինն էր, որն ապստամբեց՝ 970 թվականին: Սա-կայն պարտվեց և ստիպված արգելափակվեց վանքում:

Մի տարի անց, նրա հայրը՝ Լևոն կյուրոպաղատը, իր երեց որդու՝ Նի-

[1] Այլ Փոկասների մասին տե՛ս G. Buckler, «Byzantion», t. VI (1931), pp. 409-410:



կեփորոս III-ի, հետ միասին, դավադրություն կազմակերպեց ընդդեմ Հով-հաննես Չմշկիկի: Նրանց ձերբակալեցին և կուրացրեցին:

Վերջապես, Պետրոսը, մնալով [կայսեր] հավատարիմ, աչքի է ընկել ապստամբ Վարդաս Սկլերոսի դեմ վարած պատերազմում, և 977 թվա-կանին զոհվել Փոքր Ասիայում՝ մարտի դաշտում,:

Հայտնի է, որ Վասիլ II-ը, սարսափելով Սկլերոսի հաջողություններից, վանքից հանել տվեց Վարդաս IV-ին, որպեսզի նրան ուղարկի «բռնակալի» դեմ: Վարդասը հաղթեց Սկլերոսին, սակայն 987 թ. ինքը նոր «ապստամբու-թյան դրոշը» բարձրացրեց և իրեն կայսր հռչակեց: Նա զոհվեց, ինչպես արդեն ասացինք և ինչպես բոլորը գիտեն, 989 թվին Աբիդոսի արյունահեղ ճակատամարտում[1]:

Կրկնենք, որ Վարդաս IV-ին օժանդակում էին նրա եղբայր Նիկեփորոս III Կույրը և որդին՝ Նիկեփորոս IV-ը:

Այս վերջին անձնավորությունն է, որին 989 թ. իրադարձությունների կապակցությամբ ճանաչում են միայն արևելյան հեղինակները:

Նիկեփորոս IV-ը չի եղել ո՛չ Աբիդոսում, և ո՛չ էլ Քրիսոպոլիսում: Նա հոր կողմից Վիրք է ուղարկվել՝ [Դավիթ կյուրոպաղատից] հեծելազոր խնդրելու համար:

Պարոն Գ. Շլյումբերժեն գրում է. «Վարդասը շտապ ուղարկեց վաղեմի դաշնակցի՝ Տայքի կամ Իբերիայի թագավոր-կյուրոպաղատ Դավթի մոտ (հենց այն Դավթի, որ նրան տրամադրել էր վրացիների՝ [այդքան] շահե-կան օժանդակ զորքը) իր երկրորդ հարազատ որդուն, Նիկեփորոսին, որի մականունը Ծռավիզ էր՝ ինչ-որ մարմնական արատի պատճառով ... Վրաց հզոր տիրակալը բարյացակամորեն ընդունեց իր հին զինակցի որդուն և տրամադրեց նրան հազար հեծյալներից բաղկացած օժանդակ զորք իր ամենահավատարիմ զորավարների գլխավորությամբ: Գրեթե անմիջապես դրանց պետք է հետևեր ևս հազարը, որոնց թվում էին Բագրատի երկու որդիները»[2]: Նախատեսվում էր, որ սրանք պետք է դիմագրավեին Տարոնա-ցի մագիստրոսի զորքին, որը Վասիլ կայսրը շտապ ուղարկել էր Տրապիզոն, Վարդասի թիկունքում գործելու համար:

Իսկ այժմ մեջբերենք Յահյա իբն Սայիդ Անտիոքցու [վկայությունը] վերջերս լույս տեսած՝ պարոններ Ի. Կրաչկովսկու և Ա. Վասիլևի թարգմա-նությամբ. «Նրանք վրա հասան Տարոնացուն և փախուստի մատնեցին:

[1] Տե՛ս «Byzantion», t. IV (1927-1928), p. 698. Ճակատամարտին նվիրված է հուշային վիմագիր արձանագրություն. ἤς [այսինքն՝ εἰς] τὴν σφαγὴν Βάρδα Φωκᾶ՝ «Վարդաս Փոկասի սպանության առթիվ»:

[2] G. Schlumberger, L' Épopée Byzantine à la fin du dixième siècle, t. I, Paris, 1896, p. 746 sqq.

Բայց այդ պահին նրանց լուր է հասել ծովային այն պարտության մասին, որ Վասիլ կայսրը հասցրել էր Փոկասին Քրիսոպոլիսի մոտ: Դավիթ Վրացու ծառան իր մարդկանցով հանդերձ իսկույն վերադարձավ իր երկիրը, նույն կերպ վարվեցին Բագրատի երկու որդիները: (Նիկեփորոսի) առջև իրենց արդարացնելու համար նրանք ասացին, որ կատարել են այն, ինչ իրենցից պահանջվում էր, այսինքն՝ կռվեցին Տարոնացու դեմ: Նիկեփորոսի՝ Փոկասի որդու, հետ եղած զորքը ցրվեց, իսկ ինքը գնաց մոր մոտ, որը գտնվում էր այն ամրոցում, որտեղ փակվել էր Սկլերոսը»[1]:

Աբիդոսի ճակատամարտից հետո (13 ապրիլի 989) Վարդաս Փոկասի այրին Սկլերոսին ազատություն է վերադարձնում: «Այսպիսով Սկլերոսի շուրջ հավաքվեցին բոլոր նրանք, ովքեր Փոկասի հետ ապստամբել էին Վասիլ կայսեր դեմ և (Սկլերոսը) հագավ կարմիր կոշիկ: Ծռավիզ Նիկեփորոսը[2] դարձավ նրա կուսակիցը: Այս միջոցին Կոստանդին VIII-ը Վարդաս Սկլերոսի մոտ մի բանագնաց է ուղարկում և խոստանում միջնորդել նրա և իր եղբոր՝ Վասիլ կայսեր միջև, եթե <Սկլերոսը> վերստին հնազանդվի»:

Եվ իսկապես, Սկլերոսն անձնատուր է լինում (989 թ. հոկտեմբեր): Ասում են, որ նա ստացել է կյուրոպաղատի տիտղոս: Նրա կողմնակիցները նույնպես ամեն կերպ պարգևատրվեցին և պատվեցին: Նիկեփորոսը, ասում է Յահյան, պատկառելի կալվածք է ստացել (5):

Երեսունմեկ տարվա ընթացքում «Ծռավիզ» Նիկեփորոսը խաղաղ մնաց: Սակայն նրա պատմությունը չավարտվեց: Այն ինչպես սկսվեց, այդպես էլ վերջացավ՝ ապստամբությամբ: 1022 թ., գրում է Կեդրենոսը, գրեթե Վասիլ II-ի կայսրության ավարտին, երկու զորավար՝ Նիկեփորոս Փոկասը և Նիկեփորոս Քսիֆիասը, առաջինը՝ հռչակավոր Վարդաս Փոկասի որդին, երկրորդը՝ բուլղարների դեմ պատերազմում հռչակվածը, դժգոհելով, որ նրանց չի հասել ընդդեմ աբխազների [պատրաստվող] արշավանքի հրամանատարությունը, ապստամբություն բարձրացրեցին: Կեդրենոսի կամ, ավելի շուտ, Սկիլիցեսի վկայությունը հետաքրքիր է հատկապես նրանով, որ ցույց է տալիս, թե խռովարարներն իրենց կողմնակիցներին որ շրջաններից էին հավաքագրում. Λαὸν ὡς ἔτυχεν ἠθροικότες ἀπὸ τε Καππαδοκίας καὶ ʽΡοδάντου καὶ τῶν πέριξ χωρίων [«Մարդկանց էին հավաքել որտեղից որ պատահի՝ Կապադովկիայից, Ռոդանտոսից և շրջակա վայրերից»][3]: Մենք արդեն պարզեցինք, թե որտեղ է գտնվում բյուզանդական հեղինակնե-

[1] Histoire de Yahya-Ibn-Sa'id d'Antioche, fasc. II, éd. par I. Kratchkovsky et A. Vasiliev, "Patrologia Orientalis", t. XXIII, Paris, 1932, pp. 424-425.

[2] Ճիշտն ասած, արաբ [հեղինակը] Նիկեփորոսին երբեք այդպես չի անվանում, տե՛ս ներքևը, էջ 210 (6):

[3] Cedrenus, II, 477.



րի կողմից բավական հազվադեպ հիշատակվող Ռոդանդոս կամ Ռոդանտոս բերդամրոցը[1]: Դա Ֆարասան կամ Ֆառաշն է, Զամանտու-սու գետի ափին: Մինչև ազգաբնակչության փոփոխումը Ֆարասան մնում էր Կապադովկիայի հելլենական մշակույթի կարևորագույն կենտրոններից մեկը: Եվ դա խիստ շահեկան է, իմանալ, որ «Ծռավիզ» Նիկեփորոսը եղել է առավելապես կապադովկացիների հերոսը՝ այն կապադովկացիների, որոնք և պահպանեցին հաճախ կրկնվող Πετροτράχηλος կամ Βαρυτράχηλος անունները պարունակող միջնադարյան վիպերգակները:

Հայ պատմիչ Արիստակես [Լաստիվերտցին] (XI դարի կես) այդ ապստամբության մասին իր պատմափիլիսոփայական մտորումներն է շարադրում: Նա հիշեցնում է նախորդ՝ Վարդաս Սկլերոսի և Վարդաս Փոկասի, ընդվզումների մասին և դրանց՝ լիովին պարտված լինելը: «Նոյնպէս և աստ,- շարունակում է նա,- ոչ ինչ յերկարեցաւ նոցա մանկական խաղուն արարուած, և կամ ի վերայ աւազոյ շինուած, որ ի բախել հեղեղացն վաղվաղակի անկեալ կործանեցաւ»[2] (7): Արիստակեսը մեզ չի տալիս Փոկասի այն որդու անունը, որին նա հիշում է *Ծռավիզ* մականունով[3]:

Մականունը փոխանցվեց «Վրաց ժամանակագրությանը», որոշ մանրուքներով հանդերձ, որ բացակայում են Արիստակեսի երկում: «Այդ միջոցին Հունաստանում լուրջ ապստամբություն է բռնկվել: Վասիլ [կայսեր] զորահրամանատարը, Քսիֆեսը, դավադրություն կազմակերպելով *Ծարվիզի*՝ ապստամբ Փոկասի զավակի հետ համատեղ, իրեն կայսր հռչակեց, և Արևելքի բոլոր երկրները նրա կողմնակիցները դարձան, և դա հույժ մտահոգում էր Վասիլին: Բայց Աստված պաշտպանեց նրան ամեն կողմից սպառնացող այս դաժան վտանգից: Ծարվիզը սպանվեց Քսիֆեսից, և նրա կողմնակիցներն անջատվեցին: Քսիֆեսն էլ թանկ վճարեց Ծարվիզին դավաճանելու համար. այն բոլոր նրա կողմնակիցները, որ պաշարում էին Դալասենոսների բերդամրոցը, Փոկասի որդու արյան համար վրեժ առնելու նպատակով պայմանավորվեցին, բռնեցին նրան, ուղարկեցին առաջ, բերեցին կայսեր մոտ: Այս իշխանը աքսորվեց ինչ-որ կղզի և ստիպված էր իր զինակիցներից շատերի գլուխները կտրել»:

[1] «Bulletin de Correspondance hellénique», t. XXXIII (1909), p. 119 sqq.

[2] [Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ, Թիֆլիս, 1912, էջ 20:]

[3] «Իսկ բազում յիշխանացն Հոռոմոց, զորս ընդ ժամանակս ժամանակս յայլևայլ պատճառս ի պատուոյ իշխանութենէ ընկեցեալ էր թագաւորին, որք իբրև առիծունս ի գաղագիղս մռնչէին, աստ դիպօղ ժամ գտեալ՝ ի մի վայր ժողովեցան: ... յընդարձակ դաշտին բանակ կապեցին. յորում անթիւ բազմութիւն մարդկան ի մի վայր ժողովեցան, և սկսան զթագաւորական պատիւն յիրևարս հարկանել: Եւ ապա միաբանեալ ամենեցուն՝ բուռն հարին զորդւոյն Փոկասայ, զոր Ծռավիզն կոչէին, որ վասն հօր մեղանացն ի վաղնջուց հետէ յիշխանութեան պատուոյ անկած էր: Որոյ ոչ հաւանեալ՝ չառնու յանձն. որք ոչ թուլացան ի խնդրոյն, այլ բռնադատեալ հաւանեցուցին մինչև յանձն էառ» [նույնը, էջ 18-19]:

Կասկածից վեր է, որ վրաց հեղինակն այստեղ[1] փոխառել է ինչ-որ հայերեն աղբյուրից: Դա ապացուցվում է *Ծարվիզ* մականունով, որը վրացերենում անիմաստ է[2]: Կարելի էր ենթադրել, որ այդ աղբյուրը Արիստակեսն է. սակայն վերջինս չգիտի բյուզանդացի ո՛չ Քսիֆեսին, և ո՛չ Քսիֆիասին: Եթե հայ պատմագիրն այս անունը չի հիշատակում, ուրեմն նա հետևում է Նիկեփորոս Փոկասի սպանության մասին պատմության այլ վարկածի, քան Սկիլիցեսը: Իսկապես, Սկիլիցեսը պատմում է, որ Քսիֆիասն իր դավադիր ընկերոջը ծուղակը գցեց և սպանեց. Ὁ δὲ βασιλεὺς γράμματα γράψας πρός τε τὸν Ξιφίαν καὶ τὸν Φωκᾶν ἐξέπεμψε, παραγγείλας τῷ λαβόντι σπουδάσαι πάντα τρόπον λαθεῖν καὶ ἑκάστῳ ἀσυγγνώστως δεδοκέναι τὸ γράμμα. Τοῦ δὲ ὡς ἐκελεύσθη ποιήσαντος καὶ τὰς ἐπιστολὰς ἐγχειρίσαντος λεληθότως, ὁ μὲν Φωκᾶς εὐθὺς ἐπανέγνω τὴν ἑαυτοῦ τῷ Ξιφίᾳ, ἐκεῖνος δὲ τὴν ἑαυτοῦ ἀποκρύψας καὶ γράμμα δέξασθαι ὅλως ἀπαρνησάμενος ἐν μιᾷ τῶν ἡμερῶν καλεῖ τοῦτον ἐπὶ κοινολογίαν καὶ ἐλθόντα, λόχους ἔχων προευτρεπισμένους, ἀποκτίννυσι. Καὶ ἡ ἐπισύστασις τῶν ἀποστατῶν εὐθὺς διεσκεδάσθη. Τοῦ δὲ θανάτου δὲ Φωκᾶ γνωσθέντος, τῷ βασιλεῖ πέμπεται Θεοφύλακτος ὁ Δαμιανοῦ τοῦ Δαλασσηνοῦ υἱός, καὶ τὸν Ξιφίαν συλλαβὼν ἐκπέμπει δέσμιον πρὸς τὴν βασιλίδα πρὸς Ἰωάννην, τὸν πρωτονοτάριον, ὃς ἐν τῇ νήσῳ τοῦ Ἀντιγόνου μοναχὸν αὐτὸν ἀποκείρει. [«Թագավորը նամակներ ուղարկեց Քսիֆիասի և Փոկասի <համար>, հրամայելով ստացողին ամեն կերպ ջանալ <դա> գաղտնի պահել և ուղերձները <նրանց> այնպես հասցնել, որ մեկը մյուսի մասին չտեղեկանար: Երբ կատարողն արեց, ինչպես հրամայված էր և քաքուն հանձնեց նամակները <հասցեատերերին>, Փոկասն իրեն <ուղղված> թղթի մասին անմիջապես հայտնեց Քսիֆիասին, սակայն վերջինը իրեն <ուղղվածը> թաքցրեց և միանգամայն ժխտելով ուղերձ ստանալու <փաստն> իսկ, մի օր կանչեց <Փոկասին> խորհրդակցելու. երբ սա ժամանեց, <Քսիֆիասը> սպանեց նրան <հարձակվելով> նախապես պատրաստված դարանից: Եվ <այսպես> իսկույն ցրվեց ուրացողների ժողովը: Կայսրն էլ, իմանալով Փոկասի մահվան մասին, ուղարկեց Թեոփիլակտոսին, Դամիանոս Դալասենոսի որդուն, <որը>, ձերբակալելով Քսիֆիասին, կապանքների մեջ նրան ուղարկեց թագավորական պալատ, պրոտոնոտար Հովհաննեսի մոտ, որը նրա մազերը խուզել տվեց և փակեց Անտիգոնոսի կղզու վանքում»]: Արիստակեսը բոլորովին այլ բան է հայտնում. ըստ նրա, դա ոչ թե Քսիֆիասն է եղել, այլ [Վասպուրականի] հայոց արքա Դավիթ-

[1] L'Histoire de la Georgie, éd. Brosset, 1[re] partie, 1[re] livraison, p. 307-308.

[2] Ինչպես և հայերենում: Սակայն պարզ է, որ սա պետք է սրբագրել՝ կամ *Ծռավիզ* (ժողովրդական հայերենում՝ *Ծուռվիզ*), կամ, ինչպես մենք կասենք ներքևը, *Ծանրվիզ* ձևով:



Մեներերիմը, որ սպանել է ապստամբ զորավարին: Արիստակեսը նույնիսկ պնդում է, որ այս առթիվ Դավիթ-Մեներերիմը բազմաթիվ ընծաներ է ստացել կայսրից (8):

Մենք մտադիր չենք ընտրություն կատարել երկու վարկածի միջև: Կարելի է, սակայն, վստահ լինել, որ «Վրաց ժամանակագրության» հայերեն աղբյուրը եղել է պակաս ռոմանտիկ, քան Արիստակեսը, և դրա՝ Սկիլիցեսի հետ էական հանգամանքներում համահունչ լինելը, պատմական հավաստիության յուրատեսակ երաշխիք է[1]: Այս նկատառումները մեզ հարկադրում են առավել լուրջ և ուշադիր դիտել *Ծարվիզ* ձևը, որը, թերևս, ավելի մերձ է սկզբնական ձևին, քան Արիստակեսի *Ծռավիզը*: Հայր Պետերսը, մեզ հետ զուգընթաց, ենթադրել է, որ դա [եղել է] հայերեն *Ծանր(ա)վիզը*, այսինքն՝ ճիշտ βαρυτράχηλος-ը:

Այս ենթադրությունը ավելի հավաստի է դառնում, երբ մենք խորհում ենք հունական վիպերգակների մասին: Այսուհետ կարելի է վստահ լինել, որ Նիկեփորոս IV-ի մականունը եղել է Βαρυτράχηλος: Այս մակդիրի հայերեն համարժեքը պահպանվել է, առանց մեկ տառի, «Վրաց ժամանակագրության» մեջ, և աղճատված՝ մի դրափոխությամբ, որը կատարվել է ժողովրդական ստուգաբանության ազդեցությամբ, Արիստակեսի երկում, որտեղ այն դարձել է *Ծռավիզ:*

Ինչ վերաբերում է Յահյային, ապա նա մեզ տրամադրում է առավել աղճատված մի ձև, որը, սակայն, վերականգնում է, ինչ-որ բանավոր աղբյուրի միջնորդությամբ, Արիստակեսի վկայած ձևը: Իրականում պետք չէ հավատ ընծայել Վասիլև-Կրաչկովսկու հրատարակության ֆրանսերեն թարգմանությանը. Այն ազդված է Գ. Շլումբերժեի աշխատությունից: Ա. Վասիլևը երկու անգամ թարգմանում է. «ծռավիզ սրիկա»: Արաբերենը, սակայն, չունի երկու մակդիր: Դա ընդամենը ***Niqfur al-mo'ağğ***՝ Նիկեփորոս Ծռված կամ Ոլորված: «Վիզ» բառի և ոչ մի հետք չկա: Արաբերեն բառը կարող է Ծռավիզ մակդիրի առաջին տարրի թարգմանությունը լինել:

Պ. Պետերսը հնարագետ գտնվեց մի ավելի բարդ բան ենթադրելու: Նա եզրակացրեց, որ այս ամենը սկիզբ է առնում մի շփոթմունքից, որն առաջացել է ինչ-որ հայերեն աղբյուրի հատուկ խիստ տառացի թարգմանությունից: Այս աղբյուրը՝ գրավոր կամ բանավոր, Նիկեփորիոսին առհասարակ ոչ մի «մականուն» չէր շնորհել: Հայերեն աղբյուրը, տուրք տալով ազգային մտայնությանը, թարգմանել էր ... տոհմական «Փոկաս» անունը:

Պետք է իմանալ, որ «փոկաս» հայերեն հնչում է իբրև *ծովեզն* (9): Եվ

[1] Համենայնդեպս այնու, որ այն չի ընդմիջարկվել բյուզանդական պատումով: «Վրաց ժամանակագրությունը» ուշ ժամանակաշրջանի բանաքաղություն է, բայց մեզ չի թվում, որ դրա աղբյուրները լրջորեն ուսումնասիրվել են:

սա այն բառն է, որն աղավաղվելով ընդունել է *ծռավիզ* և *ծարվիզ* ձևերը: Եթե դա այդպես է, ապա այս անձնավորությանը վերաբերող բոլոր պատմական ավանդությունները՝ հայկականը, վրացականը, արաբականը և նույնիսկ հունականը (համենայնդեպս, *տրապեզունտիներինը*), [իրենց գոյությամբ] պարտական են մի մտացածին հայերեն թարգմանության: Դա նշանակում է, որ բյուզանդական վիպերգության համար պետք է ընդունել հայերեն սուբստրատի [առկայությունը]: Պետք է խոստովանեմ, որ ես երբեք չէի համարձակվի հասնել այս կետին: Պարոն Ադոնցը տարակուսում է, թե արդյոք *ծռվեզն* բառը իբրև *փոկասի* [համարժեք] հանդիպել է հին հայերենում, և իբրև պատահական է դիտում *ծռվեզն* և *ծարվիզ* բառերի անառարկելի նմանությունը[1]:

Ես, իմ կողմից, նույնպես դժվարանում եմ հետևել Պ.Պետերսին, որը համարձակվում է ենթադրել, որ խնդրո առարկա հունական վիպերգերը յուրատեսակ թարգմանություններ են հայկական էպիկական երգերի, որոնցում *ծռավիզ* ձևը առաջանալով գիտական շփոթմունքի արդյունքում՝ դարձել է, անշուշտ, Նիկեփորոսի արկածախնդրությունը բնութագրող մակդիր: Դժվար թե պետք է կրկնել, որ մենք չունենք այդ հայկական երգերը:

* * *

Ինչևիցե, երկու արևելագետների շնորհիվ լուծված է հունական էպոսի հետ կապված մի խնդիր ևս[2]: Մենք պարզեցինք *տրապեզունտի* Βαρυτράχη-

[1] Այս [դիտողությանը] Պ. Պետերսը պատասխանում է. «Բացատրական եզրը, որը հայերենում արտահայտում էր *փոկաս* բառի ստուգաբանական իմաստը, կարող է լինել միայն *ծռվեզն*, անգամ եթե բառը բարձրորակ գրական լեզվին չի պատկանում»:

[2] Ահա մի տոհմածառ, որը, կարծում ենք, երևելի է դարձնում ուսումնասիրված տարբեր աղբյուրների փոխհարաբերությունները: Նիկեփորոս IV Փոկասը կրում էր հետևյալ մականունները.






λος-ի ով լինելը: Դա Նիկեփորոս IV Փոկասն էր, բռնատիրող Վարդասի որդին, որը հիշատակված է 989 և 1022 թվականների ապստամբությունների կապակցությամբ, և այս վերջին թվականին զոհված: Տողը, ինչպես և ամբողջ երգը այսպիսով թվագրված է, կարելի է ասել, ամենայն հավաստիությամբ, քանի որ այս անձնավորության վարկը, նրա «անվան աղմուկը», և ոչ պակաս՝ մականվան, չէր եղել բյուզանդական «գրականության» (այս բառի բուն իմաստով) արձագանքը: Սակայն Տրապիզոնը մոռացության չմատնեց ո՛չ պարտված Βαρυτράχηλος-ին, ո՛չ էլ, առավել ևս, Տարոնացի մագիստրոսին: Որովհետև հենց Տրապիզոնում առաջին անգամ գրի առնվեց «Պորփյուրիսի երգը»…

Ի՞նչ կարելի է ասել «Պետրոս Փոկաս, Նիկեփորոս, Πετροτράχηλος» տարբերակի մասին: Մեր կարծիքով, հետևյալը: Թվում է, թե Պետրոս Փոկասի անունը նույնպես հարմարվում է որոշակի տարեթվի, քանի որ մեզ հայտնի է միայն մեկ Պետրոս Փոկաս, որը զոհվել էր 977 թ. Սկլերոսի դեմ ճակատամարտում[1]: Հիշեցնեմ, որ Պետրոսը եղել է Լևոն կյուրոպաղատի երրորդ որդին, Նիկեփորոս Կույրի և Վարդասի եղբայրը: Կարելի է ենթադրել, որ «Ո՛չ Պետրոս Փոկաս, ո՛չ էլ Նիկեփորոս»-ը սկզբնապես մի կոչ էր, որը երգում էին Վարդաս Սկլերոսի զորականները, հեղելով այն կայսրին: Կարելի՞ էր 977 թ. պատկերացնել որևէ մեկին, որ ավելի բարձր դիրքում գտնվեր, քան Պետրոսը և, այդ ժամանակ դեռ միանգամայն երիտասարդ, նրա եղբայրը՝ Նիկեփորոս IV-ը: Չեմ կարծում: Երկրորդ տողի Πετροτράχηλος-ը պետք է որ առաջացած լիներ 989 թ. [կապակցությամբ] երեք Փոկաս եղբայրներին նվիրված երկտողի վերջին տողի ներխուժման պատճառով: Թվում է, թե Πετροτράχηλος տարբերակը նույնպես ձևավորվել է նույն Πετρός անունով թելադրված նմանաձայնության շնորհիվ:

[1] **G. Schlumberger**, L' Épopée Byzantine à la fin du dixième siècle, t. I, Paris, 1896, p. 385.

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅԻ ԿԱՅՍՐԵՐ ՄՈՐԻԿԻ ԵՎ ԿՈՍՏԱՆԴԻՆ V-Ի ՄԱՍԻՆ

(էջ 21)

Գրված է 1932 թ. Բրյուսելում: Ն. Ադոնցի առաջին ուսումնասիրությունն է, որ տպագրվել է տեղի Ազատ համալսարանի տեղեկագրում՝ «Les Légendes de Maurice et de Constantin V, empereur de Byzance» (տե՛ս «Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales et Slaves», t. II, Bruxelles, 1933-1934, p.1-12): Երկրորդ անգամ լույս է տեսել «Études Arméno-Byzantines» ժողովածուում (Lisbonne, 1965, p. 125-136):

Թարգմանությունը կատարվել է ըստ այս հրատարակության:

1. Ուշագրավ ստուգաբանություն է, որը կապում է Փոկաս անունը ոչ թե հնչյունային առումով շատ մերձ φώκη՝ «փոկ, ծովաշուն, ծովեզ» բառի, այլ *pho արմատի հետ, որը ներկայացված է և՛ հունարեն φωκτός, ή, όν՝ «տապակած, խորոված» ածականում, և՛ լատիներեն foveo՝ «տաքացնել, տապակել», focus՝ «օջախ, կրակարան», և այլ նույնարմատ բառերում [O. Վ.][1]: - Էջ 22:

2. Տիբերիոս II Կոստանդինոս (**Flavius Tiberius Constantinus Augustus**), Հուստինոս II-ի գահակից կայսր (574-578, հոկտեմբերի 4), ապա ինքնակալ մինչև 582 թ. օգոստոսի 14-ը [O. Վ.]: - Էջ 23:

3. Մորիկ (Մավրիկիոս) կայսեր առավել վավերական կենսագրությունը ավանդում է նրա կրտսեր ժամանակակից Թեոփիլակտոս Սիմոկատան (**Theophylacti Simocattae Historia**, ed. C. de Boor, Lipsiae, 1887, տե՛ս հատկապես առաջին գիրքը): - Էջ 24:

4. Կապադովկիայի **Arabissos** քաղաքը վկայված է IV դարից ոչ կանուխ (տե՛ս **I. Shahod**, Byzantium and the Arabs in the fifth century, Dumbarton Oaks, HU, 1989,

[1] [O. Վ.] անվանատառերով ծանոթագրությունները կազմել է O. Ս. Վարդազարյանը:

2006, pp. 275-276, 327-328)։ Կարևոր ռազմավարական կետ էր Տավրոսի հյուսիսային լանջին, որից սկիզբ է առնում դեպի Գերմանիկե (Մարաշ) տանող լեռնանցքը (**W.M.Ramsay**, The Historical Geography of Asia Minor, Cambridge UP, 2010, pp. 35, 276-277, 279, 311-312) [Օ. Վ.]։ - Էջ 24։

5. **Տե՛ս աստ, էջ 117-118։ - Էջ 24։**

6. Տիբերիոսը գահը Մորիկին է հանձնել 582 օգոստոսի 13-ին։ Այդ արարողության ժամանակ նրա արտասանած ընդարձակ ճառի բնագիրը տե՛ս **Theophylacti Simocattae** I, 5-21։ - Էջ 24։

7. Խոսքը Մորիկի՝ Գորդիա քրոջ մասին է։ - Էջ 27։

8. Պարսից Խոսրով II Փարվեզ թագավորին ուղղված Մորիկի նամակի բնագիրը տե՛ս **Սեբեոս**, Պատմություն, Երևան, 1979, էջ 86-87։ - Էջ 27։

9. Ֆրանսիացի բյուզանդագետ Պ. Գուբերը համոզված պնդում է, որ «Մորիկը ո՛չ հայ էր և ո՛չ էլ հայասեր» (տե՛ս **P. Goubert**, Byzance avant l'Islam, t.1, Paris, 1951, pp. 36-39)։ Մորիկին վերաբերող հայկական աղբյուրների մասին տե՛ս նաև Լ. Մելիքսեթ-Բեկի հոդվածում՝ **Л. М. Меликсет-Бек, Из истории армяно-византийских отношений ("Маврикиевы легенды" в памятниках культуры древней Армении), «Византийский временник», т. 20 (1961), сс. 64-74**։ - Էջ 27։

10. **Տե՛ս E. A. Sophocles**, Greek Lexicon of the Roman and Byzantine Periods (From B. C. 146 to A. D. 1100), s.v. καβαλλῖνος [Օ. Վ.]։ - Էջ 28։

11. Տե՛ս նույն տեղում [Օ. Վ.]։ - Էջ 29։

12. Խոսքը, թերևս, Լուկիոս Տարքվինիոս Գոռոզի նախաձեռնած՝ իր նախորդի, Սերվիոս Տուլլիոսի կողմնակիցների և ծերակուտականների ոչնչացման մասին է (**Titus Livius**, Historia ab Urbe condita, 1, 49, 1-6) [Օ. Վ.]։ - Էջ 29։

13. **Տե՛ս Sextus Aurelius Victor**, Epitome de caesaribus, 39, 6 [Օ. Վ.]։ - Էջ 29։

14. Նշված գիտնականը, ամենայն հավանականությամբ, պարզապես հուշել է Ն. Ադոնցին «Նեապոլի եպիսկոպոսների քրոնիկոնի» համապատասխան հատվածի մասին։ Է. Շտեյնը ոչինչ չէր գրել այս բնագրի վերաբերյալ [Օ. Վ.]։ - Էջ 29։

15. **Gesta episcoporum Neapolitanum** գրվածքը պահպանվել է միակ ձեռագրում՝ **Vaticanus latinus 5007** և հրատարակվել է նախ Ed. G. Waitz-ի կողմից **Scriptores rerum langobardicarum et italicarum saec. VI-IX** ժողովածուում (Hannover, 1878), իբրև Monumenta Germaniae historica մատենաշարի մի հատոր, ապա, քիչ անց՝ **B. Capasso**-ի կողմից, Monumenta ad Neapolitani ducatus historiam pertinentia (Napoli, 1881) գրքում (տե՛ս **S. Gero**, The Legend of Constantine V as Dragon-Slayer, in: "Greek, Roman and Byzantine Studies", vol. 19, No. 2, Summer, 1978, p. 155, n. 3)։ Դժբախտաբար, նույն S. Gero-ի մենագրությունը (**Byzantine Iconoclasm during the Reign of Constantine V, with Particular Attention to the Oriental Sources**, Louvain, 1977, esp. pp. 176-178), որում քննարկվում է Ն. Ադոնցի սույն հոդվածը և Կոստանդին V-ին վերաբերող հայկական աղբյուրները, մեզ անմատչելի էր [Օ. Վ.]։ - Էջ 29։

16. **Տե՛ս L. A. Muratori**, Rerum Italicarum scriptores ab anno aerae Christianae quingentesimo ad milesimum quingentesimum, t. 1, pars 2, Mediolani, 1725, p. 308 [Օ. Վ.]։ - Էջ 31։

17. Խոսքն Օպսիկյան բանակաթեմի ստրատեգոս, Լևոն III Իսավրացու դստեր՝ Աննայի, ամուսնու՝ Արտավազդի մասին է։ Պատկերամարտ Կոստանդին V-ի գահ բարձրանալուց հետո (741) Արտավազդը հենվելով ընդդիմադիր գավառական արիստոկրատիայի և պատկերապաշտ հավատացյալների օժանդակության վրա՝ 742 թ. գրավեց գահը և իշխեց մինչև 743 թ. օգոստոսի 2-ը։ - Էջ 31։

18. Ն. Ադոնցի սույն պնդումն անհասկանալի է. Է. Շտեյնը չի հայտնաբերել և ոչ մի բնագիր, որը հնարավոր դարձներ «Նեապոլի քրոնիկոնի» վնասված տեղիների վերականգնումը։ S. Gero-ն վերոհիշյալ հոդվածում (The Legend of Constantine V as Dragon-Slayer, pp. 157-159), քննարկելով վիշապամարտի հայտնի դիցաբանական դրվագները, մատնանշում է մի զուգահեռ, որը, իր կարծիքով, առավելապես մերձենում է Կոստանդին V-ի հետ կապված ավանդությանը։ Պավսանիասի «Հունաստանի նկարագրություն» երկասիրությունում պահպանվել է պատում ոմն Մենեստրատոսի մասին, որն ինքնազոհ եղավ իր սիրեցյալ Կլեոստրատոսի համար, երբ վերջինին, ըստ վիճակահանության, պետք է տային ի կերակուր վիշապին. «Ասում են, երբ վիճակն ընկել էր Կլեոստրատոսին, նրան սիրող Մենեստրատոսը հորինեց հետևյալ մի խարդախություն. նա պատրաստել տվեց պղնձե զրահ, որի յուրաքանչյուր թիթեղիկն օժտված էր վերև նայող կեռիկով։ Հագնելով այդ զրահը, նա հոժարեց իրեն խժռել տալ վիշապին, վճռելով նահատակվել, բայց և հրեշին սպանել» (**Pausan.**, 9.26.3, **S. Gero**, op. cit. 158)։ Սակայն այստեղ հերոսը, ի տարբերություն «Քրոնիկոնի» Կոստանդինին, զոհվում է։ Եվս երկու դրվագ, որ մատնանշված են S. Gero-ի հոդվածում, թույլ են տալիս վերականգնել Կոստանդինի մասին զրույցի հնարավոր շարունակությունը. դա Հերակլեսի՝ կետ ձկան որովայնից ազատվելու մասին առասպելը և մանդեական մի բնագիր, որի հերոսը նույնպես, ամրացնելով իր վրա տարբեր սուր առարկաներ, իրեն խժռել է տալիս հրեշին, ապա

ազատվում, ճերսից պատառոտելով դրա աղիքները (S. Gero, op. cit., pp. 158-159, n. 18)։ Գուցե սա ևս մի փորձ էր Կոստանդին V-ի հայտնի մականունն արդարացնելու և պատվավոր դարձնելու [Օ. Վ.]: - էջ 31:

19. Փավստոս Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1832, էջ 118: - էջ 31:

20. **Կիրակոս Գանձակեցի**, Պատմութիւն Հայոց, Երևան, 1961, էջ 46-50, 52: - էջ 31:

21. Տե՛ս **Ammiani Marcellini** Res gestae a fine Cornelii Taciti, 25, 7 [Օ.Վ.]: - էջ 31:

22. Տե՛ս **Justiniani** Digestae, 2.13.3. pr.1, 2.14.7.2.4 և այլուր (10 հղում) [Օ.Վ.]: - էջ 31:

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐ ԼԵՎՈՆ V-Ի ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ
(էջ 33)

Գրված է 1927 թ. Փարիզում: «Sur l'origine de Léon V, Empereur de Byzance» խորագրով լույս է տեսել «Armeniaca» ժողովածուում (Zeitschrift für die Erforschung der Sprache und Kultur Armeniens, ed. K.Roth, Leipzig, 1927, fasc. II, SS. 1-10): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (Lisbonne, 1965, pp. 37-46):

Ն. Ադոնցի բեյրության թղթոնում առկա է ֆրանսերեն բնագրի սևագիր, սակայն անավարտ մի օրինակ (տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Զ, թղթածրար Ա-8):

Թարգմանությունը կատարվել է ըստ լիսաբոնյան հրատարակության:

1. Այժմ բյուզանդագիտության մեջ որևէ կասկած չկա Լևոն V-ի հայկական ծագման վերաբերյալ: Հայտնի է, որ նա որդին էր Արմենիակների բանակաթեմի զորավար Վարդի (Վարդաս): Լևոնը եղել է Անատոլիկոն բանակաթեմի մագիստրոս: Կայսր է հռչակվել 813 թ. հուլիսի 11-ին բանակի և զինվորական ազնվականության կողմից և զահակալել մինչև 820 թվականի դեկտեմբերի 26-ը: - էջ 33:

2. Բնագրում՝ աքսորվել [Օ. Վ.]: - էջ 33:



3. Հովսեպոսի երկասիրության քննական բնագրում այս անունները հունական են ցված են. Ἀνδρομάχου καὶ Σελευκάρου: Մեզ չհաջողվեց պարզել, թե որ հրատարակությունից է մեջբերել Ն. Ադոնցը [Օ. Վ.]: - էջ 35:

4. «Արդամուլան», «Արգամուլան» և այլ տարընթերցվածներ Ն. Ադոնցի ֆրանսերեն բնագրում պայմանավորված են նրանով, որ նա պահպանել է իր օգտագործած աղբյուրների ընթերցվածները [Օ. Վ.]: - էջ 36:

5. Այս խնդրին Ն. Ադոնցն անդրադարձել է նաև «Քննական պատմություն Հայոց»-ի առաջին գրքում (տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, հատ.Դ, Երևան, 2009, էջ 153-155): - էջ 39:

6. Տե՛ս **Georgii Cyprii** Descriptio orbis Romani, accedit **Leonis Imperatoris** Diatyposis genuina adhuc inedita, ed. H. Gelzer, in aedibus B. G. Teubneri, p. 48 [Օ. Վ.]: - էջ 39:

7. Խոսքը Անատոլիկոն բանակաթեմի մագիստրոս, Արևելքի զորքերի դոմեստիկոս «Թուրք» մականվանյալ Վարդան (հավանաբար Մամիկոնյան) զորավարի մասին է: 803 թ. հուլիսի 19-ին բանակի կողմից հռչակվել է կայսր: - էջ 41:

8. Ակնարկում է 808 թ. փետրվարին Նիկեփորոս I-ին ընդդիմադիր ազնվականության կողմից կայսր հռչակված քվեստոր Արշավիր պատրիկին: - էջ 41:

9. Ավելի մանրամասն Թովմա «Սլավոնի» հրահրած խռովարգույն ժողովրդական շարժման մասին տե՛ս **Е. Э. Липшиц**, **Восстание Фомы Славянина и византийское крестьянство на грани VIII-IX вв.** ("Вестник древней истории", № 1, 1939): Հնարավոր է, որ նա, ինչպես վկայում է Գենեսիոսը (**Genes.**, 8, հմմտ. նույնը, 32) ազգությամբ մասամբ հայ էր [Օ. Վ.]: - էջ 42:

10. Խոսքը 762 թ. Վասպուրականում բռնկված հակաարաբական ապստամբության մասին է: - էջ 42:

11. Ղևոնդ պատմիչը հարկ է համարել հատուկ շեշտել այս բացառական երևույթը. «Ոմանք ի նախարարացն Հայոց ... փախստեալ անկան յաշխարհն Յունաց, ապաւինեալք առ կայսրն Կոստանդին» (տե՛ս **Ղևոնդ**, Պատմութիւն, էջ 133): - էջ 42:

## ԿԱՍԻԱ ՄԻԱՆՁՆՈՒՀԻՆ ԵՎ ՀԱՅԵՐԸ

(էջ 43)

Գրված է 1901 թ. Մյունխենում ի պատասխան բյուզանդագետ Կարլ Կրումբախերի «Kasia» (Sitzungberichte der Bayerischen Akad. d. Wiss., Philos.-philol. und histor. Kl., 1897, SS. 305-370) ուսումնասիրության: Բնագիրը պահվում է Վիեննական Մխիթարյան միաբանության արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հանդես ամսօրյա» պարբերականում (1901, № 5-6, մայիս-հունիս, էջ 129-132): Նշելի է, որ այս հոդվածը Ն. Ադոնցի բյուզանդագիտական հետազոտությունների երախայրիքն է:

Արտատպված է նշված հրատարակությունից: Ծանոթագրությունները Օ. Ս. Վարդազարյանի:

1. Խոսքը **K. Krumbacher**, Kasia, Munich, 1897 աշխատության մասին է: - էջ 43:

2. Այս առեղծվածային դրվագում Թեոփիլոսն ու Կասիան, երկուսն էլ՝ փայլուն կրթվածությամբ աչքի ընկնող անձնավորություններ, պարզապես փոխանակում են Հովհաննես Ոսկեբերանի «Ավետման տոնի առթիվ» ճառից վերցված միևնույն նախադասության հատվածները (PG., 50, col. 795): Դժվար թե դա համարվեր անպարկեշտություն: Վերջերս Т. А. Сенина (Монахиня Кассия) ցույց է տվել, որ արքայազնի և աղջկա զրույցն ավելի հարմար է մեկնաբանել «ռոմանտիկ» եղանակով. նախադասության առաջին կեսն ակնարկում է նախամոր Եվային, ուստի և երկրային ամուսնությունը և դրանից բխող բոլոր հոգսերն ու չարիքները, մինչդեռ երկրորդ կեսը վերաբերում է Աստվածամորը և խորհրդանշում է «երկնային» կուսությունը: Թեոփիլոսը, հավանաբար, փորձում էր ներկաների համար աննկատ կերպով հարցնել դուր եկած աղջկան, թե արդյոք նա ցանկանում է իր կինը լինել, թե նախընտրում է (իսկ Կասիայի մասին դա հայտնի էր) մանկուց տենչած կուսությունը: Կասիայի պատասխանը նշանակում էր ամուսնության առաջարկի կտրուկ մերժում, և դա էր, որ «կոտրեց» Թեոփիլոսի սիրտը: Տե՛ս **Диалог Феофила и Кассии: литературная выдумка или реальность?**, - см. Scrinium. Revue de patrologie, d'hagiographie critique et d'histoire ecclesiastique, tome 2: Universum Hagiographicum. Memorial R. P. Michel van Esbroeck, s.j. (1934-2003), Byzantinorossica, Saint-Péterbourg, 2006, pp. 240-272, հատկապես 267-269: - էջ 43:

3. VIII-IX դարերին վերաբերող աղբյուրներում կարելի է մատնանշել տարբեր «հարսնացուների մրցույթների» հիշատակման կամ նկարագրման առնվազն



իննը դեպք: Ավելի հավանական է, որ իրավացի են այն ուսումնասիրողները (աղբյուրների և գրականության տեսությունը տե՛ս Т. А. Сенина-ի հիշյալ հոդվածում, pp. 241-249), որոնք գտնում են, որ այս միանգամայն իրական երևույթը լրիվ համահունչ էր «պատկերամարտ» կայսրերի դարաշրջանի՝ խիստ աշխարհիկ և զվարճասեր մթնոլորտին: - էջ 44:

4. Խոսքը Հովհաննես Մալալասի «Ժամանակագրության» այն դրվագի մասին է, որում պատմվում է, թե իբրև Թեոդոսիոս Կրտսերն իր կնոջ Եվդոկիային ուղարկում է մի հսկայական խնձոր, որը պատկառելի գումարով գնել էր ինչ-որ գյուղացուց: Եվդոկիան, իր հերթին, ամուսնու նվերն ընծայում է կայսեր մտերիմ ընկերոջ Պավլինոսին: Վերջինն էլ, չիմանալով խնձորի ծագումը, այն նվիրում է Թեոդոսիոսին: Նվերի անակնկալ վերադարձը կայսեր մեջ կասկածներ է սերմանում՝ իր կնոջ և Պավլինոսի սիրային կապի վերաբերյալ: Պավլինոսին ենթարկում են մահապատժի, իսկ Եվդոկիան հեռանում է Երուսաղեմ, որտեղ ապաշխարանքների և աղոթքի մեջ անց է կացնում կյանքի մնացորդը: Մահվան շեմին նա երդվում է, որ ոչ մի մեղք չէր ունեցել Պավլինոսի պատմության մեջ (**Malal.**, Chronogr., Bonn, 1831, pp. 356-358): Եթե անգամ այս զրույցն ունի ինչ-որ փաստական հիմք, այն ակնհայտորեն ոչ մի ընդհանրություն չունի Կասիայի պատմության հետ: - էջ 44:

5. **Sym.**, 624-625, Bonn, 1838: Տե՛ս նույնը **Georg. Mon.**, 789-790: - էջ 44:

6. Այսպես է ստուգաբանվում բանաստեղծի «Դեմոդոկոս» անունը: - էջ 46:

7. Բառացի՝ «գոտին ստանալով»: Գոտին բարձր պատվաստիճանի խորհրդանիշ է: - էջ 46:

## ՀԱՅ ԳԻՏԱԿԱՆ ԴԵՄՔԵՐ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅՈՒՄ

(էջ 48)

Գրված է 1930 թ. Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հայերը բյուզանդական գիտության մեջ» խորագրի ներքո (տե՛ս «Հայրենիք», 1930, 9-րդ տարի, № 2, էջ 93-105, 1931, № 3, էջ 88-96): Երկրորդ անգամ լույս է տեսել «Հայ գիտական դեմքեր Բյուզանդիայում» վերտառությամբ (տե՛ս Ն. Ադոնց, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 501-537): Առանձին հատվածներ հրապարակվել են Կահիրեի «Յուսաբեր» օրաթերթում (1969, 5 հունիսի, № 53, էջ 2-3): Հոդվածն ամբողջությամբ անգլերեն է

թարգմանել Զ. Մանդալյանը (տե՛ս **N. Adontz**, Role of the Armenians in Byzantine science, «Armenian review», Boston, 1950, vol. 3, № 3-11, pp. 55-73, նույնը նաև առանձին հրատարակությամբ՝ Boston, 1950, 20 p.):

Արտատպվում է «Պատմական ուսումնասիրություններ» ժողովածուից:

1. Դիոնիսիոս Թրակացու Քերականության և նրա հայ մեկնիչների մասին հիմնարար ուսումնասիրություն է գրել ինքը՝ Ն. Ադոնցը [տե՛ս «Дионисий Фракийский и армянские толкователи», Петроград, 1915: Տե՛ս նաև նույնը հայերեն թարգմանությամբ՝ **Ն. Ադոնց**, Երկեր, հատ. Գ (հայերենագիտական ուսումնասիրություններ), Երևան, 2008]: - Էջ 50:

2. Տե՛ս Enarratio in prophetam Isaiam 2, 92, 28 [O. Վ.]: - Էջ 50:

3. Աղավաղված՝ Peri hermeneias - «Մեկնության մասին» [O. Վ.]: - Էջ 50:

4. Մովսես Խորենացու Պատմության ամենաառեղծվածային հատվածներից է: Քննական հրատարակությունում սույն տեղին հետևյալ կերպ է ներկայացված՝ «որպէս զԱ առ Ք. և զԹ. առ Փ. և զԿ. առ Ե. և զԸ առ Թ.» (**Մովսէս Խորենացի**, Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913, էջ 9): Տարընթերցումներն ու որոշ տպագրիներ սակայն առաջարկում են այլ տարբերակներ: Ն. Ադոնցը հետևել է Մխիթարյանների 1881 թ. հրատարակությանը (տե՛ս «**Մովսէսի Խորենացւոյ** Պատմութիւն Հայոց», Վենետիկ, 1881, էջ 12): - Էջ 51:

5. Տե՛ս **Գրիգոր Մագիստրոսի** Թղթերը, բնագիրն առաջաբանով և ծանոթագրություններով Կ.Կոստանյանց, Աղեքսանդրապոլ, 1910, էջ 174: - Էջ 51:

6. Լևոն Իմաստասերը Թեսաղոնիկեի մետրոպոլիտ է նշանակվել 840 թվականին: - Էջ 55:

7. Խոսքն աստվածաշնչային Հանես մոգի մասին է, որը հակառակվեց Մովսեսին (տե՛ս **Բ. Տիմոթ.**, Գ, 8): - Էջ 61:

8. Թյուրիմացություն է. Գևորգ Վանականի և Սիմեոն Մագիստրոսի բնագրում գործածվում է αἰσχρουργία բառը, որը նշանակում է «ամոթալի արարք, անառակություն» [O. Վ.]: - Էջ 61:

9. Σκιαστής անշուշտ հունական բառ է. ածանցված է σκιά՝ «ստվեր» բառից: Թերևս իբրև Ապոլլոնի մակդիր գործածվել է ընդամենը մեկ անգամ Լիկոփրոնսի «Ալեքսանդրա» պոեմում (տող 562), որը հայտնի է իմաստների և պատկերների աղոտությամբ և խճճվածությամբ: Սակայն դժվար թե նման խիստ գրքային մակդի-



րը որևէ տարածում գտներ ժողովրդական լեզվի մեջ: Կ. Դյու Կանժն առաջարկում է Բագրատի մականվան համար շատ ավելի հարիր բացատրություն. նկատելով, որ σκιά բառը գործածվում է նաև «գույն», «երանգ» իմաստով, իսկ σκιογραφεῖν՝ «նկարել գույներով»՝ նաև «գունավոր թելերով ասեղնագործել», նա առաջարկում է հասկանալ այս բառը իբրև «նկարիչ», «ծաղկող» (**C. Du Fresne du Cange**, Glossarium mediae et infimae Graecitatis, s.v. σκιαστής) [O. Վ.]: - Էջ 65:

10. Լևոն Իմաստասերի գիտական գործունեության և գիտական ժառանգության վերաբերյալ առավել մանրամասն տե՛ս **Е. Э. Липшиц**, Лев Математик и Константинопольский университет, տե՛ս «Византийский временник», М., т. 2, 1949, сс. 106-149, նաև նույնի՝ «Очерки истории византийского общества и культуры VIII — первой половины IX в., М.-Л., 1961, сс. 338-366»: Նաև՝ **C. Mango**, The Legende of Leo the Wise, տե՛ս «Зборник Радова LXV, Византолошкоч институт, Белград», № 6, 1960, сс. 59-93; **Գ. Բ. Պետրոսյան**, IX դարի ականավոր գիտնական-մաթեմատիկոս Լևոնի կյանքի ու գործունեության մասին, տե՛ս «Բնագիտության և տեխնիկայի պատմությունից», գիտական աշխատությունների ժողովածու, Երևան, 1960, և հատկապես Պ. Լեմերլի դասական ուսումնասիրության համապատասխան գլուխը՝ Léon le Philosophe (ou le Mathematicien) et son temps (տե՛ս **P. Lemerle**, Le premier humanisme byzantin. Notes et remarques sur enseignement et culture à Byzance des origins au X[e] siècle, Paris, 1971, pp. 148-176): - Էջ 71:

11. Իրականում Փոտը երկրորդ անգամ պատրիարքական աթոռը զբաղեցրել է 877-886 թվականներին: - Էջ 76:

12. Ուսումնասիրողների կարծիքով Նիկողայոս Արտավազդն իր մաթեմատիկական աշխատություններում օգտվել է նաև Անանիա Շիրակացուց (տե՛ս **Գ. Բ. Պետրոսյան**, Մաթեմատիկան Հայաստանում հին և միջին դարերում, Երևան, 1959, էջ 176-187): - Էջ 79:

## «ԴԻԳԵՆԻՍ ԱԿՐԻՏԱՍ» ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԴՅՈՒՑԱԶՆԱՎԵՊԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԻՄՔԸ

**(էջ 81)**

**Գրված է 1928 թ. Փարիզում: Առաջին անգամ «**Les fonds historiques de l'Épopée Byzantine Digénis Akritas**» խորագրի ներքո լույս է տեսել Լայպցիգի «**Byzantinische Zeitschrift**» հանդեսում (**1929-1930, Bd. 29-30, SS. 198-

227): Երկրորդ անգամ տպագրվել է «Etudes Armeno-Byzantines» հատորում (էջ 7-36): Ն. Ադոնցի բեյրության թղթոնում առկա է սույն ուսումնասիրության ռուսերեն ձեռագիր, անավարտ (46 էջ) մի այլ տարբերակ (տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, գզրոց Է, թղթածրար Ա-8):

Թարգմանությունը կատարվել է ըստ լիաքրոնյան հրատարակության:

1. «Դիգենիս Ակրիտաս» էպիկական պոեմը հայտնաբերվել է 1868 թ. Տրապիզոնի վանքերից մեկի գրադարանում՝ Ս. Իոաննիդիսի կողմից: Անդրանիկ հրատարակությունն իրականացրել են հույն պատմաբան Կ. Սաթաս ու ֆրանսիացի բանասեր Է. Լեգրանը 1875 թ. Փարիզում: - Էջ 81:

2. Ցայսօր հայտնի են դյուցազներգության շուրջ 10 տարբերակ (մանրամասն տե՛ս **А. Я. Сыркин, Версии "Дигениса Акрита", см. "Дигенис Акрит", перевод, статьи и комментарии А. Я. Сыркина, М.: 1994, сс. 164-178**): - Էջ 81:

3. «Դիգենիս Ակրիտաս»-ի վերաբերյալ ստեղծվել է բազմալեզու և բազմաբնույթ գրականություն: Պոեմի մանրամասն վերլուծությունը տե՛ս H. Grégoire, Digenis Akritas, N. Y., 1942: Ի դեպ, հեղինակը հավուր պատշաճի է գնահատել Ն. Ադոնցի ավանդը գրական սույն հուշարձանի ուսումնասիրության բնագավառում: - Էջ 81:

4. Դյուցազներգության հայկական աղերսները հանգամանորեն քննարկվել են Հր. Մ. Բարթիկյանի բազմաթիվ ուսումնասիրություններում՝ «Ալեքսամարը և Դիգենիս Ակրիտասը», «Պատմա-բանասիրական հանդես», 1962, № 3; «Բյուզանդական «Դիգենիս Ակրիտաս» վիպերգությունը և նրա նշանակությունը հայագիտության համար», նույն տեղում, 1963, № 3; «**О некоторых вопросах византийского эпоса о Дигенисе Акрите**», «Բանբեր Երևանի համալսարանի», 1968, № 1; «Դիգենիս Ակրիտաս» էպոսը և Հարավային Հայաստանի նվաճումը Բյուզանդիայի կողմից», «Բանբեր Երևանի համալսարանի», 1969, № 2 և այլն: - Էջ 83:

5. Գրոտտա-Ֆերրատան Հռոմից ոչ հեռու գտնվող վանք է, որտեղ հայտնաբերվել է դյուցազներգության XIV դարով թվագրվող հնագույն տարբերակը: - Էջ 84:

6. Խոսքը պարթևաց Կիննամոս թագավորի (37-38) մասին է: - Էջ 90:

7. Պետրոս Սիկիլացին Վասիլ I կայսեր հանձնարարությամբ եղել է պավլիկյանների մայրաքաղաք Տիվրիկում, ինը ամիս մնացել այնտեղ և հանգամանորեն տեղեկացել շարժման պատմությանն ու գաղափարախոսությանը: Նրա գրչին է



պատկանում «Պիտանի պատմություն» խորագիրը կրող աշխատությունը, որը պավլիկյան շարժման պատմության ամենագլխավոր աղբյուրն է: - Էջ 93:

8. Իրականում Գ. Սրվանձտյանցի գրի առած տարբերակը հրատարակվել է «Սասունցի Դավիթ կամ Մհերի դուռ» խորագրի ներքո: - Էջ 103:

9. Առ այսօր հայտնաբերվել և գրառվել է 160 պատում, որից 70-ը հրատարակվել է: Ստեղծվել է նաև միասնական համահավաք բնագիր (տե՛ս «Սասունցի Դավիթ», Երևան, 1939): - Էջ 104:

10. Տե՛ս **Սեբեոս**, Պատմութիւն, աշխատասիրությամբ Գ. Աբգարյանի, Երևան, 1979, էջ 28: - Էջ 110:

11. Նկատի ունի Թովմա Արծրունուն (տե՛ս **Թովմա Արծրունի և Անանուն**, Պատմութիւն տանն Արծրունեաց, աշխատասիրությամբ Մ. Հ. Դարբինյան-Մելիքյանի, Երևան, 2006, էջ 136): - Էջ 112:

12. Ն. Ադոնցի դիտարկումները «Սասունցի Դավիթ» և «Դիգենիս Ակրիտաս» դյուցազներգությունների ընդհանրությունների վերաբերյալ հետագայում զարգացրեց Հր. Մ. Բարթիկյանը (մասնավորապես տե՛ս «**Византийский эпос о Дигенисе Акрите и "Давид Сасунский"**». Краткие тезисы докладов к конференции "Ближний Восток, Кавказ, Средняя Азия. Проблема взаимодействия культур в эпоху средневековья", Ленинград, 1972): Հետաքրքիր են նաև ռուս հետազոտող Ս. Վ. Բանկի դիտարկումները (տե՛ս **Ա. Վ. Բանկ**, Բյուզանդական էպոսի Դիգենիս Ակրիտասը և Սասունցի Դավիթը. – Հոբելյանական ժողովածու, նվիրված էպոսի 1000-ամյակին, Երևան, 1939, էջ 103-109); - Էջ 115:

13. Տե՛ս **М. Н. Сперанский**, Девгениево деяние, К истории его текста в старинной русской письменности: Исследования и тексты, տե՛ս "Сборник отделения русского языка и словесности АН", 1922, т. 99, № 7, сс. 134-165 [Օ. Վ.]: - Էջ 115, ծան. 1:

# ՎԱՍԻԼ I ԿԱՅՍԵՐ ՏԱՐԻՔՆ ՈՒ ԾԱԳՈՒՄԸ
## (867-886)
(էջ 116)

Նախապես շարադրվել է հայերեն, որը լույս է տեսել 1931 թ. «Հայրենիք» ամսագրում (տե՛ս **Ն. Ադոնց**, Վասիլ Հայազն, «Հայրենիք», 1931, № 8, էջ 87-98, № 9, էջ 135-141, № 10, էջ 110-116, № 11, էջ 120-126): Երկրորդ անգամ՝ «Վասիլ Հայազն (մեծագործ կայսր. 867-886)» խորագրի ներքո հրատարակվել է «Պատմական ուսումնասիրություններ»-ում (էջ 452-500), իսկ երրորդ անգամ՝ Ն. Ադոնցի երկերի Ա հատորում (Երևան, 2006, էջ 397-438): Թարգմանվել է նաև անգլերեն (տե՛ս **N. Adontz**, Basil I the Armenian (Emperor of Byzantium. 867-886), "Armenian Review", Boston, 1956, March, № 33, pp. 3-21):

Ուսումնասիրության բարելավված և վերամշակված ֆրանսերեն տարբերակը լույս է տեսել «Byzantion» հանդեսում՝ «L'âge et l'origine de l'empereur Basile I. 867-886» (տե՛ս «Byzantion», 1933, t. VIII, fasc. 2, pp. 475-500, 1934, t. IX, fasc. 1, pp. 223-260. Նույնը նաև առանձին հրատարակությամբ՝ Bruxelles, 1934, 62 p.): Վերահրատարակվել է «Études Arméno-Byzantines» ժողովածուում (էջ 47-109): Գրախոսվել է Կ. Հ. Բասմաջյանի կողմից, տե՛ս «Յառաջ», օրաթերթ, Փարիզ, 1934, 21 հոկտեմբերի, էջ 2, տե՛ս նաև «Անահիտ», ամսագիր, Փարիզ, 1935, № 3-4, էջ 77:

ՀՀ Ազգային արխիվում պահվում է պրոֆ. Գ. Մամուր-Ֆաքիմիի «Վասիլ I կայսրի տարիքն ու ծագումը (867-886 թթ.)» վերտառությամբ հայերեն թարգմանությունը (տե՛ս ֆ. 1086, ց. 3, գ. 5, թթ. 103-183):

Ներկա թարգմանությունը կատարվել է ըստ լիաքոնյան հրատարակության:

1. Հերոդոտոսի «Պատմություններում» (I, 108) երազատեսը ոչ թե Կյուրոսի մայր Մանդանեն է, այլ մեծ հայրը՝ Աստյուագեսը (Աժդահակ): - Էջ 125:

2. Ակնարկում է Աստվածաշնչի Եղիա մարգարեին (**Թագավորաց** Գ, 17): - Էջ 125:

3. Ծանոթագրությունը «Byzantion»-ի խմբագիր Անրի Գրեգուարինն է: - Էջ 135, ծան. 1:



4. Անշուշտ նկատի ունի իր «Վարդ Մամիկոնյան» ուսումնասիրությունը [տե՛ս **Ն. Ադոնց**, Վարդ Մամիկոնյան (856-866), «Հայրենիք», ամսագիր, 1930, № 11, էջ 98-105, № 12, էջ 57-68]: - Էջ 138:

5. Թյուրիմացություն է. Խալդը և Ծիփենարիտեսը՝ միևնույն անձնավորություն է, տե՛ս **Genes**, 106. Χάλδος ... ᾧ Τζιφεναρίτης ἐπώνυμον [«...Խալդը..., որի մականունն էր Ծիփենարիտես»] [Օ. Վ.]: - Էջ 146:

6. Ն. Ադոնցի թողնի հետազոտությունից պարզվում է, որ նա նպատակադրվել էր հատուկ ուսումնասիրություն նվիրել վերջին Արշակունիներին, բայց, ցավոք, աշխատանքը մնացել է անավարտ (տե՛ս **Ն. Ադոնց**, Հայոց վերջին Արշակունիների ճակատագիրը: Արշակունիները Բյուզանդիայում, տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, ձեռագիր, անավարտ, բազմաթիվ էջեր խառնիխուռն տարբեր թղթապանակներում – Պահարան I, զզրոց Ժ/Ա-8): - Էջ 156:

7. Այստեղ հիշատակված «վերջին» Արշակունի թագավորը, որը Թեոդոսիոս I-ի (379-395) ժամանակակից է, պետք է լինի Արշակ III-ը (378-387): - Էջ 157:

8. Տե՛ս Narratio de rebus Armeniae, ed. G.Garitte, Louvain, 1952 (CSCO 132, Subs. 4), pp. 403-404: - Էջ 165:

9. Եվրոպական բյուզանդագետները, բացի հունական դպրոցից, վաղուց ի վեր մերժել են Վասիլ I-ի սլավոնական ծագման վարկածը (մասնավորապես տե՛ս **А. А. Васильев**, Происхождение императора Василия Македонянина, "Византийский временник", т. XII, вып. 1-4, СПб., 1906, сс. 148-165; **S. Der-Nersessian**, Armenia and the Byzantine Empire, Cambridge, 1945; **G.Ostrogorsky**, Histoire de l'Etat Byzantin, Paris, 1956 և այլն): Վասիլ I-ի ծագման սլավոնական կամ հայ-սլավոնական վարկածների քննադատությունը տե՛ս Հր. Մ. Բարթիկյանի հմտալից ուսումնասիրությունում՝ «К разгадке загадки о "славянском происхождении" основателя Македонской династии Василия I (867-886 гг.)», տե՛ս «Հայ-բյուզանդական հետազոտություններ», հատ. Բ, Երևան, 2002, էջ 359-366: - Էջ 170:

10. Ծանոթագրությունը «Byzantion» տարեգրքի խմբագրությանն է: - Էջ 174:

## ՎԱՍԻԼ I-Ի ՄԱՀՎԱՆ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ՆՐԱ ՈՐԴՈՒ՝ ԼԵՎՈՆ VI ԻՄԱՍՏԱՍԵՐԻ ԱՐՏԱՍԱՆԱԾ ԴԱՄԲԱՐԱՆԱԿԱՆ ՃԱՌԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

(էջ 176)

Գրված է 1933 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում՝ «La portée historique de l'Oraison funèbre de Basile I par son fils Léon VI le Sage» խորագրով (Bruxelles, 1933, t. VIII, fasc.2, pp. 501-513): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 111-123):

Թարգմանությունը կատարվել է ըստ այս հրատարակության:

1. Լևոն VI-ի Դամբանական ճառի բնագիրը տե՛ս «Oraison funèbre de Basile I par son fils Léon VI le Sage», éd. A.Vogt, J. Hausherr, "Orientalia Christiana", Roma, 1932, t. 26, № 1 [Օ. Վ.]: - Էջ 176:

2. Նկատի ունի Կոստանդին VII Ծիրանածին կայսրին: Խոսքը Թեոփանեսի Շարունակողի «Ժամանակագրության» կազմում պահպանված «Արձակ պատմություն մեծահռչակ կայսեր Վասիլի կյանքի և գործերի մասին, որը, Աստուծո կամավն հռոմայեցիների կայսր Կոստանդինը, ինքը <լինելով Վասիլի> թոռ, ջանադրաբար փութաց հավաքել զանազան ավանդություններից և ավելացնել գրողի <երկասիրությանը>» (Theoph.Cont., IV, Bonn, 1838, pp. 211-353) գրվածքի մասին է [Օ. Վ.]: - Էջ 176:

3. Վասիլ I-ը մահացել է 886 թ. օգոստոսի 29-ին: - Էջ 177:

4. Ծանոթագրությունը «Byzantion» հանդեսի խմբագիր Անրի Գրեգուարինն է: «549-րդ էջ» ցուցումը վերաբերում է «Byzantion» հանդեսի 1933 թ. նույն VIII հատորին: - Էջ 178, ծան. 2:

5. Slave. Ցիշը վերաբերում է Սիմեոն Լոգոթետեսի ժամանակագրության սլավոնական թարգմանության (տե՛ս **В. И. Срезневский**, Симеона Метафраста и Логофета списание мира от бытия и летовник от различных летописец, СПб, 1905) [Օ. Վ.]:- Էջ 179:

6. Հունարենում բառերի նմանության վրա հիմնված բառախաղ է. βασιλέως՝ «կայսեր» և Βασιλείου՝ «Վասիլի» [Օ. Վ.]: - Էջ 184:

7. Տե՛ս **A. Vogt**, Basile 1-er, empereur de Byzance (867-886), Paris, 1908: - Էջ 188:



## ԱՇՈՏ ԵՐԿԱԹ. ԹԱԳԱՎՈՐ ՀԱՅՈՑ 913-929

(էջ 189)

Գրված է 1932 թ. Բրյուսելում: Լույս է տեսել Բրյուսելի Ազատ համալսարանի տեղեկագրում՝ «Ašot Erkat' ou de fer, roi d'Arménie de 913 à 929» խորագրի ներքո [տե՛ս «Annuaire de l'Institut de philologie et d'Histoire orientales et slaves» t.I (1932-1933), Bruxelles, 1935, pp. 13-35]: 1955 թ. Հայկ Պերպերյանի թարգմանությամբ լույս է տեսել արևմտահայերեն [տե՛ս **Ն. Ադոնց**, Աշոտ Երկաթ. թագավոր Հայոց (913-929), «Անդաստան», ամսագիր, Փարիզ, 1955, № 5, էջ 65-86]: Ֆրանսերեն բնագիրը վերահրատարակվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 265-283):

Թարգմանությունը կատարվել է ըստ այս հրատարակության, բացի վերջին մասից (տե՛ս ծան. 9):

1. προσδέδωκεν ընթերցվածը, որի հիման վրա Ն. Ադոնցը տվել է սույն հատվածի թարգմանությունը, բնագրերում վկայված չէ: Թեոփանեսի Շարունակողն ու Սիմեոնը գրում են προδέδωκεν՝ «դավաճանությամբ մատնեց», Գեորգ Վանականը՝ παρέδωκεν՝ «փոխանցեց, մատնեց» [Օ. Վ.]: - Էջ 189:

2. Վրիպակ է. Հ. Պերպերյանի թարգմանությունում (էջ 67), Լիսաբոնի ժողովածուում (էջ 267) սխալմամբ տպագրվել է պժէ (= 817), պետք է ուղղել ջժէ (= 917), ինչպես Սամուել Անեցու բնագրում է (տե՛ս **Սամուել Անեցի**, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 98): - Էջ 191:

3. **Const.**, De administrando imperio, 43, 50 [Օ. Վ.]: - Էջ 192:

4. **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 127: - Էջ 192:

5. Նկատի ունի IX դարի սկզբին Հարավային Միջագետքում բորբոքված Կարմատների իսմաելիտական աղանդավորական շարժումը (տե՛ս **Е. А. Беляев**, Мусульманское сектантство (Исторические очерки), М., 1957): - Էջ 192:

6. Այս տեղին, մեզ անհայտ պատճառով, Ն. Ադոնցը մեջբերել է շատ ավելի թերի Երուսաղեմի 1867 հրատարակությունից, էջ 337-338 [Օ. Վ.]: - Էջ 196:

7. Տե՛ս **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 153. «և անձուկ յոյժ ունիմ ի բազում ամաց զալ առ ձեզ, թէպէտև արգելայ մինչև ցայժմ»: - Էջ 198:

8. ῥόγα (ռոգ) բառը ծագում է լատիներեն erogatio՝ «բաշխում, բաժանում, ծախս» բառից և սկզբնապես նշանակում էր պարզապես դրամային պարգևների բաշխում: X դարում այն որոշակի տարեկան տոկոս էր կազմում այն գումարից, որը նախապես վճարվում էր արքայական գանձատուն ազնվականների կողմից՝ յուրաքանչյուրի աստիճանի կամ պաշտոնի համեմատ (տե՛ս **Константин Багрянородный**, Об управлении империей, М., 1991, с. 180, прим. 31) [Օ. Վ.]: - Էջ 199:

9. Այս նախադասությունից սկսած մինչև ուսումնասիրության ավարտն ընկած հատվածը (տե՛ս աստ, էջ 207-211) անհասկանալի պատճառով դուրս է մնացել լիսաբոնյան ժողովածուից: Թարգմանությունը կատարվել է առաջին հրատարակությունից: - Էջ 207:

## ԼԻԿԱՆԴՈՍԻ ԲԱՆԱԿԱԹԵՄԸ ՀԱՅ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

(էջ 212)

Գրված է 1930-ական թվականների վերջերին Բրյուսելում: Ֆրանսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական արխիվի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, զգրոց Բ, թղթածրար 1, թ. 1-31): Առաջին անգամ հրատարակել ենք մենք (տե՛ս «Էջմիածին», ամսագիր, 2006, հոկտեմբեր-նոյեմբեր, էջ 44-69, թարգմանությունը ֆրանսերենից՝ Վ. Ա. Պողոսյանի):

Տպագրվում է ըստ այս հրատարակության:

1. Մլեհ (Մելիաս) մագիստրոսը կարևորագույն դեր է խաղացել Բյուզանդիայի X դարի առաջին կեսի պատմության մեջ: Հետաքրքիր է, որ «Դիգենիս Ակրիտաս» դյուցազնավեպում նա հորջորջում է իբրև «Մլեմենծիս» (Մլեհ Մեծ, հմմ՝ Մեծն): Այդ մասին տե՛ս «Դիգենիս Ակրիտաս» դյուցազնավեպին նվիրված Ն. Ադոնցի ուսումնասիրությունը, աստ, էջ 103: - Էջ 212:

2. Տե՛ս նաև նույն հատվածի հունարեն բնագրի հայերեն թարգմանությունը, որն իրականացրել է Հր. Մ. Բարթիկյանը (**Կոստանդին Ծիրանածին**, էջ 171-172): Թարգմանությունների տարբերությունը հետևանք է նրան, որ Հր. Բարթիկյանը թարգմանել է հունարեն բնագրից, իսկ Վ. Պողոսյանը՝ նույն բնագրի Ն. Ադոնցի ֆրանսերեն թարգմանությունից: - Էջ 213:



3. Հղումը սխալ է, պետք է լինի De adm. Imp. 50, 145-6 [Օ. Վ.]: - Էջ 219, ծան. 1:

4. Տե՛ս **В. М. Истрин**, „Книгы временьныя и образныя Георгия Мниха": Хроника Георгия Амартола в древнем славянорусском переводе: Текст, исследования и словарь, Пг./Л., 1920-1930, т. 1-3 [Օ. Վ.]: - Էջ 222, ծան.:

5. Մլեհի՝ Մելիաս հայ-բյուզանդական ընտանիքի մասին տե՛ս նաև **Ա. Գրեգուարի** «Notes épigraphiques. VII» ուսումնասիրության «Mélias le Magistre» բաժնում («Byzantion», t. VIII, 1933): Տե՛ս նաև **А. П. Каждан**, Армяне в составе господствующего класса Византийской империи в XI-XII вв., Ереван, 1975, с. 120, և նույնի՝ Социальный состав господствующего класса Византии XI-XII вв., М., 1977, сс. 100, 129, 138, 178, 191, 203, 206, 213: - Էջ 232:

6. Մխիթարների հայ-բյուզանդական ընտանիքի մասին մանրամասն տե՛ս աստ, էջ 414-417: - Էջ 235:

7. Տե՛ս աստ, էջ 414: - Էջ 236:

## ԱԿՆԱՐԿՆԵՐ [ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ] ԱՐԱՐՈՂՈՒԹՅԱՆ ԳՐՔԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

(էջ 239)

Գրված է 1939 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս **N. Adontz**, Notes sur le Livre des Cérémonies, «Byzantion», Bruxelles, 1939, t. XIV, fasc. 2, p. 387-406): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 319-338):

Թարգմանվել է այս երկրորդ հրատարակությունից:

1. Տե՛ս **Constantin VII Porphyrogénète**, Le Livre des Cérémonies, t. I, livre I, Chapitres 1-46 (37). Texte etabli et traduite par Albert Vogt, Paris, 1935 [Օ. Վ.]:- Էջ 239:

2. Այստեղ ակնարկվում է շուրջ 930 թ. Տարոնի մագիստրոս Գրիգոր Բագրատունու կատարած այցը Կոստանդնուպոլիս: Կոստանդին Ծիրանածինը նրան անվանում է Կրիկորիկ Տարոնիտես (տե՛ս աստ, էջ 256): - Էջ 252:

3. «Սողոմոնի գահը»՝ Մագնավրայի պալատի «ոսկե ճաշասրահում» տեղադրված հնարամիտ սարքավորում էր, որի վրա նստած՝ կայսրը մեկ ակնթարթում վեր էր սլանում, ի զարմանս և ի հիացումս ներկաների, հատկապես օտարերկրյա հյուրերի և դեսպանների: Գահը շրջապատված էր տեխնիկական այլ հրաշքներով. այստեղ կային ինքնանվագ երգեհոններ, մեխանիկական առյուծներ, որոնք ոտքի էին կանգնում, մռնչում և պոչով խփում հատակին, ոսկեզօծված ծառ, որի ճյուղերի վրա նստած էին ևս մետաղե ծլվլացող թռչուններ, և այլն. նկարագրություններն ու հիշատակումները տե՛ս **Liutprandi ep. Cremonensis** Historia gestorum regum et imperatorum sive Antapodosis, lib. VI, cap. 5 (**Migne**, PL, t. 136, 895), ինչպես նաև **Georg. Mon.**, 793, **Theoph. Cont.**, 173, **Cedr.**, II, 203, **Manass.**, 205, **Mich. Glyc.**, 543 (գրականության տեսությունը տե՛ս **З. Г. Самодурова**, Естественнонаучные знания, в кн.: Культура Византии, вторая половина VII — XII в., М., 1989, сс. 317-318) [Օ. Վ.]: - էջ 255:

4. Այժմ՝ Երևանի Մատենադարանի թիվ 6202՝ հնագույն ձեռագրերից մեկը: «Ստացողը, Գ. Հովսեփյանի կարծիքով, Սմբատ I թագավորի եղբոր՝ Շապուհի որդին է (Յիշատակարանք, էջ 108): Ձեռագիրը կոչվում է «Մեծ Շենի Կարմիր Աւետարան», Լեռնային Ղարաբաղի համանուն գյուղում գտնվելու պատճառով, որտեղից Էջմիածին է բերել Գ. Հովսեփյանը 1915 թ.» (**Ա. Մաթևոսյան**, Ե-ԺԲ դարի հիշատակարաններ, էջ 50, № 63, ծան. 1) [Օ. Վ.]: - էջ 257:

5. **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 127: - էջ 258:

6. Քննելով Ն. Ադոնցի կշռադատությունը Տարոնացու այցի հնարավոր թվականի վերաբերյալ, Պատրիսիա Կարլին-Հայտերը, իբրև մեկնակետ բռնելով Ն. Ադոնցի սրբագրումը (XIII ինդիկտիոն՝ III-ի փոխարեն), ևս մեկ անգամ ապացուցում է, որ այս իրադարձությունը լավագույնս համարվում է 910 թվականին: Տարոնացու՝ Բյուզանդիային հարելու վճռական դրդապատճառը Յուսուֆի՝ Հայաստան ներխուժումն էր, իսկ մյուս կողմից, դա այն թվականն էր, երբ կայսրությունը բուլղարների դեմ որևէ ռազմական գործողություններ չէր վարում (**P. Karlin-Hayter**, Krikorikios de Taron, Actes du XIV Congrès international des Etudes Byzantines, Bucarest 1971, II, Bucarest, 1975, pp. 345-358, հատկապես pp. 350-352) [Օ. Վ.]: - էջ 259:



## ՏԱՐՈՆԱՑԻՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅՈՒՄ

(էջ 260)

**Գրված է 1934-1935 թթ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս N. Adontz,** Les Taronites en Arménie et à Byzance, «Byzantion», 1934, t. IX, pp. 715-738, 1935, t.X, pp. 531-551, 1936, t. XI, fasc. 1, pp. 21-42): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 197-263): Ժամանակին սույն աշխատության մի հատված («Byzantion», 1935, t. X, 531-551) հայերեն է թարգմանել պրոֆ. Գ. Սամուր-Ֆաքիմին (տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, ֆ. 1086, ց. 5, գ. 488, թթ. 57-83):

Թարգմանվել է Լիսաբոնյան հրատարակությունից:

1. Նկատի ունի Հայոց արքա Սմբատ I Բագրատունուն: - էջ 262:

2. Խոսքը վրաց թագավոր Ատրներսեհի մասին է: - էջ 262:

3. Որոշ ուսումնասիրողներ կարծում են, թե սույն Գրեգորասը վրացադավան հայ էր: - էջ 263:

4. Վասպուրականի թագավոր Գագիկ Արծրունին է (908-943): - էջ 263:

5. Այսինքն՝ Հայոց թագավոր Աշոտ II Երկաթը: Նշելի է, որ բյուզանդական ավանդույթի համաձայն, Հայոց թագավորը շարունակում էր մնալ իշխանաց իշխան, իսկ երկրի օրինական տերեր միայն իրենք կարող էին լինել (տե՛ս **L. Bréhier**, Le monde Byzantin. Les institutions de l'empire Byzantin, Paris, 1970, p.13) - էջ 264:

6. Սույն հատվածի «...և հայտնում է նրան, որ ինքն այլևս ի վիճակի չի լինելու նրա թոշակը ոսկով կամ արծաթով վճարելու. այնուամենայնիվ...հակառակ դեպքում նա պատրաստ էր հրաժարվել թոշակից» հատվածը, ինչպես և լատիներեն թարգմանության անիմաստ լինելու մասին պնդումը Կոստանդին Ծիրանածնի բնագրի (De adm. imp., 188) թյուրըմբռնման արդյունք է: Իրականում ոսկին, արծաթը, հագուստը, սպասքը և այլ «նվերներ» (ըստ էության՝ տուրքը) կայսրին ուղարկում էր Կրիկորիկիոսը, և դրա դիմաց ստանում էր հատուկ թոշակ՝ իր բերած եկամտի որոշակի տոկոսը («ռոգա», «ռոգ» տե՛ս աստ, էջ 199, 558, ծան. 8): Սա սովորական թոշակ էր, որը հատկացվում էր կայսրության ստորականերին, մինչդեռ Տարոնացին հայցում էր Ռոմանոս կայսրից արտոնյալ՝ «ձրի» ռոգը, որը նա ստանում էր Լևոն կայսեր օրոք, և որը (կամ, ավելի ճիշտ, պետական վճարումներից ազատ լինելը),

ամենայն հավանականությամբ, և դարձել է մյուս հայ ավատատերերի «նախանձի» պատճառը [Օ. Վ.]: - Էջ 264, ծան. 1:

7. Հայկական սկզբնաղբյուրների Եղնուտ կամ Ողնուտն է՝ Տարոնի հյուսիսարևմուտքում: - Էջ 265:

8. Տարոնի իշխանության պատմության վերաբերյալ նորագույն ուսումնասիրություններից տե՛ս **Էդ. Դանիելյան**, Տարոնը հայ-բյուզանդական հարաբերություններում (IX դ. երկրորդ կես – X դ.), «Պատմա-բանասիրական հանդես», 1978, № 1; **Գ. Ստ. Գրիգորյան**, Տարոնի Բագրատունիների ֆեոդալական իշխանությունը IX-X դարերում, Երևան, 1983: - Էջ 266:

9. «Պրոաստիոնը»՝ ճորտ գյուղացիներով բնակված կալվածք է քաղաքի արվարձաններում, տե՛ս **Константин Багрянородный**, Об управлении империей, гл. 43, М., 1991, с. 184, прим. 34 [Օ. Վ.]: - Էջ 278:

10. Μαγκλαβίτης՝ կայսեր շքախմբին պատկանող պահնորդ սպա: - Էջ 279:

11. Հր. Մ. Բարթիկյանը վիճարկելով Ն. Ադոնցի այս կռահումը՝ ենթադրում է, որ խոսքը Պրոկոպիոս Կեսարացու երկերում հիշատակվող սունիտների (սվաներ) ցեղի մասին է: - Էջ 282:

12. Հղումն անստույգ է: Խոսքը Հովհաննես Լազարոպուլոսի (Տրապիզոնի ապագա մետրոպոլիտ Հովսեփոս՝ 1364-1367) կազմած սրբախոսական ժողովածուի մասին է, որում ամփոփվել են Տրապիզոնի «Մեծ» Կոմնենոսների հովանավոր՝ սուրբ Եվգենիոսի հրաշագործությունների մասին պատումները ("Ετι σύνοψις τῶν τοῦ ἁγίου θαυμάτων μερικὴ ἐκ τῶν πλείστων, συγγραφεῖσα ὑπὸ Ἰωάννου τοῦ Λαζαρόπουλου, μητροπολίτου Τραπεζοῦντος γεγονότος [«Սրբի բազմաթիվ հրաշագործություններից մի քանիսի ևս մի տեսություն, գրի առնված Տրապիզոնի մետրոպոլիտ դարձած Հովհաննես Լազարոպուլոսի կողմից»], տե՛ս **А. Пападопулос-Керамевс**, Сборник источников по истории Трапезундской империи, т. 1, СПб., 1877, сс. 78-136) [Օ. Վ.]: - Էջ 294, ծան. 1:

13. XI-XII դդ. մեկնիչ և աստվածաբան Պողոս Տարոնացու մասին (մահ. 1123 թ.) առավել հանգամանորեն տե՛ս Հ. Մանուչարյանի՝ «Պողոս Տարոնացի» (Երևան, 1982) մենագրությունը [Օ.Վ.]: - Էջ 299:

14. Տե՛ս սստ, էջ 418-470: - Էջ 303:

15. Աշոտի և Սամուելի դստեր Միրոսլավայի սիրային պատմությունը հիմք է հանդիսացել հույն ժամանակակից գրող Պենելոպե Դելտայի համար հեղինակելու «Հանուն հայրենիքի» պատմավիպակը (տե՛ս հայերեն թարգմանությունը, Ս. Էջմիածին, 2009): - Էջ 303:

16. Նկատի ունի նորմանդական զորավար Բոհեմունդ Տարենտացուն: - Էջ 308:

17. Խոսքը հետևյալ հրատարակության մասին է. **Joanni Cinnami** … historiarum libri sex … accedunt Caroli du Fresne d. Du Cange notae historicae et philologicae, Paris, 1670 [Օ. Վ.]: - Էջ 309, ծան.1:

18. Տե՛ս սստ, էջ 332: - Էջ 310:

19. Թոռնիկյանների ընտանիքի մասին մանրամասն տե՛ս Ն. Ակինյանի ուսումնասիրությունը՝ «Թոռնիկյանց ճյուղագրությունը. Մատենագրական հետազոտություններ», հատ. Դ, Վիեննա, 1938: - Էջ 312:

20. Տե՛ս **J. Gay**, L'Italie Méridionale et l'Empire Byzantine depuis l'avénement de Basile Ier jusqu'a la prise de Bari par les Normands (867-1071). Thése pour le doctorat présentée a la faculté des letters de l'Université de Paris, Paris, 1904 [Օ. Վ.]: - Էջ 313, ծան. 3:

21. Միքայել Ակոմինատեսը (մոտ. 1140-1220), բյուզանդացի մատենագիր և հասարակական գործիչ, Եվստաթիոս Սալոնիկցու աշակերտ և հայտնի եկեղեցական մատենագիր Նիկետաս Քոնիատեսի եղբայր, 1182-ից՝ Աթենքի միտրոպոլիտ: Երբ լատինները գրավեցին Աթենքը, բնակվել է Կոս կղզում և նվիրել է իր կյանքի մնացորդը գիտական և մատենագիտական զբաղմունքների: Պատմագիտական առավել մեծ կարևորություն ունեն նրա նամականին և ճառերը [Օ. Վ.]: - Էջ 318:

22. Ֆ. Ուսպենսկու հրատարակած բնագիրը պակասավոր է և աղավաղված: Նամակի քննական բնագիրը հրատարակել է Սպիրիդոն Լամբրոսը (Μιχαὴλ Ἀκομινάτου Τὰ σωζόμενα, τὰ πλεῖστα ἐκδιδόμενα νῦν τὸ πρῶτον κατὰ τοὺς ἐν Φλωρεντίᾳ, Ὀξωνίᾳ, Παρισίοις καὶ Βιέννῃ κώδικας … ὑπὸ Σπυρίδωνος Π. Λάμπρου. Τομὸς Β, Ἐν Ἀθήναις, 1880). Բերում ենք այն ամբողջությամբ.

Τῷ μεσάζοντι αὐτοῦ τῷ Τορνίκῃ κῦρ Δημητρίῳ.

1. Φεῦ τῆς ἀπάτης ἣν ἠπατώμην ἐπὶ τοσοῦτον παρὰ τὸ τῆς θείας Γραφῆς ἐπάγγελμα. Ἡ μὲν γὰρ τὸν δίκαιον ἄνθρωπον «εἰς μνημόσυνον αἰώνιον ἔσται

φησὶ, καὶ δυνατὸν ἐν τῆ γῆ ἔσται τὸ σπέρμα αὐτοῦ». Ἐγὼ δὲ τὸν μέγαν λογοθέτην τὸν θεῖον Τορνίκην εὐ εἰδὼς ἐν πάσῃ δικαιοσύνῃ πολιτευσάμενον καὶ ἐν κλήρῳ τῶν ἁγίων τεταγμένον, ᾤμεν οὐδένα κληρονόμον τῆς ἐκείνου ἀρετῆς καταλελοιπέναι, τοῦ λαμπροτάτου ἐπάρχου καὶ θαυμαστοῦ κῦρ Κωνσταντίνου τοῦ ὄντος κόσμου τῶν βασιλειῶν καὶ εἰκόνος ἐμψύχου τῆς ἐκείνου ἀρετῆς, ὢ τῶν ἐμῶν κακῶν, ἔργον γενομένου Σκυθῶν, τοῦ δ' αὖ ἀρχιποίμενος τῶν Παλαιῶν Πατρῶν καὶ ἄλλου ὑπερφέροντος κόσμου τῆς ἱερᾶς συνόδου οὐκ οἶδ' ὅπως καὶ αὐτοῦ γενομένου ἐκ μέσου. 2. Ὡς γοῦν οὐδὲ μνεία ἦν οὐδαμοῦ σπέρματος διαδόχου τοῦ μεγάλου Τορνίκη, ἐστέναζον κατ' ἐμαυτὸν καὶ κατὰ τὴν θείαν Γραφὴν ἐνενόουν ὡς ἠπάτημαι. Ἐπεὶ δὲ φήμη τις ἀγαθὴ περιεβόμβησε μου τὰς ἀκοὰς, ὡς ἔκγονός τις τοῦ μεγάλου Τορνίκη παρὰ τῷ ἁγίῳ βασιλεῖ τῷ Λάσκαρι μεγάλα δύναται καὶ τῆς ἀρετῆς τῆς πατρικῆς καὶ παππώας κατ' ἴχνη πορεύεται, ἐπάνῆλθον εἰς ἑαυτόν καὶ τῆς ἀπάτης ἣν ἠπατώμην κατέγνωκα καὶ τὰς ἐπαγγελίας τὰς γραφικὰς τοῦ λοιποῦ σεβάζομαι. 3. Καὶ χαῖρε μοι, φίλη κεφαλη, ὡς νῦν γὰρ πρῶτον σὲ ὁρῶ καὶ κατασπάζομαι καὶ περιπτύσσομαι ὡς εἰκόνα τοῦ θαυμασίου κῦρ Κωνσταντίνου καὶ τοῦ ἀβραμιαίου γέροντος κῦρ Δημητρίου. Οἷς καὶ γίνου ὅμοιος, ἵνα καὶ οἱ μὴ φθάσαντες τὸν γονέα καὶ τὸν πρόγονόν σου ἰδεῖν ὀφθαλμοῖς αὐτοῖς λέγωσιν ἀληθῶς αἵματος ἀγαθοῦ εἶναι σε ἀπορροήν. 4. Ἐπεὶ δὲ καὶ ἡμεῖς ἐδεήθημεν τοῦ μεγαλουργοῦ βασιλέως εἰς μικράν τινα βοήθειαν τῆς ἀσθενείας ἡμῶν, εἰσάξον τὸν παρόντα παῖδα, ἵνα προσκυνήσῃ αὐτὸν ὡς ἐξ ἡμῶν. Ἐγὼ γὰρ, ὡς ἐν ὀλίγῳ τὸ πᾶν εἴπω, ἡμίξηρος γέγονα καὶ ὑπὸ τοῦ ἀνυπερβλήτου ψύχους ἀποθνήσκω. Καὶ ὁ Κύριός μου φυλάττοι σε ἀπὸ παντὸς πειρασμοῦ, καὶ γένοιο τοῦ πατρὸς εὐτυχέστερος, τὰ δ' ἄλλα ὅμοιος.

Նույն միջնորդ՝ տեր Դեմետրիոս Թոռնիկին.

[Ա՜խ այն խաբեության որով խաբվեցի՝ Աստվածաշունչ գրքի այսպիսի խոստման արդյ: Չէ՞ որ «յիշատակ յաւիտենից եղիցի արդար» և «հզաւր եղիցի յերկրի զաւակ նորա» (**Սաղմոս**, **ՃԺԱ**, 7 և 2): Ես, լավ ճանաչելով աստվածանման *մեծ լոգոթետես* Թոռնիկին իբրև արդարությամբ կյանք վարողի և սրբերի ժառանգորդների թվին դասվողի, մտածում էի, որ նա իր առաքինության որևէ ժառանգ չի թողել, [քանզի] հրաշալի տեր Կոստանդինը, ամենափայլ եպարքոսը, մայրաքաղաքի իսկական զարդը և նրա (իմա՝ Դեմետրիոս ավագի) առաքինության շնչավոր պատկերը (օ՜հ մեր չարիքների <բազմության>, որ գործեցին սկյութացիները), որը նաև Հին Հայրերի արքիեպիսկոպոսն էր և սուրբ սինոդի մեկ այլ ևս գերազանց զարդը, չգիտեմ, թե ինչպես նույնպես վերացավ: 2. Եվ քանզի գեթ հուշում չկար մեծ Թոռնիկի սերունդի որևէ ժառանգորդի մասին, ես ներքուստ հառաչում էի և կարծում, որ խաբվեցի Աստվածային Գրքից: Բայց երբ մի բարի լուր թնդաց լսողության մեջ՝ որ մեծ Թոռնիկի թոռներից մեկը հույժ կարողներից է սուրբ թագավոր Լասկարիսի



մոտ և ընթանում է հորենական և պապական առաքինության հետքերով, ես ուշքի եկա, և հասկացա, թե ինչպիսի խաբեությամբ եմ խաբվել, և այսուհետ պաշտում եմ Սուրբ Գրքի խոստումները: 3. Ողջույն, սիրեցյալ անձ, այժմ նոր եմ տեսնում քեզ և գրկում, և փաթաթվում, իբրև զարմանահրաշ տեր Կոստանդնի և աբրահամյան ծերունի՝ տեր Դեմետրիոսի տիպարի, որոնց և նմանվիր <այսուհետ>, որպեսզի նրանք, ովքեր չհասցրեցին սեփական աչքերով տեսնել քո ծնողին և քո պապին, ասեն, որ դու իրոք բարի արյան արտահոսք ես: 4. Եվ քանզի մենք նաև խնդրում ենք մեծագործ թագավորից մի փոքր օգնություն մեր տկարության համար, ներս ուղեկցիր այս ստրուկին, որպեսզի երկրպագի նրան իբրև իմ կողմից: Քանի որ ես, եթե սակավ բառերով ասեմ ամբողջը, կիսաչոր եմ դարձել և մահանում եմ անհաղթելի ցրտից: Եվ թող իմ Տերը պահպանի քեզ ամենայն փորձությունից, և եղիր դու հորիցդ ավելի երջանիկ, իսկ մնացածում՝ նույնը» ] [Օ. Վ.]: - Էջ 319:

## ԴԻՏԱՐԿՈՒՄՆԵՐ ՏԱՐՈՆԱՑԻՆԵՐԻ ՏՈՀՄԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

**Պատասխան Գերաշնորհ Հայր Վ. Լորանին**

**(էջ 325)**

**Գրված է 1939 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս N. Adontz,** Observations sur la généalogie de Taronites. Réponse au R.P. V. Laurent, «Byzantion», 1939, t. XIV, fasc. 2, pp. 407-413)**: Երկրորդ անգամ տպագրվել է** «Études Arméno-Byzantines» **հատորում (էջ 339-345):**

**Թարգմանվել է այս վերջին հրատարակությունից:**

1. Ռեկտորը զինվորական (երբեմն էլ վարչական) աստիճան է: - Էջ 325:

2. Մխիթար Գոշի Դատաստանագրքի այդ կանոնը (ՃԹ) խորագրված է հետևյալ կերպ՝ «Յաղագս դատաստանաց եթէ ըստ օրինաց եւ կանոնաց ո՞րպէս զուգին եւ թէ ոչ, ո՞րոց ներելի է եւ զո՞րս բաժանելի»: - Էջ 329:

3. «Ռիշտ», ըստ «Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի» հեղինակների, նշանակում է «ժլատ» («Բառգիրք»-ի՝ «Առողիկ, Գ, 5» հղումը սխալ է (էջ 681), պետք է լինի, ինչպես Ն. Ադոնցի մոտ՝ Գ, 3 (**Առողիկ**, էջ 159) ): - Էջ 331:

## ԹԵՈՓԻԼԱԿՏՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԸ ԵՎ ՏԱՐՈՆԱՑԻՆ

(էջ 332)

Գրված է 1936 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս **N. Adontz**, L'archevêque Théophylacte et le Taronite, «Byzantion», 1936, t. XI, fasc. 2, pp. 577-588): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 285-296):

Թարգմանվել է ըստ այս վերջին հրատարակության:

1. «Byzantion»-ի նույն հատորում, որում Ն. Ադոնցը հրապարակել է իր՝ Թեոփիլակտոսին վերաբերող հոդվածը, լույս է տեսել նաև նշյալ հեղինակի «Les letters de Théophylacte de Bulgarie à Gregoire Taronite» ուսումնասիրությունը, տե՛ս «Byzantion», XI, 1936, pp. 577-588: Պատրաստվող քննական բնագրի մասին տե՛ս նաև **A. Leroy-Molingen**, Prolegomènes à une edition critique des Lettres de Théophylacte de Bulgarie, "Byzantion", XIII, 1938, pp. 253-262: Նախատեսված հրատարակությունը, սակայն, չիրականացվեց: Բուլղարիայի եպիսկոպոսի նամականու քննական բնագիրը հիսուն տարի անց լույս է ընծայել Պ. Գոտյեն (**P. Gautier**, Θεοφύλακτος ʼΑχρίδος, ʼΕπιστολαί, Θεσσαλονίκη, 1986) [Օ.Վ.]: - էջ 332, ծան. 3:

2. Խոսքը Տիլու Դանիշմանդի՝ մահմեդականություն ընդունած Հրահատ (Ռատ) Լիպարիտյանի մասին է, որը 1097 թ. գրավելով Մելիտենեն, Սեբաստիան և Կեսարիան հիմնադրել էր Դանիշմանյանների ամիրայությունը [տե՛ս **Մ. Տ. Երեմյան**, Լիպարիտ զորավարի հաջորդները և Դանիշմանյան տոհմի ծագման խնդիրը, «Տեղեկագիր» ՀԽՍՀ ԳԱ (հասարակ. գիտություններ), 1947, № 8]: - էջ 334:

3. Ակնարկը վերաբերում է Մելիտենեի քաղկեդոնիկ իշխան Գաբրիել Մելիտենացուն: Լինելով Փիլարտոս Վարաժնունու ստորականերից՝ վերջինիս մահից հետո Գաբրիելը 1082 թ. Մելիտենեն իր շրջակայքով հռչակեց անկախ իշխանություն (1082- 1103 թթ.): - էջ 334:



## ԹՈՌՆԻԿ ՎԱՆԱԿԱՆ

(էջ 344)

Գրված է 1938 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում (տե՛ս **N. Adontz**, Tornik le Moine, «Byzantion», 1938, t. XIII, pp. 143-164): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 297-318):

Թարգմանվել է ըստ այս վերջին հրատարակության:

1. Վարդաս Սկլերոսը ապստամբել է երկու անգամ, առաջինը՝ 976 թվականին և երկրորդ անգամ՝ 987 թվականին: Այստեղ խոսքն առաջին ապստամբության մասին է: - էջ 344:

2. Խոսքն ականավոր զորավար, Անտիոքի դուքս Վարդաս Փոկասի մասին է: 987 թ. նա ապստամբել է Վասիլ II-ի դեմ և հռչակվել կայսր: Սպանվել է 989 թվականին (տե՛ս **А. П. Каждан**, Армяне ..., с. 73): - էջ 344:

3. Այդ ժամանակ Բաղդադի խալիֆան Ադուդ ադ-Դաուլա Ֆեննա Խոսրովն էր (949-983): - էջ 345:

4. Խոսքը Թեոփանո կայսրուհու մասին է: - էջ 347:

5. Այդ ժամանակ պարակիմոմենոսը Վասիլ Նոթոսն էր: - էջ 347:

6. Սինկելլոս – պատրիարքից հետո եկեղեցական բարձրագույն պաշտոն: - էջ 349:

7. Տե՛ս աստ, էջ 532-541: - էջ 352, ծան.1:

8. Տե՛ս Ասողիկ, էջ 174: - էջ 355:

9. Տե՛ս նույնը, էջ 251: - էջ 363:

10. Ըստ բազմահմուտ վիմագրագետ Մ. Գ. Բարխուդարյանի, պետք է ընթերցել՝ «Յանուն Աստուծոյ. ես Յովաէս ..., վանէ որդի Չորտվանիկի, կանգնեցի զխաչս զայս» (տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ I. Անի քաղաք, կազմեց Հ. Ա. Օրբելի, Երևան, 1966, էջ 64): - էջ 365:

## [ՀՈՎՀԱՆՆԵՍ I] ՉՄՇԿԻԿԻ ՆԱՄԱԿԸ ԱՇՈՏ [III] ԱՐՔԱՅԻՆ

(էջ 366)

Գրված է 1934 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion»-ում, իբրև Ն. Ադոնցի «Notes Arméno-Byzantines» («Հայ-բյուզանդական նոթեր») ընդհանուր խորագիրը կրող առաջին հոդվածաշարում (տե՛ս N. Adontz, La letter de Tzimiscès au roi Ašot, «Byzantion», 1934, t. IX, pp. 371-377): Տե՛ս սույնի գրախոսությունը՝ Տ.Ա.Ե., «Հայրենիք», ամսագիր, Բոստոն, 1937, № 2, էջ 117-127: Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» ժողովածուում (էջ 141-147):

Թարգմանվել է այս վերջին հրատարակությունից:

1. Տե՛ս Մատթէոսի Ուռհայեցւոյ ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1869, էջ 23-33: Հմմտ. Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 19-28: - Էջ 366:

2. Նկատի ունի Լազարյան ճեմարանի պրոֆեսոր Ք. Քուչուկ-Հովհաննիսյանի (Хр. И. Кучук-Иоаннесов)՝ «Письмо Иоанна Цимисхия к Ашоту III» հրապարակումը (տե՛ս «Византийский временник», т. IX, 1903, № 1-2, сс. 91-101), տե՛ս նաև սույնի Մեսրոպ վարդապետ Տեր-Մովսիսյանի գրախոսությունը, «Արարատ», 1904, էջ 90: - Էջ 366:

3. Պետք է լինի հատ. IX, էջ 91: - Էջ 366, ծան. 2:

4. Այծյաց (ավելի ճիշտ՝ Այծից) բերդը տեղադրվում է Տարոն գավառում, Մուշ քաղաքից ոչ հեռու: - Էջ 367:

5. Լիկանդոսի Մլեհին ըստ արժանվույն է գնահատել ինքը՝ Ն. Ադոնցը, նրան նվիրելով հատուկ ուսումնասիրություն (տե՛ս սույն, էջ 212-238): - Էջ 370, ծան. 2:

## ԴԱՎԻԹ ԿՅՈՒՐՈՊԱՂԱՏ

(† 31-ը մարտի 1000 թ.)

(էջ 372)

Գրված է 1930-ական թվականների վերջին Բրյուսելում: Ֆրանսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական արխիվի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, զզրոց Բ, թղթածրար 1, թթ. 1-72): Ցավոք չեն պահպանվել բնագրի որոշ էջեր, սակայն դա չի խախտել շարադրանքի



տրամաբանական գիծը և չի նսեմացրել ուսումնասիրության արժեքը: Թեև «Դավիթ Կյուրոպաղատ»-ը պատկանում է Ն. Ադոնցի «Վասիլ I», «Աշոտ II Երկաթ», «Թոռնիկ Վանական», «Սամուել Հայ» և նմանաբնույթ երկասիրությունների շարքին, սակայն ինչ-ինչ պատճառներով տպագրության չի արժանացել: Հայերեն թարգմանությունը, որ իրականացրել է Վ. Ա. Պողոսյանը, լույս ենք ընծայել մենք (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 2002, № 3, էջ 3-37):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Խոսքը Հայոց ապագա թագավոր Աբաս Բագրատունու (929-953) մասին է: - Էջ 380, ծան. 1:

2. Այստեղ շարադրանքն ընդհատվում է: - Էջ 388, ծան.:

3. Ակնարկվում է 774-775 թթ. հակաարաբական ապստամբության ղեկավարներից Վասակ Բագրատունին, որը խուսափելով արաբների հաշվեհարդարից՝ տեղափոխվել էր Կղարջք և հիմք դրել վրաց Բագրատունիների ընտանիքին: - Էջ 389:

4. Մ. Չամչյանը գրում է, թե Աշոտը «Մսակեր կոչեցաւ ի թուրքաց (հմա՝ արաբներից)», տե՛ս Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հատ. Բ., Վենետիկ, 1785, էջ 408: Ինքը՝ Ն. Ադոնցը, տարակուսանքով գրում է, թե Մսակեր հորջորջումը հնարավոր է «հակապահեցողական ազատամտության արդյունք է», տե՛ս Երկեր, հատ. Ա, էջ 447-448: - Էջ 390:

5. Այստեղ ձեռագիրն ընդհատվում է, պակասում են ինքնագրի 26-38-րդ էջերը: - Էջ 393:

6. Ն. Ադոնցի այս տեսակետը երկբայելի է, քանզի ինչպես Ասողիկը (էջ 268-274), այնպես էլ Մատթեոս Ուռհայեցին (էջ 36-37) պարզորոշ վկայում են, որ դաշնակիցների բանակը պարտության է մատնել Մամլանին: - Էջ 395:

7. Այս կապակցությամբ է, որ Ասողիկը (էջ 277-278) շեշտում է, թե Գագիկ I-ը «իբրև փոքրութիւն համարեալ զգալն իւր առ նա (այսինքն՝ Վասիլ II-ին – Պ. Հ.), հարկ չհամարեց այցելել կայսրին»: - Էջ 396:

8. Դավիթ կյուրոպաղատին ու Տայքի կյուրոպաղատությանը նվիրված վրաց պատմաբան Շ. Ա. Բադրիձեի ուսումնասիրություններն աչքի են ընկնում իրենց բացահայտ միտվածությամբ, հայկական սկզբնաղբյուրների համապատասխան վկայությունները անտեսելու կամ խեղաթյուրելու ակնհայտ հաստատակամությամբ

(տե՛ս **Ш. А. Бадридзе**, К вопросу о политическом статусе Давида Великого Тайского, «Труды Тбилисского государственного университета», вып. 8-9, 1974, сс. 155-156, և նույնի К истории восстания Варда Склира, «Исторический сборник», т. IV, 1973): Դավիթ կյուրոպաղատին նվիրված վերջին ուսումնասիրություններից տե՛ս **Մ. Ճանաշյան**, Դավիթ կյուրոպաղատ (պատմական ուսումնասիրություն), Վենետիկ, 1972: - Էջ 399:

9. Այստեղ ձեռագիրն ընդհատվում է, պակասում են ինքնագրի 46-59 էջերը: - Էջ 399:

10. Ապոկապ (Ապուքապ) ընտանիքի մասին մանրամասն տե՛ս **А. П. Каждан**, Армяне..., сс. 67-70: - Էջ 400:

11. **G. Finlay**, A History of Greece from its conquest by the Romans to the present time (B.C 146 to A.D. 1864), in seven volumes, vol. 1: Greece under the Romans (B. C. 146-A.D. 716), Oxford, 1877 [Օ. Վ.]: - Էջ 403, ծան. 1:

12. **L. Bréhier**, Hommes de Guerre Byzantins: Georges Maniakès, Tours, 1902 (Extrait de la „Province", November, 1902) [Օ. Վ.]: - Էջ 403, ծան. 1:

## ՄԽԻԹԱՐՆԵՐԻ ԿՆԻՔՆԵՐԸ
(էջ 414)

Գրված է 1934 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion»-ում, Ն. Ադոնցի «Notes Arméno-Byzantines» ընդհանուր խորագիրը կրող առաջին հոդվածաշարում (տե՛ս N. Adontz, Les sceaux des Makhitar, «Byzantion», 1934, t. IX, pp. 367-382): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 137-141):

Թարգմանվել է այս երկրորդ հրատարակությունից:

1. Մխիթարների ընտանիքի մասին տե՛ս **А. П. Каждан**, Армяне..., сс. 100-103, հմմտ. նույնի «Социальный состав ...», сс. 93, 107, 111, 120, 127, 137, 178, 192, 203, 212: Վ. Լորանը ևս, թեև որոշ վարանումներից հետո, ի վերջո այս ընտանիքին վերագրում է հայկական ծագում (տե՛ս **V. Laurent**, Corpus ..., V, 2, p. 249): - Էջ 415:



2. Որքան մեզ հայտնի է, Ն. Ադոնցը առանձին ուսումնասիրություն չի նվիրել Կրինիտեսների անկասկած հայկական ընտանիքին: Հավանաբար այստեղ նա ակնարկում է իր «Տարոնացիները Հայաստանում և Բյուզանդիայում» ուսումնասիրության այն հատվածը, ուր մանրամասն խոսվում է Կրինիտեսների ընտանիքի մասին (տե՛ս աստ, էջ 286-290): Կրինիտեսների մասին տե՛ս նաև Հրաչ Բարթիկյանի ծանոթագրությունն իր թարգմանած Կոստանդին Ծիրանածինի երկերի հատորում (էջ 222-223, ծան. 44; հմմտ. **А. П. Каждан**, Армяне..., с. 11): - Էջ 416:

## ԲՈՒԼՂԱՐՆԵՐԻ ԱՐՔԱ ՍԱՄՈՒԵԼ ՀԱՅԿԱԶՆԸ
(էջ 418)

Գրված է 1938 թ. Բրյուսելում: «Samuel L'Arménien roi des Bulgares» վերտառությամբ լույս է տեսել «Mémoires publiés par L'Académie royale de Belgique, Classe des letters, etc.» Տեղեկագրում (t. XXXIX, fasc. 1, Bruxelles, 1938, pp. 3-63): Նույնը տե՛ս նաև առանձին հրատարակությամբ՝ Bruxelles, 1938, 63 p.: Երրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» ժողովածուում (էջ 347-407): Ն. Ադոնցի սույն ուսումնասիրությունը գրախոսել են Վ. Ինգլիզյանը («Հանդես ամսօրյա», 1940, էջ 250-251), Մ.-Ա. Գալանտերը («Պայքար-բացառիկ» ամսագիր, Բոստոն, 1961, էջ 76-86) և ուրիշներ:

Սույն հատորի համար թարգմանությունն իրականացվել է ըստ լիսաբոնյան հրատարակության:

Դեռևս 1956 թ. ուսումնասիրությունը հայերեն էր թարգմանել պրոֆ. Գ. Սամուր-Ֆաքիմին («Սամվել Հայազգին բուլղարների թագավոր», տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, ֆ. 1086, ց. 3, գ. 4, թթ. 1-60):

1. **Տե՛ս Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հատ. Բ, Վենետիկ, 1785, էջ 874-876: - Էջ 419:**

2. **Տե՛ս E. Gibbon, The History of the Decline and Fall of the Roman Empire, v. I-VI, London, 1776-1788: - Էջ 419:**

3. Բուլղարների արքա Սամուելի և ընդհանրապես Կոմսաձագերի ծագման վերաբերյալ գոյություն ունեցող գրականության մասին մանրամասն տե՛ս Հովհաննես Սկիլիցեսի «Համառոտություն պատմության» երկասիրության Հր. Բարթիկյանի թարգմանության համապատասխան ծանոթությունը (Հովհաննես Սկիլիցես,

թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1979, էջ 312-314, ծան. 286): Հետաքրքրությունից զուրկ չեն նաև Ն. Ակինյանի «Ստեփանոս Ասողիկ և Կոմսաձագք» (տե՛ս «Հանդես ամսօրյա», 1955, № 3-6), բուլղար պատմաբաններ Գ. Անգելովի և Վ. Գյուզելևի «Հայկական աղբյուրները Բուլղարիայի միջնադարյան պատմության մասին» (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1971, № 1) և այլ ուսումնասիրություններ: - Էջ 419:

4. Այստեղ և այլուր «թյուրքերի» ներքո պետք է հասկանալ հունգարացիներին: - Էջ 420:

5. Իրականում մարտի 31-ին (տե՛ս աստ, էջ 372): - Էջ 430:

6. Խոսքը վերաբերում է պեչենեգներին: - Էջ 444:

7. Պետք է լինի 1785 թվական: - Էջ 447:

8. Պետք է լինի 1827 թվական: - Էջ 447:

9. Տե՛ս **Մատթեոս Ուռհայեցի**, էջ 46, 195: Ի դեպ, Ալուսիանոսի եղբայրը Վասպուրականի և Անիի կատեպան նշանավոր Ահարոն Բուլղարն էր: - Էջ 448, ծան. 1:

## ԴԱԼԱՍԵՆՈՍՆԵՐ
(էջ 471)

Գրված է 1935 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում Ն. Ադոնցի «Notes Arméno-Byzantines» («Հայ-Բյուզանդական նոթեր») ընդհանուր խորագիրը կրող երկրորդ հոդվածաշարում (տե՛ս **N. Adontz**, Les Dalassènes, «Byzantion», 1935, t. X, fasc. 1, pp. 171-185): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» ժողովածուում (էջ 163-177):

Թարգմանությունը կատարվել է ըստ այս հրատարակության:

Սույն նոթը «Դալասենոսները» վերտառությամբ *1956 թ. հայերեն է* թարգմանել նաև պրոֆ. Ն. Գ. Մամուր-Ֆաքիմին (տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, ֆ. 1086, ց. 3, գ. 6, էջ 14-33):

1. Դալասենոսների հայ-բյուզանդական ընտանիքի մասին մանրամասն տե՛ս **А. П. Каждан**, Армяне ..., сс. 92-97: Ա. Կաժդանը Դալասենոսների հայկական ծագումը համարում է խնդրական: - Էջ 472:



2. Տե՛ս **Մատթեոս Ուռհայեցի**, էջ 57: - Էջ 473:

3. Ա. Պ. Կաժդանը հաշվել է 22 անուն Դալասենոսներ, որոնք գործել են մինչև XII դարը: - Էջ 480:

4. Ծանոթագրությունը պատկանում է «Byzantion»-ի խմբագրությանը: - Էջ 481, ծան. 2:

5. Ծանոթագրությունը պատկանում է «Byzantion»-ի խմբագրությանը: - Էջ 482, ծան. 1:

6. Տե՛ս Մեսրոպայ Երիցու Վայոցձորեցւոյ Պատմութիւն Սրբոյն Ներսիսի Հայոց հայրապետի, աշխատասիրությամբ Գ. Տեր-Վարդանյանի, «Մատենագիրք Հայոց», ԺԱ հատոր, Անթիլիաս-Լիբանան, 2010, էջ 684: - Էջ 484:

## ԹԵՈԴՈՐՈԿԱՆՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԸ
(էջ 485)

Գրված է 1935 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում՝ Ն. Ադոնցի «Notes Arméno-Byzantines» ընդհանուր խորագիրը կրող երկրորդ հատվածաշարում (տե՛ս **N. Adontz**, La familie de Théodorakan, “Byzantion”, 1935, t. X, fasc. 1, pp. 161-170): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» ժողովածուում (էջ 153-162):

Թարգմանվել է ըստ այս վերջին հրատարակության:

ՀՀ Ազգային արխիվում պահվում է պրոֆ. Գ. Մամուր-Ֆաքիմիի 1956 թ. կատարած հայերեն թարգմանությունը («Թեոդորոկան ընտանիքը», ֆ. 1086, ց. 3, գ. 6, էջ 1-14): Ուսումնասիրությունը գրախոսվել է Վ. Ինգլիզյանի կողմից («Հանդես ամսօրյա», 1936, էջ 269-276):

1. Այս ձեռագրի մասին մանրամասն տե՛ս **З. Акопян**, Портрет заказчика Адрианопольского Евангелия, «Պատմա-բանասիրական հանդես», 2005, № 2, էջ 240-249, և Նույնի, Группа армянских иллюстрированных рукописей XI века и проблема византийского влияния, «Византийский временник», № 67 (92), 2008, сс. 194-206 [Օ. Վ.]: - Էջ 485:

2. Ա. Պ. Կաժդանը Թեոդորոկաններին տեղադրում է ենթադրյալ հայկական ծագում ունեցող ընտանիքների ցանկում (տե՛ս **А. П. Каждан**, Армяне..., с. 97):

Պ. Խարանիսը համերաշխելով Ն. Ադոնցի հետ նրանց հայկական ծագումը համարում է անկասկած (տե՛ս **P. Charanis**, The Armenians in the Byzantine Empire, Lisbon, 1963, p. 45): - էջ 486:

3. Թեև Ն. Ադոնցը անվանապես հիշատակում է Թեոդորոկանների ընտանիքի հինգ ներկայացուցիչների, սակայն Ա. Կաժդանը նրանց թիվը հասցնում է յոթի: Բացի այդ, ըստ Վ. Շանդրովսկայայի, Էրմիտաժի բյուզանդական չհրատարակված կնիքների թվում առկա են նաև Թեոդորոկաններին պատկանող մի քանի կնիքներ ևս (տե՛ս **В. С. Шандровская**, Несколько византийских печатей из коллекции Эрмитажа, "XIV[e] Congrès International des etudes byzantines", Bucarest, 1971, p. 221): - էջ 492:

## ՓԻԼԱՐՏՈՍԻ ԸՆՏԱՆԻՔԸ

(էջ 495)

Գրված է 1934 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion» հանդեսում Ն. Ադոնցի՝ «Notes Arméno-Byzantines» («Հայ-բյուզանդական նոթեր») ընդհանուր խորագիրը կրող առաջին հոդվածաշարում (տե՛ս **N. Adontz**, La famille de Philarète, «Byzantion», 1934, t. IX, pp. 377-382): Երկրորդ անգամ տպագրվել է «Études Arméno-Byzantines» ժողովածուում (էջ 147-152):

Թարգմանվել է այս վերջին հրատարակությունից:

Ուսումնասիրությունը գրախոսվել է՝ տե՛ս **Տ. Ա. Ե.**, Փիլարետ իշխանի ընտանեկան ծագումը, «Հայրենիք», ամսագիր, 1937, № 8, էջ 167-171:

1. Փիլարտոսի անձը և գործը մեծ հետաքրքրություն են առաջացրել ինչպես հին (Մատթեոս Ուռհայեցի, Միքայել Ասորի, Հովհաննես Սկիլիցես, Միքայել Ատտալիատես, Աննա Կոմնենա, Վարդան Արևելցի), այնպես էլ ժամանակակից պատմաբանների (Ժ. Լորան, Ե. Քասունի (Կոմմագենացի), Ա. Կաժդան, Ժ. Դեդեյան, Վ. Շանդրովսկայա և այլք) մոտ: Առավել ուշագրավ են տվյալ հարցին նվիրված Ժ. Լորանի ուսումնասիրությունները, որոնք ի մի են հավաքվել պատմաբանի հայագիտական հոդվածների ժողովածուում (տե՛ս **J. Laurent**, Etudes d'histoire arménienne, Louvain, 1971, pp. 81-89, 148-159) և Կոմմագենացու (Եղիա Քասունի) մենագրությունը՝ «Փիլարտոս Հայը» (Հալեպ, 1930): - էջ 495:

2. **Տե՛ս J. Laurent**, Byzance et Antioche sous le curopalate Philarète, «Revue des Etudes Arméniennes», t. IX, fasc.1, Paris, 1929: - էջ 495, ծան. 2:



3. **Տե՛ս Chronique de Matthieu d'Edesse, trad. Ed. Dulaurier, Paris, 1858** [Օ. Վ.]: - էջ 495:

4. Ն. Ադոնցը հղել է Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» Երուսաղեմի 1869 թ. հրատարակությունը (էջ 248): Մենք լրացնում ենք հոդվածում պակասող մեջբերումն ըստ շատ ավելի որակյալ Վաղարշապատի 1898 թ. բնագրի, որում նշվում են նաև Երուսաղեմի տպագրի տարընթերցումները: Սույն հատվածի Ադոնցի մեկնաբանությունը հաստատում է ձեռագրերից մեկի (Ա) ընթերցվածը, որը նման է ինչ-որ լուսանցագիր լուծմունքի ընդմիջարկության. «ոչ կամիմ տեսանել զերեսս նորա, կոչէ զիս ի ծառայութիւն իւր» (տե՛ս **Մատթէոս Ուռհայեցի**, էջ 206, ծան. 5): [Օ. Վ.]: - էջ 495:

5. Վախրամիոս (Վրախամիոս) ընտանիքի մասին տե՛ս **А. П. Каждан**, Армяне..., сс. 25-28: - էջ 496:

6. Էրմիտաժում պահվող Փիլարտոսի կնիքների վերլուծությունը տե՛ս **В. С. Шандровская**, Эрмитажные печати Филарета Врахамия (Варажнуни), «Լրաբեր», ՀԽՍՀ ԳԱ (հասարակ. գիտ.), 1975, № 3: - էջ 500:

## ՌՈՒԲԻՆՅԱՆՆԵՐԻ ՆԱԽԱՀԱՅՐԸ

(էջ 501)

Գրված է 1935 թ. Բրյուսելում: Լույս է տեսել «Byzantion»-ում, Ն. Ադոնցի «Notes Arméno-Byzantines» («Հայ-բյուզանդական նոթեր») ընդհանուր խորագիրը կրող երկրորդ հոդվածաշարում (տե՛ս **N. Adontz**, L'aïeul des Roubéniens, «Byzantion», 1935, t. X, fasc.1, pp. 185-203): 1954 թ. Հայկ Պերպերյանի թարգմանությամբ լույս է տեսել արևմտահայերեն (տե՛ս **Ն. Ադոնց**, Ռուբինյանց նախահայրը, «Անդաստան», ամսագիր, Փարիզ, 1954, № 4, էջ 49-64): Ֆրանսերեն բնագիրը վերահրատարակվել է «Études Arméno-Byzantines» հատորում (էջ 177-195):

Թարգմանվել է այս վերջին հրատարակությունից:

1. <Ի զաւակաց> տարընթերցումը, որը կարևոր է Ն. Ադոնցի հետագա կշռադատության համար, գտնվում է Երուսաղեմի տպագրում, ինչպես և Վաղարշապատի հրատարակության տողատակերում օգտագործված Գ գրչագրում [Օ. Վ.]: - էջ 502:

2. «Սա է նախնին բագատրին Լեռնի...» : Բնագիրը շտկված է ըստ վերջին հրատարակության [Օ. Վ.]: - Էջ 506:

3. Ն. Ադոնցի չափազանց կարևոր այս պնդման համար հիմք է ծառայել Սամուել Անեցու հետևյալ ցուցումը. «Տէր Պետրոս եւ ազատ Սարգիս եւ Գրիգոր Բջնեցին նենգեցին զԳագիկ և զԱնի ետուն ի կայսրն Յունաց» (տե՛ս **Սամուել Անեցի**, Հաւաքմունք ..., էջ 107): Հարցի բազմակողմանի քննության հիման վրա Հր. Մ. Բարթիկյանը հանգել է այն եզրակացության, որ Գրիգոր Մագիստրոսը լինելով Հայաստանի անկախության ջատագով՝ հանդես էր գալիս ընդդեմ բյուզանդական ռազմակալման, իսկ Սամուել Անեցու խոսքերն էլ ընդմիջարկություն են (տե՛ս **Հր. Մ. Բարթիկյան**, Գրիգոր Մագիստրոսի քաղաքական կողմնորոշման հարցի շուրջը, «Էջեր հայ ժողովրդի պատմության և բանասիրության», հոդվածների ժողովածու, Երևան, 1971, էջ 63-72): - Էջ 512:

4. Ն. Ադոնցի առաջարկված այս թվականը մնում է խնդրական և պատահական չէ, որ մերժվել է շատ պատմաբանների կողմից, որոնք նախապատվությունը տալիս են 1079-1080 թվականին: - Էջ 513:

5. Մեջբերումն անստույգ է: Հղվող դրվագում կա երկու նույնիմաստ հասկացություն՝ հույները «քակեցին զցանկ պահպանութեանն զօրաց և զօրավարաց» և «յայն ջանս ջանացան, որ լուր <զուր> զպարիսպ ամրութեան տանս Հայոց քակեալ կործանեցին» (**Մատթեոս Ուռհայեցի**, Վաղարշապատ, էջ 135-136) [Օ. Վ.]: - Էջ 513, ծան. 1:

6. Գող Վասիլը, որ Քեսունի ու Ռաբանի իշխանն էր (1082-1112), եղել է Կիլիկյան հայկական պետականության կերտողներից: Մխիթար Այրիվանեցին անգամ նրան ընդգրկել է Կիլիկյան հայոց թագավորների արքայացանկում (տե՛ս **Մխիթար Այրիվանեցի**, Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860, էջ 16): Գող Վասիլի մասին մանրամասն տե՛ս **G. Dédéyan**, Les Arméniens entre Grecs, Musulmans et Croises, vol. 1-2, Lisbonne, 2003, pp. 1137-1155: - Էջ 515:

7. Ռուբինյան առաջին իշխանների մասին ստեղծվել են բազմաթիվ բարձրարժեք գիտական ուսումնասիրություններ: Առկա գրականությունից կարելի է առանձնացնել մասնավորապես Երվանդ Քասունու («Ռուբեն Ա և Ռուբինյան իշխանության հիմնադրությունը», Բեյրութ, 1972, «Կիլիկիո հայկական իշխանապետությունը Մերձավոր Արևելքի քաղաքական հոլովույթին մեջ. 1080-1137», Բեյրութ, 1974), Ժ. Դեդեյանի (Les Arméniens entre Grecs, Musulmans et Croises, vol. 1-2, Lisbonne, 2003), Լ. Տեր-Պետրոսյանի («Խաչակիրները և հայերը», հատ. Ա-Բ, Երևան, 2005-2007) և այլոց ուսումնասիրությունները: - Էջ 516:



8. Թեև ուսումնասիրողների մեծ մասը թեականորեն է վերաբերում Հունաստանի ստրատեգոս Ռուպենեսի և Կիլիկիայի Ռուբինյան հարստության հիմնադիր Ռուբեն I-ի նույնացմանը, այնուհանդերձ Լ. Տեր-Պետրոսյանը կարծում է, որ «առկա տվյալների քննությունից միանգամայն ակնհայտ է դառնում, որ հայկական աղբյուրները ժամանակագրական առումով որևէ անպատեհություն չեն ստեղծում հավանական համարելու համար Ն. Ադոնցի թեկուզ համարձակ, բայց բավականին հիմնավորված թեզը» (տե՛ս **Լ. Տեր-Պետրոսյան**, նշվ. աշխ., հատ. Բ, էջ 74): - Էջ 517:

## [ԼԱԶԻԿԱ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԻԱ]

(էջ 521)

Գրված է 1930-ական թվականների վերջերին Բրյուսելում: Ռուսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զզրոց Ժ, թղթածրար Ա-8): Հայերեն թարգմանությունը, որն իրականացրել է Օ. Ս. Վարդազարյանը, լույս է տեսնում առաջին անգամ:

1. Լազիկան կամ Լազիկայի թագավորությունը (Էգրիսի), որը հայ աղբյուրներում առավելապես հայտնի է Եգերաց թագավորություն անունով, ընդգրկել է Ճորոխի գետաբերանից հյուսիս մինչև Սև ծովն ընկած տարածաշրջանը: Այս թագավորությունը գոյատևել է II-VI դարերում: - Էջ 521:

2. Ձեռագրի շարունակությունն անընթեռնելի է: - Էջ 522:

3. Քրիստոնեությունը Լազիկայում պաշտոնական կրոն է հայտարարվել 523 թվականին: - Էջ 527:

4. Վրաց Գուրգեն թագավորը գահ է բարձրացել Վախտանգ I Գորգասալի մահից հետո (502 թ.): 523 թ. գլխավորել է վրաց հակապարսկական ապստամբությունը, որի ճնշումից հետո պարսից Կավատ թագավորը վերացրել է վրացական թագավորությունը: - Էջ 529:

5. Ա. Քրիստենսենը ենթադրում է, որ Սեոսը (Սիյավուշ) հարում էր մազդակյաններին, ինչի հետևանքն էր նրա մահապատիժը (տե՛ս **A. Christensen**, L'Iran sous les Sassanides, Copenhague, 1944, p. 356): - Էջ 529:

6. 562 թ. կնքված 50-ամյա պարսկա-բյուզանդական պայմանագրի համաձայն Լազիկան տրվում էր Բյուզանդիային, որը շուտով վերացրեց Լազիկայի թագավորությունը (տե՛ս «Очерки истории СССР» (III-IX вв.), М., 1958, с. 251): - էջ 531:

## ՆԻԿԵՓՈՐՈՍ ԾՌԱՎԻԶ-ԾԱՆՐՎԻԶ
(էջ 532)

Գրված է 1933 թ. Բրյուսելում՝ Անրի Գրեգուարի համահեղինակությամբ: Ծանոթագրություններում, իրեն հատուկ համեստությամբ, Գրեգուարը խոստովանում է, որ «իրականում Ադոնցն է այս հոդվածի իսկական հեղինակը» (տե՛ս ստո, էջ 533, ծան.1): Հոդվածը՝ «Nicéphore au col-roide» վերտառությամբ լույս է տեսել «Byzantion» հանդեսում (1933, t. VIII, pp. 203-212):

**Թարգմանությունը՝** O. Ս. Վարդազարյանի:

1. Կարլոս Մեծ՝ ֆրանս. Charlemagne, լատ. Carolus Magnus (742-814), ֆրանկների թագավոր, Կարոլինգյան հարստության ամենականկառուն ներկայացուցիչ: Աներդհատ պատերազմելով, իր տիրապետության ներքո միավորել է Արևմտյան Եվրոպայի մեծ մասը՝ ժամանակակից Ֆրանսիայի, Շվեյցարիայի, Բելգիայի, Նիդերլանդների, Իտալիայի, Գերմանիայի և մասամբ՝ Ավստրիայի և Իսպանիայի տարածքները: 800 թ. հռչակվեց «Արևմուտքի կայսր»: Բազմաթիվ միջնադարյան ասքերի հերոս է: Հատկապես հայտնի է «Ֆրանսիայի թագավորի ասքեր» էպիկական երգերի շարքին պատկանող «Ռոլանդի երգը», որում Շառլեմանը հանդես է գալիս իբրև իդեալական սյուզերենի տիպար (տե՛ս «Ռոլանդի երգը», թարգմ., ներած., ծան. Հ. Բախչինյան, Երևան, 1995, էջ 5-19) [O. Վ.]: - էջ 532:

2. Այս հոդվածն առաջինն է, որ Ն. Ադոնցը տպագրել է Բրյուսել տեղափոխվելուց հետո: Հետագայում (1938) դարձյալ առիթ է ունեցել Ա. Գրեգուարի համահեղինակը դառնալու (տե՛ս Ն. Ադոնց, Երկեր, հատ. Գ, էջ 398-402): - էջ 533:

3. Շարադրանքից պարզ երևում է, թե ինչպիսին էր Ն. Ադոնցի ավանդն այս աշխատության մեջ՝ հայկական աղբյուրների թարգմանությունը և վերլուծությունը և Պ. Պետերսի գաղափարների քննարկումը: Հնարավոր է, որ սկզբնական գաղափարը ծագել և հստակեցվել է միասնական աշխատանքի ընթացքում, ինչից հետո Ա. Գրեգուարը ստանձնել է ձևակերպել այն առանձին հոդվածում [O. Վ.]: - էջ 533:



4. Փոկասների ընտանիքը, ինչպես պնդում է Ա. Գրեգուարը, ծագում էր Կապադովկիայից (տե՛ս **H. Gregoire**, La carrière du premier Nicéphore Phocas, «Prosphora eis S. Kyriakiden», Thessalonike, 1953, p. 250): Պատմական այս միջավայրն էր, որ կայսրությանը տվել է պետական, զինվորական և հոգևոր բազմաթիվ գործիչներ, այդ թվում կայսրեր և պատրիարքներ: Այս հունադավան («հայ-հոռոմ») միջավայրից սերում էին նաև Փոկասները (Փոկասների մասին տե՛ս **А. П. Каждан, Армяне** ..., сс. 72-74): - էջ 534:

5. «Վասիլ [II-ը] ոչ միայն ներում, այլև մի հոյակապ կալվածք է շնորհում Փոկասի որդի Նիկեփորոսին»,- գրում է Ցահյան (տե՛ս **В. Розен, Василий**..., с. 26): - էջ 536:

6. «էջ 210» հղումը վերաբերում է «Byzantion»-ի հատորին (t. VIII, 1933): - էջ 536, ծան. 2:

7. Արիստակեսից մեջբերումը այստեղ և տողատակում Ա. Գրեգուարի համար ֆրանսերեն է թարգմանել Ն. Ադոնցը, տե՛ս ֆրանսերեն սկզբնօրինակի էջ 208, ծան. 2 [O. Վ.][1]: - էջ 537:

8. Հ. Պերպերյանը վիճարկում է հայկական սկզբնաղբյուրների հաղորդած տեղեկությունները հայտնի ապստամբի սպանության վերաբերյալ, և պնդում, որ նրան սպանել է ոչ թե Դավիթ Արծրունին, այլ Քսիֆիասը (տե՛ս Հ. Պերպերյան, Նիկեփոր Փոկասի սպանությունը և Դավիթ Արծրունի, «Հանդես ամսօրյա», 1967, էջ 515): - էջ 539:

9. Ծովեզը (ծովացուլ) մաշկոտանիների կարգին պատկանող ծովային կաթնասուն է, փոկ: - էջ 539:

[1] Սույն հատորի ծանոթագրությունները կազմելիս, ինչպես և թարգմանությունների որոշ հատվածները ճշտելիս, օգտվել ենք Փարիզի Բյուզանդիայի պատմության և քաղաքակրթության ինստիտուտի գրադարանից՝ երջանիկ հնարավորություն, որ մեզ է ընձեռվել 2010-2011 թթ. «Հայ-բյուզանդական մշակութային հարաբերությունները վաղ միջնադարում» հայ-ֆրանսիական համատեղ (CNRS-ՀԳԿ) նախագծի շնորհիվ: Հաճելի պարտք ենք համարում մեր խորին երախտագիտությունը հայտնել հատկապես նախագծի ֆրանսիական կողմի ղեկավար՝ պրոֆ. Կ. Ցուկերմանին, սիրալիր աջակցության և օգտավետ խորհուրդների համար [O.Վ.]:

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ

## ՑԵՂԵՐԻ, ՏՈՀՄԵՐԻ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ, ԿՐՈՆԱԿԱՆ, ԱՂԱՆԴԱՎՈՐԱԿԱՆ ԵՎ ԱՅԼ ԽՄԲԵՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## *ՀԱՎԵԼՎԱԾ*





ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

ՀԱՏՈՐ Ե

ՀԱՅ-ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ
ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Կազմի ձևավորումը՝ Գ. Վ. Մարիկյանի

Սրբագրիչ՝ Վ. Վ. Դևրիկյան
Համ. շարվածքը՝ Օ. Ս. Վարդազարյանի
Համ. ձևավորումը՝ Ա. Խ. Աղուզումցյանի

Տպաքանակ՝ 500: Պատվեր՝ 47:

ԵՊՀ հրատարակչություն, Երևան, Ալ. Մանուկյան 1

ԵՊՀ տպագրատուն, Երևան, Աբովյան 52

**«Գալուստ Կյուլպենկյան» հիմնարկության հովանավորությամբ Երևանի համալսարանի հրատարակչությունը լույս է ընծայել հետևյալ գրքերը**

1. Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 3, 1998:
2. Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 4, 1998:
3. Թ. Հակոբյան, Ստ. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան - Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հատոր 5, 2001: (Բառարանը 2002 թ. արժանացել է ՀՀ նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիստական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»):
4. Ստեփանոս Տարոնեցի Ասողիկ - Տիեզերական պատմություն (աշխարհաբարի վերածեց Վ. Վարդանյանը), 2000 թ.:
5. Հրաչյա Գաբրիելյան - Հայկական լեռնաշխարհը, 2000 թ.:
6. Ալեքսանդր Մարգարյան - Հայերենի հոլովները, 2000 թ.:
7. Նահապետ Քուչակի բանաստեղծական աշխարհը, աշխատասիրությամբ ակադեմիկոս Հրանտ Թամրազյանի, Եր., 2001 թ.:
8. Շարական (ժողովածու) - Աշխարհաբարի վերածեցին Ա. Մադոյանը և Գ. Մադոյանը, 2001 թ.:
9. Հրաչյա Միրզոյան - Հովհաննես Մրքուզ Ջուղայեցի, 2001 թ.:
10. Ռուբեն Ղազարյան - Միջին գրական հայերենի բառապաշարը, 2001 թ.:
11. Բաբկեն Հարությունյան - Մեծ Հայքի վարչա-քաղաքական բաժանման համակարգն ըստ «Աշխարհացույցի», 2001 թ.:
12. Վարդան Արևելցի - Տիեզերական պատմություն (աշխարհաբարի վերածեց Գ. Թոսունյանը), 2001 թ.:
13. Գևորգ Մադոյան - Գրիգոր Անավարզեցին շարականագիր, 2001 թ.:
14. Գևորգ Աբգարյան - Հայ տպագրության նախապատմություն, 2001 թ.:
15. Փայլակ Անթապյան - Հովհաննես սարկավագ Իմաստասեր, 2001 թ.:
16. Յոզեֆ Կարստ - Կիլիկյան հայերենի պատմական քերականություն, 2001 թ.:
17. Ռաֆայել Մաթևոսյան - Կուբան ապագայի որոնումներում. իրադարձություններ և դասեր, 2001 թ.:
18. Խաչիկ Բադիկյան - Ուսումնական դարձվածաբանական բառարան, 2002 թ.:
19. Հրաչյա Գաբրիելյան - Հայոց բնաշխարհը (դասագիրք), 2002 թ.:
20. Էդուարդ Աղայան - Լեզվաբանական հետազոտություններ, 2003 թ.:
21. Արտակ Մովսիսյան - Նախամաշտոցյան Հայաստանի գրավոր մշակույթը, 2003 թ.:
22. Հրաչյա Աճառյան - Քննություն Կիլիկիայի բարբառի, 2003 թ.:
23. Պիոն Հակոբյան - Գիտական ուսումնասիրություններ, 2003 թ.:
24. Աշոտ Սուքիասյան - Հայոց լեզվի հոմանիշների բացատրական բառարան (2004 թ. արժանացել է ՀՀ նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիստական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»), 2003 թ.:
25. Երջանիկ Գևորգյան - Հայոց շարժումային լեզվի բացատրական բառարան (Շարժուբարան), 2003 թ.:
26. Հայնրիխ Հյուբշման - Հայերենի քերականություն, առաջին մաս, Հայերենի ստուգաբանություն, 2003 թ.:
27. Հայնրիխ Հյուբշման - Հայագիտական ուսումնասիրություններ, 2004 թ.:
28. Ալեքսանդր Մարգարյան - Հայոց լեզվի քերականություն (Ձևաբանություն) 2004 թ.:
29. Ռամազ Գորգաձե - Հայերեն-վրացերեն զրուցարան, 2004 թ.:
30. «Ժուռնալ Ազիատիկ» հանդեսի հայագիտական նյութերի ծանոթագրված մատենագիտություն, 2004 թ. (ռուսերեն):
31. Հրաչյա Աճառյան - Հայոց պատմություն, հյուսված ընդհանուր պատմության հետ, 2004 թ.:
32. Յովհաննէս Սարկաւագ Իմաստասէր - Լուծմունք «Սահմանաց գրոց», 2004 թ.:
33. Սանդրո Սարդարյան - Հայաստանը քաղաքակրթության օրրան, 2004 թ.:
34. Կարէն Իւզբաշեան - Աւարայրի ճակատամարտից դէպի Նուարսակի պայմանադրութիւնը, 2005 թ.:
35. Հարություն Դելլալյան - Ժողովածու, 2005 թ.:
36. Բախտիար Հովակիմյան - Հայոց ծածկանունների բառարան, 2005 թ.:
37. Գառնիկ Անանյան - Ակնարկներ հայոց հին և միջնադարյան հրապարակախոսության, 2005 թ.:

38. Վահան Տեր-Ղևոնդյան – Կիլիկյան Հայաստանը և Մերձավոր Արևելքի արաբական երկրները (1145-1226 թթ.), 2005 թ. (ֆրանսերեն):
39. Գառնիկ Ստեփանյան – Երզնկա (Հնագույն դարերից մինչև մեր օրերը), 2005 թ.:
40. Հրաչյա Աճառյան - Լիակատար քերականություն հայոց լեզվի համեմատությամբ 562 լեզուների. Իմաստաբանություն, Բառաքննություն, Շարահյուսություն, 2005 թ.:
41. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. 16-րդ հատոր: Արաբ մատենագիրներ Թ-Ժ դարեր: Ներածությունը և բնագրերից թարգմանությունները Արամ Տեր-Ղևոնդյանի, 2005 թ.:
42. Սահակ Բաղյան - Խաչատուր Աբովյանը առակախոս-բանաստեղծ և դրամատուրգ, 2005 թ.:
43. Ռամազ Գորգաձե - Վրացերեն-հայերեն բառարան, 2005 թ.:
44. Պավել Շարաբխանյան - Համգաբանություն, 2005 թ.:
45. Ռուբէն Ղազարեան - Գրաբարի հոմանիշների բառարան, 2006 թ.:
46. Գրիգոր Զոհրապը ժամանակակիցների յուշերում եւ վկայութիւններում: Աշխատասիրութեամբ Ալբերտ Շարուրեանի, 2006 թ.:
47. Նիկողայոս Ադոնց - Երկեր, հինգ հատորով, հատոր Ա, Պատմագիտական ուսումնասիրություններ, 2006 թ:
48. Հ. Պօղոս Գոճանեան - Ուղեցոյց դասական ուղղագրութեան, 2006 թ.:
49. Հայկազ Ժամկոչյան - Հայ ժողովրդի պատմություն, 2006 թ.:
50. Հայ հնայական և ժողովրդական աղոթքներ: Աշխատությամբ Ս. Հարությունյանի, 2006 թ.:
51. Սաթենիկ Գեչյան - Անի: Մատենագիտություն, 2006 թ.:
52. Հարություն Մ. Վենետիկյան, Ջերալդ Ա. Ուորֆիլդ - Համաշխարհային առևտրի ֆինանսավորում, 2006 թ.:
53. Շահէ Արքեպիսկոպոս Աճէմեան, Հայերէն Աստուածաշունչը, 2006 թ.:
54. LA MINIATURE ARMENIENNE - *Collection du Matenadaran*, 2006 թ., «Նաիրի» հրատարակչության հետ համատեղ
55. Արևելագիտության հարցեր (Հոդվածների ժողովածու, հատոր VI), 2006 թ.:
56. Հակոբ Սիմոնյան - Վերին նավեր, գիրք Ա, (1976-1990 թթ. պեղումների արդյունքները), 2006 թ.:
57. Նիկողայոս Ադոնց - Երկեր, հինգ հատորով, հատոր Բ, Պատմաբանասիրական ուսումնասիրություններ, 2006 թ.:
58. Լիլիթ Զաքարյան - Աղջոց սուրբ Ստեփանոս, 2007 թ.:
59. Ալբերտ Խառատյան - Կոստանդնուպոլսի հայ գաղթօջախը (XV-XVII դարեր), 2007 թ.:
60. Մատենագիրք Հայոց - մատենաշար, Զ հատոր, Ը դար, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2007 թ.:
61. Մատենագիրք Հայոց - մատենաշար, Է հատոր, Ը դար, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2007 թ.:
62. Մատենագիրք Հայոց, մատենաշար, Ը հատոր, Շարական, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2007 թ.:
63. Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա (Հնագույն ժամանակներից մինչև Ք. հ. 298 թվականը), հատ. 1, 2007 թ.:
64. Ռուբեն Ղազարեան, Հենրիկ Ավետիսեան - Նորայայտ բառեր գրաբարում, 2007 թ.:
65. Ֆելիքս Հայրապետյան - Ֆենոլոգիայի հայերեն-ռուսերեն-անգլերեն բացատրական բառարան, 2007 թ.:
66. Արմէն Մալխասեան (կազմող) - Ցուցակ ձեռագրաց Մաշտոցի անուան Մատենադարանի, հատոր Գ, 2007 թ.:
67. Դենի դը Ռուժմոն - Սերը և Արևմուտքը (թարգմ. Ալ. Թոփչյանի), 2007 թ.
68. Սերոբ Ղազարյան - Հայոց լեզվի պատմություն, 2007 թ.:
69. Լաւրենտի Յովհաննիսեան - Հայ թարգմանական գրականութեան բառապաշարը (V դար), Ազգային Մատենադարան, հ. Մխ, 2007 թ.:
70. Համաստեղ - Մոռացված էջեր, հատոր Դ, 2007 թ.:
71. Գրիգոր Միքայելյան - Կիլիկիայի հայկական պետության պատմություն, 2007 թ.:
72. Նիկողայոս Ադոնց - Երկեր, հինգ հատորով, հատոր Գ, Հայերենագիտական ուսումնասիրություններ, 2008 թ:
73. Անլիտա Դոլուխանյան - Ֆրեդերիկ Ֆեյդին հայագետ, 2008 թ.:
74. Ստեփան Պողոսյան - Պատմագիտական ուսումնասիրություններ, 2008 թ.:
75. Ժիրայր Անանյան - Պիեսներ, Ընտրանի, 2008 թ.:
76. Մատենագիրք Հայոց - մատենաշար, Թ հատոր, Թ դար, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2008 թ.:
77. Մատենագիրք Հայոց - մատենաշար, ԺԲ հատոր, Ժ դար Գրիգոր Նարեկացի, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2008 թ.:
78. Մատենագիրք Հայոց - մատենաշար, ԺԳ հատոր, Գանձեր I մաս, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2008 թ.:
79. Մատենագիրք Հայոց - մատենաշար, ԺԴ հատոր, Գանձեր II մաս, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2008 թ.:
80. Խաչիկյան Լևոն - Աշխատություններ, հատոր Գ, («Նաիրի» հրատարակչության հետ համատեղ), 2008 թ.:
81. Հարությունյան Հ. Ս. - Նոր Բայազետի գավառը 1828-1913 թթ., 2008 թ.:

82. Գրիգոր Ղափանցյան - Արմատական բառարանի առթիվ դիտողություններ, Ара Прекрасный мифотворческий образ у армян, 2008 թ.:
83. Բաբկեն Հարությունյան - Խորհրդահայ թատրոնի տարեգրություն, հատոր III, 2008 թ.:
84. Վահրամ Ղարախանյան - «Գալուստ Կյուլպենկյան» հիմնարկության հայանպաստ գործունեությունը. 1956-2006 թթ., 2008 թ.:
85. Ավետիք Իսահակյան - Երկերի լիակատար ժողովածու, հատոր IV - Պոեմներ, 2008 թ.:
86. Հրաչյա Հարությունյան - Շուշի, XVIII-XIX դդ. տապանագրեր, 2008 թ.:
87. Գառնիկ Ստեփանյան - Ակնարկներ սփյուռքահայ թատրոնի պատմության, Գիրք 2, Ամերիկահայ թատրոնի պատմություն, 2008 թ.:
88. Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մաշտոցի անուան Մատենադարանի, հատոր Դ., 2008 թ.:
89. Ալեէմեզեան Նարեկ եպս. - Հայաստանեայց առաքելական եկեղեցւոյ պատասխանները ոչ-ուղղափառ առարկութիւններու, 2009 թ.:
90. Հրաչիկ Սիմոնյան - Հայերի զանգվածային կոտորածները Կիլիկիայում (1909 թ. ապրիլ), 2009 թ.:
91. Ստեփան Տ. Մելիք-Բախշյան - Հայոց պաշտամունքային վայրեր, 2009 թ.:
92. Աշոտ Սուքիասյան - Հայոց լեզվի հոմանիշների բացատրական բառարան (2004 թ. արժանացել է ՀՀ նախագահի մրցանակին՝ «Մարդկային զարգացման և հումանիստական արժեքների, այդ թվում՝ հումանիտար գիտությունների զարգացման բնագավառում ձեռք բերված նվաճումների համար»), երկրորդ հրատարակություն, 2009 թ.:
93. Ստեփան Պողոսյան - Հայոց ցեղասպանության պատմություն, h. 2, 2009 թ.:
94. Պերճ Զեյթունցյան - Ապրենք տասը պատվիրաններով, 2009 թ.:
95. Հակոբ Չոլաքյան - Քեսապի բարբառը, 2009 թ.:
96. Հրանտ Թամրազյան - Երկեր, h. 2, 2009 թ.:
97. Արամ Բարլեզիզյան - Հայերեն - ֆրանսերեն բառարան, 2009 թ.
98. Հրաչիկ Սիմոնյան - Ազատագրական պայքարի ուղիներում, 2009 թ.
99. Գառնիկ Ստեփանյան - Մղձավանջային օրեր, 2009 թ.
100. Արամ Սիմոնյան - Զանգեզուրի գոյամարտը, 2009 թ.:
101. Հիլտա Գալֆայեան-Փանոսեան - Արեւմտահայ գրական լեզուի ուսումնական ձեռնարկ, 2009 թ.:
102. Գուրգեն Մահարի - Սիբիրական, 2009 թ.:
103. Ռուբեն Ղազարյան, Հենրիկ Ավետիսյան - Միջին հայերենի բառարան, երկրորդ հրատարակություն, 2009 թ.:
104. Հրաչյա Աճառյան - Պոլսահայ անգիր բանահյուսություն, 2009 թ.:
105. Մատենագիրք Հայոց - մատենաշար, Ժ հատոր, Նարեկյան դպրոց, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2009 թ.:
106. Նիկողայոս Ադոնց - Երկեր հինգ հատորով, հատոր Դ, 2009 թ.:
107. Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մաշտոցի անուան Մատենադարանի, հատ. Ե, «Նաիրի» հրատարակչության հետ համատեղ, 2009 թ.:
108. Հակոբ Մանանդյան - Երկեր, Բանասիրական ուսումնասիրություններ, հատոր Է, 2010 թ.:
109. Արման Եղիազարյան - Արաբական խալիֆայության Արմինիա վարչական շրջանը (Պատմաշխարհագրական ուսումնասիրություն), 2010 թ.:
110. Ռուբեն Ղազարյան – Լեզվաբանական ուսումնասիրություններ, 2010 թ.:
111. Ստեփան Մալխասեանց - Հայերէն բացատրական բառարան, չորս հատորով, հատոր I (Ա-Ե), 2010 թ.:
112. Ստեփան Մալխասեանց - Հայերէն բացատրական բառարան, չորս հատորով, հատոր II (Զ-Կ), 2010 թ.:
113. Ստեփան Մալխասեանց - Հայերէն բացատրական բառարան, չորս *հատորով, հատոր III (Հ-Ո), 2010 թ.:*
114. Ստեփան Մալխասեանց - Հայերէն բացատրական բառարան, չորս հատորով, հատոր IV (Չ-Ֆ), 2010 թ.:
115. Համակուրսեցի բանասերներ. Վաքսունականների հիսնամյակը (հրատ. պատրաստեց Վ. Գաբրիելյանը), 2010 թ.:
116. Հրանտ Թամրազյան - Երկեր, հատոր 3, 2010 թ.:
117. Հրաչիկ Սիմոնյան - Ազատագրական պայքարի ուղիներում, հատոր 4, 2010 թ.:
118. Մատենագիրք Հայոց - մատենաշար, ԺԱ հատոր, X դարի պատմիչներ, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2010 թ.:
119. Մատենագիրք Հայոց - մատենաշար, ԺԵ հատոր, X դարի պատմիչներ, տպագրվել է Անթիլիասում (Լիբանան), 2010 թ.:
120. Էդուարդ Աթայան - Նշան, համակարգ, հաղորդակցում. Հոդվածների ժողովածու՝ նվիրված Էդ. Աթայանի հիշատակին, 2011 թ.:
121. Ստեփան Պողոսյան - Հայոց ցեղասպանության պատմություն, III հատոր, 2011 թ.:
122. Վանիկ Սանթրյան – Չեր ընծայագրի հետքերով, ինքնալրագիտարան երկու հատորով, հատոր I (Ա-Կ), պատվակալ խմբագիր՝ Զավեն Եկավյան, 2011 թ.:

123. **Ավետիք Իսահակյան** - Երկերի լիակատար ժողովածու, Անտիպ և հետմահու տպագրված բանաստեղծություններ, հատ. II, 2011 թ:
124. **Արման Եղիազարյան** - Հայ Բագրատունիների տերությունը (885-908 թթ.), Պատմաաշխարհագրական ուսումնասիրություն, 2011 թ.:
125. **Հակոբ Մանադյան** - Երկեր, հատոր Ը, Բնագրագիտական աշխատություններ, 2011 թ.:
126. **Պետրոս Մ. Բեդիրյան** - Հայերեն դարձվածքների ընդարձակ բացատրական բառարան, 2011 թ.:
127. Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա (III դարի վերջերից մինչև IX դարի կեսերը), հատ. 2, 2011 թ.:
128. Նոր Բայազետի գավառը 1914-1920 թթ., 2012 թ.:
129. **Hrachik Simonyan** - The Destruction of Armenians in Cilicia, April 1909, London, 2012.
130. **Ռուբէն Ղազարեան** - Գրաբարի դարձուածաբանական բառարան, 2012 թ.:
131. **Համիկ Ստեփանյան** - Հայերի ներդրումը Օսմանյան կայսրությունում, 2012 թ.:
132. **Նիկողայոս Ադոնց** - Երկեր հինգ հատորով, հատոր Ե, 2012 թ.: